«МАТЕНАДАРАН»

ИНСТИТУТ ДРЕВНИХ РУКОПИСЕЙ ИМЕНИ МАШТОЦА ПРИ СОВЕТЕ
МИНИСТРОВ АРМЯНСКОЙ ССР

# ПАМЯТНЫЕ ЗАПИСИ
# АРМЯНСКИХ РУКОПИСЕЙ

## XV ВЕКА

**ЧАСТЬ ТРЕТЬЯ**
**(1481—1500 гг.)**

*Составил*
*Л. С. ХАЧИКЯН*

ИЗДАТЕЛЬСТВО АКАДЕМИИ НАУК АРМЯНСКОЙ ССР

ЕРЕВАН 1967

«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»
ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ
ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ

ԺԵ ԴԱՐԻ

# ՀԱՅԵՐԵՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ
# ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆՆԵՐ

ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

(1481—1500 թթ.)

*Կազմեց*
*Լ. Ս. ԽԱՉԻԿՅԱՆ*





ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1967

# ԵՐԿՈՒ ԽՈՍՔ

ԺԵ դարի հայերեն հիշատակարանների ամբողջական հավաքածուի Ա մասը, տողերիս գրողի աշխատասիրությամբ, հրատարակվեց 1955 թվականին՝ դարիս առաջին հիսնամյակի հիշատակարաններն ընդգրկող մի մեծ հատորով. Հավաքածուի Բ մասը՝ 1451—1480 թթ. հիշատակարաններով ու ընդարձակ ներածական ուսումնասիրությամբ, լույս տեսավ 3 տարի հետո (1958 թ.): Խիստ ուշացավ. սակայն, ԺԵ դարի վերջին քսանամյակի հիշատակարաններն ընդգրկող այս Գ մասի նյութերի ամբողջական հավաքման ու խմբագրման աշխատանքը: Բանն այն է, որ այս տարիների ընթացքում, մեկը մյուսի ետևից, հրատարակվեցին այժմ առկա, ինչպես և առաջին համաշխարհային պատերազմի դժնդակ տարիներին հոռ ճարակ դարձած ու ոչնչացված հայերեն ձեռագրերի մի շարք մեծարժեք հավաքածուների ցուցակներ*: Այս նույն շրջանում զգալի աշխատանք տարվեց նաև Մաշտոցի անվան Մատենադարանի ձեռագրական հավաքածուի նկարագրության ու երկհատոր ցուցակի տպագրության պատրաստման գծով: Ինչպես վերը ակնարկված տպագիր ցուցակներից, այնպես էլ Մատենադարանի հայերեն ձեռագրերից անհրաժեշտ էր քաղել ԺԵ դարի ընթացքում շարադրված մեկ հարյուրից ավելի արժեքավոր այն հիշատակարանները, որոնք դուրս էին մնացել մեր տեսադաշտից:

Եվ ահա, ուշացումով, բայց 1401—1480 թթ. շարադրված հիշատակարաններ պարունակող ընդարձակ մի հավելվածով տպագրության ենք հանձնում ԺԵ դարի հիշատակարանների վերջին այս հատորը:

Օգտվելով հարմար առիթից անհրաժեշտ ենք համարում ծանուցել, որ Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի պատմության ինստիտուտում

---

* *Նկատի ունենք հետևյալ ցուցակները.*

*Ն. Պողարեան, Մայր ցուցակ ձեռագրաց սրբոց Յակոբեանց, չորրորդ (1956) և հինգերորդ (1960) հատորները:*

*Բաբգէն աթոռակից կաթողիկոս (Կիւլէսէրեան), Ցուցակ հայերէն ձեռագրաց Ղալաթիոյ ազգային մատենադարանի Հայոց, Անթիլիաս, 1961:*

*Յ. Թօփճեան, Ցուցակ ձեռագրաց Արմաշի վանքին, Վենետիկ, 1962:*

*Ցուցակ հայերէն ձեռագրաց վանից ս. Կարապետի և ս. Դանիէլի ի Կեսարիա, կազմեց Տրդատ եպս. Պալեան, Վիեննա, 1963:*

*Ցուցակ հայերէն ձեռագրաց Մխիթարեան մատենադարանին ի Վիեննա, հատոր Բ, կազմեց Հ. Համազասպ Ոսկեան, Վիեննա, 1963:*

*Ցուցակ հայերէն ձեռագրաց Զմմառի վանքի մատենադարանին, կազմեց Մեսրոպ վրդ. Քեշիշեան, միաբան Զմմառի, Վիեննա, 1964:*

*Յ. Քօսեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Արծնեան վարժարանի ի Կարին և Կարնոյ գիւղերու (տպագրված է «Հանդէս ամսօրեայ»-ի 1961—1964 թթ. համարներում):*

Verzeichnis der orientalischen Handschriften in Deutschland, Band *IV*, Julius Assfalg und Josef Molitor, Armenische Handschriften, Wiesbaden, *1962*:

և Մաշտոցի անվան Մատենադարանում ծրագրված աշխատանք է տարվում մինչև 1300 թվականը (ներառյալ), ինչպես և 1500 թվականից հետո շարադրված հայերեն հիշատակարանների հավաքածուներ կազմելու և հրատարակության պատրաստելու գծով: Մինչև 1300 թվականը շարադրված սկզբնագիր հիշատակարանները, մեկ հատորով, հրատարակության է պատրաստում Մատենադարանի աշխատակից Ա. Մաթևոսյանը: Նրան հաջողվել է հայտնաբերել շուրջ 100 արժեքավոր հիշատակարաններ, որոնք տեղ չեն գտել Գ. Հովսեփյանի «Յիշատակարանք ձեռագրաց»-ի մեջ. մեծ արժեք են ներկայացնում նաև 1251—1300 թթ. հիշատակարանները, որ առաջին անգամ են հրատարակվելու նրա պատրաստած հատորում: Գրեթե պատրաստ է նաև ԺԶ դարի հիշատակարանների նոր հավաքածուն՝ Մատենադարանի գիտական աշխատող Ս. Լալաֆարյանի ջանքերով: Շուտով կավարտվի ԺԷ դարի հիշատակարանների հավաքման և հրատարակության պատրաստման ծանր աշխատանքը, որ ի կատար է ածվում ակադեմիկոս Ա. Հովհաննիսյանի և անվանի բանասեր Վ. Հակոբյանի միացյալ ուժերով:

Այսպիսով, առաջիկա տասնամյակում, հույս ունենք, որ հաջողությամբ ավարտվելու է հայերեն ձեռագրերի հիշատակարանների հրատարակման շնորհակալ աշխատանքը, որը մեծ նպաստ է բերելու Հայոց պատմության ու մշակույթի ուսումնասիրությանը:

Այս երկտողն ավարտելուց առաջ մեր հաճելի պարտքն ենք համարում շնորհակալական խոսք ուղղել այս հատորի խմբագիր Ա. Մաթևոսյանի հասցեին: Նրա օգնությունն զգացվում է մեր ուշադրությունից վրիպած հիշատակարաններով հավաքածուն ճոխացնելու և հիշատակարանները խնամքով սրբագրելու դժվարին աշխատանքներում:



Հիշատակարանների այս ժողովածուն վաղուց հանձնված էր տպագրության, երբ 1966 թ. հունվար–մարտ ամիսներին մենք բախտ ունեցանք լինելու Երուսաղեմի սրբոց Հակոբյանց վանքի ձեռագրատանը, ինչպես և Զմմառի հայ կաթողիկե վանքի Մատենադարանում: Այդ հաստատությունների ձեռագրական հարուստ հավաքածուներից, այլ նյութերի հետ միասին, մենք օրինակեցինք և միկրո-պատճենահանեցինք շուրջ 300 հիշատակարաններ՝ հնագույն դարերից մինչև 1600 թվականը:

Վերադառնալով Երևան «ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարանների» այս վերջին հատորը գտանք արդեն շարված ու տպագրության պատրաստ: Ուստի, անկարող լինելով նոր հավաքված հիշատակարանները համապատասխան տարեթվերի տակ տեղադրել, կատարեցինք հետևյալը. Երուսաղեմի ու Զմմառի 1481—1500 թթ. այն հիշատակարանները, որոնց բնագրերը հայտնի էին տպագիր ու ձեռագիր մեզ մատչելի աղբյուրներից՝ սրբագրեցինք ըստ կարելվույն, բաղդատելով մեր ստույգ ընդօրինակությունների հետ, իսկ ԺԵ դարի մյուս հիշատակարանները՝ տեղադրեցինք հավելվածի բաժնում, ուրիշ աղբյուրներից քաղված բազմաթիվ այլ նորահայտ հիշատակարանների հետ միասին:

Լ. ԽԱՉԻԿՅԱՆ

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*Հ. Յ. Քոսեան, Ցուցակ Կարնոյ գիւղերու, 8, ՀԱ, 1963, սյուն. 210—212*
*Նաև Հ. Ոսկեան, Տարօն-Տուրուբերանի վանքերը, էջ 134—135*

Գրիչ՝ Մովսէս
վայր՝ Արծկէ

703բ *Աւարտեցաւ սուրբ տառս, որ կոչի Յայսմաւուրք... ձեռամբ յոգնամեղ գրչացս՝* Յակոբի և Մովսիսի. *ի խնդրոյ կուսակրօն և սրբասնեալ կրաւնաւորին* Մկրտչի, *որ ետ գրել զսա ի հալալ արդեանց իւրոց յիշատակ բարի. և բարեխօս հոգւոյ իւրոյ և ծնաւղաց իւրոյ։ ...Եւ ստացաւ զանաւրկ մեծութիւնս և զանկողոպտելի գանձս... ի վայելումն հարազատ եղբարց իւրոց, պաշտօնէից եւ սպասաւորաց սուրբ Կարապետին, ի յիշատակութիւն բարի հոգւոյ, և ծնօղաց իւրոց* Աստուածատրուն *և* Խաթունն-Մէլիքին, *և ծնօղափոխան բազմերախտ քեռոյն իւր՝ տէր* Կիրակոսին, *և ամենայն արեան մերձաւորաց իւրոց։ Եւ զի ետ զսա ընծայ և նուէր և անջինջ յիշատակ ի վանս* Գլակայ *ի դուռն սուրբ Կարապետին, վասն որոյ յերես անկեալ աղաչեմ զժառանկողք սուրբ կտակիս, զհամակամ կրօնաւորքդ յիշել յերկնաքացիկ յաղաւթս ձեր... զտէր* Մկրտիչն *և զիւրքն ամենայն։ Այլ և յիշել ի տէր զ*Նարապետ *և զ*Յովանէս *աբեղայքն, որք ըստ կարեաց իւրեանց աւժանդակ եղեն տէր* Մկրտչին *սակաւ իրօք, և աշխատեցան ընդ գրոցս։*

*Եւ մեք տեսեալ զեռափափաք սէր սոցա հետ սուրբ գրոցս և ձեռն արկեալ գրեցաք զսա ողորմութեամբ սուրբ Կարապետին, ի լաւ և յընտիր աւրինակէ, որ կոչի Ծերենց, ի քաղաքն* Արծկէ, *ընդ հովանեաւ սուրբ Սքանչելագործին և պատերազմի սուրբ Նշանին և այլ սրբութեանցս, ի թուականութեան Հայոց Ջ. եւ ի ԻԹ. (1480) ամին, որում էր տանուտէր ձուկն։ Որ և ի սոյն ամի եղև մեծ պատերազմն ի յ*Ուռհայ *քաղաք։ Վասն զի* Պաղ* *անուն զաւրաւարն* Մուռա *սուլտանին եկեալ բազում զօրօք ի վ[ե]րա* Ուռհայոյ, *և աւերեալ զերկիրն քաղաքովն և նստեալ ի վերայ բերդին բոլոյն բովանդակ և ի յառ եբեր։ Իսկ* Աղուբ *փատշահն, որդի* Հասան *փադշահին, որ նստէր ի շահաստանն* Թաւրէզ, *որ կալեալ էր զթախթն յետ հօր իւրոյ զեռ ևս Գ. (3) տարի։ Եւ զի սա տղայ գոլով հասակաւ և անհմուտ պատերազմի, և զի անմարթ ևս է թաղաւորաց ընդ իշխանս կռուել, վասն որոյ առաքեաց զքաջ զօրավարն իւր զ*Ղօշ Բայանդուռն *բազում զօրօք և պատերազմեցաւ ընդ* Պաղին *աւրհնօք, ճակատ առ ճակատ, և յաղթեալ նմա կոտորեաց ըզզօրսն նոր[ա] եւ փախստական արար, եւ բռնեալ կլա-*

---

* *Մուրա սուլթանի զօրավարը Հ. Քոսյանի մոտ կոչվում է Պաշ, ուղղում ենք ըստ Հ. Ոսկյանի և Ղ. Ալիշանի (տե՛ս «Այրարատ», էջ 328)։*

*րեաց զպաշն Պաղին, և արար շապաղ իւրեան հեծելին, և յուղարկեաց արմաղան Հոռոմոց սոլթանին։ Եւ այս եղեւ ի խնամոցն աստուծոյ և ի զօրութենէ սուրբ Կարապետին, ձեռնտուութեամբ բազմահաւաք սրբոց աշխարհիս Հայոց։*

*Իսկ աւարտեցաւ գիրքս ի կրկնեալ ամին, որ աճեաց թվական ՋԼ. (1481), որոյ էր տանուտէր խոյն։ Որ և ի սոյն ամի հայրապետն սուրբ ուխտիս* Գլակայ *տէր* Մկրտիչ, *իւր համաշունչ և միախոհ եղբարբքն. ձեռնարկեցին ի սալել զկումբէթ սուրբ Կարապետին, զսուրբ Ստեփանոսին և զՅարութենին, աւժանդակութեամբ երջանիկ դիտապետին՝* Ստեփաննոս *եպիսկոպոսին, որ մականուամբ* Շղոնց *ասի, զոր տէր աստուած խաղաղութեամբ ի կատարումն ածցէ ամէն։*

*Արդ, աղաչեմ զժառանկորդք սուրբ կտակիս յիշել ... ստացող սուրբ գրոցս զմեծ տէր* Մկրտիչն, *... զգծող առաջին հատորի սորա զտէր* Յակոբն *և զծնօղսն իւր* զՅովաննէս *քահանայ ... այլ եւ միով աստուած ողորմի և զիս՝ զանարժան* Մովսէսս *յիշել՝ զգծող վերջին հատորիս, և զծնօղսն իմ* զԽանիէլ *քահանայ և* զՀայխաթունն, *և զհօրեղբարսն իմ՝* զԿիրակոս *կրօնաւորն, որ աշխատեցաւ ի կոկել թղթին, և* զՏէրունի *և* զՍիմէոն. *և բոլորով սրտի զթողութիւն մեղաց խնդրելոցս ի սմա...։*

2

ՇԱՐԱԿՆՈՑ

*Երուսաղէմ 1614 (Հմմ. ՀԱ, 1960, էջ 191—192)*

*Գրիչ՝* Ստեփաննոս եպիսկոպոս
*վայր՝* Խարբերդ, Արղլմսենի վանք

ա

*...Գրեցաւ եղանակաւոր սաղս ի թուականիս ՋԼ. (1481) ի վանքս*
598 *սուրբ Կարապետոյ և Աստըլմսեհին քաջ նահատակի և այլ բազմահաւաք սրբոց մարտիրոսաց որ աստ կան. սոցա կարողութեամբ աւարտեցաւ Շարակնոցս ի հայրապետութեան տեառն* Սարգսի *և տեառն* Յոհաննիսի. *Եւ աթոռակալութիւն սուրբ էջմիածնին էր* Աւետիք *վարդապետին* Հասնէլ-ֆացւոյ, *և առաջնորդութիւն գերահռչակ ուխտիս քաջ րաբունապետին* Գրիգորի, *որ փայլէ քան զարեգակն ի մէջ երկրի, և պարոնութիւն* Դաւիթ *թախտին էր* Նաղուպ-բակին՝ *որդի* Հասան *պարոնին, թոռն* Ալիբակին. *արար իշխանութիւն մինչև ի ծովն* Հընդկաին:

*Արդ, գրեցաւ ձեռամբ բազմամեղ և փըծուն գրչի* Ստեփաննոս *եպիսկոպոսի ի վայելումն անձին իմոյ և յիշատակ հոգւոյ իմոյ և ծնողաց իմոց։*

*Եւ յիշեցէք զտէր* Բանարգէս *հաւրեղբայրորդի* Գրիգոր *վարդապետին, որ բազում սէր և ընդելութիւն արար ի հետ մեր և կաշխատէր ի սպասաւորութիւն միաբանիցս... ընդ նմին յիշեցէք զհոգևոր եղբարքս մեր զտէր* Աւետիք *վարդապետն երաժշտականի, որ ուսուց զձայնաւորքն ընդունելի.*
599 *և զտէր* Յովէփի *քաջ փիլիսոփայն, որ բազում աշխատեցաւ ի յետ մեզ յուսուցանելն զդժարախաղ շարականքս, և զտէր* Վրդանէսն. *որ պմեզ ոգորէր ի ժամու տեղիս, և զտէր* Աւետիքն, *որ ընկեր մեզ ի հետ դասի, և աշխատեցաք շատ ատեն մի։*

Դարձեալ յիշեցէք զտէր Յակոբ աւագերէց ի Զմա գիւղաքաղաքի, որ արար մեզ շատ լաւութիւն՝ հայրութիւն և ծնողութիւն, զի գնաց աշխատութեամբ ի յերկիրն Բաղւայ՝ աղաւթատեղն Մեսրոպայ՝ ի գիւղն, որ կոչի Թըրխէ, զի անդ կայր աւրինակ քաջ քարտուղարին Գրիգորի, որ մականուն Խուլ կոչի, զի էր ձեռացագիրն իւր, գրեալ էր Հոգեբարձու և ներբ թէ կամա, թէ յակամա, զի դըժար կու տաին զհանց աւրինակն, և յորժամ բերաւ՝ գրեցաք ուրախութեամբ։ Աստուած լուսաւորէ զիւր ծնաւղաց հոգին, ամէն։ Եւ յիշեցէք զտէր աւրինակին՝ Մատթէոս երէցն... Թ. (9) շաբաթ գրեցաւ։

Եւ յիշեցէք զՄելքիսեթ քահանայն և զվարպետ Սամուէլն, որ աշխատել են ի հետ մեզ, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

Բ

224 Իսկ գրութիւն եղև սմին
Ձեռամբ փծուն արհեստ գրչին՝
Ստեփանոս եպիսկոպոսին,
Որ գաւառաւն Արարադին,
Ի պարնութիւն Աղուպ-բակին,
Որդի գոլով Հասան-բակին,
Թոռն Աւթմանի մեծ արքային.
Նըստաւ ի թախտն ի Ջահանշին:

Թվականին Հայոց ՋԼ. (1481) գրեցաւ ի յերկիրս Խարբերդոյ. ի վանքս սուրբ Կարապետոյ և Ապտլմսեհոյ։

3

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5833

334ա Առաջի աստուծոյ և յաջողութեամբ սուրբ խաչիս ի հայրապետութեան տեառն Ստեփանոսի, և ի ղանութեանն Աղուպ-բէկին. ի թուականիս Հայոց ՋԼ. (1481), ես՝ Կալա Միրանշէս, աստուծոյ կարողութեամբն և սուրբ խաչիս գնացի ի փաթշահի դուռն. և յինէ շատ խարճ արարի ի զԹամղէն, որ ստանն էր ի յետ կորեցի և տեղացս էրի, Աղբամարայ տանուտէրացս՝ մեծի և փոքու, և Ռստանայ թամղաչոց կամաւորութեամբն և ի յԱղթամարայ մալն դրի, և գձիթահացնները հարճն սուրբ խաչին և այլ եկեղեցեացն ծիթացին տու[ին]ք զամղին փոխ[ան], և սխֆ ալարինք սուրբ խաչին։

Որ և փրկիչն տիեզերաց՝ Քրիստոս աստուած մեր, փրկեսցէ զԿալա Միրա[ն]շէն և զիւր զնռաբոյս ծաղիկ որդին <իւր> զՄիրզաբէկն յամենայն փորձութենէ հոգոյ և մարմնոյ, ի ձեռաց անաւրինաց և ի մարդադէմ 334բ գաղտնաց, և պահեսցէ խաղաղական // կենօք յերկար ամօք և բարւոք ժամանակօք, մինչև ի խորին ծերութիւն, ամէն. եւ յետ ատեացս եկանելոյ սրբոցն Սարգսի և այլ վինու[որ]ացն խորանակից և պսակակից անէ. Հանդերձ ծնօղաւք և նախնաւքն, ամէն։

Այլ և աւրհնեսցէ տէր աստուած մեր զԱղթամարայ տանուտէրքն, որ

կամակից և յորդորիչք եղեն այս բարի բանիս։ Տէր աստուած տացէ վարձս վաստակոց նոցա ղերկնից արքայութիւնն և զանբաւ բարութիւնն, ամէն։

Եւ եթէ ի յետ այլ ժամանակաց աս և լիս էնի ի դիւան կամ ի յԱղթամար և կամ ի յայլ անաւրինաց հակառակի այս բարի բանիս, նա զանէծքն զաւձին և զԿայենին ժառանգեսցէ և զմասն զՅուդային և զայլ խաչահանուացն առցէ՝ ինքն և կամակիցքն իւր, հանդերձ ծնօղօքն և աղգականօքն, և ի հետ Արիոսի ոլատժի և պատուհասի, ամէն։

4

ՃԱՌԸՆՏԻՐ

Նոր Ջուղա 544, ՄՏՄ և ՍՏԱ

Գրիչ՝ Ազարիա
վայր՝ Վան

Արդ, գրեցաւ սուրբ գիրքս ի թուականիս Հայոց ՋԼ. (1481), ի կաթողիկոսութեան տեառն Սարգսի և յառաջնորդութեան սուրբ ուխտիս Գէորգայ տէր Յովանէս եպիսկոպոսի Գունդուզի, ի թագաւորութեան սուլթան Աղուպին, և յիշխանութեան աշխարհիս մեծ և հրոխտ պարոնին Էմանբէկին, որ տէր Կարապետս հազինադար է. վասն այսորիկ ի սորին յաւուրքս շինեց զկումբէթս սուրբ տաճարիս, զոր և անաւրէնքն որպէս կրճտէին զատամունս իւրեանց ի սա ոչ մերձեալս, զոր տէր աստուած զսա ընդ երկայն աւուրս պահեսցէ, ամէն։

5

ԱՒԵՏԱՐԱՆ

Ն. Ակինեան. Ցուցակ Վասպուրականի 200, սյուն. 487—489, Մոկսի Արրահամենց թաղի ս. Յարութեան եկ. 6

Գրիչ՝ Խաչատուր
վայր՝ Կտուց կղզի

...Արդ, այսմ աստուածեղէն և երկնապարգև գանձիս և լուսափայլ մարգարտիս ցանկացաւղ եղեալ սրբասէր և բարեմիտ կրաւնաւորն Վարդան աբեղայն... [ որ ] ստացաւ զսա ի հալալ արդեանց ի վայելումն անձին և յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնաւղաց իւրոց՝ հաւրն Յովանէսին. և մաւրն Եղիսաբէթին, և հաւրեղբաւրն Թումա աբեղաին, և քեռոյն Աստուածատուր կրաւնաւորին, որ զեկեղեցին շինեաց, և քւերցն Սիրամարգին և Ազրգին և Մրոջանին, և զաւակացն Սիրունին և Առաքելին և Խաչատուրն և Շախաթին, և հաւրեղբաւրն Խերապետին, և քւեր Նորին Մարթային. և զաւակին Ջանաթէկին. և հոգևոր քւեր Եղիսին, և ամենայն արեան մերձաւորաց իւրոց՝ կենդանեաց և հանգուցելոց, ամէն։

...Ընդ նոսին և զբազմամեղ գրիչս զԽաչատուր. և զծնաւղսն իմ՝ զհայրն իմ զՅովաննէս և զմայրն իմ զԱսլ-Մելիք, և զհարազատ հոգւոյ իմոյ զՍտեփաննոս կրաւնաւորն, որ զթուղթս լաւ կոկեաց, զոր և տացէ տէր աստուած զըվարձս փոխարինին յարքայութեան երկնից, ամէն։

...Եւ վասն սղալանաց և արհեստից և խոշորութեան գրիս անմեղադիր լինել աղաչեմ, զի տեղս անհանգիստ էր, շոգ, դանաքն կու մածէր և չէր ճապղեր։ Գրեցաւ ղաւրութեամբ և յաջողութեամբ սուրբ Հոգոյն սուրբ Աւետարանս ի աստուածաբնակ, ի հրեշտակաճեմ և ի ներքսագոյն կղզիս, որ կոչի Կտուց, ընդ հովանեաւ լուսազարդ սուրբ Կարապետիս, և լուսատրչաշէն սուրբ Խաչիս, և սուրբ Ստեփաննոսիս, և սուրբ Աստուածածնիս, և այլ սրբոցս որք աստ կան հաւաքեալ, ձեռամբ փծուն և անարհեստ գրչի Խաչատրու, ի խնդրոյ սրբասէր և մաքրամիտ աբեղային Վարդանայ, որ զեկեղեցոյ գլուխն ս[ու]աղեաց* և ղարան ի Շատուան երար ութ եկեղեցոյն, թվականիս մերում ՋԼ. (1481), զոր տէր աստուած վայելել տացէ։

Եւ ընթերցաւղք սուրբ Աւետարանիս լաւ և սուրբ պահեցէք և մոմն ի մէջն մի բռնէք. եւ Քրիստոս աստուած զձեզ խաղաղական կենօք պահեսցէ յայսմ կեն[ց]աղս և յետ աստեացս ելանելոյ զասակից և պսակակից արասցէ ամենայն ընտրելոց սրբոց։ Զվարդան աբեղայն, և զվերոյգրեալքըս ի սմա, և զլսաւղ բանիս, և որ զաստուած-ողորմին ասէ՝ զողորմութիւն ի յաստուծոյ առցէ, ամէն...

6

ՍԱՂԻԿ ԿՈՋԵՑԵԱԼ ԲԺՇԿԱՐԱՆ ՍՏԵՓԱՆՈՍ ԲԺՇԿԻ՝ ՈՐԴԻՈՅ ԱՀԱՐՈՆ ԲԺՇԿԱՊԵՏԻ

«Բիւզանդիոն» օրաթերթ, Կ. Պոլիս, 1906 թ., հունիս 5—18 (№ 2963)

Ստացող՝ Ճառահպաշի պարոն Ռամատան
վայր՝ Կոստանդնուպոլիս

...Տեսայ ես անպիտան ծառայ աստուծոյ ի թուականութեան ՋԼ. (1481), ապրիլ ամսոյն Զ. (6)-ն ի տանի աւետման սրբուհւոյ Աստուածածնի, ի մայրաքաղաքս ի Կոստանդինուպոլիս. և գտաք շատ Աղրապատինք, որ գրած էր հայոց լեզվով զայս յառաջաբանութիւն, և մեք գրեցաք, զի ով որ ի յայս յարուեստըս հետևի՝ նայ իւր շինած դեղերն պակասութիւն չի գտվի։

Եւ զիս՝ զանարժան ծառայս ճառահպաշի համ պօստանճիպաշի յիշեցէք ի տէր, և աստուած յիշէ զձեզ ի վերին Երուսաղէմ։
Կատարեցաւ Բժշկարանս կամօք պարոն Ռամատան ճառահպաշիին**։

---

* Գուցե եղել է «սալեաց», որ ավելի տրամաբանական է։

** Հիշատակարանի հրատարակիչ և բժշկարանի մասին կարեւոր տվյալներ հաղորդող Կ. Գաբիկյանը կարծում է, թե ՋԼ. (1481) թվականը չպետք է համարվի ճառահպաշի Ռամատանի հիշատակարանի թվականը։ Ըստ նրա այդ Ռամատանը ձեռագիրն ստացած կամ ընդօրինակած պետք է լինի 1521 թվականին։

## 7

## ԱՒԵՏԱՐԱՆ

Նոր Ջուղա 526, ՄՏՄ

Հիշատակագիր՝ Յովաննես աբեղա
վայր՝ Ձագավանք

332բ ...Փափագաւղ եղեն աստուածային սուրբ Աւետարանիս աստուածասէրն Յովանէս և ամուսին իւր Դաւլատ-խաթունն, և ստացան զսայ ի հալալ յ[ը]նչից և ի յարդար վաստակոց՝ յիշատակ հոգւոյ իւրեանց, և ծնողացն՝ հաւրն և մաւրն, և զաւակացն՝ Մկրտչին, և այլ ամենայն արեանառու մերձաւորաց, ամէն։ Արդ, ես՝ Դաւլատ ստացայ զԱւետարանս հալալ յարդեանց իմոց և տվի Ձագովանից, յիշատակ ինձ և ծնաւղայց իմոց, ի դուռն հրաշափառ կաթուղիկէին Գէորգայ, և գեստադարձ սուրբ Նշանիս, և լուսաւոր սուրբ Սարգսիս, և այլ բազմահաւաք սրբոցս, որ աստ կան հաւաքեալ։ Ի թվականիս Հայոց ՋԼ. (1481), ի հայրապետութեան տեառն տէր Յոհանէս կաթողիկոսի, ի յաթոռ սուրբ Էջմիածնի Վաղարշապատու...

Այլ ես Դաւլատս, որ ստացայ զսուրբ Աւետարանս զայս յիշատակ ինձ և ծնաւղաց իմ՝ հաւրն Սարգսին և մաւրն Դիլշատին, և զաւակացն Վահրամշին, և դստերացն Թուխտորին և Թամսկանն, և այրին իմոյ յետոյ՝ Մկրտչին, և զաւակի նորին, և դստերն Բէկիխաթունին, և այլ ամենայն արեան մերձաւորաց. այլ և եղբարցն իմ՝ Ամիրզուլին, Վարծիզուլին, և զաւակաց նորին՝ Սարգսին և Աբանաս դպրին, և քեռոյն իմ Սամուէլ մահդասւին՝ բարեհոգի և հաւատարիմ քրիստոնէին, ամէն։

Այլ ես Դաւլատս՝ հաւատարիմ կինս՝ դարձեալ յետոյ տվի Աւետարանս զայս Ձագա եկեղեցուն, ի գուռն սրբոյ Դաւթի քաջ նահատակին, յիշատակ հոգոց մեր, ննջեցելոց մերոց...։ Եւ միով բանիւ աստուած-ողորմի ասացէք յիշատակարանի գրողի Յովաննէս անուամբ միայն աբեղայի, և ոչ ունիմ գործս բարի, և ով ոք ասէ ողորմի, նայ աստուած իւրն ողորմի ի յաւուրն ատենի...

## 8

## ԱՒԵՏԱՐԱՆ

Իրան, Փերիա գաւառ, Նամակերտ գիւղ
ՄՏՄ և ՄՏԱ

Գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Հայրիվանք

ա

206բ Քրիստոս աստուած ողորմի ստացողի Աւետարանիս տէր Մեսրոբին և ծնողացն՝ Ներսէս քահանային, և ազգացն Վարդանին, և Կիրակոսին, Իկտիշին, Մեսրոբին, և Գոհարին, Մելիքսեթին, Մխիթարունին, Ալտմին և Խաթունշին...

Գրեցաւ սա ի սուրբ ուխտս Հայրիվանս, ձեռամբ յոգնամեղ և անարուեստ գրչի Ստեփանոսի, ի թվին Հայոց ՋԼ. (1481)...

Բ

*...Զոր և տեսեալ զսորայն անճառ փրկագործութեան խորհուրդ սրբասէր և մաքուր քահանայն* Մեսրոբ, *և նորաբողբոջ որդին իւր* Մելքիսէթ *քահանայն, և զծաղկեալ պաւակսն իւր* զՆերսէս *և* զԿարապետ, *եւ զհայրն իմ* զՆերսէս *քահանայն, և զմայրն իմ* զԻկտիշ, *և զամուսինն իմ* զԴոճար, *և զհարսն իմ* Մինախաթուն, *և զքուերքն իմ* զԽալաֆն, *և* զՀալիմն, *և* զԱլամն, *և* զԽաթու[ն]ջէն, զԹուխիկն, *և զփեսայն իւր* զԱնտոն, *և զնախնիքն իմ* զՎարդան *քահանայն,* զՍիրակոս *քահանայն, և զհանգուցեալ պաւակսն իմ* զԿրպանէսն, զԸրրատակէսն, զԳրիգորէսն, *և զդուստրն իմ* զԳուլստան, *և* զՇնովհորն, *որ այժմ աւուր հանգեաւ ի Քրիստոս...*

9

*ԱՒԵՏԱՐԱՆ*

*Երևան 6699*

*Գրիչ՝* Զաքարայ
*վայր՝* Հերմոնի վանք

ա

*...Գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ* Սարգիս *դպրապետի, որ նըստեալ է ի յաթոռն սուրբ Լուսաւորչին ի* Վաղարշապատ *քաղաքի՝ ի սուրբ Էջմիածնի, նմանեալ սրբոյն Գրիգորի, համբերելով չարչարանաց կենդանի վկայ Քրիստոսի։*

294բ *Ի թվականիս Հայոց ՋԼ. (1481) // եղև գրաւ սորա ի վանս* Հերմոնի *ի յերկիրս* Վայհձոր *յորջորջեալ. առաջնորդ սուրբ ուխտիս* Սարգիս *քաջ և արի վարդապետի և այլ միաբանիցս, որ անդ կան ժողովեալ. յիշեցէք յաղօթս և աստուած զձեզ յիշէ, ամէն։*

*Արդ, ցանկացաւղ եղեալ սուրբ Աւետարանիս տէր* Մաթէոս *քահանայն սրբամիտ և ճգնազգեաց, որ բազում առաքինութեամբ վարի ի վերայ աշխարհի վասն յուսոյ արքայութեան և սիրոյն Քրիստոսի. ըստացաւ զսայ յիշատակ իւրն, և ծընօղաց իւրոց* Շահիկին *և* Բաղտասարին, *և իւր կենակցին* Եղիսաբեթին, *և դստերն* Վառվառին՝ *ի Քրիստոս հանգուցելոցն, որ տարաժամ փոխեցան ի յաշխարհէ աստուած-ողորմի նոց[ա], ամէն։ Ի վայելումն անձին իւրոյ և իւր որդոյն տէր* Թումին՝ *նորայբողբոջ քահանայի և աստուածային շնորհաւք լցի, զոր աստուած վայելել տացէ, ամէն, և կենակցին* Թումա *քահանայի՝* Թան-Մելիքին՝ *նմանեալ սրբոյն Շուշանա և Գայիանէ, և որդոյ սոցա՝* Ազարիայի. *զոր աստուած ընդ երկայն աւուրս արասցէ զսա։*

*Այլ, յիշեցէք* զՍարգիս *աղէն, և զիւ[ր] որդիքն, և* զՎարդանէսն *ի Քրիստոս փոխեցեալ՝ զտէր* Մաթէոսի *եղբայրքն, և զհարսներն՝* զՇահմելիքն *և* զԱստիանէն։

295ա *Կրկին անգամ աղաչեմ զհանդիպողքդ յիշեսջիք յաղաւթս ձեր զտէր* Ղազարն *զնորայկընունք քահանայն, և* զՍարգիսն, *և* զԱմիրխասն, *եւ զմայր սոցա* զԴունիայն, *և[ւ]* զԽունար-Խաթուն *տատն, զոր լսել տացէ զերանաւէտ ձայնն, ամէն։*

Այլ, երեսս անկեալ աղաչեմք զՀանդիպաւ[ղ]ք սուրբ Աւետարանիս, որք Հանդիպիք սմայ կարդալով կամ աւրինակելով և կամ դաղափարելով. յիշեցէք ի մաքրայփայլ յաղաւթս ձեր զվերոյգրեալքս ի սմա՝ զտէր Մաթէոսն և զտէր Թումայն, և զամենայն [արեան]առու մերձաւոր սոցա ի բազկատարած յաղաւթս ձեր առաջև բեմին Քրիստոսի։ Դուք յիշաւղքդ և սոքայ յիշեցեալքս յիշեալ լինիք առաջև արդար դատաւորին Քրիստոսի աստուծոյ մերոյ, ամէն, ամէն և եղիցի, եղիցի։

ն.լ.ո.ղ.ւ.ը.փ.ն.բ.ձ.բ.ց.ժ.ս** և աստուած զձեզ յիշէ, ամէն։

Բ

228բ Զնսայի նկարող սուրբ Աւետարանիս յիշեա։

## 10

## ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 10146

Գրիչ՝ Խաչատուր
վայր՝ Ճիխէլ գիւղ

199ա ...Գրեցաւ Գանձարանս ձեռամբ Խաչատուր իրիցու՝ փցուն և տխմար գրչի, ի դիւղս որ կոչի Ճիխէլ, ընդ Հովանեաւ Ծիրանիաւոր Աստուածածնիս, Հրամանաւ և ծախիւք սրբասէր և գերալուր անձին Անտոն կրաւնաւորի, որ է Հայր վանաց Ջուղու Աստուածածնին։ Ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ իւր և ծընօղաց իւրոց։ Ով զմեզ յիշէ՝ աստուած զինքն ի բարին յիշէ և նմայ փառք յաւիտեանս, ամէն։

Գրեցաւ ի թվ. Հայոց ՋԼ. (1481)։

## 11

## ԱԻՆՏԱՐԱՆ

Երևան 7745

Գրիչ՝ Զաքարա
վայր՝ Արճէշ

248բ ...Արդ ես՝ յետինս ի կարգաւորաց և անիմաստս ի գիրս գրչութեան Զաքարա անուամբ միայն կոչեցեալ կարգաւոր և գործով ունայն և թափուր, ոչ ունելով իշխանութիւն մերձենալ ի սուրբ Աւետարանս, այլ յուսալով յողորմութիւնն աստուծոյ, և շնորհօք սուրբ Հոգոյն սկսայ և նեբողութեամբն Յիսուսի աւարտեցի զսուրբ Աւետարանս թվին ՋԼ. (1481), ընդ Հովանեաւ սուրբ Աստուածածնի տաճարիս յԱրճէշս քաղաքի, վասն

---

* Գծակետային ծածկագրով կարդացվում է «Զաքարայ գրիչ»։

** Եղրայրայիր ծածկագրով (նշված տառի փոխարեն պետք է կարդալ այբբենական հերթականությամբ նրա նախորդ կամ հետորդ տառը) կարդացվում է՝ «յիշեցէք յաղաւթս»։

*որոյ յերես անկեալ աղաչեմ զձեզ աստուած-ողորմի ասել ինձ, և ծնօղաց իմոց՝ հօրն* Ատոմին *և մաւրն* Խոնանին*, *և ամենայն երախտաւորաց իմոց, ամէն։*

## 12

### *ԱՂՕԹԱԳԻՐՔ*

*Երևան 8621*

*Գրիչ՝* Մկրտիչ
*Վայր՝* Սայլաւ անապատ

*...Արդ, գրեցաւ սա ի վանսն որ կոչի* Սայլաւ անապատ**, *ընդ հովա-*
*նեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Կարապետիս և սուրբ Գրիգոր Լու-*
140ա *սաւորչիս, // ի թվականիս Հայոց ՋԼ. (1481), ձեռամբ մեղսամած և*
*անարհեստ գրչի* Մկրտիչ *աբեղայի, որ զանունս ունիմ և ոչ գործս, այլ*
*յույժ վիրաւորեալ եմ ի սատանայէ։*
*Արդ, ո՛վ դասք քահանայից և երամք կուսակրաւն վեհից, յորժամ*
*հանդիպիք սուրբ և աստուածախօս մատենիս կարդալով կամ աւրինա-*
140բ *կելով յիշեցէք ի սրբանուէր // յաղօթս ձեր զստացող սորա****։*

## 13

### *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Հ. Ոսկեան, Վասպուրականի-Վանի*
*վանքերը, 1940 թ., էջ 264*

*Վայր՝* Սայլաւ անապատ

*Գրեցաւ «ի վանս որ կոչի* Սայլաւ *անապատ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի եւ սուրբ Կարապետի եւ սուրբ Գրիգոր Լուսաւորչի, ի թվականիս Հայոց ՋԼ. (1481)»։*

## 14

### *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Գ. Սրուանձտեանց «Թորոս Աղբար» Բ., էջ 444—445*
*Տիգրանակերտ, ս. Կիրակոս եկեղեցի*

*Գրիչ՝* Արիստակէս
*Վայր՝* Խոյալու վանք

*Գրեալ ի թվ. Հայոց ՋԼ. (1481), յաստուածունակ և ի հռչակաւոր վանքս* Խոյալու, *ի դուռս սուրբ Գէորգայ, յառաջնորդութեան* Գրիգոր *րաբունապետի, որ զտիւ և զգիշեր ի խորս աստուածային տառից դեգերելով վասն մեր՝ առնելով և ուսուցանելով զամենեսեան... [ձեռամբ] անարուեստ գրչի* Արիստակէս *պիտակ անուն աբեղայի...*

---

* *Անվան «ա» տառը ջնջված է, կարելի է կարդալ նաև «Խոնդնին»։*

** *Վանի Սալնապատի ս. Գրիգոր վանքն է. կոչվել է նաև Սալն անապատ։*

*** *Ստացողի անվան և ստացման հանգամանքների գրանցման համար տեղ է թողնված, որի վրա, 1514 թվականին, Մարտիրոս անունով հետագա ստացողը գրել է իր հիշատակարանը (նրանն է նաև 144բ—145բ էջերի հիշատակարանը)։*



2—271





15

## ՄԱՇՏՈՑ ՁԵՌՆԱԴՐՈՒԹԵԱՆ

*Երևան 9671*

*Գրիչ՝* Առաքել
*վայր՝* Աւագ վանք

ա

12ա *Զստացուղ գրոցս զտէր* Յոհաննէս *եպիսկոպոսն, և զիւրսն, և զմեղաւք մեռեալ ոգիս՝ զ*Առաքել *գրիչս յիշեցէք ի Քրիստոս։*

բ

65ա *...Արդ, գրեցաւ եկեղեցաւրհնէքս, աւաղանաւրհնել, դուռն դնելոյ, պղծել տաճարին, հանդերձի և սպասք աւրհնելոյ ի թվ. ՋԼ. (1481), ձեռամբ մեղսամակարդ և անարժան* Առաքել *աբեղի, ի* Աւագ վանք*, ի դուռն սուրբ Առաքելոցն, ի վայելումն տէր* Յոհաննէս *եպիսկոպոսին։ Աղաչեմ զձեզ, որք հանդիպիք կամ կարդալով կամ աւրինակելով, յիշեսջիք ի սուրբ յաղաւթս ձեր, և աստուած ձեզ ողորմեսցի. ամէն։*

գ

151բ *...Գրեցաւ ձեռնադրութիւնս սպասաւորաց եկեղեցոյ ի թվ. ՋԼ. (1481), ձեռամբ մեղսամակարդ և անարժան ոգոյ՝ յետնոյս ի կարգէ կրաւնաւորաց՝ նուաստ անձին* Առաքելի*, ի* Աւագ վանք*, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ Կարապետին և սուրբ Առաքելոցն և Յովանէս վարդապետի, ի վայելումն տէր* Յոհաննէս *եպիսկոպոսին։ Գրեցի ես՝* Առաքել *սուտանուն աբեղայս, յիշատակ տէր* Յոհանէս *եպիսկոպոսին, ինձ և ծնաւղաց իմոց։ Աղաչեմ զձեզ որք հանդիպիք կամ կարդալով ///*

16

## ՇԱՐԱԿՆՈՑ

*Զմմառ, Անտոնեան հաւաքածոյ 153*

*Գրիչ՝* Առաքել
*վայր՝* Աւագ վանք

311բ *...Արդ, գրեցաւ Շարակնոցս ի լաւ և յընտիր աւրինակէ, թվ. ՋԼ. (1481), ի սուրբ անապատս, որ կոչի* Աւագ վանք*, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և սուրբ // Կարապետին, և սուրբ Առաքելոցս, առ ոտս* Յովաննէս *քաջումապետին, յառաջնորդութիւն տէր* Յոհաննէս *եպիսկոպոսին, ձեռամբ անարհեստ գրչի* Առաքել *աբեղի...*

17

ՃԱՇՈՑ

«Վոլոս», 1906, էջ 144,
Թավլուանի ս. Թորոս

Գրիչ՝ Յովանէս Նաղաշ
վայր՝ Կեսարիոյ գաւառ, ի վանս
Գրիգորի Նիւսացւոյ

...Արդ, գրեցաւ Տարեգիրքս ի թուականիս... ՋԼ. (1481), ձեռամբ տէր Յովանէս Նաղաշին և աշակերտին իւրոյ Ստեփաննոս մեղաւք թաղձեալ ոգւոյն, ի գաւառս Կեսարիոյ, ի սցւրբ ուխտս՝ որ է աթոռ սրբոյն Գրիգորի Նիւսացւոյ, ընդ հովանեաւ սուրբ Գրիգորի Նիւսացւոյն, և սուրբ Թէոդորոսի զինւորին, և սուրբ Յակոբայ Մծբնայ հայրապետին, և սուրբ Ստեփաննոսի Նախավկային և Մեռկերիոսի զինուորին, և այլ բազում սուրբ նշխարացս և մասանցս, որ աստ կան հաւաքեալ, ի հայրապետութեան տէր Ստեփաննոսի, և յեպիսկոպոսութեան այսմ նահանգի տէր Կիրակոսի [և] տէր Անդրէասի:

Արդ, ի յայսմ... ժամանակիս փափաք եղեալ ամենայն ալրհնութեան արժանաւոր պարոն Էէլպաշի Էմին-պէկն, և իւր մայրն Հռիփսիմէն այսմ հոգիաբուղխ և լուսազարդ և ծաղկաւէտ բուրաստանիս, և ետուն գրել զսա ի հալալ արդեանցն իւրեանց՝ յիշատակ անջնջելի յամեբամս ժամանակաց հաւրն իւրոյ պարոն Թո[րո]սին, և մայր իւրոյ խաթուն Հռիփսիմէ. և եղբաւր իւրոյ Ըռստակէսին և Մաքէոսին, և փոքր եղբաւրն Էտիլ-պէկին, որ յայսմ ամի վախճանեցաւ ի Քրիստոս և սուգ մեծ եթող իւր ծնաւղացն և իւր ընտանեացն, և քուերն Ճաւճարին, և կողակցացն իւրոց Պաղտատին և Սաւեիային և Վարդեճատին, և զաւակաց իւրոց երիցկնոջն, և Խուանդին, և Ըռըստակէսին, և Շնոււր-Պարոնին, և Մաքէոսին և այլոց, որ ի Քրիստոս են հանգուցեալ՝ Խովանդին, աստուած ողորմի իւր հոգւոյն, ամէն։

18

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՔԵՐԱԿԱՆԻՆ ՅՈՎՀԱՆՆԻՍԻ ԵՐԶՆԿԱՑԻՈՅ

Հ. Քյուրդյանի հավաքածու 17

Գրիչ՝ Խուբլուպէկ

Թվին ՋԼ. (1481) Դեկտ. ժէ. (17) օրն։

Պարոն Թօլաք պարծանք ազգիս,
Որ զուն յունիս անուն բարի,
Խելօք խիկար հեղահոգի,
Մէշ յաշխարհի ես զովելի։
Պարոն Ջախնոյն է քո որդի՝
Քեզ յիշատակ լինի բարի,
Որ ժառանգէ ըղհայրենի.
Ջաւակ նորա յոյժ բազմացի

*Որպէս յաւազ յեզր ի ծովի,*
*Կամ որպէս յաստղք, որ ոչ թուի,*
*Նոյնպէս լիցի պաւակ նորին,*
*Որ ամենայն ազգաց զովի.*
*Ես* խութլապէկս *եմ անարժան...*

19

*ՄԱՆՐՈԻՍՄՈԻՆՔ*

**Երևան 6107**

*Հետ. ստացող՝* Գրիգոր

234ա *Արդ, աղաչեմ զմանկունքդ սուրբ եկեղեցոյ, որք հանդիպիք զարմանալի տետրակիս յիշեցէք ի Քրիստոս զանարժան կրաւնաւորս* Գրիգոր, *որ ստացայ զսուրբ գիրքս յիշատակ հոգոյ իմոյ, և մարմնաւոր ծնաւղացն իմոց* Ներսէսին *և* Թանկխաթունին, *և ամենայն արեան մերձաւորաց իմոց, և եղբօրն իմոյ* Աբրահամին, *և ամենայն երախտաւորաց իմոց՝ հոգևորաց և մարմնաւորաց, ամէն։ Եւ լի բերանով աստուած-ողորմի ասացէք և աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։ Թվ. ՋԼ. (1481)։*

234բ *Այլ և զմեծ պապն իմ զտէր* Դաւիթ *և զ*Թումայ *քահանայն, որ տղա հասակաւ փոխեցաւ ի Քրիստոս, և զմայրն իւր զ*Աւագ *յիշեցէք ի Քրիստոս։*

*Դարձեալ աղաչեմ յիշել ի տէր աստուած զհեզահոգի, զգեղեցկատիպ և զհրեշտակայնման զ*Աւետիս *արեղայն՝ զ*Մոկացին, *որ եբեր զտետրս ի* Կաֆայէն՝ *ի վերին աշխարհս Հայոց. մասն բարեաց եղիցի նմայ ի տեառնէ աստուծոյ, ամէն։*

20

*ԺՈՂՈՎԱԾՈԻ*

**Երևան 1548**

*Ի թի[ւ]ն Հայոց ՋԼ. (1481) մայիս ի Դ. (4) մեռօ սուլտան* Մուհամմատն:

## 21

## ՈՂԲ ՄԱՅՐԱՔԱՂԱՔԻՆ ԵՋԸՆԿՈՒ, ՈՐ ՇԱՐԺ ԵՂԱՒ ԵՒ ԿՈՐԾԱՆԵՑԱՒ

Տ. Պալեան, Հայ աշուղներ, Ա, 1911, էջ 108—110

*Հեղինակ՝* Մրսկին Երէց Անուշպակցի

*Յինն հարիւր Հայոց թըվական,*
*Երեսուն և մէկ թիւն ի լըման (1482)*
*Զարմանալի բան մի եղաւ*
*Մայրաքաղաքն ի յԵզընկան:*
*Յանկարծակի մահու դիպան*
*Պատուհասի հանդիպեցան,*
*Սոդոմացոց նըման եղան,*
*Ներքև հողին զընտանեցան։*
*Յորժամ քաղաքն ի թունտ եղաւ*
*Եւ մանր ու մեծ ի դող եղաւ,*
*Թէ վայլէ մեզ հազար բերան*
*Մեք չը կեցանք ի պատուհրան։*
*Տէրըն յառաջ արար զայս բան,*
*Միթէ՞ ըզմեզըն մոռանան,*
*Եւս առաւել պոռընկեցան,*
*Պոռընկութեամբ նոքա կորեան։*
*Յիշոցքն արար ըզ զԵզընկան,*
*Որ յաստուծոյ աչացն եղան,*
*Քահանայիւքըն միաբան*
*Ներքև հողին զընտանեցան։*
*Կին մի կանչեց, թէ սուրբ Ներշան*
*Ըմ դու պահէ զիմ մէկ տըղան,*
*Աստուած լըսեց նորա ձայնին,*
*Որ փըրկեցան մայրն ու տըղան։*
*Ի տասն ու հինկ օրն ի լըման,*
*Ապա գըտան զայն մէկ տըղան,*
*Լալով կ՚երթար դէպ ի շուկան*
*Թ՚իմ հայրն ու մայրն ինչպէս եղան։*
*Զայն գեղեցիկ սարկաւագերն,*
*Որ չէ տեսեր աչըք մարդկան*
*Բեթլէէմի մանկանց նըման*
*Ներքև գետնին զընտանեցան.*
*Զայն գեղեցիկ աղջըկունքն և կին*

*Վայրի եղունքն էին նըման*
*Ներքև հողին թարշամեցան։*
*Ո՞վ է տեսեր այնպէս խեղճ բան,*
*Որ ճանաչեց հայրն ըզտըղան,*
*Նոր պըսակած հարսն ու փեսան*
*Ի մէկ մէկէ բաժանեցան։*
*Հազար աւաղ ըզ* զնզըՆկան
*Մէջ աշխարհիս է Հ*այաստան,
*Վաճառականաց էր օթևան։*
*Հազար աւաղ ղան ճոխ մանկտիքն,*
*Որ միաբան կոտորեցան.*
*Ամէնն մընաց հողաբերան,*
*Ներքև հողին ղընտանեցան։*
*Աստուծոյ խնամքն վերացան,*
*Տես թ՛ինչ արար ըզ* զնզըՆկան,
*Որ ոչ ի ծերըն խընայեց*
*'Ի ոչ ի մանուկն `ւ ոչ երեխան։*
*Քահանայիցըն ոչ խըղճաց,*
*Ոչ ժողովուրդն էր միաբան*
*Ջեկեղեցիքն կործանեց*
*Եղուկ է մեզ հազար բերան։*
*Բոլոր քաղաքն աւերեցաւ,*
*Ի յանդընդոց երկիր շարժաւ,*
*Երկու տարպայ հինգ հազարաւ,*
*Ներքև հողոյն ըընտանեցաւ,*
Մըսկին *երէց* Անուշպակցի
*Մեղօք լիի և անարժան*
*Այդ հերիք է զինչ գործեցիր*
*Դարձիր և լեր դու փօշիման։*
*Ես աղաչեմ զձեզ միաբան,*
*Որ չըր կըտրէք զՏէր մեղան,*
*Մեղքըն քակեց ըզ* զնզըՆկան,
*Այս աշխարհիս է մեծ նըշան։*

## 22

## ԱՆԳԻՏԱՑ ԱՆՊԷՏ ԱՄԻՐԴՈՎԼԱԹԻ ԱՄԱՍԻԱՑԻՈՅ

*«Անգիտաց անպէտ», էջ 1—3, 25, 623—624*

*Երևան 457**

*Հեղինակ՝* Ամիրդովլաթ Ամասիացի

ա.

*Շնորհիւ տեառն և ողորմութեամբն արարչին և անմահին աստուծոյ, որ պարգևող է ամենայն բարեաց և բաշխաւղ է ամենայն շնորհաց, և տուող է զաւրութիւն և բնութիւն և աւգտութիւն ամենայն ստեղծուածոց՝*

* *Ամիրդովլաթի այս հիշատակարանը հրատարակված է մի քանի անգամ. տե՛ս և հմմտ. ՀԱ, 1892 թ., էջ 83—85, Բրիտ. թնգ.* Or. *3712, 48 134, էջ 315—317, ՍՑՀ, հտ. Բ. 5, էջ 37—39 ևն։*

անասնոց, գազանաց, և բուսոց, և տնկոց, և զուսումն և զիմաստութիւն ի մարդն տպաւորեաց, և պատուական արար ի մէջ ամենայն ստեղծուածոց և զամենայն շնորհ և զհմտութիւն յինքն եդիր, և սքայութիւն երետ տէր աստուած մարդկան, որ զամենայն հանճարեղութիւն ի գործ արկանէ. թէ աստուածպաշտութիւն է, թէ իմաստութիւն է, և թէ աստեղաբաշխութիւն է, և թէ երկրաչափութիւն է, և թէ թուականութիւն է, և թէ բժշկութիւն է, և թէ երաժշտական* արհեստն է, և թէ քերականութեան արհեստն է։ Զայս ամենայն իմաստութիւնս ի մարդկային բնութիւն տպաւորեաց աստուած** և հասու արար*** ամենայն ստեղծուածոց, որ թէ խոտ է, որ թէ բոյս է, որ թէ տունկ է, որ թէ ծառ է, որ թէ անասուն է, որ թէ քարինք են որ ի գետնէն կու ելանեն, և որ անասնոց զաւդուածքն է, և որ մանանայ է՝ ի յերկնիցն կու իջանէ. և որ ոք այլ կան որ ի ծովէն կու ելանեն և կամ ի գետնէն կու ելանեն։ Զայս ամենայն իրացս զբնութիւնն, և զզօրութիւնն, և զօգտութիւնն, և զչարն, և զչարին խափանումն, զամէնն տէր աստուած մարդկան իմացուցեր է****, փառք նորա պարգևատու աստուածութեանն յաւիտեանս, ամէն։

Աւրհնեմք զարարիչն աստուած, թէ կամի զբանս կատարէ.
Գրենք զդեղերուն անուանքն, սկսաք յայբուբենէ,
Որ է բժշկաց արուեստ և բառեր, ի աւգտութենէ։
Աւարտի սա հինգ լեզուաւ ի Հայոց թըվականն ՇԻՆէ. (1478)*****։

Ի ժամանակս թագաւորութեանն խմայելացւոց ազգին սարակինոսաց, ի յազգէն Հագարու, որ նուաճեալ էր թագաւորութիւնն Յունաց ի մայրաքաղաքն Կոստանդինուպալիս, որ անխաղթ և անսասան կենան այն քրիստոնեայք, որ անդ են բնակեալ. ի թագաւորութեանն սուլթան Մուհամմատ խանին, և կաթողիկոսութիւն յէջմիածնայ տէր****** Սարգսի, և հայրապետութեան ի մայրաքաղաքն Կոստանդնուպօլիս տէր Նիկողայոսին******* և ի թվականութեանս Հայոց վերոյգրեալ ՇԻՆէ. կարմիր գրին********, առ ոտն սրբոյն Նիկողայոս սքանչելագործ և արագահաս հայրապետին։

Թարգմանեցաւ այս գիրքս մէկ մէկ դեղերուն զաւրութիւնն ի բազում ազգաց լեզուաց, ձեռամբ մեղաւոր, անպիտան և անիմաստ բժշկին՝ Ամասիացի Ամիրտովլաթին*********, առ ի յիշատակ իւր և ամենայն քրիստոնէից. և որ կարդան կամ աւրինակեն՝ յիշեն հայր մեղային մի, և Քրիստոս յիշէ զինքեանս********** ի միւսանգամ գալուստն, ամէն։

* Տպ. «երաժշտականութեան»։
** № 457« տպաւորեալ է» փխ «տպաւորեաց աստուած»։
*** № 457 «եղեալ» փխ «արար»։
**** Տպ. «յիմացուցել է»։
***** Այսինքն՝ Շ—500+Ի—20+Ն—400+Է—7, որ է՝ 927 թ. Հայոց, կամ 1478 թ.՝ ըստ մեր թվարկության։
****** Տպ. «ի հայրապետութեան Տեառն Սարգսի սրբոյ էջմիածնի փխ «կաթողիկոսութեան էջմիածնայ տէր Սարգսի»։
******* Տպ. «Եւ յեպիսկոպոսութեան տեառն Նիկողայոսի, մայրաքաղաքին Կոստանդինուպալսի»։
******** «ՇԻՆէ» (1478) թվականը գրված է կարմիր թանաքով։
********* Տպ. «Ամիրտովլաթին Ամասիացւոյ»։
********** № 457 «զինքս»։

*Եւ զայս գիրքս շինեցաք և ստուգաբանեցաք* շատ բառերով և պատմութէններով**, զի որք կարդան՝ հեշտութեամբ իմանան. և անպէտն ոչ ւգտի ի սմանէ։ Եւ անուանեցաք զայս գրոցս անուն՝ Անգիտաց անպէտ. և պարտական եմ գիտնականացն և ծառայ ամենայն փիլիսոփայիցն։*

*Եղիր հետևող իմաստութեան հետ*
*Եթէ չուսանիս՝ բժիշկ ես անգէտ,*
*Լինիս դու գիտուն, արա բանիս պէտ*
*Գրոցս անունն է Անգէտի անպէտ։*

*Ասէ իմաստունն Սողոմոն, թէ գիտութիւնն լոյս է, և անգիտութիւնն խաւար է, աստուած լոյս է, և սատանայ՝ խաւար է. և ով որ զուսումն ունի՝ զլոյսն ունի, և այս բժշկութեան արհեստս ի գիտնականութենէն մաս մըն է և հանապազ զմարգոյն կենդանութիւնն առողջ կուզէ։ Եւ որ չէ առողջ մարմնով ոչ կարէ ծառայել աստուծոյ հոգւով։ Եւ ի յայս բանիցս առին առաջին բժշկապետքն մեր՝ մեծն* Մխիթար *բժիշկն, և* Ահարոն *բժիշկն, և որդին նորա* Ստեփանոս *բժիշկն, և տոհմն նոցա* Ճոշլին *բժիշկն, և* Սարգիս *բժիշկն, և* Յակոբ *բժիշկն, և* Դեղին *բժիշկն, և* Սիմաւոն *բժիշկն, և* Վահրամ *բժիշկն, որ շատ գրեանք շիներ էին վասն դեղերուն զաւրութեանն և օգտութեանն և կարճառաւտ էին արել. և թէ բնութեամբ կու գիտէաք, նա զէութիւնն չի գիտէաք, և թէ զաւրութիւնն գիտնայեաք՝ զբնութիւն չէաք գիտնալ. և կար որ զանուանքն գիտէաք՝ և զինքն չի գիտէաք, և կար որ*
Յա *զանունն գիտէաք՝ և ոչ զինքն և ոչ // զիւր փոխանն։ Եւ ի վերայ այսր հանապազ մեզ ի պակասութիւն կար վասն դեղերուն, և այս պատճառաւ՝ այլազգեաց կարաւտ էաք։*

*Եւ յետոյ գնացաք, ի շուրջ եկաք բազում քաղաքանի, և զծովն անցաք, և շուրջ եկի զաշխարհն* Մակեդոնացոց, *և եկայ բնակեցայ ի մայրաքաղաքն* Կոստանդինուպալիս. *և հաւաքեցաք բազում գրեանք ի յայլազգեաց, և աշխատեցաք և ուսաք զբառերն և զանուանքն ազգի ազգի, և զփոխանն, և զառնելուն չափն, հինգ լեզուաւ, կամաւքն աստուծոյ։*

*Գիտացիր, որ զամէն լեզու մէկ մէկ նշանագիր արարաք, որ է այս նշանօքն՝ յարապկերէն -յ, պարսկերէն -պ, թուրքերէն -*թ, *հայերէն -*ն, *հոռմերէն -*նռ, *ասորին -*աս, *լաթինն -*լ, *ֆռանկն -*ֆ*։ Զայս անոր համար գրափակ արարաք*** վասն խրթութեան համար, որ չի շատաբանի։ Եւ այլ անուանք բժշկապետացն այս են՝* Բտ*—Բագարատն,* Դս*—Գեղիանոսն,* Սին*—Սինէայ որդին,* Դս*—Դիոսկրիտոսն,* Իպն*—Իպն ի Պայտարն,* Պտ*—Պատէհին։ Վասն այնորիկ կարճառօտ լինի այս, և այս բժշկապետաց անուանքն, որ պիտի յիշուի ի դեղերուն զօրութեանցն ի մէջն է կամաւքն աստուծոյ, ամէն։*

*...Եւ այլ ասենք թէ է՞ր եղաւ այս գիրքս աշխարհաբառ։ Եւ այս երեք պատճառի։ Ա. այն է՝ որ ամենայն մարդ չկարէ քերական կարդալ, և կամ*

* Տպ. «ստուգեցաք»։
** Տպ. «պատմութիւններով»։
*** Տպ. «արաք»։

*արտաքին գրեանք, որ զայս խրթին բաներն յիմանայ. այնոր համար եղաւ աշխարհաբառ։ Եւ Բ. պատճառ այն է աշխարհաբառ լինալուն, որ այլ բառեր խառնեցաք, որ մեք ի տաճկաց* բառն գտաք, և պիտուան էր այս բառերս մեզի, վասն տաճկաց ստածումն առնելուն համար։ Եւ Գ. պատճառ այն է, որ կայ ի այս գիրքս յ-էն, պ-էն, ճռ-էն, թ-էն, անոր համար՝ որ այս գիրքս ի այլ լեզուէ փոխել է. անոր համար շատ բառեր կայ ի այս գիրքս, և է աշխարհաբառ։*

*Եւ թէ աստուած աջողէ, գրոցս ի վերջքն յիշեմ մէկ աղէկ բառգիրք մըն, որ զինչ որ դժար բառ կայ՝ հայ լեզուաւ պատմէ, զի որ կարդացողն դիւրութեամբ հասկնայ, և ուսնողն դիւրութեամբ ուսանի, և իսկի ծածուկ իրք չմնայ, և յայտնի...*

Բ

*Փառք քեզ տէր և արարիչ, մեզ ողորմեայ.*
*Որ տուող ես մարդկային միտք և սգայ.*
*Քու ստեղծուածն են ի յաշխարհս զինչ որ կայ.*
*Ամենայն շունչ կենդանու քեզ փառք կու գայ։*
*Գոհանամք ի քէն Քրիստոս, անմահ արքայ,*
*Որ տուիր ինձ ժամանակ մինչև ի սմայ*
*Զորս տարի զտիւ և զգիշեր աշխատեցայ.*
*Ի բազում աւրինակաց աւարտի սայ,*
*Գրեցի, կատարեցի զինչ բան որ կայ,*
*Ի բառից բժշկութեան զինչ որ գտայ,*
*Աւարտեմ զսայ հինգ լեզուաւ, զինչ որ ուսայ,*
*Ի հայոց, և ի յունաց, և յարապկայ,*
*Ի պարսից, և ի թուրքաց, քիչ լադինայ,*
*Ի հայոցն եմ արարել սկիզբն դորայ,*
*Ի վերայ այբուբենից զինչ դեղ որ կայ,*
*Եւ զֆէն այլ կու յիշեմ ի վերջքն դորայ։*
*Ես բժիշկ* Ամիրտովլաթ, *հայրս* Եղիայ,
*Որ ծնեալ եմ ի քաղաքն* Ամասիայ:
*Ես հիմայ եմ բնակել ի* Բիւզանդիայ,
*Որ իսկի դորա նման քաղաք չկայ,*
*Որ աթոռն է թուրք ազգին հիմակ որ կայ,*
*Որ ասեն տաճիկ լեզուաւ՝* Կոստանդեայ:
*Գծողին և շինողին ով որ կարդայ,*
*Ողորմի Քրիստոս որ ասէ, թէ հայր մեղայ,*
*Որ ի բանս այլ սլակաս իրք չի մնայ։*
*Փառք քեզ, տէր, Հայոց թուականըն ԼՄՆԱՅ. (1482)**։*

* Ամիրդովլաթը «տաճկաց» ասելով հասկանում է «արաբացոց»։

** Այսինքն՝ Լ—30+Մ—200+Ն—400+Ա—1+Յ—300, որ է 931 թ. Հայոց, կամ 1482 թ. ըստ մեր թվարկության։

## 23

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 7770**

*Գրիչ՝* Աբրահամ
*Վայր՝* Վայոց-ձոր, Բոլորբերդոյ անապատ

ա

251բ *...Արդ, գրեցաւ այս ձոյլ ոսկի,*
*Որ փոխանորդ է Յիսուսի*
*Ձեռամբ իմոյս՝ անարժանի,*
*Որ* Աբրահամ *անունս կոչի.*
*Ստումգանող սլատուիրանի*
*Եւ անցաւոր տեառն աւրինի,*
*Սուտանուն քահանայի*
*Եւ հեք, փանաք, չիք աբեղի։*
*Յաբեթականս տաւմարի*
*Եւ հայկազեան թվականի*
*Իննհարիւր և երեսունի,*
*Նայ և մի ամ այժմ աւելի (1482).*
*Յերկիրս այս* Վայիձորի,
*Որ* Եղեգեաց *գաւառ կոչի,*
Բոլորբերդոյ *յանապ[ատ]ի,*
*Ի յահագին բարձր սարի,*
*Ի դրան սուրբ մօրս Աստուածածնի*
*Եւ այլ սրբոցս, որ այս տեղի։*
*Քանզի ձեռամբ իմ գրեցի,*
252ա *Նա և ծաղկօք // զարդարեցի*
*Եւ աւարտեալ ևս կազմեցի՝*
*Ոչ իմ կարեաւք, այլ Յիսուսի.*
*Ի վայելումն բարեաւք բարի*
Յակոբ *ընտրեալ քահանայի*
*Եւ զաւակացն իւր ցանկալի՝*
*Տիաւք տղայք, ոյք են մանկտի՝*
Ջաւէրսի, Մաթէոսի,
Մարտիրոսի, Ստեփանոսի:
*Ի դառնութեան ժամանակի,*
*Որք եմք նեղեալ ի ձեռս տաճկի,*
*Ի խանութեան* Յաղուպ-բեակի,
*Որ է այժմ ի* Թավրէժ *թախտի*
*Համբաւ եղև ի յայսմ ամի,*
*Թէ հաճ նոցա հրով կայրի։*

*Ու էր հայրապետ Հայոց զարմի*
*Տէր հոգևոր՝* Սարգիս *կոչի,*
*Հեզ և խոնարհ ըստ Մովսէսի,*
*Համանման տէր Գրիգորի։*
*Եւ երջանիկ և տէր ահրի*
*Եպիսկոպոս յայսմ գաւառի*
*Տեառն* Յոհաննէս՝ *սուրբ և բարի*
*Եւ* Ստեփաննոս *եպիսկոպոսի,*
*Եւ բաբունեացս ցանկալի՝*
*Մեծն* Սարգիս *յոյժ գովելի,*
*Եւ ի սորին աշակերտի՝*
Աւագտիրի *և* Յակոբի
*Եւ* Եսայի *Նորաբուսի,*
*Որք են շնորհօք հոգոյն լի։*

*Արդ, աղաչեմ զձեզ, ո՛վ սուրբ ընդերձողք և հանդիպողք և գաղափարողք սուրբ Աւետարանիս, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զմիաբանք սուրբ ուխտիս՝ զհոգևոր հայրս իմ և զուսուցիչն և զառաջնորդ սուրբ*
252բ *տեղեացս* զԱւագակէր *վարդապետն, // զտէր* Ստեփաննոս *սուրբ աբեղայս և դասավար, զտէր* Զաքարիա *հէրպետ և մարմնաւոր եղբայր իմ, զտէր* Դաւիթ *աւագ եղբայրն իմ՝ յոյժ շնորհալի, և աւաքէրէց* Գեղէից *զտէր* Նանապետ *աշակերտս մեր կուսակրաւն, որ զթ*...*խթս կոկեաց, զտէր* Կոստանդն, *զտէր* Ալեքսանոս *փակակալն սուրբ եկեղեցոյս, զտէր* Աթանէսն, *զ*Աղաչան *դպիրն և զ*Ոհան:

*Արդ, դարձեալ յերեսս անկեալ աղաչեմ զձեզ յիշել ի տէր Յիսուս Քրիստոս զստացաւղ սորա զտէր* Յակոբ *քահանայն, և զկենակիցն իւր զ*Թանկսուղն, *և զորդիքն իւր. զի ստացաւ զսա ի հալալ ընչից իւրոց անձինց յիշատակ իւր և ծնաւղացն... Եւ ետ գրել իմոյս տկարի ի վայելումն անձին իւրո, և որդոցն, և եղբարցն իւրոց։ Յիշեցէք զտէր* Յակոբն, *զհայրն նորա զ*Խաճակն, *զմայրն նորա զ*Թամիկն *և զեղբարքն՝ զ*Մարգարէն, *զ*Փիրիկն, *զ*Մարկոսն, *զ*Ջանիարն, *զ*Կոստանդիանոսն, *և զքորքն նորա՝ զ*Հայսցն *և զ*Նուշն, *և զհաւրեղբայրն նորա՝ զ*Յովանէսն, *և զորդիքն նորա* զՍիմէոնն, զՈսկին, *զ*Դաւզն, *զ*Պաստամն, *և զմայրն սոցա զ*Թուքիկն, *ամէն։*

253ա *Եւ զիս՝ զանարժան գրիչս, և զծնօղսն իմ* զՏէրտէրն *և զ*Գոնցայն, *և զեղբարքն իմ զ*Մարգարէն *և զ*Ակոբ *միայնակեացն։ Եւ եթէ միաբան ասատուած-ողորմի ասէք՝ միոյն հազարապատիկ առցէք զողորմութիւն ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, ամէն և եղիցի։*

*Եւ սղալանաց և խոշորութեան գրոյս անմեղադիր լերուք, զի կար մեր այս էր։*



* *Ծածկագրով գրված է «Աբրահամ գրիչ»։*

Բ

116բ ԶՅակոբ քահանայն՝ ըստացւող սուրբ Աւետարանիս, և զծնաւղսն, և զեղբայրսն, և զազգականն նորա, և զԱրխաւշ տանուտէրն, և զիս՝ զանարժան Աբրահամ գրիչ՝ ծնաւղաւք և վարդապետաւք, յիշեցէք յողորմութիւն

աստուծոյ, նոյն և ձեզ ողորմեսցի, ա ճ ա ճ*

Գ

192ա Զանարժան Աբրահամ յիշեա։ Սուրբ վիրապի տանին աւարտեցաւ, յաւուրս շաբաթ, քաղոց Գ. (3), մարտ ԻԳ. (23), թվ. ՋԼԱ. (1482)։

## 24

## ՇԱՐԱԿՆՈՑ

Վենետիկ 884

Գրիչ՝ Վրթանէս
վայր՝ Արարատեան երկիր, Առջառերկ
անապատ

...Ձեռամբ Վրթանէս կրաւնաւորի, յօրինակէ Գրիգորի Խուլ կոչեցեալ, յանապատն Առջառերկ, առ ոտս սուրբ Սարգսի և Յակովբոսի, ի հայրապետութեան տեառն Սարգսի էջմիածնի, և մերոյ եպիսկոպոսի տէր Մանուէլի, ի ղանութեան Յաղուպ-բէկին, ի թագաւորութեան Վրաց Կոստանդին, ի յերկիրս Արարատեան, ի խնդրոյ տէր Սարգիս կրօնաւորի Հայոց-թառոյ։

## 25

## ԱՒԵՏԱՐԱՆ

ИВАН, С—25, նաև ՀԱ, 1892, էջ 84—85

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ Արծկէ

289բ ...Որոյ ցանկացող եղեալ սուրբ Աւետարանիս աստուածասէր և պատուական՝ ամենայն արհնութեանց արժանաւոր Արուան** աղայն և որդի նորա [ Արղուշայն, և ստացան զաստուածաքան սուրբ Աւետարանս յիշատակ հոգւոց իւրեանց և խաթուն մաւրն Հեղինին։ Որ և դուք՝ սուրբ մանկունք եկեղեցւոյ, լի բերանով աստուած-ողորմի ասացէք Արուան աղային և իւր կենակցին՝ Հեղինին, և որդին իւր Արղուշայի ]***։

Եւ ես՝ անպիտանս յամենայնի մեղուցեալ գրիչս Յովանէս տեսի զեռափափագ սէր և զջան, զոր ունէր հետ սուրբ Աւետարանիս (Արուան աղայն), ձեռնարկեալ գրեցի զսա ի քաղաքս Արծկէ, ընդ հովանեաւ ամենամաքուր սուրբ Աստուածածնի տաճարիս և սուրբ Ստեփանոսի նախա-

* Կարդա՝ «ամէն»։
** Սկզբից գրված է եղել «Արղուան»
*** Փակագծերի մեջ առնված հատվածը գրված է այլ ձեռագրով։

վկայիս, ի հայրապետութեան տեառն Սարգսի՝ ընդհանիւր Հայոց կաթողիկոսի, իսկ յաշխարհակալութեան Աղուպ-բէկին, ի թվականիս մերում Ջ. և ԼԱ. (1482) ամին։

Դարձեալ... յիշեցէք ի Քրիստոս և լի բերանով աստուած ողորմի ասացէք պարոն Առուանին, և կենակցին իւրոյ Հեղինին, և ծաղկեալ որդւոյն իւրոյ Աղուշին. և իւր զաւակին Գրիգորիսին, այլ և ծնաւղաց Առուան աղային՝ պարոն Յախոյին և մօրն՝ Մառէրին...

## 26

## ՏՕՆԱԿԱՆ

Երևան 4869

Գրիչ՝ Յոհանէս
վայր՝ Կտուց կղզի

667ա ...Զոր և տեսեալ զայս ամենայն վայելչութիւնս հրաշից Յոհանէս
քահանայն, որ անուամբ միայն է և ոչ գործով, և բորբոքեցաւ ի սէրն
աստուածային՝ ցանկացաւ այսմ աստուածային գրոցս, որ կոչի Տօնական,
զոր ունի յինքեան զպատմութիւն և զգովասանութիւն տաւնից տնաւրինա-
կանացն Քրիստոսի աստուծոյ մերոյ, զյարութիւն փրկչին մերոյ, այլ և
զյիշատակ սուրբ և փառաւորեալ Աստուածածնին, և զարեամբ նահատա-
կեալ սուրբ մարտիրոսացն, այլ և զպատուէր քարոզութեանն յաւուրս
պահոց, զոր գրեցին սուրբ վարդապետք, զի հանապազ ընթեռնուն սուրբ
քահանայք՝ մանկունք եկեղեցոյ՝ ի լսելիս ուրհնեալ ժողովրդեանն, զի
լսելով զայս ամենայն խրատք պատուիրանացս և հաստատեսցին ի հա-
ւատս ուղղափառս, զոր ունին, և յիշեսցեն առաջի Քրիստոսի յաղաւթսն
667բ իւրեանց // զՅոհանէս քահանայն, և զծնօղսն իւր՝ զհայրն զՄուրատն և
մայրն զՄարգարիտն, և զհօրեղբայրքն իւր զԱստուածատուր քահանայն
և զէւատն և զԳրիգորն, և զքուերքն իւր՝ զՈսկին և զՋուհարն, զԽաթիբն և
զՇնօհւորն և զայլ ամենայն արեան մերձաւորքն՝ զկենդանին և զհանգու-
ցեալքն....

Եւ արդ, ես ամենամեղ և անարժան ծառա ծառայից աստուծոյ Յոհանէս անարհեստ գրիչ, որպէս ծառա հրաման առեալ ի տեառնէ և յանձն առի տկար անձամբ... և բազում աշխատանաւք հասուցի զսա յաւարտումն յաստուածընկալ սուրբ ուխտս, որ վերակոչի Կտուց, ընդ հովանեաւ սուրբ Խաչիս, և սուրբ Նշխարաց ճառագայթի ճրագ ճշմարտութեան սուրբ Կարապետիս, և սուրբ Աստուածածնիս, և սուրբՍտեփանոսիս, ի թուականիս Հայոց ՋԼԱ. (1482), ի հայրապետութեանն տեառն տէր Ստեփանոս կաթուղիկոսի, և բռնակալութեան աշխարհիս Աղուբէկին: Վասն որոյ բարեխաւսութեամբ սուրբ և փառաւորեալ աստուածածնին Մարիամու և աղաչանաւք ընդրելոց սրբոց քոց, Քրիստոս աստուած՝ քահանայապետն երկնաւոր, զպատուական կրօնաւորքն՝ զտէր Գրիգոր եպիսկոպոսն, և զՍարգիս եպիսկոպոսն, և զԽաչատուր վարպետն իմ, և զՅակոբ կրօնաւորն, և զՀայրապետ եպիսկոպոսն, և զՆերսէս կրօնաւորն, և զփոքր Խաչատուր կրօնաւորն՝ զհայրապետ վանացս, և զՍտեփանոս րաբունա-

պետն՝ զնորոգող սուրբ եկեղեցոյս սուրբ Կարապետի, և զՄինաս ծաղկող սուրբ գրոցս, որ ղարդարեալ պայծառացոյց, և զԿարապետ եկեղեցպան
668ա կրօնաւորն, և զայլ միեղէն եղբարքն առհասարակ՝ // զմեծ և զփոքրն՝ դասակից և մասնակից արասցէ ընդ սրբոց հայրապետացն և ճգնաւորացն և մարտիրոսացն, և սրբոց արդարոցն և նմանեաց նոցին, և զուրախարար ձայնն արձակելով առ սոսա, ե՞է՝ Եկայք ծառայք բարիք և հաւատարիմք. մտէք յուրախութիւն տեառն ձերոյ։

...Այլ և յիշեցէք զվարպետն իմ զԳրիգոր, որ զսակաւ գիրս ուսոյց մեզ. և աստուած յիշէ զյիշողքդ, ամէն։ Այլ և որ զսուրբ գիրքս լաւ պահէ և խնամ ածէ՝ ջնջեսցէ աստուած զձեռագիր յանցանաց իւրոց և գրէ ի դպրութիւն կենացն, ամէն։

Քրիստոս աստուած ողորմի Նիգարին, որ զգրոց թէրձան մանեց*։

## 27

## ԱԻԵՏԱՐԱՆ

Նոր Ջուղա 479, ՄՏՄ և ՍՏԱ

Գրիչ՝ Խաչատուր
վայր՝ Կտուց կղզի

ա

286ա— ...Յիշեցէք զԽաթունշանն, և զծնաւզսն իւր զխաւշայ Բաղշայիշն և
288բ զԱզիզխաթունն, և ղաւակսն իւր զԿարապետն, զԽըդրշէն և զՄաղսումն,... և զծնաւղքն իմ զՅովանէս և զԱսըլմէլիf, ...և զՍտեփաննոս հարազատ հոգոյ իմոյ սրբասէր աբեղայն։

Խաչատուր աբեղայս գրեցի զսուրբ Աւետարանս ի նեղքսագոյն յանապատիս ի յաստուածաբնակ կղզիս որ կոչի Կտուց, ընդ հովանեաւ սուրբ և սքանչելագործ և դիւահալած սուրբ Կարապետիս, և սուրբ Աստուածածնիս, և Գրիգորիս... Ի թվ. Հայոց ՋԼԱ. (1482)... Յիշեցէք զԽաթունշանն, և զքոյրն իւր զՄսրմէլէfն, և զհաւրեղբայրն իւր զԿարապետն, և զնորին զաւակն ղխօջա Գրիգորն, զՄիրիջանն և զԽօջաջանն և զԲէկիջանն**...

բ

141ա Զխաչատուր գծող սուրբ Աւետարանիս և զաշակերտն իմ Ստեփաննոս յիշեցէք։

գ

222բ ...Ես Կանայf (՞) ապաշխարողս ըստացայ աստուածաշունչ և սուրբ Աւետարանս ի հալալ ընչից իմոց, յիշատակ հոգւոյ իմոյ և ծնողաց իմոց՝ հաւր իմ Յեարիկ (՞) և մաւրն իմ Յուստիանա, և եղբարսըն իմ՝ Պետրոս արհեպիսկոպոս, և Պաւղոս աբեղային, և Վարդանին, և Շանվելին, և Յունանին, Ողարին (՞), Մաթէոսին Ճ ամենայն արեան մերձաւորաց՝ կենդանեաց և ննջեցելոցն յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր, և աստուած զձեզ յիշէ, ամէն ·

* Վերջին նախադասությունը գրված է էջի ներքին լուսանցքում, մանր գրերով։
** Ա. հիշատակարանն ունի միայն Մ. Տեր-Մովսիսյանը։

Զմեղուցեալ տառապողս և զանհամեմատս ի գունդս մեղաւորաց զխաչատուր գծաւղ աղաչեմ յիշել ի տէր և զՍտեփաննոս աբեղայն, որ զթուխ[տ]ս կոկեաց...

...Արդ, կատարեցաւ աստուածախաւս և տիեզերաքարոզ Աւետարանս ի խնդրոյ... խօջա Էղիշին, որ ստացաւ զսուրբ Աւետարանս ի հալալ և յարդար վաստակոց իւրոց ի վայելումն մանկանց եկեղեցւոյ, և յիշատակ հոգւոյ իւրոյ և բարի ծնաւղացն, և աստուած ողորմի ասացէք*։

28

ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Տիրայր. Ցուցակ Օքսֆորդի Բոդլեան գրադարանի, Ms. Marsh 438 (I—III), Երևան, Մատենադարան «Անհատական արխիվներ», թղթ. 122, էջ 2006

Գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Խարբերդոյ երկիր,
Խուլայոյ վանք

Ա

590ա ...Գրեցաւ սուրբ գիրքս ի թուաբերութեանս Հայոց ՋԼԱ. (1482), ի հայրապետութեան տեառն տէր Սարգիս կաթողիկոսի ամենայն Հայոց, յերկիրս Խարբերդոյ, ի վանքս Խուլայո, ընդ հովանեաւ սրբոյ Գէորգեա զաւրավարիս և ամենասուրբ Աստուածածնիս և սուրբ Սարգսի՝ արագահաս աւգնականի, ի յառաջնորդութեան ուխտիս Գրիգորի՝ քաջ հռետորի և երջանիկ դիտապետի, ձեռամբ յոգնամեղ անարհեստ գրչի Մկրտիչ բանի սպասաւորի, ի խնդրոյ աստուածասէր և հաւատարիմ պարոն խաւճա Յակոբին, [զոր բազում փափագանօք ետ գրել զսուրբ գիրքս յիշատակ իւր, և ծնաւղացն իւրոյ՝ հօրն խօճայ Կուռնիպէկին և մօրն Տինարին, և Աղուբին, և եղբարցն Ավրանին, և Մուսեխին, և Կարապետին, և Կօնանին, այլ և կենակցին իւրոյ Մարիանէ, և որդւոցն Յօվաննէս սարկաւագին, և Սֆանտարին, և Յովլաթին, և որդոց նորին՝ կենդանեացն և հանգուցելոցն։ Վասն որոյ աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սուրբ գրոցս տեսութեամբ և կարդալով և կամ օրինակելով յիշեսջիք ի Քրիստոս զխօճայ Յակոբն, և զծնաւղքն, և զեղբարքն, և զամուսինն, և զորդիքն, և զդստերքն իւր]**. և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, ամէն։ Այլ եւ յիշեսջիք ի Քրիստոս զՄկրտիչ գրիչս, և զծնաւղսն իմ, և զամենայն արեան մերձաւորսն իմ, որ բազում աշխատութեամբ գրեցի զսուրբ գիրքս և ի հանկ հանի։ Եւ դուք՝ յիշողքդ և մեք՝ յիշեալքս թողութիւն գտցուք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, ամէն։

Գրեցաւ վանքն Խուլաու և եղաւ ի Ցաղման:

Բ

232բ [Յիշեցէք]... և թղթիս կոկողին՝ տէր Կարապետին, և Աստուածատուր սարկաւագին, և թանքի եփողին՝ Նէֆամատ դըպրին, և կարդացողաց, և լսողաց, և ամէն ասողաց***, ամէն։

* Գ. Հիշատակարանն ունի միայն Ս. Տեր-Ավետիսյանը։
** Փակագծերի մեջ առնված հատվածը գրված է այլ ձեռագրով։
*** Ձեռագրում՝ «լսողացս»։

## 29

## ԱԻԵՏԱՐԱՆ

Ե. Լալայեան, Ցուցակ Վասպուրականի 201, սյուն. 491—492, Վանի Յայնկոյսների եկ. 46

Գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Հիզան

...[Գրեցաւ] ի մեծ թուիս Հայոց ՋԼԱ. (1482), ի կաթողիկոսութեան Հայկազեան սեռի տէր* և ի ․մերոյ կաթուղիկոսութեան Աղթամարայ տէր Ստեփաննոսին, զոր տէր աստուածն Իսրայէլի պահեսցէ անսասան գաթոռն հայրապետական մերոյ ազինː

Եւ արդ գրեցաւ սուրբ Աւետարանս ի քաղաքիս՝ որ կոչի Հիզան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի, և սուրբ Յարութեան, և սուրբ Սարգսի զաւրավարին և որդոյ նորա Մարտիրոսին, և սուրբ Գէորգա, որ է սակաւ մի հեռիː

Այլ և գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ Մկրտիչ քահանայի սուտ և անմար գրչի և անարժանիː Եւ իմ անընդունակ գոլով յարուեստ գրչութեան և բազում մեղաց ցնորիւք պաշարեալ, այլ ըստ կարի մերում, զոր պարգևեաց մեզ մարդասէր հոգին սուրբ՝ բազում աշխատասիրեալ իմ ի սմաː Արդ, ազաչեմ զձեզ, ո՛վ սրբասէր մանկունք Սիոնի, յիշեցէք ի Քրիստոս և զիս՝ անարժան գրիչս զՄկրտիչ քահանայ, և զծնաւղսն իմ զՍուլտանշէն և զԹռուանդէն, և զամենայն արեան մերձաւորսն, և զայնոսիկ, որ ի վերայ մեր աշխատանք և երախտիք ունին. յիշեցէք ի Քրիստոս և աստուած-ողորմի ասացէք, ամէնː

Դարձեալ [աղաչեմ] զամենեսեանդ՝ յիշեցէք ի Քրիստոս զստացաւղ սուրբ Աւետարանիս զՅոհանն, որ եռափափագ ստացաւ զսա յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնաւղաց իւրոց՝ Վարդանին և Թագուխին, և եղբարցն՝ Խաչատուրն, Բուժիկին, և քուրոջն՝ Թամարին:

## 30

## ՇԱՐԱԿՆՈՑ

Երուսաղէմ 2471

Գրիչ՝ Առաքել
վայր՝ Աւագ վանք

588 ...Արդ, գրեցաւ Առաջաբանս և Տաւնացոյցս և տետրս ի լաւ և յընտիր աւրինակէ, թվ. ՋԼԱ. (1482), ի սուրբ անապատս որ կոչի Աւաք վանք, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և սուրբ Կարապետին, և սուրբ Առաքելոցս, առ ոտս Յովաննէս րաբունապետին, յառաջնորդութիւն տէր Յոհաննէս եպիսկոպոսի, ձեռամբ անարհեստ գրչի Առաքել աբեղի...

* Անունը չի գրվածː

31

ԳԱՆՁԱՐԱՆ

*Վենետիկ 58*

*Վայր՝* Թֆնա վանք

*Գրեցաւ ի վանքն Թֆնա, ընդ հովանեաւ սուրբ Յովհաննու Կարապետին, և սուրբ Ստեփանոսի նախավկային՝ ի հոյակապ և հռչակաւոր, բարձրաշէն և գեղեցկաշէն սուրբ տաճարին, ի թվ. Հայոց ի ՋԼԱ. (1482). ի հայրապետութեան տեառն Սարգսի, [ձեռամբ] սուտանուն կրօնաւորի /// և յիշեցէք զվարդապետքն իմ զ'Իաւիթ* եպիսկոպոսն, և զԱնտոնէ եպիսկոպոսն, և զեղբայրքն իմ զԴաւիթ աբեղայն, և զԱբրահամ մենակեցն...*

32

ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

*Երևան 4515 (Ղ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան Հայոց, Բ)*

*Հետ. ստացող և կազմող՝* Մատթէոս Սեբաստացի

219 *Ո՜վ սուրբ բարունապետք և աշակերտեալ նոցին բանից, յորժամ վայելէք յիմաստութենէ գրոցս յիշեցէք յաղօթս ձեր զՄատթէոս Սեբաստացի՝ միայն բանի սպասաւորս, որ ցանկացող էի ի վաղուց և գտայ մօտ կրօնաւոր մի Խաչատուր անուն՝ տիրեաւ Զմրշկածացցի՝ բարի հոգի... և գնեցի ի նմանէ հալալ արդեամբք իմով և վերստին կազմեցի ձեռօք իմովք ի վայելումն անձին, և յետ իմոյ յիշատակ հոգւոյ իմոյ կացցէ ի ձեռս սուրբ վարդապետաց, զի կարդայք և ողորմութիւն յաստուծոյ խնդրէք ինձ, և ծնողաց իմոց Մատթէոսին և Հաւսարին, և ամենայն նախնեաց իմոց։*

*Արդ, կազմեցաւ սա ի թվ. ՋԼԱ. (1482)։*

33

ՃԱՇՈՑ

*Երևան 7438*

*Նուիրատու՝* Մեծպարոն
*վայր՝* Ղրիմ

180բ *Արդ, ոմն աստուածասէր և բարեպաշտ, երկիւղած և իմաստուն Աքսապէկ անուն ըստացաւ զայս սուրբ Տարեգիրքս ի արդար վաստակոց իւրոց, և կամէր տալ զսայ ի վանս սուրբ Աստուածածնին Ինտիրճէ Քեմձակ կոչեցեալ, և ոչ ժամանեաց, զի մինչ յայսմ խորհրդոյ էր՝ փոխեցաւ առ Քրիստոս, որոյ աստուած ողորմեսցի նմայ, ամէն։ Եւ Մեծպարոնն՝ յեղբայրն Աքսայպէկին, կամաւքն աստուծոյ երետ ցսուրբ Ճաշոցս Ինտիրճէ վանացն, յիշատակ իւր եղբաւրն պարոն Աքսայպէկին, և որդոյ նորին Պառոնլուսին, և հաւրն մերոյ Նաճապետին, և մաւրն մերոյ Եղնիկին, և այլ ամենայն արեան մերձաւորաց մերոց՝ կենդանեաց և ննջեցելոց...*

* *Մեքենագրված է՝ «զՏաւիլ» (՞)։*

*Արդ, ես՝* Մեծպարոնս *կուտամ զայս սուրբ գիրքս ի սուրբ Աստուածածնին վանքն* Քէմճակ *կոչեցելոյ, և զտէր* Տիրատուր՝ Կուլամին *հարպետըն, և զիս* Յոճանէս *աբեղա, որ զգիրս գրեցի, և զ*Տուկալն, *և զ*Սիմէոնն, *և զ*Մղտէսին *վոքիլ և հայեցող և տեսուչ կառնեմ, որ տեսնում, որ մարդ չի հանէ և ոչ այլ տեղ տանի, և թէ աՀ լինի և կամ փախուստ, բերին ի տեղս՝ ի սուրբ Յովաննէս* Կուլամին *վանքն պահեն՝ մինչև խաղաղութիւն լինայ՝ դարձեալ տանին ի վանքն, կարդան և ողորմի ասեն մեզ և մեր եղբաւրն պարոն* Աթայպէկին: *Եւ Հետ այս սուրբ Ճաշոցիս և Աւետարանիս կու տամ մին կով 'մ վանիցն, որ աստուած-անեղ ասեն իմ եղբօրն։*

*Արդ, գրեցաւ վերջին յիշատակութիւնս ի թվին ՋԼԱ. (1482) և աւգոստոս Ժ. (10), սուրբ Աստուածածնին բարեկենդանին, շաբաթ օրն։*

## 34

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 8157*

317ա *Մայիսին ի ԻԶ. (26) Հանց ձուն եբեկ, որ ոչխարին ու տաւրին խոտ կոււ տային։ Տանուտէրն եկաւորն էր, թվ. ՋԼԱ. (1482) իննևտասանեբրակի ամի էր. կէտ սուլզականն ի ԿԴ. (64) տարի էր*։*

## 35

### ՇԱՐԱԿՆՈՑ

*Երևան 6333 (Յովհ. Բարղամեան. Ցուցակ Վասպուրականի), էջ 173, Լ8Վ 1001*

*Գրեցաւ եղանակաւոր տառս ձեռամբ իմաստուն և պատուական քահանայի, քաջ քարտուղարի* Մովսէսի... *ի վայելումն ընտիր, սրբասնունդ քաՀանայի տէր* Թումայ *կրաւնաւորի, զոր ստացաւ ի հալալ արդեանց իւրոց, ի վայելումն անձին և յիշատակ բարի իւրն, և ծնաւղացն՝ հաւրն* Մովսէսին *և մաւրն* Շուքրանին, *և եղբարցն* Բախտիարին *և* Իգնատիոսին, *և քուերն* Ուստիանին, *և հարսներաց* Խուպիփաշին /// *և եղբորորդոցն* Խաւչայչանին, Աղաչանին, Պապաչանին, Միրիչանին, Ախիջանին, *և եղբաւրդստերացն՝* Խաթունջանին *և* Շուքրանին, *և հաւրեղբաւրն* Աստուածատուրին *և որդոյն* Յովաննէսին...

*Գրեցաւ ի թվին ՋԼԱ. (1482) ամին. որք հանդիպիք աստուած ողորմի ասացէք և աստուած ձեզ ողորմի, ամէն։*

---

** Ձեռագիրն ընդօրինակված է սույն Հիշատակագրությունից տարիներ առաջ։ Պահպանվել է ընդարձակ անթվական Հիշատակարան, որի մեջ պատմական Հետաքրքրություն են ներկայացնում միայն կարմիր թանաքով գրված Հետևյալ տողերը. «Յանկացաւղ եղև աւրհնութեանց արժան[աւ]որն պարոն* Արեն, *և եդ ի յիշ[ատ]ակ իւր և եղբաւրն իւրոյ* Վաչին, *և ծնողաց իւրոց՝* Մովսեսին *և* Ծուարին, *և այլ ամենայն արեան մերձաւորացն, և ինձ* Կարապետ *գծողիս» (էջ 317ա)։*

## 36

## ՄԱՇՏՈՑ

*Ա. Սիւրմէեան, Ցուցակ Հալէպի Ա, 81, էջ 163*

Գրիչ՝ Յակոբ

*Գրեցաւ սուրբ գիրքս ի թվիսն Հայոց ՋԼԱ. (1482), ձեռամբ* Յակոբ *մեղսամած քահանայի, ի խնդրոյ սրբասնեալ և առաքելաշնորհ եպիս-կոպոսին տէր* Յովաննիսի, *ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ հոգւոյ իւրոյ։ Վասն որոյ աղաչեմ զամենեսեան, որք պատահիք սմա տեսու-թեամբ և կամ օրինակելով յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր զտէր* Յովաննէս *եպիսկոպոսն և զմեղաւոր գրիչս* զՅակոբ *ծերունիս, և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ**։

---

* *Տեղեկություն ունենք նաև այն մասին, որ Վենետիկում պահվում է 1482 թ. ընդօրինակ-ված մի Աղոթագիրք, որի գրիչն է Նիկողայոս եպիսկոպոս Աղքերմանցին։*

37

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Երևան 6224

Գրիչ՝ Մելքիսեթ
վայր՝ Գուգարաց գաւառ,
Ոսխտիք դղեակ

413ա ...Աւարտեցաւ քրիստոսահիմն և առաքելախաւս, մարգարէաշէն հոգիաբուխ տառիս ի յամի հայ տումարիս Ջ. և ԼԲ. (1483) թւականիս, մարտ ամսոյ ի Զ. (6)։

Ձեռամբ փցուն Մելքիսեթիս՝
Բազմասղալ կարգաւորիս,
Այլ սուտ անուամս, որ է առ իս,
Ծոյլ և վա[տ ]թար և պղերգիս,
Բիւր քանքարո պարտականիս,
Բազում մեղաւք լցեալ հոգիս,
Աղտեղութեամբ ներկեալ կերպիս.
Յոգնավրդով և տատանեալ ատտուորիս,
Իբր ի ծովու ծփեալ ալիս,
Խաբէութեամբ կամ ի ձևիս,
Զի բազմամեղ եմ այս գերիս
Եւ նախատինք մարդկան ազգիս,
Քանզի ամաւթ եմ այս կարգիս,
Գարշ և խորանք այս սուրբ ձևիս,
Եմ հայհոյանք ստեղծողին զիս,
Եւ անարգ անուանս որ յիս,
Զի ոչ իմա զպատիւ կարգիս
Ոչ զերախտռ տեառն որ առ յիս։
Արդ, որք արժան էք այս շնորհիս
Եւ սրբութեամբ կայք ի ձևիս
Պահելով զմեծ շնորք տէրունիս
Սպասաւորեալ սուրբ խորանիս,
Որ քահանայք էք անուանիս
Եւ էք պարծանք այս գաւառիս՝
Դուք մի նախէք ի ձև գրիս,
Որ է սղալ և խոշոր ի քարտիզիս,
Այլ ուշ դրէք դուք նամակիս՝
Հոգէպատում Աստուածիս։

*Ձեզ աղաչեմ զամենեսեան սիրովն աստուծոյ, զընթերձողքդ և*
413բ *զլսող բանից սորին // և անկանիմ առ ոտս ձեր, որ սրտի մտաւք ասէք՝ տէր՝ աստուած թողըէ ղյանցանս բազմամեղ գրչիս, և դուք գտջիք զթողութիւն յանցանաց ձերոց ի Քրիստոսէ աստուծոյ մերո, որ է աւրհնեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

*Արդ, գրեցաւ սուրբ գիրս ի գաւառս* Գուգարաց, *ի դղեակս* Ուխտիք *կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Կարապետիս, և Նախավկա սուրբ Ստեփաննոսիս, և սուրբ Յակոբիս, և այլ բազմահաւագ սրբոցս, ի ղանութեան* Աղուպակի՝ *որդո Հասան-*պակի, *և ի պարոնութեան վրաց* Ղորղորէի, *և ի կաթողիկոսութեան տեառն* Սարգսի, *և յեպիսկոպոսութիւն տէր* Յուականն՝ *հեզահոգի և մաքրամիտ, ճգնաւոր եպիսկոպոսի։*

*Արդ, ստացաւ սուրբ գիրքս հեզահոգի տէրն* Ամինադին *ի հալալ վաստակոց իւրոց, յիշատակ իւր, և ծնողացն իւրոց, և ամենայն արեան մերձաւորաց՝* Աստուածատուր *իրիցուն,* Հռիփսիմաին, Մելիքշին, Մարգարին. Խաչատրին, Էմինին, Յովանիսին, Սարգիս *իրիցուն,* Նինիֆարին, Դունիարին, *և այլոց նոցին։ Եւ մեղաւոր* Մէլքիսէքիս՝ *անպիտան գրչիս, և* Ստեփանոս Եգեպատո *իրիցուն, զ՚նա եղև պատճառ գրելո սուրբ գրոցս...*

**38**

**ԱՒԵՏԱՐԱՆ**

*Ն. Քարամեանց, Ցուցակ Բեռլինի 9, էջ 7*

Գրիչ՝ Մելքիսեթ
վայր՝ Գուգարք

*...Յամի ինն հարիւր և ԼԲ. (1483) թուականութեանս Հայոց գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ անարժան և անարհե[ս]տ գրչի* Մելքիսեթ *սուտանուն երիցու, որ անուամբս եմ կոչեցեալ և գործովս ոչ, ընդ հովանեաւ սուրբ Կարապետիս, ի գաւառս* Գուգարաց՝ Ուխտիք *կոչեցեալ, ի դառն և անբարի ժամանակի... յորում յամի եղև շարժ և* Եզընկա *քաղաքն Ի. (20) գեղով ընկղմեցաւ մարդով և անասնաւք, մինչև ԼԹ. (30. 000) մարդ ի գիր ելաւ։*

**39**

**ՇԱՐԱԿՆՈՑ**

*Ներքին Ագուլիս, ՄՑՄ*

Գրիչ՝ Գրիգոր եպիսկոպոս
վայր՝ Բջնի

*Գրեցաւ եղանակաւոր տառս ի թուաբերութեան հայկազեան տումարիս Ջ. և ԼԲ. (1483), ի հայրապետութեան տեառն* Սարգսի *և յաթոռակալութեան* Գրիգորի *քաջ րաբունապետի և ղանութեան* Աղուբեկին, *ի մեծափառ և ի սուրբ յաթոռս* Բջնու *սուրբ Աստուածածնի, ձեռամբ յոգնամեղ* Գրիգորի՝ *եպիսկոպոսին* Բջնոյ *նահանգին։*

## 40

### ԱԻԵՏԱՐԱՆ

Նոր Ջուղա 486, ՄՏՄ

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Բասեն

320ա ...Յամի իննհարիւր և ԼԲ.-երորդի թուականութեանս Հայոց (1483) գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ անարժան և անարհեստ գրչի Գրիգոր սուտանուն իրիցի, որ անուամբ և գործովս ոչ, ընդ հովանեաւ սուրբ Գրիգորի /// Աւետարանս փրկիչ Աւետարան /// գաւառ Բասեն /// յիշեսջիք ի սուրբ յաղաւթս ձեր զբազմամեղս Գրիգոր սուտ իրիցունկս, և զհայրն իմ տէր Առաքել, և զմայրն իմ Խանում, պապն տէր Դաւիթ և Սանակ, և զամենայն արեան մերձաւորս իմ։

Դարձեալ աղաչեմ զձեզ, զի անմեղադիր լինիք խոշորութեան և սղալանաց գրիս, զի կար մեր այս էր և ժամանակս չար։

## 41

### ԱԻԵՏԱՐԱՆ

Հ. Քյուրդյանի հավաքածու

Գրիչ՝ Յովհաննէս
վայր՝ Արծկէ

ա

...Յիշեա ողորմութեամբ քո զհոգի ուսթայ Բէրամին, և զծնօղաց հորին՝ զպարոն Ջանգիշային և զՄամայխաթունին, և զզաւակաց նորին՝ զԱղայջանին, զԱմիրմլքին, զՄիրիջանին, զՍուլթանշայն, Թուխշային, Խուդաբաղշին, և զմայր սոցին Մուսավար Ջաննիպշայ (*) խաթունն՝ զփոխեցեալքն ի Քրիստոս, և զեղբարքն զԹուխշայն և զՍուլթանշայն, և զԱղմուրն, և ըղդստերքն Իմիշայ Խաթուն, Մանմէլիքն, Բէկիջանին և զՇաճին, և զմայրն զԽոնդքեկին, և զամենայն արեան մերձաւորսն, և զծաղկեալ թոռն երեսփոխան ուսթայ Բերամին՝ զԽոջայջանն, զոր տէր աստուած ընդ երկայն աւուրս առնէ, ամէն։ Արդ, որք հանդիպիք սուրբ Աւետարանիս կարդալով կամ աւրինակելով յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զերեսփոխան ուսթայ Բերամն, որ ստացաւ զսա ի խալալ արդեանց իւրոց յիշատակ իւրն, և ծնաւղացն, և ամենայն արեան մերձաւորացն։

Արդ գրեցաւ սա ձեռամբ Յովհաննէս քահանայի և որդւոյ նորին Յակոբ սուտանուն քահանայի, ի քաղաքս Արծկէ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի տաճարիս, ի թվականութեան Հայոց ՋԼԲ. (1483) թուին, ի հայրապետութեան տեառն տէր Սարգսին և ի ղանութեան Աղուպ-բէկին: Եւ արդ՝ որք հանդիպիք սմա յիշեցէք յաղօթս ձեր զերեսփոխան ուսթայ Բէրամն, որ ստացաւ զսուրբ Աւետարանս ի հալալ արդեանց իւրոց, և ետ զսա ի դուռն սուրբ Աստուածածնի տաճարիս, և մին լաւ ծածկոց սուրբ

սեղանին, և մին արժաթի սկիհ, զոր տէր աստուած զարդարէ զնա հոգւով եւ մարմնով, ամէն։

Բ

Ո՛վ եղբայր, յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր զուսթայ Բէրամն, զփոխեցեալն ի Քրիստոս, և զփեսայն իւր զԴալվաթիար աղէն, զորգին իւր զԱմիրն, և զդուստրն իւր զՋանիփաշէն, աստուած ընդերկայն աւուրս արասցէ, և ինքն աւրհնեալ եղիցի, ամէն*։

## 42

## ԳԱՆՁԱՐԱՆ

Վենետիկ 1210

Գրիչ՝ Յովհաննէս Մանգասարենց
վայր՝ Արճէշ

Գրիչ՝ Յովհաննէս *երէց* Մանգասարենց, *ի քաղաքն* Արճէշ, *ի դուռն սուրբ Գէորգայ զօրավարին, ի վայելումն տէր* Ալէքսիանոսին *Վրացտանից, որդւոյ* Գրիգորի *քահանայի, և կողակից* Խոնդքար-Խաթունի, *հայր* Անդրէաս *երէցի,* Մանանի, Կոստանդին *քահանայի,* Գրիգորի:

## 43

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6879

Գրիչ՝ Յոհանէս
վայր՝ Կտուց կղզի

ա

*Արդ, այսմ աստուածեղէն և երկնապարգև գանձիս և լուսափայլ մարգարտիս ցանկացող եղա* Յոհանէս *սուտանուն քահանայ*... [և] *ստացայ ի վայելումն անձին և յիշատակ հոգոյ իմոյ, և ծնաւղաց իմոց՝ հաւրն*
363ա Մուրադին *և մաւրն* Մարգարտին**, *և* Fրևrաց իմոց Ջոմա//րին *և* Ոսկուն, *և հաւրեղբարցն՝* Աստուածատուր *քահանային, և կողակցի նորին* Խաբիբին, *և* Էւադին, *և* Գրիգորուն:

*Արդ, որք ակնտիք յայս աստուածաշունչ Աւետարանէս կարդալով կամ աւրինակելով՝ լի բերանով աստուած-ողորմի ասացէք վերոյ գրելոցդ, զոր գրեաց տէր աստուած զանուանքս մեր՝ զանարժան քահանայիս* Յոխանիսի *և զնախնեաց իմոց, և* զԽայբիբ *խաթունին և զնախնեաց նորին՝ ի դպրութիւն կենացն, ամէն*...

*Եւ դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս* զԳրիգոր *եպիսկոպոսն, և* զՍարգիս
363բ *եպիսկոպոսն,* // *և զմեծ* Խաչատուր *կրօնաւորն՝ զվարպետն իմ, և* զԳրի-

* Գրված է ուրիշ գրչի կողմից, հետագայում։

** Ձեռագրի 11ա էջում նկարված են ստացողի ծնողները։ Նկարից ներքև կա հետևյալ մակագրությունը. «Մարգարիտն և Մուրատն՝ ծնաւղքն տէր Յոհաննէս գրողի սուրբ Աւետարանիս, զոր եւտ ի դուռն սուրբ Աստուածածնին Նորընգու վանից»։

գօր վարպետն իմ, և զՅակոբ կրօնաւորն, և զՍտեփանոս կրօնաւորն, և զխաչատուր խէրպետն, և զՆերսէս կրօնաւորն, և զԿարապետ եկեղեցպանըն, և զՄինաս ծաղկաւղն, և զայլ քահանայսն, և զմիաբան ուխտիս՝ զմեծ և զփոքր, առհասարակ. և աստուած յիշողացդ ողորմեսցի, ամէն…։

364ա Եւ արդ, գրեցաւ սա ի թվականիս Հայոց // ՋԼԲ. (1483), ի յաստուածաբնակ սուրբ ուխտս, որ կոչի Կտուց, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Խաչիս, և սուրբ Կարապետիս, և սուրբ Ստեփանոսիս, և այլ ամենայն սրբոցս, որ աստ կան հաւաքեալ, ձեռամբ մեղսամերկ Յոհաննիսի, յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց, և խաբիբին…

Եւ արդ, գրեցաւ սա ի դառն և ի նեղ ժամանակիս, զի վասն ծովացեալ մեղաց իմոց Արզընկա քաղաք տապալեցաւ, և ԺԸՌ. (18. 000) ոգի ի ներքև հողու մնաց, և այլ ոչ մնաց մի կենդանի։ Եւ տաճկունք քակեցին զԱքանչելագործն։

364բ Բայց յայս ուրախ եմք, զի կրակ ան//գաւ յերկնից և էրեց զՔաբայն՝ ԺԲ. (12) մընիրա ի հետ և վեց հազար ոգի։

Բ

364բ Ես՝ Յոհանէս քահանայս ետու զԱւետարանս ի դուռ Կոընգեց սուրբ Աստուածածին, յիշատակ հոգոյ իմոյ, /// զՄխիթար և զՈվսէփ քահանայքըն, որ պատճառ և առիթ եղեն այսմ աստուածախաւս բուրաստանիս, և ետուն բերել սայ ի գուռ սուրբ Աստուածածնին, աստուած-ողորմի նոցա, ամէն։

Դարձեալ յիշեցէք յերկնայբացիկ յաղօթս ձեր զՈսկին և զիւր որդին զԳրիգորն, որ Բ. (2) գարի* հաց ետուր և նորոգեց զեկեղեցին. աստուածողորմի նոցա, ամէն։

Դարձեալ յիշեցէք ի ժամ սոսկալի պատարագին զՂուլիջան և զկողա-
365բ կիցն իւր զԱռաւ-Խաթուն, որ են անո<րէ>թևան ///** լի սրտիւ և բոլ-
<և>որախաւս բերանով աստուած-ողորմի ասացէք նոցա, ամէն***։

## 44

## ՏՕՆԱՑՈՅՑ

Տեղն անյայտ****

Գրիչ՝ Ալեքսանոս
վայր՝ Ցօղացֆարա վանf

Արդ, գրեցաւ Տաւնացոյցս և Կիսատետրս ի թվականիս Հաոց մեծաց ՋԼԲ. (1483), ի վանքս Ցօղացֆարա, ընդ հովանեաւ կեանսաբեր սուրբ Նշանիս և Քրիստոսի սուրբ բևեռիս և այլ բազմահաւաք սրբոցս, որ աստ կան։

* Ձեռագրում հապավված է այսպես՝ «գրի»։

** Մի բառ չի ընթերցվում։

*** Ա. հիշատակարանը ստացող Յոհաննիսի անունից գրել է ձեռագրի գրիչը, իսկ Բ. հիշատակարանը գրված է ստացողի կողմից՝ անվարժ ձեռագրով։

**** Հիշատակարանը վերցրել ենք Մատենադարանում պահվող մի լուսանկարից, որի վրա որևէ նշում չկա, թե որտեղ է պահվում բնագիրը։

Արդ, գրեցաւ առաջնորդութեան սուրբ ուխտիս Գրիգոր եպիսկոպոսին, ձեռամ[բ] յոգնամեղ և պիտականուն Ալեքսանոս անուամ[բ] միայն և գործով յունայն աբեղայի... »։

## 45

## ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 5785

Գրիչ և լրացնող՝ Կարապետ Բաղիշեցի
վայր՝ Բաղեշ, Գոմաց վանք

152ա Զանպիտան ծառայս զԿարապետ Բաղիշեցիս յիշեա ի բարին, ո՜վ պատուական երգիչ, ի թվ. ՋԼԲ. (1483), ապրիլ ԺԵ. (15)*։

## 46

## ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 5434

Հեղինակ նոր գանձերի՝ Կարապետ Բաղիշեցի

ա

51բ—52ա Տէր Կարապետ Բաղիշեցի
Յոյժ անպիտան և եղկելի
Զտաղս ի մտացս իմ ասացի,
Դառըն սրտիւ աստ գրրեցի։
Եւ դու եղբայր իմ սիրելի,
Յորժամ երգես ի յատենի՝
Յիշեա ըզմեզ միշտ ի բարի,
Սըրտիւ ասայ մեզ ողորմի.
Եւ տէր աստուածն ամենայնի

* ԺԶ. դարում ոմն Մակար նորոգել է («ոսկեզօծել և գեղեծածն գրել») Գանձարանը։ Իր հիշատակարանում (էջ 426ա-բ) նա կարևոր տվյալներ է հաղորդում նաև ձեռագրի գրչության մասին, ձեռքի տակ հավանորեն ունենալով այժմ բացակայող գլխավոր հիշատակարանը։ Ստորև մեջ ենք բերում Մակարի հիշատակարանի մեզ հետաքրքրող հատվածը. «...Որ եա կարողութիւն տկար ոգւոյ և ղեղեալ մատանցս անարժան Մակարի, որ հանի ի յավարտ զԳանձատետրս ի յոսկեզօծելու և գեղեծածն գրելու, ի թվականին Հայոց ՌԱ. (1552) մարտի Ժ. (10), ի դրունս սուրբ Կարապետին, և սուրբ Աթանագինէ հայրապետին, և սրբոյ Ստեփանոսի Նախավկային, և սրբոյ Գրիգորի միրոյ Լուսաւորչին, և սուրբ Յարութեան, և այլ սուրբ միաբանացն։ Եւ ես անարժան Մակար Հեննցիս զտկարութիւն անձին մոռացեալ սկսայ և աւարտ հանի։ Եւ արդ գիտելի է, [զի] գրեալ էր Գանձատետրս յեզր Բաղէշ քաղաքի, ի վանքս Գոմաց կոչեցեալ, առ դրան սրբոյ Աստուածածնին և սուրբ Գէորգա զաւրավարին, ձեռամբն Կարապետ աբեղայի՝ քարտուղարի իմաստնո. եւ ի յառաջնորդութիւն վանիցըն առաքելաշնորհ արքեպիսկոպոսին՝ տէր Թումային, զոր տէր աստուած պարգևեսցի իւր միւսանգամ գալուստն տէր Կարապետին և տէր Թումայ արքեպիսկոպոսին, ամէն։

Դարձեալ աղաչեմ /// զսակաւ աշխատողս, որ աշխատեցաւ ի յոսկեզելն, ի սակաւ գիրն և ի շապելն՝ զՄակար անուն յիշեցէք, և իմ բազում յանցանացն թողութիւն խնդրեցէք։ Այլ և

*Եւ քեզ տացէ մասըն բարի,*
*Զի յոյժ առատն է պարգևի,*
*Եւ խընդրողացըն տայ ձըրի*։*

Բ

64ա Ի Կարապետ Բաղիշեցոյ, Կաֆայ
*Կամիս ասել՝ ասայ դու զիս*
*Արի և քաջ, ձայն թէ ունիս,*
*Րամեալ բանիւ ի յատենիս,*
*Առաջի մեծ սիւնհոդոսիս.*
*Պընդեալ ըղքո մեջքդ և զգաւտիս*
*Եւ ապայ տուր դու ձեռք ի յիս,*
*Տեղըս ցուրտ է չի մըսիս*
*Ի տեսողացըդ պատ//կառիս։*

## 47

### ՇԱՐԱԿՆՈՑ
### ИВАН, А—24

*Վայր՝* Բաղէշ

...*Արդ գրեցաւ Շարակնոցս ի թվիս Հայոց* ՋԼԲ. *(1483), ի* Բաղէշ *քաղաքի, առ դրան**, ձեռամբ* Յովսէփ *քահանայի, որ փոխեալ է առ աստուած, ի խնդրոյ պատուական կրաւնաւորին* Կարապետին, *որ ստացաւ զսա ի հալալ արդեանց իւրոց յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց՝ հաւրն* Շահինշին *և մաւրն* Հայոցին, *և հարազատ եղբարցն իւրոց* Սարգսին *և* Կիրակոսին, Մարգարուն *և* Բազին, *և ամենայն արեան մերձաւորացն, ամէն...։*

## 48

### ԱՒԵՏԱՐԱՆ
### *Երևան 7919*

*Գրիչ՝* Մարգարայ
*վայր՝* Աղբակու երկիր, Երընգանի գիւղ

256ա *Փառք և պատիւ այժմ, յաւիտեան՝*
*Համագոյ երրորդութեան,*
*Երեք անձնեա սուրբ տէրութեան,*

---

*սղալանաց և խոշորութեան և խամ և կարկատուն ուլային, որ անհմուտ էի արուեստիս՝ անմեղադիր լերուք. և յոր[ժամ ընթ]եռնուք զյիշատակարանս կամ եղանակէք, զսակաւ գիրս որ ես գրեցի՝ զպակասն լցէք, և զաւելորդն քերեցէք, զսղալն ուղղեցէք, և զանարժան* Մակարս *յիշեցէք, և մեղաց թողութիւն խնդրեցէք ինձ և ծնողաց իմոց՝ հաւրն իմոյ* Մաղսուտին *և մաւրն իմ* Մանրուային» *(էջ 426ա)։ Մակարը հաղորդում է նաև, որ «Մարտի Ը. (8) պոչով աստղ մի՝ ելաւ ի յարևելեան կողմն, երեկոյն գայր և շրջէր ի վերայ արեւմտեան կողմոյն» (էջ 426բ)։*

* *Սույն չափածո հիշատակարանը Կարապետ Բաղիշեցին գրել է Գանձարան ժողովածուի մեջ զետեղած իր «Աստուած իմ Յիսուս Քրիստոս՝ կենդանի և կենդանարար...» սկսվածք ունեցող տաղի կապակցությամբ։*

** *Վանքի անունը լրացնելու համար մեկուկես տող դատարկ է թողնված։*

Միասնական աստուածութեան,
Հայր անսկիզբն և անվախճան,
Պատճառ որդոյ սուրբ ծնընդեան
Եւ սուրբ հոգոյն անճառ բղխման,
Փառաւորեալ միշտ յաւիտեան,
Եւ կատարող արարչական
Որով բոլոր էակք ստեղծան։
Յորժամ հրամանքն տիրական
Մտաբղխեաց զաշխարհս համայն
Երկիր հիմամբք հաստատեցան
Եւ ամրացեալ անշարժացան.
Բարի շարժմամբ բաժանեց
Ի պտղաբերք և յանդաստան,
Ի բուսականըն, յաճական
Եւ ի յաճումն նիւթական։
256բ Աննիւթ բնութիւն աստուածային
Ճարտարապետն ազգի մարդկան
Էարկ զհիմունսն տարրական,
Կառոյց կամարք անզուգական
Տասն մասամբք բաժանեցան
Կըմբէթաձև, բոլորանման
Դասք զաւրութեան անհունական
Յամէն խորան անդ կանգնեցան.
Իսկ ի վերինն մեծ խորան
Աթոռ կարգեաց չորեքկուսեան,
Բայց կերպիւն մարդոյ նման,
Կերպ առեւծոյ՝ խոռխտաձայն,
Եւ ցլաձև արդիւնական,
Եւ արծուի վեր սլացական,
Ութիւք թևօք վեր ամբարձան
Եւ ընդ աչօք գեղեցկացան,
Ոտիւք քառաւք հարմարեցան
Ծայրագունին հանգստարան՝
Սեռն լուսով երեք գիմեան
Բազմեալ յաթոռ հրակերպեան,
Ի ձեռն առեալ արարչական՝
Զդադան աւանդս աշխարհական,
Իսկ ի ներքին փոքր խորանն
Երկոտասան խորան անդ կան։
Եւ ի նոսա շատ աստեղացն,
Որ կենդանեաց են կերպարան,
Եւ կաճառեալ դասք աստեղացն,
Որ կարգեցան ինեան կայեան,
Իսկ մոլորեալքն լուսընկալն
Եւթն գարու սահմանեցան

Եւ զխաւարս մեր լուծական
Զգալի աչաց մեր մարմնական,
257ա Պայծառ լուսովն // արեգական
Տուընջենացան սեռս ամենայն,
Եւ զլուսին մըշողական
Վասն թուոյ ժամանական.
Եւ սիրեցեալ ամենեքեան
Եւ ցնծացեալ ուրախանան՝
Աւրհնեն զաստուած միշտ, յաւիտեան։
Այլ և ի յայս միտս արարչին
Զդրախտն տնկեաց բարձր ի լերինն,
Զծառն կենաց ի մէջ դրախտին
Եւ պատուիրեաց չուտել նոցին.
Յորժամ կերան՝ մահու հասին
Եւ ի դրախտէն արտաքս ելին.
Բազումք այլ ծառք, որ ի դրախտին
Անմահ կենաց պտուղ նոցին
Անապական ոչ ըսպառին,
Այլ միշտ անշարժ կան ի նոսին.
Ոչ նուազին 'ւ ոչ ծերանան,
Ոչ գոսացեալ աղականին,
Զի մինչ կթին՝ այլ բազմասցին,
Միոյն հազար ի տեղն անգին,
Որպէս մտաց բանքն և սրտին,
Ականջաց լուրն և խօսք լեզուին,
Թ·է և բղխէ՝ թէպէտ խօսին,
Թէ և լսէ՝ ոչ խափանին։
Զայս և պատմէ երանելին
Պօղոս՝ ընտրեալ մեծ խորհրդին,
Ոչ տեսեալ ակն, ոչ լուեալ ունկն,
Ոչ է անկեալ ի սիրտ խորին,
Զոր պատրաստեաց աստուած նորին,
Որ հաւատա այսմ շնորհին.
Եւ այս յայնժամն կատարին,
Յորժամ մահուամբ ի հող լուծ[ին],
257բ Եւ յարութեամբ կեն//դանասցին,
Յանմահութիւն զգեցեալ խառնին,
Յանմահ պտղոյն ճաշակեսցին,
Յորժամ անմահ բնութիւնն լինին։
Եթէ և այլք բարբանջեսցին
Բաջաղելով վասն նորին.
Ապականեալ զսա կարծին
Եւ ոչ անմահ խոստովանին,
Անիծեալ նզովեսցին,
Որպէս զհերձուածն Արիոսին,

Այլ և աղբեւր՝ մի անդրստին
Առաստահոս ի մէջ դրախտին
Առոգանէ զվայրս նորին
Եւ բաժանէ ի չորս մասին.
Մինն յարևելս հիւսիսի,
Որ և անուն Փիսոն կոչի,
Դիմեալ երթա յաշխարհ հեռի.
Այն որ Հնդիկ անուն կոչի,
Անցեալ ընդ ծագ տիեզերաց
Խառնի ընդ ծովն հարաւի,
Անդ ուր ոսկին է պատուելի,
Ծըլեալ պայծառ յեզր գետին,
Զոր ի մրջմանցըն ժողովին
Եւ մեծամեծ ամբար կուտին,
Զոր թագաւորք հազիւ որսան
Բաղում զօրօք, յամէն ամի։
Անդ և սուտակն է գովելի
Եւ դահանակն, որ է անգին,
Զոր և պատմէ սուրբն Մովսէս
Պայծառացեալն ի հանդիսի.
Սա նշանակ Մաթէոսի՝
Պատմող զհրաման տեառն Յիսուսի,
Զորօրինակ գետն յանչըրդի
Զծառաւս բազմաց լցեալ սրտի,
Եւ ի յաթոռն հայրենի
Պատկեր մարդոյ է պանծալի,
Եւ զօրութիւն ի մեր հոգի
Իմաստութեան մասն բարի.
Եւ բազմարար արտաճառի
Խոհեմութիւն նաղելի,
258ա Որ հաւատով խոստովանի
Եւ հաւասա զհայր և զորդի
Եւ դաւանի զսուրբ հոգին՝
Աստուած մի ասէր՝ զերիս անձինս։
Որ և զոլեմք զանճառելին,
Երկրպագեմք ամենայնին
Զաւրհնեալն աստուած յամենայնի,
Զոր պարգևէ հոգոյն բարի
Աւետարանիս ստացողի՝
Մկրտիչ քահանայի
Եւ բար[ի] հօր՝ Յովանիսի.
Եւ մօրն՝ Խաթուն-Մէլէքի,
Եւ կողակցին Գուլիմսարի,
՚Ի որդոյ նոցին՝ Կարապետի,
Ով ոք զսա օրինակի

Զաստուած-ողորմի ասէ ձրի։
Երկրորդն ի կողմն արեմտի
Գետն, որ Գեհոն անուն կոչի,
Ելն ի լուսին լեռնէն լինի,
Երթայ ի կողմն հարաւի՝
Անդ ուր Կանանց աշխարհ ասի,
Ուստի դշխոյն Սաղովմոնի
Եկն ի ծագաց երկրէ հեռի՝
Յիմաստութիւնն գովելի
Դարձեալ ի դրունս Եգիպտոսի,
Եւ անդ Նեղոս անուն ձայնի,
Երթայ ի կողմն արեմտի՝
Յեթովպացոցըն գաւառի,
Ի ստորոտ լերինն Սինայի,
Մերձ ի յեզր Կարմիր ծովի
Յեաւթն վըտակս բաժանի,
Զորսն ի Կարմիր ծովն լցւի,
Երեքն .երիս լիճ ժողովի՝
ԶՄիւռիդոս, զՍերբանիտէ
Եւ զԱրալիք արեմտի,
Եւ այլն երթայ յԱղէքսանդրի՝
ՅԵգիպտական ծովն խառնի։
Սա օրինակ է Մարկոսի,
Գետաւրէն բղխեալ բանի,
Զովացուցող պասքեալ սրտի,
Եւ կերակրիչ զսովեալ հոգւի,
Եւ գերեզմանն ի նոյն տեղի,
Եւ ի յահեղ աթոռ մեծի.
Սա կերպարան է առեւծի,
Եւ մեկնութեամբ պարզաբառի
258բ Յասուն (*) ի մարդն նշանի.
Յորժամ չարի մասն շարժի,
Նա զօրանայ և ոչ յաղթի.
Տեառն աստուծոյ աթոռ կարգի
Եւ սուրբ հոգւոյն տուն և տեղի։
Երրորդ գետոյն կոչէ Տիգրիս.
Ելնի Հաշտէն Հայոց երկրիս,
Գեաւղն, որ ձայնի Ոլորայիս,
Ուր սուրբ տաճարն է Տիրամօրն՝
Աստուածածնին հոգոց տեղիս.
Երթա ընդ մէջ Կորդուաց երկրիս,
Անցանելով ընդ Ասորիս,
Խառնի յԵփրատ մեծ խորհրդիս
Եւ պար առեալ ընդ Բաբելոն՝
Խառնի ի ծովն ի մի տեղիս։

Ղուկաս գրող է սուրբ տառիս,
Առակախօս բաղում բանիս,
Սա աւրինակ է այս գետիս
Զբանն կենաց սուրբ հրամանիս,
Եւ ի յաթոռս չորեք սեռնիս,
Պատկեր եզին կերպարանիս,
Եւ ցանկական տրամաբանիս,
Եւ հեզաբար ողջախոհիս,
Որպէս առակ քո սուրբ բանիս,
Զենման եզեն պարարակիս.
Ի սուրբ սեղան քառանգինիս,
Զի աղատես զննջեցեալսն,
Որ ակն ունին զքեզ ի բարիս,
Եւ յուսացեալ են ի սրտիս
Աւրհնեն զաստուած անլռելիս։
Նա և չորրորդ գետն է անհեղ,
Եփրատ անուն և բազմաքեղ,
Որ երևի նորա այնտեղ,
Որ բղխեցէ աղբեր համեղ.
Այլ ի Կարնոյ քաղքէ զօրեղ
Եւ ի Տարօն դաշտապարեղ
Հընչեալ երթայ ձայնիւ ուժեղ
Ընդ խորաձորս դժւար ու նեղ,
Պատեալ զերկիր բազմաբարեղ,
Անցեալ ընդ բերդ Կլայս բակեղ,
Երթայ ընդ երկիր հեռապարզեղ
Եւ Միջագետ առնէ զետեղ,
259ա ԶԱսորեստան // զազգն զարմեղ,
Եւ ի Տիգրիս խառնի ազդեղ,
Ընդ Բաբելոն անցեալ մեղմեղ,
Դիմեալ ի ծով Պարսից պարբեղ։
Յոհան գրեաց զայս բանս ուղիղ
Որոտալով ընդ երկնից աստեղ,
Որպէս արծիւ արագաթռեղ,
Հասեալ յերկնից կամարն ամպեղ,
Զօրաց երկնից ազգեաց հնչեաց
Ի սկզբանէ ճառեաց անեղ,
Հօր էակից և անզններ,
Թէ ոչ չափեալ, ոչ քննեալ,
Եւ ոչ անկեալ ի միտ պատմեղ,
Որպէս գրեաց սուրբն ի նոյն տեղ։
Զաստուած ոչ ոք ետես ուղիղ,
Բայց միածինն անանջատեղ,
Ի ծոց ծնօղէն անհատ, անեղ,
Սուրբ միածինն պայծառ լուսեղ։

Արդ, յանուանեալ գետոցն քան
Քառավտակ կենդանական
Ելեալ ի մի վայր անձնական
Եւ ուռճացեալ ի չորս բաժան,
Մտեալ ի ծոց երկրի սպառման
Բղխեն յաշխարհս բազմածորան
Եւ ժողովեալ ի չորս սահման
Կենդանութիւն տան մարմնական
Ի պտղաբերք և յանդաստան,
Նա և ի ծովն պարզեան.
Անդ կենդանիք կան բազմազան,
Նոցա յոլով արբումն տան,
Որ ղովանան կենդանական.
Թէպէտ ի ծովն են մեծ սահման,
Սակայն գետոյն կարօտանան
Եւ անձրևի են փափագման.
Որպէս երակք գլխոց մարդկան
Սփռեալ յանդամն հնարական,.
Որ հաստատին և զօրանան,
259բ Ոմանք զլոյսըն || տան ական,
Ոմանք զձայն լսեն ունկան,
Ոմանք զհոտն հոգմական,
Ոմանք զբարբառն խօսական,
Ոմանք ի ձեռս արուեստական,
Ոմանք զընթացս արիական,
Այլք զաճումն կենդանական,
Որ ի յանդամքն մարմնական,
Եւ որք լսեն ուղիղ զայս բան,
Փառք և պատիւ աստուծոյ տան։
Այլ թէ գովեն զՊաղեստին
Վասն սիրոյ սուրբ տաճարին
Եւ լուսընկալ գերեզմանին,
Եւ ծնընդեանըն Քրիստոսին,
Եւ Գողգոթայն, որ խաչեցին,
Եւ յամբարձման տեառն ի յերկինս,
Եւ Տիրամօր գերեզմանին,
Եւ սուրբ գումարըն հանդիսին,
Որ հաւաքեալ կան յայն տեղի։
Այլ մեր աշխարհս է գովելի,
Եւ պատուական, և պանծալի,
Զի այս չորս գետս, որ յԱդենի՝
Մեզ հրավիրակք են յաշխարհի,
Զհալածեալ բնութիւնս յայտնի
Եւ զտարազրեալսն ի կենցաղի,
Տալ մխիթար յուսով սրտի՝

Ծիլայք ծառայք իմ պատուելի,
Որ տառապեալ էք ի յերկրի.
Ձեզ պատրաստեալ եմ զայն տեղի,
Որ չէ տեսեալ ազգ հողածնի.
Փեսոն՝ կոչեալ Սեմա ազգին,
Գեհոն՝ յաղատ Քանան երկրին,
Տիգրիս 'ւ Եփրատ բազմադիմի
Յարեթական Հայկեա զարմի,
Եւ այլ բազում ազգատոհմի,
Որ են աղինք մերումս լեզուի.
Միծաղելով երթան յերկրի
260ա Ջուրախութիւն || հնչեն ազգի
Մեծ հարսանիք է հանդիսի,
Որգոյն երկնից թագաւորի.
Փեսայն ելեալ յառագաստի
Դիմէ հարսինդ սրբասիրի՝
Եկայք որդիք իմ սիրելի
Ի հարսանիսս երկնախմբի
Վասն սիրոյ սուրբ փեսային
Ձեզ հրաւիրակ առաքեցին,
Մի ծուլանայք ի սպասաւորի
Վասն լծոյ հինգ սզարանի
Կամ հեշտասէր կին ածուղի,
Կամ ստացող ագարակի,
Կամ հիմարաց կուսից հընգի,
Ունայնացեալք յիւղոյն շնորհի,
Եւ անպատրաստ գտան յերկրի
Վասն շիջմանն լապտերի։

Եւ արդ, զայս ամենայն տեսեալ և իմացեալ ոմն պատուական և գովելի քահանայ և կրօնաւոր Մկրտիչ անուն ցանկացաւ այս աստուածախօս սուրբ Աւետարանիս և փափագանօք ստացաւ զսա ի յարդար վաստակոց իւրոց՝ յիշատակ հոգոյ իւրոյ և ծնօղաց իւրոց՝ հօրն Յովանիսին, մօրն Խաթուն-Մէլէքին, և կողակցին Գուլի-Մարոյն, և որդոյն Կարապետին, և քեռուն Դաւիթ քահանային, և քուերն Մըսըր-Մէլէքին, և վարպետին Յովանէս քահանային, և այլ ամենայն ազգականացն, ամէն։

Քրիստոս աստուած, քո սուրբ գալստեանդ, և չարչարմանդ, խաչելութեամբդ, և թաղմամբդ, և յարութեամբդ, համբարձմանդ, և հոգոյ գալստեանդ, և փչմանդ յառաքեալսն՝ ողորմեա ամենայն հաւատացելոցս ի քեզ, || եւ առաւել ստացողի սուրբ գրոցս Մկրտիչ քահանային,
260բ
և ծնօղաց նորին Յովանիսին և Խաթուն-Մէլէքին, և քուերն Մըսըր-Մէլէքին, և կողակցին Գուլի-Մարոյն, և որդոյն Կարապետին, և Դաւիթ քահանային, և այլոցն ամենայնի, և զերանական ձայնն տուր լսել, որ ասէ. Եկայք բարի և հաւատարիմ ծառայք իմ, մտէք ի հանգիստն յաւիտենա-

*կան և ժառանգեցէք յարքայութիւն իմ՝ զանտրտում ուրախութիւնն, ամէն։*

*Արդ, գրեց[աւ] սուրբ Աւետարանս ի յերկիրս* Աղխբակու, *ի գեաւղս որ կոչի* Երընգանի, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի տաճարիս, ի թուականիս Հայոց ՋԼԲ. (1483) ամի, ձեռամբ մեղաւոր և անիմաստ* Մարգարայ *գրչի։*

*Արդ, մանկունք սուրբ եկեղեցոյ, որք հանդիպիք սուրբ Աւետարանիս կարդալով, կամ օրինակելով, կամ տեսանելով՝ լի սրտիւ և բոլորախոս բերանով աստուած-ողորմի ասացէք* Մկրտիչ *քահանային,* Յովանէսին, *և* Խաթուն-Մէլէքին, *և այլոցն, որ վերոյ գրեցաք, մանաւանդ ինձ՝ ամենամեղ գրչիս, և իմ ծնողացն* Մկրտիչ *քահանային և* Շնօհորին, *կարդացողացն և լսողացն, յիշողացդ և յիշեցելոցս, և ինքն, որ առատն է ի տուրս բարեաց Քրիստոս ողոր[մեսցի ///**

## 49

## ՄԱՇՏՈՑ

***Երևան 5937***

*Գրիչ՝* Մարգարայ
*վայր՝* Աղբակոյ երկիր.
Երընկանի գիւղ

234ա *...Շնորհաւք ամենազաւր և ամենակալին աստուծո եւ՝ տկարս և անարհեստս ի գրչաց, առաջինս մեղաւորաց և վերջինս ի կրօնաւորաց, որ ի բաց հեռացայ՝ ամենամեղ* Մարգարայ *սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զսուրբ գիրքս, որ կոչի Մաշտոց, յիշատակ սրբասէր և աստուածահաճոյ վարուք* Մարտիրոս *քահանային****...*

234բ *Արդ, գրեցաւ սա ի յերկիրս* Աղխբակոյ, *ի յանեղաշէն և յաստուածապահ գեաւղս* Էրընկանի, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի տաճարիս, ի յառաջնորդութիւն սուրբ աթոռոյն Բարդուղիմէոսի առաքելոյ՝* Մանկլօենց *տէր* Յովանէսի *արքեպիսկոպոսի, ի թուականիս մեր ՋԼԲ. (1483)։ Ի յայսմ ամի նշան դրին քրիստոնէիցս, և զժամ զարնուլն խափանեցին, և այլ բազում չարիս արարին։ Ամէն վասն մեր մեղացն, որ ծուլացեալ եմք յաղօթից և անուամբ միայն եմք քրիստոնեայ և ոչ գործով...*

235ա *Դարձեալ, յերեսս անկեալ կրկին անգամ աղաչեմ զձեր սրբութիւնդ, ո՛վ սուրբ հարք և եղբարք, հանդիպողք սուրբ գրոյս կարդալով կամ օրինակելով՝ յիշման արժանի առնէք զստացող սորա՝ զվերոգրեալսն զ*Մարտիրոս *քահանայն, և զծնողսն՝ զ*Ստեփանոսն *և զ*Ազիզն, *և զկողակիցըն զ*Նղիսէն, *և զորդին զ*Թումէն, *և զ*Մեսրոբն, *և զամենայն մերձաւորսն, ամէն։*

*Մանաւանդ զիս՝ զանյիշելի* Մարգարայ *գրիչս, և զիմ ծնողսն զ*Մըկըրտիչ *քահանայ, եւ առաւել զհոգևոր հայրն իմ զըռայիս* Ցառուխն, *որ*

---

* *Նույն էջի ներքին լուսանցքի վրա գրիչը գրել է. «Տէր Մկրտիչ, անմեղադիր կալ խոշորութեան գրիս, զի ճաշ (*) ոլոր կայր ի ներսս»։*

** *Ստացողի և նրա ազգականների անունները այստեղ և ստորև լրացված են այլ ձեռագրով, գրչի կողմից դատարկ թողնված տողերի վրա։*

*բազում երախտիք ունի ի վերայ իմ, և ընդ նմին զպատուական տէր Յոհանէսն, և զհոգևոր եղբարքն իմ զփոքր տէր Յոհանէսն, զԱրապշէն, զԱկոբշէն, զՍուլտանշէն, և զմեծահաւատ և զհոգիացեալ հոգևոր մայրն իմ զՍաղդաթն, որ աներկմիտ և անտրտու[ն]ջ մեզ կու սպասաւորէ...*

## 50

## ՇԱՐԱԿՆՈՑ

**Վենետիկ 327**

Գրիչ՝ Առաքել
վայր՝ Աւագ վանք

*Արդ, գրեցաւ Շարակնոցս ի լաւ և յընտիր աւրինակէ թվ. ՋԼԲ. (1483), ի սուրբ անապատս որ կոչի* Աւագ վանք, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի, և սուրբ Կարապետին, և սուրբ Առաքելոցս, առ ոտս* Յովհաննէս *րաբունապետին և* Ստեփանոս *վարդապետին և գրոց աշակերտացն, ի յառաջնորդութեան* Յովհաննէս *եպիսկոպոսին... ձեռամբ անարհեստ գրչի* Առաքել *աբեղի**։*

## 51

## ՄԱՇՏՈՑ

**Երևան 7954**

Գրիչ՝ Մեղիտէ
վայր՝ Կաֆա

216ա *...Գրեցաւ Մաշդոցս ի մայրաքաղաքս ի* Կաֆաս, *ի վանքս առ ոտս սրբոյն Գրիգորի Լուսաւորչին, ի հայրապետութեան տեառն տէր* Սարգսի *և եպիսկոպոսութեան տէր* Յոհանէս Բանճարկերի, *և առաջնորդի վանացս տէր* Թորոս *եպիսկոպոսի, թվին Հայոց ՋԼԲ. (1483), դէկտ[եմբերի] Ի. (20), ձեռամբ* Մեղիտէ *սուտանուն աբեղի։*

*Արդ, ցանկացող եղեալ սուրբ գրոցս* Խաչեր *ոսկերիչն, և ետ զսա գրել յիշատակ իւր, և հաւրն* Մարկոսին, *և մաւրն* Գոհար-Տիկնա, *և եղբարցն երկու՝* Ուլուպէյին, *և քւերցն* Ոստիանէ *և* Ծաղկանց, *և իւր որդոցն* Նիկողոսին *և պարոն* Գորգին, *և իւր պապու՝* Յոհանէսին, *և մամուն* Մամուշին: *Եւ կուտա զսա ի սուրբ Սիմոն եկեղեցին, որ իւրեանց տապանատեղ է, յիշատակ անջինջ։*

216բ *Եւ է աղատ, որ ոչ ոք չունի իշխանութիւն հանելոյ ի սուրբ եկեղեցոյս. և որ ոք ձեռնամուխ լինի սուրբ գրոցս ի յազգականացն՝ մասն զՅուդային առցէ և զխաչահանուացն և զանէծքն աստուծոյ։*

*Արդ, երես անկեալ աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սուրբ գրոցս կարդալով կամ աւրինակելով՝ յիշեսջիք ի Քրիստոս զ*Խաչերեսն, *և զծնաւղսն իւր, և ղանարժան զ*Մեղիտէ, *և զուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերո, ամէն։*

---

* *Նույնպիսի Շարակնոցներ Առաքել աբեղան ընդօրինակել է նաև 1485 (Ջմմառ) և 1483 (Երուսաղեմ) թվականներին։ 1485-ին ընդօրինակվածի հիշատակարանը տարբերվում է սրանից միայն Աբրահամ անվան հիշատակությամբ Ավագ վանքի վարդապետների՝ Յովհաննեսի և Ստեփաննոսի շարքում։*

## 52

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՂՈՒԿԱՍՈՒ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ, ԻԳՆԱՏԻՈՍԻ ՎԱՐԴԱՊԵՏԻ

*Մ. Աղավնունի, «Միաբանք և այցելուք հայ Երուսաղէմի», էջ 95*

*Նորոգող՝* Գրիգոր Արճիշեցի
*Վայր՝* Երուսաղէմ

*Յիմար* Գրիգորս Արճիշեցի,
*Կոչման ամէն վարդապետի*
*Իննհարիւր թուականի,*
*Ի քսանինն աւելորդի (1480)**
*Ի սուրբ* Երուսաղէմս *եկի,*
*Երեք տարի ի տեղս կացի,*
*ԶԱւետարանս Քրիստոսի*
*Զգլուխն որ Ղուկաս անուանի,*
*Որ է մեկնեալ* Իգնատիոսի
*Աստուածաբան հռետորի.*
*Բաներ ունի յոյժ պիտանի,*
*Քաղցրահամ քան զխորիսխ մեղուի,*
*Ըստ իմ տկարութեանս կարի*
*Բանիկ-բանիկ դաս ասացի*
*Աւգնականութեամբն Յիսուսի.*
*Ի սուրբ Գէորգ սկիզբն առի*
*Ի նոր կիւրակէն վճարեցի.*
*Կապն էր հնացեալ, նոր կազմեցի.*
*Հոգևոր եղբայրն մեր բարի՝*
*Քաջ վարդապետն* Եսայի,
*Որ է ամէն շնորհաւքն լի,*
*Հմուտ ամենայն արհեստի,*
*Ի կապելն այս սուրբ կտակի*
*Խրատատու եղև մեզի.*
*Որք հանդիպիք այսմ տառի*
*Ընթերցմամբ կամ աւրինակի,*
*Միշտ յիշեցէք զմեզ յաղաւթի...*

## 53

## ԳԱՆՁԱՐԱՆ

*Նոր Ջուղա 313, ՄՏՄ*

*Գրիչ՝* Խաչատուր

90բ ...*Գրեցաւ փոքրիկ Գանձարանս ձեռամբ* Խաչատուր *անարժան քահանայի ի ծերութեան ժամանակիս, որ էի ԿԸ. (68) ամաց, աչքս վատատե-*

* *Այս և նախորդ տողը ձեռագրում եղել է այսպես՝ «Ջ. թուականի, ի ԻԹ. աւելորդի»*

սեալ էր, ապա փփափագս ունէի, յընտիր և ի լաւ աւրինակէ, զոր էր ստուգ բանեբ սուրբ վարդապետն Գրիգոր Տերենցն:

Ով մեղ յիշէ՝ աստուած զինքն յիշէ, ամէն. գրեցաւ ՋԼԲ. (1483) թվականին։

54

ԱԻԵՏԱՐԱՆ

Մ. Սմբատեանց, «Նկարագիր Շամախոյ», էջ 243

Գրիչ՝ Խուենկ

Արդ, Ես անարժան և անպիտան անուամբ Խուենկ կոչեցեալ, բայց ի վարս և ի հոգս և ի համս դառն և անարգ ի գործս քահանայութեան ...գրեցի սուրբ Աւետարանս... Արդ ստացաւ սուրբ Աւետարանս Սարգիս ի հալալ ընչից իւրոց՝ յիշատակ իւր, և ծնողաց իւրոց՝ հաւրն էլպին և մաւրն Պաղտատին, և եղբաւրն յԱյտինին, և քվերն Յաւթայ-Խաթունին, Թամթայ-Խաթունին, և որդոցն Ճանճանին, Ամիրեանին, Միրինանին, և կողակցին իւրոյ Զարմանիթխին, և դստերն Խոնդֆարին, Խոստրովիթխին, և հարսինն Թամամին, Մարեանին, Հռիփսիմին, թոռանց և ամենայն արեան մերձաւորացն, ամէն։ Ի կաթողիկոսութեան տէր Սարգսին, ի ղանութեան Աղուպէկին, ի թվիս Հայոց ՋԼԲ. (1483)...

55

ԱՌ ՈՐՍ ՃԱՌՔ ԳՐԻԳՈՐԻ ՆԱԶԻԱՆԶԱՑԻՈՅ

Երևան 113

Գրիչ՝ Յուսիկ

159բ ...Արդ, գրեցաւ գիրս մեծին Աստուածաբանին Գրիգորի ի յամի ՋԼԲ. (1483) թվականին, ձեռամբ անարժան և անպիտան Յուսիկ անուամբ մեղաւք լի, ի խնդրոյ տէր Գրիգորի՝ յոյժ սրբասէր, հեզահոգի, ի վայելումն անձին իւրոյ. տէր աստուած տացէ վայելել յերկար ամօք և սրբութեամբ։

Արդ, որք օգտիք ի սմանէ գրելով ի քարտի կամ ուսմամբ իմաստի նախաշաւիղ հետևողացն առաքելագումար խմբիցն երջանկի զանըստեբիւրն գնալով ձեզ ուղղի՝ յիշել մաղթեմ անմոռաց սրտիւ զկարօտս աղօթից սրբազանիցդ դասի, զի թերևս օժանդակութեամբ աղօթից ձեր ըղձի ցաւղեսցի կաթիլ մի ցաւղոյ յամեններըանեանն տեառնէ ի կրկնամեռս իմ ոգի. որոց խնդրողացդ և փափագողացս, առհասարակ, ողորմութեան ցաւղն տեղասցի հանդերձ մերովքն ննջեցելովք և ձերովքն ամենի, յորոյ միով բերանով փառաւորի ամենասուրբ երրորդութիւնն, յաւիտեանս, ամէն։

56

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*Երևան 4868*

*Գրիչ՝* Յովանէս

ա

78բ *Բարեխաւսութեամբ սրբոց քոց Քրիստոս աստուած ողորմեա ստացողի սուրբ գրոցս* Կիրակոսին *և* Մարտիրոսին, *և ծնողաց նոցա՝* Յովանիսին *և* Աւագ-Տիկնէն, *և մեղապարտ գրչիս* Յովանէս *ապաստաւորի բանին աստուծոյ, և մեր ծնողացն՝* Շատլուսին *և* Խաթունշին, *և կարդացողաց և լսողացդ։*

բ

137բ *Տէր աստուած, աղաչանաւք սրբոցս ողորմեա ստացողաց գրոցս* Կիրակոսին *և* Մարտիրոսին, *և ծնողաց նոցա, և զաւակացն՝* Դաւթին *և* Ստեփանոսին *և* Թումին, *և* Մարգարայ *քահանային, որ զԹուխտս կոկեց։*

գ

294բ *Ողորմի ստացողի գրոցս* Կիրակոսին *և* Մարտիրոսին, *և զաւակաց նոցա* Դաւթին *և* Ստեփաննոսին *և* Թումային, *և* Ստեփանոս *եպիսկոպոսի, ամէն։*

դ

407ա *Ողորմի, Քրիստոս, ստացողաց գրոցս* Կիրակոսին *և եղբաւրն* Մարտիրոսին, *և զաւակացն, և հարսներուն՝* Խալիմ-Խաթունին *և* Աղբգրացին. *և զաւակաց նոցա, ամէն**։*

ե

335ա *Յայսմ աւուր Նաւասարդ չալալ է***։

* *Նման մանր հիշատակագրություններ կան բոլոր վկայաբանությունների վերջում։ Ցավոք, նրանցից ոչ մեկը թվական չունի։*

** *Մատենադարանի հին ցուցակում, մեզ անհայտ տվյալների հիման վրա, ձեռագրի ընդօրինակման թվականը նշանակված է 1483—90։ Համոզված ենք, որ ցուցակագրողը ձեռքի տակ ունեցել է որևէ տվյալ գրչության մերձավոր թվականը որոշելիս, ուստի հիշատակարանները պայմանականորեն դնում ենք 1483-ի թվաշարքում։ Ձեռագրի հնագրական տվյալները ևս վկայում են, որ իրոք այն ընդօրինակված է ԺԵ. դարում։*





## 57

### ԳԱՆՁԱՐԱՆ

**Երևան 7593**

**Գրիչ՝ Ստեփաննոս**

ա

273բ Փառք... որ ետ կարողութիւն [տ]կարիս հասանել ի յաւարտ գծիս Աւետարան[ց]աւ քրիստոսահիմն և հոգիաբուղխ Գանձարանս [ի] թուաբերութեանս հայկազեան տամարիս ՋԼԳ. (1484), [ի] հայրապետութեան տեառն Սարգսի ի յաթոռ սուրբ Էջմ[իա]ծինն, որ ի Վաղարշապատ, եւ ի յառաջնորդութ[եան] ուխտիս զմեծ դիտապետ զտէր Յոհաննէս արհե[պիսկոպոսի և] զեղբայր նորին զտէր Ստեփաննոս եպիսկոպոս։ Եւ ի յաշխ[ար]հակալութեանն կորովի և յաղթող մանկանն [Եա]ղուբէկին, որդոյ մեծին Հասան-բէկին, որ բազում [քա]ղաք և տեղիք էառ և աւեր արար, և գնաց ի Վր[աց]տուն, և զաւ[ր]քն սփռեալ տարածեցան յերկիր /// և մտեալ ի մեծ քաղաքն Տփխիս, և սուր ի [վերայ եդ]եալ կոտորեցին ահասարակ զծերս և զտ[ղայս, ա]ռհասարակ՝ զքահանայքն և [սա]րկաւագ[ունքն] ի յեկեղեցո միջին զենուին։ Եւ զորս փախըստա[կան ի] մացառս մայրոյ որոնէին և գտեալս [զննէին որ]պէս զանասուն, և զբազումս գերեցուցին /// աւերեցին և բազում նեղիս գործեցին /// փախըստական արարին /// ։

բ

194ա Զանպիտան մեղաւք իլի Ստեփաննոս գրիչս յիշեա։

## 58

### ՃԱՇՈՑ

**Երևան 939**

**Հետ. ստացող՝ Ներսես Քանաքեռցի**

219բ Այլ և զվերջին ստացող գրիս
Զներս[էս] էրէց Քանաքեռցիս,
Որ ստացայ զգանձս բարիս,
Յայս նեղութեան ժամանակիս՝
Ի մեծ թվին հայ տումարիս
Իննհարիւր* յերեսուն 'ւ երիս (1484)։

* Բնագրում գրված է «Ջ» (իննհարիւր)։

*Յայժ զօրացան ազգն նետողիս*
*Եւ ոխացան դէմ Հայոց ազգիս,*
*Ժողովեցին զմեր զանգականիս*
*Եւ շատ աւեր ածին այս երկրիս։*

59

ԳԱՆՁԱՐԱՆ

*Երևան 7553*

*Գրիչ՝* Մկրտիչ
*Վայր՝* Մողնի

ա

243ա *Փառք... որ ետ կարողութիւն մեղսասէր և տկար ոգոյ սղալոտ, փծուն և անարհեստ գրչի՝ սուտանուն և անարժան* Մկրտիչ *երիցուիս։*

*Ես անպիտանս յամենայնի*
*Մեղաւք լցեալ 'ւ ողորմելի*
*Ունիմ տեղիք բանքասելի,*
*Որ դԳանձատետրս յուշ գրեցի։*
*Ես էլ գիտեմ, որ սուտ էի,*
*Շատաշրջիք յամէն տեղի,*
*Որք հանդիպիք յայսմ գանձի*
*Ինձ ասացէք աստուած-ողորմի,*
*Եւ դուք արժան լինիք տեսոյն Քրիստոսի։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմայ՝ յիշեցէք... զբա-*
243բ *րեմիտ, զհոգէսէր, զհիւրընկալ և զաղքատասէր, զողորմած* // զՍահիլն, *և զկենակիցն իւր զ*Բայրամն*՝ փոխեցեալն ի Քրիստոս, վասն զի ոչ մնա- լով զաւակ մարմնաւոր ի վերայ երկրի՝ ստացաւ զայս գանձս, որ ճշմա- րիտ գանձ է աստուածային...*

*...Հաւատարիմ կինն այս* Ջանվիլն.. *ստացաւ զսայ ի հալալ ընչից իւրոց յիշատակ իւր, և ծնօղաց իւրոց՝ հաւրն* Յովհաննեսին *և մաւրն* Թուխ- թարին, *և զաւակացն* Վիրապոռւրին *և* Շահապոռւրին, *և կենակցին* Բայ- րամին. *և տէր* Յոհաննիսին, *որ եղբայր էր* Բայրամին՝ *հարաղատ և լաւ, ընտիր կրաւնաւոր, փիլիսոփայ, գրագիր, ծաղկող, կազմող և լաւ աբեղայ։ Եւ* Ջանվիլն *սոցա յիշատակ ստացաւ զսա իւրն, և քուերցն* Շնոնորին, Սարգսին, *որ էր հրախտաւոր փեսայ իւր, և զաւակացն* Մարտիրոսին, *և* Մահանի, *և մեծի և փոքու, և միւս քւերն* Ջմրուքին, *և որդոյն* Յոհանի- սին, *և* Նահպարոն *փեսային, և ինձ՝ մեղաւոր գրչիս* Մկրտիչ *երիցիս, որ անուամբս միայն եմ և ոչ գործովս։*

*Արդ, գրեցաւ սայ ի թվականիս Հայոց ՋԼԳ. (1484), ի հայրապետու- թեան տէր* Սարգսի *ի սուրբ* Էջմիածնի, *և ի ղանութեան* Աղուբէկին, *ի գեւ- ղիս որ կոչի* Մողնի, *ընդ հովանեաւ սուրբ Գէորգեայ զաւրավարի, առ ոտս* Գէorf *կրօնաւոր[ի] աբեղիցս՝* Ատոմիս *և* Սարգիս *և* Մաքէոս *երիցիս, և ինձ՝ մեղաւոր գծողիս* Մկրտիչ *երիցիս։ Արդ, ո՛վ եղբայրք, խոշորութեան*

և սղալանացն անմեղադիր լերուք, զի կար մեր այս էր։ Եւ որ հանդիպիք սմայ ուսմամբ, կամ աւրինակելով, կամ տեսանելով՝ յիշեցէք ի Քրիստոս Զաքարիա և զամենայն արեան մերձաւորսն իւր, և աստուած զձեզ յիշէ ի միւսանգամ գալուստն իւր, ամէն։

Բ

Աւախ, զի ի բազում մեղաց իմոց միտքս մոլորեցօ։ Եւ այս թուղտս կիսատ է։

## 60

## ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Վիեննա 403. Յ. Տաշեան, Ցուցակ, էջ 855

Գրիչ՝ Աբրահամ
վայր՝ Բոլորաձոր անապատ

181ա— Փառք... որ ետ կարողութիւն անարհեստ գրչի անարժան Աբրահամի
182ա սուտ անուամբ աբեղա կոչեցեալ և ոչ գործով, զի գրեցի զտետրակս և ոսկով զարդարեցի և կազմեցի, ի վայելումն անձին իմոյ, և հոգեւոր հօրս և ուսուցչի և հօրեղբաւրս իմ Աւագտէր* վարդապետի, և եղբարց իմոց տէր Զաքարին, Յակոբին, և աւաք եղբաւրն իմ տէր Դաւիթ աւագերիցու և փիլիսոփայի, և Մարգարին, և զօակաց նոցին։ Եւ յիշատակ մեզ և ծնողաց մերոց։

Գրեցաւ ի յանապատս Բոլորաձորոյ, ի թվ. ՋԼԳ. (1484)...

## 61

## ԱՒԵՏԱՐԱՆ

Հ. Անառեան. Ցուցակ Թաւրիզի 15, էջ 16, Թաւրիզ, Բերդաթաղ

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Վերի Նոր[ավանք]

ա

275ա ...Արդ, եղև գրաւ գրչութեան այսմ աստուածաշունչ սուրբ Աւետարանիս ի թվականութեան հայկազան տումարի ՋԼԳ. (1484), ի դառն և ի դժնեա, յանբարի և ի վշտաշատ ժամանակի, յորում նեղ[իմք] յանաւրինաց [և] անիր[աւ] պահանջող[աց], ի երկնահանգ[էտ] և [մեծ]ահռչակ [սուրբ] ուխտիս Վերի Նոր[ավանս ///** ի հայրա]պետութ[եան Յովհաննէ]սի, ի յաթ[ոռն սուրբ էջմի]ածնի Վաղ[արշա]պատ դրու(*) Այ[րա]րատեան նահանգի, ձեռամբ ամենամեղ, փծուն և անարհեստ գրչի Գրիգոր անարժան և ծոյլ աբեղայի, որ զանունս միայն ունիմ կրաւնաւորի։ Ի խնդրոյ և յարդեանց երից երանեալ երջանիկ և սրբասէր աբեղայի Յովանէս վերած[այն]եցոյ...

* Շարադրված է ոչ որպես անձնանուն, այլ որպես տիտղոս Տէրս։
** Վեց տող անընթեռնելի ջնջված է։

Բ

217ա Ձերիցս երանեալ և զարժանապատիւ զսրբասէր զՅովանէս սրբակրաւն աբեղայ՝ ստացող սուրբ Աւետարանիս, հանդերձ ծնաւղաւք և ամենայն արեան մերձաւորաւք, և զիմ զանարժանութիւնս՝ Գրիգորի գծողի սորա յիշեցէք ի Քրիստոս*։

## 62

## ՍԱՂՄՈՍԱՐԱՆ

Նախավկայ 5/2, ՍՏԱ

Գրիչ՝ Բարդողիմէոս
վայր՝ Մաղարդու վանք

Արդ, գրեցաւ Սաղմոսարանս ձեռամբ յոգնամեղ սուտանուն Բարդողիմէոս [կր]օնաւորի, ի տեղս որ կոչի Մաղար[դու] վանք, ընդ հովանեաւ սուրբՍտեփա[նոս] Նախավկայի, առ ոտս երջանիկ /// ոյս, և զվարպետն իմ զտէր Գրիգոր Բերկրեցին, և զուսուցիչն իմ զտէր Պետրոս մահդասին. թուին ՋԼԳ. (1484)**։

## 63

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6273 (Ղ. Փիրղալեմեան, Նշխարք պատմ. հայոց), էջ 330, Վան՝ Հայկավանք.

Գրիչ՝ Հերապետ
վայր՝ Աղթամար

Եւ արդ, ես ունայնս և թափուրս յամենայն հոգևոր բարեմասնութեանց... սուտանուն աբեղայս Հերապետ՝ տեսի զփափագ Գուճարին և զսէրն զոր ունէր առ հոգևորսն, և իմով իսկ տկար անձամբս յանձն առի և ամենակարող զօրութեամբն աստուծոյ կատարեցի զսուրբ Աւետարանս զայս յաստուածախնամ կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ սուրբ Խաչիս, և սուրբ Սարգսի, և սուրբ Գէորգայ, ի հայրապետութեան տեառն Սահփանոսի, ի թուականութեան հայկազեանս տումարի ՋԼԳ. (1484), ի դառն և ի նեղ ժամանակ[ի], որ երկիր ամենայն երերեալ և տատանեալ կայ ի ձե-

---

* Հ. Աճառյանը հայտնում է, որ «հիշատակարանեն ետք կա և թերթի մի փշրանքները. որմե կը հետևցվի թե ավետարանը երկրորդ անգամ նորոգված է, թե առումախ մը կա վկայություններով հանդերձ, բայց կարդալ ղանոնք այլևս ուչ է»։

Սարգիս Հայկունին իր 1894 թ. հրատարակված «Բագրևանդ գաւառ» աշխատության մեջ ևս մի հատված է մեջ բերել ձեռագրի հիշատակարանից (էջ 382—383), ինչպես նաև մի-երկու տող առումախի այդ արձանագրությունից, որ Հ. Աճառյանի ժամանակ արդեն (1905/6 թթ.) հնարավոր չի եղել վերծանելու Ահա այդ տողերը. «Ի արքեպիսկոպոսէն Ռ. (1000) դկն. տարաւ, ՃԾ (150) լիտր ցորեն, խանչալ ՃԾ (150) դկն. դկնի ապրիշումէ գոտիկ առաւ. Առաքել եպիսկոպոսէն...»։

** Ս. Տէր-Ավետիսյանը հաղորդում է, որ ձեռագիրը շատ վատ դրության մեջ է եղել. «Համարյա բոլոր թերթերը,—գրում է նա,—կամ կտրած են կամ պատռված, կամ պոկված, կարկատած»։

ռաց անօրէն ազգին նետողաց, և ի յահէ աստուածահրաման պատուհասիս՝ մահտարաժամէս, որ ի վերայ աշխարհիս է տարածեալ վասն ծովացեալ մեղաց մերոց....

## 64

## ՄԱՇՏՈՑ

**Երևան 4966**

Գրիչ՝ Մինաս
վայր՝ Կտուց կղզի

328բ ...Արդ, Ազբէկ և կողակիցն իւր Հաթուն-Մէլէքն իմացեալ զայսպիսի պատուէր և զերանաւէտ ձայն՝ ստացան և ետուն գրել զաւրհնութիւնս քահանանագործութեան ամենայն կարգօրրութեանց եկեղեցոյ և զկրաւնս քրիստոնէութեան, զոր սահմանեցին սուրբ հարքն յիւրաքանչիւր ժամանակս, զոր ժողովեաց սուրբ վարդապետն Մաշթոց, և եթող դանձ անկողոպտելի եկեղեցոյ և լուսաւորիչ հաւատացելոց քրիստոնէից։

Արդ, աղաչեմ զձեզ զամենեսեան՝ զքահանայքդ և զպաշտօնեայս եկեղեցւոյ՝ յիշեսջիք յաղաւթս ձեր զԱզբէկ, և զկողակիցն իւր զՀաթուն-Մէլէքն, և զաւակն իւրեանց զԱւագն՝ զփոխեցեալն ի Քրիստոս, և զծնա[ւ]ղս
329ա իւրեանց, և զամենայն արեան մերձօրս իւրեանց՝ զկենդան//ին և զհանգուցեալ յիշեցէք ի Քրիստոս և լի բերանով աստուած-ողորմի ասացէք և աստուած ձեզ ողորմի, ամէն։

Եւ արդ, ես նուաստանուն կրաւնաւորս, որ միայն անուամբ եմ կրաւնօոր, այլ գործով ծոյլ և անպիտան, և յերես անգ[ե]ալ աղաչեմ զամէնիսան եղբեղ (իմա՛ ուղիղ) սրտիւք աստուած-ողորմի ասացէք Ազբէկին, և Հաթուն-Մէլէքին, և զօակաց նոցին, որ հանգին ի գոգն Աբրահամին, ամէն։

Արդ, գրեցաւ սուրբ Մաշթոցս յանապատս, որ կոչի Կտուց, ընդ հովանօ սուրբ և դեահալած սուրբ Կարապետին և սուրբ Աստուածածնին, ի թվական Հայոց ՋԼԳ. (1484)...

329բ ...Արդ, աղաչեմ զձեզ սուրբ մանգունք եկեղեցու, որք խան[դ]իպիք սմա կարդալով կամ օրինակելով կամ տեսանելով՝ ուղիղ սրտիւք և լի բերանով աստուած-ողորմի ասացէք անարժան գծաւղիս Մինասիս, և ծնաւղաց իմոց՝ հաւրն Հաէրապետին և մաւրն Արուսին, և եղբաւրն իմ Աբրաճամին, և ամենայն արեան մերձաւորաց իմոց, ամէն...

## 65

## ԱՒԵՏԱՐԱՆ

Մ. Աթոռ 63, «Էջմիածին», 1951 թ. հուլիս-օգոստոս,
էջ 87—88. Նաև Ե. Լալայեան, Ցուցակ Վասպուրականի 202, սյուն. 493—498

Գրիչ՝ Ազարիա
վայր՝ Վան

ա

392ա — ...[Ա]րդ, յանգ ելեալ կատարեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ անարժան և սուտանուն երիցու Ազարիայի, որ զանունս ունիմ և զգործս ոչ, ի
397ա

քաղաքս Վան կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի տաճարիս, ի թուաբերութեանս Հայոց ՋԼԳ. (1484), ի դառն և ի վշտաշատ ժամանակիս,

Որ չգիտեմք թէ ինչ տի լինի Հայոց ազգիս
Ի թինաւոր ազգաց միջիս շիւարեալ կանք ողորմելի,
Սպառեալ կանք մեղաւք հանապազ ի հոգս աշխարհի,
Աղաւթք և աղաչանք չունենք առ աստուած, որ մեզ ողորմի,
Զսէր աշխարհիս ունինք՝ աստուծոյ եղեալ թշնամի։
Հազար բերան լալ պիտի, թէ զի՞նչ տանք մեք պատասխանի,
Յորժամ արարիչն գայ և քննաւղ լինի ամենի։
Եկա՛յք արդարոցն ասէ, զմեղաւորքն դատապարտէ,
Աւա՜ղ ու հազա՜ր աւա՛ղ, ճշմարիտ որ այս տի լինի։
Դարձեալ աղաչեմք զձեզ՝ զմանկունքդ սուրբ Սիոնի,
Յորժամ հանդիպիք տառիս յիշեցէք զստացաւղն յաղաւթի,
Զմեռեալ տառապեալ գծրի, զհողացեալքն ի գերեզմանի,
Քրիստոս ողորմի ասցէք, որ հանգչին ի յաւիտեանի.
Եւ ձեզ ողորմի Քրիստոս ի յահեղ աւուրն մեծի,
Ի յաջակողմեան դասուն ձեզ պսակ փառաց պատրաստի,
Զեկայքն լսել տա ձեզ՝ ժառանգել զդրախտն Ադենի,
ամէն, եղիցի, եղիցի։

...Այսմ աստուածեղէն և երկնապարգև գանձիս և լուսափայլ մարգարտիս ցանկացող եղեն սրբասէր և բարեմիտ տանուտէրքն խոջայ Քարիմշէն, խոջայ Խդրշէն և խաւջայ Աառմն... ստացան ի վայելումն անձանց իւրեանց, և յիշատակ հոգոց իւրեանց, և ծնաւղաց իւրեանց՝ հաւրն Թումին և մաւրն Շարմելէքին, և այլ ամենայն արեան մերձաւորացն, ամէն...

Դարձեալ յերես անգեալ աղաչեմ զձեզ յիշեցէք ի սուրբ և ի մաքրափայլ աղաւթս ձեր զբարեմիտ և զհեզահոգի տանուտէրն զխաւջայ Քարիմշէն, որ փափաքելի սիրով ստացաւ զսուրբ Աւետարանս ի հալալ վաստակոց իւրոց, յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնաւղաց իւրոց Թումին և Շարմելէքին, և կենակցին իւրոյ Գուլստանին, և զաւակաց իւրոց Սաֆարշին, Ամիրզատին և Գուլամփաշին՝ փոխեցելոցն ի Քրիստոս, և զդեռաբոյս ծաղիկն իւր զԽաւշէն, որոյ տէր աստուած ընդ երկայն աւուրս առնէ զնա, ամէն։

Արդ, աղաչեմ զձեզ, յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր զխաւջա Խդրշէն և զկողակիցքն իւր զԱղութն, և զմիւս կողակիցն զԱնլի-Փաշէն, և զնորին զաւակսն զխաւջ[այ] Սմբատն, և զխաւջայ Միրաքն, և զմիւս կողակիցն զԲէկի-Խաթունն, և զդեռաբոյս ծաղիկն իւր զՍալթան-Ղուլին, որոյ տէր աստուած ընդ երկայն աւուրս արասցէ զնոսա մինչ ի խորին ծերութիւնն, ամէն։ Եւ ողորմեսցի Քրիստոս աստուած մեր Աղութ-Խաթունին և Անլի-Փաշին, Էզդանին և Մուճութ-Սալթանին՝ փոխեցելոցն ի Քրիստոս...

Դարձեալ յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր զխաւջայ Առոմն, և զնորին կենակիցն զԳուլում-Փաշէն, և զաւակսն իւր զԴովլաթ-ղուլէն և զՇահնիաթն, և զմիւս Դովլաթ-ղուլին՝ զփոխեցեալն ի Քրիստոս, և լի բերանով աստուած-ողորմի ասացէք և աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։

Դարձեալ յիշեցէք... զխաւչայ Խդրշէն, և զեղբայրն իւր զՄիրիչանն, և զնորին կողակիցն զԹաթար-Խաթունն, և զնորին զաւակսն զԱնիչանն, տէր աստուած փրկեսցէ զնա յամենայն չարէ, ամէն, [ և զՓարի-Խաթունն՝ զփոխեցեալն ի Քրիստոս ]*։

Դարձեալ, յիշեցէք... զխաւչ[այ] Խդրշէն և զորդին իւր զխաւչայ Սումբատն, և զնորին կենակիցն զԴուլստանն, և զորդին զԿարապետն, և զքուերքն իւր զՔնfուշն և զԹուրան-Մէլեքն, զԹարթիփշէն և զԽալաֆ-Խաթունն, և զմեծ պապն զՇաfարն և զԱռռմն, և զքեռիքն՝ զխաւչա Բախշայիշն, և զնորին որդին զՍիամռնն, և զմիս քեռին զՄաղթումն, զՔանդարն, և զնորին որդին զԱռռմն, և զհաւրաքոյրն զՓաշէն, և զմաւրաքոյրն զԽաթունշէն, և ուղիղ սրտիւ աստուած-ողորմի ասացէք։

Արդ, յերես անդեալ աղաչեմ զձեզ յիշման արժանի արարէք զմեղուցեալ գծողս զԱզարիայ, և զծնաւղսն իմ և զուսուցիչ զԿարապետ քահանայն, որ նահատակեցաւ ի յԱրճէշ քաղաքի, և զմայրն իմ զՍադդաթ, և զայլ ամենայն արեան մերձաւորքն մեր՝ զկենդանիք և զհանգուցեալքն ի Քրիստոս...

Բ

Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զխոջայ Քարիմշէն, որ զարդարեաց զժամատունն Պետրոսի առաքելոյն և զԹարմէն կապեց...

Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զխոջայ Քարիմշէն, որ զշուրջառն է տուեր և զբուրվառն յՈուսաց է բերէր և դրեր ի դուռն Պետրոսի առաքելոյն...

Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զխոջա Քարիմշէն, որ զերկաթայգիր Աւետարան և զՄաշթոցն է բէրէր և դրեր ի դու[ռ]ն սուրբ առաքելոյն Պետրոսի և Պօղոսի։

Ո՜վ եղբարք և մանկունք սուրբ եկեղեցոյ, որք հանդիպիք սմա կարդալով կամ օրինակելով յիշեցէք և լի բերանով և բոլոր սրտիւ աստուածողորմի աս[ացէք] քահանայն (՞) և զխոջայ Քարիմշէն և զեղբայր Խդըրշէն, որ ետուն զսոսկալի սուրբ Աւետարանն ի դուռն սուրբ Պետրոսի առաքելոյն անջինջ յիշատակ հոգոյ իւրեանց. եթէ որ [յ]անդգնաբար հեռացնէ կամ ծախէ կամ գրաւէ՝ անէծք Կայենի առցէ**։

66

ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Երևան 5313

Վայր՝ Վան

...Յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զԱսլան-Մէլիքենց Ասպանճանշէն և զքաջ նահատակն զՍfանդարն, որ ի ձեռաց անօրինաց մարտիրոսացաւ...***

---

* Փակագծի մեջ բերվածն ավելացված է հետո։

** Բ. հիշատակարանը՝ խոջա Քարիմշի մատուցած նվերների մասին՝ գրված է այլ ձեռագրով։

*** Ղ. Փիրղալեմյանը հայտնում է, որ նահատակության տարեթիվը դրված չէ, բայց եղած պետք է լինի 1466—1484 թթ. միջոցին։

576ա Յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր զՎանայ տանուտէրքն զխոջայ Արապշէն, և զխոջայ Խդրշէն, և զխոջայ Մուրադշէն, և զռէս Խումարշէն, և զտանուտէրքս՝ զմեծ և զփոքր, որ ի Սուլիման-բէկի աւուրքս բազում բարութիւնըս արարին. զի չւանն խափանեցին, և զգաՀիանզդէն վերուցին ...: զմլքանէն տասնէն մէկ առնուն, ու զքաՀանայքն յանօրինաց Հարկապահանջութենէն ազատեցին*...

## 67

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4097

Ստացող՝ Թադէոս մաՀդասի
վայր՝ Արարուց (եկեղեցի)

634բ ...Արդ, աղաչեմ զձեզ, ո՛վ մանկունք սուրբ եկեղեցոյ, յորժամ տեսանիցէք զաստուածայխաւս սուրբ Աւետարանս տեսանելով կամ աւրինակելով՝ յիշեսջիք ի յերկնայթռիչ յաղաւթս ձեր զԹադէոս մաՀդասի, որ ըստացա զսուրբ Աւետարանս ի Հալալ վաստակոց իմոց, յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց՝ Հաւրն իմոյ Զըրֆընին և մաւրն իմոյ Բաղտաւին**...

635ա Գնեցի զսուրբ Աւե//տարանս և նորոգեցի և դրի ի դուռն սուրբ Գրիգոր Լուսաւորչիս Արարուց, և տվի ընձայ սուրբ Գրիգոր Լուսաւորչիս՝ զսուրբ Աւետարանս, զսուրբ սկիՀն և զգանձատետրն՝ իմ Հոգոյս բաժին։ Ոչ ոք իշխէ իմոց կամ աւտարաց ծախել, կամ գրաւել, կամ Հանել ի վանուցս։ Ով որ Հանէ ի դրանէ սուրբ Գրիգոր Լուսաւորչիս զիմ Հոգոյ բաժինս կամ ծախէ՝ զմասն Յուդայի առցէ [և] զխաչաՀանուացն։ Ով որ լաւ պաՀէ կամ լավ խնամս տանի՝ զվարձն յաստուծոյ առնու ի սուրբ Գրիգոր Լուսաւորչէս, ամէն։

Դարձեալ, կրկին աղաչեմ յիշել յաղաւթս ձեր զսուրբ Գրիգորի վանուց միաբանս՝ զտէր Գէորգն, զտէր Դաւիթն, զտէր Վարդանէսն, զտէր Գրիգորն, զտէր Պաւղոս, զտէր Ստեփանոսն, զտէր Մաթէոսն, և զԹադէոս մաՀդասի, և զսարգաւաքերն՝ զՄիրիջան, և զՄինասն, և զՋանիկն, և զՀայրապետն, և զայլ ամենայն զմեծն և զփոքրն։

Կազմեցաւ սուրբ Աւետարանս ի թվականիս Հայոց ՋԼԳ. (1484), և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։ Ով որ զմեր յիշատակութիւնս ջնջէ կամ կտրէ, նայ անիծած լինի յաստուծոյ և յամենայն սրբոց նորա։ Շատ անմիտ զայդ կառնեն, դուք մի՛ առնէք, զձերն գրեցէք և զմերն անջինջ պաՀեցէք։

* ՎերոՀիշյալ վկայաբանությունը գրված է 1484 թ., ըստ այդմ սույն Հիշատակարանը պայմանականորեն տեղադրում ենք 1484-ի թվաշարքում։

** Հիշատակում է իր բազմաթիվ ազգական մերձավորներին։ Ուշագրավ են՝ Մումպարաք (ար.), Մղիկդիշ (իգ.), Նատար (ար.), ԳոՀարշատ (իգ.) անունները։

Կրկին աղաչեմ յիշել յաղաւթս զվարդպետն իմ՝ զտէր Գրիգորն, և զմիւս ուսուցիչն իմ զԴաւիթ Սասանէնց յիշեցէք և աստուած-ողորմի ասացէք, և աստուած զձեզ յիշէ, ամէն։ Սովորութիւն է աստուծոյ այլում բերանով այլում ողորմիլ, դուք աստուած-ողորմի ասացէք, և աստուած ձեզ ողորմի, ամէն։

## 68

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 9233

Գրիչ՝ Յակոբ
վայր՝ Աղթամար

...Հեզահոգի տանուտէրն խոջա Սադաղէն... ետ գծագրել զսա յիշատակ հոգոյ իւրոյ և եղբաւրն՝ խոջա Թումաբէկին, որ յայսմ ամի փոխեցաւ ի Քրիստոս երիտասարդ և տղա հասակաւ ի ղարիբութիւն, և եթող սուգ
1բ անմխիթար, այլ և ծնաւղացն Յովանիսին և Ղանիմին. և կո//ղակցացն Մէլէֆ-Խաթունին և Ասլի-Փաշին, և տղայոցն և զաւակացն և ամենայն արեան մերձաւորացն իւրեանց՝ կենդանեացն և հանգուցելոցն, առհասարակ։

Եւ արդ ես՝ յետինս ի գրչաց և անարժանս ի կարգաւորաց սուտանուն կրաւնաւորս Յակոբ... կատարեցի զսա մեղսամած մատամբ իմով յաստուածաբնակ կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ ամէնայաղթ սուրբ Խաչիս և սուրբ Նըշանիս, ի հայրապետութեան տեառն Ստեփաննոս կաթողիկոսի, ի թուականիս Հայոց ՋԼԳ. (1484)...

Արդ, որք ճաշակիք յաստուածային բուրաստանէս և յամէնալի սեղա-
2ա նոյս, // որք պատահիք սմա տեսութեամբ և կամ ընթերցմամբ... յիշեցէք ի Քրիստոս զառաջ յիշեցեալ զստացողն սուրբ Աւետարանիս ըզխոջա Սադաղէն, և զեղբայրն զխոջա Թումաբէկն, և զծնաւղքն իւրեանց՝ զՂրձելենց Յովանէսն, և զՂանիմ-Մէլէֆ, և զՍադաղի կողակիցն զՄէլէֆ-Խաթուն, և զորդիքն զՄակարոց, և զՄիրաf, զՊարսամ, և զԽոջամիր, և զդստերքն զ'Իլիէխուշատ և զԱնլինան, և զԹումաբէկի կողակիցն՝ զԱսլիփաշէն, և զտղայք նոցին՝ զՍալտանշայ, զՍաֆարշայ և զՍfանդար, և զդուստրն զԱսլիզադէն, և զքոյրն զՋանփաշայ, և զայլ ամենայն արեան մերձաւորքն՝ զկենդանիքն և ըզհանգուցեալքն, և զգնած ծառէն՝ զԳուշղանէն...*

3բ ...Ընդ նոսին և զիս՝ զանպիտան և զանարժան և զմեղաւոր ծառայս աստուծոյ զՅակոբ աղաչեմ յիշել ի տէր, և զիմ անարժանութիւնս, նաև զծնաւղքն իմ զՅովսէփ և զՓաշայ, և զեղբայրն իմ զՍուfիաս, որ յայսմ ամի փոխեցաւ ի Քրիստոս, և զեղբորորդին իմ զՍտեփանոս, և զվարպետն

* Բաց ենք թողնում երկուսուկես էջ բռնող մի ընդարձակ մաս, ուր գրիչը 5 անգամ, համանման տարտամ արտահայտություններով, խնդրում է հիշել ձեռագրի վերոհիշյալ ստացողներին՝ Սադաղին, Թումաբեկին և մյուսներին։

իմ զտէր Յովաննէս կրօնաւորն, որ զաւրինակն շնորհեաց, և զամենայն երախտաւորք և զամենայն ազգականքն իմ..., և ծաղկողին՝ տէր Կարապետ վարպետին, որ մեծաւ աշխատանաւք նկարեաց զսայ, այլ և վայելողին՝ տէր Յակոբին, և տէր Հայրապետին, և տէր Սամբսոնին, և որք զկնի նոցա լինին...

4ա Ես խոջա Սադաղայ և Թումաբէկ* ստացաք զսուրբ Աւետարանս ի հալալ և յարդար վաստակոց մերոց և տուաք զսա ընծայ ու նուէր Պարըսպի սուրբ Նշանին, ի ձեռն տէր Յակոբ քահանային և որք զկնի նոցա լինին, զի յամենայն ամի զյիշատակարանս ընթեռնուն և մի ծանծրանան թէպէտ յաճախ է** և անյարմար, աստուած զիւրեանց հոգին լուսաւորէ. որ կամենան՝ և կարդան աննախանձ, և խոշորութեանն և սխալանացն անմեղադիր լերուք, զի կար մեր այս էր...***

## 69

## ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 4767****

Գրիչ՝ Թումայ
վայր՝ Աղթամար

313ա ...Եւ արդ ես՝ ...անյիշելիս ի գրչաց սուտանուն քահանայ Թումայ՝ եղկելի ոգի, տեսի զսէր և զփափագ սորա (Սարգսի) առ հոգևորսն և... դծաղրեցի զսա մեղսամած մատեամբս իմով, մեծաւ աշխատութեամբ յաստուածաբնակ կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ հրաշակաւոր և երկ//

313բ նանման դումբեթայարկ սուրբ խաչիս և սուրբ Յարութեանս, ի հայրապետութիւն տեառն Ստեփանոսի, և ի թուականութեան հայկազեան տօմարիս ՋԼԳ. (1484)...

Արդ, ես՝ Սարգիս և կենակիցն իմ Եղիսաբեդ լուսազարդ և ուրախարար բանից ցանկացող եղէ և ստացայ զնիւթ սորա ի հալալ արդեանց իմոց և նուիրեցի ի դուռն սուրբ երեշխաւոր Աստուածածնին՝ Օկոռու վանիցն, որպէսզի ուրախացին սոլաւ հանապազ մանկունք սուրբ եկեղեցոյ համեղաբան գանձիւքն և քաղցրեղանակ մեղեդեաւքն և տաղիւքն, որ ///

---

* Այս հատվածը գրված է ստացողների անունից, բայց նույն գրչի կողմից, որպես հիշատակարանի շարունակություն։

** Ակնարկում է ստացողների մասին հիշատակարանում եղած միանման հատվածների առատությունը, որ արված է, հավանաբար, ստացողների պահանջով։

*** Ձեռագրից պահպանվել է միայն հիշատակարանը. այն անդամահատված է եղել ձեռագրից դեռևս 1888 թվականին, երբ Գ. Փիրղալեմյանը լուսանցքների վրա գրել է տեղեկություն իր կողմից օգտագործված լինելու մասին։ Նա հայտնում է նաև, որ այն ձեռագիրը, որից հանված է հիշատակարանը, գտնվել է Բաղեշի սուրբ Սարգսի եկեղեցում։

**** Այս Գանձարանը, մինչև առաջին համաշխարհային պատերազմը պահվել է Վարագի վանքում։ Ձեռագիրը տեսել և նկարագրել են Գ. Փիրղալեմյանը (տե՛ս № 4515, էջ 227), Հ. Թաքաղամյանը (№ 6333, էջ 452) և Ե. Լալայանը( Ցուցակ Վասպուրականի, սյուն. 536)։

## 70

## ՇԱՐԱԿՆՈՑ

Երևան 1585

Վայր՝ Աղթամար

213բ Փառք անեղ էին, անսկիզբն արարչին
Ամենից գոյացուցչին, յանէից հաստչին,
Հաւրն անպատճառին,
Որդւոյն պատճ(՞) խրում բանին,
Զի է միակ ի յերեսին՝
Երրեակ ի մին անքննային,
Ի պատկերէս մեր տիրային
Տէր ճանաչի անհասն յերկին,
Մարմին և բան և հոգիս մին
Երիս և մի ի բոլորին,
Որ արժանի արար զմին
Հանել ի յանկ զտառս կոժային,
Զի յոյժ կարիք էաք սմին,
Ի կղզիս, որ Ախթա[մա]ր կոչին,
Ընդ հովանեաւ սրբոյ Խաչին
՚Ի ամէնաւրհնեալ Աստուածածնին,
Թուով հասեալ յիննհարիւրին՝
Երեսուներեք սարբար նորին (1484),
Ի վայելումն իմում անձին
Եւ յիշատակ իմ ծնողին։

## 71

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Լայդենի համալսարան, Յ. Մակլեր,
Ցուցակ 17, էջ 38

Գրիչ՝ Մելքիսէթ
վայր՝ Բաղէշ

533ա ...Եւ ես՝ փծուն գրիչս Մելքիսէթ քահանա՝ ծանրաբեռն մեղաւք, տգէտ գիտութեամբ և անիմաստ մտաւք, անհմուտ գրոց գիտութեան և անվարժ արուեստիւք, յանդգնութեամբ ձեռնարկելով ի մեծ գործս յայս ոչ ըստ իմում կարողութեանս, այլ ապաւինելով յամենակարող զաւրութիւն պարգևատուին, որ տա առատապէս և ոչ նախատէ, բազում և մեծ աշխատանաւք հասուցի զսա յաւարտումն յաստուածապահ քաղաքս Բաղէշ, ընդ հովանեաւ հինկ խորանացս՝ սրբուհւոյ Աստուածածնին, և սուրբ Սարգսի զաւրավարին, Պետրոսի և Պօղոսի, և սուրբ Խաչին։ Ի թուականիս Հայոց

ի Ջ. և ԼԳ. (1484) ամին, և հայրապետութիւն տէր Սարգսին և ի ղանութիւն* Աղուբէկին:

...Քրիստոս աստուած դասակից և պսակակից արասցէ սրբոց Հռիփսիմեանցն և Գայիանանցն զհոգի ստացողաց գրոցս պարոն Սէթին, և Մուրադին, և Դիլշատին, և Մելքոնին, և Ղազարին, և Մկրտչին. Մարգխաթունին, և Մուսխին, և Թուրվանդին և Սարգսին մշակին**, և աստուած-ողորմի Սարգիս քահանային, փծուն գրչիս, ամէն։

Դարձեալ կրկին աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք այսմ աստուածաշունչ տառիս կարդալով կամ աւրինակելով, յիշեսջիք յաղաւթս ձեր զգծող սորին զՄելքիսէք, և զծնաւղսն իւր զՅոհաննէս քահանան և զԱզիզն, և լի բերանով աստուած-ողորմի ասացէք, և ինքն տէրն ամենայնի մեզ և ձեզ ողորմեսցի, ես առաւել ստացողի գրոցս Սարգիս քահանայ գծողիս, ամէն։

Որ քահանայ և կամ ժողովուրդ, որ զայս ծախէ և կամ գրաւէ՝ զպատիժն զՅուդայի առցէ և զխաչայհանուածացն, ամէն, եղիցի, եղիցի։

72

ԱՌՏԱՐԱՆ

Ատրպատականի Մուժամբար գյուղ, ՄՏՄ

Գրիչ՝ Գրիգոր

Արդ, եղև զրաւ գրչութեանս այսմ աստուածաշունչ սուրբ Աւետարանի ի թվ. Հայոց ՋԼԴ. (1484), ի դառն և ի դժնդակ ժամանակի, յորում կամք նեղեալ յանօրինաց, ձեռամբ Գրիգոր անարժան աբեղայի Յովհաննէս վերաձայնելոյ***։

73

ԱՌՏԱՐԱՆ

Գ. Սրուանձտեանց, «Թորոս Աղբար», Բ, էջ 302
(Կամախ, Թաղէոս առաքելոյ վանք)

Գրիչ՝ Առաքել
վայր՝ Աւագ վանք

...Գրեալ յԱւագ վանք... ի թվ. ՋԼԴ. (1484), աւուրս երջանիկ րաբունապետին Յոհաննէս վարդապետի, եդեալ յիշատակ ի սուրբ անապատիս, յիշեսջիք զառաջնորդն սուրբ ուխտիս զՊաւղոս հայրպետն... և զԱռաքել գրչակս...

* Տպված է «Իշղանութիւն»։
** Դատարկ տեղ է թողնված։
*** Ծաղկողն ու կազմողն է Մարգար երեցը, ապա Իբրիանոս աբեղան։

## 74

## ԺԱՇՈՑ

*Տ. Պալեան, Ցուցակ Ս. Կարապետի վանուց, էջ 14, նաև «Ծաղիկ» 1891, թ. 32, ՀԱ, 1959, 421—424*

*Գրիչ*՝ Յովանէս
*վայր*՝ Կեսարիա, Գրիգոր
Նիւսացւոյ վանք

**ա**

379ա *Յայս հրաշափառ մեծի տաւնիս,*
*Քեզ երանի, որ հանդիպիս*
*Լուսափթիթ բուրաստանիս*
*Հոգիաբուղխ սրբոյ տառիս։*
*Երբ լի սրտաց ծունր կրկնիս,*
*Սիրով հոգւոյդ յաստուած հպիս,*
*Յայնժամ յիշեա դու զեղկելիս՝*
*Ըզ*Յովանէս *գծող տառիս՝*
*Զմեղաւք թաղեալս ի մէջ տղմիս՝*
*Զդեգերեալ տիւաւ լալիս,*
*Որ զձև ունիմ կրաւնաւորիս,*
*Գործոց բարեաց [թափուր] հոգիս.*
*Եւ արդ յիշէք զմեզ ի բարին,*
*Յիշեալ լիջիք յայնմ ատենին։*

**բ**

395ա *...Արդ, ցանկացաւղ եղեալ այսմ լուսազարդ բուրաստանիս հոգևոր և աստուածասէր մղտեսի խօճայ* Մանուկն, *և ետ գրել և ոսկով զարդարել զաստուածատունկ լուսափթիթ սուրբ տառս՝ որ կոչի Տարէգիրք, և եդ զսա յիշատակ անջնջելի ի դուռն սուրբ Աստուածածնին ի մայրաքաղաքիս, որ* Կեսարիա *անուանեալ կոչեն* Կապադովկեցոց: *Ի հայրապետութեան տէր* Ստեփաննոսի, *որ յայսմ ամի փոխեցաւ ի Քրիստոս, և յեպիսկոպոսութեան այսմ նահանգիս տէր* Անդրիասի *և տէր* Կիրակոսի, *ի թվականութեան Հայոց ՋԼԳ. (1484)։*

*Արդ, գրեցաւ սա և ծաղկեցաւ և ոսկով զարդարեցաւ ձեռամբ մեղաւոր և անարժան և փցուն և տխմար գրչի* Յովանէս *յանցաւորի, ի հուշակաւոր անապատս սուրբ* Գրիգորի Նիւսացոյն, *ընդ հովանեաւ սրբոյն Յակոբայ Մծբնայ հայրապետին և սրբոյն Ստեփանոսի Ուլնեցւոյն։ Եւ եդաւ յիշատակ ի սուրբ Աստուածածինն մղդիսի* Մանուկին, *և իւր կողակցին* Խըայփաշային, *և ծնողացն իւր մղդեսի* Մելիքշին, *և մղդեսի* Ասլիմելիքին, *և եղբայրն* Երանշին *և* Խասպակ *սարկաւագին, և իւր որդոցն* Ամիրին *և* Գրիգորին, *և երկու* Ղարիպշին, *և իւր հոգևոր որդոյն* Թորոսին, *և փեսանուն* Ղարակաւզին, *և* Աստուածատուրին, *և* Խոտրշին, *և դստերացն* Քիմիա-

յին, Խաթունճուխին և Խաթփաշային*, և ամենայն արեան մերձաւորացն իւր՝ կենդանեաց և ննջեցելոցն, ամէն։

Յիշեսջիք ի Քրիստոս զուսուցիչքն իմ զՍամուէլ և զՊետրոս կուսակրաւն աբեղայքն, որ բազում աշխատութեամբ սնուցին և ուսուցին զմեզ, հատուսցէ նոցա աստուած իւրեանց աշխատանացն փոխարէն զերկնից արքայութիւնն և զանսրտում ուրախութիւնն, ամէն։

Դարձեալ, յիշեսջիք ի Քրիստոս զեղբաւր դուստրն իմ զԳուճարն և զդուստրն իւր զՄալխաթունն, որ բազում աշխատութեամբ սպասաւորեցին մեզ և ազնական եղեն ի խազել թղթիս, և յայլ ամենայն սպասաւորութեան։ Եւ զաշակերտն իմ զԱստուածատուր սարկաւագն, և զԹորոս սարկաւագն, որ զգրոցս թուղթն կոկեցին և ազնական եղեն գրոցս, յիշեալ լիցին ի Քրիստոսէ յաստուծոյ մերոյ, ամէն**։

Քահանայք և տանուտէրք և ժողովուրդք, ունկն դիք մղդեսի Մանուկին և վկայ կացիք այս բանիս, չունի ոք իշխանութիւն, ոչ յիմ ազգականաց և ոչ ոք յաւտարաց այս գրոցս, որ յԱստուածածնիս դրանէն հանէ զայս գիրքս, ոչ ծախելով և ոչ գրաւ դնելով և ոչ այլ բանիւ. և թէ յանդգնի ոք և հանել ջանայ՝ ելցէ ինքն զարմաւքն ի Քրիստոսէ արքաութենէն, և մասն և բաժինն զԿայէնի, զՅուդայի և զխաչահանուացն ընկալցին։ Եւ ոք խնամով պահին և դաստարակաւ բռնեն և մոմ չկաթեցնեն՝ աւրհնեն յաստուծոյ և յամենայն սրբոց, ամէն։

Զեռս երթայ դառնայ ի հող,
Գիրս մնայ յիշատակող,
Ով զմեզ յիշէ սրտի բոլոր՝
Տէրն ողորմի յատեանն ահաւոր։

75

ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 6333 (Հ. Բարաղամեան, Ցուցակ Վասպուրականի), 470

Գրիչ՝ Մելքիսեթեկ

...Արդ, գրեցաւ աստուածաշունչ տառս, որ կոչի սայ Գանձարան ...ի թուականիս Հայոց ՋԼԳ. (1484), ձեռամբ անարհեստ գրչի Մելքիսեթեկի, ի խնդրոյ իմաստուն և հանճարեղ քահանային Աստուածատրոյ, յիշատակ... հաւրն Խոսրովին և մաւրն, և կենակցին իւրոյ Գուլփաշին, և զաւակացն իւրեանց Կարապետին, որ տարաժամ մահուամբ փոխեցաւ առ Քրիստոս և թողին սուգ անմխիթար ծնողաց իւրեանց...

Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զստացող սուրբ տառիս զՄկրտիչն, և զկենակիցն զՍառէն, և զծնաւղքն իւրեանց...,

Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զՄելքիսէթ սուտանուն քահանայն, և զծնօղսն իմ զՍտեփաննոս և զԳոհար, և զզաւակսն իմ՝ զհանգուցեալն և զկենդանիսն, և աստուած-ողորմի ասացէք։

---

* «Ծաղիկ»-ում՝ խանփաշային։

** Շարունակությունը տպագրված է միայն «Հանդէս ամսօրեայ»-ում։

## 76

### ԳԱՆՁԱՐԱՆ

*Երևան 6273 (Ղ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան Հայոց), էջ 329, Ամասիա՝ ս. Նիկողայոս եկեղեցի*

*Գրիչ՝* Անդրէաս
*Վայր՝* Ամասիա

*Փառք... որ ետ կարողութիւն ինձ՝ մեղաւոր և անարժան... գրչի* Անդրէաս *մեղապարտ իրիցու, որ գրեցի զԳանձատետրս թախծեալ ոգով և մեղսամած մատամբ, ի թուականութեանս Հայոց ՋԼԳ. (1484), ի մայրաքաղաքս յ*Ամասիայ*, առ դրան սուրբ Նիկողայոսի արագահաս և սքանչելագործի, ի կաթուղիկոսութեան տեառն* Սարգսի *և յեպիսկոպոսութեան տէր* Յովհաննէսի:

## 77

### ԳԱՆՁԱՐԱՆ

*Երևան 10142*

*Ստացո՞ղ՝* Աստուածատուր

*...Ստացանք ղայ[ս ի] հալալ արդ[եանց] մերոց ի թ[վա]կան[ի]ս Հայոց Ջ. և ԼԳ.։ Անիմաստ և մեղսամա[կար]դ անու[ան]եալ վարդապե[տ]։ Ե[ս Ա]ստուածատուրս ահաւ ///**

* *Ձեռագիրը քարացած է. բարեբախտաբար վերջին էջում մնացել է այս հիշատակագրութիւնը՝ խիստ քայքայված վիճակում։*

## 78

### ՃԱՇՈՑ

Երևան 6272

Գրիչ՝ Սարգիս կաթողիկոս
վայր՝ Հոռոմոսի վանք

557բ *Ես՝ Սարգիս կաթողիկոս և* Գրիգոր *վարդապետ տեսաք զՏարեգիրքըս, որ* Աստուածատուր *եպիսկոպոսն գրել է տվել և յիշատակ դրել ի Հոռոմոսի վանքս և անիծաւք փակել, որ ի սուրբ Յովանիսի դուռս կենա։ Մեք այլ կրկին հաստատեցաք զՏարեգիրքս ի Հոռոմոսի վանքս, ի դուռս սուրբ Յովանիսիս, ի յառաջնորդութիւն վանիցս* Գրիգոր *եպիսկոպոսի. ի թագաւորութիւն* Թավրիզոյ *թախթի* Յաղուպ *փաթշահի, ի թվ. ՋԼԴ. (1485), և եթէ յառաջնորդաց և կամ յայլոց զինչ և իցէ՝ թէ ի կարգաւորաց և թէ յաշխարհականաց, թէ յըռամկաց և թէ յազատաց՝ կամեսցին եթէ այս գիրքս ի վանացս հանցեն կամ ծախելով, կամ գրաւելով՝ ղանէծքն, որ տէր* Աստուածատուր *եպիսկոպոսն գրել է՝ կրկին և երեքին առցէ. ապա հաստատուն պահողքն աւրհնին յաստուծոյ և յամենայն սրբոց նորա և ի մէնջ, ամէն, եղիցի, եղիցի։*

## 79

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 10147

Գրիչ՝ Խաչատուր
վայր՝ Սանահին

236ա *...Եւ արդ, ես՝ յետինս և անարժանս կարգաւորաց* Խաչատուր *մեղուցեալ գրիչս տեսի զսէր և զփափագ* Բէկիխաթուն *ապաշխարողի, զոր վաղուց հետէ ունէր զփափագ սուրբ Աւետարանիս։ Եւ իմ անընդունակ գոլով յարուեստ գրչութեան և բազում մեղաց ցնորիւք պաշարեալ, այլ ըստ կարի մերում, զոր պարգևեաց մեզ մարդասէր հոգին, յանձն առի և բազում աշխատութեամբ և տառապանաւք գծագրեցի զսայ մեղսամած մատամբ իմով և երկնահանգէտ և ի գերահռչակ ուխտս որ կոչի* Սանահին, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և հրաշափառ կաթուղիկէիս, ի յառաջնորդութեանն տէր* Բարսեղ *եպիսկոպոսի և այլ միաբանիցս. ի թուականութեանս Հայոց ՋԼԴ. (1485), ի դառն և ի չար ժամանակիս, որով նեղիմք ի բռնութենէ անաւրինաց։*

*Եւ արդ, երեսս անգեալ աղաչեմ... յիշեցէք յաղաւթս ձեր զիս՝ զ*Խաչատուր *անարժան աբեղայս, որ զանունս միայն ունիմ, և զբազմերախտ*

Հաւրեղբայրն իմ՝ զտէր Վարդան կուսակրաւն աբեղայն, և զուսուցիչն իմ զտէր Արիստակէսն, որ բազում աշխատութեամբ ծաղկազարդեաց զսուրբ Աւետարանս, և զՀամշիրակ եղբայրն իմ Մկրտիչ կուսակրաւն աբեղայն, նաև զծնաւղսն իմ՝ զՀայրն իմ զՅովաննէս և զմայրն իմ զՃազրէվարդն, որ բազում աշխատանաւք ծառայեցին մեզ։ Այլ և աղաչեմ կրկին մաղթանաւք յիշեսջիք ի Քրիստոս և զքոյրսն իմ զնիկար-Խաթունին, Աննա-Խաթունին, Նոյիմզարին՝ զՀանգուցեալսն ի Քրիստոս...

## 80

## ԱՒԵՏԱՐԱՆ

Վրաստանի արվեստների պետ. թանգարան,
Ք[արթլի] № 1045

Գրիչ՝ Վարդան
վայր՝ Զորիվանք

ա

Փառք... վասն որոյ ցանկացող եղեալք աստուածաշունչ սուրբ Աւետարանիս, բնութեամբ. Հեզ և Հոգեւէր կինն զԽոնդս և Արզարիէն և Մէ[լ]իք-Խաթունս և Խէրանշէն յուսալով ի բան մարգարէին, որ ասէ Երանի, որ ունիցի զաւակ ի Սիովն և ընդանիս վերինն Երուսաղէմ, և ի բան տեառն, որ ասէ Գանձեցէք ձեզ գանձ յերկինս ուր ոչ գող մերձեցայ և ոչ ցեց ուտիչ ապականէ։ Ըստ յայսմ յուսո և պայմանի պատուական և Հաւատարիմ կինս այս Խոնդս ստացող եղեալ Աւետար[ան]ին բանբրացս և ետ գրել զսայ ի Հալալ ընչից յիշատակ իւրն, և ծնաւղացն իւրոց, և ամենայն արեան մերձաւորն. ով վայելէ զԱւետարանս աստուած ողորմի ասէ Խոնդին և ծնողաց նորին, զի անգին գանձ է Աւետարանս Հոգոց կեցուցիչ, մեղաց քաւիչ և ազատեցուցիչ. ի սուրբ Հանդերձիւք պատատեցէք և ի սուրբ տեղ պաՀեցէք։

Արդ, եղև գրաւ գրչութեան աստուածախաւս սուրբ Աւետարանիս ի թվականութեան Հակաղեան տաւմարիս ՋԼԴ. (1485) թվի, ի ղանութեան Յաղուպ-բէկին, որդոյ Հասան-բէկին, որ եկն և էառ զԹաւրէզոյ քաղաքս և խաւար էած ենկեղեցեաց, զի զանկակն ի վեր առին, զոր տէր աստուած ազատեսցէ զմեզ ի սոցանէ, ամէն։

Ի Հայրապետութեան Հայոց տեառն Սարգսի՝ ի յաթոռ սուրբ էջմիածնին, ի վանս որ կոչի Զորիվանս, ընդ Հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Վարդանանց նաՀատակիս, որ աստ կան Հանգուցեալ։

Ձեռամբ մեղսասէր և փցուն գրչի Վարդան վարդապետի, որ անունս միայն ունիմ վարդապետի և ոչ զգործս, վայ և եղուկ ինձ Ռ. (1000) բերան, թէ ինչ կայ յԱւետարանս ու ես յամենոցէ մաՀրում եմ և որք վայելեն՝ յամենայն ամի երկու անգամ յիշատակարանս կարդան, մէկ ի զատկի ճրագլուցին և մէկ յայտնութեանն կարդան ի յատենի, և որք լսեն աստուած-ողորմի ասեն որք երախտիք ունին ի սուրբ Աւետարանս կամ տուրք տալով կամ ուտացէնելով. և թողութիւն մեղաց Հայցեցէք. աղաչեմք, ո՜վ սուրբ ընթերցողք և լսողք, ստացողաց սորայ, ես առաւել

ւծագրողիս՝ Նուաստ Վարդան վարդապետիս, և ծնողաց իմոց, և հայրն իմոյ հանգուցեալ ի Քրիստոս Ջանոյ, և մայրն իմոյ Քարամ-խաթունին. և եղբայրն իմ սրբասնեալ քահանային Մխիթարին, և հարազատացն իմոց՝ Ղալամշին և Ջահանշին և Ըռստակիսին, և ամենայն արեան մերձաւորաց՝ կենդանեաց, մեռելոց։ Այլ և յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զըստացաւղ սուրբ Աւետարանիս զհաւատարիմ և զերկիւղած և աստուածասէր կինն զԽոնդն, որ տղայ հասակաւ փափագեցաւ սուրբ Աւետարանիս, որ որդի չունէր յիշատակ. ըստացաւ զԱւետարանս ի հալալ ընչից յիշատակ իւրն, և ծնաւղացն, և ամենայն արեան մերձաւորացն, և երեխտաւորացն իւրն հոգոյն՝ Խոնդին և Ազարիին, և ծնողացն իւր Մէլիք-խաթունին և Խէրանշին, և եղբաւրն Հայրապետին, և տալին Խոնդշին, և միւս տալին Մինա-խաթունին, և Պաշարաթին, և Քեղիպաթին, և Յովանիսին, և դստերացն իմոց Խույնազին և Թամամին, և եղբաւրորդին իմ զՎրթանէս սարկաւագն՝ վայելող սուրբ Աւետարանիս։ Այլ և յիշեցջիք զպատրոնն իմ զՄարտիրոսն, և զՈւսէփն, և զՀարազատին, զՋահանշէն։ Այլ և յաղաւթս ձեր յիշեցէք զՆարկիզն, զԸռստակէսն և զԱմիրանշէն, զորն յիշեցաք, զորն ոչ կարացաք յիշել, ամէնեցուն աստուած-ողորմի ասացէք, ևս առաւել Խոնդին, որ աշխատեցաւ և զգիրն երետ Աւետարանիս, և կարդացողաց, և լսողաց, և ժամատեղ եկողաց, և աստուած-ողորմի ասողաց, ամենեցուն աստուած-ողորմեսցի իւր միւսանգամ գալըստեան, ամէն և եղեցի, եղիցի։

Բ

Ձեակաւ ծրաւղս լուսայզարդ մատենին զՎարդան վարդապետս և զծնաւղսն իմ յիշման արժանի առնել, ո՛վ սուրբ ընթերցաւղք, զի յոյժ կարաւտ եմ ձեր սուրբ արտուասուալից աղաւթիցդ, զի ներումն արասցէ Քրիստոս աստուած բազում սղալանաց իմոց ըստ ձերոց հայցման և դուք յիշեալ ի վարձս ընկալջիք ի Քրիստոսէ աստուծոյ մեր, ամէն։

Գ

Ձմեղաւոր ծրողս զՎարդան վարդապետս յիշեա, ո՛վ սուրբ ընթերցող։

## 81

## ՍԱՂՄՈՍԱՐԱՆ

Թավրի՞զ, ՄՏՄ

Գրիչ՝ Բարդուղիմէոս
վայր՝ Մաղարդավանք

ա

134ա Տաճար տեսայ մին լի լուսով,
Կազմած, զուգած ութ անկիւնով,
Վաթսուն ու չորս ոսկի դռնով
Հարիւր ու յիսուն պատուհանով.
Կուսանք ի նա կային լալով,
Գողք և պոռնիկք պարեն հոգով,

Որ ոք առնա դիմէ յուսով,
Զնա ըմպէ ոսկի թասով.
Ի տէրութեան Հայկազանի,
Տէր Սարգիս պատրիարգի
Իննհարիւր թուականի,
Երեսուն չորս թիւ աւելի (1485),
Ծաղկեցաւ Սաղմոսարանս
Ի հռչակաւոր վանքս Ստեփաննոսի
Ձեռամբ ախմար նկարողի,
Որ Աթանաս անուն կոչի։

Տէս ո՛նց գովեցի զքեզ, վարպե՛տ, լա՛ւ ծաղկէ զՍաղմոսարանս։

...Արդ, գրեցաւ Սաղմոսարանս ձեռամբ յոգնամեղ սուտանուն Բարդողիմէոսի, որ սակաւ աւուրս հող լինելոց եմ, ի տեղիս որ կոչի աստուածաբնակ Մաղարթէվանք. առ ոտս երջանիկ և առաջնորդ սուրբ ուխտիս զտէր Վարդան արհեպիսկոպոսի, և զվարպետն իմ զտէր Յակովբ փիլիսոփայն և զուսուցիչն իմ զտէր Պետրոս մահդասին։

Արդ, ես Մելքէսէք աբեղայս գնեցի զՍաղմոսարանս յիշատակ ինձ և իմոց. հայրն իմոյ Բաղդիսարին, և մայրն Թամամբստէ (*), և հայրեղբաւր տէր Ստեփանոսին, և հայրեղբաւրորդէցն տէր Ստեփանոսին, և զտէր Պաւղոս կուսակրաւն պատուական կազմողին, և տէր Թաղէոսին և եղբայրն իմ զՊապիջանն, և զկողակիցն իւր զԿուլփաշէն, և զորդիքն իւր զՍլթանշանն, զԱմուջանն, զՄալքայսարն, զԲաղդիսսարն, և զմիւս եղբայրն իմ զՓիրիկն, և զկողակիցն իւր զՍարղանն, և զփեսէն իւր զԱնկիշէն, և զկողակիցն իւր զՏիկիմէրն, և զեղբայրն իւր զՄուրատշէն, զԲաղդարշէն, զՍտեփանոսն, և զքուրն իւր զՄէլիք-Խաթունն, և զքվերքն իմ զՆուրիջանն, և զորդիքն իւր զՆերսէսն և զՄանքուբէկն, և զմիւս քուրն իմ Ջմրութն, և զորդիքն իւր, ամէն։ Եւ զհանգուցեալ քուրն իմ Դիկիմէրն, և հայրեղբայրն իմ զԼիպարիկն, և զհանգուցեալ որդին իւր զՄկրտիչն, և զմնացեալ որդիքն իւր զՈվանէսն, զՄուրատն, և զքուր սոցա զՋանստի, և զմիւս հայրեզբայրն իմ զԲարսեղն, և զորդին իւր զխաւչա Թաղրիդուլի, և զքուրն իւր զԽէքաթն, և զհանգուցեալ քուրն իւր զԱղութն: Եւ զմիւս հայրեղբայրն իմ զՆուանշախն, և զորդիքն իւր զՆորշախն, և զՊարոնշէն. և զհանգուցեալ եղբարքն իւր զՆուրամիրն և զՋանամիրն. որ կարաւտ սրտիւ առ Քրիստոս է գնացել, և քուր սոցա զՊալշիշակն, և զմիւս հայրեղբայրն իմ զԹայիպշէն, և զորդին իւր զՍայիպշէն, զՋանփաշէն, և զքուր սոցա զՆազմէլիքն, զԴունամէլիքն, զԹուխծամն:

82

ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 5879

Գրիչ՝ Մինաս
վայր՝ Արճէշ

278բ Փառք... որ ետ կարողութիւն տկար անձին իմոյ Մինաս սուտանուն քահանայի հասանել յաւարտ սուրբ Գանձարանիս յուրախութիւն մանկանց սուրբ եկեղեցոյ և ի տաւնախմբութիւն սրբոց վկայիցն. ի թվ.

ՋԼԴ. (1485), քաղաքն յԱրճէշ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, յիշատակ Յովանիսին, և ծնողացն Շնորհորէն, և Թողանին, և զաւակացն Մուսիսին, և քուրոյն Թաղայ-Մելեքին, և Խոռոմսիմին, և Մարեմին, և Եղիսայբեթին, աստուած ողորմի ասացէք Յովանիսին և ամենայն արեան մերձաւորացն, ամէն։

## 83

## ՇԱՐԱԿՆՈՑ

*Երևան 6273 (Գ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան Հայոց), էջ 334—335, Վան*

Գրիչ՝ Յովհաննէս
վայր՝ Աղթամար

...Բայց գրեցաւ սա ի թուականիս Հայոց ՋԼԴ. (1485), յաստուածապահ կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ մեծափառ և գմբեթայարկ և երկնանման սուրբ խաչի տաճարիս և այլ սրբութեանց, որ աստ կան հաւաքեալ՝ բարեխօս վասն ամենայն աշխարհի, ի հայրապետութեան տեառն Ստեփաննոսի, ձեռամբ անիմաստ և փծուն գրչի Յովհանիսի անարժանի և սուտ աբեղայի, ի վայելումն Ստեփաննոս կրօնաւորի։

## 84

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Մ. Բարխուդարեանց, Արցախ, էջ 148*

Գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Սալնանապատ

Հաւատարիմ տանուտէրն Յակովբ և հայր իւր պարոն Գրիգորն, որ ստացաւ զսա ի հալալ վաստակոց իւրոց...

Եւ արդ, ես յետինս ի գրչաց և անարժանս ի կարգաւորաց... Մկրտիչ աբեղայ...

Գրեցաւ սուրբ Աւետարանս ի յաստուածաբնակ և հրեշտակաճեմ սուրբ ուխտս, որ Սալնանապատ կոչիւր, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Կարապետիս... ի հայրապետութեան տեառն Սարգսի կաթողիկոսի և ի թուականիս Հայոց ՋԼԴ. (1485), ձեռամբ Մկրտիչ հաբեղայի...

## 85

## ՇԱՐԱԿՆՈՑ

*Ջմմառի վանք, Անտոնեան հաւաքածոյ 154*

Գրիչ՝ Առաքէլ
վայր՝ Աւաք վանք

392ր ...Արդ, գրեցաւ Շարակնոցս ի լաւ և յընտիր աւրինակէ թվ. ՋԼԴ. (1485), ի սուրբ անապատս որ կոչի Աւաք վանք... առ ոտս Յովաննէս

րաբունապետին, և Ստեփաննոս վարդապետին, և Աբրահամ վարդապետին, և գրոց աշակերտացն, և այլ կրաւնաւորացն, ի յառաջնորդութիւն տէր Յոհաննէս եպիսկոպոսին և սպասաւորաց նորին, ձեռամբ անարհեստ գրչի՝ Առաքել սուտանուն աբեղի...

## 86

## ԳԱՆՁԱՐԱՆ

Վիեննա 318, Յ. Տաշեան, Ցուցակ, էջ 760

Գրիչ՝ Սարգիս
վայր՝ Կիւրղի վանք

ա

215բ– ...Արդ, գրեցաւ Գանձարանս ի լաւ եւ յընտիր աւրինակէ ձեռամբ
216բ բազմամեղ եւ անիմաստ Սարգիս սուտանուն կրօնաւորի, ի թուականութիւն Հայոց ՋԼԴ. (1485), ի մայիս ամսոյ ի յինն, ի գաւառիս Թիւրիկոյ, ի յանապատս որ Կիւրղի վանք կոչի, ի դուռն սուրբ Աստուածածնի, և կենսակիր սուրբ Նշանին, և սուրբ Գրիգոր Լուսաւորչին, և սուրբ Յակոբի, և սուրբ Յոհաննէս աւետարանչի, և այլ սրբոցս որք աստ են հաւաքեալ, ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս Կարապետ վարդապետին՝ վերադիտաւղի այսմ նահանգի...

Արդ, աղաչեմ զձեզ, ո՛վ սուրբ ընթերցողք, յիշեցէք յաղաւթս ձեր զմեղաւպարտ գրիչս եւ զծնողս իմ զՂազարն եւ զխատրիմելէքն, և զեղբայրսն իմ զՅովաննէս երէցն և զԱստուածատուր երէց... Այլ և յիշեցէք զԿարապետ վարդապետն, որ զաւրինակն շնորհեաց։

բ

215ա Ո՛վ եղբայրքդ հրաշալի,
Մի՛ մեղադրէք ինձ՝ ախմարի,
Աղալանաց՝ւ անարհեստ գրրի,
Զի չեմ հըմուտ այսմ արհեստի։

## 87

## ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետիկ 135 (1519), Բ. Սարգիսեան, Ցուցակ, հտ. Ա, էջ 598

Ստացող՝ Գրիգոր
վայր՝ Սեբաստիա

322ա ...Գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուականիս Հայոց ՋԼԴ. (1485) ի հայրապետութեան տէր Սարգսի յաթոռն սուրբ Լուսաւորչի, ի յերկիրս Սեբաստիոյ, ի յանապատիս՝ որ հանդէպ Սեբաստիոյ է, ձեռամբ Փիլիպպոս եպիսկոպոսի, ի դրան սուրբ Աստուածածնիս և այլ բազմահաւաք [ սրբոցս ], որ աստ են։

Այլ և յիշեցէք ի բարին զհայրապետ վանիցս զտէր Խաչատուր աբեղայ, և զեղբայր իւր զՍողոմոն աբեղայն, և զմիւս Խաչատուրն։ Քրիստոս աստուած իւրեանց վարձահատոյց լինի, բազում աշխատութեամբ սպա–

սաւորեցին ի գրելն սուրբ Աւետարանիս։ Ընդ նոսին յիշեսջիք և զստա-ցաւղ սուրբ Աւետարանիս՝ զԳրիգոր Նկարող, և զդեռաբոյս որդին զԱստուա-ծատուր դպիր, և զեղբայրն իւր զԱռաքել ընթերցող, որ ստացաւ զսուրբ Աւետարանս ի հալալ ընչից իւրոց և եդ ի դուռն սրբոյն Մինասայ՝ յիշա-տակ ծնողաց իւրոց և մաւր Աստուածատուրին՝ Խուանդ իրիցկնոջն, որ փոխեցաւ առ Քրիստոս յանցեալ ամս, տարի մի է և է. (7) աւր, որ յու-սով առ Քրիստոս փոխեցաւ։ Արդ աղաչեմ զդասս լուսերամ քահանայից, ի ժամ սուրբ պատարագին, որ կարկառէք զսուրբ Աւետարանս ի վերայ ձեռաց ձերոց, յիշեսջիք ի սուրբ աղաւթս ձեր զմայր Աստուածատուրին՝ զԽուանդ իրիցկինն, և լի և առատ սրտիւ աստուած-ողորմի ասացէք։ Կրկին աղերսանաւք խնդրեմք ի ձէնջ յիշել աղաւթս զԳրիգոր անարժան հողս, և զծնաւղսն իմ՝ զհայրն իմ զՇնոֆոր պարոն և զմայրն իմ Վարդ-տիկին, և զհաւրեղբայրն իմ զՊաւղոս կրաւնաւոր, և Յովհաննէս կրաւ-նաւոր, և զեղբայրն իմ զԱնդրէաս քահանայ, և զկենակիցն իմ զԽուանդ՝ զհանգուցեալ առ Քրիստոս, և լի և առատ սրտիւ աստուած ողորմի ասացէք։ Եւ որ առատն է ի տուրս բարեաց ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յիշե-ցելոցս ողորմեսցի, առ հասարակ, ամէն։

Ի թուին ՋԼԵ. (1486) եղաւ սուրբ Աւետարանս ի դրան տաճարի սրբոյն Մինասայ ի քաղաքս Թոխաթ...

## 88

## ԱԻԵՏԱՐԱՆ

*Բրիտ. թանգ. OR 2681 Կոնիբեր, Ցուցակ 15, էջ 25**

Գրիչ՝ Աւետիք Հաղբատեցի
վայր՝ Երուսաղէմ

ա

Փառք համագո... Յերեսս անկեալ առ ոտս սրբազանից քահանայից ընթերցողաց, այլ և համաւրէն ամենայն հանդիպողացդ և լսողաց մեղա-ւոր հողս և բազմամեղ գրիչս Աւետիք սուտանուն աբեղայս Հաղբատեցի. և արտասուալից աչօք խնդրեմ յամենեցունց՝ յիշել սրտի մտաւք զանար-ժանս, զծնաւղսն իմ և զամենայն ազգն իմ, և զերախտաւոր քոյրն իմ բզմուղդեսի Դովլաթն, և զամենայն մերձաւորս, և զուսուցիչն իմ, և զվարպետն իմ, որ գիրս ծանոյց մեզ։ Եւ որք յիշէք զմեզ զվերոյգրեալքս ի բարին՝ Քրիստոս աստուած զձեզ յիշէ յիւր անճառելի բարիքն, ամէն։

Արդ, գրեցաւ սայ ի սուրբ քաղաքս յԵրուսաղէմ ի դուռն սուրբ Յա-կոբայ, ի հայրապետութեան տէր Մկրտիչի արհիեպիսկոպոսի, և րա-բունապետացս արի և քաջ և ի ծայր հասեալ ամենայն առաքինութեամբ զարդարեալ տեսականաւն Գրիգոր վարդապետի և Խաչատուր վարդա-պետի** և զբազմերախտ հայրն մեր զԱռաքեալ ճգնաւորն, որ ի մարմնի գոլով զանմարմնոցն բերէ յինքեան ըզնմանութիւն, որ և զթուխտս կո-

---

* Յ. Կոնիբերի ցուցակում հիշատակարանը բերված է շատ համառոտ։ Բերում ենք ամբ-բիկահայ բանասեր Հ. Քյուրդյանի հմոտ ընդօրինակությամբ։
** Մի տող ազատ է թողնված։

կեաց և զկապն ուսոյց մեղ, և հայրաբար գթով խնամէ ղմեղ. որո ըղբօխարէնն երախտեաց աստուած հատուցանէ ի միւս անգամ գալըստեանն իւրոյ, ամէն։ Եղեւ դրաւ սորա ի Թուականիս Հայոց ՋԼԴ. (1485), յամսեանն ապրիլի ԺԸ. (18), ի փառս Քրիստոսի յուսոյ մերոյ։

Բայց յերեսս անդեալ աղաչեմ, ո՜վ սրբազան հայրք և եղբարք, դի սղալանաց եւ խոշորութեան անմեղադիր լերուք, զի կար մեր այս էր, և որ ղմեզ յիշէ և աստուած ողորմի ասէ մեզ՝ յիշելոցս և ձեզ՝ յիշողացդ առհասարակ ողորմեսցի Քրիստոս աստուածն մեր, որ առատն է ի տուրս բարեաց, մեզ եւ ձեզ ողորմեսցի, և նմա փառք։

Այլ և ստացաւ սուրբ Աւետարանս զայս բարի և հաւատարիմ մարդն աստուծոյ պարոն Վարդանն ի յիշատակ իւր, և ծնողացն իւրոց Ոսկէվանին և Խամուշին. և իւր կողակցին Սառային, և իւր եղբաւրն Յակոբին, և իւր որդուն Լազարին, Տաւրէշին*, և Սկանդարին, և դստերաց Մարիամին և Մարգարտին, և այլ արեան մերձաւորացն։ Եւ ստացաւ ի հալալ արդեանց իւրոց յիշատակ իւր և իւր ննջեցելոց. և ով որ հանդիպի սուրբ աւետարանիս նա լի սրտիւ աստուած-ողորմի ասացէք Ոսկէվանին, և Վարդանին, և Յակոբին, և Տաւրէշին, և Սկանդարին, Սառային, և դստերացն՝ Մարիամին և Մարգարտին...

89

ԱՐԵՏԱՐԱՆ

Երևան 6862

Հետ. ստացող՝ Մուրատշայ

141բ ...Զվերջին ստացող սուրբ և աստուածաշունչ Աւետարանիս զՄուրատշայ աղէն և զկենակիցն իւր զԹամար տատն, որ ըստացան ղանառիկ մեծութիւնս ի հալալ արդեանց իւրեանց յիշատակ իւրեանցն, և ծնողացն իւրեանց, և ի վայելումն ծաղկեալ զաւակաց իւրեանց՝ տէր Առաքեալ քահանային, Մաթէոսին, Ղուլիկին, Վարդանին, Շէրանին, և որդոց իւրեանց Յակոբին և այլոցն** յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր և աստուած զձեզ յիշէ, ամէն։ Թվիս ՋԼԴ. (1485)։

***

ա ա ռ բ. Ն. մ

142ա Արդ, դարձեալ, կրկին անգամ աղաչեմ ղպատահողդ սուրբ Աւետարանիս, յիշեցէք ղՄուրատշէն, զԹամարն, և ղԱռաքեալ քահանայն, և զիւր եղբարսն, և զկենակից սոցա, և զմիւս եղբայր տէր Առաքելին զՓիրզատն, որ կիսաւրեա փոխեցաւ առ Քրիստոս և զայլ ամենայն ննջեցեալսն, և աստուածն, որ առատն է ի տուրս բարեաց ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յիշեցելոցս ողորմեսցի, ամէն։

* Գրված է «Տարվէշին», իսկ տակը՝ «Տաւրէշին», քանի որ այս վերջին ձևով է գրված նաև հետագայում, ուղղում ենք՝ «Տաւրէշին»։

** Մյուս որդիների անունները լրացնելու համար տեղ է բաց թողնված։

*** Ծածկագրի առաջին երեք տառերը կարելի է կարդալ «Արր», վերջին երեքը «համ», միջին երկու տառերը (բ. Ն.), չենք կարողանում վերծանել։ Թվում է թե ծածկագիրը պետք է կարդալ՝ «Արրահամ»։

## 90

## ՏՕՆԱՑՈՅՑ ԵՒ ԱՂԹԱՐՔ

*Երևան 8628*

*Գրիչ՝* Մովսէս

*...Գրեցաւ Տամացոյցս և Կիւրիանոսս ձեռամբ* Մովսէս *աբեղին, ի
թվկ. Հայոց ՋԼԴ. (1485), ի վայելումն սրբակրաւն* Ստեփանո[ս] *աբե-
233ա ղին և յիշատակ հոգ[ոյ] իւրոյ, նայև յիշատակ քուրոջն իւրոյ* Գուլսու//ռա-
թին, *որ յայսմ ամի փոխեցաւ ի Քրիստոս, և որք հանդիպիք սմայ աւրի-
նակելով կամ կարդալով յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր զվերոյգրեալսն
ի սմա. և որք յիշէք յիշեալ եղիցիք ի Քրիստոս Յիսուս ի տէր մեր, որ է
աւրհնեալ յաւիտեանս, ամէն։*

*[Ջ]աշխատողս ի սմայ՝ զծաղգաւղս [և զ]կազմողս աղաչեմ յիշել ի տէր՝ զ*Կիրակոս *եպիսկոպոս**։

## 91

## ՃԱՌԸՆՏԻՐ

*Վիեննա 920, Հ. Ոսկեան, Ցուցակ, էջ 507*

*Գրիչ՝* Մկրտիչ

214բ *Քրիստոս Աստուած... ողորմեա* Մինին, *և ծնաւղացն* Սալչուքին *և* Ադումուսեղին, *և* Մկրտիչ *գծողիս, և ծնաւղացն՝* Կիրակոսին *և* Սանդուխին, *և զաւակացն* Խուդադարին *և* Մարտիրոսին *և* Մեսրոպին *և* Թուրանդին, *և կենակցին* Գուրխարին, *և կարդացողաց և լսողաց, ամէն. թվ. ՋԺԼԴ. (1485)։*

## 92

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան, Մատենադարանի Կաթողիկոսական դիվան, թղթ. 240, վավ. 138 (հմմ. Հ. Թօփճեան, Ցուցակ Խ. Դադեանի, Բ, էջ 52)*

*Գրիչ՝* Սիմէոն
*վայր՝* Երուսաղէմ

*Արդ գրեցաւ քառաբուխ Աւետարանս ի սուրբ քաղաքս* Երուսաղէմ, *ընդ հովանեաւ սուրբ Յակոբայ որդոյն Զեբեթայ, որ է աթոռ սուրբ հայրապետին տեառնեղբաւրն Յակոբայ՝ առաջին պատրիարգին, զի այս է աթոռ նորա։ Եղև կատարած սորա ձեռամբ մեղսամած և անարժան գրչի* Սիմէ[օնի], *ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս տէր* Մկրտիչ *արհիեպիսկոպոսին* Իլովեցոյն, *համշիրակ եղբաւրն իւրոյ* Խաչատուր *վարդապետին՝ սնուցողին զիս...*

*Գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուականութեանս հայկազեան տումարիս ՋԼԴ. (1485)։*

---

* *Վերջին պարբերությունը գրված է մանր գրերով։*

# 93

## ՄԱՇՏՈՑ

Մ. Աթոռ 104, «էջմիածին», 1960 թ.,
Մայիս, էջ 57—58

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ Արճէշ

ա

250ա Փառք... որ ետ կարողութիւն սխալամիտ և մատնադէտ և մեղսա-
մած գրչի Յովանէս անարժան քահանայի յանկ հանել զաստուածախաւս
կտակարանս աւժընդակութեամբ սուրբ Աստուածածնին՝ ամէնաւրհնեալ
և գերագով կուսին Մարիամու։ Զնա կալեալ բարեխօս առ միածինն և
աստուածն իմ Յիսուս Քրիստոս, աւարտեցաւ սուրբ տառս, որ այժմ
Մաշթոց կոչի բոլոր, յամի ՋԼԵ. (1486) թուի, ընդ հովանեաւ սուրբ Աս-
տուածածնի տաճարիս, ի յԱրճէշ քաղաքիս, ի հայրապետութեան տեառն
տէր Սարգիսի, և ի թագաւորութեան Յաղուպ ղանին, և յեպիսկոպոսու-
թեան երկրիս տէր Յովանիսի և տէր Կարապետի և Գրիգոր վարդապետի։
Ծաղկեցուցէ զնոսա տէր աստուած ի վերայ ծաղկեալ գաւազանաց և յետ
ազդեացս ելանելոյ սուրբ վարդապետացն ղասակից և պսակակից արաս-
ցէ, ամէն։ Որ եղև լրումն և կատարումն աստուածապատում սուրբ Մաշ-
թոցիս ձեռամբ սուտանուն Յովանիսի աշխարհի իրիցու։

Եւ արդ, ո՛վ պատուական քահանայք և աստուածասէր ժողովուրդք,
յիշեցէք ի Քրիստոս զստացօղ սուրբ գրոցս զուսթա Սարուղաւչն, և
250բ զծնօղսն // զԱստուածատուր, և զեղբայրն իւր զՏիրատուրն և զՄեծա-
տուրն, և զմեծ պապն զՍարուն, և զկողակիցն իւր զԽէրմէլիքն:

Եւ դարձեալ աստուած-ողորմի ասացէք Սարուղաւչին, և ծնաւղացն՝
հաւրն Աստուածատրուն և մօրն Ռուբիանին, և եղբօրն Սարուղաւչին, և
որդին Խալիֆին, ամէն։

Եւ դարձեալ կրկին յիշեցէք ի Քրիստոս զՍարուղօչն, և զքուերքն իւր
զՍոլթան-Խաթունն, և զՇայիպ-Սօլթանն, և զՂամար-Խաթունն, և զԹա-
թար-Խաթունն, և զՔիջի-Խաթունն, որ փոխեցեալ են առ Քրիստոս, և
զպարոն Գորէն, և զմայրն իւր զՌուբիանէն, և զծնաւղսն նորին զՅովան-
նէսն, ամէն։

Եւ դարձեալ աստուած-ողորմի ասէք պարոն Գորգուն և ծնաւղացն
նորին, ամէն։ Եւ դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զպարոն Գորէն, և զա-
մուսինն իւր զՓաշա-Խաթունն, և զծաղկեալ որդիքն իւր զԳաւզալըղաւչն,
Շահ-Մեծատուրն, և զդստերքն իւր Պզտի-Խաթունն և զՄուլքին, և զնա-
ցելոցն առ աստուած՝ Մուլքի-բէկուն և զԽալիֆէն, և զամուսինն իւր զԹա-
թար-Խաթունն, և զդուստրն իւր զՇախ-Փարիխանն և զՏուրիխանն:

Բ

251ա Այլ և աղաչեմ զձեզ, ո՛վ եղբայրք, որ սիրով կարդայք և կարդալ տայք, նա զվարձս ի Քրիստոսէ առնու[ք] և զգրոց շնորհս։ Քանզի սա է լուսերանգ և վարդափթիթ և ծաղկաւէտ բուրաստան. սա է փարթամութիւն և անառիկ մեծութիւն. սա է պայծառութիւն սուրբ եկեղեցոյ. սա է հաց կենաց և ջուր անմահութեան. սա է գաւազան կաղաց և ճրագ կուրաց. սա է մեծութիւն աղքատաց և հանգիստ տառապելոց. սա է կերակրիչ քաղցելոց և ցուցիչ կարաւտելոց. սա է բժիշկ հոգոց և խրախութիւն մարմնոց։

Վասն որոյ աղաչեմ զձեզ լի բերանով աստուած-ողորմի ասցէք նալբանդ պարոն Գուրգուն, և իւր ծնաւղացն, և հօրեղբաւրորդուն Ստեփանոս քահանային, և եղբօրն Աւղլմուսեխին և Խամաւշին և Գուլչինարին, ամէն։

Եւ արդ ես՝ յետինս ի քահանայից և անիմաստս ի գիրս դրչութեան Յովհաննէս սուտանուն քահանայ զիմ անարժան երեսս ի գետին դնելով աղաչեմ զձեզ, ո՛վ սուրբ քահանայք և ժողովուրդք, աստուած-ողորմի

251բ ասել ինձ անարժանիս, // և իմ ծնաւղացն՝ հօրն իմոյ Աստուածատուրին և մաւրն իմոյ Գուլիխաթունին, և երախտաւոր ուսուցչին իմոյ տէր Յովհաննիսին, և ծնաւղացն նորին Մանգասարին։

Գ

10բ Տէր աստուած Յիսուս Քրիստոս ողորմեա ստացաւղի սուրբ գրոցս նալբանդ Սարուղաւչին և իւր ծնաւղացն, և ինձ անարժանիս Յովհաննէս գրչի և իմ ծնաւղացն, և ձեզ կարդացաւղացդ և լսաւղացդ, առհասարակ, ամէն, եղիցի, եղից[ի]*։



## 94

### ԳԱՆՁԱՐԱՆ ԵՒ ՄԱՇՏՈՑ

Երևան 8452

Թաքէոս աբեղայ

88ա Ինն հարուր թվին, երեսուն և հինգ ամին (1486)
Եղաւ խիստ ողորմն բան Թաւրէզ՝ խուճա Միրաքին:
Մեծի հինգշա[բ]թի աւուրն նա գնաց ի ժամատեղին։
Վարդապետն քարոզէր՝ նա ականջ դնէր քարոզին։
Դարձաւ, խոստովանեցաւ ու ասաց զուր անցանք նորին,
88բ Ի իններորդ ժամին, որ կեր//աւ զհաց սպատւիրանին.

* Այսպիսի հիշատակագրություններ կան նաև ձեռագրի 36ա, 140բ, 173բ, 184բ և 234բ էջերում։

** Տաճկագրով գրված է՝ «Տեր Յովանէսս ծառ[ա]յ ա[ստուծո]յ ամէն»։

Վարդապետն նստաւ յաթոռ նմանակ մեծին Յիսուսին,
Նայ լուաց զձեռն, զոտն՝ ւինչ Յիսուս իւր աշակերտին։
Մեծի ուրբաթի աւուրն նայ գնաց ի մէջ փողոցին,
Դուռն եբաց դուքանին, չէր դիտել թէ չար կու խորհին։
Եկին դուռն դուքանին, թէ իման բեր մեր մեծուորին,
Նայ պատասխան զայն արար՝ հաւատամ զ[Յ]իսուս կենդանին։
Այն պեղ[ծ]ն էառ զսուրն ու էհատ զգլուխ խունճին
Այլ նմանակ Հերովդի, որ էհատ զգլուխ Մկրտչին։
Զայն հնչեցաւ քաղաքին, թէ Միւրաֆն սպաննեցին,
Հայցգուն բառանչուն եզաւ նմանակ զինչ Նինուէ քաղաքին։
89ա Խապարն ինկ//արին տարան, թէ ղազէ քրիստոնէին,
Նայ դուռն փատշահին գնաց ու ասաց ղուրանց նորին։
Եղբայրն իւր Սաւար անուն պատերազմեցաւ հետ նոցին,
Այլ նմանակ զինչ բերեմ եբ հագնուն զրեհն ի կռուին։
Փատշահն հրաման արար պարունացն, որ դուռն կային,
Գնացէք, բռնեցէք այն պեղծն, կապեցէք ձեռն յետևին։
Բերին դուռն փատշահին, նայ էհարց զարուն Միրաֆին,
Նոքա պատասխան չտուին, պապանձեաց լեզուն բերանին։
Նայ զմարնեցաւ սրտին, էառ քար էզարկ բերանին,
Հրաման դահճին արար, եկին զգլուխն հատին։
89բ Բարի անուն է Միրաֆ, որ ամէն աշխարհ գովէին,
Հայցգուն հոգևոր էր նայ, չէր բերել մայրն հողածին։
Եկին մարմին բարձին ու տարան իւր դարպասին,
Իւրեն այն պարուն որդիքն՝ պար առեալ սևաւք սուգ արին։
Մեծի աւաք շաբաթին, որ զատիկ էր Հայոց ազգին,
Պատուով թաղեցին զնա վարդապետն ու իրիցանին։
Եդին ի գերեզմանին զնշ[խ]ար խունձայ Միրաֆին,
Հայցգուն անոշ հոտ բուրաց, ուղաբեր կանայքն որ բերին։
Մէկ տուն Դուդոշին ասեմ, որ եբեր խապար Միրաֆին,
Աստուած իւր մուրատն տայ, զինչ խորհուրդ ունի իւր սրտին։
Ես սուտանուն աբեղայ Թադէոս գովքս ասի խունճին,
Ամէնքն Հայր մեր ասէք, յիշեցէք զ[Յ]իսուս կենդանին*։

## 95

### ՃԱՌԸՆՏԻՐ

Երևան 6273 (Ղ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան հայոց), էջ 343, Մշոյ ս. Կարապետ

Գրիչ՝ Մովսէս

Կատարեցաւ աւագն Միրաֆ ի թուականիս մերում ՋԼԵ. (1486) ամի, ի սոյն ամի, որ ես՝ Մովսէս գրիչս, զգրքիս օրինակն սկսայ և ստուգիւ

* Սույն 89բ էջի լուսանցքի երկարությամբ գրված է երկու եղծված տող, որից հնարավոր է կարդալ այսքանը. «Մեք ամէն /// զաստուած երկար կեանք տայ մեր փատշահին, նա զմեզ ան /// երկու ժոխն (˜) առին»։ Հավանաբար այս բանաստեղծության մի տողն է, որ պետք է դրվեր 89ա էջից հետո՝ «Հրաման դահճին արար, եկին զգլուխն հատին» տողի շարունակությամբ։

*քննեցի զպատմութիւն սորա և գրեցի առ ի լինելոյ մեզ մասն ողորմութեան ի նահատակութենէ սորա**։

96

## ԳԱՆՁԱՐԱՆ

*Մ. Աթոռ 1, «էջմիածին», 1950 թ., մայիս-հունիս, էջ 81—32*

*Գրիչ*՝ Յովսէփ
*վայր*՝ Ագուլեաց վանք

301ա— *Փառք... որ ետ կարողութիւն տկար ոգոյ և մեղսասէր և ախմար*
302բ *անձին* Յովսեփի *լոկ անուամբ աբեղայի հասանել յաւարտ այսմ Գանձարանի յամի* ՋԼԵ. (1486) *թրվականի մերումս տումարի։ Որ գրեցաւ ի վանքս* Ագուլեաց, *ընդ հովանեաւ ամէնաւրհնեալ սուրբ Աստուածածնիս և սուրբ* Թումայ *առաքելոյս, առ ոտս երջանիկ և փառաւոր հաւրս և հայրապետիս մերոյ տէր* Ս.զարիին, *աստուած ընդ երկայն աւուրս պահէ, ամէն, այլ և զմիաբանքս վանաց՝ զտէր* Բարսեղ *հայրայգլուխ եղբայրն իմ և դասավար վանացս, ղտէր* Հայրապետն՝ *ամենայն բանի հոգաստար, զտէր* Շմաւոնն՝ *հայրպետ վանացս, ղտէր* Անանիայ՝ *քաջ գրագիր և կազմող, զտէր* Յովանէս *և զիւր աշակերտն* Փիլիպոս՝ *սաղմոսերգողքն. զտէր* Թադէոս Դեխայն, *որ անուշահամ գինով զմեզ ճաշակեաց, զտէր* Յակոբն՝ *երախտաւոր վանացս, զտէր* Դանիէլ *փակակալն։ Քրիստոս աստուած զսոսայ ի խորին ծերութիւն հասուսցէ, որ շատ աւգնականութեամբ սպասաւորեցին մեզ և կերակրեցին ամենայն բարութեամբ։ Եւ զայլ աշխատաւորք վանացս՝ զտնտես* Պաղն, *զմուքերի* Աբրահամն *և զայլսն, աստուած նոցա աշխատանացն վարձս հատուցանէ, ամէն։*

*Զստացող Գանձարանիս* զՏիրանանց, *որ ստացաւ զսա յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց, և ամենայն արեան մերձաւորացն. զհայ[ր]ն իւր* Վարդան, *և զմայրն իւր* Ղադամ, *և զեղբայրն իւր* Վարդան, *և զքուրն իւր* Ըսբէ, *և զայլ ամենայն արեան մերձաւորսն՝* զՍախաթան, *և* զՄէվլի,

---

* *Խոջա Միրաքի սպանությունը մեծ տպավորություն է թողել ժամանակակիցների վրա։ Դեպքն արձանագրել են մի շարք հիշատակագիրներ, գրվել է նրա վարքը՝ երկու տարբեր հեղինակների կողմից (տե՛ս «Նոր վկայք հայոց», էջ 322—328). ընդարձակորեն խոսել են նրա մասին նաև օտարերկրյա ճանապարհորդները (տե՛ս «Ուղեգրություններ», հտ. Ա, ԺԴ—ԺԶ դար, Երևան, 1932, էջ 213—214)։*

*Գրիգոր վարդապետ Ջորթան Արճիշեցու գրած վարքը դեռ չի հրատարակված։ Նրա մեջ պատմվում է, որ «էր սա (Միրաքն) որդի արծաթագործի ուրումն և ճարտար ակնաձանաչի. ի սորա քսան ամին, ի ղանութեան քաջ Բահադուռ Իսքանդարին, ի յաղդմանէ չարին հայր սորա տաճկացեալ էր...»։ Ստիպում են որ Միրաքը նույնպես հավատափոխ լինի, սակայն ապարդյուն։ «Եւ յետ այսր ամենայնի,—գրում է Գրիգոր Արճիշեցին,—հօրն տաճկութեան և իւր յաղթութեան սուրբն Միրաք յոյժ մեծացաւ ընչիւք և անուամբ և բարի գործով, առաւել քան զնախնիս իւր, մինչ զի համբաւ բարութեան նորա սփռեալ եղև ընդ ամենայն երկիր։ Սա*

զՈխաքան, զՓիրաքան, զԱղաչան, զԱմիրչան, զՍաֆար, զԴմսխաւչայ, զԱխեչան, Քանճափուշ, Ամնադին, զԱյնալ, Ասուզան, Փէրիխան, Թուռաւանդայ...

*Եւ զիս՝ զբազմամեղ և զանարհեստ գրիչս զՅովսէփ յիշել աղաչեմ, որ շատ և բազում աշխատեցայ ի գրելն սորայ։ Բայց սխալանաց և խոշորութեան սորա անմեղադիր լերուք, վասն զի կար մեր այս էր։ Այլ և զգըրքըս զՈլուբաքէն, զՄկրտիչն, որ զԹուղթն կոկեցին յիշել աղաչեմ։ Ջտէր Ներսէս կոյսակրաւն աբեղայն, որ շատ աշխատեցաւ, ընդ նմին և զխաւնդվալին, որ զստակն ապասպարեց յիշել աղաչեմ**։

---

*վասն աստուածատուր առատ իմաստութեան յամենայն ժամանակս իւր պատուեալ եղև ի թագաւորացն, որ նստէին յետ միմեանց ի քաղաքն Թաւրէզ. Նախ Իսքանդարէն և յետ նորա ի սոլթան Ջհանշայ ղանէն, որ էր եղբայր Իսքանտարին։ Այս Ջհանշէս յոյժ խաղաղարար թագաւոր եղև, քրիստոնէից բարէկամ։ Ի սորա ժամանակս յորժամ գնաց ի Բաղտատ ի վերայ որգւոյն Փիր-Պուտախ խանին... Եւ յետ այս Ջհանշայ ղանիս Նստաւ ղան ի Թաւրէզ Ուզուն-Հասանն, և ի սմանէ եղև պատուեալ սուրբն Միրաք, որպէս ի նախասացեալ թագաւորացն։ Եւ յետ այս Հասան փաթշահիս էառ ղղանութիւն կ[րտ]սեր որդի նորա Եաղուպն. այր ժանտ և անօրէն, անգութ և անողորմ՝ հալածիչ քրիստոնէից։ Սա խափանեաց ի քրիստոնէից թամբուլ ձի հեծնուլ, զհնչումն ժամուց և զանգակաց, զզենմունս և սպիտակ գօտի՝ առանց կապուտի և այլ բազում չարիս արար։ Ի սորա ժամանակին քաղոցի հինգ և մարտի քսաննչորս, որ էր օր աւագ ուրբաթին հանդիպեցաւ սուրբն Միրաք առն միոյ պարսկի...» և այլն (Ձեռագիր № 6273, էջ 337—343)։*

*Ամենայն հավանականությամբ այս նույն խոջա Միրաքն է, որ 1469 թվականին ղեկավարել է Ուզուն-Հասանի կողմից Վենետիկ, ապա և Հռոմ ու Նեապոլ առաքված դեսպանությունը։*

*Դեսպանության կողմից Վենետիկ հասցված Ուզուն-Հասանի պարսկերեն նամակի (թվագըրված է 1469 թ. օգոստոսի 2-ով) իտալերեն թարգմանության մեջ նա կոչվում է* Mirat de nazion Armeno, *որ Ղ. Ալիշանի շատ հավանական և ընդունելի սրբագրությամբ պետք է եղած լինի Միրաք։ Նամակի մեջ Ուզուն-Հասանն առաջարկում էր դաշնակցել միմյանց ընդդեմ օսմանցիների։*

*Միրաքը Վենետիկ հասավ 1470 թ. մարտի 7-ին, 4 ամիս մնաց այնտեղ, ապա վերադարձավ Սուլթանիա, հետը բերելով Վենետիկի հասարակապետության բարեկամական նամակը Ուզուն-Հասանին։ (Այս դեսպանության մասին մանրամասնություններ տե՛ս Ղ. Ալիշանի «Հայ-Վենետ» աշխատության 182—189 էջերում)։*

*Խոջա Միրաքի մասին հիշատակություն է պահպանված նաև Նախկինում Թավրիզի սուրբ Աստվածածնի եկեղեցում պահվող մի Ավետարանի կազմողի 1448 թվականին շարադրված հիշատակարանում։ Այդ հիշատակարանը վրիպած լինելով մեր ուշադրությունից «ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ» ժողովածուի առաջին մասի հրատարակության ժամանակ, տալիս ենք ստորև.*

*«Զառաջին և յետին կազմողս սուրբ Աւետարանիս սուտանուն Յուսէփ աբեղայիս։ Կազմեցի սուրբ Աւետարանս ի վայելումն խոճա Միրաքին, իւր հաւրն և եղբաւրն և իւր կողակցին և զաւակացն, և տէր Յոհանէսին և իւր հողոյն, և յամենայն ժողովրդեանս քաղաքիս՝ խոճեանցն և խաթունացն և տղոցն, մեծի և փոքու առ հասարակ, ամէն։*

*Ո՛վ դաս քահանայից, որք հանդիպիք ի սմա կարդալով կամ աւրինակելով յիշեցէք ի մաքրափայլ աղօթս ձեր զժողովուրդն, զերէցն՝ զմեղապարտ կազմողս, և միով բերանով աստուած ողորմի ասացէք... ի թվ. Հայոց ՊՂԷ. (1448) կազմեցօ» (Հ. Անասեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Թաւրիզի, Վիեննա, 1910, էջ 70)։*

* *Այս հիշատակարանը ունի նաև Մ. Տեր-Մովսիսյանը։ Ձեռագիրը նրա ժամանակ եղել է Բուշիրի ս. Գևորգ եկեղեցում։*

## 97

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7776

Գրիչ՝ Ալէքսանոս
վայր՝ Արփայի վանք

ա

...Ես՝ տէր Ալէքսանոս եպիսկոպոսս գրեցի զսուրբ Աւետարանս յի-
շատակ ինձ. և իմ ծնողացն, հայրն իմո Յովսէփ քահանային, և մայրն
իմոյ Ազիզ-Մէլիքին, և եղբարցն իմոց Մարտիրոսին և Մաքէոսին, և քոյ-
299ա րըն իմ՝ Ուստիանա ապաշխարողին, որ փ//ոխեցաւ ի Քրիստոս, և զկեն-
դանիսն՝ Եղիսաբեթն և զՎարվառն, զՀռոմսիմէն, և զհարսներն Անա-
խաթուն, զՄարիամն, և զաւակ նոցա զԿարապետն՝ հանգուցեալն ի Քրիս-
տոս, զդեռաբուսն զԴանիէլն, և զդուստրն Ոսկանց, Գաիանց, և զխոտա-
բաիշ, և զՄաղաֆիա: Եւ զհայրեղբայրն մեր՝ զՄանուկն, և զկողակիցն
իւր Խոնդ-խաթուն, զՄանուելն, զՄուսէսն, որդից իւրեանց, այլ ազգա-
կանաց՝ զկենդանիսն և զհանգուցեալսն յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս
ձեր, և աստուած-ողորմի ասացէք նոցա...

Քրիստոս աստուած, զտէր Ալէքսանոս, և զեղբայրն իւր զՏիրատուր
աբեղէն, իւրեանց ծնաւղաւքն ի արքաութիւն ժողովեա և ասա՝ Ծառայ
բարի և հաւա[տա]րիմ, մուտ ուրախութիւն տեառն քո։

299բ Դարձեալ երես անկեալ աղաչեմ զդասս // սրբազան քահանից. և
որժամ կարդաք կամ օրինակէք յիշեցէք ի սուրբ և յերկնաթռիչ յաղաւթս
ձեր զվերոասացեալսն և դուք յիշեալ լիջիք առաջի աստուծոյ, ամէն։

Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի վանքս Արփայի և ընդ հովանեաւ
սուրբ Աստուածածնիս, ի թագաւորութեանս Եաղուբ պէկին, ի կաթողի-
կոսութիւնն տէր Շմաւոնին, ի թվականիս Հայոց ՋԼԵ. (1486), ի փառս
Քրիստոսի աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Եւ զպապաւորն մեր Խերիկ ապաշխարողն յիշեցէք ի Քրիստոս, ամէն։

Զկազմող սուրբ Աւետարանիս՝ զմեղօք մեռեալ ոգի Դաւիթս յիշե-
Մէլիքն, յիշողքն յիշեալ լիցի[ն] տեառնէ յաստուծոյ, ամէն։

բ

300ա Ո՜վ հանդիպողք, որ հանդիպէք յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր
զպարոն Սաֆիքն, որ զԱւետարանս արծաթի երետ. յէտի յիշողքն՝ զԱթայ-
Մէլիքն, յիշողքն յիշեալ լիցի[ն] տեառնէ յաստուծոյ, ամէն։

գ

Աստուած ողորմի Վախախին, որ երետ արծաթն, պատուեցաւ սուրբ
Աւետարանս*։

* Բ և Գ հիշատակագրությունները գրված են ձեռագրի ընդօրինակությունից ոչ շատ հետո, հավանորեն ԺԵ դարի վերջերին։

## 98

## ՄԱՇՏՈՑ

*Վենետիկ 1523*

*Վայր՝* Թանատեաց վանք

*Գրեալ ի վանս* Թանատեաց, *ընդ հովանեաւ սրբոյն Ստեփանոսի և սրբոյն Կարապետի։ Ստացող տէր* Յակոբ *քահանայ, որդի* Գալուստ *քահանայի և* Կոզալաղի։

## 99

## ԳԱՆՁԱՐԱՆ

*Երեան 6273 (Գ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան հայոց), էջ 336, Եւդոկիոյ ս. Երրորդութիւն եկեղեցի*

*Նուիրատուք՝* Իգնատիոս և Ստեփաննոս

*Շնորհօքն աստուծոյ և սուրբ* Ստեփաննոսին *և* Նղեգեց *տանուտերացն մեք՝* Իգնատիոս *ու* Ստեփաննոս *համեղբարս, տուաք զմեր հօր՝ տէր* Մատթէոսի *ձեռագրած* Գանձատետրս *ի ձեռն տէր* Եղիշայ *արհիեպիսկոպոսին, որ դնէ ի սուրբ ուխտն ի* Նորավանս, *անջինջ յիշատակ մեզ և ծնողաց մերոց և առաջին նախնեացն, և նա խոստացաւ ի ձեռն խաբաղն եգնաւոր միաբանացն, որ ժողովին ի սուրբ ուխտն և զմեզ ի ժամ աղօթիցն յիշեն և աստուած-ողորմի ասեն և պատարագեն. եթէ ոք մերոց կամ յօտարաց հանել ջանայ ի դրանէ աւագ սուրբ Նշանին՝ անէծս կրեսցէ։*

*Եւ յորժամ ընծայեցաք էր թիւ Հայոց ՋԼԵ. (1486)։*

## 100

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երեան 5187*

*Գրիչ՝* Նիկողայոս
*վայր՝* Արծկէի Սքանչելագործ վանք

ա

282բ ...[*Գրեցաւ*] *ի թուականութեան հայկազեան տաւմարիս ՋԼԵ. (1486) ամին, յանառիկ և ի տիրախնամ* Արծկէ *վանս* Սքանչելագործ *զաւրայվարիս, և հայրապետութեան տեառն* Ստեփանոսի, *ի դառն և ի վշտալից ժամանակիս, յորում ի խիստ և ի նեղութեան և ի չար ծառայութեան կամք ազգին Նետողաց, զի յոյժ կեղեն զազգս քրիստոնէից։ Զոր տեսեալ զայս սուրբ գանձս աստուածային և ոլուսափայլ և զպատուական մարգար[[իտս, և ցանկացաւ այս հոգեկեցոյց սուրբ Աւետարանիս աստուա-
283ա ծասէր և հաւատարիմ տանուտէրն* զՂարիպշէն *և զորդին իւր* զՓալիկ, *որ տարաժամ մահւամբ մարտիրոսեցաւ առ Քրիստոս մեծ տանի՝ աւաք զաւկի, յոր կիրակի...*

Այսպէս և զՓալիկ, և զծնօղն իւր զՂարիպշէն, և զմայրն իւր Շնա-
283բ խորն* // ի յոլովութենէ մեղացն իւր վարկեալ և ի նղճէ մտացն հարեալ
և ի սպառնալեաց անշէջ գեհենոյն տոչորեալ՝ զաստուածախաւս կտակս
զայս արար ճարակ փրկութեան հոգոյն իւրոյ՝ ի յան[ն]երելի գեհենոյ
և պաշար երկնաձիգ ճանապարհին...

Յիշեցէք ի Քրիստոս զՂարիպշէն, և զկեն//ակիցն իւր Շնախորն, և որդոց իւրեանց՝ Փալկէն, որ մարտիրոսացաւ առ Քրիստոս, և միւս գեռաբոյկ որդոյն Մխիթարին, և քեռ Խումարին, և հանկուցելոցն առ Քրիստոս զԱղուպշէն, և զՍադաղէն, և զՄլխամն, և զԴարման, և զՈվանէս, և զքոյրն Նուրիխաթուն, և Շախիաշէն, և զԳոպշիշաֆ, և միւս Շախիաշէն:

Ես՝ Նիկիաղոյոս եպիսկոպոս, տեսի զսէր և զփափաք հաւատարիմ տանուտրոջն Ղարիպշին... և գծագրեցի մեղսամած մատամբս աստուածախօս սուրբ Աւետարան ի լաւ և յընդիր աւրինակէ...

285բ ...Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զՈսաանայ քահանաքս՝ զպատուական փիլիսոփան տէր Ատոմ, և զորդին իւր Ստեփանոս, զԹադէոս քահանայ, զԿարապետ քահանայ, զտէր Մէլքիսէթ աւաքէրէց, զտէր Մե[ս]րոփ, զտէր Ատոմ Վարդպետեց, զտէր Աւետիս, զտէր Առագել, զտէր Գրիգոր, զտէր Մկրտիչ, զտէր Յովանէս, զտէր Ներսէս, զտէր Աստուածատուր, զտէր Ղազար: Այլ և աղաչեմք զսպասաւորք սուրբ Նախայվըկայ սուրբ Ստեփանոսիդ, որ լաւ խնամ տանիք ի վերայ սուրբ Աւետարանիս և հանապազ ընթեռնուք և աստուած-ողորմի ասեն աշխատաւորաց, ամէն։

Եւ արդ, ես՝ Ղարիպշէս, և կենակից իմ Շնոխորն ստացաք զսուրբ Աւետարանս ի հալալ վաստակոց մերոց՝ յիշատակ հոգոց մեր[ոց. եւ տո]ւաք զսա ի սուրբ Ստեփանոս Նախավկայն Ոստան քաղաքի, որով զուարճացին սովաւ մանկունք սուրբ եկեղեցոյն. և մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսա ի դրանէ սուրբ Ստեփանոսին, ոչ ծախելով և ոչ գրաւելով, ոչ ի մերոց և ոչ յաւտարաց։

Բ

218բ Ես՝ Նիկողս ծոյլ 'ւ անարժան,
Որ ի մեղաց մէջ կու ծփամ,
Աստուած ողորմին ասցէք անխափան,
Վասն իմ մեղացն թողութեան։
Յիշողաց մեղքն ջնջի,
Ընդ նահապետացն դասեսցի,
Ընդ արդարոցն պսակի,
Եւ ի Քրիստոսէ փառաւորի, ամէն։

Գ

136բ Զմեռեալ հոգով Նիկողայիոս գրիչս, և զխղճամահ Աղուպշէն, և զմայրն իմ Թուրվանդայ յիշէ ի Քրիստոս աստուած, յիշողացդ ողորմի։

---

* Փալիկի, Ղարիպշահի, Շնախորի և մի հոգևորականի (անունը չի գրված) պատկերները նկարված են ձեռագրի 9ա էջի վրա՝ «չորեքկերպեան աթոռի» ներքևում։

## 101

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 5201*

*Գրիչ՝* Ստեփանոս
*վայր՝* Արճէշ

300ա *Ուստի և տեսեալ զսորա անճառ փրկագործութեան խորհուրդ սրբասէր և ընդրեալ, աստուածասէր և բարեպաշտ հոգևոր մայրն* Ջարմանդուխտին, *որ ստացավ զսուրբ Աւետարանս յիշատակ իւր*...

301ա *Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի քաղաքս* Արճէշ, *ի դուռն Ծիրանաւոր սուրբ Աստուածածնին, ի հայրապետութեան տեառն տէր* Սարգսի, *և ի թուին Հայոց ՋԼԵ. (1486), ձեռամբ անարժան և սուտանուն գրչի* Ստեփանոսի: *Եւ իմ անընդունակ գոլով յարուեստ գրչութեան և բազում մեղաց*
301բ *ցնորիւք պաշարեալ, այլ ըստ // կարի մերում, զոր պարգևեալ մեզ մարդասէր հոգին՝ բազում աշխատանաւք և ցաւագին և տրտում անձամբ գրեցի անարժան ձեռաւք իմովք, ի ստոյգ և յընտիր աւրինակէ։*

## 102

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Իրան, Փերիա գավառ, Աղիչան գյուղ, ՄՏՄ*

*Գրիչ՝* Բարսեղ
*վայր՝* Ասպիսնակ գիւղ

...*Աւարտեցաւ* ...*ի թվին ՋԼԵ. (1486), ի գաւառի* Քաջբերունոյ, *որ կոչի* Արճէշ, *ի գեաւղս* Ասպիսնակ, *ընդ հովանեաւ սուրբ Ստեփանոսի Նախավկային և սուրբ Երից մանկանց վկայիցն։ Այլ և արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ* Բարսեղ *մեղսամակարդ գրչի, ի խնդրոյ* Յովհաննէս *քահանայի... որոյ ցանկացող եղեալ... տանուտէր* 'Իովլաթիար' *ստացաւ ի վայելումն որդւոյն իւրում՝ սրբասէր քահանայի տէր* Յովհաննեսի, *և յիշատակ մեծ պապին պարոն* Մէրհանին, *և կողակցին իւրոյ* Թուրվանդայ-խաթունին, *և զաւակացն նորին* Դովլաթեարին *և* Շահրիեարին *և* Սաղդաթեարին, Դովլաթեարի *ամենօրհնեալ և ծաղկեալ զաւակացն՝ տէր* Յովհաննիսին, *և* Խուեարին, *և* Գուլիարին, *և դստերն* Խուբնիկարին *և* Շահրիարին, *և զիւր օրհնեալ զաւակսն* զՄուրադն *և* զԵզդանբախշն, *և դստերքն* զՄէրիշէն *և* զԳուլամփաշէն, *և զկողակիցն* զՄաղբուշէն, *և զմիւս եղբայրն* զՍաղդաթեարն, *և զկողակիցն* Նարին-խաթունն...

*Արդ, ես գրիչս* Բարսեղ *քահանայ, յիշեցէք զիս, և զծնողսն իմ՝* Մկրտչին *և* Մելիք-խաթունին, *և կողակցին* Մրվաք-խաթունին, *և զեռաբոյս զաւակին իմ* Վրթանէս, *և դստերն իմ* Մէլէքսին *և* Գուլփաշին, *և զուսուցիչն իմ տէր* Ազարէն...

---

* *Բաց է թողնված սյունակի կեսից ավելին, որն հետո լրացրել է հետագա ստացող Մուրադը. նա հիշում է իր ծնողներին՝ Յովհաննէսին և Բեկիշանին և բազմաթիվ այլ հարազատների։*

## 103

### ԳԱՆՁԱՐԱՆ

*Նոր Ջուղա 537, ՄՏՄ և ՄՏԱ*

Գրիչ՝ Մխիթար
վայր՝ Սրղգայ

386բ ...Գրեցաւ սա ձեռամբ անիմաստ և անպիտան Մխիթար քահանայիս՝ թըմրեալս ծուլութեամբ ի տիղմս մեղաց... Եւ գրեցաւ սա ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ Փրկչին ի գեաւղն Սրղգայ: Զոր տեսեալ զսորա փարթամ վայելչութիւնս բարեպաշտ և աստուածասէր կրաւնաւորն տէր Յովհաննէս, և ստացաւ զսուրբ Գանձարանս ի հալալ արդեանց իւրոց, յիշատակ հոգոյ իւրոյ. և ծնաւղաց իւրոց՝ հօրն Յովհաննիսին և մօրն Շնորհաւորին, և պապուն Մխիթարայ, և միւս պապուն Մկրտիչ քահանային, և որդոյ նորա Թադէոս քահանային...

Արդ, գրեցաւ Գանձարանս ի թվականիս Հայոց ի ՋԼԵ. (1486), յառաջնորդութեան սուրբ ուխտիս Վարագայ տէր Յովհաննէս արհեպիսկոպոսիս՝ սրբազան և հեզահոգի, որ զդասս կրօնաւորաց սիրով կու յարմարէ, և աշխատաւորացս և վաստակաւորացս վերակացու լինի...

## 104

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Ե. Լալայեան, Ցուցակ Վասպուրականի 205, սյուն 503—504,*
*Մոկաց Ամենափրկչի վանք 17*

Գրիչ՝ Յովհաննէս
վայր՝ Հիզան

...Ուստի և տեսեալ զսորայս անճառ փրկագործութեան խորհուրդ՝ ումն ի լուսածնեալ զարմից սրբոյ Սիոնի տէր Յովհաննէս եպիսկոպոս, զոր ի վաղուց հետէ ցանկայր այսմ աստուածախաւս սուրբ Աւետարանիս, և ետ գրել զսա յիշատակ իւրոյ, և ծնօղաց իւրոց... եղբօր՝ Թումին և Տիրատրուն, և քեռն՝ Մընին, և եղբօրնորդոյն՝ Բարսեղ քահանային, յորոյ անուն է Աւետարանս, և մօրն Խոցին, և եղբօրն Սիրու[ն]ին, և ամենայն արեան մերձաւորացն սոցա և զերախտաւորսն, որք յիշատակ ունի[ն]...

Եւ արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվականիս Հայոց ի ՋԼԵ. (1486), ի քաղաքիս որ կոչի Հիզան, ձեռամբ անարժան փծուն գրչիս Յովհաննէս սուտանուն քահանայի, ի հայրապետութեան հայկազեան սեռի [էջ]միածնի տեառն Սարգսի, և մերոյ կաթողիկոսի Աղթամարայ Ստեփաննոսի: Տէր աստուած, պ[ահիա] անսասան զաթոռ հայրապետութեան և զթագաւորութեան մերոյ ազգին։

Այլ և գրեցաւ սուրբ Աւետարանս ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի, և սուրբ Սարգսի զաւրավարին և որդոյն նորա Մարտիրոսին, և սուրբ Յարութեան, և սուրբ Գէորգեայ, որ է հեռի, ձեռամբ Յովանէս սուտանուն քահանայի և ախմար գրչի...

## 105

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 5361*

*Գրիչ՝* Մկրտիչ
*վայր՝* Հիզան

280ա ...*Ոմն աստուածասէր և բարէմիտ, անուն կոչեցեալ* Անտոն *քահանայ... ետ գրել զսա յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնողացն՝* Խոսրովին *և* Ազըզին, *և չոչմամուն՝* Սանդուխտին, *և հօր ծնաւղացն, ի մեծ թուիս Հայոց ՋԼԵ. (1486), ի կաթողիկոսութեանն Հա[յ]կազեան սեռի տեառն* և ի մերոյ կաթողիկոսութեան* Աղթամարայ *տէր* Ստեփաննոսի, *զոր տէր աստուածն Իսրայէլի պահեսցէ անսասան զաթոռ հայրապետական և զթագաւորական մերոյ ազինս*

280բ *Եւ արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի քա[ղ]աքիս, որ կոչի* Հիզան, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և սուրբ Յարութեանն, և սուրբ Սարգսի զաւրավարի և որդւոյ նորա Մարտիրոսին, և սուրբ Գէորգեայ, որ է սակաւ մի հեռի...*

*Արդ, աղաչեմ զձեզ, ո՛վ սրբասէր մանկունք Սիոնի, յիշեցէք ի Քրիստոս և զիս՝ զանարժան գրիչս՝ զ*Մկրտիչ *քահանայ, և զծնաւղսն իմ* զՍուլտանշէն *և* զԹուրվանդէն, *և զամենայն արեան մերձաւորսն, և զվարպետն իմ* զՅովանէս *քահանայն, և զայնոսիկ, որ ի վերայ մեր աշխատանք և նրախտիք ունին...*

## 106

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Մ. Աթոռ 65, «Էջմիածին», 1944 թ. I, էջ 36—37, 1951 թ., IX—X, էջ 81—82*

*Գրիչ՝* Մովսէս
*վայր՝* Բաբերդ, Անլոց անապատ

379բ–382ա ...*Յիշեսջիք զստացող և զգծագրող սուրբ Աւետարանիս զբազմամեղս** և զանարժան զ*Մովսէս *աբեղայս, և զհայրն իմ* զՍտեփաննոս, *և զմայրն իմ* զԵղիսաբէթն, *և զամենայն արեան մերձաւորսն մեր, նաև ուսուցիչն իմ՝ զտէր* Կիրակոս *եպիսկոպոսն, և զամենայն երախտաւորսն մեր...*

*Բայց գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուականիս Հայոց ՋԼԵ. (1486), ի հայրապետութեան տեառն* Սարգսի, *ձեռամբ մեղսալմած և անիմաստ գրչի* Մովսէս *աբեղայի, ի գաւառս որ այժմ ասի* Բաբերդ, *ի յանապատն որ կոչի* Անլոց, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և Յովհաննու Կարապետին, ի յառաջնորդութեան վանացս տէր* Մեղետուն *աբեղայի, որ*

* *Անունը լրացնելու համար տեղ է բաց թողնված։*
** *Մեկուկես տող դատարկ է թողնված։*

ծերացեալ անձամբ սպասաւորէր մեզ ի գրել սուրբ Աւետարանիս, աստուած զիւր հոգին և զիր բարի ծնաւղացն հոգին անմահական հացովն կերակրէ։ Յիշեսջիք և զՋոճար տնտեսն, որ բազում աշխատութեամբ սպասաւորէր վանացս, աստուած զիւր հոգին լուսաւորէ։

Այլ և յերես անկեալ աղաչեմ զհանդիպողսդ խոշորութեան և սխալանաց ան[ մեղադիր լինել ///

107

ՀՄԱՅԻԼ

Երևան, հմայիլ 108

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Աւագ վանք

Փառք... գրեցաւ սուրբ Կիպրիանոսս, որ է մատեան, ձեռամբ Գրիգորի անարժանի, ի [թուա]կանիս մեր հայկազ:ան Ջ. և ԼԵ. թիւ յաւելեան (1486), ի յանապատս պատուական, որ Աւագ վանք կոչի անուամբ, ի դրունս երկնանման սուրբ տաճարացս, որ յանուն սուրբ Աստուածածնին, և /// հայրապետին և սուրբ առաքելոցն կառուցեալ կան։ Որ և սացին բարեխաւսութեամբն աղաչեմ զաստուածն բան, հօր և հոգովն միաբան, զի սրբոց անուանքն, որ աստ գրեցան, և նոցին [բա]նքն աղաւթական, և Քրիստոսի /// լիցի միշտ պահապան, յորոց անուն զիրքս գրեցան, որքան յաշխարհս է նա կենդան, և յետ մահու ի հող տապան և աներեկ աւրն յապագան՝ արքայութեանն առնէ արժան, ամէն։

108

ԱՒԵՏԱՐԱՆ

ՄՏՄ, Մ. Բարխուդարեանց, Արցախ, էջ 296—297

Գրիչ՝ Աքանաս
վայր՝ Աւծոպոյ վանք

Եւ արդ ես՝ անարժան գրիչս Աքանաս՝ զծոյլս ի բարեաց, որ անարժան ձեռաւքս գրեցի զսուրբ Աւետարանս, ի թուականիս Հայոց ՋԼԵ. (1486), ի սուրբ ուխտս Աւծոպոյ, ի դուռն սուրբ Աստուածածնի, յիշատակ Գասպարին, և ծնողաց իւրոց, և որդւոցն Պաղտասարին, Գրիգորին, Մելքումին, Հերապետին, Պաղին, և դստերացն՝ Մարիանին, Մարգարտին, Ջիլֆիխանին, և ամենայն արեան մերձաւորացն։

Դարձեալ յիշեցէք Գասպարն՝ կենակիցն Պաղին, միւս որդին տէր Սիմէոնն՝ վայելող սուրբ Աւետարանիս, և կենակիցն Սանդուխտն, որ ի Քրիստոս է հանգուցեալ, միւս կենակիցն՝ Թաման, և որդիքն Շահնազարն, տէր Յովհաննէսն, Պալասանն, դուստրն Մարիտնն, հարսներն Նազլուխանն, Գուլաւղարն, խանումն...

## 109

## ԱՒԵՏԱՐԱՆ

Լայդենի Համալսարան, Ֆ. Մակլեր, Ցուց. 15,
էջ 32—35

Գրիչ՝ Յովանէս Եզընկեցի
վայր՝ Կեսարիա, Գրիգոր
Նիւսացւոյ անապատ

ա

300բ ...Գրեցաւ և ծաղկեցաւ և ոսկէով զարդարեցաւ աստուածարուեստ
սուրբ Աւետարանս Քրիստոսի ձեռամբ բազմամեղ և փցուն, անիմաստ
և յանցաւոր գրչի Յովանիսի Եզընկեցւոյ, ի թվականիս Հայոց ի յինն
հարիւր ԼԵ. (1486), ի գաւառս Կեսարիայ Կապադովկացւոյ, ի հռչակաւոր
անապատիս սրբոյն Գրիգորի Նիւսացոյն, ընդ հովանեաւ սրբոյն Գրի-
գորի և սրբոյն Յակովբայ Մծբնայ հայրապետին, և սրբոյն Ստեփան-
301ա նոսի Ուլնեցւոյն, և սրբոյն Մեռկեռիոսի զինաւորին // և այլ բազմահ[ա]-
ւաք սրբութեանցս, ի յեպիսկոպոսութեան այսմ նահանգիս տէր Կիրակո-
սի սրբասնեալ արքեպիսկոպոսի և տէր Անդրէասի:

Ի յայսմ դառն և ճամբարի ժամանակիս ցանկացող եղեալ աստուա-
ծային սուրբ Աւետարանիս ի բարի յարմատոց ծնեալն և աստուածային
աւրհնութեամբ սնեալն պարոն Խտրշան, և ստացաւ զսուրբ Աւետարանս
յիշատակ իւր, և կողակցին իւրոյ Խաթուն-Փաշային, և մեծ պապուն իւր
Փանիկին, և Սառային, և որդւոցն իւր Եմինին, և կողակցին իւր Պալտա-
աին, և որդւոյն իւր Ամիր-Սարգսին, և դստերն Մթխալին, և քւերցն
Խունտի-Փաշային և Խաս-Աննային, և հարեղբարցն Նիկալին և Ամիրին,
Պուլէ և մղտէսի Մելիքշին, և դստերն Մարթային, և մաւրն հաւրն Աս-
տուածատրին, և իւր կողակցին Խութանին, և Խտրշին, անեռոջն մղտեսի
301բ Մանուկին, և Խըթայ-Փաշային, // և Խտրշին փեսային՝ Ոլուպակին: Եւ
եդիր յիշատակ անջնջելի ի դուռն սուրբ Աստուածածնին, որ կարդան
հանապազ և յիշեն և աստուած ողորմի ասեն։ Քահանայք և սարկաւա-
գունք, խնամով պահեցէք և դաստառակաւ բռնեցէք, զի և դուք առնու-
ցուք վարձս ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ։

Դարձեալ լսեցէք քահանայք և ժողովուրդք, որ չունի ոք իշխանու-
թիւն ոչ յիմոց, և ոչ յաւտարաց հանել զսուրբ Աւետարանս ի դրանէ
սուրբ Աստուածածնիս, և թէ ոք հանել ջանայ՝ ինքն իւրայովքն ելցէ յար-
քայութենէն և մասն և բաժին զՅուդայի և զխաչահանուացն ընկալցի։
Եւ խնամքով պահաւղքն աւրհնին յաստուծոյ և յամենայն սրբոց նորա.
ամմէն։

Յիշեսջիք ի Քրիստոս զուսուցիչքն իմ զՍամուէլ և զՊետրոս կուսա-
կրաւն աբեղայքն, որ բազում աշխատութեամբ սնուցին և ուսուցին զմեզ.
302ա հատուցէ նոցա տէր աստուած զերկնից ար//քայութիւնն և զանտրտում
ուրախութիւնն, ամմէն։

Դարձեալ, յիշեսջիք ի Քրիստոս զեղբաւր դուստրն իմ զԳոհարն, որ
ի մագաղաթին շինելն շատ աշխատեցաւ, ողորմի աստուած իւր հոգւոյն,
ամմէն։

Բ

Պարուպետիցդ սուրբ հարց մեր և եղբարց հողս և մոխիրս Յովանէս յանցաւորս՝ գրող սորա և ծաղկող, պաղատիմ յիշել զմեզ մերայնովքն ի բարին Քրիստոս և աստուած զձեզ յիշեսցէ, ամէն։

Գ

Զդատապարտ ծառայից ծառայս զՅովանէս յանցաւոր, եղկելի, տարտամ և փցուն գրիչս յիշեցէք ի Քրիստոս։

## 110

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 8933

Հետ. ստացող՝ Աբրահամ

307ա Արդ, աղաչեմ զձեզ, ո՛վ ընթերցողք և լսողք, սերտ սրտիւ աստուած ողորմի ասացէք Աբրահամուն և իւր տղայոց, որ յետոյ զյիշատակարանս գրել ետ։ Լի բերանով աստուած ողորմի ասացէք Դաւիթ քահանային և ծնօղացն և եղբարցն, ամէն, և որ աստուած-ողորմին ասէ՝ աստուած իւր ողորմէ, ամէն։

Թվ. ՋԼԵ. (1486)։

Զվերջին ստացաւղ սուրբ Աւետարանիս զԱբրահամ յիշեցէք ի Քրիստոս և աստուած ողորմի ասացէք։ Յետոյ զԱւետարանն գողացան և տարան Աւետարանն իւրն։ Եւ ինքն գնեաց ի ԿԴ. (64) թանկայ. աւլ մոլնք(՞) ոչ մերոց և ոչ յաւտարաց դաւի առնէ մասն զՈւդային ճաշակէ։

## 111

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ՄԱՏԹԷՈՍԻ ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

Երուսաղէմ 283

Ն. Պողարեան, Յուցակ, Գ., էջ 110—112

Գրիչ՝ Ստեփաննոս

ա

566բ ...* Վասն որոյ վստահացեալ ի սա և փափաք եղեալ սմա, զոր ես տառապեալս գրեցի տկար անձամբս և անարհեստ դրչիւս, և զոր գրել տուի Թորոս քահանային և զնորա դրեալն սրբագրեցի և գլխագրեցի ըստ իմում կարողութեան**։

Երջանիկ րաբունապետին իմոյ և սրբազան հաւրս բարերարի, որ Ամլորդուն անուամբն վերակոչի Գ. Զ. Յ. Ճ. Դ. Զ. Մ***, և Նորին տրուպ

* Բաց ենք թողնում շատ ընդարձակ մի հատված, որտեղ գրիչը խոսում է ընդօրինակվող գրքի արժանիքների և իր «մեղքերի» մասին։

** Ձեռագրում չորս տող քերված է։

*** Փոխարինագիր ծածկագրով կարդացվում է «Յովանէս» անունը։

աշակերտիս Ս. Ի. Մ. Ո. Ն. Ա. Փ. Ե. Տ. Ս.*, այլև հոգևոր և մարմնաւոր ծնաւղացն մերոց, և ամենայն երախտաւորացն մերոց, որ ըստ հոգոյ և ըստ մարմնոյ, և ամենայն սրբազան եղբարցս և հոգևոր որդիկացս, որ կան ի սուրբ անապատս ի յԱւաց վանՙս, ընդ հովանեաւ սուրբ տիրամաւր Աստուածածնին, սուրբ Առաքելոցն և սուրբ Կարապետին, այլև միաբանից սուրբ ուխտին, որ կան ընդ հովանեաւ սուրբ Կարապետին և սուրբ Սարգսի զաւրավարին, ի մեծամեծաց մինչև ցփոքունս...

Գրեցաւ ի թվիս ՋԼԵ. (1486), ի փառս Քրիստոսի աստուծոյն մերոյ։

Բ

4ա Ո՜վ ընթերցող այսմ տառի,
Յորժամ կարդաս կամ բան ուգտիս,
Յայնժամ յիշեա զեղկելիս՝
ԶՍտեփանոս մեղաւք գերիս։
Այլ և խընամ տուր դու դրիս,
Մաքուր պահէ, թող դու աւրհնիս,
Ճենճոտ ձեռաւք մի սատ հպիս,
Թէ կատարեալ սէր դու ունիս։
Մի հանց բանար քան զշափն ի վեր,
Որ մաղթելով խնդրեմ, ո՜վ տէր.
Յերակ խնամ տար իմ ընկեր,
Առ մեզ արա դու եղբաւր սէր։
Զիմ աղաչանքս դու լսէ,
Որ պաղատիմ՝ ի միտ պահէ,
Զմեզ ի յաղաւթըս քո յիշէ,
Եւ դու աւրհնիս ի Քրիստոսէ։

Գ

21ա Տէր բարերար Յիսուս Քրիստոս, զԹորոսիկ սարկաւագիկս պահեա խաղաղութեամբ, և տուր շնորհս սմա, զի առողջ կենօք ժամանեսցէ ի յաւարտ և ի կատարումն գրոցս։ Եւ զիս զանարժան ծառաս քո զՍտեփանոս պիտակաբար սպասաւոր բանի՝ ընկալ որպէս զանառակ որդին, և տուր ինձ լուսաւս ի քո առատ պարգևացդ, և հան մասն և բաժին ընդ սիրելեաց քոց, և ամենայն երախտաւորաց մերոց զփափագս լցոյ, ամէն։

Դ

470բ Ո՜վ պատուական և ցանկալի եղբայրք, որք հանդիպիք այս հոգեբուղխ բուրաստանիս և լուսազարդ սուրբ կտակիս, ագտիք ինչ ի սմանէ և մխիթարիք՝ յիշեցէք սրտի մտաւք զանարժան դրիչս՝ զՍտեփաննոս պիտականուն բանի սպասաւորս և զամենայն երախտաւորսն մեր, մանաւանդ զսրբազան և զերջանիկ րաբունապետն մեր զՅովաննէս: Եւ աստուած զձեզ յիշէ ի բարին, ամէն։

* Աջից ձախ կարդացվում է՝ «Ստեփանոսիս»։

## 112

## ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետիկ 122 (323), Բ. Սարգիսեան, Ցուցակ, հտ. Ա, 537

Հետ. ստացող՝ Հռոփսիմէ

ա

185բ Ես Հռոփսիմէս, որ գնեցի սուրբ Աւետարանս ի Մարտիրոս իրվէն* ե. (5) ֆլորի, առ յիշատակ, և է իմ հաւրն խզէլաւղլան Պետրոսին և ամենայն արեան մերձաւորաց. զրի յիշատակ ի դուռն սուրբ Սարգիսին, որ յիշէ զմեզ իւր սուրբ աղաւթքն՝ աստուած յիշէ զինքն իւր արքայութիւնն։

բ

Յիշատակ է սուրբ Աւետարանս Հռիփսիմէ մաւրըն, և հօրն իւրոյ Պետրոսի, և Մովսէսին և Մատթէոսին, ի թուին Հայոց ՋԼԵ. ու Ե. (1486)**։

## 113

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 3864

Ծաղկող՝ Շմաւոն

ա

246բ Վայ ինձ մեղաւորիս,
Որ չէնք կատարող ի հրամանիս,
Որ գիտէ և իմանայ՝
Ոչ պահէ զհրամանս որ իս,
Քրիստոս աստուած ողորմեա քու աղքատիս,
Որ լրբեցաք ի սուտ ծաղկիս,
Ջէինք արժան զայս գործելոյ,
Ճշմարիտ 'ւ սուրբ Աւետարանիս;
Դու ացնական լեր ղարիպիս,
Հոգիս փթեալ ի մէջ մարմնիս,
Քրիստոս աստուած ողորմեա աբեղայիս
Շմաւոն անարժանիս։
Քրիստոս աստուած ողորմեսցես
Թողցես զանցանս Նաքել տատիս,
Իւր ծնաւղաւքն քո սուրբ արքայութեանդ արժանաւոր կոչես։

բ

247ա Քրիստոս աստուած, քո սուրբ արքայութեան արժանի արայ զՆաքել տատի հոգին, որ բազում ծառայեաց զմեզ ի ծերութեան իւրոյ՝ խոնար՜ սրտիւ և հեզ հոգով։

---

* Թերևս լինելու էր «իրիցէն»։

** Այս հիշատակագրությունը գրված է այլ ձեռագրով, Ցովհաննու աւետարանի վերջում։

*Թվան. ՋԼԵ. (1486)։*
*Աստուած թողու զնաքել տատին մեղքն, Քրիստոս զիւր դատաստանն քաղցր առնէ*։*

## 114

## ԱԻԵՏԱՐԱՆ

*Տիրայր, Ցուցակ Օքսֆորդի Բոդլեան գրատան, Ms. Arm. E 40*
*Մատենադարան, «Անհատական արխիվներ», թղթ. 122, էջ 1729—30*

91ա *Յորժամ աւարտեցաւ սուրբ յԱւետարանս թուական ՋԼԵ. (1486) էր։ Ջրստացուղ սորա զնաճապետ քահանայս յիշեցէք եղբայրք, և զիս զեղկելիս, և հայրն իմ և մայրն իմ, և աստուած զձեզ յիշէ, ամէն։*

---

* *Թվականով այս տողերը գրված են 320ա էջի սկզբին։ Սրանց տառերը երկաթագիր են, գրված կարմիր թանաքով։ Տառերի համեմատությունը ծաղկող Շմավոնի գրած երկաթագիր տառերի հետ կասկած չեն թողնում այն մասին, որ դրանք ևս կատարված են նույն Շմավոնի կողմից։*

## 115

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Թ. Գուշակեան, Ցուցակ Սեբաստիոյ ս. Նշանի 143, էջ 86
Երևան 6273 (Ղ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան Հայոց),
էջ 344—345

Գրիչ՝ Մխիթար
վայր՝ Սեբաստիոյ Կովտուն գիւղ

1279 ...Արդ, գրեցաւ սա ի թւականիս Հայոց ի ՋԼԶ. (1487), ի բազում տեղիս՝ ի յերկիրս Սեբաստիոյ, ի գեաւղս որ կոչի Կովտուն, ի դուռն սուրբ Աստուածածնիս, և ի վանս սուրբ Նշանին, և ի քաղաքն Սեբաստիա. ի դուռն սուրբ Լուսաւորչին, ի գառն և ի նեղ ժամանակիս, որ հասեալ է ի վերայ աշխարհիս վասն ծովացեալ մեղաց իմոց։ Վասն զի Հոռմաց տէրն* և Շամայ սուլտանն խաղի դարձան** յիրար և Գ. (3) անգամ Հոռմաց պարոնն ի վերայ Շամայ գնաց***, և Գ. (3) անգամ ալ կոտորուած եղև։ Եւ մեք խիստ նեղացաք, թէ մեր քաղաքիս և երկրիս պակասութիւն**** գայր ի յանօրինացն։ Այլ գոհանամ զաստուծոյ մարդասիրութիւնն որ ի Գ. (3) անգամ կռիւն ի յԲ. (2) կողմանէն ԻՌ. (20,000) հոգի ի սուր մաշեցաւ ի յանաւրինացն, և քրիստոնէից պակասութիւն ոչ եղև։ Այլա ի յիմ մեղացս շատ պակասութիւն եղև երկրիս Սեբաստիոյ, զի շատ մի կարգաւորք և տանուտէրք և այլ ուրիշ մարդիք յառ աստուած փոխեցան, և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։

Եւ արդ, ի յայս նեղութեան ժամանակիս, այր հոգելի բազում չարչարանս կրելով և բոլորովին զմահ յանձն առնելով, վասն սիրոյն Քրիստոսի և յուսոյ արքայութեան երկնից, և այնու փարթամացեալ զտաւ տալով զանցաւորս և վաճառելով զանանցն և զյաւիտենական բարիսն։ Որ և ցանկացող եղև տօնասէրս և տօնախմբողս, աստուածային օրհնութեանց արժանաւորն և արժանիս այս՝ մղտեսի Շնոֆար պարոնն, և կողակիցն իւր Դեսպինան, ամենայն մերձաւորքն իւր, որ ետուն զգիրքս զայս իւրեանց հոգևոր զաւակ և անջինջ յիշատակ, զմաււ ածելով զառաքինեաց զջանս և յիշելով զբանն թէ՝ Երանի որ ունիցի զաւակ ի Սիովն և ընտանեակ յԵրուսաղէմ, ցանկացաւղ եղև պատմութեան սրբոցս և ետ գրել ի հալալ վաստակոց իւրոց, քանզի պարտեզպան է և խիստ աշխատող և լաւ բարի քրիստոնեայ է, ժամասէր, հոգեսէր և աղքատասէր, և ամենայն բարութեամբ լի և առատ այս մաղտեսի Շնոֆար պարոնս և կողակիցն իւր Դեսպինան...

* Փիրղ. «պարոնն»։
** Փիրղ. «դառնացան»։
*** Փիրղ. «գնաց ի Շամ»։
**** Փիրղ. «նեղութիւն»։

Ընդ նմին և զիս՝ զանարժան զՄխիթար մեղաւոր և զծոյլ գրիչս, և զծնողսն իմ՝ զԹամուրն և զՄուղսալն, և զեղբարսն իմ, և զամենայն արեան մերձաւորս։ Այլ և զուսուցիչն իմ սուրբ և առաքինի և ոսկիաբան՝ զՄատթէոս վարդապետն, և զծնաւղսն իւր, այլ և զիւր՝ աբեղայքն հարազատք և ժրաջան՝ զտէր Ղազար և զտէր Շմաւոն, և զծնողս նոցա, և զՄկրտիչ հայրապետն, և զեղբօրորդին իւր զփոքր Հայրապետն, զտէր Գրիգորն և զՄկրտիչ քահանայն, որ զաւրինակն շնորհեցին, և զծնաւղըսն նոցա, և զամենայն աշխատաւորս, որ ի հետ մեր աշխատել են և բարի խրատ են տըւել։ Եւ որ յիշէ՝ զվարձս ի յաստուծոյ առցէ, և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։

## 116

## ԱԻԵՏԱՐԱՆ

Ղ. Ալիշան, «Հայկարան», ՄՏՄ

Գրիչ

վայր՝ Սիւնիք, Արեւիս գիւղ

Գրեցաւ սուրբ Աւետարանս ի գաւառիս Սիւնեաց, ի գեաւղս որ կոչի Արեւիս, առ ոտս սուրբ Գրիգորիս, առաջնորդութեամբ Յովնաթան* վարդապետի, ձեռամբ ոգնամեղ գրչի. [յիշեցէք] զեղբայրն իմ զԷլյաս. զամուսին իւր զԱննա, որ շատ աշխատութեամբ ծառայեաց և անոյշ կերակրով ճաշակեաց զմեզ։ Ի դառն և յանբարի ժամանակի, խանութեամբ Եաղուպ-պէկի, որ և գնաց աւերեց զերկիրն Տրփխեց, զեկեղեցի, զխաչ, զամենայն կործանեաց, շատ գերացոյց քրիստոնէից։

## 117

## ՇԱՐԱԿՆՈՑ

Երևան 6273 (Ղ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան հայոց), էջ 348, Լոնդոնի թանգարան, Ղ. Ալիշան, «Սիսական», էջ 130

Գրիչ՝ Դաւիթ

վայր՝ Սըրկղունք

...Արդ, գրեցաւ եղանակաւոր տառս ձեռամբ Դաւիթ քահանայի, ի գիւղս որ կոչի Սըրկղունս, ընդ հովանեաւ սուրբ Գէորգի և սուրբ Նշանացըս, առ ոտս քրտնաջան, արի և քաջ Աւագտէր վարդապետի՝ հօրեղբօրս մերոյ, և իմ եղբարցս՝ տէր Զաքարիա աբեղային և տէր Աբրահամ նկարողին։ Ի թուականութեան Հայոց ՋԼԶ. (1487), ի յընտիր օրինակէ, ի հայրապետութեան տէր Սարգսի՝ յաթոռն սուրբ Էջմիածնի, և ի զսնութեան Յաղուպ-պէկի, որդւոյ Հասան-բակին**, ի դառն և ի նեղ ժամանակի, զոր նեղեալ եմք յանօրինաց և յանիրաւ պահանջողաց...

* Մ. Տեր-Մովսիսյանի ընդօրինակության մեջ՝ «Յորնաթան» է. ուղղելի է «Յովնաթան» կամ «Յորդանան»։

** Հիշատակարանը տեղ է գտել նաև Ղ. Փիրղալեմյանի «Նշխարք պատմ. հայոց» աշխատության Բ հատորում (Երևան 4515, էջ 228—229)։ Այստեղ «Յաղուպ-պէկի» և «Հասան-բակի» փոխարեն գրված է՝ «Յաղուպ շահին և որդւոյ Հասան շահին»։

## 118

### ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 6273 (Ղ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան հայոց), էջ 346—347, Վանի ս. Խաչի վանք

Գրիչ՝ Ներսէս
վայր՝ Նորշէն

Արդ, գրեցաւ այս հոգելի մատեանս, որ կոչի Գանձարան, ի գեւղս որ կոչի Նորշէն, ընդ հովանեաւ սուրբ Սարգսի զօրավարիս, ի հայրապետութիւն տեառն Ստեփաննոս կաթողիկոսի Աղթամարայ, և ի թագաւորութիւն այլազգեաց Աղուպ սուլտանին, որ յարևելից մինչև ի մուտս արեվու հաւաքեալ ունի, այլ և ի դառն նեղութիւն և ի հարկապահանջութիւն մատնեալ զազգս քրիստոնէից, զոր բազումք մահ խնդրեն անձանց իւրեանց ի բազմանալոյ անօրէնութեան, զոր և յուսամք յաստուած, որ ազատէ զքրիստոնեայք ի ձեռաց անօրինացն, ամէն։ Ի թուաբերութեան հայկազեան աթեթական տումարիս ՋԼԶ. (1487) թւիս։ Զոր և ցանկացող եղև այսմ հոգելի տառիս արհեպիսկոպոսն Յոհաննէս՝ յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնողաց իւրոց՝ հօրն Աստուածատուրն և մօրն Շնաւխտր խաթունին... Յայսմ ամի գնաց Սուլէյման պարոն ի վերայ Մոկաց, և Մոկաց պարոն փախեաւ, և էառ զերկիրն ամենայն և հնազանդեցոյց... [Յիշեցէք] և զիս զանպիտան գծողս զՆերսէս դպիրս՝ զանարժանս...

## 119

### ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 5847

Հետ. ստացող՝ Կիրակոս Բաղիշեցի
վայր՝ Կապուտկող

ա

126բ Ես Կիրակոս երէցս Բաղիշեցի և եղբայրն իմ Յակոբ ետուք զսուրբ Աւետարանս ի դուռն սուրբ Յակոբին՝ հայրապետին Մծբնայ, որ է ի Կապուտկողն, ձեռամբ իմ հօրքեռորդուն՝ Մէլքէսէթ եպիսկոպոսին և իմ հօրեղբաւրորդուն Կիրակոս քահանային Բէլլայ, որ մականուն Ընկուզկտեց ասեն։ Ի թվականիս Հայոց ՋԼԶ. (1487), յաւուրքն, որ զԲաղէշ ղազայ կանէր քուրդ։

Ես Հաւշօշէնց Կիրակոս ետու զսուրբ Աւետարանս, և ոք մի իշխեսցէ զսայ ծախել կամ գողանալ կամ գրաւել. և թէ ոք յանդգնի՝ գողանայ կամ ծախէ կամ գրաւէ՝ զպատիժն զՅուդային առնու, զԿայենին և զխաչահանուացն ի Քրիստոսէ աստուծոյ, ամէն։ Այլ կացցէ անջինջ յիշատակ ինձ՝ Կիրակոս Հաւշօշ իրիցուս, և եղբարցն իմ Յակոբին, և փոխեցելոցն ի Քրիստոս, և քւերն իմ Մանդասուն, և ծնօղացն իմ Ջանիբեկին և Նիգարխն, և հօրեղբաւրն իմ Ատոմ կրօնաւորին, և ծնօղացն Գուրջիբէկին և

Խէրիֆին, Կիրակոսին և Էվատ-Մէլէֆին, Վարդանին և Մէլքէսէթ իրիցուն և Խաթուն-Մէլէֆին, և ամենայն արեան մերձաւորացն իմ՝ կենդանեացն և հանգուցելոցն, և որք հանդիպիք սուրբ Աւետարանիս, լի բերանով աստուած ողորմի ասացէք, ամէն։

Եւ ետու զսուրբ Աւետարանս ոսկի խաչով և արծաթ ոստներով և կոճակով և նշխուն տըփով և Ը. (8) շորով. որ լաւ պահէք աստուած ձեզ վարձք տայ, ամէն։

### Բ

50բ Ես Կիրակոս էրէցս և եղբայրն Յակոբ Բաղիշեցի, որ մականուն Հաւ-
ջօշենց ասեն, ետու զսուրբ և ղաքանչելագործ Աւետարանս ի դուռն Կապուտկողան* սուրբ Յակոբին, ձեռամբ Մէլքէսէթ եպիսկոպոսին և Սարգիս Կնենց կրօնաւորին...**

## 120

## ՃԱՇՈՑ

Երևան 6273 (Ղ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան հայոց), էջ 343, Սեբաստիոյ ս. Նշան

### ա

Գրիչ՝ Փիլիպպոս
վայր՝ Սեբաստիա ս. Նշան վանք

...Եւ արդ, մեծ րաբունապետն և զքաջ հռետորն՝ զՄատթէոս վարդապետն, որ յայսմ ժամանակիս փայլէր ի մէջ վարդապետաց որպէս արեգակն, փափագեցաւ բանին, որ ասէ թէ՝ Երանի որ ունիցի զաւակ ի Սիոն և ընդանեակ Երուսաղէմ, և ետ գրել զսուրբ գիրքս յիշատակ իւր և ծնողաց իւրոց...

Այլ և գրեցաւ սա ձեռամբ Փիլիպպոսի բազմամեղ և ախմար գրչի, ընտիր և ի ստոյգ օրինակէ, ի մեծափառ ուխտս որ կոչի սուրբ Նշան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, սուրբ Կարապետիս, և Պետրոս հայրապետի սուրբ գերեզմանիս և այլ բազմահաւաք սրբոցս, որ աստ կան հաւաքեալ. յառաջնորդութեան սուրբ ուխտիս և երկրիս Սեբաստիոյ՝ Մատթէոս վարդապետի և Յովհաննէս եպիսկոպոսի...

Արդ, գրեցաւ ի թուականիս Հայոց ՋԼԶ. (1487), ի դառն և ի նեղ ժամանակիս, որ Քրիստոսի հրամանքն յայս ժամանակիս կատարեցաւ, որ ասէ. Յարիցէ ազգ յազգի վերայ։ Պիղծն այն Բուտախ-բէկն դաստուր ունէր խոնդքարէն և էառ բազում հեծել, եկաւ ի վերայ Անթափու և ջարդեցաւ, և շատ աւար էած Սեբաստիոյ երկրիս. և բազումք սրախողխող մեռան և շատ տեղ աւերեցաւ. աստուած յայլ չարէ պահէ, ամէն։

---

* Գրված է «Կապուտյողան»։

** Շարունակության մեջ, ինչպես ա հիշատակարանում, խնդրում է հիշել իր մերձավորներին։

*[Յիշեցէք զմիաբանքս* Սեբաստիոյ *ս. Նշանի]* զՂազար *եպիսկոպոսն,* զՇմաւոն *վարդապետն,* զՂազար *վարդապետն,* զԱստուածատուր *վարդապետն և* զՅոհաննէս *վարդապետն։*

**Բ**

*Ստացող՝* Մատթէոս վարդապետ

*...Ես* Մատթէոս *մեղօք լցեալ,*
Սեբաստիոյ *վարդապետ լեալ,*
*Դատարկ անուան արժանացեալ,*
*Գործոց բարեաց թափուր մնացեալ։*

## 121

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Բ. Կիւլէսէրեան, Ցուցակ Անկիւրիոյ 191, սյուն. 917—918*

*Գրիչ՝* Զաքարէ
*վայր՝* Խրեզի վանք

504ա— *Ըստ ամին աւրհնակի երջանիկ և հոգէսէր տանուտէրն* Ճաւկար, *որ*
506ա *ստացաւ զսայ յիշատակ իւր, և ծնաւղացն, և Նորաբուս եղբաւրն տէր* Մխիթարին, *որ և փոխեցաւ առ Քրիստոս, ամէն, և դեռայբուս որդւոյն* Մարգարէ *սարկաւագին, և միւս որդւոյն, և դստերացն, և հարսին։*

*Արդ, գրեցաւ ի թուիս Հայոց ՋԼԶ. (1487), յուլիս Լ. (30), ձեռամբ անարժան* Զաքարէ *աբեղայիս։*

*Արդ, ես* Ճաւարս *որդի զայս ամենայն մտաւ ածի և յիշեցի զայն որ ասէ, թէ Որանի որ ունիցի զաւակ ի Սիովն և ընտանեակ յԵրուսաղէմ, և ետու գրել զկենսունակ սուրբ Աւետարանս, յիշատակ ինձ, և ծնողաց իմոց, և հարազատ եղբաւրն իմ տէր* Մխիթարին, *որ փոխեցաւ ի Քրիստոս, ամէն, և որդոցն իմ* Մարգարին:

*Արդ, գրեց[աւ] սուրբ Աւետարանս ի վանքս* Խրեզի, *ի դուռս սուրբ Աստուածածնին, և սուրբ Կարապետին և այլ սրբոցն, ամէն։*

*Այլ և յիշեսջիք զսրբասնեալ կրաւն[աւ]որք սուրբ ուխտիս* զԽրեզի *վանացս՝ զառաջնորդն զտէր* Սարգիսն, *զտէր* Առաքելն, *և զմալազն զտէր* Մէլքիսէթըն, *զի իւրեանք աշխատին ի բանս վանացն, և զիս յորդորէին ի գրել զսուրբ Աւետարանս։ Յուսամ յաստուած, զի անփորձ պահեսցէ զնոսա յամենայն չարէ և ի միւսանգամ գալստեան իւրոյ ընդ սուրբ Ճրգ-նաւորացն և ընդ սուրբ կրաւնաւորացն զերկնից արքայութիւնն ժառանգել տացէ, ամէն։*

*Այլ և յիշեցէք* զՆիկողոս *սարկաւագն, որ ի խարիպութիւնս ղմեզ յորդորեցէր և աստուած զինքն յորդորէ յիւր արքայութիւնն, ամէն։ Եւ զտէր* Յովհաննէս, *որ զթուղթս կոկեց, աստուած թողու զիւր մեղքն և զիւր ծնաւղածն, ամէն։*

## 122

### ՄԱՇՏՈՑ

*Երևան 6273 (Վ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան Հայոց), էջ 346, Վանի ս. Խաչի վանք*

*Գրիչ՝* Բարսեղ
*վայր՝* Կտուց

*...Արդ, գրեցաւ սուրբ Մաշտոցս յանապատս, որ կոչի* Կտուց, *ընդ Հովանեաւ սուրբ և դիւահալած սուրբ* Կարապետին *և սուրբ Աստուածածնին, ի թուականիս Հայոց ՋԼԶ. (1487), ձեռամբ* Բարսեղ *կրօնաւորիս...*

## 123

### ՄԱՇՏՈՑ

*Երևան 955*

**ա**

*Գրիչ՝* Ազարիայ
*վայր՝* Սղզայոյ վանք

246ա *...Արդ, գրեցաւ սուրբ գիրքս, զոր արարեալ է սուրբ Հօրն Մաշթոց վարդապետի ... ի թուականիս Հայոց ՋԼԶ. (1487) ամին։ Եւ ի մարդեղութենէն Քրիստոսի մինչև ի մեզ ՌՆՁԼԲ. (1487) ամին։*

*Եւ գրեցաւ սա ի՝վանքս* Սղզայոյ, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի տաճարիս, եւ ի հերպետութեան սորին* Առաքել *կրաւնաւորի, ի հայրապետութեան տեառն* Սարգսի, *եւ մերոյ առաջնորդի սուրբ ուխտիս* Վարագայ *տեր* Յովանէս *արհեպիսկոպոսի, որ մականուն* Գունդուս *կոչի, և ի հերպետութեանն* Աղուբենց Ստոմ *կրաւնաւորի. ի թագաւորութեանն* Աղուր-բէկի, *ի պարոնութեանն* Սուլեմանին:

*Արդ, ի յայսմ ամի ցանկացող եղև այս պատուական և լուսափայլ մարգարտիս բարեմիտ և պատուական տանուտէրն խաւչայ* Ջանգիշէն *և ստացաւ զսա ի յարդար վաստակոց իւրոց՝ յիշատակ բարի հոգւոյ իւրոյ, և ծնաւղաց իւրոց* Յոհանիսին *և* Ամբար-խաթունին, *և եղբարցն* Ստեփանոս *քահանային և խաւչայ* Մովսեսին՝ *փոխեցելոյն ի Քրիստոս, և որդոց իւրոց* Աղուպշին, Սաֆարշին *և* Մուրադին, *որք տարաժամ մահուամբ փոխեցան ի Քրիստոս, եւ զդեռաբողբոջս ծաղկունքն խաւչայ* Գորգին, *խաւչա* Միրաքին
246բ *և* Սըմբատին, *և զբս // տերացն՝* Դովլաթին, Շանումին *և* Գուլգունին...

*Արդ, յերես անգեալ աղաչեմ զձեզ հարք և եղբարք յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր զմեղապարտ գծողս* զԱզարիայ *սուտանուն քահանայ, որ զանունս ունիմ և զգործս ոչ, և զծնաւղսն իմ, և զուսուցիչ* զԿարապետ *քահանայ, որ նահատակեցաւ ի ձեռաց անօրինաց* յԱրճէշ *քաղաքի, և զմայրն իմ* զՍաղդաք, *և զորդիքս իմ* զՖարղուզաթն, զԱմիրզատն *և* զԲարունակն, *որ զթուղթս կոկեաց. մանաւանդ յիշէցէք ի սուրբ յաղօթս ձեր զխաւչա* Ջանգիշէն *և զծնօղսն իւր, որ ստացաւ զսուրբ գիրքս և ետ ի դուռն սուրբ*

247ա առաքելոցս Պետրոսի և Պաւղոսի. և մի ոք իշխեսցէ հեղձացուցանել զսա ի դրանէ սուրբ առաքելոցս գողանալով կամ ծախելով կամ գրաւելով, և ով ոք յանդգնի և առնէ՝ պատուհասի ի սուրբ առաքելոցս...

Բ

Նկարող՝ Կիրակոս

Զնկարող խորանիս՝ զբազմամեղ Կիրակոսս, և զծնօղսն իմ աղաչեմ յիշել ի տէր։

124

ՄԱՇՏՈՑ

Երևան, պատառիկ 1825

Գրեցաւ Մաշտոցս ի թվականիս Հայոց ՋԼԶ. (1487). Ես արդ մեղուցեալ անարժան ծառ[այս]// ով կարդայք կամ աւրինակ[էք խն]դրեցէք մնաց Թողութ[իւն և աստուած] զձեզ յիշէ իւր արքայութե[անն]։

125

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 3709

Գրիչ՝ Մխիթար
վայր՝ Վարագ

259ա ...Դարձեալ աղաչեմք զձեզ յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զաստուածասէր տանուտէրն զԹուվան, և զկենակիցն իւր ըզԹըլիփաշէն, և զծաղկեալ զաւակսն իւրեանց՝ զԱդէն, զՊապիկն և զՋանիբէ[կ]ն... և զեղբայրն իւր զԿարապետն, և զկենակիցն զՍաղբան, և ըզհայրն իւրեանց զխոջա Թաքարն, և զկենակիցն իւր զՍալըլիփաշէն, և զղստերքն իւր զԳալինասըն և զՇահումն և զԳալփաշէն՝ զհանգուցեալն ի Քրիստոս, // և զԱնդրի-
259բ ասըն և զկենակիցն իւր, զՋանիբէկն, և զկենակիցն իւր՝ զԹաքարմամէն՝ յի սրտէ և միամիտ մտաւք աստուած ողորմի ասացէք ի ժամ սոսկալի սուրբ պատարագին, և աստուած զձեզ ողորմեսցի, ամէն։

Եւ արդ, ես՝ յետինս ի կարգաւորաց և անարժանս ի բարի գործոց և անպիտանս ի մանկունս սուրբ եկեղեցւոյ և անհմաստ ի գիրս գրչութեան՝ Մխիթար սուտանուն քահանայիս, վա՜յ և եղուկ է ինձ, որ ոչ եմ արժանի կարգիս և անուանս։ Շնորհիւ տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զսուրբ Աւետարանս ի թուականիս Հայոց ՋԼԶ. (1487) ամին, ի յառաջնորդութիւն սուրբ ուխտիս Վարագայ տէր Յովաննէս արհեպիսկոպոսիս, զոր տէր աստուած հաստատուն և անփորձ պահեսցէ զնա յաթոռն իւր, ամէն։

...Աստուած ողորմի ասացէք ...և ինձ՝ անարժան գրչիս Մխիթար սուտանուն քահանայիս, և իմ ծնաւղացն՝ Յուսէսն քահանային, կենդանեացն և մեռելոցն՝ առհասարակ ողորմեսցի Քրիստոս աստուած, ամէն...

126

ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 6273 (Գ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան հայոց), էջ 345—346.*
*Արծկէ ս. Սքանչելագործ*

ա

*Գրիչ՝* Ոքսաակէս
*վայր՝* Բաղէշ, Ամրդօլու վանք

*...Եւ ես՝ անպիտանս յամենայնի մեղուցեալ գրիչս* Ռքսաակէս *աբեղայս՝ տեսի զսէր և զփափագ ուսթայ* Եւստշին, *զոր ունէր հետ սուրբ Աւետարանիս, եւ ձեռնարկեալ գրեցի զսուրբ Աւետարանս ի գառն և ի նեղ ժամանակիս, յերր քաղաքիս* Բաղիշոյ, *ի դուռն* Ամիրդօլոյ *սուրբ Յովանիսիս, և սուրբ Սիոնիս, ի կաթողիկոսութեան տեառն* Սարգսի, *և ի յաշխարհակալութեան* Եաղուպ-բակին, *որդւոյ* Ուզուն-Հասանին, *որ նստի յարքայանիստ և ի չահաստան քաղաքն* Թաւրէզ, *ի թուականիս Հայոց ՋԼԶ. (1487) ամի։*

բ

*Ծաղկող՝* Կարապետ

*էին որպէս եմք, լինիմք որպէս են, էաք որպէս դուք, լինիք որպէս եմք. գնացին նոքա, գնամք և մեք, գայք և դուք, գան, որ յետ ձեզ։*

127

ԱՒԵՏԱՐԱՆ

*Յ. Ժանիկեան, Հնութիւնք Ակնայ, էջ 84*

*Գրիչ՝* Մարգարայ
*վայր՝* Աղբակայ երկիր,
Էրընկանի գիւղ

*Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ* Մարգարայ *մեղաւորի, ի թուականութեանս Հայոց ՋԼԶ. (1487), ի յերկիր* Աղխբակայ, *ի գեա[ւ]ղս, որ կոչի* Էրընկանի, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի տաճարիս, ի յառաջնորդութեան սուրբ աթոռոյն առաքելոյն Բարգողիմէոսի տէր* Յովհաննէս *արքեպիսկոպոսի և* Ղազար *քաջ և արի փիլիսոփայի, ...որ ասէք զաստուած ողորմին ինձ՝ մեղապարտ* Մարգարայ *գծողիս, և իմ ծնողացն, մանաւանդ և իմ վարպետացն* Զաքարիա *վարդապետին, և* Թադէոս *ճգնաւորին, և* Սուքիաս *մախտասի քաջ կրօնաւորին, և* Վարդան *կազմողին, և այլոցն ամենայնի...*

128

ԳԱՆՁԱՐԱՆ

*Երուսաղէմ 1101, ՄՏՄ*

*Գրիչ՝* Հազարապետ
*վայր՝* Երզնկայ, Խախ գիւղ

*Գրեալ ի գաւառս* Եկեղեաց, *ի մայրաքաղաքս* Եզընկայ, *ի գիւղն որ կոչի* Խախ, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Սարգսին, և*

սուրբ Կարապետին, ձեռամբ Հազարապետի անարժանի, ի թուիս Հայոց ՋԼԶ. (1487)։ [Ստացող պարոն Աւագ տանուտէր, կինն Սառայ և որդիքն Խաչատուր, Ճարակ, որք եռուն ի դուռն Դաւի՞թ եկեղեցոյ էրզրումայ].

## 129

## ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 357

Վայր՝ Աւագ վանք

ա

299բ ...Գրեցաւ սուրբ Աւետարանս ի սուրբ անապատս, որ կոչի Աւագ վանք, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Կարապետիս և սուրբ Առաքելոցս Քրիստոսի։ Ի թվ. ՋԼԶ. (1487), առ ոտս երջանիկ րաբունապետին Յովաննէսի, ի յառաջնորդութիւն տէր Յոհաննէս եպիսկոպոսի, և այլք կրաւնաւորացն, որք աստ կան։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա տեսանելով կամ աւրինակելով յիշեսջիք ի մաքրափայլ աղաւթս ձեր զանարժան սուտանուն աբեղայս, որ անարժան ձեռաւք իմովք գրեցի զսուրբ Աւետարանս, և զծնաւղքն իմ, և զամենայն արեան մերձաւորսն իմ, և որք յիշէք՝ յիշեալ լիջիք առաջի ահեղ ատենին Քրիստոսի։ Եւ խոշորութեան և սղալանաց սորա անմեղադիր լերուք, աղաչեմ, աղաչեմ։

բ

91բ Քրիստոս աստուած քո միւսանգամ գալըստեանդ յիշեայ զստացող սուրբ Աւետարանիս զէլմելիքն եւ զկողակիցն իւր զնաղարաճի Ամինատինն,... վասն որոյ ետ գնել զսայ ի հալալ ընչից իւրոյ և ետ ի գիւղն որ կոչի Հանդերձիք, ի դուռն սուրբ Սիոնի և այլ սրբոց, որ աստ կան հանգուցեալ։ Աղաչեմ զձեզ՝ քահանայք և սարկաւագ և բռայիս և ամենայն ժողովուրդք՝ մեծ և փոքր, լաւ պահեցէք ի կաթիլքէ, ի յաղոյ և ի գողէ։ Դարձեալ աղաչեմ զձեզ՝ մի ոք իշխեսցէ գրաւ դնել կամ ծախել կամ գողանալ, կամ ով յանդգնի՝ զխաչհանուացն առցէ և զմասն Ուդայի. և ամենայն սրբոց անիծեալ լինի, ով որ խնամ չտանի։ Յոյսրժամ զմասն ի վեր կալնուք, ողորմի ասացէք և աստուած ձեզ ողորմի, ամէն, ամէն և եղիցի։

## 130

## ՃԱՌԸՆՏԻՐ

Երևան 6273 (Գ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան հայոց), էջ 348, Վանի Գաբեննից վանք

Գրիչ՝ Առաքել

...Եւ արդ, ես՝ անպտուղս ի բարեաց ...սուտանուն քահանայ Առաքել գրիչ, տեսի զսէրն տանուտիրոջն Յոհաննէս քահանային... և ամենակարող զօրութեամբն աստուծոյ կատարեցաք զսուրբ գիրքս ի դառն և ի նեղ ժամանակիս, յորում է թուական Հայոց ՋԼԶ. (1487)...

## 131

### ՇԱՐԱԿՆՈՑ

*Ա. Սիւրմէեան. Ցուցակ Հալէպի Ա, 9, էջ 27*

*Ստացող՝* Զաքարայ

519 *...Ըստացաւղ սորա* Զաքարայ *աբեղայ, յիշատակ ինձ, և ծընաւղաց իմոց՝ հաւրն իմոյ* Էրկիլ, *և եղբայրն իմ* Նատիր, *որ հանգուցեալ են ի Քրիստոս, և մայրն իմ* Կուլփաշայ, *և այլ եղբարս իմ՝* Թաիփշայ, Ստեփանոս, *և եղբաւր որդիք նորա* Հայրապետ, Անանիայ *դպիր,* Վարդան, Մարտիրոս, Թադէոս, Ազարիայ, Պետրոս, Անտոն *և յամենայն արեան մերձաւորացս, ամէն, եղիցի։*

Զ*սակաւ գծող սորա* Վրդանես *սուտանուն աբեղա յիշողք յիշեալ լինին ի Քրիստոս։ Թվիս. ՋԼԶ. (1487)։*

## 132

### ԱԻՑՏԱՐԱՆ

*Երևան 3334*

*Գրիչ՝* Զաքարա

ա

135բ Զ*մեղուցեալ և ղանարհեստ գրիչս* Զաքարա*, *անուամբ քահանայ կոչի[մ] և ոչ գործով, վա՜յ ինձ հարիւրապատիկ և հազարապատիկ, սևերես եմ աստուծոյ իմ կարգէս և ի պատուիրանացն աստուծոյ, և զծնաւղսն իմ* Էրկիլ, *և եղբայրն իմ* Նատիր, *որ կիսայհասակ հանգեաւ ի Քրիստոս, և այլ եղբարքս՝* Թայիփշայ, Ստեփաննոս, *և եղբաւրորդիք նոցա*** Հայրապետ, Մարտիրոս, *փոքրիկ դպիր* Անանիայ, *և ամենայն արեան մերձաւորացս, ամէն։*

*Արդ, աղաչեմ յիշել ի տէր և աստուած զձեզ յիշէ յիւր միւսանգամ գալըստեանն, ամէն։*

բ

240ա *...Արդ, աղաչեմ յիշել զտառատիպս գծագրաւղ սորա* Զաքարայ *անուամբ աբեղայ և գործով դատարկ ամենայն բարեգործոց. յիշատակ ինձ և ծնողաց իմոց՝ հայրն իմ* Էրկիլ, *և եղբայրն իմ* Նատիր, *որ կիսաւրեա հանգուցեալ են ի Քրիստոս և կրսեր եղբարքս իմ* Թաիփշա, Ստեփանոս, *և որդիք նոցա՝* Հայրապետ, Անանիայ *դպիր, և* Մարտիրոս, *և մայրն իմ* Կուլփաշայ, *և թոռնւթիւն հայցեցէք ծովացեալ և բազում մեղաց իմոց, և անմեղադիր լերուք, զի ձեռս քամի կայր, ի խիստ կարաւտութենէ գրեցի։*

---

* *Նախորդ հիշատակարանի հեղինակ՝ Էրկիլի որդի և Նատիրի եղբայր Զաքարայ գրիչն է, ըստ այդմ էլ տեղադրում ենք նրան առընթեր 1487-ի թվաշարքում։*

** *Իմա՝ «Եղբաւրորդիք իմ» կամ «որդիք նոցա»։*

## 133

### ԱՒԵՏԱՐԱՆ

Բ. Գուշակեան, Ցուցակ Սեբաստիոյ ս. Նշանի. 34, էջ 34

Ստացող՝ Շահամիր

730 ...Գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ Սարգիս վարդապետի, ի Թվականիս Հայոց ՋԼԶ. (1487), ի յիշատակ բարի պարոն Շահամերին հոգոյն. և ծնաւղաց իւրոց՝ հաւրն Բախթիարին և մաւրն Քուրանին, և կնոջն Թուխթանայ, դստերն Դշխուին, քուրոջն Մարթային:

Արդ, ես Շահամիրս գնեցի զվարդափթիթ և զանուշահոտ, ծաղկաւէտ սուրբ Աւետարանս ի վայելումն հոգւոյ իմոյ, և ծնողաց իմոց, և ամենայն արեան մերձաւորաց իմոց. և եդի յիշատակ ի դուռն սուրբ Հրեշտակապետին։ Աստուած զիւրեանց յիշատակն անջնջելի պահեսցէ, ամէն։

## — 104 —

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Ղ. Ալիշան, «Հայկարան», ՄՏՄ

Ստացող խոճայ Մուրատ, որդի խոճայ Սարգսի և Այմէլիքի, յիշատակ ետ ի դուռն սուրբ Սարգսի։ Կազմող Կիրակոս եպիսկոպոս։

## 135

### ՀԱՒԱՔՈՒՄՆ ԲԱՆԻՑ ՆԱԽՆԵԱՑ

*Երևան 6273 (Ղ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան հայոց), էջ 353—356,*
*Մշոյ ս. Կարապետ,*
*Վենետիկ 304 (643) Բ. Սարգիսեան, Ցուցակ. հտ. Բ, 1159—1161*[*]

ա

151բ *Ի ՋԼէ. (1488) Թուականին եղև արհաւիրք ի բազում տեղիս, և կոտորեցաւ ազգն տաճկաց, զի յաշխարհն չաղաթային բազում պատերազմունք և արեան հեղումն եղև, և Մսրա սուլտանն և Հոռոմոց խոնդքարն զմիմեանս ջարդեցին և կոտորեցին։ Եւ մեծ սօֆի Արտաւէլ քաղաքին ժողովեաց Թղթով իւրով զամենայն սօֆիսն իւր՝ յամենայն երկրէ, զի էր սահմանք և սովորութիւն նոցա, որ յամենայն ամի փութային ի կոչն նորա յամենայն աշխարհէ կարմրագտակ սօֆիքն, և զինուորէին նմա իւրեանց Թոշակօք[5]. և փոխանակ առնելոյ ի նմանէ՝ ինքեանք տային նմա բազում ոսկի և արծաթ, և յամենայն պատերազմունս ընդ որ երԹայր՝ յօժարութեամբ կռուէին և մեռանէին առաջի նորա։ Որ և ես հիացեալ և զարմանամ ընդ այնպիսի կորստական անմիտ միամտութիւնն, զի մոլորեցուցիչ արուամոլն զայն՝ մեծ մարգարէ կարդային Թիւրեալքն ի ճշմարտութենէն, և սքանչելեօք համբաւէին զանուն նորայ՝ եԹէ ցամաք ոտիւք (անցանէ) ի վերայ գետոյ, և Թաղսեայ կացնաւ իւրով կտրէ զքար և զերկաթ և զամենայն ինչ. եւ այլ բազում սուտ համբաւօք բարձրացուցանէին զկործանեալն ի չարիս։ Որ և ժողովեաց յայսմ ամի արս իբրև Խռ. (40,000), և գնացեալ խաբեութեամբ եմուտ ի Շամախի, և զամենեսեան, որ ի ձեռն էած ի քրիստոնէից և ի տաճկաց՝ զարս և զկանայս սրով կոտորեաց, և զքաղաքն ամենայն հրով այրեաց՝ կումաշօքն և որ ինչ էր ի նմա։ Եւ զմանր տղայքն ժողովեալ առ ինքն և դիզեալ ի վերա միմեանց հինգ և վեց, և ինքն հարեալ ի վերուստ նիզակաւ՝ անցուցանէր մինչև ի ներքին տղայն. և վերացուցեալ նիզակաւն կանգնէր, և տղայքն աղիողորմ Թալկանային ոտիւք և ձեռօք ի ծայրս նի-*

---

[*] *Այս հիշատակարանի Բ. մասի մի ընդօրինակություն գտնվում է Մատենադարանի № 2748 ձեռագրում (էջ 226ա) և հավանաբար սրանից կատարված մի այլ ընդօրինակություն՝ Հայկ. ՍՍՀ կուլտուրայի մինիստրության գրականության և արվեստի թանգարանում (ֆոնդ Գ. Ախվերդյանի, վավ. № 6)։*

*Ստորև տալիս ենք դրանց սկզբի մասը, որն այլ խմբագրության է պատկանում. «Իսկ ի վերջին ժամանակս ի զօրանալ Նեռին Կարապետին և չար կամարարացն նորին, նոր իմն մոլորութիւն և անասելի գործ գործեցին կարդացողքն նոցին և դիւալից շեխերն։ Ի Թվականիս մեր Հայոց ՋԼէ. (1488) եղև աստուածասաստ բարկութիւն ի վերայ Աղաբուք անուն գեղջին, որ ի նահանգին Կոտեբոյ, մերձ ի վանքն Ապարանից։ Զի չար սոֆիք բնակեալ էին ի գիւղն Աղաբուք և կոչէին շեխնոց և սոֆենոց, և բազում նեղութիւնս անցուցանէին ընդ աբեղայսն և կտրէին հանապազ զջուրս վանացըն և ոչ տային Թոյլ հանգչել նոցա»։ Շարունակությունը, աննշան գրչագրական տարբերու-*

զակացն. և նա ծափս հարկանէր ուրախութեամբ և ասէր՝ Այս է ճշմարիտ ղազայն։ Եւ զանասունսն զամենայն՝ զձի և զջորի, զուղտ և զոչխար սրով կոտորեաց, և այնպէս ոչ խնայեաց ի մարդ և յանասուն։ Զոր զոյժ արկեալ տէրն Շամախու ի Թաւրէզ, առ փատշահ փեսայն իւր Աղուպ, և ծանոյց նմա։ Եւ նա յուղարկեաց զիշխանն մեծ Սուլէման բազում զօրօք, որ գնացեալ ջանիւ մեծաւ մարտեան, և յաղթեալ կոտորեցին առհասարակ զամենեսեան, և ինքեանց ևս շատք մեռան։

Բ

Դարձեալ ի սոյն ամի եղև աստուածասաստ բարկութիւն ի սօֆիսն Կոտերոյ երկրին*։ Է մօտ ի վանքն Ապարանից գեօղ մի սոֆէնոց Ատաւբուf** անուն, և բազում նեղութիւնս անցուցանէին ընդ աբեղայսն, և կըտրէին հանապազ զջուրս վանացն, և ոչ տային թոյլ հանգչել նոցա։ Եւ յաւուրըս բուն բարեկենդանին մի ոմն ի նոցանէ հարսանիս առնէր որդւոյ իւրոյ, և ամենեքեան ժողովեցան անդ և արարին նմանութեամբ կատակ բազում։ Եւ ապա բերեալ կողով մի եդին ի միջի՝ իբր սուրբ սեղան, աղիւս մի ի վերայ՝ որպէս զԱւետարան, և բերեալ սեաւ չըլով շներ և կացուցին շուրջանակի, և եդին անուանս նոցա զվարդապետացն և զեպիսկոպոսացն, զոր ճանաչէին։ Իսկ երկու ալևորք խրատ ետուն նոցա և ասեն՝ Մի առնէք զայդպիսի կատակդ, այդ մեծ գունաւ է ձեզ, որ զպեղծ շներդ ի սրբակաց ծառայքն աստուծոյ կու նմանեցուցանէք։ Եւ նոքա ևս առաւել մոլեալ ի չարէն, և բերեալ զոմն կերպարանէին սուտ մեռեալ, զի յետոյ յարուցանիցեն, և ո՛չ յարեաւ, այլ զառհաւատաչեայն ընկալաւ զյաւիտենից մահուն։ Եւ ապա բերեալ գինի, բրդեալ հաց, տային շանցն՝ յօրինակ հաղորդի։ Եւ նոյն ժամայն եղև աստուածասաստ բարկութիւն ի վերայ նոցա, զի եղև դղրդումն և ճայթումն ահագին, և ահեղ որոտմանէն ամենեքեան սատակեցան, որ ի տանն էին՝ բաց յերկուց ծերոցն։ Եւ եկեալ իշխանն Դերջնոյ՝ ետես զահագին գործն և զարհուրեցաւ. և սուր քարշեալ կամէր զմնացեալսն ինքն կոտորել, զոր ոչ ետուն մոլնայքն թոյլ, վասն որոյ հանեալ զմնացեալսն ի գեղջէն և փոխանակ նոցա կացոյց քրիստոնեայս, և արար հայանոց...

136

ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Երևան 4859

Գրիչ՝ Յոճանէս
վայր՝ Այրիվանէf

649ա ...Արդ, այսմ հոգևոր և աստուածային և մեծափառ գանձուցս ցանկացողք եղեալ երիցս երանեալք՝ երկու հարազատ կրօնաւորք՝ Տէրտէր և Յովանէս, և բարէմիտ և աստուածասէր Զաfարէն, և որդին իւր Մարգար քա-

---

թյուններով, նույնն է, միայն վերջում ունի լրացուցիչ հետևյալ նախադասությունը. «Ի փառս Քրիստոսի աստուծոյ մերոյ։ Եւ այսպէս սքանչելեօքս հաստատեցան հաւատացեալքն առաւելապէս ի հաւատս ճշմարիտ, և անօրէնքն երկմրտեցին յընդունայն հաւատոց իւրոց»։

* «Այժմ Մամռտանք կոչեցեալ» (ծանոթ. Ղ. Փիրղալեմյանի)։

** Փիրղ՝. «Աղաբուկ»։

649բ Հանայ. եղեալք ի յանդաստանս եկեղե//ցւոյ և տեսեալ զդրութիւնս սպասուցն և կարգացն և զզանազանութիւն ամենայն կահիցն, զոր եդեալ ի փառս աստուծոյ, և ի յանգուտ մեր, և ի լուսաւորութիւն հոգւոց մերոց, և ցանկացեալք տրփմամբ հոգւոյն այսմ բազմաշխատ մատենիս և ետուն գրել զսա ի յարդար վաստակոց իւրեանց...

Զոր և ես՝ տառապեալ յոգի տէր Յոհանէս եպիսկոպոս ըսկսայ և կարողութեամբն աստուծոյ գծագրեցի մի ըստ միոջէ զմարգարտաշար բանս ի սփոփանս մտաց բանասիրաց և տաւնասիրաց անձանց, մանաւանդ ի սէր սիրելեացն աստուծոյ և ի պայծառութիւն սուրբ եկեղեցոյ՝ զլուսատուս Հայոց և զմխիթարիչս մտաց...

...Ըստ այսմ յուսոյ և պայմանի ցանկացան և այս բարեսէր և բարեմիտ արքս, երկու հարազատ կրաւնաւորքս Տէրտէր և Յովանէս, և զկէս գրոցս ետուն գրել, վասն զի ոչ ժամանեաց սրբասնեալ աբեղայն Յովանէս ի կատարումն գրոցս, այլ փոխեցօ մահւամբ յաշխարհէս ի յանանց կեանս, նոյնպէս և եղբայրն Տէրտէր փոխեցաւ առ Քրիստոս, և ոչ կարացին զբոլորն գրել տալ։ Վասն որոյ տեսեալ զսայ աստուածասէր և բարեմիտ այրն Ջաֆարէն և որդին իւր Մարգար քահանայն, և մայրն իւր Խէր-խաթուն, և ամուսինն իւր Խումար-խաթուն և զկէս գրոցս այլ նոքա ետուն գրել ի հալալ վաստակոց իւրեանց։

Արդ, եղև գրաւ գրչութեան սորա՝ այս մեծահանդէս ծաղկազարդ և հոգելից տառի, ի շրջագայութեան հայկազեան տաւմարի ՋԼԷ. (1488),
650ա ի դառն // և ի չար ժամանակի, որով նեղիմք ի բռնութենէ անաւրինաց, յանիրօ պահանջողաց։ Ի հայրապետութեան տեառն Սարգսի՝ ի յառաքելական աթոռն՝ ի սուրբ էջմիածինն, և յաշխարհակալութեան Յաղուպ-բէկին, որ ի սորա ժամանակս եղև թասպութիւն, զի ղատին թաթար էր և հալածէին զքրիստոնեայսն ի Թավրէզ քաղաքի, զի տաճիկ ոմն անուն Մենդի սպան զմեծ ախոյանն Հայոց ըզխաւճայ Միրաfն, վասն ի Քրիստոս հօատոցն, որ և յիշատակն աւրհնութեամբ եղիցի, ամէն։ Ի սուրբ և ի գերահռչակ ուխտս որ կոչի Այրիվանս, որ և հիմնարկեալ է ի սուրբ Լուսաւորչէն Գրիգորի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և արեամբ ներկեալ Քրիստոսի սուրբ Գեղարդեանս, և սուրբ աջոյս Յովաննու, և Խոտակերաց սուրբ նշանիս, և տապանակի սուրբ Յակոբին և այլ բազմահաւաք սրբութեանցս, յառաջնորդութեամբ տեղոյս իմոյ անարժանութեանս՝ Յոհանէս եպիսկոպոսի, և հարազատիս իմոյ՝ գեղեցկատիպ մանկանս տէր Ստեփանոս եպիսկոպոսի, և ձեռնասունից հոգևոր որդ[ոց]ս՝ մերոց միաբանիցս՝ Յեսայոյ, և տէր Մաղաքիայի, և Կարապետի, Խաչատրոյ, և Ստեփանոսի, Մելքիսեթի, Աթանասի, Հերապետի և Ազարիայի:

Արդ, յերեսս անկեալ աղաչեմ, որք հանդիպիք սմա տեսութեամբ, յաւրինակելով, կարդալով և կամ լսելով՝ յիշեսջիք ջերմեռանդ սրտիւք և քաղցրագութ մտաւք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զստացողք սուրբ գրոցս զՏէրտէր քահանայ, և զՅովանէս քահանայ, և զՄաղթաւմշայ, նաև զբարեմիտ և զմեծազգի այրն Ջաֆարայ, և զկենակիցն իւր զԽէր-խաթունն, և զպատուելի և զփառաւոր և զճգնազգեաց քաջ րաբունապետն Ստեփանոս, և զՄարգար քահանայն, և զկենակիցն իւր զԽումար-խաթունն, և զքոյրն իւր

զՏղիսաբեդ, և զորդիքն իւր զՍիմէոն դպիրն, Ազիզբէկ, Գալուստ. և Ջաֆարայ, և Սանձակ, և զհաւրեղբայրսն զպարոն Ջանազիզն, և զԱմիրազիզն, զՄուշեղ և զԴօիբ՝ զփոխեցեալքն առ Քրիստոս, և զորդիք նոցին՝ զպարոն Դիլտարն և զՄաթէոս քահանայն, զպարոն Շանշէն, և զՇերանշէն, և զԳրիգորն, և զփեսայն իւր զՋանիկ-աղէն, և զդստերսն՝ զԹամթայ-խաթուն. զՍիրմիկ և զԴավլաթն:

550բ Արդ, ստացաւղքս աստուածային բուրաստանիս՝ զհասարակն՝ Տէրտէր և Ովանէս կրօնաւորք, վասն այն պատճառին, որ զբոլորն գրել տան, որ ի վանքս իւրեանցն յիշատակ լինի։ Երբ որ Ովանէս աբ[եղ]էն վախճանեցաւ՝ Տէրտէրն չկարաց թամամել, մեք՝ Այրիվանուց եպիսկոպոս և միաբանք աղաչեցաք զՏէրտէրն, թէ դու զքո բաժինն այլ այն գեղին տուր, վասն այն պատճառին, որ այն Բարձապի գեղն սուրբ Գեղարդեանս սեփհական ժողովուրդ է և գիրք չունին, զջուրն ծարաւում պիտի արբուցանել. և Տէրտէրն այլ կամաւորեցաւ, և միաբան շնորհեցաք զկէսն էլ հետ այն կիսում, որ Մարգար երէցն և իւր հայրն Ջաֆարէն գրել տուին և ծաղկով զարդարեցին և կազմեցին, և իւրեանցն անջինջ յիշատակ լինի։ Յայսմհետէ Բարձապոյ եկեղեցոյն է Այսմաւուրքս, որ հանապազ կարդան ի մէջ ժողովրդեանն, և զյիշատակութիւն ստացողաց սուրբ գրոցս կատարեն անխափան։

Արդ, վայելողք սուրբ գրոցս և կարդացողք և լսողք՝ յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զՏէրտէր քահանայ, և զՅովանէս քահանայ, և զհայր իւրեանց զԱստուածատուր, և զմայրն զՍալթանն, և զքոյրն իւրեանց զԹանկսուղն, և զՄաղթումշէն, և զքըւեր դուստրն Խաթունջանն, և զայլ ամենայն արեանառու մերձաւորսն, ասելով ի խորոց սրտէ, թէ Տէր աստուած, ողորմեա նոցա և գրեա զնոսա ի գիրն կենաց, ամէն։

Այլ և կրկին անգամ աղաչեմ յիշել յաղաւթս ձեր զիս՝ զբազմամեղ գրիչս ըղտէր Յոհանէս եպիսկոպոս, և զեղբայրն իմ ղտէր Ստեփանոս եպիսկոպոս այսմ նահանգիս՝ Կոտայից երկրիս, որ աշխատեցայ բազում և հոգաբարձութեամբ գրեցի ըստ կարեաց մերոց, զի ժամանակս դառն էր. որ այլազգեաց շատ նեղութիւն քաշեցաք, որ յայսմ ամի խ. (40) աղատորգի կալան, թէ տանկացէք. այլ ողորմածն աստուած ձեռնտու և աւգնական եղև նոցա, յորոց մի էր եղբայրն իմ պարոն Հայկազն, և պարոն Աւագն, որ է. (7) ամիս կալուլական կացին, և բազում տուգանք տվին.
51ա և ի հաւատոցս Քրիստոսի ոչ դարձան։ [Ա]րարիչն աստուած վարձս բարեաց պարգևեսցէ նոցա յի[ւ]ր միւսանգամ գալըստեանն, ամ[է]ն։

Այլ և զհոգևոր ծնաւղն մեր՝ ըզքաջ քարտուղար վարպետն ղտէր Մաթէոս, որ զաւրինակն շնորհեաց, տէր աստուած զհոգի նորա ընդ սուրբ քահանայից դասակից արասցէ, ամէն։

Այլ և զսիրասնունդ հոգևոր եղբարքս մեր՝ ղտէր Ստեփանոս եպիսկոպոս պայազատ և ղտէր Մաթէոս եպիսկոպոս, որք աւգտակարք եղեն կամակցութեամբ, և ըծաղկող և զկազմով զարդարող գրոցս ղտէր Աւետիսանոսն, զՍիֆայելն և զՍիմէոն սրբասնեալ կրաւնաւորքն, այլ և զմարմնաւոր ծնաւղսն մեր յիշման արժանի արարէք, աղաչեմ, միով տէր-ողորմեայիւ...

## 137

## ՃԱՇՈՑ

Երևան 4805

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ Վարագ

416բ ...Զոր տեսեալ զայսպիսի գանձս աստուածային և պայծառ լուսով
սրբասէր և բարեմիտ տանուտէրն Մանքումշէն, և ցանկացեալ այսմ աս-
տուածային փարթամ գանձուցս և ջերմեռանդ սիրով Հոգոյն սրբոյ և մեծ
փափագմամբ ստացաւ զսա ի յարդար վաստակոց իւրոց և ի քրտնաջան
աշխատանաց՝ ի վայելումն մանկանց նկեղեցոյ և յետ աստի կենացս
ելանելոյ յիշատակ բարի հոգոյ իւրոյ, և ծնաւղաց իւրոց Յովանիսի և
Զըմրութ-խաթունի, նաև եղբօր իւրում խոջայ Սաղաղի, և կողակցին
Քնհուշ-խաթունի, և զորդիքն իւրեանց՝ զխոջայ Ղարիպշէն, և զկողա-
կիցն իւր զԴովլաթ-Փաշէն, և զաւակաց նորա Գրիգորի և Բեկխսիճանի,
և զմիւս որդին զխոջայ Ատումն, և զմայրն իւր զՄուղալ-խաթուն, և զհան-
գուցեալ զաւակացս նորա զԱղաջան. զԽանումն, զՍալթանզադէն, և
զմիւս եղբայրն զխոջայ Թումէն, և զկողակիցն իւր զԽոնձէն, և զորդիքն
իւր՝ զՍարայէլ և զՄիֆայէլ և Մինաս, այլ [և] զխոջայ Մաղթումշէն, և
417ա զկողակիցն իւր // զՇախբաշէն, և զաւակս իւր զԽուդաբաշխն, և զՆզդան-
բաշխն, և զՄուրատբաշխն, և զԴուլամբաշէն, և զայրն իւր զխոջայ Նզ-
դանբաղշն, և զորդիքն իւր զՋանիարն, զՄիրաֆն, զՊարսամն, այլև ամե-
նայն արեան մերձաւորաց իւրոց և երախտաւորաց՝ կենդանեաց և հան-
գուցելոցն ի Քրիստոս։ Եւ ետ զսա ընծայ և նուէր սրբոյ Պետրոսի և
Պաւղոսի առաքելոյն, որպէսզի վայելեսցեն զսա մանկունք սուրբ եկե-
ղեցոյն և ուրախասցին սովաւ հանապազ ընթերցմամբ և յիշեսցեն ան-
մոռաց յիշմամբ յերկնայգնաց յաղաւթս իւրեանց զյառաջ յիշեցեալ ըս-
տացող գրոցս զխոջայ Մաղթումն, և զծնաւղսն իւր, և զեղբարքն, և
զազգն ամենայն, առհասարակ։ Մանաւանդ յիշել և լի բերանով և ուղիղ
սրտիւ աստուած-ողորմի ասել, եւ առաւել ի ժամ սուրբ և սոսկալի պա-
տարագին զենլոյն Քրիստոսի։

Արդ, գրեցաւ սա ի թվականի Հայոց ՋԼԷ. (1488) ամին, ի սուրբ և ի փառաւորեալ յերկնայնման հաստակառոյց և քրիստոսահիմն, առաքելաշնորհ և արքայաշէն, աստուածաբնակ և ջնորհապարգև եւթնաստեղեան տաճարացս, ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս տէր Յովանէս արհեպիսկոպոսի՝ իմաստուն և հանճարեղ արհի, պանծալի և հոգիընկալ վերադիտողի Վասպուրական երկրի։ Քրիստոս աստուած արեգակնանման պայծառացուցանէ զհոգի և զմարմին սորա և դասեսցէ ի դասս սուրբ հայրապետացն, ամէն։ Ի դառն և վշտաբեր ժամանակիս, յորում կամք ի նեղութիւն և ի տառապանս ի ձեռն այլասեռից ազգաց, զի զամենեսեան չարչարեն և նեղեն, տուժեն և տուգանեն, կեղեն և կեղեքեն. և այլ ազգի-ազգի վշտաւք տանջեն։ Եւ այս ամենայն եկն ի վերայ մեր վասն մեղաց մերոց, և ոչ դառնամք և ոչ ապաշխարեմք զանչափ չարիս մեր, այլ աւրըստաւրէ առաւելումք ի մեղս, և արհամարհեմք և անարգեմք զամենայն խրատ և զբանս սուրբ գրոց, որ է ի շահ և յաւգուտ հոգոց մերոց։

Այլ և առ մեզ է տեսեալ զբանս առաքելոյն, որ ասէ, թէ ի ժամա-
նակս յետինս, որ եմք մեք, յարիցեն մարդք արհամարհողք, ժպիրհք,
յանդուգն, բանսարկուք, անհնազանդք, ուսումնատեացք, արծաթասէրք, անձ-
նասէրք քան աստուածասէրք, ծոյլք, դատարկակեացք, չարաճճիք, որպէս
առ մեզ և ի մէնջ է ուսանել։ Զի փոխանակ բարոյ չարք եղաք. ամբար-
տաւանք, ամբարհաւաճք, վէսք, սնափառք, ստախօսք, ննջասէրք.
417բ բամբասողք, շոգմոգք, հայհոյիչք, մարդահաճոյք, կեղծաւորք, ա//րա-
տաւորք, նախանձոտք, երախտամոռացք, եղբայրատեացք, մանաւանդ
թէ և աստուածատեացք իսկ, և որ այլ ևս սոյնպիսիս, և յա՛ռաջագոյնս
քան զսոյնս՝ հայրն չարեաց և ծնիչն անաւրէնութեան, այսինքն սատա-
նայ սերմանեաց ի մէջ զուտ և սուրբ ցորենոյն, այսինքն ի սպասաւորքս
սրբարար և աստուածընկալ սեղանոյն, և զմարմին և զարիւնն Քրիստոսի
պատարագողացս, զի ոմանք զսահմանեալ աղաւթիցն անփոյթ արարեալ
անխտիր ի տաւնս տէրունականս ի մարմին և յարիւնն Քրիստոսի մեր-
ձենան, և կէսք զուսման և զգիտութեան ոչինչ փոյթ առնէն, այլ լոկ մի-
այն տգիտաբար զքահանայականն զործեն զգործ, և կէսք զհետ գինոյ և
ցքոյ շրջին և երեկանան ի նմա. և ոչ միայն այս՝ և եպիսկոպոսք ի վերայ
եպիսկոպոսաց յառնին, և քահանայք ի վերայ քահանայից, և ուխտա-
ւորք ի վերայ ուխտաւորաց, և կրաւնաւորք ի վերայ կրաւնաւորաց, և
զազատն ի բնէ՝ զեկեղեցի ասեմ, զոր Քրիստոս իւրով սուրբ արեամբն
ազատեաց, մեք ի հարկ և ի ծառայութիւն արկաք անաւրինաց յաղագս
փառաց և անձնահաճոյ կամաց։ Եւ արդ. որո՞ւմ թողութեան արժանաւոր
գտանիցիմք։ Եւ արդ, բաւականասցի ասացեալս, զի ոչ եթէ նախատելով
կամ չարախաւսելով զումեքէ գրեցի զայս, այլ ի խրատ և ի զղջումն
բարեմիտ ընթերցողացն ասեմ և լսողացն։

Եւ արդ, զայս ամենայն տեսեալ և իմացեալ հաւատ[ար]իմ և աս-
տուածասէր տանուտէրն խոջայ Մաղքումն, և յոյս և ապաւէն հոգոյ
իւրոյ արարեալ զսուրբ գիրքս և եղեալ ի խնդիր ջերմեռանդ սրտիւ և մեծ
յուսով։

Եւ արդ, ես՝ անպտուղս ի բարեաց և մեղաւորս յարդարոց, անկա-
տարս ի կատարելոց և մեղանչականս յանմեղաց, անկեալս ի կարգա-
ւորաց և անյիշելիս ի գրչաց, անարհեստս յարուեստաւորաց և տգէտս
ի գիտնականաց, բազմամեղ և սնոտանուն կրաւնաւոր Յովանէս գծողս,
տեսի զսէր և զփափագ սորա զոր ունէր առ հոգևորսն, և իմով տկարու-
թեամբս յանձն առի և ամենակարող զաւրութեամբն Քրիստոսի կատա-
րեցի զսուրբ գիրքս զայս, բազում և մեծ աշխատանօք հասուցի զսա յա-
ւարտումն յաստուածաբնակ և երկոտասան սիւն լուսոյ կառուցեալ անա-
պատս Վարագ, ընդ հովանեաւ սուրբ Նշանիս, որ է ի կենաց փայտէն,
և եւթն աստեղեան տաճարացս և այլ սրբոցս, որ աստ կան հաւաքեալ,
ի հայրապետութեան տեառն Սարգ[ս]ի կաթողիկոս ամենայն Հայոց,
վասն որոյ բարէխաւսութեամբ սուրբ և աստուածընկալ սուրբ Նշանիս
Վարագայ և սրբուհոյ Աստուածածնին Մարիամու, և աղաչանաւք ընտրե-
418ա լոց քոց սրբոց՝ Քրիստոս աստուած՝ զստացող գրոցս զխոջայ Մաղ//քումն
և զծնաւղսն իւր և զեղբայրսըն և զազգն ամենայն, զոր յառաջն յիշեցաք,

խորանակից և դասակից արասցէ սրբոց վկայիցն և զուրախարար ձայնն արձակեսցէ առ նոսա, եթէ Եկայք բարի և հաւատարիմ ծառայք, մտէք յուրախութիւն տեառն ձերոյ, ամէն։

Դարձեալ և մեղապարտ Յովանէս գծագրող սորա, զաղէտս տարակուսանաց իմոց առաջի մատուցեալ աղաչեմ զսրբութիւնդ ձեր, ո՜վ սիրելի և հաւատարիմ ծառայք Քրիստոսի, Հարք և եղբարք, սիրով հոգոյն, աներկմիտ հաւատով, լիակատար սրտիւ, բոլորախաւս լեզուաւ առաջի Քրիստոսի ի ժամ աղօթից ձերոց յիշեսջիք և զիմ անարժանութիւնս, վասըն զի աղտեղեալ է հոգիս մեղաւք և քան զամենայն մեղաւորս աշխարհի անարգագոյն գոլով։ Բայց յոյս ունիմ յողորմած բնութիւնն Քրիստոսի աստուծոյ, զի աղաչանաւք մաւր իւրոյ և ամենայն սրբոց, այլ և ձեր սուրբ աղաւթիւք ողորմութիւն ցուցցէ առ ծառայս իւր, և ծովացեալ մեղաց իմոց մաքրումն արասցէ և երկնից խորանաց մտիցն արժանացուսցէ ըստ իւրում ողորմութեանն։ Նաև զծնաւղքն մեր զԱրղանշահն և զՍուլան-Մէլիք, և զեղբարքն իմ զԽալիֆայ՝ տարաժամ հանգուցեալն, և զՄկրտիչն և զԱւետուսն, որ ննջեցին առ Քրիստոս, և զմիւս եղբայրն իմ զԹումէն, և զքոյր իմ Մուղալն, և զայլ ամենայն ազգատոհմքն մեր՝ զկենդանիսն և զննջեցեալսն, այլ և զերախտաւորն իմ զհոգևոր հայրն զԿարապետ քահանայն, որ բազում երախտիք ունի ի վերայ իմ, և զկողակիցն իւր զԳուլիզարն՝ զհոգևոր մայրն իմ, և զաւակս նորա զդեռաբոյս ծաղկունքն՝ զՎարոց սարկաւագ և զՅովանէս անթառամ ծաղիկն, Քրիստոս աստուած անսասանելի կենաւք պահեսցէ զսոսա մինչ ի խորին ծերութիւնն, ամէն։

Արդ, աղաչեմ զամենեսեան և յերեսս անկեալ պաղատիմ սու[ր]բ եղբարցդ, զի խոշորութեանն և սխալանաց գրիս անմեղադիր լինել, զի կայր մեր այս էր։

Դարձեալ, յերեսս անկեալ աղաչեմ զձեզ յիշել ի բարին Քրիստոս զերիցս երջանիկ և տիեզերալոյս վարդապետն զՄկրտիչ և զեղբայրն նորա զԳրիգոր քաջ քարտուղարն՝ զուսուցիչն իմ, որ փայլեն իբրև զարեգակն ի մէջաւրէի ի յերկիրս Տարբերունի, որ այժմ կոչի Բերկրի։ Քրիստոս աստուած արեգակնանման պայծառ ցուցանէ զհոգի և զմարմին սոցա ի յաւուրն դատաստանի և դասեսցէ ի դասս սուրբ վարդապետաց, հանդերձ ծնաւղաւքն իւրեանց, ամէն։ Եւ զԿարապետ սարկաւագն, որ
418բ աշխատեցաւ ի կոկել թղթիս, այլև զայնոսիկ, որ բոլոր սրտիւ // մեզ աստուած ողորմի ասեն՝ յիշելոցս ի սմա՝ ստացողաց և գրողաց և այլ աշխատաւորացն, ամէն...

138

ԱՒԵՏԱՐԱՆ

Մ. Աթոռ 29, «Էջմիածին» 1950 թ.
նոյեմբեր—դեկտեմբեր, էջ 84

Գրիչ՝ Վարդան
Վայր՝ Հաղբատ

253ա ...Ես գրել զսուրբ աւետաբեր Աւետարանս հաւատարիմ և բարեպաշտն, աստուածասէր և երկիւղած կինն Խոնք-Խաթուն։ Եւ ստացաւ

զսայ ի հալալ վաստակաց իւրոց յիշատակ իւր, և ծնողաց իւրոց՝ հօրն Ջանբաղշին և մօրն Ազիզ-Մէլիքին, և հանգուցեալ եղբօրն Յովանէս քահանային, որ տղայ տիօք փոխեցաւ առ աստուած և սուգ մեծ եթող ծնողաց իւրոց, և այլ եղբարցն՝ Մկրտչին և Մարտիրոս իրիցին, և եղբօրն Թարսեղին և Ղազարին, և հօրեղբօրն՝ Սիմէոնին, և որդոյն Ղուկասին, և ամենայն ազգականաց իւրոց՝ կենդանեաց և հանգուցելոց...

Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվականիս Հայոց ՋԼԷ. (1488), ի գաւառս Լոռոյ, ի յերկնայհանգէտ և ի դերայհռչակ սուրբ ուխտս Հաղբատ, ընդ հովանեաւ սուրբ Կաթողիկ[է]իս, և սուրբ Աստուածածնի, և սուրբ Առաքելոցս, ձեռամբ փծուն և անարհեստ գրչի Վարդան աբեղայի, որ անուամբս միայն և գործովս ոչ, որք հանդիպիք յիշեցէք ի Քրիստոս զիս և զծնողն իմ։

Ես Խոնդ Խաթունս ստացայ զսա յիշատակ ինձ և կենակցին Դովլաթիարին, և ծնողաց իւրոց՝ հօրն Յարազիզին և մօրն Յեսան-խաթունին, և եղբօրն Շամշին, և կնոջ նորին Շահիսլիմին, և զաւակացն Դաւթին և Յակոբին, և հանգուցեալ եղբարց՝ Յակոբին, Շահուելին, և քուերացն՝ Սառային և Գուլփաշին և Յաճապնուշին, և ծնողաց իմոց Ջանբաղշին և Ազիզմէլիքին, և եղբարցն իմոց Մկրտչին, կենակցին Խոսրովիբըղթին, և զաւակացն Մուրատբաղշին և Մարտիրոս քահանային, և կենակցին Խաթունջանին, և զաւակացն նորայբողբոջ Յովանիսին, և ամենայն արեան մերձաւորաց՝ կենդանեաց և հանգուցելոց։

Արդ, աղաչեմ ամենեսեանդ, որք հանդիպիք սմայ կարդալով կամ լսելով ի լուսատու բանիցս կամ օրինակելով, յիշեցէք ի մաքրայփայլ յաղօթս ձեր զԽոնդ-Խաթունն, և զիւրսն ամենայն, և զվերագրեալս ի սմա։ Ի յօժար կամաց և ի խորոց սրտէ միով տէր ողորմիայիւ արժանի առնել և յիշել ի ժամ աղօթից, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

Դարձեալ ես՝ Խոնդ-Խաթունս տվի ի յօժար կամօք զյիշատակս իմ՝ զսուրբ Աւետարանս իմ եղբօրորդոյն՝ Մարտիրոս նորընծայ քահանային, զոր տէր աստուած վայելել տացէ իւրեն և զաւակաց նորին։

Մի ոք իշխեսցէ զսայ հանել, կամ յիմոց, ի յօտարաց, եթէ ոք յանդգնի՝ պատժի։

Արդ, աղաչեմ յիշել ի տէր զբազմամեղ նկարողս և զկազմողս՝ հանդերձ բազմերախտ ծնօղօք իմովք։ Ինքն որ առատն է ի տուրս բարեաց՝ ձեզ յիշողացդ և մեզ յիշեցելոցս ողորմեսցի Քրիստոս աստուած և նմայ փառք յաւիտեանս, ամէն։

Ընդ նմին [յիշեցէք] զՎաղթանկն, որ կողին աշխատեցաւ։

## 139

## ՄԱՇՏՈՑ

Երևան 6273 (Ղ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան հայոց), էջ 350, Կարին

Կազմող՝ Մարգարայ

վայր՝ Ցոնուս

Կազմեցաւ մաշտոցս ձեռամբ Մարգարայ կրօնաւորի, ի թուականիս Հայոց ՋԼԷ. (1488), ի հայրապետութեան (Սսայ) տէր Յոհանէսի և

եպիսկոպոսութեան տէր Դանիէլի, ի բերդս որ կոչի Ֆ[ո]նաւս, ընդ հովանեաւ սուրբ Հրեշտակապետացս, և սուրբ Աստուածածնիս, և կենսաբեր սուրբ Նշանիս, որ է բարեխօս ամենայն աշխարհի...

Ո՞վ եղբարք, անմեղադիր լերուք սխալանացս, քանզի տարիս դառն էր և խառնակ։ Յայսմ տարոջս երեկ խոնդքարի տղէն ի վերայ Մսրայ սուլտանին, և զՍիս առաւ և զիր բերդորայքն զամէն, և շատ ազգի ազգի պատուհաս եբեկ ի վերայ աշխարհիս վասն մեղաց մերոց, և աստուած յայլ պէծարէն ազատէ։

## 140

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Իրանի Փերիա գավառ, Նամակերտ գյուղ, ՄՏՄ, ՍՏԱ*

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Ջրվէժ

69ա ...Աստուած ողորմի Վարդան աղին և դստերն իւր Գուլմէլիքին։ Ես՝ Գրիգոր եպիսկոպոս գրեցի զյիշատակարանս թվ. ՋԼէ. (1488), ի գիւղս Ջրվէժ, ի հայրապետութեանս տէր Սարգսի և ի ղանութեանն Աղուպ փադշահին։

## 141

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Նոր Ջուղա 475, ՍՏԱ, ՄՏՄ*

Գրիչ՝ Ստեփաննոս
վայր՝ Ցղնայ

234բ— ...Եւ գրեցաւ ձեռամբ յոգնամեղ և փցուն գրչի Ստեփաննոսի սուտանուն աբեղայի, որ միայն զձնն ունիմ և ոչ զվարս այսմ անպատում
236բ գանձիս։ Նայ և աւարտ սորա կատարեցաւ ի թվին ՋԼէ. (1488), յաշխարհակալութիւն Յաղոբ-բէկին, որդոյ Հասանբին, ի հայրապետութեան տեառըն Սարգսի, և ի մերոյ վերադիտողութեանս արհի և մեծաշուք եպիսկոպոսի տէր Ազարէի, ի Ցղնայ գեղիս, ի դուռն սուրբ Յովհաննէսիս և սուրբ Սարգսիս, զոր տեր աստուած անշարժ և անխախտ պահեսցէ յայսըմ հետէ մինչև յաւիտեան։

Արդ, ցանկացող սուրբ և աստուածախաւս գանձարանիս զԱբել քահանայն, որ և բազում աշխատութեամբ ետ գրել յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնողացն իւրոց՝ զՄկրտիչ քահանայն, զմայրն զՔուրիկ, և զկողակիցն զնորմելիf, և զԴոնիայ, և զԱճրիկ, և զորդիսն իւր զԽսայի քահանայն, և զորդին իւր զԱբրահամ քահանայն, և զԱճարոն քահանայն, և զՏրդատ, և զընթանուր (՞) զՄկրտիչ սարկաւագն, և զՅոբն, և զԿոստանդիանոս, և զդստերսն զառհասարակ ամէն, և զհաւրեղբաւր որդիսն՝ զՊաւղոս քահանայն, և եղբայրն զԳորգիկ՝ ձեռնաւոր գեղոյս, և զայլ տանուտէրսն՝ զխոդաբաշխն և զՂամբարն, և զայլ առհասարակ ժողովրդեանն՝ մեծի և փոքու, արանց և կանանց, ծերից և տղայոց, որք կան ի

սպասաւորութիւն սուրբ եկեղեցոյս Գէորգայ, ի գեղն որ կոչի Յոքէվանս, ի գաւառն Գողթեան, որ և ամենեքին ագնական եղեն ի գնելն՝ յիշատակ իւրեանց և ննջեցելոցն, զոր աստուած բազում վարձս տայ, ամէն։

Եւ ով ոք որ յանդգնի ի յԱւետարանս այս գողանալով, ծախելով, գրավ գնելով, կամ այլ ինչ վնաս բերէ՝ մասն ու բաժին զՅուդայի և ըսպատիժն Կայէնին առցէ։

Ո՛վ սուրբ ընթերցողք և լոյս /// կամ աւրինակելով սուրբ աստուածախաւս կտակարանս, յիշեսջիք ի Քրիստոս զսուտ գրիչս զՍանփաննոս, և զծնաւղսն իւր զԷվպլ և զՍուլթանբաղթ, և զծնաւղսն իւր, և զամենայն արեան մերձաւորսն։

## 142

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 6358**

**ա**

Գրիչ՝ Եղիա.
վայր՝ Քաշաթաղաց գաւառ
Խոզանաւար գիւղ

217ա ...Եւ Եղիա սուտանուն և փծուն և բազմամեղ և մեղսամակար էրեցս
գրեցաց զսուրբ Աւետարանս փափագանաւք, որ երետ զանցաւորն մամոնայս և էառ զանանց գանձս, որ ոչ ուտիչ ապականէ և ոչ գողկական հատանեն և գողանան, զի ուր գանձք ձեր՝ անդ և սիրտք ձեր եղիցին։

Յիշատակ է սուրբ Աւետարանս Եղիայի՝ գրչի սորա, և իւր ամուս-
217բ նին՝ ի Քրիստոս փոխեցելոյն ի տղա // հասակաւ, և իւր դստերոյն՝ Շահզաթին, այլ ոչ ունէր զաւակ յերկրաւոր, այլ ստացաւ զսուրբ Աւետարանս՝ էառ զթուղթն սորայ ի հալալ արդեանց իւրոց ...ի յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնողաց իւրոց՝ հաւրն իւրոյ Շապանին և մաւրն իւրո Նիկարին, և յամուսնոյն իւրո Կիւլփաշին, և դստերոյն Շահզադին, և յեղբարց իւրոց՝ Աղանանին, Ամիրմահա///ին, որ են ի Քրիստոս փոխեալ, եւ որ կային յերկրի՝ Դատիանին, Սաւալանին, և փոքրոյն՝ Սալթանին, որ է յանուն պապին, և մամին իւրոյ Սիրամարգին, և քուերաց իւրոց, և ամենայն յարեան յազգականաց՝ կենդանեաց և ննջեցելոց, և ամենայն զարմից, ամէն։

Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվականութեանս հայկազան տումարի ՋԼԷ. (1488), ի հայրապետութեան տեառն Սարգսի, ի յաթոռակալութեան Սիմեոնց Որդանան վարդապետի, եւ յաշխարհականութեանն* Եաղուպի՝ յարիւնարբու բռնաւորի, որ տիրեաց բազում յաշխարհի և գա-
218ա ւառի բռնութեամբ և իւրովի կամաւք // մինչև Խորասան տիրեալ։

Եւ գրեցաւ ի գաւառիս Քաշթաղուց, ի գէղս որ կոչի Խոզանաւար, ընդ հովանեաւ սուրբ Ստեփանոսի Նախավկայիս և այլ բազմահաւաք սրբոց, որ աստ կան հաւաքեալ։

---

* Իմա՝ «յաշխարհակալութեանն»։

Արդ, երես յանկեալ աղաչեմ զամենեսեան զսուրբ հանդիպողդ, որք պատահիք տեսութեամբ, կարդալով կամ աւրինակելով, որ և հանապազ ի ծոց յեկեղեցոյ պահէք և կարդայք ջերմեռանդ սրտիւք և քաղցրագութ կամաւք, յանմոռաց մտաւք և աստուածահաշտ աղաւթիւք զբազմամեղ գրիչս զՆղիա սուտանուն էրէցս և անարժանս, որ գրեաց զսուրբ Աւետարանս վասն հոգոյն յիշեսջիք ի Քրիստոս, և յինքն ողորմածն և առատ[ն] ի շնորհս պարգևաց, առհասարակ, ողորմեսցի ձեզ յիշողացդ և մեզ յիշեցելոցս, յամէն։

Արդ, ով ոք որ ցանկանայ յիշատակարանս կարելոյ՝ մասն Յուդայի և Կայենի առնու...

Բ

Ստացող՝ Անանիայ

219բ ...Եւ Անանիայ բազմամեղ և մեղսամակաւ էրեցս գնեցի զսուրբ Աւետարանս ի հալալ յարդեանց իմոց Եղիայ իրիցոյն, յիշատակ ինձ, և ծնողաց իմոց՝ հաւրն իմոյ Վարդանէս քահանայի և մաւրն իմոյ Շահսաւլդանին, և ամուսնոյն իմոյ Թանկսուղին, և որդոյ իմոյ Ազարիին, և յեղբարձն իմոց Յամիրղարին և Թումային և յամենայն յեղբարձն իմոց. և պապին իմոյ Մրուանին, և յամենայն ազգաց իմոց։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սուրբ Աւետարանիս կարդալով կամ յաւրինակելով յիշեսջիք զմեզ, և աստուած զձեզ յիշէ իւր յարքայութեանն, ամէն, եղիցի, եղիցի։

143

ԱԻԵՏԱՐԱՆ

Նոր Ջուղա 29, ՍՏԱ, ՄՏՄ

Գրիչ՝ Մանուել
վայր՝ Կուֆի

ա

256ա ...Գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ յոգնամեղ և տկար գրչի Մանուէլի, ի գեաւղս Կուֆի, ընդ հովանեաւ սուրբ Գրիգորի և սուրբ Նշանիս, ի թվականիս Հայոց Ջ. և Լէ. (1488), ի հայրապետութեան տէր Սարգիս կաթողիկոսի և ի ղանութեանն Յեաղուպ-բէկին:

...Յիշեսջիք ի սուրբ յաղաւթս ձեր զիս՝ զանպիտան գծողս զՄանուէլս, և զծնաւղս իմ՝ զհայրն իմ զՊետրոս քահանայ և զմայրն իմ զԱլամշատ ...և սղալանաց և խոշորութեան գրիս անմեղադիր լերուք, զի կար մեր այս էր, և աչաց լոյսս պակասեալ էր, և հոգս ու պատրանք աշխարհիս բազմացեալ էր...

Բ

257ա Ջստացող սուրբ Աւետարանիս զՍանձակ, որ ...ըստացաւ զսա ի հալալ ընչից իւրոց յիշատակ իւրն, և ծնաւղաց իւրոց՝ հօրն իւր Շանրիարին և մաւրն իւր Նազակին, և եղբարցն իւրոց Աբրահամին և Յովանիսին,

և քեռայցն իւր Ազզին և Մարիամ կոյսակրաւն ապաշխարողին, Մէճրի-շատին, Վամաթին, Սիրիթուխտին, և ամենայն մերձաւորաց իւրոց. ամէն...։

144

ՇԱՐԱԿՆՈՑ

Երևան 1624

Գրիչ՝ Բարսեղ
վայր՝ Ասպիսնակ գիւղ

412բ ...Արդ, գրեցաւ սա ի թըւականիս Հայոց ՌՀԷ. (1488), ձեռամբ անարհեստ և փծուն գրչի Բարսեղ ծոյլ և անարժան քահանայի, ի յերկիրըս Քաշբերունւոյ, ի դեաւղըս Ասպիսնակ, ընդ հովանեաւ սուրբ Ստեփաննոս Նախավկային և սուրբ Երից մանկանցն, ի հայրապետութեան տէր Սարգիս կաթողիկոսի և յառաջնորդութեանն սուրբ ուխտիս Մեծոփայ Կարապետ արհեպիսկոպոսի, ի խնդրոյ պատուական և սրբասէր կրաւնաւորի Կարապետի գրեցաք ըզՇարակնոցս։

413ա Արդ, աղաչեմ զամ//ենեսեան, որք աւգտիք ի սմանէ յիշեցէք ի Քրիստոս զստացող տառիս պատուական կրաւ[նաւ]որն զԿարապետն, որ ստացաւ ըսա ի խալալ վաստակոց իւրոց յիշատակ իւրն, և ծնաւղացն Բարիոֆին, և մօրն իմոյ Թանկ-խաթունին, և մեծ պապուն իմ, որ գնացեալ է ի Քրիստոս՝ Ամիրմուլքին, և կողակցին իւրոյ, և եղբօրն Տիրատուն, և կողակցին Անին, և եղբօրն իւրեանց Կարապետին, և հօրեղբօրն Սուֆիասին, և կողակց[ին] իւրոյ Վարդ-խաթունին, և որդոյ իւրոյ Յովանիսին, և կենակցին իւրոյ Ասան-խաթունին, և որդւոցն իւրոյ՝ Բարիոֆին, և կողակցին Թուրվանդին, և Սֆանդարին, և կողակցին Մուղալ-խաթունին, և Սուֆիասին, որ մականուն Չաքալ կոչի, ի վայելումն Վարդան սրբասէր կրաւնաւորի, և քեռորդն Սալչուկին, և Աստուածատուր դպրին և քեռ Գուլումին:

Արդ, աղաչեմ զամենեսեան յիշեցէք ի Քրիստոս զԿարապետ կրօնաւորն, և զեղբայրն Մկրտիչն, և զկենակիցն զՄարգարիտն, և զդուստր զխախաթուն:

...Արդ, աղաչեմ զձեզ յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր զսուտանուն գրիչս՝ զԲարսեղ անարժան քահանայս, և զծնաւղքն իմ զՄկրտիչն և զմայրն իմ զխաթուն-Մէլին, և զկողակիցն իմ զՄըրվարն, և զդեռաբոյս զաւակն իմ զՎրդանեսն, և զամենայն արեան մերձաւորքն իմ... Բայց խոշորութեան գրիս անմեղադիր լերուք, զի կար իմ այս է։

Ո՜վ եղբայ[ր]ք, յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր զհոգևոր հայրն մեր
413բ զտէր Բարսեղն՝ զսրբասէր կրօնաւորն, որ բազում աշխ//ատանք և երախտիք ունէ ի վերայ մեզ և աստուած փոխարէն հատուցէ յիւր միւսանգամ գալուստն, զիւր արքայութիւնն պարգևէ իւրն և ծնողացն, ամէն...

## 145

## ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ ԵՒ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՏՈՒՄԱՐԻ

*Երևան 4454*

*Գրիչ*՝ Ստեփանոս Ասպիսընկցի
*վայր*՝ Արծկէ

359բ ...*Արդ, գրեցաւ աստուածային այս մատեան, որ կոչի Հարցմունք, ձեռամբ անարհեստ և փծուն գրչի* Ստեփանոս *աբեղայի, ի վայելումն անձին իմոյ և յիշատակ ծնօղաց իմոց՝ հօր իմոյ* Մարտիրոսի *և մօրն* Եղիսաբեթի, *և եղբօր իմոյ* Յոհանէսի, *և զաւակին իւրոյ* Խուդաբաղշի, *և ամենայն արեան մերձաւորաց իմոց՝ կենդանեաց և հանգուցելոց և փոխեցելոցն ի Քրիստոս, ամէն։*

*Արդ, հայցեմք ի ճաշակողացդ հոգևոր սեղանոյս և աղաչանս բազմապիսիս մանկանցդ եկեղեցւոյ, որք լուսաւորիք ի սմանէ ուսմամբ կամ օրինակելով, յիշեսջիք ի բարերարն աստուած զվերոյասացեալքս ի սմայ, և ներումն թողութեան խնդրեցէք յաստուծոյ կրկին ծնօղաց մերոց։*

360ա *Այլ և զհոգևոր եղբարս մեր* զՅոհանէս *հերպետ և զմայրն իւր* զՓաշամէլիՓն, *որ բազում սիրով և գթով ընկալան զմեզ՝ բարերարն Քրիստոս աստուած ողորմի իւրեանց հոգոյն և իւրեանց ննջեցելոցն, ամէն և եղիցի։*

*Արդ, գրաւ եղև այսմ մատենիս ի շրջագայութեան տոմարի հայկազան սեռից Ջ. հարիւրից և Լէ-նից (1488), ի գաւառիս* Բզնունեաց, *որ է* Արծկէ՝ *հուպ քաղաքի, եւ ի սուրբ ուխտս* Երեշխւոր, *ընդ հովանեաւ սուրբ* Աստուածածնիս, *և սուրբ* Դանիէլ *տաճարիս, և այլ սուրբ նշանացս, որ աստ կան հաւաքեալ, և սուրբ խարազանաղգեաց կրօնաւորացս, որ յոյժ երախտաւոր գտան մեզ, զոր հատուսցէ նոցա փոխատուն աստուած։ Արդ, աւարտեցաւ սայ յոյժ աշխատանօք և կարի նեղութեամբ ի փառս Քրիստոսի աւրհնելոյ յաւիտեանս, ամէն։*

*Դարձեալ, յիշեսջիք* զՄեծուփայ *զսուրբ ուխտի մանկունսն։ Նախ ու առաջին՝ արհեպիսկոպոսն ղտէր* Կարապետն՝ *տեսուչ գաւառիս* Արճիշոյ. զՎարդան *հերպետն*, զՄկրտիչն, զԲարսեղն, զՅոհանէսն *և* զՅովանէս *գրոց աշակերտն, որ դաստէ մ՝ <մի> թուխտ շնորհեց, որ գրեցաւ* Տումարի *մեկնիչս. աստուած ողորմի իւր բարի հոգոյն, ամէն։ Այլ և* զԿարապետն՝ *փոքրն՝* Գրիգոր *երիցու որդին, որ զօրինակն՝* զՀարցմունքն *նայ ետուր ու գրեցաւ. աստուած յարութիւն կենացն պարգևէ իւր հոգւոյն և իւր ծնօղացն, ամէն. այլ և* զՇէկ Կարապետն, զխըժչցի Կարապետն՝ *զմահդասինն,* զՅակոբն *և զմիւս* Յակոբն, զՆերսէս *հերպետն,* զՀայրապետն, զԱւետիսն, *զէրէց* Մխիթարն՝ *զբարի հեզահոգին։ Այլ և զփոքր աբեղայքն* զՎարդանն, զԽաչատուրն, զՍտեփանոսն, զԳրիգորն, զՅովանէսն՝ զԲադիշեցին, *եւ* զՏայոնց Ստեփանոսն, *եւ* զՄկրտիչն *մեր՝* Ասպիսընկցին, *որ է ինձ ազգական, եւ* զՍտեփանոսս *գրչակս յիշեսջիք ի մաքրափայլ և յերկնաբացիկ յաղօթս ձեր, և որ առատն է ի տուրս բարեաց՝ ձեզ հայցողացդ և մեզ՝ խնդրողացս տացէ և շնորհեսցէ Քրիստոս աստուածն զիւր ամենառատ ողորմութիւնն, ամէն և եղիցի, եղիցի։*

## 146

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Մ. Աթոռ 129, «Էջմիածին», 1960 թ. Թ, էջ 63*

ա

Գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Տփխիս

Փառք...: Ըստ յաճախման աստուածային բանին և շնորհացն սրբոյ,
224ա որով լուսաւորէ զհոգիս աստուածասիրաց անձանց // և տպաւորէ ի նոսա զլոյս աստուածագիտութեան և մերձաւորս առնէ աստուածային երանութեանն։ Որ և զհուր սիրոյ իւրոյ արկեալ ի սիրտ աստուածասէր սրբասնեալ հեզահոգի Ղազար քահանային, որ մեծաւ ջանիւ և փափագանաւք ետ գրել զսուրբ Աւետարանս ի վայելումն անձին իւրոյ, և ծնաւղաց իւրոց՝ հաւրն իւրոյ Սէֆանդարին և մաւրն իւրոյ Բէգի-խաթունին, և կենակցին իւրոյ Գուլումին, և եղբարց իւրոց Ջանդարին, Մարտիրոսին, Թադէոսին, Ստեփանոսին, Ջաֆարին, Սպանդիարին, Խաչատուրին, և որդւոյ իւրոյ Ղուկասին, և դստերաց իւրոց Թանգիկին, Նարինին, Ազիզին, և քուերաց իւրոց Դեղա-խաթունին և Մարթա-խաթունին, և այլ ամենայն արեան մերձաւորացն։

Արդ, գրեցաւ զսուրբ Աւետարանս ձեռամբ մեղապարտ և անարժան գրչի Մկրտիչ սուտանուն քահանայի, ի թվիս ՋԼԷ. (1488), ի մայրաքաղաքս Տփխիս, ընդ հովանեաւ կամակատար սուրբ Աստուածածնիս և Գէորգայ զաւրավարիս, ի դառն և չփոթ ժամանակիս։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք կարդայք և կամ աւրինակէք յիշեսջիք նախ ասացեալ զստացող սորա զտէր Ղազարն // և զիւրսն ամենայն, ընդ նմին և զհոգևոր եղբայրն և զքաջ վարդապետն զԱբրահամն՝
224բ զնկարող և զկազմող սորա, այլ և զհոգևոր եղբայրքն՝ զտէր Վարդանն՝ և զտէր Յովհաննէսն, և զտէր Եսայի աւագերէցն, և զԲարսեղն:

Եւ որք յիշէք բարի յիշմամբ և աներկբայ հաւատով՝ յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

բ

Նկարիչ՝ Աբրահամ

2բ Զստացող սուրբ Աւետարանիս զՂազար քահանայ, զԱբրահամ նկարիչ յիշեա, թվին ՋԼԷ. (1489)։

## 147

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Ե. Լալայեան, Ցուցակ Վասպ. 207, սյուն 507—510, Վանք ս. Սահակ եկ., 68*

Գրիչ՝ Սարգիս
վայր՝ Բերկրի, Առեղս գիւղ

...Մեք՝ Յոհաննէս քահանայս և Յովաննէսս, Աւետս և Մուսիկս, Վարդանս և Սանակս, Աբրահամս և Դաւիթս և Յակոբս, Մարգարիտս և

Թագուհիս, և որդեակս իմ Ստեփաննոս, և եղբայրքն իմ Թաւրոս և Սարգիս, ցանկացողք եղեալ մեր այսմ կենսակիր և աստուածական սեղանոյս, որ և գովի ի շինուած արարչին՝ ի վերա հիմանն Յիսուսի՝ կարկէհան ակամբ ընդ արծաթոյ և ե[ւ]լիտական ոսկոյ, զի սա է ժառանգ լուսաճաճանչ և հրաշալի ուրախութեան երկնաւորաց և երկրաւորաց...

Արդ, ես Յոհանէս երէցս փափագող եղեալ այսմ աստուածային գանձուս և անպայման ուրախութեանս, և գրել ետու զսա ի դառն և ի վշտաբեր ժամանակիս, ի նեղ և ի դարանակալլիս աւո[ւ]ր, և ի թուին գերութեան հայկազեան /// տոմարիս մեր[ու]մս ազատութեան և Թ. (9) հարիւրերորդի երեսներորդի եւթներորդի (1488) հայկազեան սեռիցս, ի հայրապետութեան տղա Ստեփաննոսի, ի տիեզերակալութեան Ղուբելա, և ի կողմկալութեան Արղու, և ի բռնակալութեան ազգին Նետողայ։

Արդ, գրեցաւ ի դուռն Նախավկայի և յառաջին սարկաւագի և այլ սրբոցս, որ կան շուրջ զմեւք, ի գեղս Առեղս, յերկրի Տարբերանւոյ, ու կոչի Բերկրի: Զթխացեալ և մեղաւք լցեալ զՍարգիս՝ գրողս սուրբ Աւետարանիս, աղաչեմ զձեզ, ո՜վ լուսերամից դասք և որդիք վերին Սիոնի. անմոռաց հայցեցէք ի հեզէն և ի մարդասիրէն, ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ զթողութիւն իմոց յանցանաց, և ի ձեռն մաքրափայլ աղաւթից ձերոց ոչ կրեցից զանտի ամաւթն և զարտասուսն անվախճան, զի յոյժ քան զամենայն երկրածինք՝ առաւել գտա ստունկանող պատուիրանաց արարչին իմոյ Յիսուսի։ Աղաչեմ զձեզ, ո՜վ եղբարք, գթութեամբն աստուծոյ և տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի՝ սխալանաց և խոշորութեան անմեղադիր լինիք։ Կրկին յիշման բարոյ արժանի արարէք զՅովհաննէս սրբագրնեալ քահանա, և զծնողսն իւր, և զաւակսն իւր, զերիցակինն իւր, և զհաւրեղբարքն իւրեանց՝ ամուսնաւքն և զաւակաւքն պահեսցէ տէր աստուած ի խաղաղութեան։ Եւ թէ ոք զյիշատակարանս կտրէ կամ անուն քերէ՝ ջնջեսցի և ինքն ի դպրութենէ կենացն յաւիտենից, ամէն։

## 148

## ԱՒԵՏԱՐԱՆ

Նյու-Յորք*

Գրիչ՝ Ղազար
վայր՝ Եկեղեաց գաւառ
Աւգսենդ վանք

559 Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուաբերութեանս Հայոց ՋԼէ. (1488), ձեռամբ մեղաւոր և անպիտան ծառայիս աստուծոյ Ղազար երիցու, ի գաւառս Եկեղեաց, ի վանքս սուրբ Աւգսէնդ... Զստացող սուրբ Աւետարանիս զՆզիան, և զծնաւղսն, և զորդին իւր զՄուրատն, և զեղբայրն զՄեծպարոն: Աստուած ողորմի Մար-խաթունին հոգւոյն արդար ստթմանէ իւր ետ յԱւետարանին գին՝ Նզիան զյիշատակ, ի Թորոս երեց ապսպրեց**։

* Յիշատակարանի ընդօրինակությունը շնորհակալությամբ ստացել ենք բանասեր Հ. Քյուրտյանից։

** Վերջին տողն աղավաղված է։

### 149

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 5339*

184ա *Յիշատակ է սուրբ* Աւետարանս *տէր* Հերապետին, *և որդուն նորա տէր* Մարդայոսին, *և կողակցոն իւր* <*նորա*> Ծավինարին. *որ ստացաւ զայս սուրբ Աւետարանս ի հալալ ընչից իմոց. և ետու գին սուրբ Աւետարանիս ԾԺ. (110) ղուռուշ և մէկ ձի, յառի զսա յիշատակ ինձ և ծնողաց իմոց ի թվիս Հայոց Ջ. և Լէ. (1488)-ին։ Աղաչեմ զձեզ և որք հանդիպիք որոնելով և կամ կարդալով միով հայր մեղաւ անարժանս՝ տէր* Հերապետս *յիշեցէք։ Գրեցաւ ձեռամբ* Աբրահամ *վարդապետին և առաջնորդ* Աւեխաց՝ Ստեփանոս *վարդապետին։*

### 150

### ՇԱՐԱԿՆՈՑ

*Յ. Քոսեան, Ցուցակ Խ. Դադեանի, Բ. էջ 50*

*Գրիչ՝* Կարապետ
*վայր՝* Բերկրի

*Գրուած է ՋԼէ. (1488) թուին,* Տարբերունեաց *երկրում,* Բերկրի *քաղաքում, ձեռամբ* Կարապետ *գրչի։* Գրիգոր *վարժապետ և քաջ բարտուղար* Խուլի *օրինակից։*

### 151

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Թ. Գուշակեան, Ցուցակ Սեբաստիոյ ս. Նշանի, 33, էջ 34*

*Կազմող՝* Հերապետ
*վայր՝* Մուշ

ա

*Դարձեալ, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զխաւճայ* Մելքոն *և զխաւճայ* Մուրադն, *որ հրով այրեցին, որպէս զառաջին մարտիրոսքն, և զխաւճայ* Յոհաննէսն *և զ*Ովսէփն՝ *զ*Մէլքոնէ *որդիքն, և զ*Խանումն *և զդուստր իւր զ*Նանախաթունն, *և լի բերանով աստուած-ողորմի ասացէք նորա, ամէն...*

*Դարձեալ, աղաչեմ զձեզ զվերջին կազմող սորայ յիշեցէք ի Քրիստոս՝ զսուտանուն* Հերապետն, *ամէն...*

բ

*Դարձեալ, աղաչեմ զհանդիպողքդ սուրբ Աւետարանիս յիշատակել յաղաւթս ձեր զխաւճայ* Յոհաննէսն, *և ղծաղկեալ զաւակն իւր զ*Մելքոն, *զորդի խոճա* Յովսէփին, *և աստուած ողորմի ասել սոցա, և մեղաց թողութիւն և արքայութիւն խնդրել...*

*Գրեցաւ գիրս ի թվին Հայոց ՋԼէ. (1488), ի յարաց ամսոյ ԻԹ. (29), յաւուր շաբաթու։*

Գ

Ջվերջին սատացող զարդարեալ սուրբ Աւետարանիս գխոճա Յովանէսն, և զծնաւղ իւր զՄուրադն և զՄայրամն, և զկողակիցն իւր զՍուլթան, և զդեռաբոյս տղայքն զԽաչուկն, զՊապուկն, և զՍաւարն, և զՀոռմատն և սրայ հաս աղջիկն զԽանզատան, զկենդանիս և զհանգուցեալս ի Քրիստոս աստուած։

Արդ, աղաչեմ զձեզ, ո՛վ եղբայրք, որ հանդիպիք այս սուրբ Աւետարանիս կարդալով կամ աւրինակելով, յիշեսջիք ի սուրբ աղաւթս ձեր զխոճայ Յովաննէսն, որ գնեց զսայ ի հալալ և ի արդար ընչից իւրոց։ Դարձեալ աղաչեմ զձեզ, ո՛վ քահանայք, յիշեսջիք ի սուրբ աղաւթս ձեր զխոճայ Յովանէսն, որ ետ զարդարել սուրբ Աւետարանիս տուփն արծաթիւ, և աստուած զձեզ յիշէ յիւր սուրբ արքայութեանն, ամէն։

## 152

## ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 6273 (Գ. Փիրղալիմեան, Նշխարք պատմութեան հայոց), էջ 351, Կարնո գպրոցի թանգարան

Գրիչ՝ Սարգիս
վայր՝ Արզրումի Երկիր,
Խանկայ վանք

Փառք... որ ետ կարողութիւն տկար անձին իմոյ Սարգսի հասանել յաւարտ սորին յամի ՋԼԷ. (1488) թուականիս մերում։ Որ և գրեցաւ սա ի տիրախնամ յերկիրս Արզրումիս, ի վանքս որ կոչի Խանկայ վանք, ընդ հովանեաւ սուրբ Յարութեանս, և սուրբ Աստուածածնիս, և սուրբ Սարգիս զօրավարիս, և սուրբ Թագաւորիս, և այլ սրբոց նշանացս, որ աստ հաւաքեալ կան։ Ի յառաջնորդութիւն վանացս տէր Ներսէս եպիսկոպոսին, ի հարպետութիւն Մկրտիչ աբեղին, որ բազում աշխատանօք չանայր ի գործս վանացս, և այլ միաբան եղբարցս՝ տէր Սարգիս, և տէր Թորոսին, և տէր Սիմէոնիս, և տէր Կարապետիս, և Լեոն սարկաւագիս, որ զթուղթս նշանէր և կոկէր և խազէր...

## 153

## ՇԱՐԱԿՆՈՑ

Երուսաղէմ 1624

Գրիչ՝ Առաքել
վայր՝ Աւագ վանք

408ա ...Արդ, գրեցաւ Շարակնոցս ի լաւ և յընտիր աւրինակէ, թվ. ՋԼԷ. (1488), ի սուրբ անապատս որ կոչի Աւագ վանք, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի, և սուրբ Կարապետին, և Առաքելոցս, առ ոտս Յովաննէս րաբունապետին, յառաջնորդութիւն տէր Յոհաննէս եպիսկոպոսի, ձեռամբ անարհեստ գրչի Առաքել աբեղայի...

## 154

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 277*

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ Տիւրիկ

303ր ...*Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ* Յովանէս *քահանայի, ի քաղաքիս* Տիւրիկոյ, *ի դուռս սուրբ Նշանիս, ի թվականին ՋԼԷ. (1488), ի դեկտեմբեր ամսոյ ի Ա. (1), ի խնդրոյ հոգեւոր և աստուածասէր* Սիմէոնի, *որ ստացաւ զսա ի հալալ և ի յարդար վաստակոց իւրոց և արար յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց՝ հաւրն* Յոհաննիսին *և մաւրն* Քարամին, *և եղբաւրն* Հանաթին, *և կողակցին* Տուախին, *և ամենայն արեան մերձաւորացն ի եդ ի գեւղն որ կոչի* Սիմառայ, *ի դուռն սուրբ Քրիստափորին, յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց։ Ջունի ոք իշխանութիւն և հրաման, ոչ իւրքն և ոչ աւտարք, որ հանէ զսա ի դրանէ սուրբ տաճարին, այլ եթէ փորձանք հանդիպի՝ ահ կամ փախ, նա ի յամրոց տանէ և թաքուցանէ՝ նա զաւրհնութիւնն յաստուծոյ առցէ։ Եթէ ոք յանդգնի զմասն Յուդայի և զպատիժն Կայենի առցէ և զարեան իմոյ վրէժ տացէ։*

394ա *Արդ, գրեցաւ սա ի հայրապետութեան և վերադիտողութեան նրկրիս* Կարապետ *վարդապետին, որ բազում աշխատութեամբ և ջանիւք առնել երետ զսա։ Աստուած հատուցանէ իւր զանճառ բարիսն և զանսպառ ուրախութիւնն, ամէն։*

*Այլ և յիշեսջիք զվերոասացեալս* զՏուախն, *և զծնաւղսն իւր* զ Յովանէս *երէցն և* զԹուրան, *և զաւակն իւրեա[ն]ց՝* զՅոհաննէսն՝ *զփոխեցեալն առ Քրիստոս, ամէն**։*

## 155

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Նոր Ջուղա 548, ՍՏԱ, ՄՏՄ*

Գրիչ՝ Սարգիս
վայր՝ Տիւրիկ, Կիւրղի վանք

295ա *Յամին ի տարբերութիւն Հաւոց թվիս. ՋԼԷ. (1488) ես՝ յոգնամեղ և տառապեալ գրիչս* Սարգիս *եպիսկոպոս, յանգ հանեալ աւարտեցի զսուրբ Աւետարանս ի գաւառիս* Տիւրիկոյ, *ի վանս* Կիւրղի, *ի դուռն սուրբ Աստուածածնին, և սուրբ Լուսաւորչին, և աստուածընկալ սուրբ Նշանին, և սուրբ Յակոբա, և սուրբ Յոհաննէս աւետարանչին։*

*Արդ, աղաչեմ զձեզ, ո՛վ եղբայրք, յորժամ ընթեռնուք յիշեսջիք զանպիտանս և զանարժանս... Այլ և յիշեսջիք զծընաւղսն իմ* զՂազարն *և* զՂատրիմէլիքն, *և զեղբարսն իմ* զՅոհանէս *երէցն և* զԱստուածատուր *երէցն, և զայլ արեան մերձաւորսն իմ, ամէն։ Այլ և յիշեսջիք զբազմե-*

---

* *Վերջին պարբերությունը գրված է այլ ձեռագրով։*

րախտ հայրն մեր զԿարապետ վարդապետն և առաջնորդ սուրբ ուխտիս և աստուած զձեզ յիշէ ի բարին։

156

ՄԱՇՏՈՑ

Զմմառ 93, Մ. Քեչիշեան, Ցուցակ, էջ 194

Նուաստ Յոհանէս կաթողիկոս նստայ ի յաթոռ կաթողիկոսութեան ի թվականիս Հայոց ՋԼԷ. (1488)։

157

ԱՒԵՏԱՐԱՆ

Իրանի Փերիա գաւառ, Միլակերտ գյուղ, ՄՏՄ

ա

...Արդ, ի թուաբերութեանս Հայոց ՋԼԷ. (1488) գրեցաւ սուրբ Աւետարանս ի դառն և ի նեղ ժամանակիս, որ սպառեալ բարէգործութիւն ազգէս քրիստոնէից և կանք ի նեղութեան և ի հալածանս ի ձեռս այլազգեաց վասն բազում մեղաց մերոց։ Արդ, կարի հիանալի և զարմանալի է ի ձմեռան ժամանակն վարդ տեսանել, վասնզի պաղ և ցուրտ և յամենայն բուսոյ խափանումն, նոյնպէս և այժմ խափանեալ յամենայն առաքինութիւնք ի մարդկանէ... Քրիստոսադաւ կինն Թանուխն և ամուսինն իւր Ստեփանոս... ստացաւ զսա... ողորմի ասացէք իւր, և իւր ծնաւղացն՝ հօրն Ղազանչի և մաւրն Նանին, և Խօյանդին, Ստեփանոսին, և զաւակացըն նորա՝ գնացելոցն առ աստուած՝ Ամիր-Մէլիքին, Գորգի-Մէլիքին, Շան-Մէլիքին և Դիլանչուն... և զանարժան գրողի, և զծնողսն, և զեղբարսն...

բ

Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս ղաղիխորով մայրն Թանուխն, և զմնացեալ զաւակն իւր զԴուլչահանն, և զսիրական փեսայն իւր զՎէգէնն, և զծաղկեալ զաւակս իւրեանց զՂմէլկէն, և զքոյրն Գուլչինարն, և զՍանակն:

Եւ արդ, միաբան սրտիւ աստուած-ողորմի ասացէք Ստեփանոսին, և ծնողացն նորա Կիրակոսին և Դովլաթին, և քուերն Մարթային, և եղբօրն Շանպարոնին...

158

ՍԱՂՄՈՍԱՐԱՆ

Տիրայր, Ցուցակ Օքսֆորդի Բոդլեան գրատան 34,
Երևան Մատենադարան «Անհատական արխիվներ» թղթ. 122, ձեռ. 120, էջ 2045

Գրիչ՝ Աստուածատուր

ա

229բ—30ա ...Տէր աստուած ողորմեայ ստացողի գրոցս պարոն Յոհանիսին, և ծնաւղաց նորա և զաւակացն, եւ ինձ գծողի սորա Աստուածատուր անարժանի, և ծնաւղացն իմոց, և եղբարցն, և համաւրէն ամենայն ննջեցելոցն, ի թվ. ՋԼԷ. (1488) գրեցի։

Բ

154ա Ողորմած տէր ամենի,
Միշտ ողորմած յամենայնի,
Որ ես առատ ի տուրս բարի,
Քաղցր և բարի մարդկան ազգի,
Տուր յամենայն ժամանակի,
Վարձրս բարեաց ըստացողի,
Մեծափառ այս կտակի.
Դեռաքուսիկ սարկաւագի՝
Սուրբ և ամբիծ ի գործ բանի,
Ժիր և ընտիր և միշտ բարի,
Ի գործ բանի տեառն Յիսուսի։
Նաև մանկանն դեռաքուսի՝
Պարոնիկ պատանեկի,
Որ վայելին զտառս գծի.
Յերկար ամաւք և անթերի,
Նաև ծնաւղաց իւր և զարմի
Եւ ամենայն ազգատոհմի,
Եւ գծողի, և կարդացողի
Տէր աստուած ողորմեսցի,
Ամէն, ամէն և եղիցի*։

## 159

### ՃԱՇՈՑ

Երևան 4687

Կազմող՝ Թումա

292ա Արդ, ի Ջ. և Լէ. (1488) թուին, ի հայրապետութիւն տեառն Ստեփաննոսի պատուական հայրապետին, ես՝ սուտանուն և եղկելի ոգի Թումա քահանայ, որ զանուն ունիմ և գործք ոչ, ծառայ ծառայիցդ աստուծոյ, նոր կազմեցի զսուրբ գիրքս բազում աշխատութեամբ, քանզի հնացեալ էր կապն։ Եւ դուք մի բերան աստուած-ողորմի մեզ ասէք, և աստուած ձեզ ողորմեսցի ի յիւր միւսանգամ գալըստեան Քրիստոսի, ամէն։

## 160

### ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 7740

Արծաթապատող՝ Յովաննէս

1ա Արդ, ես Յովաննէս ծառայս աստուծոյ և Աննայ կենակիցս իմ տեսաք զայս սուրբ և պայծառ Աւետարանս, որ էր տվեալ անեբն իմ Ամիրշայ աղան սրբոյն Սարգսի աթոռ եկեղեցոյն, և կոճակն պակաս էր. [ ս ]այ

* Ձեռագրում կան նաև չափածո այլ հիշատակագրություններ՝ 42բ, 81բ, 121բ, 193բ էջերում։

*մենք տվաք շինել արծաթի զկոճակնիս ԺԳ. (13) մթխալ, և զարդարեցաք զսայ վասն յիշատակի հոգոց մերոց, ի թվին Հայոց ինն հարիւր և երեսուն և եաւթն տումարիս (1488)։ Եւ դուք վասն սիրոյն Քրիստոսի յիշեցէք զմեզ և ասացէք թէ աստուած ողորմի* Ամիրշայ *աղային, և մեզ* Յովաննէսիս, *և կողակցին մերոյ* Անճայ-խաթունին, *և աստուած զձեզ աւրհնէ, ամէն։*

*Դարձեալ աղաչեմ, ո՛վ սուրբ քահանայք, զմեզ ի աղաւթից մի մոռանայք, զի յոյժ սիրով շինել տվի և զարդարեցի, զի զփոխարէնն ինքն Քրիստոս հատուսցէ մեզ, և իւր սուրբ տեսոյն արժանի արասցէ, ամէն։*

## 161

### *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Երևան 4948*

*Գրիչ՝* Ներսէս

239ա *...Սուտանունս և այպի[կար] գրիչս և սուտանուն* Ներսէս *աբեղայս... յիշեցէք զիս, և զծնողսն իմ, և զստացող սուրբ Աւետարանիս* զԱսիլ-Մէլիք *տատն, և զմայրն իւր* զՇուշանն, *և զհայրն* Խաչատուրն, *և զդստերքըն* զ՚Խալաթն, *և* զԽոնդքարն, զԹամամն, *և* զՇամամն, *և զորդիքն իւր* զՃանփաշայ, Խուտիտատն, Սուրամէլն, *և զամենայն արեան մերձօրքն յիշեցէք ի Քրիստոս և աստուած զձեզ յիշէ։*

*Արդ ես՝* Ասիլս *գնեցի զԱւետարանս իմ հալալ վաստակոց և տուի իմ սրտի յաւժարութեամբ ի* Սարգիս *էրեցն. ուշում դաւի չլինի էստից ի հազար տարին, ով որ յետ ու առաջ ասի՝ մասն Յուդայէն առցէ և խաչահանուացն։*

*Արդ, ես* Սարգիս *էրեցս փափաքէի և գտա, հայցէի և առի, ծարաւէի և զովացայ, և տուի զանգին մարգ[ար]իտս յիշատակ ինձ և ծնողացն իմոց և ամենայն արեան մերձաւորաց, և կողակիցին իմոյ* Շահանդուխտ, *և որդոցն իմ* Յոհանէս, Զեկիէլ, Ղուկաս *և դստերն իմ* Ոսկիհատ, Թանկազիզ. *զոր և աստուած վայելել տացէ մինչ ի խորին ծերութիւն, ամէն. Քրիստոսի փառք յաւիտեան, ամէն։*

*Գրեցաւ ի թվականիս Հայոց ՋԼԷ. (1488)։*

*Արդ աղաչեմ, ո՛վ սուրբ ընթերցողք, յորժամ ընթեռնուք զսուրբ Աւետարանս մի մեղադիր լինիք, զի կար մեր այս է, և գիրս առաջինն է. և յորժամ տեսնուք կարդալով և կամ աւրինակելով յիշեցէք սուրբ աղօթս ձեր և աստուած զձեզ յիշէ, ամէն...**

## 162

### *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Վենետիկ 110 (1130), Բ. Սարգիսեան, Ցուցակ. հտ. Ա, 491—492*

*Գրիչ՝* Սարգիս

ու

*Եւ զ*Սարգիս *գրաւղս յիշեսջիք ի տէր, ո՛վ սուրբ ընթերցաւղք սորա. միով տէր ողորմիւ և աստուած զյիշաւղք յիշէ յիւր արքայութիւն, ամէն։*

* *Շարունակության մեջ խնդրում է հիշել ստացող Սարգիս երեցի բազմաթիվ ազգականներին։*

Բ

323բ Ո՞վ սիրելի եղբայր, որ ի մէկ տարի և յերեկ ամիս ապա գրեցի, որ յաջողմունք չեղաւ. վասն սղալանաց մի մեղայդրեր, մեղա տեառն Ո. բերանն։

...Գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվականութեան Հայոց ՋԼԷ. (1486), ի պարոնութեան Աղուբէկին. ի հայրապետութեանն տէր Յուսկանն: Եւ ես՝ Աստուածատուրս՝ որդի Իսմայէլին, գնեցի իմ հալալ ըռզակովն զսուրբ Աւետ[արանս] յիշատակ ինձ, և կենակցին իմոյ Խասկանն, և մաւրն իմոյ Մարդին, Տիրատրին, Քրիստաւստրին, Իսրայէլին, Մարգարին. Թորոսին, Ստեփանոսին, Խէրպարոնին, Ասլիպարոնին, Իսրայէլին, Շնոնորպարոնին: Եւ Աստուածատուրս՝ տուի յիշատակ սուրբ Աւետարանս ի Եփրիանոս քահանային։ Ով որ հակառակի սուրբ գրոցս կամ խլելով, կամ այլ պատճառանաւք հակառակի, յաստուծոյ զմասն Յուդայի առնու և զսատանայի. ոչ ում իշխանութիւն չկայ այս գրոցս։

Գ

Ոմն՝ տէր Պապ

Ձեռս երթայ գիրըս մնայ, ո՞վ եղբարք, և զիս զանարժան տէր Պապ աբեղայս յիշեայ ի տէր մին բերան, աստուած զքեզ յիշէ։ Յիշեցէք և զհարսներն՝ զԽիզանն և Բայլուն, աստուած զձեզ յիշէ։

## 163

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6333 (Յ. Բարաղամեան, Ցուցակ Վասպուրականի), էջ 382

Գնող՝ Սարգիս

Ի Թուիս Հայոց ՋԼէ. (1488) ամին Սարգիս երէց գնեաց զսուրբ Աւետարանս յիշատակ իւր և ծնողաց իւրոց և ամենայն արեան մերձաւորացն...

## 164

### ԱՒԵՏԱՐԱՆ

Մայր Աթոռ 194 «էջմիածին», 1963 թ., Զ, էջ 59

Կազմող՝ Մարտիրոս

309ա Զարագս ի չարիս, զունայնս ի բարիս, զՄարտիրոս աբեղաս մեղօք լիս՝ զվերջին կազմող սուրբ Աւետարանիս, ո՞վ սուրբ եղբայրք, յաղօթս ձեր յիշման արէք արժանիս. եւ դուք յիշեալ լիցիք ի Քրիստոսէ։

Թվ. ՋԼէ. (1488) յուլիսի ԻԱ (21) կազմեցաւ։

**ՋԼԸ** **1489**

## 165

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 6531*

ա

*Գրիչ՝* Գրիգոր
*վայր՝* Գողթան գաւառ, Բստոյ վանք

262ա *...Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ հոգնամեղ և անարհեստ*
*գրչի* Գրիգոր *աբեղայի, ի գաւառիս* Գողթան, *յանապատիս* Բուստոյ, *ընդ*
*հովանեաւ ամենազաւր սուրբ Նշանիս, սուրբ Աստուածածնիս և սուրբ*
*Սարգսիս։*
*Արդ, պատճառ եղեն աստուածազաւր, աստուածաշունչ, քառագեո*
*սուրբ Աւետարանիս բարի կրաւնաւորքս տէր* Մե[սրոբ], *տէր* Մո[վսէս//*
*Ի թվ. ՋԼԸ. (1489), իշխանութեամբ* Գողթեան *վիճակիս տէր* Ազա-
րիայի *եպիսկոպոսի։*
*Արդ, աղաչեմ զամենեսեան, յիշեցէք ի տէր աստուած զփառաւոր*
262բ *կրաւնաւորքս* զՄեսրոբ, *զ*Մովսէս, *զ//*Դաւիթ, Նահապետ, *զ*Յակոբ, *զ*Սար-
գիս *միայնակեաց. սիրոյ սուրբ Աւետարանիս, ոոպէս հրեշտակ աստու-*
*ծոյ և զառաքեալն Քրիստոսի ծառայեցին զանարժան գծողս, քաղցր և*
*անուշ կերակուրս և ըմբելիս մատուցանէին...*
*Զստացող սուրբ [Աւ]ետարանիս, որ ետ գրել ի հալալ արդեանց և*
263ա *ընչից [իւր]ոց՝ բարի կինն* Ղարիպ-խաթուն, *յիշատակ իւր, և // ծնողաց*
*իւրոց, և ամենայն արեան մերձաւորացն, հաւրն իւրոյ* Յաղուփշայիս,
Խութու-Մէլիքին:
*Արդ, և կրկին ստացող սորա՝ նորաբողբոջ, մաքթուր ամենայն կա-*
*նանց, ճոխ հասակաւ, գեղեցիկ պայծառ գիմաւք, հաւատովն մեծ՝ նմա-*
*նեալ դստերացն Ահարոնի՝* Ազատ-խաթուն, *մաւրն յանդրանիկ* Ղարիպ-
խաթունին, Ազատն՝ *նմանեալ իշխան ազատաց, որ շատ <որ շատ>*
*աշխատութեամբ եկեալ բարի ընչիւք՝ կերակրովք և ըմբելաւք ի սէր*
*սուրբ Աւետարանիս... Զերախտաւորն քահանայն զտէր* Ովանէս, Շահ-
րիար, Յախտիար, Դամուր, Կուլիար, Մարթայ ///, Արֆայ, Պաղշայիս,
Ասայիշ. Ղուպիար, *զեղբայրն իմ* Ղուտայպաշխ, Ալահտատ, Խուտատաս:
*Աղաչեմ, որք հանդիպիք կարդալով, յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս*
*ձեր, ամէն, և աստուած զձեզ յիշէ, ամէն։*

---

* *Մեկուկես տող մաշված է ու չի ընթերցվում, 125ա էջի վրա գտնվող հիշատակագրության տվյալներով (ինչպես նաև նույն հիշատակարանի շարունակությամբ) լրացվում են այդ և նախորդ երկու տողերի վնասված մասերը։ Այդ հիշատակագրության մեջ կարդում ենք. «Զստացաւղ սուրբ Աւետարանիս արի և սրբասնեալ կրաւնաւորքս տէր* Մեսրոբ, *տէր* Մովսէս, *տէր* Դաւիթ. *զ*Սարգիս *միայնակեաց, յոր լի սրտէ յիշեցէք ի տէր Քրիստոս...»։*

263բ Եւ զիս՝ զանարժան գրիչս Գրիգոր, զհայրն իմ զՊետրոս քահ[ա-
ն]այ, զմայրն իմ Մեծրիշաա:
Գրեցաւ սուրբ Աւետարանս հայրապետութեամբ Սարգիս կաթողի-
կոսի, խանութեամբ Յաղուպ-պէկի, զի առաջնորդ սուրբ ուխտիս սուրբ
Նշանիս տէր Մեսրոբ աբեղայիս և Մովսիսի ստացողի՝ բարի կնոջս Ղա-
րիպ-Ղաթունի, ոսկեթել, ծիրանայծամ Ազատ-Խաթունի: Եւ ետուն սուրբ
Աւետարանս վախըմ և ընծայ սուրբ Նշանիս, սուրբ Աստուածածնիս
Բստոյ վանացս, յիշատակ իւրեանց և արեան մերձաւորաց իւրոց...
Յիշեցէք ի տէր Քրիստոս զնորընծայ մանկունքս սրբասնեալ կրաւ-
264ա նաւորքս՝ զՈվանէս, զՏիրատուր, // զՍտեփանոս, զփեսայրն իւր (Ղարիպ-
Խաթունի) Սկանդար, Խոիրշայ, Շիրազ, յիշեցէք և աստուած զձեզ յիշէ,
ամէն։

Բ

Կազմող՝ Խաչատուր
վայր՝ Նախիջոյ անապատ

264ա Կազմող սուրբ Աւետարանիս զԽաչատուր աբեղայս յիշեցէք ի յա-
ղաւթս ձեր և աստուած զձեզ յիշէ միւս անգամ գալուստեանն իւրում, որ
յառաջին նորոգումն է սուրբ Աւետարանիս, ի յանապատիս Նախիջոյ սուրբ
Ըստեփանոսիս և սուրբ Աստուածածնիս, և այլ սրբոցս, որ ա[ստ] հաւա-
քեալ կան ի բարէխաւսութիւն ամենայն հաւատացելոցս առ Քրիստոս,
ամէն։

## 166

## ԱՒԵՏԱՐԱՆ

Մ. Աթոռ 15, «էջմիածին» 1950 թ. VII—VIII, էջ 84—85

Գրիչ՝ Բարսեղ
վայր՝ Քաչբերունիք, Ասպիսնակ
գիւղ

313ա— ...Արդ, յանկ ելեալ աւարտեցաւ աստուածախաւս և աւետաբեր
316բ սուրբ Աւետարանս ի թուականիս Հայոց ՋԼԸ. (1489), ի գաւառիս Քաչ-
բերունեոյ, որ կոչի Արճէշ, ի գեաւղս Ասպիսնակ, ընդ հովան[ե]աւ սուրբ
Ստեփանոսի Նախավկային և սուրբ Երից մանկանց վկայիցն։
Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ Բարսեղ մեղսամակարթ
գրչի, ի խնդրոյ Յովանէս քահանային, որ ստացաւ զսա ոչ յաւելորդեաց
և կամ ի փարթամութենէ, այլ ի բազում տվայտութեամբ յաղթահարեալ
ի սիրոյ սուրբ Աւետարանիս, ըստ գրեցելոյն, թէ Սէր կատարեալ ի բաց
մերժէ զերկիւղ...
Զայս ամենայն լուաւ հաւատարիմ ծառայս աստուծոյ Շահրիարն,
և զՍաղդաթիար, և ծանեաւ զի սնոտի և ունայն է աշխարհս և անցաւոր
է մեծութիւն սորա, մեծաւ փափաքմամբ, յոյժ սիրով և յաւժար կամաւք
ստացաւ չքնաղ և զանհամեմատս ի բնաւս՝ Քրիստոսի աւետեաց բնա-
կարանս...
Ընկալաւ զսա մեծաւ ըղձմամբ ամէնօրհնեալ և երջանիկ տանու-
տէրն Դովլաթիարն ի վայելումն որդւոյն իւրոյ սրբասէր քահանայի տէր

Յովանիսին, և յիշատակ մեծ սպային պարոն Մէրճանին, և կողակցին իւրոյ Թուրվատայ-խաթունին, և զաւակացն նորին՝ Դովլաթիարին, և Շահրիարին, և Սաղդաթիարին, և Գով[լ]աթեարին ամէնօրհնեալ և ծաղկեալ զաւակացն՝ տէր Յովանէսն, և զխուբեարին, և Դուլիարին, և դստերըն խուբնիկարին, և զՇահրիարն, և զիւր օրհնեալ զաւակացն՝ զՄուրատն և զէզդանբաշխն, և դըստերքն զՄէրճշէն և զԴուլամփաշէն, և զկողակիցն զՄաղթումշէն, և զմիւս եղբայրն զՍաղթաթիարն, և ղողայքն, զէդկարն, և զՄէնրանն, և զԴուխտարն, և զկողակիցն՝ զնարին-խաթուն...*

Արդ, ես անպիտանս ի գիրս գրչութեան Բարսեղ սուտանուն քահանայ, աղաչեմ զձեզ, զի որք կարդաք կամ օրինակէք, լի բերանիւ աստուած-ողորմի ասէք ինձ՝ եղկելի գրչիս, և ծնողացն իմ Մկրտչին և Մէլիք-խաթունին, և կողակցին Մուաթ-խաթունին, և դեռաբոյս զաւակին իմ Վրդանէս, և դստեր իմ Մէլէքնին և Դուլփաշին, և ուսուցիչն իմ տէր Ազարիայն, և զամենայն երախ[տ]աւորն իմ և զամենայն ազգականս և զամենայն արեան մերձաւորքն՝ զկենդանին և զհանգուցեալն, աստուած-ողորմի ասացէք և աստուած ձեզ ողորմեսցի յիւր արքայութիւն, ամէն։

## 167

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Գ. Սրուանձտեանց «Թորոս Աղբար», Բ, էջ 437, Տիգրանակերտ, ս. Սարգիս եկեղեցի*

Գրիչ՝ Յոհաննէս
վայր՝ Քաջբերունեաց գաւառ,
Սոսկոն գիւղ

...Գրեալ ՋԼԸ. (1489), ի Քաջբերունի՝ յԱրճէշ, ի Սոսկոն գիւղ, ընդ հովանեաւ սուրբ Ստեփաննոսի, ձեռամբ Յոհ[աննէս] քահանայի... Յիշեցէք... ստանուտէրն Տողան, զորդին Սիրուն, Վարոց, դստերքն՝ Բաղդադ և Բէկխաթունն, կենակիցն խաթուն-Մէլիքն, ուսուցիչն գրչիս տէր Յոհ[ան] Մանգասարն և Ջուլալ-խաթունն, որ շատ մարութիւն արար մեզ...

## 168

### ՄԱՇՏՈՑ

*Երևան 5860*

Գրիչ՝ Թումայ
վայր՝ Բազենից վանք

Փառք... որ ետ կարողութիւն տկար անձինս և մեղսամած մատանցս անարժան գրչի Թումայի հասանել ի դրաւ մատենիս։ Արդ, գրեցաւ սա

---

* Շարունակության մեջ կրկնվում են նույն անունները և հայտնվում են սառցողների ազգականների նորանոր անունները։

ի վանքս Բազենից, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Սար-
447բ գ//րսիս և Յիսականց սուրբ Աւետարանիս. ի Թուաբերութիւնս Հակաբեան տոհմի ՋԼԸ. (1489), ի խնդրոյ պատուական քահանայիս Ստեփաննոսի, յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնաւղաց իւրոց Կիրակոսի և Սուլտանի, և եղբարցն Մուրադի և Աւետիսին, և հաւրեղբօրն Աստուածատրին, և կենակցին Խոնձային, քանզի տրտում են մարմնով, զի զաւակ ոչ ունին ի վերայ երկրի։ Որ ձեռնատու եղև գրոցս՝ տացէ տէր աստուած զանտրտում ուրախութիւն, ամէն։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որ հանդիպիք ի սմայ ինչ կերպիւ 'ւ իցէ, զխոշորութեան գրիս և սխալանաց չմեղադրել, և յիշել զյոգնամեղ
448ա և զբարի // ատեաց անձս, որ սոսկ անուամբ աբեղայ և [ան]արժան գործով՝ տէր Թումայ կոչեցեալ, յիշեսջիք ի պաղատանձ յաղօթս ձեր՝ զիս, և զծնօղսն ի մարմ[ն]ի զՏիրատուր և զԴուճար, և զամենայն ւարեանա ռիւսն իմ, և աստուած զձեզ յիշէ։

Դարձեալ, աղաչեմ կրկին մաղթանաւք և աղաչանաւք յիշեսջի՛ք առաջի Քրիստոսի զՍտեփանոս քահանայն, զկենակիցն իւր զԲէկիչ[ա]ն, և զաւակն զխուդաբաղշ և զԴովլաթշէն և զՄէճուբան, հալիմ արայ արժանի աստուածային տեսունե։

Եւ ես զսուրբ տաոս ի յաստուածապահ զօղս Կըզին, ի դուռն սուրբ Դանիէլի, և ի ձեռն սրբասնունդ քահանայից տէր Յովսէփին և տէր Մկրտչին, քանզի սովաւ հրճուին մանկունք եկեղեցոյ հանապազ։
448բ Եւ // որ սրտի մտաւք աստուած-ողորմի ասի՝ և ինքն դուրաւ ողորմութիւն գտանէ յարարչէն, ամէն։ Ամանաթ, ամանաթ, վասն սիրոյն Քրիստոսի և յուսոյ արքայութեանն՝ որ լաւ պահես, զի խի[ս]տ դառնութեամբ և պանդուխտ գրեցի*։

## 169

## ՄԱՇՏՈՑ

Ջմմառ. 93, Մ. Քեչիչեան, Ցուցակ, էջ 194

Յոհ. Թլկուրանցի կաթողիկոս

Նուաստ Յոհանէս կաթողիկոս Թուլկուրանցի նստայ ի յաթոռ հայրապետութեան ի Թվականիս Հայոց ՋԼԸ. (1489), յունվար ամսոյն ԻԶ. (26), օրն չորեքշաբթի**։

---

* Շարունակությամբ այլ ձեռագրով գրված է հետևյալ անթվական հիշատակագրությունը. «Դարձեալ, աստուած ողորմի զՈստոնց Աստուածայտրուն, որ տասնևութ աղուրէկի ետուր յէսոր գին, որ տուն էլ չի դիցաւ» (էջ 449ա)։

Մյուս անթվական հիշատակագրությունը, որ, հավանաբար, արված պետք է լինի 1491 թ. կամ դրանից միայն մի երկու տարի հետո, տեղադրված է 1491 թ. ընդօրինակված Ճաշոցի (Երևանի 4822) հիշատակարանի ծանոթագրության մեջ։

** Ձեռագիրն ընդօրինակված է 1687 թ., գրիչն ընդօրինակել է նաև նախագաղափար օրինակի մեջ եղած կաթողիկոսաց ցանկը։

## 170

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՍԱՅԵԱՅ

*Երուսաղէմ 144*
*Ա. Սիւրմէեան, Ցուցակ, Ա, էջ 309*

*Ընթերցող՝* Կիրակոս Թոլկորանցի
*վայր՝* Էջմիածին

464 *Յինն հարիւր Հայոց թվին և ԼԸ. (28) ամէլ*[*] *(1489)* Կիրակոս Թոլկորանցին *ի* Գրիգոր *վարդապետէ ընթերցաւ զգիրքս յէջմիածին։*

## 171

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Ե. Լալայեան, Ցուցակ Վասպուրականի 251, սյուն. 596*
*Լիմ անապատ 390*

*Վայր՝* Աղթամա՞ր

*Զպատուական հայրապետն մեր զ*Ստեփանոս *կաթողիկոսն* Աղթամարայ *յիշեցէք ի Քրիստոս և աստուած-ողորմի ասացէք, որ ղաւրինակն շնորհեաց*[**]*, որ զցրուացանկն գրեցի, և զ*Յովանէս *եպիսկոպոսն, որ Բ. (2) կարմիր ետ, որ ետու ծաղկել։*

## 172

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*Երևան 4728*

*Գրիչ՝* Ներսէս եպիսկոպոս
*վայր՝* Աղթամար

**ա**

79բ *Աստուածածնի փոխման տաւնի Ը. (8)-օրեայ կատարման կիրակի առաւօտուն վերայփոխեցաւ յաշխարհէս տէրն* Ստեփաննոս *կաթողիկոսըն ամենայն Հայոց։*

*Եւ եղև սուգ տրտմութիւն Հայոց ազգիս, և արեգակն և լուսին խաւարեցաւ, և վայ հազար բերան եղբօրս, եղուկ ու վայ* Ներսէսիս, *որ դառն ելանէ իմ հոգիս, խաւարեցաւ աչս յերեսիս, հազար եղուկ իմ անձինս։*

**Բ**

84բ *..Որ ողորմի Քրիստոս ամենայն հաւատացելոց, եւս առաւել տէր* Ստեփանոս *կաթողիկոսին, որ դառն մահուամբ փոխեցաւ առ Քրիստոս և սուգ եթող եղկելի եղբօրս, և* Վարդանին, *և ծնօղացն և ամենայն ազգականացն՝ լի բերանով աստուած-ողորմի ասացէք, և վայ գծողիս և մերոցն։*

---

[*] Տպագրված է նաև Ալպոյաճյանի «Պատմ. Հայ-Կեսարիոյ» աշխատության մեջ (էջ 1846), որտեղ այս՝ «աւել» բառի փոխարեն գրված է ավելի ճիշտ թվացող «աւելորդին» ընթերցվածքը, ինչպես նաև «Թոլկորանցին»-ի փոխարեն «Թոլկորանցի»։

[**] Աղթամարի Ստեփանոս կաթողիկոսը աթոռակալել է 1464—1489 թթ.։ Անթվական այս հիշատակագրությունը տեղադրում ենք 1489-ի թվաշարքում՝ Ներսես եպիսկոպոսի հիշատակարանից առաջ, ուր հաղորդվում է Ստեփանոսի մահվան լուրը։

Գ

119ա ...Որոյ աղաւթիւքն և բարեխաւսութեամբն սոցա ողորմեսցի Քրիստոս աստուած տէր Ստեփանոս կաթողիկոսին, և ստացողի սուրբ տառիս դարբին Վարդանին, և ծնողաց նորին, և եղբարցն, և կենակցին, և ամենայն ազգականացն, և Կարապետին, Թումին, և կենակցին, և մեղաւոր գծողիս, և մեր ծնողացն, և իմ վարպետին՝ Մինասենց Թումին:

Դ

171ա ...Եւս առաւել և տեառն Ստեփաննոս կաթողիկոսին, մանաւանդ ըստացողի սուրբ գրոցս՝ ուսթա պարոն Վարդանին՝ լուսաւոր հոգուն, և իւր ծնօղացն՝ հօրն Հերպետին և մօրն Շամամին, և կողակցին՝ Ղըմաթին, եղբարց Դայուդին, քըւերն Շնոնւորին, ջոչ մօրն Շնոնւորին, փեսին Թումին, և դստերն Շամամին, և Աբգարին, Մարգրտին, և փեսկիր Կարապետին, և իւր ծնօղացն, և այլոց ամենայնի. լի բերանով աստուած-ողորմի ասացէք դարբին Վարդանին և ամենայն զարմից նորա, ամէն։ Ընդ նոսին և ինձ եղկելոյս՝ Ներսէս եղկելոյս՝ փըծուն գրողիս, և մեր ծնօղացն՝ Գուռչիբէկին և էմնային, և հարազատ եղբօրն իմ տեառն տէր Ստեփաննոս կաթողիկոսին՝ Հայոց վերայդիտողին, Ջանիբէկին և Մարտիրոսին, և մեր քեռոյն՝ տէր Դաւիթ կաթողիկոսին, և այլ ամենայն մերձաւորացն մերոց... ամէն։

Ե

184ա ...Քրիստոս աստուած ողորմեա ամենայն հաւատացեալ Քրիստոնէից և տեառն Ստեփաննոս կաթողիկոսին, եւ առաւել ստացողի գրոցս պարոն դարբին Վարդանին, և իւր ծնօղացն՝ հօրն Հէրպետին և մօրն Շամամին, կնոջն Ղըմաթին, և եղբօրն Դայուդին, քըւերն Շնոնւորին, այլև հօր մօրն Շնոնւորին, դստերն Շամամին, փեսին Թումային և Աբգարին, Մարգրտին, և այլ ամենայն մերձաւորացն. լի բերանով աստուած-ողորմի ասացէք դարբին Վարդանին, ընդ նոսին և ինձ՝ ողորմելոյս, բազմավէր ոգոյս Ներսէս փծուն գծողիս, և իմ ծնօղացն՝ Գուռչիբէկին և էմնային, և պարոն Պակուն, և մեր քեռուն՝ տէր Դաւիթ կաթողիկոսին, աստուած-ողորմի ասացէք և Քրիստոս աստուած ձեզ ողորմեսցէ յամենայն ժամ, ամէն։

Զ

286բ Նոյն աստուածային մարդասիրութեամբդ բժշկեայ զամենայն աղտ և զհիւանդութիւն հոգոյ և մարմնոյ զստացողի գրոցըս ուսթա Վարդանին, այլ և Ստեփանոս կաթողիկոսին, և ծնօղաց նորին։ Եւ զՎարդանի ծնօղքըն՝ զՀերապետին, զՇամամին, և զՂըմաթին, զԴայուդին, զՇնոխուորին, զԱբգարին, և ըզփեսա Թումին, և զկողակցին զՇամամին, և զամենայն նախնեաց նոցին... Եւ դուք լի բերանով աստուած-ողորմի ասացէք ուսթա Վարդանին և իւր նախնեացն, ամէն։ Ընդ նոսին և հարազատ պատուական ընդրեալ հայրապետին տեառն Ստեփաննոսին, որ և տէր աստուած զնա ընդ երկայն աւուրս պահեսցէ։ Նաև զծնօղքն զԳուռչիբէկ և

զէմնա-խաթուն, և զամենայն մերձաւորքն մեր, և զուսուցիչ մեր զՄի-նասենց տէր Թումին դասեսցէ Քրիստոս աստուած ընդ երջանիկ Հայ-րապետացն, ...և զմեղաւոր գծողս, ամէն։

է

288ա Եւ առաւել ստացողի սուրբ գրոցս պատւական և բարի դարբին Վարդանին և ծնողացն իւր, մանաւանդ տէր Ստեփաննոս կաթողիկոսին՝ պատւական Հայրապետին և ծնողաց նորին։ Եւ Վարդանին, և հօրն Հէ-րապետին, և Շամամին, և եղբարցն Դայուդին, Իսրին, Շնոխին, Թու-մին, և Կռմաթին, Շամամին, Աբգարին, Կարապետին, և իւր ծնողին, և այլ ամենայն ազգականաց, Վարդանին ողորմեսցէ Քրիստոս աստուած։ Եւ դուք լի բերանով և ուղիղ սրտով աստուած ողորմի ասացէք ուսթայ Վարդանին և ամենայն ազգականաց նորա... ամէն։ Ընդ նոսին և ինձ՝ մեղաւորիս, և մեր ծնողացն՝ Գուոչիբէկին և էմնայ-խաթունին, և ամե-նայն ազգականաց մեր, ամէն։

Յիշեցէք ի Քրիստոս զՅովանէսն, որ զթանաքի գղթորն եա*։

## 173

### ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ

Երեւան 5177

Գրիչ՝ Յոհանէս
վայր՝ Աղթամար

177ա Փառք ամենասուրբ երրորդութեանն, որ ետ կարողութիւն ամենա-մեղ և անիմաստ գրչիս Յոհանիսի՝ պիտականուն աբեղայի՝ հասանել յա-ւարտ գրոցս ի յԱղթամար քաղաքի, ընդ հովանեաւ սուրբ խաչի տաճարիս և սուրբ Փրկչին, յամի ՋԼԸ. (1489) թւականիս։

Որք պատահէք՝ զմեզ առ տէր յիշեցէք, և զուսուչիչսն մեր, և ծը-նողքն մեր, և զեղբայրքն մեր, և ողորմի յիշողացդ Քրիստոս յաւրհնու-թեան պահուն, ամէն։

177բ Զակաւ վաստակս իմոյս մատանց,
Ընկալ ի սէր քոյին կամաց,
Ո՛վ կարևոր իմ սիրեցած
Եւ բարեկամ մեր ի սրտաց։
Սակաւ է բանս այս ի բազմաց,
Բայց զօրաւոր ըստ գիտութեանց,
Է զարթուցիչ սա ծոյլ մտաց
Եւ մխիթար է տրտմութեանց,
Յոյժ փարատիչ է սա վշտաց
Եւ բաժոփիչ ըսգաւորաց,
Առիթ պատճառ է թողութեանց,
Գործոց մեղաց և յանցանաց,

* Նման հիշատակագրություններ կան գրեթե բոլոր վարքերից հետո։

Սա յիշատակ մեզ անմոռաց,
Ի բարէսէր քոյին մտաց՝
Ինձ և իմոցըն ծընողաց՝
Մարմնաւորաց, հոգևորաց,
Յոճանճէս՝ յետինս բանասիրաց.
Այլ և տըրուպ կարգաւորաց
Ջիս յանձն առնեմ քոյին կամաց՝
Յաղոթս յիշել բարի մտաց։

## 174

### ԱԻԵՏԱՐԱՆ

**Երևան 5537**

Հետ. ստացող՝ Ատոմ Արտամետցի

296ա Եւ դարձեալ երես անկեալ աղաչեմ զձեզ, ո՛վ լոյսերամ դասք քահանայից և գումարք ժողովրդոց, յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր ըզվերջին ստացող սուրբ Աւետարանիս զըռէս Ատոմ Արտամէ[տ]ցիս, որ մականուն Գադուկ ասեն, և զհայրն իմ զՍտեփանոս, և զմայրն իմ զՄարեմ, և զայլ ամենայն նընջեցեալսն, որ ստա[ցա]յ զսուրբ Աւետարանս ի հալալ արդեանց իմոց Ճ. և Կէ. (167) փափասի։ Եւ ետու ոխֆ ի դուռ Արտամետու Տրընկողայ սուրբ Ստեփաննոսին, և սուրբ Ամենափըրկչին, և սրբոյն Գէորգայ զօրավարին յիշատակ հոգոն իմոյ. յիշեցէք և աստուած-ողորմի ասացէք։ Ի թվականիս Հայոց ՋԼԸ. (1489) ամին, վասըն որոյ լի սրտիւ աստուած-ողորմի ասացէք, ամէն։

Եւ դարձեալ, աստուած-ողորմի ասացէք աստուածասէր ե բարեմիտ քրիստոնէին Մարտիրոսին, և որդոյն Վարդանին, որ Ջալի-Մէլիքի արտ
296բ ոխֆ արին ի դո//ւռն Կոընկեց սուրբ Աստուածածնին*. զինչ ի սուրբ Աստուածածին պատարագ լինի՝ Մարտիրոսին մասն և բաժին լինի, կողակցին Սառին, որդոյն Վարդանին, կողակցին Խանումին, և տարաժամ հանգուցեալ որդոյն Յովանիսին, հօրն Խլղաթին, և մօրն Քնքուշին, և Շուշանին, և հօրեղբօրն Աստուածատրին, և մարտիրոս եղբօրն՝ Կարապետին, աստուած լուսաւորէ զիւրեանց հոգին, ամէն։ Ով որ ասէ ղաստուածողորմին՝ արժանանայ պայծառ լուսին։

Յիսուս միածին... թող զմեղք Մարտիրոսին... որ Ջալի-Մէլէքի արտ ոխֆ արար ի դուռ սուրբ Աստուածածնին, ով որ այլայլէ կամ հակառակէ կամ դաւէ անէ՝ զպատիժն յաստուծոյ առցէ, ամէն։

---

* Ուշագրավ է, որ այդ նույն Ջալի-Մէլիքի արտը, 1551 թ. կրկին անգամ նվիրում են նույն վանքին։ Ձեռագրի 297բ էջի վրա պահպանվել է այդ նվիրատվության արձանագրությունը. «Դարձեալ յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զՄումկանց Աւետիս և զԹումէն և զՅոխանէս, որ ետուն զժոժէ արտն ոխֆ ի սուրբ Աստուածածին, զինչ ի յԱստուածածին, պատարագ մատուցանի՝ մասն ու բաժին լինի իւրեանց հոգոյն և Խէրխաթունին և իւրեանց զաւակաց։

Դարձեալ յիշեցէք յաղօթս ձեր զԱխիջանն, և զԳուլամիրն, և զծնօղսն իւր և զամենայն արեան մերձաւորս իւր, որ տուին զՈւռուտի արտն ի դուռն Կըըընկեց Աստուածածնին, զինչ ի

298ա Եւ դարձեալ լի սրտիւ և բոլոր հաւատով աստուած ողորմի ասացէք մեղսաթաթախ Դաւիթ իրիցուս, որ զիմ կայ ու չկէն զամէն՝ ոչխար, թէ մէկ է, թէ հարիւր է, զտաւար՝ թէ մէկ է, թէ Ծ. (50), թէ ջուլ է, թէ ջվալ է, թէ տուն է, թէ տեղ է, թէ ղուռ է, թէ դուրս է, թէ խոփ է, թէ ձևիչ է, թէ բախ է, թէ փայտատ է, թէ զինչ և իցէ. Ռ. (1000)-էն մինչև ի մէկ, մէկէն մինչև ի հազար՝ ոխք եմ արեր ի դուռն Խոընկեց սուրբ Աստուածածնին. Բ. գիւղ[իւ]ի վկայութեամբ մեծի և փոքրի՝ յԱրտամետու և Զվքստանայ: Ով որ հակառակէ յետ իմ անցման, կամ դաւէ անէ կամ տալապ անէ, մալի մի չաք, թէ ազգ է, թէ աղբօր զարմ է, թէ հօրեղբօր զարմ է՝ դաւէ ու տալապ անէ՝ յեկեղեցոյ փարզհանդէն հանէ և ցրւէ՝ նա զանեծք օձին և զԿայենին, զՅուդային և զՆեռան առցէ, ամէն։

Եւ դարձեալ, աստուած զայն տանուտէրն աւրհնէ, որ վերայ Աստուածածնի կենայ ու հոգ||տանի, որ անհաւատ ու անօրէն մարդ շատ
298բ կան, որ յաստուծոյ չեն երկընչեր, վասնորոյ պատճառ անեն և այլևայլ չար սերմանեն՝ զկապած և զփակած ոխք, վասն որոյ զայս ես իմ ձեռօքս եմ գրեր ու զիմ մօհր ի վերայ եմ զարկեր*, որ այլևայլ չի անեն։ Վասն որոյ թէ անօրէնութիւն լինի ու ղարաչութիւն դաւէ՝ նայ Բ. (2) գիւղ՝ թէ քահանայ, թէ տանուտէր, թէ ըռամիկ, թէ ժողովուրդ, ամենեքեան որ չգան ի միատեղ ու միաբանին, ու զեկեղեցու ապրանք թողուն, որ անհաւատ մարդիք մարդ տանին, երեսպաշտութիւն անեն ու զիւրեանք յետ գողնան. նոքայ այլ զայն անէծքն առնուն, որպէս որ դաւէ արօղ կառնու ամէն եղ<եղ>եցի, եղեցի։

Դարձեալ գիտասջիր ժողովուրդք, դուք վկայ լինիք, որ զիմ գրքեր՝ Սաղմոսարան, Շարակնոց, Տօնայցոյց, Աղօթամատոյց, Խրատգիրք մի, Տօմար ու Տաղգիրք մի ծախել եմ Բարկէն՝ իմ սարգաւակուն։ Ինձ այլ գիրք չկայ, որ այլ մարդ դաւէ անէ։

## 175

## ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 428

Գրիչ՝ Ազարիայ

278բ ...Իմաստուն և պատուական խաւջայ Սադաղէն... եռափափագ սրտիւ խնդիր եղև այս վարդափըթիթ բուրաստանիս՝ մարգարտաշար Գանձարանիս, եւ ընկալաւ զսա ի յիշատակութիւն հոգոյ իւրոյ, եւ բարեպաշտ ծընողաց իւրոց՝ հաւրն Յովանիսին և մաւրն Ղանին, և եղբաւրն խօջայ Թումաբէկին: Եւ դարձեալ, յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր զխօջայ Սադաղէն, և զկենակիցն իւր զՄէլէք-խաթունն, և զորդիքն իւր զխօջա Պար-

սուրբ Աստուածածին պատարագ լինի՝ մասն ու բաժին լինի իւրեանց հոգոյն։

Դարձեալ յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զէզդանբաշխն և զտէր Յովանէս և զԹաճարն և զամենայն ազգատոհմն իւրեանց, որ տուին Չալի-Մէլէկէ արտն ոխք ի սուրբ Աստուածածնին դուռն, զինչ ի յԱստուածածնի մէջ պատարագ լինի՝ մաս ու բաժին լինի իւրեանց հոգոյն, ամէն։ Ով որ յանտղնի կամ յիրար տայ՝ նա զանեծքն զԿաէնին և պատիժն Յուդային առցէ, ամէն։

* Իրոք, 296ա էջի աջ լուսանցքի վերին և ներքին ծայրերի վրա Դաւիթ երեցը խփել է իր կնիքը՝ «Յի. Քի. ծռայ Դաւիթ էրէցս» մակագրությամբ։

սամն և զխոջա Ամիրն, և զաւակս իւրեանց զԱմիրզադէն և զԴուլայմիրն.
զոր տէր աստուած ընդ երկայն օւրս առնէ, և զեղբայրս իւր զխոջա
Թումաբէկն՝ զփոխեցեալն ի Քրիստոս, և զնորին կողակիցն զԱսըլփա-
շէն, և զնորին զաւակսն՝ զխոջա Սֆանդարն և*։ Զոր տէր աստուած ընդ
279ա երկայն աւուրս առնէ զնոսա բալ/զում ժամանակաւ, ամէն...

Արդ, յերես անկեալ աղաչեմ զձեզ՝ հարք և եղբարք, յիշման արժանի արարէք զանարժանս ի կարգս քահանայից և անիմաստս ի գիրս դպրութեան՝ [...զԱզարիայ. սուտանուն քահանայ և զուսուցիչն իմ և զծնաւղ՝ զԿարապետ քահանայ, որ նահատակեցաւ յԱրճէշ քաղաքի]**։

Սկսայ զսուրբ գիրս և ըստ իմում կարի աւարտեցի յանուն յիշատակութեան խաւչայ Սադաղին, ի թուականութեանս Հայոց մեծաց ՋԼԸ. (1489)։

## 176

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿԵԱՅՑ ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

Ե. Լալայեան «Գողթան գաւառ» Ազգ. Հնդ., 12,
1905 թ., էջ 168—169

Գրիչ՝ Առոմ Խանանայ
վայր՝ Ուշտունիք, Շատուան գիւղ

Գրեցաւ սա յերկիրս Ըռըշտունեաց, ի գեօղս որ կոչի Շատուան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և սրբոյն Ստեփաննոսի Նախավկային, և սուրբ Ոսկիանց քահանայիցն, և սուրբ Գէորգայ զաւրավարին։ Յամի յորում էր թիւն հայկազեան Չ. և ԼԸ. (1489), յառաջնորդութեան տէր Զաքարիայի նորընծայ կաթողիկոսի։ Այլ և յաշխարհակալութեան Աղուբխանին***, ի դառն և ի վշտաբեր ժամանակի, յորում միահամուռ ամենեքեան ընթացան զհետ ուրնչին և գտանեն ղոշինչ և դարձան ի մոլար աւրէնսն Մահմետի, որ արձակ ճանապարհաւն տանի ի կորուստ, և բռնադատեն զամենեսեան զմանկունս եկեղեցւոյ դառնալ ի սնոտի և ի պատիր յոյսն իւրեանց։ Հալածեն, նեղեն և տառապեցուցանեն, զոմանց զինչսն յափշտակելով, զոմն տանջելով, զոմն հայհոյելով, և ոչ այսու վերջացան՝ այլ և բազում եկեղեցիս տապալեցին. և զխաչ և զաւետարան նախատեցին։ Եւ այս ամենայն եկն ի վերայ մեր. վասն մեղաց մերոց. և ոչ դառնամք և ոչ զղջանամք, զի միմեանց ատեմք փոխանակ սիրոյ և մատնեմք՝ փոխանակ բարւոյ։ Եւ տէր ամենակալ երկայնամիտ լինի ի վերայ չարեաց մերոց...****

---

* Տեղ է բաց թողնված Թումաբեկի մյուս որդիների անունները լրացնելու համար։

** Ուղղագիծ փակագծերի մեջ առնված հատվածը գրված է էջի ներքևում, իմաստը պարզ դարձնելու համար տեղաշարժ կատարեցինք։

*** Տպված է «Աղուբ-խանին»։

**** Այս հիշատակարանը, գրեթե տառ առ տառ նույնությամբ, մեջ է բերում Ե. Լալայանը նաև «Ազգագրական Հանդեսի» նույն համարի 157 էջ-ում, այս անգամ որպես հիշատակարան մի Աւետարանի։ Կրկնությունից խուսափելու համար՝ չենք բերում։ Վերջին երեք տողը (սկսած «և ոչ դառնանք...» բառերից) վերցնում ենք Աւետարանի հիշատակարանից։

## 177

### ԱԻՑՏԱՐԱՆ

*Երևան 5425*

*Գրիչ՝* Մելքիսէք
*վայր՝* յերկիրս Բոզշտունեաց,
ի գեաւղս Շատւան

152բ ...*Եւ ես՝ յոգնամեղս և փծունս ի գրչաց սուտանուն քահանայս ///* Մէլքիսէք... *ըստ խմում կարի յանձն առեալ կատարեցի զսուրբ Աւետարանս զայս շնորհօք և ողորմութեամբն Քրիստոսի աստուծոյ մերոյ, ի թուականութեան հայկազեան տումարիս* ՋԼԸ. *(1489), յերկիրս* Ռոզշտունեաց, *ի գեաւղս* Շատւան:

*Արդ, աղաչեմ զամենեսեան սիրովն Քրիստոսի՝ ընթերցողդ և ղլսաւղդ աստուածախաւս կտակիս, յիշման արժանի արարէք զվերոյասացեալ* <*ստացեալ*> *ստացաւղ սուրբ Աւետարանիս՝ զքարեսէր և և զաստուածասէր տանուտէրն* զԱստուածատուրն, *և ուղիղ մտաւք և լի բերանով աստուած-ողորմի ասացէք* Աստուածատուրն, *և ծնօղաց նորին հաւրն* Յովաննիսին *և մօրն* Նիգարին, *և զաւակաց նորին՝* Մկրտչին, *և* Կարապե[ տ ]ին, *և* Մարտիրոսին, Յոհանիսին, *և Բ. (2)* Փաշին, *և հօրեղբարցն՝* Կիրակոսին, Մարտիրոսին, Սահակին, *և* Սիմէոնին, *և զաւակաց* Սիմէոնին ///

## 178

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*Երևան, Մատենադարան, կաթողիկոսական դիվան, թղթ. 240, վավ. 138, Սալմաստի, Հաֆթւան գյուղի եկեղեցի (նաև Յ. Բօփճեան, Ցուցակ Ա. Դադեանի, Բ, էջ 51)*

*Վայր՝* Աղբակու երկիր,
էրընկանի գիւղ

...*Աւարտեցի զսուրբ գիրքս ի յերկիրս* Աղբակու, *ի գեաւղս որ կոչի* էրընկանի, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի տաճարիս, և աթոռակալին սուրբ առաքելոյն Բարդուղիմէոսի տէր* Յովհաննէս *արքեպիսկոպոսի, և տէր* Սահփանոսի, *և* Ղազար *կրօնաւորի՝ ամենագով և շնորհալի խորին փիլիսոփայի, և սուրբ ծերոյն* Մարտիրոս *աբեղայի, ի ղանութեան* Եաղուպ-բէկի, *և տեղոյս իշխանին* Սուլէման *պարնին, ի դառն և ի նեղ ժամանակիս, որ քրիստոնեայք նեղին և տագնապին ի յանօրինաց վասն սաստիկ հարկապահանջութեանն։ Եւ այս ամենայն վասն մեր մեղացն գայ ի վերայ մեր, զի մեք թողաք զպատուիրանն աստուծոյ և նա բարկութեամբ խստացոյց զսիրտ բռնաւորաց ի վերայ մեր։*

*Եւ ի թուականութեանս Հայոց ՋԼԸ. (1489)...*

## 179

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Ն. Սարգիսեան, Տեղագրութիւն, էջ 236*

*Գրիչ՝* Նաճապետ
*վայր՝* Տարօնի Նորշէն գիւղ

*Գրեցաւ սա ի* Տարօն, *որ այժմ* Մուշ *ասի, ի գիւղն որ* Նորշէն *կոչի, հանդեպ սուրբ* Առաքելոցն, *ընդ հովանեաւ սրբոյն Սոփիայ պատուական և սքանչելագործ եկեղեցւոյս, որ է փարատիչ ամենայն ցաւոց, ևս առաւել այսահարացն, ձեռամբ* Նաճապետ *երիցուս։ Ի թվին ՋԼԸ. (1489)։*

## 180

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Մոսկվա, Լենինի գրադարան, ձեռագր. բաժին* Арм. 22

*Գրիչ՝* Մկրտիչ
*վայր՝* Խիզան

*...Ուստի և տեսեալ զսորայս անճառ փրկագործութեան խորհուրդս ոմանք՝ աստուածասէր և բարեմիտ* Մ[իրի՞]ջան *և* Ջհան, *զոր ի վաղուց հետէ ցանկային այսմ աստուածախօս սուրբ Աւետարանիս և ետուն զսա գրել յիշատակ հոգւոց իւրեանց, և ծնօղացն՝* Սանակուն *և* Մինային, *և այրոջն* Փոխանին, *և որդւոցն* Մարդիրոսին, Վարդանին, Յոհանեսին, *և* Նոնօֆարին, Գրիգորին, Մոջանին, *և* Մուրադին, Նաւրդնին, *և* Գոհարին, [Շանրի՞]մանին, Պ[ո]ղո[սի]ն /// Կո[ս՞տ]անդին /// *եղերն դուռջացն, ամէն։*

*Ի մեծ թուին Հայոց ՋԼԸ. (1489), ի կաթողիկոսութեան հայկազան սեռի տեառն* և ի մերոյ կաթողիկոսութեան* Աղթամարայ *տէր* Ստեփանոսին, *զոր տէր աստուածն Իսրայէլի պահեսցէ անսասան զաթոռ հայրապետական և զթագաւորական մերոյ ազին։*

*Եւ արդ գրեցաւ սուրբ Աւետարանս ի քաղաքիս, որ կոչի* Հիզան, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և սուրբ Յ[արութեան], և սուրբ [Սարգսի և] որդոյ [Նորին] Մարտիրոսին, և սուրբ Գէորգեա, որ է սակաւ մի հեռի։*

*Այլ գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ* Մկրտչի *քահանայի սուտ և ախմար գրչի և անարժանի։ Ու իմ անընդունակ գոլով յարուեստ գրչութեան և բազում մեղաց ցնորիւք պաշարեալ, այլ ըստ կարի մերում, զոր պարգևեաց մեզ մարդասէր հոգին սուրբ բազում աշխատասիրեալ եմ ի սմա։*

*Արդ, աղաչեմ զձեզ, ո՛վ սրբասէր մանկունք Սիոնի, յիշեցէք ի Քրիստոս և զիս՝ զանարժան գրչիս, զծաղկօղ և զկազմօղ սուրբ Աւետարանիս* զՄկրտիչ, *և զվարպետն իմ* զՅովանէս *քահանայն, և զմիւս վարպետն* զՓիլիպպոս *քահանայն՝ զհօրեղբայրն իմ, և զծնօղսն իմ* զՍուլ-

* *Անվան լրացման համար տեղ է բաց թողնված։*

տանշէն և զԹուրվանդէն, և զամենայն արեան մնրձաւորսն, որ ի վերա ձեր աշխատանք և երախտիք ունին, յիշեցէք ի Քրիստոս և աստուած ողո[րմի ասացէք ///

## 181

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Բրիտ. Թնգ. Or. 6555, Ֆ. Կոնիբեր, Ցուցակ 66, էջ 165

Գրիչ՝ Մովսէս
վայր՝ Բաբերդ, Բերդակ
անապատ

221ա Աւարտեցաւ քրիստոսահիմն և աստուածաշէն քաջ նահատակաց հոգիաբուխ սուրբ տառս ի Թուականութեանս Հայոց մեծաց յամիս ՋԼԸ. (1489), ի խնդրոյ աստուածապատիւ և հեզահոգի Ներսէս քահանայի, որ ի սոյն աւուրս խնդիր եղև այս... բուրաստանիս... յիշատակ իւր և ծնաւղաց իւրոց, և կողակցին իւրոյ Երանուհոյն, և զաւակի նորին Ստեփաննոս քահանային...

Յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զՆերսէս մալազն, որ բազում աշխատեցաւ ի կոկել Թղթիս, և աւգնական եղև ի գրել գրոցս... բայց գրեցաւ սա ձեռամբ մեղսամած և անիմաստ գրչի Մովսէս աբեղի, ի գաւառս Խախտեաց, որ այժմ ասի Բաբերդ, ի յանապատս որ կոչի Բերդակ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ Լուսաւորչին, յառաջնորդութեան վանացս տէր Լազար եպիսկոպոսին և Կիրակոս հարսյետին, յիշեսջիք և զՄելիք տնտեսն, և զդուստրն իւր զԵմինեն, որ բազում աշխատութեամբ սպասաւորէր մեզ ի գրել գրոցս, աստուած զիւր հոգին անմահական հացովն կերակրէ, ...և զորդին իւր զՍտեփաննոս քահանայն, և զԱմինատին, և զամուսինն իւր զԱղութն, և զորդին իւր զԱստուածատուրն, և զիս զՄովսէս գծողս...- Անմեղադիր լերուք խոշորութեան և սղալանացս, որ ի սմա, զի կար մեր այսչափ էր։

Արդ, ես՝ Ներսէս քահանայս և Աստուածատուրս, որ ցանկացաւղ եղաք այսմ տառիս և եդաք ի քաղաքս որ կոչի Բաբերդ, ի դուռն սուրբ Աստուածածնին, յիշատակ ինձ և ծնաւղաց մերոց, վկայութեամբ և կամեցողութեամբ պարոն Ղազարոսին և խոճայ Մկրտչին, քահանայիցն և տանուտրացն, զի մի ոք իշխեսցէ հանել զսա ի դրանէ սուրբ Աստուածածնին, ոչ ծախելով, ոչ գրաւելով, ոչ գողանալով, և ոչ յիմոց և ոչ յաւտարաց...

## 182

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆՔ ՆՈՒՐԲ ԳՐԵԱՆՑ

Երևան 55

Գրիչ՝ Գրիգոր Տաթևացի
վայր՝ Եկեղեաց գաւառ,
ս. Յակոբի վանք

ա

161ա Արդ, ես՝ Գրիգոր Տաթևացի ի վանացն Գլակայ, ուր ամփոփեալ կայ նշխարքն Յովաննու Մկրտչին։ Եւ ցանկացան իմաստութեան, և առի

զՀամբաւ Յովաննէս քաջ րաբունապետին, որ է աշխարՀաւ Համշէնցի, ի թագաւորական ազգէ, եթէ նստեալ կայ ի գաւառն Եկեղեաց, ի դրունս սուրբ Յակոբին, և ունի աշակերտք բազում, և ուսուցանէ Հանգոյն նախկին վարդապետաց։ Եւ ես յուղի անկեալ եկա և մտի ի Համալսարանս նորա, և նստա ի յունկդրութիւն աստուածային իմաստութեան, զոր աւրըս-
161ա տաւրէ պատմէր Հոգովն սրբով և տպաւորէր ի միտս աշակերտացն, և յետ ամի միոյ ետ Հրաման ծառայիս իւրոյ. և նստեալ գրեցի զԼուծ[մուն քըս] աստուածիմաստ տառիս Դիոնեսիոսին, ի վայելումն իւր և ծնաւ-ղաց իւրոց։

Ո՛վ դասք լուսերամ քաՀանայից և սպասաւորք բանի, որք Հանդի-պիք սմա աւրինակելով կամ կարդալով, յիշեսջիք ի մաքրափայ[լ] աղաւթս ձեր ստացող սորին զՅովաննէս քաջ րաբունին և զՀայր աստուա-ծային բանին և զլի զարդարեալն իմաստութեամբն՝ տեսականաւն և գործ-նականաւն, և զծնաւղսն իւր, ամէն։ Ընդ նմին և զփծուն գրիչս, զծնաւղսն իմ, և աստուած յիշողացդ և յիշեցելոցս ողորմի, ամէն։

Արդ, գրեցօ Լուծ[մունքս] այս ի թվականիս Հայոց ՋԼԸ. (1489), ընդ Հովանեաւ սուրբ Յակոբին և սուրբ Սիոնին, և յառաջնորդութիւն տէր Ներսէսին, որ սիրող է դասատան և պաՀէ յօժարութեամբ, և աս-տուած սորա վարձաՀատոյց լիցի, ամէն։

Բ

303բ Զմեղուցեալ գրիչս զԳրիգոր Տարաւնացին և զստացող այսմ տառին զՅովաննէս քաջ րաբունին յիշեսջիք յաղաւթս ձեր, ո՛վ բարեմիտ ընթեր-ձաւղք։

## 183

## ԱԻԵՏԱՐԱՆ

Յոնուզի ս. Կարապետի վանք 5, ՀԱ, 1894 թ. էջ 51

Գրիչ՝ Սարգիս Անիձորացի
վայր՝ Կապոսի վանք

...Արդ, խնդիր եղև այսմ աստուածախաւս սուրբ Աւետարանիս Հա-ւատարիմ տանուտէրն Մարտիրոս ի Հալալ վաստակոց իւրոց, յիշատակ իւր Հարազատ և Հասրաթամեռ եղբաւրն՝ Շարիբէկին, որ տղայ Հասա-կաւ փոխեցաւ ի Քրիստոս /// տարոյ և եթող սուգ անմխիթ[ար] ծնաւ-ղացն և եղբաւրն, զի նորափեսայ էր. վասն որոյ լի բերանով աստուած-ողորմի [ասա]ցէք իւրն և ծնողացն նորա՝ Հաւրն Տալախին և մաւրն Լաւճալին, և քուերն Թուրվանդին, ամէն։

Գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվին ՋԼԸ. (1489), ի սուրբ ուխտս Կապոսի, ձեռամբ Սարգիս արՀի վարդապետի Անիձորացոյ, ի խնդրոյ աստուածասէր առն Մարտիրոսին, և եղբաւրն Շարիբէկին, և ծնողացն, և ամենայն արեան մերձաւորաց։ Եղև սա յիշատակ ի դուռն սուրբ Սար-գըսի, ի գիւղս Փողիկ, ի ձեռն տէր Մկրտիչ քաՀանային, որ խնամէ զսուրբ Աւետարանս և վարձս յաստուծոյ առցեն։

Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զվերոյգրեալսն, որ եղև մասնակից և կցորդ սուրբ Աւետարանիս հաւատարիմ տանուտէրն Ղազին, և ետ ի սուրբ Աւետարանս յիշատակ իւր հոգւոյն, և ծնաւղացն Ասլիպարենին, և դստերն Գոճարին, աստուած-ողորմի ասացէք, ամէն։

## 184

## ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 7961

Գրիչ՝ Մարգարէ
վայր՝ Բալու, Նեխճրի գիւղ

185ա ...Արդ, գրեցաւ սուրբ Գանձարանս և [հոգ]ևոր բուրաստանս և եղանակաւոր [տա]ռս ի Բալու գաւառիս, ի դուռն սուրբ [Աստուած]ածնիս, ի գեւղն որ Նեխճրի ասի ///* ի թվիս Հայոց ՋԼԸ. (1489), ձեռամբ անարժան և փանաք գրչի Մարգարէի, որ և եղէ փափաք գանձիս և տաղերուս և զթերին, զինչ որ կայր տաղերուս, ժողովեցի և լցի զմէջն, և այլ պակասութեան աղաչեմ զձեզ, որ անմեղադիր լինիք։

Արդ աղաչեմ զձեզ... աստուած ողորմի ասացէք ինձ Մարգարէ սուտանուն քահանայիս, և իմ ծնողացն, որ է ինձ երախտաւոր հայր՝ Գրիգոր քահանային՝ հանգուց[ելոյն ի Քրիստոս], և մաւրն Յուղիտին, և Նորխա[թունին], և կենակցին իմոյ Թանսուխին, և եղբաւրն իմոյ Յովանիսին, և որդոցն իմ Մակարին և Մեսրոպին, Ղուկասին և Խաչատրին, Գրիգորին և Կարապետին, և ամենայն արեան մերձաւորաց՝ կենդանեաց և ննջեցելոցն, առհասարակ ամենե[ցուն], ամէն։ Ընդ նմին և զհոգևոր եղբայր[ն ի՞մ] զԿարապետ կրէցն։ Արդ, գրեցի զսա [յիշատ]ակ հոգոյ իմոյ և ի վայելումն որդոց ///։

## 185

## ՇԱՐԱԿՆՈՑ

Վենետիկ 809, ՄՏՄ

Գրիչ՝ Կիրակոս
վայր՝ Ձմշկածագ, Խարտիշարի վանք

Գրեցաւ օրինակ՚ս խլկեցի, ի թվ. Հայոց ՋԼԸ. (1489), ի նոյեմբերի Ե. (5) ... ի աշխարհս Ձմշկածագոյ**, ի սուրբ անապատիս Խարտիշարոյ. ընդ հովանեաւ սուրբ Կարապետի և սուրբ Սարգսի... ի յառաջնորդութիւն շնորհալի րաբունապետին Ստեփաննոսին և իւր եղբօրորդւոյն Յովանիսին, և այլ միաբանիցս՝ ԺԵ. (15) աբեղի, ձեռամբ... Կիրակոս սուտանուն աբեղի, ի յիշատակ Թաւաfալին, և իւր որդւոյն Սարգսին, և իւր կնոջն, ի վայելումն Պետրուան սարկաւագին։ Յիշեսջիք զհայրն իմ զՄովսէս և զմայրն իմ զՄարիամ:

---

* Մի բառ չի կարդացվում։

** Մեքենագրված է «յահուրս Չլկակակոյ», ուղղում ենք «յաշխարհս Ձմշկածագոյ», որովհետև Խարտիշարի վանքը գտնվում է Ձմշկածագի շրջանում։

## 186

## ԱՐԾՏԱՐԱՆ

*Ս. Հայկունի, «Բագրեանդ», էջ 186*

*Գրիչ՝* Կիրակոս

*Ծառայիս աստուծոյ* Ատիլշահին, Տավուտին, Մարիամին, Շահղափ-մին, *հօրն, մօրն* Բաճարին, Տարմանին, Ստեփանոսին...

*Արդ, գրեցաւ սա ի թուին Հայոց ՋԼԸ. (1489), ձեռամբ անարժան ծառայիս աստուծոյ* Կիրակոսի, *յիշատակ է բժշկութեան ծառային աս-տուծոյ* Տայուտի *և ամենայն մերձաւորաց իւրոց։*

*Աղաչեմք զամենեսեանդ, որ հանդիպիք սմա կարդալով, տեսանելով կամ յաւրինակելով՝ աստուած-ողորմի ասացէք ինձ՝ մեղաւոր գրչիս, և որ զա*[illegible]*էն ասէ՝ աստուած ողորմի իւրն։*

## 187

## ԱՒՆՏԱՐԱՆ

Ա. Սիւրմէեան, Ցուցակ Հալէպի, Ա, 30, էջ 68

Գրիչ՝ Թարսեղ

ա

534ա ...Այլ և գրեցաւ սա ձեռամբ յոգնամեղ և փցուն գրչի Թարսեղ սուտանուն քահանայի, ի դառն և ի նեղ ժամանակիս, ի թագաւորութեանն Աղուպին*, զի շատ փորձութիւն և նեղութիւն և վիշտ հասոյց քրիստոնեայ ազգին և եկեղեցականացն կարգաւորաց, զի զկարգաւորք, և զհայեզեն** միսն խափանեց, և զմեռեալն ի յած ասաց տանուլ, և զժամ զարնուլն խափանեց, և եկեղեցիք քակեցին ի հընմանէ, և քրիստոնէից աւրենքն հանգարեց, և շատ դառնութիւն արար ի վերայ քրիստոնէիցս. զոր հայցեմք ի բարերարէն աստուծոյ և ի տիրամայր Աստուածածին, զի որպէս զՅուլիանոս սատակեցոյց ի ձեռն Մեռկիւռիոսի զօրավարին. նոյնպէս և սա սատակեցուցէ տէր աստուած և բարձցէ ի միջի մերում և սատակեցուցէ զնա աներևութ նետովն իւրով, և աղատեսցէ զքրիստոնեայքն ի ձեռաց նորա, ամէն։

Արդ, որք հանդիպիք սուրբ Աւետարանիս կարդալով կամ գաղափար առնելով, ուղիղ սրտիւ և լի բերանով աստուած-ողորմի ասացէք հաւատարիմ և աստուածասէր քահանային Աւետիքի, որ ստացաւ զսա ի հալալ արդեանց և յարդար վաստակոց իւրոց, և յիշատակ հոգւոյ իւրոյ, և բարի ծնօղաց իւրոց՝ հօրն Ումեկ քահանային և մօրն Մինային, և ամուսնոյն իւրոյ Այմելիքին, և ծաղկեալ որդոյն իւրեանց՝ նորընծայ քահանային Մելքիսէդի, որ խնամէ զսուրբ Աւետարանս և վայելէ խաղաղութեամբ, այլ և եղբարցն տէր Մելքիսէթին, Սիմէոնին և Սօսթենէսին, և հարսներուն՝ Ջօհարին, Խանմելիքին և Դուխտարին, և զաւակաց նոցին Ալէքսանոսին և///

բ

539ա Դարձեալ, կրկին անգամ աստուած-ողորմի ասացէք Աւետիք քահանային, և եղբարցն Վարդանին և Յոհանին և Պողոսին, և ամենայն արեան մերձաւորացն՝ կենդանեաց և հանգուցելոցն ի Քրիստոս, ամէն։

---

* Ցաղուրը գահակալել է 1478—1490 թթ. ուստի անթվական այս հիշատակարանի գրության վերջին հնարավոր տարեթիվը՝ 1490-ն է։

** Տպված է «զհայ եզեն» (՟), ուղղում ենք ըստ իմաստի՝ «հայեզեն», այսինքն՝ հայի կողմից մորթված։

Եւ արդ, ես Աւետիս քահանայս առի զսուրբ Աւետարանս ի Զաքարայ երիցուն, յիշատակ հոգոյ իմոյ և ի վայելումն որդւոյ իմոյ Մելքիսէդ քահանային և Ալէքսանոս, և զսա իւրեանցն յիշատակ պահէ և /// ոնց իւրեանց զաւակացն, ամէն։

## 138

## ԱՒԵՏԱՐԱՆ

Մայր աթոռ 146, «Էջմիածին», 1961 թ. էջ 61—62

Գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Թանահատի վանք

300բ ...Արդ, աւրհնեալ եմ և բարեբանեալ ամենասուրբ երրորդութիւն յամենայն սրբոց և արժանաւորաց բերանովք, որ ետուր կարողութիւն տկար և անարժան անձիս գծագրել անարժան ձեռաւք և անմաքուր մտաւք զըաստուածածին քո գիծ տառիս աստուածախաւս սուրբ Աւետարանիս...

302ա Վասն որոյ ցան//կացող եղեալք աստուածաշունչ սուրբ Աւետարանիս...* յուսալով ի բան մարգարէին, որ ասէ՝ Երանի որ ունիցի զաւակ ի Սիոն և ընդանի ի վերինն Երուսաղէմ, և ի բան տեառն, որ ասէ՝ Գանձեցէք ձեզ գանձ յերկինս, ուր ոչ գող մերձենայ և ոչ ցեց և ուտիչ ապականէ։ Ըստ յասմ յուսոյ և պայմանի պատուական արքս այսոքիկ հանդերձ հարազատովքն՝ Փիրզատ աղէն, և կենակիցն իւր Մարիանն, և միւս կողակիցն Տալաթն, և որդիքն իւր Աղամիրն, էվատն, Բարսեղ քահանայն, Ղաւնչէն և այլքն առհասարակ մեծ և փոքր խնդրեցին յինէն փափագանաւք գրել զսուրբ Աւետարանս ի դառն և ի վշտաշատ ժամանակիս, զոր նեղիմք յանիրաւ պահանջողաց։

Արդ, եղև գրաւ գրչութեան աստուածախաւս սուրբ Աւետարանիս ի
302բ թվականութեան հայկ//ազեան տումարիս ՋԼԹ. (1490), ի ղռնութեան Աղուպ-պէկին որդոյ Հասան-բէկին, ի հայրապետութեան Հաոց տեառն Սարգսի ի յաթոռ սուրբ Էջմիածնին և յեպիսկոպոսութեան մերում նահանգիս տէր Յոհանէսի և տէր Ստեփանոսի, ի յերկնահանգէտ և ի գերահռչակ սուրբ ուխտիս Թանահատի վանից, ընդ հովանեաւ մաւրս լուսոյ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Կարապետիս, և սուրբ Ստեփանոսիս, և այլ բազմահաւաք սրբութեանս որ աստ կան, և սոցին սպասաւորացս՝ տէր Կարապետին, տէր Մելքիսէթին, տէր Ստեփանոսին և Ստեփանոսի գծագրաւղի, և գեղոյ քահանայից՝ տէր Եղիշէի, տէր Հայրապետի, տէր Անտոնի, նայ և իմոցն ամենայնի՝ հաւրն իմոյ Հասանի և մաւրն Դաւնտիշի, և եղբաւրս՝ Մելիք-Ասաթի, և որդոցն իւրոց, զոր տէր աստուած ընդ երկայն աւուրս պահեսցէ, ամէն։

Եւ զայլ ամենայն արեան մերձաւորսն՝ զկենդանիս և զննջեցեալսն
303ա յիշ//ել աղաչեմ, այլ և զստացող սուրբ Աւետարանիս՝ զվերոյգրեալսն, զի ողորմածն աստուած թողէ զյանցանս նոցա՝ զկամս և զակամս,

* Երկու տող դատարկ է թողնված։

*զմահացուն և զնեբելին, ցաւղն ողորմութեան ցաւղեսցէ յոսկերս ննջեցելոց նոցա և բուսուսցէ յաւրն վերջին, ամէն...-*

*Դարձեալ յիշեցէք զտէր* Անանիէն, *և զկողակիցն իւր* Մարեանն, *զորդին իւր* Մանուէլ, *զեղբայրն իւր* զԱզարիէն, Մարկոսն, *դուստրն. իւր* Մարգարիտն, Եղիսաբեթ, զՄանուէլն, *և զկողակիցն իւր* Կանվարեն, *տէր*
303բ Կոստանդն, *եղբարն* զԱղապէկն, Սարգիսն, // Սարուխան, *դուստրն իւր*
Շահում-աղէն, Խանաղէն, Խանսոլթան, Ազարիէն, *և որդին իւր* Հախում,
*որդին իւր* Պալին, Ամիրն, *դուստրն իւր* Խուրովն, *տէր* Կոստատն, *և կողակիցն իւր* Խանին, *որդին* Անանիա *սարկաւագն*, *եղբարն* Սարուխանն, *քիւր իւր* Տավլաթ-Խանում, Սաբիր-աղէն, Սալվարն:

## 189

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Մ. Սմբատեանց, «Նկարագիր Շամախոյ», էջ 241,*
*Մ. Բարխուտարեանց, «Աղուանից երկիր», էջ 182*

*Գրիչ՝* Արիստակէս
*վայր՝* Սանահին

*Ի թուականիս Հայոց ՋԼԹ. (1490), ի դառն և ի չար ժամանակիս, որով նեղիմք յանօրինաց։ Գրեցաւ Աւետարանս ձեռամբ ումեմն* Արիստակէս *վարդապետի, ի վանս* Սանահնի, *յառաջնորդութեան* Բարսեղ *եպիսկոպոսի։*

## 190

### ՇԱՐԱԿՆՈՑ

Л. М. Меликсет-Беков. Рукопись шаракана XV века, открытая в Одессе (Тифлис, 1913)

*Գրիչ՝* Աբրահամ
*վայր՝* Վերի-Նորավանք

ա

*Արդ, եղև աւարտ գրչութեան սորա ի թվականիս Հայոց տումարի ՋԼԹ. (1490), ի վանս որ կոչի* Վերի-Նորավանս, *ի սուրբ մենարանիս՝ ի դուրս սուրբ Սիովնիս, և սուրբ Աստուածածնիս, և սուրբ Գրիգորիս և այլ սրբութեանցս և սուրբ Նշանացս և սուրբ աջոյս և դամբարանաց սուրբ վարժապետացս, ի յերկիրս որ է* Վայոց *ձոր կոչեցեալ, ի խանութեան տանկաց* Յաղուբ *սուլտանին և ի հայրապետութեան* Վաղարշապատու *տեառն* Սարգսի, *և յարհեպիսկոպոսութեան մերոյս նահանգի տէր* Եղիշէի՝ *յազգէ* Բուրթէլեանց... *Գրեցաւ սա ձեռամբ* Աբրահամու... *Աղաչեմ յիշել ի սուրբ յաղօթս ձեր զվերոյգրեալքս ի սմա՝ ըզտէր* Ջաքարէն *և զտէր* Անանիայն, *զի սա եղև առաջնորդ ի գրչութեան գրոցս, նայ և զիս՝ զանարժան* Աբրահամ *գրիչ՝ հանդերձ ծնողօք և վարդապետօք... և մեզաց թողութիւն խնդրեսցիք ստացողին և գրողին, և տէր աստուած ձեզ պարգևեսցէ զիւր արքայութիւնն, ամէն և եղիցի։*

Բ

Զտէր Անանիայ աբեղայն, և զփոքրիկ մալազն՝ զդեռաբոյս աբեղայն զտէր Զաքարէն, և զիս զանարժան Աբրահամ գրիչ յիշեա, և ասայ միշտ տէր ողորմեայ մեզ և նոցա, թվիս ՋԼԹ. (1490)*։

## 191

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4099

Գրիչ՝ Եղիայ։
վայր՝ Քաշաթաղ գաւառ,
Խոզանավար գիւղ

...Եւ Եղիայ անուն և բազմամեղ և մեղսայմակար և փծուն էրէցս, որ էառ զթուխտս սորայ ի հալալ արդեանց իւրոց և գրեաց զսուրբ յԱւետա-
401բ րանս յիշատակ իւր, և ծնողաց իւրոց՝ // հայրն իւրոյ Շապանին և մաւրն իւրոյ Նիկարին, և պապին իւրո Սալթանին, և մամին իւրո Միրամարգին, և յեղբարցն իւրոց Դատիանին և Սաւալանին և Սալթան[ին], և քուերաց իւրոց, և իւր դստերոյն Շանզատին, ամէն...

Արդ, գրեցաւ սուրբ յԱւետարանս ի թվականիս ՋԼԹ. (1490), ի գաւառիս Քաշքաղուց, ի գեղջս որ կոչի Խոզանավար, ընդ հովանեաւ սուրբ Ստեփանոսի Նախավկայիս և այլ բազմահաւաք սրբոցս, որ աստ կան հաւաքեալ, ի հայրապետութեանն տեառն Սարկսի ի յաշխարհակալութեանն Եաղուպի, որ տիրեաց բազում աշխարհի և գաւառի, և իւրովի կամաւք մինչև ի Խորասան տիրեալ։

Լսողք աղաչանաց ծրողի սորայ Եղիայի, որ հանապազ ի ծոց եկեղեցոյ պահէք և կարդայք զսուրբ յԱւետարանս և աստուած-ողորմի ասէք իւր հոգոյն, և աստուած զձեզ յիշէ իւր արքայութեան, ամէն։

## 192

### ԱՒԵՏԱՐԱՆ

Ղ. Ալիշան, «Հայկարան», ՄՏՄ

Գրիչ՝ Առաքել աբեղա
վայր՝ Ապահունիք վանք

...Ի վանքս որ կոչի Ապահունիք, ի դուռս սուրբ Աստուածածնի և ի սուրբ Նիկողայոս հայրապետիս և սուրբ Յակոբայ և սուրբ Նշխարացս, որ աստ են հաւաքեալ ...Յիշեցէք յաղաւթս ձեր զվանաց առաջնորդն զԹոռոս հայրապետս, զՄարգիս վարդապետն և զայլ եղբայրքն՝ զԽաչատուրն և զԳրիգորն...

* Ունի նաև մի չափածո հիշատակագրություն, որը նորություն չի պարունակում։

## 193

### ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 5134

Գրիչ՝ Մարգարայ
վայր՝ Աղբակու երկիր, Երընկանի գիւղ

...Արդ, զայս ամենայն տեսեալ և իմացեալ ոմանք՝ պատուականք և
353բ գովելիք հարազատ եղբայրքս՝ մեծ և իմաստուն // տանուտէրն Արապշայ,
և եղբայրք նորա՝ Յոհանէս քահանայ, Յակոբ և Սուլտանշայ, և ցանգա-
ցան այսմ աստուածախաւս Աւետարանիս յիշատակ հոգոյ իւրեանց, և
ծնաւղացն իւրոյ՝ հաւրն Ստեփանոսին և մաւրն Սաղդաթին, և այլ ամե-
նայն ազգականացն...*

553բ Արդ, դրեցաւ սա ի յերկիրս Աղխ // բակու, ի գեաւղս որ կոչի Երըն-
կանի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի, ի թուականիս Հայոց ի յՋ. և
ԼԹ. (1490) ամին, ի յառաջնորդութիւն սուրբ աթոռոյն Բարդուղիմէոսի
առաքելոյն տէր Յովանէս արքեպիսկոպոսի և Ղազար կուսակրօն փիլի-
սոփայի, ձեռամբ անիմաստ և մեղսաթաւալ Մարգարայ անարհեստ գրչի։
...Մանաւանդ երկու այրի կանանցն Խաթիպին և Աննային, որ պատ-
ճառ եղեն սուրբ Աւետարանիս և աւգնական եղեն ի գին սորա, վարձահա-
տոյց լիցի նոցա Քրիստոս...

354ա Դարձեալ ...յիշման արժանի առնէք զանարժան և զանպիտան ծա-
ռայն աստուծոյ զՄարգարայ գծող սորայ ... և իմ ծնօղացն՝ Մկրտիչ քա-
հանայի և Շնօհորի, և եղբօրն Յովանէս քահանայի, և քեռն Նշխունի, և
վարդպետացն՝ Զաքարիայ վարդապետին և Վարդան կազմողին, և այլ
354բ ամենայն երախտաւորացն մերոց՝ կենդանեաց և // հանգուցելոց, ամէն։
...Աւա՜ղ զժամանակի սուտ քահանայքս, որ եմք իբրև զաշխարհա-
կան, և աշխարհականքն՝ իբրև զչեղեալսն...

## 194

### ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 3857

Գրիչ՝ Ազարիայ
վայր՝ Բարդողիմէոսի վանք

...Ուստի և տեսեալ զսորայս անճառ փրկագործութեան խորհուրդ
347ա բարեմիտ և հեզահոգի և հաւատա // րիմ տանուտէրն Դաւիթ մղդասին,
զոր մեծափափագ հաւատով և յուսով ցանկացաւ այսմ աստուածախաւս
սուրբ Աւետարանիս և ետ դրել զսա յիշատակ հոգոյ իւրոյ և ծնողաց իւ-
րոց Թումաշայ մզգասուն և Բաղդատ-Խաթունին, և կենակցին իւրոյ Թան-
մէլիքին, և այլ ամենայն արեան մերձաւորաց նոցին, ամէն։
/// ձե]ռամբ ան[իմաստ] և տխմար գրչի Ազարիայ սուտանուն երի-
ցու, որ զանունս ունիմ և զգործս ոչ, ի կարգ քահանայութեան հրաւիրե-
ցայ և գործով ուրացեալ գտայ։

* Բաց ենք թողնում մի ընդարձակ հատված, ուր հիշվում են ստացողների մեծաթիվ ազ-
գականները։

Եւ իմ՝ անընդունակ գոր[ով] յարուեստ գրչութեան և բազում մեղաց ցնորիւք պաշարեալ, այլ ըստ կարի մերում, զոր պարգևեաց մեզ մարդասէր հոգին աստուծոյ |||* պանդխտութեամբ և ղատապարտութեամբ ան-
347բ ձինս, զոր վասն ծովացեալ մեղաց իմոց ժամանէ ինձ ազգի ազգի պատուհաս։

Ի մեծ թուիս հայկազեան ՋԼԹ. (1490), ի կաթողիկոսութեան Վաղարշապատու ամենայն Հայոց տեառն Սարգսի և Գրիգոր քաջունապետի, ի գաւառս որ կոչի Աղբակ, ի սուրբ և ի գերահռչակ յաթոռս Բարդողիմէոսի և Հաղպետի (՞)։ Եւ այժմ յաջորդեալ ունի զսուրբ աթոռս պանծալի և հեզահոգի արհեպիսկոպոսն տէր Յովանէս և մեծ քաջունին Մովսէս:

Արդ, որք ճաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենալի սեղանոյս, յիշեսջիք ի սուրբ յաղաւթս ձեր զստացող սուրբ Աւետարանիս
348ա զհե||զահոգի և զքաջիմիտ տանուտէրն զԴաւիթ մղդասի ղարբինն...**
348բ ||| Յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր զմեղապարտ գծողս զԱզարիա՝ մեղաւք տառապեալ ոգիս և զծնօղսն իմ և զուսուցիչն զԿարապետ քահանայն, որ նահատակեցաւ ի յԱրճէշ, քաղաքի, և զմայրն իմ զՍար[դա]թ, և զամենայն երախտաւորքն մեր, [որ]ք խրատ տալով, կերակրելով, լուսնալով և թափելով խնամս տանին ի վերայ մեր. և զորքսաւէր և զկուսակրօն կրօնաւորն զտէր Յոճանէս՝ զփակակալ սուրբ Բարդողիմէոսի տաճարիս, որ աշխատեցաւ ի կոկել թղթիս. և որ առատն է ի տուրս բարեաց տացէ ձեզ ղառատ ողորմութիւնն իւր, ամէն։

## 195

## ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 6495

Գրիչ՝ Յովանէս Արճիշեցի
վայր՝ Արճէշ

ա

436ա ...Գրեցաւ սուրբ Գանձարանս՝ աստուածային սուրբ կրտակըս, ուրախութիւնս մանկանց եկեղեցո և տօնաւէր ժողովրդոց՝ ի քաղաքիս Արճէշ կոչեցեալ, ընդ հովանեաւ կըմբեթայարկ բազում տաճարացս, ի դուռ սուրբ կաթողիկէ Աստուածածնիս, ի թուականութեանըս Հայոց ՋԼԹ. (1490) ամին, ի խնդրոյ սրբամիտ աստուածասէր և հեզահոգի կրաւնա-

---

* Երեք տող մաշված ու պատռված է։
** Դուրս ենք թողնում մի հատված, ուր երկու անգամ թվարկվում է ստացող Դավթի ազգականները։

ւորի տէր Սարգսի, որ եռափափագ սրտիւ և հաստատուն յուսով ստացաւ զանառիկ մեծութիւնս և զփարթամ հարըստութիւնս, զուրախութիւնս մանկանց եկեղեցոյ զսուրբ Գանձարանս յիշատակ բարի իւրն, և բարեպաշտ ծընաւղացն իւրոց՝ հաւրն Արապշին և մաւրն Ջինարին, և հաւրեղբաւրն Ցատուխշին, և եղբաւրն՝ գնացելոյն առ աստուած՝ Ատոմին, և կենդանի եղբաւրն Մուրատին, և ամենայն երախտաւորացն իւրոց և ազգականացն։

Վասն որոյ ամենեքեան ուղիղ սրտիւ և լի բերանով աստուած-ողորմի ասացէք ստացօղի սուրբ գրոցս՝ իմաստուն և հանճարեղ կրաւնաւորին տէր Սարգսին, և ամենայն արեան մերձաւորաց նորին, և երախտաւո-
436բ րաց նորին, և տէր աստուած, // որ առատն է ի տուրըս բարեաց՝ ձեզ ամենեցուն տացէ զիւր առատ ողորմութիւնն և զանըսպառ ուրախութիւնն և զերկնից արքայութիւնն, ամէն։

Դարձեալ, կրկին յիշեցէք առ աստուած զստացաւղ սուրբ գրոցս զտէր Սարգիս աբեղայն, որ ստացաւ զսուրբ Գանձարանս և ետ նուէր, ընծայ և պատարագ ի դուռըն Ուռընկառու սուրբ Նըշանիս, ի վայելումն առաջնորդի սուրբ ուխտիս քաջ րաբունոյն Գրիգոր վարդապետի, և միաբան սուրբ եղբարցն՝ տէր Յովանէս քաջ փ[ի]լիսոփայի, և տէր Ստեփանոս հերպետին, և տէր Խաչատուրուն, և տէր Վարդանին, և տէր Մկրտչին, և տէր Աստուածատուրուն, և նորընծա քահանային Ներսիսին: Եւ դարձեալ աստուած-ողորմի ասացէք Մոկացի տէր Ստեփանոսին, որ զսակաւ աւրինակն շնորհեաց, և տէր Խաչատուրուն՝ գրոց աշակերտին, և այլ ամենայն միաբանից սուրբ ուխտիս. որոց տէր աստուած վայելել տացէ և յետ աստեացս ելանելոյ զերկնից արքայութիւնն պարգեւեսցէ, ամէն։

Գրեցաւ սուրբ Գանձարանս ի յընտիր աւրինակաց, զի Գ. (3) աւրինակ եդաք և զմիոյ պակասութիւնն ի յերիցն կատարեցաք ի դառն և ի նեղ ժամանակիս, յորում գնաց Սուլէման-բէկն բազում զաւրաւք ի վերայ բերդին Ամեդոյ: Յայսմ ամի ես անարժանս Յովանէս սուտանուն քահանայս
437ա Արճիշեցի գր // եցի զսուրբ Գանձարանս, վասն որոյ աղաչեմ զձեր սըրբութիւնդ աստուած-ողորմի ասել անարժանիս Յովանիսիս և իմ ծընաւղացն՝ Աստուածատուրուն և Գուլիխասին, և հօրեղբաւրն իմոյ տէր Միքայէլ կրաւնաւորին, և Յովանէս վարդապետին, որ բազում երախտիք ունին ի վերայ իմ։

Արդ, գրեցաւ սա ի հայրապետութեան տեառն տէր Սարգսի, և յաթոռակալութեան երկրիս մերոյ տէր Յովանէս արհեպիսկոպոսին, և ի թագաւորութեանն տաճկաց Եաղուպ ղանին։

Եղբարք, խոշորութեան և սխալանաց գրոյս անմեղադիր լերուք, զի կար մեր այս էր։

Դարձեալ, աղաչեմք զսրբութիւնդ ձեր, ո՛վ պատուական դասք քահանայից և մանկունք Սիոնի սուրբ եկեղեցոյ, ինձ՝ անարժանիս Յովանիսի և իմոցըն ամենայնի, նա և ուսուցիչն իմոյ տէր Յովանիսին, և ծնողացն նորին՝ Մանկասարին աստուած-ողորմի ասել, և Քրիստոս աստուած, որ առատն է ի տուրս բարեաց ձեզ և մեզ, առհասարակ, ողորմեսցի յիւր միւսանգամ գալըստեանն, ամէն։

## Բ

### Յիշատակարան եւ գովեստ վարդապետացն

1բ Ի յախտաժէտ ըստեանց ճնշեալ,
Սպիտակ գինիս այս նոր յայտնեալ՝
Տէր Մխիթար ի հոգս անկեալ,
Պրտուղ-պըտուղ զայս հաւաքեալ։
Ոդեալ ընդ սոյն շարըս բանին
2ա Մեծ Խաչատուր Կեչառեցին,
Այլ և քննաւղ խորոց խորին
Տէր Մըկըրտիչն սքանչելին.
Գէորգէոս մեծ րաբունին,
Տէր Մանուէլն ընդ Մաթէին,
Տէր Առաքել Բաղիշեցին,
Եւ Յովաննէս Թըլգուրանցին,
Բոլոր լուսին մէջ գիշերին՝
Ծերենց Գրիգոր Խըլաթեցին,
Դաւիթ յարմար՝ ընդ Յոհանին,
Եւ Ոստակէս Հիզանեցին,
Տէր Ստեփանոս՝ հըզաւր արին,
Եւ տէր Յակոբ Արծկեցին:
Ըզմեղեդիսն ներբողին,
Զոր և աստէն շարեալ հիւսին՝
Երգեաց Ներսէսըն Շնորհալին,
Եւ սուրբ Գրիգոր Նարեկացին,
Սըրիկ Կոստանդ՝ քաջն և արին,
'Ի Ատոմ էրէց Ոստանեցին,
Եւ մեծ Գրիգորըն Տաթեւացին,
Եւ երգ Աւագ վարդապետին
Քաղցր և անոյշ, լաւ մեղեդին
Եւ այլքն, որ չեն ի սոյն թւին
Եւ չճանաչեմք զանուանս նոցին,
Որ կան գըրեալ յանչինչ գըրին
Եւ յանըսպառ յաւիտենին։
Արդ, [ըզպ]տուղ շըթանց սոցին,
Ըզվաղահասն և զվերջին՝
Աստուածային շնորհաց տեղին
Գրիգոր Ծերենց հեզահոգին
Զ[եռա]մբ իւրով միատեղին,
/// ի մի գումար յեռին,
/// ի բացեա ձգեալ լինին,
Եւ քաղցրահամ ճաշակ կազմին։
Յեկեղեցոյ կիւլըն կախփն

Ի դիենալ մանկանց նորին,
Հայցեցէք ինձ մասն ի բաժին
Գրծողիս դրանս ի քարտիսին,
Այլ և զգանձս ստացողին
Տէր Սարգսի կրաւնաւորին,
'Ի իւր ծընաւղացն ամենայնին
Լիով ասել զտէր-ողորմին*։

196

ՏՕՆԱԿԱՆ

Դ. Ալիշան, «Հայկարան»

Գրիչ՝ Յակոբ
Վայր՝ Խլաթ-Մատնէվանք

Աւարտեցաւ ոսկեփոր Տաւնականս ի մայրաքաղաքս Խլաթ, ընդ հովանեաւ սուրբ տաճարիս Մատնէվանից սուրբ Աստուածածնի ժԱ. (11) խորանաց, և սուրբ Գէորգ զաւրավարի, յառաջնորդութեան սուրբ ուխտիս տէր Վարդան սրբասնեալ արհիեպիսկոպոսին, ձեռամբ... Յակոբ գրչի, ի խնդրոյ մահտեսի Աստուածատուր կրաւնաւորի, յիշատակ ... ծնողաց Ջանիբէկին և Գոհար-Մէլիքին. և մեծ և երախտաւոր մօրն Տովլաթին, և եղբարցն Խաչատուրին և Խտրշին, և մեծ պապանցն Կարապետին և Դոմային, և հաւրեղբարցն՝ Ատոմին, և Մկրտչին, Գուրջիբէկին, և Սինչին, և Շաղուբաթին, ...յամի Ջ. և ԼԹ. (1490) ...ի հայրապետութեան տեառն Սարգսի ...և ի բռնակալութեան Թաւրիզոյ թախտի Աղուպ-բէկի՝ որդւոյ Ուզուն-Հասանի... Յիշեցէք զքաջ բաբունին՝ զէրեսփոխան և զիշխեցուցող միջադեռաց... վարդապետըն զտէր Աւետիք... և զհոգեոր եղբայրն իմ զտէր Յովհաննէս վանից հայր, և զմիւս տէր Յովհաննէս, և զտէր Գրիգոր, զտէր Ստեփանոս, զտէր Թումա, և զտէր Ստեփանոս, և զՍիմէոն, քանզի ստացաւ զսա... Աստուածատուր քահանայ...

197

ԱԻՆՏԱՐԱՆ

Երևան 7583

Գրիչ՝ Հայրապետ
Վայր՝ Աղթամար

267բ ...Եւ արդ, ես՝ յետինս ի գրչաց և անարժանս ի կարգաւորաց սուտանուն աբեղայ Հայրապետ՝ ... կատարեցի զսա մեղսամած մատամբ իմով յաստուածապահ կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ ամենայաղթ սուրբ խաչիս և սուրբ Սարգիս զաւրավարիս, ի հայրապետութեան տեառն Զաքարիայի, և ի թըւականիս մերում ի ՋԼԹ. (1490)...

---

* Վերջին 16 տողերն են պատկանում Յովհաննես Արճիշեցուն։

269ա Բազում աշխատանօք գծագրեցի զսա ի ստոյգ և յընդիր աւրինակէ՝
կենաւք տառապանօք, ի դառն և ի վըշտաքեր ժամանակիս, յորում կամք
ընդ հարկի անօրինաց։

Արդ ...յիշեսջիք յերկնագնաց յաղօթս ձեր զյառաջ յիշեցեալ սուրբ
Աւետարանիս ստացողսն զԴովլաթ-Խաթունն, և զծնաւղսն իւր՝ զՇաhար
և զԽուն-Մելէք*, և հաւրն Ստեփանոսին, և մօրն Փաշա-Մելէքին, և քուերն
Սուլտան-Մելէքին, և քեռուն Թումին, և հաւրեղբօրն Աստուածատուրն, և
որդոյն Սարգսին և Մուրադին, Գրիգորին և Շահըստանին, և Միրաշին**,
որ միջնորդ եղև սուրբ Աւետարանին, Մկրտչին, և ուր որդոյն Յովանիսին,
և մօրն Դէկիշին, և Ստեփանոսին, և զայլ ամենայն ազգատոհմն նոցին՝
զկենդանիսն և զհանգուցեալսն, յիշեցէք ի Քրիստոս և լի բերանով և
269բ ուղիղ սրտիւ աստուած-ողորմի ասացէք // Դովլաթ-Խաթունին***...

Ընդ նոսին և զանպիտան Հայրապետ մեղաւք գծողս յիշեցէք յաղաւթս ձեր, որ զձև ունիմ կրաւնաւորի և ի գործոց թափուր և ունայն, և զծընաւղս իմ զԽաչատուր և զՈսկիտիկին, և զեղբայրն իմ զՅոհանէս, և զկենակիցն իւր զՇարմելիք, և զեղբաւրորդին իմ զԿարապետ քահանայն, որ ծաղկեց զսուրբ Աւետարանս, և զերախտաւոր քեռին իմ զՄինասենց Թումայն, և զծնաւղսն իւր, զամենայն արեան մերձաւորքն մեր...

Եւ արդ, ես Դովլաթ-Խաթունս տուի զսուրբ Աւետարանս ի Հոգոց վանից սուրբ Աստուածածնի դուռնս, և մի ոք իշխեսցէ հեռացուցանել/!/****։

## 198

## ՃԱՇՈՑ

Երևան 4870

Նորոգող՝ Յովանէս

469ա Եւ արդ, դարձեալ ի ՋԼԹ. (1490) թվիս Հայոց, ի հայրապետութեան
տեառն Զաքարիայ նորընծայ կաթողիկոսի, երջանիկ ոմն և աստուածային ծրիւքն բարգաւաճեալ, սրբասէր և հեզահոգի եպիսկոպոսն տէր Յովանէս՝ տեղապահ և յաջորդ և ժառանգորդ նոյն տէր Թումայ եպիսկոպոսի Խցերուն՝ ստացաւղի գրոցս, ետես զսուրբ գիրքս զայս, զի էր կապն ճանգարեալ և թուլացեալ. եւ ետ վերստին նորոգել զսա...*****

* Հիշատակարանի սկզբի մասում նույնպես թվարկված են ստացող Դովլաթ-Խաթունի մերձավորներն ու ազգականները։ Այնտեղ մոր անունն է «Խաթուն-Մելէք»։

** Հավանաբար հիշատակարանի սկզբի մասում հիշատակված «Ոսկերիչ Մուրատշէն» է։

*** Ձեռագրի 9բ էջում խաչի աջ ու ձախ կողմերում նկարված են մի տղամարդու և մի կնոջ պատկերներ։ Կինը, նրա գլխավերևում եղող մակագրության համաձայն՝ «Խաթուն-Մելէք Դովլաթն է»։

**** Հիշատակարանը ամբողջությամբ, իր «փառք»-ով, ու կրկնություններով, հրատարակված է Հ. Աճառյանի կողմից, տե՛ս Ցուցակ հայերեն ձեռագրաց Նոր-Բայազետի, Վիեննա, 1924, էջ 11—12։

***** Ձեռագիրն ընդօրինակված է 1385 թվականին։

## 199

### ԳԱՆՁԱՐԱՆ

*Ե. Լալայեան, Ցուցակ Վասպուրականի 53։*

Գրիչ՝ Դաւիթ
վայր՝ Մոկք, Գինակաձց գիւղ

*...Արդ, ցանկացաւղ եղև այս մարգարտաշար սուրբ գրոցս պատուական և աստուածասէր տանուտէրն Յովանէս Հեարն*...*

*Աւարտեցաւ սուրբ գիրքս ի յերկիրս* Մոկաց, *ի գեղին* Գինաւկանց. *ընդ հովանեաւ սուրբ Նշանին և սուրբ Գէորգեայ զաւրայվարին, ձեռամբ անարժան բազմամեղ* Դաւիթ *գրչի ... ի հայրապետութեան տեառն տէր* Ստեփանոսին *և փոխանորդ նորին սրբոյ տէր* Զաքարին, *որ յայսմ ամի ալրինեցին՝ ի թվականիս Հայոց ՋԼԹ. (1490)...*

*Արդ, աղաչեմ զձեզ յիշեցէք զանպիտան գրիչս սուտանուն Դաւիթ..., և զծնօղսն իմ ըստ մարմնոյ զ*Մարտիրոս *մողդասին և զմայրն իմ զ*Մինէն, *և զեղբարք իմ զ*Մերոն, *զ*Դերոն, *զ*Սարգիսն, *և զ*Գրիգորն՝ *զփոխեցեալքն ի Քրիստոս, և զմիւս եղբարս, և զկենակիցն իւր, և զաւակն իւրեանց զ*Առաքելն *և զ*Գրիգորն, *ամէն։*

*Դարձեալ աղաչ[եմ] զսրբութիւնդ ձեր յիշեցէք յերկնաքաղցի կաղօթքս ձեր զմեղաւոր գծողս, և զծնողսն իմ, զհոգւոր հայրն իմ զտէր* Ստեփանոս *կաթողիկոսն, որ յայս տարի փոխեցաւ ի Քրիստոս, և զվարդապետն իմ զտէր* Ներսէս *եպիսկոպոսն, և զայլ երախտաւորն մեր, որ շատ և որ սակաւ...*

## 200

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Նոր Ջուղա 500, ՄՏՄ*

Գրիչ՝ Առաքել
վայր՝ Մոկք, Բոնաշէն գիւղ

284բ— *...Արդ, կատարեցաւ աստուածախաւս և տիեզերայաքարոզ սուրբ Աւե-*
287բ *տարանս ձեռամբ անարժան, անիմաստ գրչի* Առաքելի, *ի խնդրոյ* Դալաթի *և* Հաթուն-Մելիքին... *Եւ ետ գրել զսայ յիշատակ բարի հոգոյ իւրոյ, և ետու ի դուռն սուրբ Ստեփաննոսի* Ոստան *քաղաքիս, ի վայելումն մանկանց եկեղեցւոյ։ Դարձեալ յիշեցէք զքաղաքի քահանայքն տէր* Մելքսէթ *աւագերէց, տէր* Կարապետ, *տէր* Թադէոս, *տէր* Առաքել *մուղդասի, տէր* Մեսրոպ, *տէր* Աւետիս, *տէր* Գրիգոր, *տէր* Բարսեղ, *տէր* Թումէն, *տէր* Մկրտիչ, *տէր* Ատոմ, *տէր* Յովաննէս, *տէր* Ստեփանոս, *տէր* Ներսէս, *տէր* Ղազար, *սարկաւագն* Յովանէս, *զոր տէր աստուած բարով վայելել տայ։*

*Եւ արդ ես՝ ունայնս ի բարեաց գործոց* Առաքել *քահանայ, ըստ տկարութեանս գրեցի զսուրբ Աւետարանս ի յերկիրս* Մոգկացս, *ի գեաւղ, որ կոչի* Բոնաշէն, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի, և սուրբ Կարապե-*

** Շարունակության մեջ այս նույն բառը գործածված է մեկ անգամ «Խէքն», մի այլ անգամ՝ «Հէքն» ձևերով։*

տին, և սուրբ Գէորգայ զօրավարին։ Ի թուականութեան Հայոց ՋԼԹ. (1490), ի հայրապետութեան Աղբամարայ տէր Զաքարին, ի թագաւորութիւն Հայոց՝ Քրիստոս է անմահ թագաւոր, որ տէրն է երկնից և երկրի...

Եւ արդ, ես Դաւլաթս ետու գրել սուրբ Աւետարանս յիշատակ հոգո իմո, զի սայ եղիցի ինձ զաւակ յայսմ աշխարհի...։ Եւ դարձեալ աղաչեմ ձեզ զամենայնսդ՝ յիշեցէք ի Քրիստոս և զիս՝ զբազմամեղս անարժան սուտանուն գրիչս Առաքել քահանայ, և զհայրն իմ, որ փոխեալ է առ Քրիստոս, և զմայր իմ Շարման, և զեղբարքն իմ՝ զՅովանէս քահանայ և զՄովսէս քահանայ և զՄկրտիչ, ամէն, եւ զկողակից իմ Մոչան, և զաւակք մեր՝ զՎարդան և Ստեփանոս և Սարգիս, և ամենայն արեան մերձաւորսն...։

Յիշեցէք ի Քրիստոս զուսթա Խաչատուր և զկողակից իւր զԱզիզ, որ կամակից եղև սուրբ Աւետարանիս, ...զԹումայ, որ մարտիրոսացաւ [ի] Խիզան:

...Դարձեալ յիշեցէք ղքաղաքի տանուտէրս խուջա Եզդիբաղշիս, պարոն Գըրճն, զԱստուածատուր, և զկողակից իւր Թաքար-Հաթուն...

## 201

### ԱԻԵՏԱՐԱՆ

Ե. Լալայեան, Յուցակ Վասպուրականի 210, սյուն. 515—516

Գրիչ՝ Առաքել
վայր՝ Մոկաց երկիր,
Բռնաշէն գյուղ

...Արդ, գրեցաւ և կատարեցաւ աստուածախաւս և լուսապայծառ և բարեվայելուչ և բարեխօս աշխարհի, հիւանդացն բժիշկ և քաւիչ մեղուցելոցս սուրբ Աւետարանս այս ձեռամբ անարժան և տխմար և անարուեստ գրչի Առաքել քահանայի, զոր ի վաղուց հետէ ցանկայր այսմ սուրբ և աստուածախաւս Աւետարանիս... Յիշեցէք և զիս՝ բազմամեղս, ունայնս ի բարեաց Առաքել քահանայ, [որ] ըստ տկարութեանս գրեցի սուրբ Աւետարանս ի յերկիր Մոզկաց, ի գեաւղն որ կոչի Բռնաշէն, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և սուրբ Կարապետին, և Գէորգեայ զաւրավարին, ի թվականութեանս Հայոց ՋԼԹ. (1490)։

Եւ արդ ես՝ Սանակ կրօնաւորս, ետու սուրբ Աւետարանս ի սուրբ Նշանիս Ալանայ, ի յիշատակ հոգւոյ իմոյ... Սուրբ խաչին, տանի Յայտնութեան և Աւագ զատկին՝ զյիշատակարանս կարդաք։

## 202

### ՄԱՇՏՈՑ

Երևան 5978

Վայր՝ Յերկիրս Մոկաց,
Շատահ քաղաք

120բ Փառք ... [որ] ետ կարողութիւն տկար անձինս աւարտ առնել սուրբ Մաշտոցիս, ի վայելումն Յոհանէս քահանայիս, և յիշատակ հոգոց ննջե-

ցելոցն, և իւր ծնաւղացն հօրն՝ Յովաննիսին և մաւրն Մուղալին, և հօրեղբօրն Սուլտանշին, և կնոջն Մարգա[ր]տին, և եղբարցն խուջայ Ասպայանշին, և Թովմայբէկին, և Կարապետ պըղընձգործին, և իւր կնոջն Սուլտանին, և իւր ծնաւղացն և ամենայն արեան մերձաւորացն, ամէն։

121ա Արդ, դրեցաւ Մաշտոցս [քահանայա՞թ]աղ ի յերկիրս Մոկաց, ի քաղաքս որ Շատաճ ասի, ի Թըւականիս հայկազան սեռին ՋԼԹ. (1490) ամիս, ի դառնացեալ ժամանակիս, որ խիստ նեղացեր է ազգ քրիստոնեայ ազգիս։

Դարձեալ, աղաչեմ զձեզ զդասդ քահա[նա]յիցդ և որք տեսանելով ի կամ աւրինակելով՝ յիշեցէք զստացող գրոցս զՅոհաննէս քահանայն և զիւրք ամենայն, և զեղկելի գրիչս և զյիմսն ամենայն, ամէն, և աստուած յիշողացդ ողորմեսցի, ամէն։

## 203

### ՃԱՌԸՆՏԻՐ

Ե. Լալայեան. Ցուցակ Վասպուրականի 713, ԼԽ

Գրիչ՝ Պարսամ
վայր՝ Մաշկագտակ գիւղ

Արդ, ի վերջին դարին և երեկոյացեալ ժամանակիս երևեալ ումն աստուածասէր և հաւատարիմ, աստուածային տրւքն բարգաւաճեալ Վարդան կրաւնաւորն և հարազատ եղբայրն իւր Աստուածատուր ... զի ետուն գծագրեալ զսա յիշատակ անջինջ հոգոց իւրեանց և ծնողաց իւրեանց Յակոբին և Խաթունին /// մաղդասոյն և այլն ամենայն մերձաւորացն իւրեանց՝ կենդանեաց [և հանգուցելոց]...

Եւ արդ, անարժան սոսկանուն Պարսամ սարկաւագ ... կատարեցի զսա մեղսամած մատամբ իմով, բազում և մեծ աշխատութեամբ հասուցի զսա յաւարտումն յաստուածապահ գեղս Մաշկագտակ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Գէորգ զօրավարիս, ի հայրապետութեան նորընծայ փոքր տեառն Զաքարիայի, և ի փաթշահութեան Թաւրիզու Ճախտին Աղուբէկի և իշխանութեան Սուլիման-բէկի, ի թվականութեանս Հայոց ԹՃ. և ԼԹ. (1490), ի զառն և ի վշտալից ժամանակիս, յորում կամք ընդ հարկի և ընդ ծառայութեան ազգին նետողաց, վասն որոյ բարեխաւսութեամբ սուրբ և փառաւորեալ Աստուածածնին Մարիամու և աղաչանաւք ամենայն ընտրելոց սրբոց Քրիստոս աստուած, որ տէրն է փառաց և տուող ///։

## 204

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 6333 (Յ. Բարաղամեան, Ցուցակ Վասպուրականի), 267, ԼԽ

Գրիչ՝ Պարսամ
վայր՝ Մաշկագտակ գիւղ

Եւ արդ, ես պիղծս ի սրբոց, ագէտս ի գիտնոց սոսկական Պարսամ սարկաւագս տեսի զսէր և զփափագ աստուածասէր և սրբակեաց Վարդան

կրօնաւորին, կարողութեամբ աստուծոյ յանգ հանեալ կատարեցի զսուրբ տառս և աստուածային կտակս յաստուածապահ գեօղս որ Մաշկագտակ կոչի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Գէորգ զաւրաւորիս, ի հայրապետութեան Նորընծայ փոքր տէր Զաքարիայի, և ի փադիշահութեան Թաւրիզոյ թախթին Աղուբ-բէկին, և յիշխանութեան Սուլէման-բէկի, ի թվականութեանս Հայոց ՋԼԹ. (1490), ի դառն և ի վշտալից ժամանակիս, որում կամք ընդ հարկի ///։

## 205

### ԱԻԵՏԱՐԱՆ

**Երևան 5240**

Նորոգող՝ Սարգիս երէց
Վայր՝ Մաշկագտակ գիւղ

298բ ...Արդ, նորոգեցաւ սուրբ Աւետարանս ի վերջին ժամանակիս, ի
թվականիս Հայոց ՋԼԹ. (1490)։ Աստուած աւրհնէ զՄաշկագտակայ տա-
նուտէրք, զըռէս Ա[ս]պահանշէն, զԳուրջիբէկն, զԱտոմն, զխուդաքախշն,
զՎարդան[ն], զՄխիթարն, զամենք ։առհասարակ՝ զմեծ և զփոքր, որ-
ետուն նորոգել զսուրբ Աւետարանս։ Արարիչն աստուած միոյն հարիւրա-
պատիկ և հազարապատիկ ստա և ի հանդեր[ձ]եալն պարգևեսցէ ձեզ և
299ա ձեր ննջե//ցելոցն, ամէն։ Յիշեցէք յաղօթս ձեր զՍարգիս երէցս, և աս-
տուած զձեզ յիշէ, ամէն։

## 206

### ԱԻԵՏԱՐԱՆ

**Ե. Լալայեան, Ցուցակ Վասպուրականի 209, սյուն. 513—516, (Մոկսի Քաղաքի թաղի Երեք խորան եկ. 10)**

Գրիչ՝ Յոհաննէս

**ա**

...Քրիստոս աստուած, որ եկիր ի Բիթայնիայ և յարուցեր զՂազարոս չորեքաւրեայ ի մեռելոց՝ յարոյ ի քո միւսանգամ գալստեան զուարթերե։ և պայծառ լուսով զհոգին Գրիգորին, Շախիսաանի, և խոջա Ջաւզուն, և կնոջ իւր Հաթունշին, ամէն... Եւ այլ պահեսցէ Քրիստոս աստուած և աւրհնեսցէ զխոջա Ջաւզն, և զորդին իւր Դովլաթ զամենայն աւրհնու-թեամբ աւրհնէ, որ աւրհնեաց զՄովսէսն, զԱբրահամն, զՍահակն, և զՅակոբն և զերկոտասան որդիքն այն։ Աւրհնէ տէր աստուած զխոջա Ջաւզն, և զկին իւր Հաթունշին, և զաւակն իւր զԴոլվաթշին, և զկին իւր՝ Փառոշան, մինչև ի խորին ծերութիւն, ամէն։ ...Բացաւղն արքայութեան երկնից բացցէ զդուռն ողորմութեան Գրիգորին, և կնոջ Շախըսաանին, և զօա-կացն իւր Անտոնին, ամէն։

Եւ այլ և ինձ՝ սուտանուն մեղաւոր գրչիս Յոհաննէս աբեղայիս, և ծնաւղացն իմոց, և վարդապետին իմոյ Խաչէլի՝ լի բերանով աստուածողորմի ասացէք սոցա, ամէն։

Թվականս ՋԼԹ. (1490)...

Բ

Ես Յովհանէս* և որդիս իմ Դովլաթս գրել տուինք զսուրբ Աւետարանս յիշատակ հոգոց մերոց, և ծնաւղաց մերոց՝ հաւրն Գրիգորին և մաւրն Շախստանին**, և եղբօրն Անտոնին, և ետուք ի դուռն սուրբ Աստուածածնին Անջողոց, յիշատակ հոգոց մերոց։ Եւ ոչ ոք կարէ հեռացուցանել ի դրանէ սուրբ Աստուածածնին, ոչ ի մերոց և ոչ յաւտարաց, ոչ ի քահանայից և ոչ ի սարկաւագաց, այլ անջինջ մնայ ի դուռն Աստուածածնին։ Եւ որ լի բերանով ասէ զաստուած-ողորմին՝ միոյն հազար իւրն ողորմեսցի, ամէն, ամէն։

## 207

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4766

Գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Տարաւնոյ գաւառ,
Եղրդուտ մենաստան

261բ ...Գրեցաւ աստուածախօս և աւետաբեր սուրբ Աւետարանս ի թվիս Հայոց ՋԼԹ. (1490), ձեռամբ անարժան և մեղսաթաւալ գրչի Ստեփանոսի, ի գաւառս Տարաւնոյ, յերկնահանգէտ սուրբ ուխտիս և ի հրեշտակացոց մենաստանիս սուրբ Յովաննէս՝ Եղրդուտ կոչեցեալ, ընդ հովանեաւ // սուրբ Աստուածածնին, և Յովաննու Մկրտչին, և սուրբ Ստեփանոսի Նախավկային և սուրբ Գրիգոր մեր Լուսաւորչին, և աւրհնաբուղ[խ] սուրբ Նշանիս, ի դառն և ի չար ժամանակիս, յորմէ արդարութիւն նուաղեալ և անիրաւութիւն յամենայն կողմանց զաւրացեալ։

262ա

Գրեցաւ սուրբ Աւետարանս ի խնդրոյ պատուական առն[ խոճա Ամնատին, և Աստուածատուրին, և Խաթուն-Մէլէքին և զՇահզատային, և խոճա Ցխրատինին, և Մէլէքսէդ երիցուն, և Զաքա<քա>րային, և Եսէին, և Թամտնին, և Ապոլագինին, և Մարտիրոսին, և Սահրատին, ամ:ն***]։

Ո՞վ դասք լուսերամ քահանայից և ընթերցող[ք] սուրբ Աւետարանիս, յիշեցէք ի Քրիստոս զփծուն գրիչս զՍտեփաննոսս, խոշորութեան և
262բ աղալանս // ցրս անմեղադիր լերուք, զի կար մեր այս է։ Աղաչեմ զձեզ, որ միոյ ողորմու արժանի առնէք զանարժանս զՍտեփանոսս, զհայրն իմ զՅովաննէս, և զմայրն իմ զՀիրիգայ: Ընդ նմին յիշեցէք ի Քրիստոս զաշակերտքն մեր՝ զտէր Աստուածատուրն, և զտէր Գրիգոր նորընծայն, զԻշխանն, Սարկաւագն և զԹաքարն, եւ զապաշխարողն զՀռեփսիմէն, որ շատ ի հետ մեզ կու աշխատին։ Քրիստոս աստուած առնէ իւրեանց փոխարէն։

---

* Պետք է լինէր, «Ես՝ խոջա Ջաւզս», որովհետև, ինչպես պարզ երևում է նախորդ հիշատակարանից, Դովլաթը խոջա Ջաւզի որդին է և Գրիգորն ու Շախստանը՝ նրա ծնողներն են։ Խոջա Ջաւզի անվան փոխարեն գրիչը սխալմամբ գրել է իր անունը, մոռանալով, որ հիշատակարանը շարադրելու է պատվիրատուի անունից։

** Տպված է «Շախորանին»։

*** Փակագծերի մեջ առնված հատվածը գրված է այլ ձեռագրով։

Այլ և յիշեցէք ի Քրիստոս զուսուցիչն մեր զՆեrսէս վարդապետն, որ շատ ի հետ մեզ աշխատեր է, Քրիստոս աստուած ողորմի նըմա...

208

ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Երուսաղէմ 1738

Գրիչ՝ Գրիգոր Տարաւնացի
վայր՝ Երզնկա, Կայիփոսի վանք

277բ ...Գրեցաւ եղանակաւոր տառս որ կոչի Մանրուսումն և Տօնացոյցս ձեռամբ Գրիգորիս Տարսաւնացւոյ, ի վանուցն Ամլորդոյն,... ի գաւառս Եկեղեաց, որ ասի Եզնկայ, ի դրունս սուրբ Յակոբին, որ Կայիփոս վանք կոչի, ընդ հովանեաւ սուրբ Յակոբայ և սուրբ Աստուածածնի և սրբոյն Գէորգա, ի թվաբերութեան հայկազեան տումարի ՋԼԹ. (1490), ի վայելումն անձին իմոյ, զոր տէր աստուած վայելել տացէ ընդ երկայն աւուրս...

209

ԱՒԵՏԱՐԱՆ

Ախալցխայի Փոքր-Թամաշ գյուղ, ՄՏՄ

Գրիչ՝ Մէլքիսէթ
վայր՝ Ուխտիք քաղաք

...[Յանկացաւ սուրբ Աւետարանիս] աստուածասէր քահանայն Սարգիս, և ետ գաղափարել զսա յիշատակ իւր և ամենայն արեան մերձաւորաց իւրոց, ի ժամանակս վերջինս, ի թվ. Հայոց ՋԼԹ. (1490), ի գաւառս Տաոց, ի քաղաքս Ուխտից, առ դրան սուրբ Կարապետիս և այլ սրբոց, որ աստ կան հաւաքեալ...· [Յիշատակ] տէր Սարգսին, և հայրն Դաւթին, և մայրն Խէր-Խաթունի, և եղբարձն, և հարսներացն, և փցուն գրչիս և սուտանուն իրիցուս Մէլքիսէթիս...

210

ՍԱՂՄՈՍԱՐԱՆ

Բրիտ. թնգ. Or. 3712. Ֆ. Կոնիբեր, Ցուցակ, էջ 317

Կազմող՝ Մարտիրոս

281ա Ո՞վ սուրբ ընթերձողք, յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զՄարտիրոս աբեղաս, որ ոսկով և կազմով զարդարեցի զ[սա]ա, ընդ նմին և զպարոն Ամիրտովլաթ բժիշկն, որ արդար ընչիւք զարդ[ար]էլ ետ զսա. թվ. ՋԼԹ. (1490)։

## 211

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 8135*

Գրիչ՝ Ալեգսանոս
Վայր՝ Խորոտկայ վանք

*...Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվականիս Հայոց ՋԼԹ. (1490), ի հայրապետութեան տեառն* Սարգսի, *ի ղանութեան* Յաղուպ-բէկին, *գրեցաւ ձեռամբ անարժան, հէք, ֆանաք*, վտիտ և անարհեստ գծողի* Ալեգսանոս *աբեղայի...*

*Արդ, եղև գրչութեան այս աստուածաշունչ սուրբ Աւետարանիս ի* *յերկնահանգէտ և գերահռչակ սուրբ ուխտիս* Խորոտկայ, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Յակոբիս, և սուրբ Նշանիս, և այլ սրբոցս որ աստ կան։ Որ բաղմաժամանակեա անմարդայբնակ լեալ և խախտեալ հիմանց սորա, և [յ]ետոյ՝ սրբամիտ և աստուածասէր և մեծազգի՝ տեսեալ զսուրբ ուխտս այսպիսի խախտեալ, խանտաղատեալ սորա, վասն*
319բ *որոյ չերմեռանդ // սիրով և եռայփափաք տենչմամբ* Աւան աղէս *նորոգեաց զսուրբ ուխտս և շատ աշխատութեամբ կատարեաց, աստուած զիւր հոգին անձեռագործ խորան դասէ. ի առաջնորդութեան սուրբ ուխտիս տէր* Ղուկասին, *որ է սրբամիտ և հեզահոգի և խոնարհ եղբայրսիրութեան, ի հայրապետութեան տէր* Ղազարին, *և փակակալութեան տէր* Սիմէոնին, *և տնտեսութեան* Նանշին:

*Արդ, ցանկացող եղև այսմ աստուածաշունչ սուրբ Աւետարանիս բարեմիտ կինս այս՝* Խոնտքար.... *Ոչ ունելով ղաւակ զսա ստացաւ [յ]իշատակ իւր, և առն իւրո* Ղարիպշա *աղին, և ծնողացն իւրոց՝ հայրն իւր*
320ա Էտիլշին *և մայրն* Մամա-Տետին, *և եղբարցն՝ //* Երանշին, Փարվանշին, Ղարակաւցին, Ճանանշին *և* Տրտատին, *և քվերացն* Ուլուխաթունին *և* Նարին-խաթունին, *եղբաւրորդեանցն* Ճանանշին, Ամիր-Սուլթանին, *և* Մելիք-Սուլթանին, Ղասումշին, *և* Մասուտշին, Ռաստամին, *և* Խաչղատամին, *և* Միրզին, *և մեծ տէտին իւրո* Թուխբէն, *և որդոյն իւրո* Ճամբաշին, *փեսաբոյն՝ տէր* Ստեփանոսին, *և* Միրզա *աղին, եւ քվերորդեացն իւրոց տէր* Բարսեղին, *և* Յովսէփին, *և* Պաշարայթին, *և* Հերոսին:

*Ընդ որս և ես երես անկեալ աղաչեմ ղամենեսեան, որք հանդիպիք տեսութեան սորա, սխալութեան և խոշորութեան գրոցս թողութիւն շնորհեցէք. ղանարժան գրիչս, հանդերձ ծնաւղօքն իմ, յաղաւթս յիշեցէք, և աստուած զձեզ յիշէ, ամէն**։*

---

** Իմա՝ «փանաք»։*

*** Ձեռագրի 243ա էջում կա «Խաչինու երկրի տէր» Թարխան յուզբաշու, 1726 թվականին գրված հիշատակարանը, որը պարունակում է նրա ընտանիքի անդամների և ազգականներից շատերի անունները։*

*Որոշակի արժեք է ներկայացնում նաև փոքր Շահ-Աբբասի ժամանակ նորոգողի կողմից Սոթք գավառում գրված հիշատակարանը (էջ 321բ—322ա)։*

## 212

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Մ. Սմբատեանց, «Երնջակ», էջ 254—258*

*Գրիչ՝* Ազարիա
*վայր՝* Արաշ գիւղաքաղաք

### ա

*...Բայց գրեցաւ լուսազարդեալ Աւետարանս ի լուսակրական ժամանակի սկզբանց արարչութեանց մինչև առ մեզ ՑՈՋ. (6606), ի կենարարին գալստենէն ՌՃՁԳ. (1183՞), իսկ ի հօսրովայ[ի]ն պարսից սկսեալ մերս թիւ ՋԼԹ. (1490)։ Գրեցաւ ի գեղաքաղաքս յ*Արաշ, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին։*

*Արդ աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք աստուածաշունչ և աստուածաբարբառ սուրբ Աւետարանիս կարդալով կամ տեսանելով յիշեսջիք ի սուրբ և ի մաքրափայլ յաղօթս ձեր, զհեզահոգի և զաստուածասէր զխօջա* Ղուպարն, *որ յոյժ սիրով և փափագանաւք գրել ետես զսուրբ Աւետարանս, ձեռամբ անարժան և ախմար գրչի* Ազարիիս, *աւա՜խ և եղո՜ւկ է ինձ, յիշատակ իւր,... և ծնաւղաց իւրոց՝ հաւրն* Եզդանբաղշին *և մաւրն* Սարայ-Մէլիքին, *և հարազատ եղբաւրն՝ պատուական քահանային տէր* Ներսէսին, *և զաւակաց իւրոց՝* Էզդանբաղշին *և* Մուրատբաղշին *և դեռաբուսին* Աբրահամին, *և դստերացն* Մարթա-խաթունին *և* Թաւրէզ-խաթունին *և* խաթուն-Մամին, *և կողակցին իւրոյ* Նարին-խաթունին, *և ամենայն արեան մերձաւորաց՝ կենդանեաց և ննջեցելոց։ Յիշեսջիք յաղօթս ձեր զխօջա* Ղոպաթն, *և զեղբայրն իւր զ*Թումէն, *որ փոխեցեալ է առ Քրիստոս, և զդուստրն իւր զ*Մամայ-Դէդէն:

*Դարձեալ, աղաչեմ յիշել ի տէր զանարժան գրիչս զ*Ազարիայ *սարկաւագս, ո՜վ սուրբ կարդացողք, սխալանացն և քերանացն թողութիւն արարէք, զի ղարիպ էի և միտքս մոլար է. յիշեցէք և զծնաւղսն իմ զ*Ամիր-Ազիզն *և զ*Նարին-խաթուն, *և զամենայն արեան մերձաւորսն իմ՝ զկենդանիս և զննջեցեալս, եւ զհոգևոր մայրն իմ զ*Թաքառաֆն, *որ մարական գթով կուրախացնէ զմեզ։*

### բ

*Աւա՜խ զծողս, որ խիստ դառն եմ ի սատանայէ, և ի ղարիպութիւնս մոլորեալ եմ։ Ո՜վ սուրբ կարդացողք, թողութիւն արէք սղալանաց և խոշորութեան գրիս, զի կար մեր այս չափ էր։*

### գ

*Թ՜ապա մ՝ լինի, որ ազատ բարձրանամ հասնեմ յիմ երամ։*
*Աւա՜խ և եղուկ զղարիպիս, զի մոլորեալ եմ ըստ արժանեացս։*

## 213

### ԳԱՆՁԱՐԱՆ

*Երևան 7594*

*Գրիչ՝* Իգնատիոս

237բ *Փառք ... որ ետ կարողութիւն տկար և տարտամս անձին* Իգնատիոսի *հասանել յաւարտ այսմ աստուածաշունչ Գանձարանիս... ի թվականիս Հայոց ՋԼԹ. (1490), ի կաթողիկոսութեանն տէր* Սարգսի *ամենայն Հայոց**։

## 214

### ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

*Դ. Ալիշան, «Հայկարան»*

*Կազմող՝* Կիրակոս

*Սրբազան բարունապետս* զՅովհաննէս *զպատրոնազն Համշինեցի, որ ստացաւ զսուրբ Աստուածաշունչս ... և զիս ...*զԿիրակոս *եպիսկոպոս՝ զկազմող սմին յիշեսջիք, ի տէր ի թվ. Հայոց ՋԼԹ. (1490)։*

## 215

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 987*

*Ստացող՝* Աւագ

234ա *Ջվերջին ստացօղ սուրբ Աւետարանիս* զԱւագս, *և ծնաւղս իմ* զՇնաճաւոր *և* զԹղթիկՆ, *և զամենայն արեան մերձաւորսն իմ յիշեցէք ի Քրիստոս. որ ես* Աւագս *ի հալալ ընչից իմոց ստացայ զսուրբ Աւետարանս յիշատակ ինձ, և ծնօղաց իմոց, և ի վայելումն դեռաբոյս պատանեկին՝ եղբօրորդւոյն իմոյ* Սարգսին, *զոր տէր աստուած վայելել տացէ ընդ երկայն աւուրս։* Աղուբ շայՆ *գերի կու տանէր, ես՝* Աւագս *թափեցի***։

---

* *Հիշատակարանի բնագիրը չի պահպանվել, վերը բերվածը բնագրից ընդօրինակել է Խասպեկ գրիչը, 1650 թվականին, Ղրիմի Կաֆա քաղաքում, Գրիգոր արքեպիսկոպոսի հրամանով։*

** *Հիշատակարանը գրված է Աղ—Կոյունլու Յաղուբ խանի (1478—1490) աըշավանքներից մեկի ժամանակ, ուստի տեղադրում ենք 1490-ի թվաշարքում, որպես նրա գրության վերջին հնարավոր տարեթիվ։*

## 216

### ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 3989**

ա

Գրիչ՝ Գալուստ
վայր՝ Կէչառուք

620 *Վասն որոյ և ես՝ տրուպս ամենայնի, մեղսամած և տկար ոգի և յե-*
*տինս, անարժան գոլով ամենայնի գրագրի՝* Գալուստ *գրիչ սուտանուն*
*աբեղայ՝ ծերացեալ ալեաւք և ղստացեալ մեղօք, ցանկացող եղէ սիրովն*
*Քրիստոսի սուրբ Յետարանիս, և... ձեռն ի գործ արկի գրչութեան, զի*
*վաղուց հետէ ունէի զփափաքումն գրչութեան սուրբ Աւետարանիս։ Եւ*
*վստահացեալ անարժան անձամբ և փծուն գրչաւս գրեցի զսուրբ Աւետա-*
*րանս և ետու ծաղկել և կազմել զսա հալալ վաստակոց իմոց՝ ի յար-*
*դեա[ն]ց և ի պարգևաց տեառն, այլ գոյիւ չափ զկեանս՝ ըստ այրոյն լու-*
*մայի։*
621 *Արդ, եղև կատարումն սուրբ Աւետարանիս ի թվականութեան հայ-*
*կազան տումարի ՋԽ. (1491) թվականին, ի դառն և ի չար ժամանակի,*
*որով նեղիմք յանաւրինաց. ի բռնակալութեան աշխարհիս Հայոց և Պար-*
*սից* Եաղուպ-բէկի, *եւ ի հայրապետութեան տեառն* Սարգիս *կաթողիկոսի*
*Հայոց և պատրիարգ* Վաղարշապատոյ՝ *ի յաթոռ սուրբ Լուսաւորչին մե-*
*րոյ, ի սուրբ Էջմիածինն։*
*Արդ, ի յայս և ի սոյն ժամանակի եղև յաւարտ խնդրոյս իմոյ՝* Գա-
լուստ *անարժան աբեղի, ի յաստուածապահ գաւառ* Բուժկան, *ի յերկնա-*
*հանգէտ և ի գերահռչակ ուխտս* Կէչառուս, *ի դրան մաւրս լուսոյ սուրբ*
*Աստուածածնիս, և հրաշափառ սուրբ Գրիգոր կաթողիկէիս, և Աւագ սուրբ*
622 *Նշանիս, որ իմով անարժա//նութեամբ կոչիմ սպասաւոր սուրբ ուխտիս։*
*Որ և մեծ յուսով և տենչալի սիրով ստացաւղ եղէ սուրբ Աւետարանիս յա-*
*ղագս յիշատակի յաւիտենական կենացն, և փրկութեանն հոգւոյ իմոյ, և*
*ծնաւղաց իմոց, և ի վայելս անձին հարազատ եղբաւրն իմ* Ցօրղանանին,
*և որդւոց նորա՝* Մարտիրոս *քահանայի և* Խաչատուր *սարկաւագի, և այլ*
*հարազատ եղբարց իւրոց՝* Գինոսին, Խաւճիկին, Պետրոսին, Պաւղոսին:
*Վասն որոյ, յերես անկեալ մայրամած դիմաւք, աղաչեմք զհամագումար*
*դասք սրբազան քահանայից, որք վայելէք, կարդայք և լուսաւորիք սովաւ*
*ի ժամատեղ և ի պատարագի, և որք ընդաւրինակէք՝ յիշեցէք ի մաքրա-*
*փայլ յաղաւթս ձեր զբազմամեղ* Գալուստ *գրիչ...*
*Դարձեալ, նղիցի յիշատակ մասին աւրհնութեան ի սուրբ Աւետարա-*
*նըս վարժապետ իմոյ հօրեղբայր* Դանիէլ *աբեղին։*
623 *Արդ, երեսս անգեալ // աղաչեմ կրկին մաղթանօք յիշեցէք ի Քրիս-*
*տոս զմարմնաւոր ծնօղսն մեր՝ զհայրն իմ* Սամուէլ *քահանայն և զմայրն*

իմ զՄարթա-Խաթունն՝ զհանգուցեալն ի Քրիստոս, և ամենայն արեան մերձաւորաց իմոց՝ կենդանեաց և ննջեցելոց...

Բ

198բ Ո՜վ եղբայր, սակաւ նկարող պատկերիս՝ զՄկրտիչս յիշեցէք ի Քրիստոս։

## 217

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6875

Ստացող՝ Յովանէս
վայր՝ Դսեղ

31ա Շնորհիւ տեառն սկսաւ եւ ողորմութեամբ նորին կատարեցաւ սուրբ և աստուածաբան Աւետարանս ի թվականութեան հայկազան տումարի Ջ. և Խ. (1491) ամին, ի ցավայլից և տրտմազգեաց ժամանակիս, որ եղև մահ և կորուստ Աղուբէկին՝ որդոյ Հասան-բէկին։ Որ եղև յետոյ նորայ աղմուկ և խռովութիւն ի մէջ տանկաց, նոքայ տկարացան և անկան։ Ազգս քրիս-
31բ տոնէ//ից և թագաւորն Կոստանդինէն յարեան և ուղիղք եղան և գնացին մինչև ի Գեղարքունի, մինչև Շիրակվան, թալանեցին և կողոպտեցին զքրիստոնայքն ըն[դ] մահմեդայկանաց, և բերին մտուցին ի Վրացտուն, և էառ զՀատոյ բերթն թագաւորն, և ունի իշխանութիւն ի վերայ երկրիս, և երկիրս ի յահէ անաւրինաց մտեալ կան ի բերթերն և ի ձորերն, զի խիստ սասանեալ կան։

Արդ, ի յայս և ի սոյն ժամանակիս, ես Յովանէս որդի Քրիստոստուրին, զի ոչ ունէի մարմնաւոր զաւակ և յիշատակ՝ ոչ որդի և ոչ դուստր, գնեցի զսուրբ Աւետարանս ի հալալ ընչից և վաստակոց իմոց և արարի զսայ յիշատակ հոգոյ իմոյ, և ծնաւղացն իմոց՝ հաւրն իմոյ Քրիստոստուրին և մաւրն իմ Թուրվանդին, որ են փոխեալ առ Քրիստոս, և եղբարցն
32ա իմ//ոց Խոցադեղին, Խաչատրին, Գաւրգին, Մկր[ր]տչին, Ստեփանոսին, որ են սուրբ մեռեալ և զմահու պարտքն վճարեալ, և կենդանի եղբաւրն իմոյ Ոճանեսին, և զաւակի նորին Միր-Թումանին, և քվէրն Ազամաթին, և մաւր նոցա Մարիամին, և այլ առհասարակ ամենայն մերձաւորաց՝ կենդանեաց և ննջեցելոց, որոց յիշատակն աւրհնութեամբ եղիցի, ամէն։

Այլ արտասուալից աչաւք հայցեցի և խնդրեցի զսուրբ Աւետարանս ես՝ Յովանէս, գնեցի և տվի ի գեղս Դսեղոյ, ի դուռն սուրբ Գրիգորին, ի ձեռն Վարդան քահանային. և ոչ ժամանեաց վայելելոյ, զի կիսաւրեայ և տղայ հասակաւ վճարեաց զկեանս իւր. և յետ մահուան նորա ապըսպարեցաք եղբայրն իւր Պաւղոս սարկաւագն, զոր տէր աստուած վայելել տացէ իւրն, և եղբարցն՝ Հովայդեղին, Շանշին, Ուսեփին, Պետրոսին, և Վարդան իրիցի որդուն Մարտիրոսին և Գէորգին, և փոխճանեալ պապին, և հաւրն իւրեանց Մարտիրոսին, և Ջաճանշին, և մաւրն իւրեանց Նուշի-

82բ կին, և հանգեան Խէրիկին, // որոյ յիշատակ սոցա աւրհնութեամբ եղիցի։
Ընդ նոսին և զիս զբազմայմեղս զՅովանէս, և զամուսին իւր զԳոճարն, և զիւր որդին զԽէչումն յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր միով տէր-ողորմայիւ. և աստուած զձեզ յիշէ, ամէն։
Եւ այլ գիտութիւն լիցի ամենեցուն, ով որ կարդայք և տեսանէք, որ ոչ ում այլ իշխանութիւն չկայ ի վերայ Աւետարանիս, զիմ հալալ ընչիւք գնեցի և դրի ի յայս սուրբ եկեղեցոյ դուռս։ Առաջնորդ և լուսարար սուրբ Քառասնիցս և սուրբ Գրիգորիս՝ Յովանէս վարդապետ, և աւագէրէց տէր Արիստակէս, և տանուտէր գեղիս Աստուածատուր, և ով ոք ոչ ունի իշխանութիւն հանել ի յայս գեղէս, ոչ իմոց և ոչ աւտարաց, զի պահաւղ և նախախնամաւղ տէր Պաւղոս լիցի, և ով ոք չլիցի հակառակ սորայ՝ ոչ իմոց և ոչ աւտարաց. այլ իմ սրտի կամաւք տվի Պաւղոս իրիցին. ով ոք հակառակի և հանել ջանայ ի սոցանէ կամ ծախելով, կամ գրաւելով, կամ գողանալով՝ Յուդայի և խաչահանուացն Քրիստոսի պատժեսցի և ԳԺԺԸ. (318) հայրապետաց անիծեալ լիցի, ամէն, եղիցի։

## 218

## ԱՒԵՏԱՐԱՆ

Գ. Սրուանձտեանց, «Թորոս Աղբար», Ա,
էջ 119—121, Թոքատի առաջնորդարան

Գրիչ՝ Մելքիսեթ
վայր՝ ի գաւառին Գուգարոյ

...Արդ, այսմ անմահական ըմպելւոյ և անգին մարգարտին փափագող եղեալ Եփրիանոս, և ետ գաղափարել զսա ի ժամանակս վերջինս, ի թուականութեանս Հայոց ՋԽ. (1491), ի գաւառին Գուգարոյ, ընդ հովանեաւ սուրբ Կարապետի ուխտիս և այլ բազմապատիկ սուրբ նշանացս։ Յորում ամի մեռաւ Եաղուպ խանն, և այլքն մի զմի կոտորեցին, մինչև մնաց և ոչ մի ի յազգ:ն պախնդրոյ։ Եւ ելեալ պարոնն վրաց Ղաւրղաւրէ ԼՌ. (30,000) մարդով ի վերայ քաղաքին Արզրումայ, և աւարի առ զերկիրն, և արար զքաղաքն հարկատու։ Այս եղև ի թագաւորութեանն վրաց Կոստանդիենոյ, և ի կաթողիկոսութեան Հայոց տէր Սարգսի, և յեպիսկոպոսութեան մերոյ տէր Յուսկանն:
Արդ, աղաչեմ զամենեսեանդ, որք ընթեռնուք զսուրբ Աւետարանս յիշեսջիք աղաւթիւք զստացող սորին զԼիաճոսն, և զկենակիցն իւր զՄարամէլիքն, և զորդիքն զԵւատշէն, զԽութլուշէն, զԵրաճոսն, զՍարգիսն, զթոռն Խուպիարն, և զեղբայրն զՅովճաննէսն, զթոռներն զԽաչազիզն, զԴաւլաթն, զՇաճզատան, զԱստուածատուրն, զքոյրն զՓէրաւժն, զհայրն Տըրդատ, զմայրն զԴաւնամէլիքն, զպապն Սարգիս, զմամն զՍիրման, զողապարոնն զԵղիսաբեթն, զԱմիրդատն, զՄկրտիչն, զԹաւագալն, և ամենայն ազգատոհմն նորին, ամէն։ Եւ զիս՝ զանպիտան գրիչս զՄելքիսեթս անյապաղ յիշեսջիք...

## 219

## ՄԱՇՏՈՑ ՁԵՌՆԱԴՐՈՒԹԵԱՆ

*Երևան 5702*

*Հետ. ստացող՝* Յոհաննէս
*վայր՝* Աղբամար

242ա *Ի Ջ. և ԼԸ. (1489) թւին տէր* Ստեփաննոս *կաթողիկոսն վախճանէ-*
*ցաւ, և եկն տաճիկ մի և ասաց կաթողիկոսի եղբաւրն՝* Ներսէսին *թէ՝ Տուր*
*զիմ դրամն, զոր ի փոխ տըւի ձեզ։ Եւ նա գնաց յ*Ոստան*, և եդ զսուրբ գիր-*
242բ *քըս* գրաւ, թէ բերեմ //զքո դրամն և զիմ գիրքս առնում։ Եւ յետ Բ.(2)*
*տարոյ (1491) մեռաւ տէր* Ներսէսն*, և մնաց սուրբ գիրքս խեղճ և յանար-*
*գութիւն ի ձեռըս տաճկին։ Եւ ես* Յոհաննէս *աբեղայ ստացայ զսուրբ գիր-*
*քըս ի հալալ և յարդար վաստակոց իմոց, եւ ետու զսա ընծայ և նըւէր*
*սուրբ Խաչին* Աղթամարոյ *յիշատակ հոգոյ իմոյ, և իմ եղբօրն տէր* Գրիգոր
*աբեղային, և ծնւողացն իմոց՝* Սարգսին *և* Խալիմ-Խաթունին*, և ամենայն*
*եղբարցն իմոց և ամենայն ազգականացն, ամէն...*

*Այլ և զ*Պարսամ *ծաղկող սարկաւագն յիշեցէք ի Քրիստոս, որ աղա-*
*տեաց զգիրքս յ*Ոստանայ *և եբեր։ Եւ ես* Յոհանէս *աբեղայ գնեցի զսուրբ*
*գիրքս եւ ետու սուրբ Խաչին* Աղթամարայ*, և մի ոք իշխեսցէ հեռացուցա-*
*նել զսուրբ գիրքս ի դրանէ սուրբ Խաչիս, ոչ ծախելով և ոչ գրաւելով. և*
*թէ ոք յանդգնի և արասցէ՝ ղանէծքն զօձին առցէ, և զԿայենին, և զայլ*
*խաչահանուացն, ամէն**։*

## 220

## ՃԱՇՈՑ

*Երևան 6293*

*Գրիչ՝* Մկրտիչ
*վայր՝* Արարադյան գաւառ.
Մողնի գիւղ

ա

460բ *...Աւարտեցաւ քրիստոսահիմն և առաքելախաւսն, մարգարէաշէն,*
*հոգիաբուխ այս տառս ի թվականիս Հայկազան սեռի տաւմարի* Թ՟Ծ՟Խ.
*(1491), ի հայրապետութեան Հայոց տեառն* Սարգիս *արի և երջանիկ հո-*
*վ[ու]ապետի, ի յաշխարհակալութեան* Աղուպ-բէկին՝ *որդոյ* Հասան-Բէ-

** Եպիսկոպոսի, կաթողիկոսի ձեռնադրության ու թաղավորի օծման շքեղ Մաշտոց է, որ ընդօրինակել է նույն Ներսեսը, 1471 թվականին։*

*** Ձեռագրի հաջորդ՝ 243ա էջի վրա կա պարոն Հապիպի որդի Հասանքեֆցի արքեպիսկոպոս տէր Յակոբի անթվական հիշատակարանը, ձեռագիրն «Ի ձեռաց զօրացն հոռմայեցոցն» ազատելու և Թումայ եպիսկոպոսին հանձնելու մասին։*

*«Եւ ետու,—գրում է նա,—ի ձեռս* Թումայ *եպիսկոպոսին, որ հասուցանէ դուռն սուրբ Խաչին* Ախթամարայ»:

*Հնագրական տվյալներով հիշատակարանը ԺԶ դարի է։ Նրա մեջ հիշատակվում են նաև Յակոբ եպիսկոպոսի հորեղբայրներ Ավետիք վարդապետը և Յակոբ եպիսկոպոսը։*

կին։ *Ի սորա ժամանակս բաղում չարիք յայտնեցաւ, զի ամենայն կարգաւորէ՝ աբեղայից և ի յաշխարհականաց, ի միայնակեցից եւ ի սարկաւագաց [հարկս պահանջէին կախելով և չարչարելով]* Ճ. (100) Թ[ան]կ[այ] և այլ աւելի և պակաս։ Եւ աստուծոյ ողորմութիւնն հասաւ և խափանեցաւ և բարձաւ ինքն և իւր չարիքն, քանզի աւէ մարգարէն, թէ՝ Տեսի զամբարիշտն վերացեալ բարձրացեալ, որպէս զմայրսն Լիբանանու։ Անցի և ահա ոչ էի խնդրեցի և ոչ գտաւ տեղի նորա։*

*Գրեցաւ գիրքս ձեռամբ յոգնամեղ, փցուն, մեղաւոր և անարհեստ գրչի՝ սուտանուն և եղկելի.* Մկրտիչ *իրիցի, ի գաւառիս* Արարադեան, *ի գեւղս որ կոչի* Մողնի, *ընդ հովանեաւ սուրբ* Գէորքէա *ղաւրավարիս, ի խնդրոյ հոգէսէր և բարէմիտ* Սիրադեղին, *որ ստացաւ զսա ի հալալ ընչից*
461ա *իւրոց յիշատակ իւր, և ծնողացն՝ ... հայրն* Աստուածատրին *և մայրն* Աղուտ-խաթունին, *և կենակցին* Լի-Տիկինին, *և դստերն* Մալում-Փաշին. *և եղբարցն* Շահազըզին *և* Այդինին, *և նորա որդոյն* Սարգիս *քահանային, և միւս եղբաւրն* Թումանշին, *և տէր* Դաւթին, *մաւրն՝* Ամբար-խաթունին, *և իւր որդոյն* Աստուածատրին, *և հարսին* Գուլֆանին, *և տղային* Խէչատրին, *և ամենայն մերձաւորաց, ամէն...*

*Յիշեցէք ի Քրիստոս և ի սուրբ յաղաւթս ձեր, ո՛վ սուրբ ընթերցողք կարդալով կամ աւրինակելով՝ զանարժան գրիչս զմեղաւոր* Մկրտիչս, *և զհայրն իմ զ*Ովանէս, *և զմայրն իմ զ*Գուլփաշա, *և զկենակիցն իմ զ*Նինիփարն, *որ գիրքս ի ձեռս էր՝ տարաժամ մեռաւ ի տղա հասակի ու զիս դառն ու տրտում արար, քան զի լաւ էր ես էի մեռեալ քանց նա, և որդիքս իմ զ*Եղիա, *որ զԹով[ղ]ոս կոկեաց, և զկրսեր որդիս զ*Թադէոս, *և զդստերքըս զ*Գուհարշատս, *ու զփոքր դստրիկս* Հազրեվարդս, *որ սպասաւորէր ինձ ի դառն ժամանակիս։ Բայց խոշորութեան և սխալանաց անմեղադիր*
461բ *լերուք, զի ես ի // յիմ ժահահոտութենէս և ի տրտմութենէս այս չափ կարացի։*

*Եւ ես՝* Սիրադեղս, *եստ ի դուռն նորակնունք Աստուածածնին ի յաւրհնեալ և ի տիրախնամ գեղն* Փարզի: *Յառաջնորդ գեղիս տէր* Սահակն *և* Թարքմանչի *վանացն տէր* Մովսէսն, *ու տէր* Ազարիէն, *տէր* Ստեփանոսն, *որ յամենայն տաւնի զյիշատակս կատարեն անխափան, մանաւանդ յայտնութեան ու զատկի, զանբիծքն ասելով, շարական հանգստեան, աւետարան Ղուկաս. Մի երկնչիր հաւտ, Աստուած անեղ, և Քրիստոսի փառք յաւիտեան, ամէն։*

*Եւ զտանուտէրքս գեղիս՝ զ*Շահազիզ, *զխաւճա* Մովսէս, *զ*Սատազէն, *զ*Եզտանըբաշխն, *աստուած զտէրքա անսասան պահէ զարմաւք և զաւակաւք, ամէն։*

Բ

125ա *Աւա՜խ, աւա՜խ, զի ի բազում տրտմութենէ քունս կու տանէր վասն կողակցին իմոյ, որ մեռաւ ու զիս ու զտղայքն որբ արար ու մեռեց։ Լուսամուտովն անձրևն զգիրս եղծեց, թողութիւն արէք, ո՛վ սուրբ ընթերցողք, վասն աստուծոյ սիրոյն...*

* *Փակագծերի մեջ առնված հատվածը ջնջված է։ Դժվարությամբ միայն հնարավոր է լինում կարդալ ջնջված տառերի աղոտ հետքերով։*

Գ

183բ Զհոգի ստացողի սուրբ գրոցս՝ զՍիրադեղ աղին, և զամուսնոյն՝ զԷի-Տիկնին, և հարազատ որդոյն զՆվատշին, և ծնաւղաց նոցին, ամէն։
Եւ զհոգևոր առաջնորդն Փարպոյ՝ զտէր Սաճակն յիշեցէք ի Քրիստոս։

## 221

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Մ. Աւգերեան, Լիակատար վարք սրբոց, ԺԱ, էջ ՀԸ—ՀԲ,
Գ. Ալիշան, «Այրարատ», էջ 443

Գրիչ՝ Վրթանէս կրօնաւոր
վայր՝ Արարադեան գաւառ, Ուրծայ
(Առջառէրեկի) անապատ

Փառք... (և յետ դնելոյ ԺԲ. պատճառս ի գովութիւն վասն դրելոյ և կարդալոյ զվարս սրբոց, ի վերայ բերէ զբանս վասն հեղինակին, այսինքըն Գրիգորի Խլաթեցւոյ Ծերենց, ասելով)*. Այլև ըստ այսմ յարացուցողի՝ ամենագովելի, երջանիկ, ընտրեալ, պատուելի և աստուածահաճոյ, ամենայն գովութեանց արժանաւորեալ, արի և քաջ սուրբ վարդապետն Գրիգոր, սիրելի գտեալ ամենայն սրբոց՝ ի տօնախմբութիւն անյապաղ առանց ձանձրանալոյ մի ըստ միոջէ կատարելով զտօնս սրբոցն, նահապետաց, նախահարց, սրբոց մարգարէիցն... սրբոց առաքելոցն, սրբոց մարտիրոսացն, սրբոց հայրապետացն, սրբոց ճգնաւորացն, և սրբոց թարգմանչացն, թագաւորացն, և կուսանացն. կատարեալ և յընտիր օրինակէ առաջին սուրբ վարդապետքն փարթամացուցեալ էին. և յետոյս սուրբ և պատուելի աստուածահաճոյ վարդապետն՝ Գրիգոր Ծերենցն՝ մեծաւ աշխատութեամբ իբրև զմեղու ժրաջան դտեալ՝ յաստուածաշունչ գրոց մեկնչաց, և Տօնական գրոց, ի Գաւազանագրոց, ի Հարանց վարուց, ի Մարտիրողոք գրոց, զոր և յինքենէ նորահրաշ պատմութեամբք սրբոց, և զարդարեաց զամենայն տօնս տերունական զաւետեացն, ծննդեանն, զտեառնընդառաջին, զարարչութեան աւուրքն, զայլակերպութեանն, զաստուածածնին, զսուրբ խաչին, և զխաչգիւտին և զամենայն տօնս սրբոց զարդարեաց։ Տէր աստուած Յիսուս Քրիստոս զարդարեսցէ զնա հոգւով...

Եւ ես Էտիլշէս և Գ. (3) որդիքս իմ՝ Խուտադատն, Ալահդատն և Շահպարոն՝ միաբանեցաք մեծաւ յուսով և փափագանաւք և յաւժարութեամբ սրտի, դրել տվաք զայս սուրբ գիրքս յիշատակ հոգւոց և ծնաւղաց մերոց Փաղշանին. Էտիլշային, Թամարին, և յիշատակ մեզ և մերոցն և ամենայն արեան մերձաւորաց մերոց։

Արդ, գրեցաւ սա ի թվաբերութեանս Հայկազեան տումարի Ջ. և Խ. (1491), ձեռամբ մեղապարտ և փծուն գրչի Վրթանէս մեղսաներկ կրաւնաւորի, ի դառն և ի նեղ ժամանակի, զի յոյժ նեղիմք յանաւրինաց և յանիրաւ պահանջողաց, ի գաւառս Արարադեան, ի յանապատիս յՈւրծայ, որ կոչի Արջառէրեկ, ընդ հովանեաւ սուրբ Սարգսի և սուրբ Յակոբի, ի Հայ-

* Փակագծերի մեջ առնված հատվածը պատկանում է Մ. Ավգերյանին։

րապետութեան տեառն Սարգսի, և մերոյ հայրապետի տէր Մանուէլի, և յաշխարհակալութեանն Պայսղուրի, որդւոյ Յաղպի*...

Աղաչեմ յիշել ի բարին և զվարդպետն իմ զԽաչատուր քահանայն, որ զօրինակն շնորհեաց մեզ... Եւ տուաք ընծայ սուրբ Ստեփաննոսի Նախավկայիս ի գեղոյս Սակոաբերդոյ, և սպասաւոր սուրբ եկեղեցւոյս սուրբ Ստեփաննոսի ըՍտեփաննոս նորընծայ քահանայի։

222

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6400

ա

Գրիչ՝ Ստեփաննոս
վայր՝ Նորատունք գիւղաքաղաք

231բ ...Եւ արդ, ես՝ անարժանս և մեղաւորս, որ չեմ արժանի թէ լեզուաւ միայն յիշել զանուն սուրբ Աւետարանիս, այլ իմ վստահացեալ ի մեղսաքաւիչն Յիսուս Քրիստոս, որ ասաց թէ՝ Եկայք առ իս ամենայն աշխատեալք և բեռնաւորք և ես հանգուցից զձեզ։

Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի յերկիրն Գեղամայ, ի գեաւղաքաղաքս Նորատունս, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և այլ բազում եկեղեցեացս, ի հայրապետութեանն տէր Սարգսի, և ի թվականութեանն Հայոց ՋԽ. (1491), ձեռամբ մեղապարտ և անարժան Ստեփաննոսի՝ անի-
232ա մաստ և փծուն գրչի։ Այլ և խոշ//որութեան և սղալանացն անմեղադիր լերուք, զի էաք ի ղարիպութեան՝ անտեղ և անբնակ, եւ յետո Ստեփանոս քահանայն եղև մեզ հանդստարան.

Հանգչի հոգին իւր արքայութեան,
ԶԳուլխաթունն՝ մայրն մեր հոգէական,
Եւ զԹանկուղ՝ մայրն իմ աւազանական,
Եւ սոքայ յոյժ աշխատեցան՝
Ետուն մեզ կերակուր ախորժական,
Առցեն զվարձս ի հանգստեան,
Յորժամ նստի տէր ի ատեան
Առնէ զհամարն տնտեսութեան։

Եւ որք հանդիպիք սմա տեսութեամբ կամ ընթերցմամբ յիշեսջիք յաղաւթս ձեր Ստեփանոս գրիչ և ստացաւղ սուրբ Աւետարանիս։

---

* «Եւ ես էտիլչեսն» բառերով սկսվող հատվածից մինչ այստեղ նմանահանությամբ հրատարակելուց հետո (էջ 443), Ալիշանը լրացուցիչ տեղեկություններ է հայտնում հիշատակարանի մասին։ Ըստ այդմ այնտեղ հիշվում են «Տէր Գալուստ վանաց հայր և փակակալ սուրբ ուխտին, Յովանէս մահդասին, ընդ որս յիշէ և զՃանէս միայնակեաց, հանդերձ այլովք, զվարդպետ իւր Խաչատուր քահանայ, և զաշակերտ իւր Ճանապետ սարկաւագ, և զտէր Ջաֆարիա, և յաշխարհականաց զՋհանշէն և զկենակիցն իւր զՍիլիկն, և զայլս ոչ սակաւս»։

*Այսաւր, որ յիշատակարանս գրէաք*
*Մեք խիստ կանուխ խաւիծ կերաք,*
*Յետ այնոր նատանի կերաք*։*

Բ

*Ստացող՝* Վէլի

232ա *...Արդ, ըստացող սուրբ Աւետարանիս* Վէլին, *որ էառ սուրբ Աւետարանս յիշատակ հոգոյն իւրոյ, և զաւակացն իւրոյ* Վարդանին, *և թոռին տէր ը*Ստեփանոսին, *և ծնողացն* Գուլմէլիքին. *և եղ[բ]այրացն ամենեցուն, ամէն։ Ո՞վ հանդիպողք, թողութիւն արարէք [յ]անցանաց սոցա՝ աստուած թողցէ զ[յ]անցանս ձեր, ամէն**։*

*Եւ զիս՝ անարժան* Առաքել *հաբեղէս և մեր հոգևոր որդի* Գալուստն Աղբնեցի. *և յիշեցէք մեղայպարտ* Առաքելս, *որ փոքրիկ յիշատակարան գրեցի, յիշեցէք ի մաքրայփայլ աղաւթս ձեր, ամէն***։*

## 223

### *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Երևան 6352*

*Գրիչ՝* Մանւէլ
*վայր՝* Գեղամայ գաւառ,
Փառակունիս գիւղ

ա

285ա *...Շնորհաւք և ողորմութեամբ ամենակալին աստուծոյ սկսայ զսուրբ Աւետարանս՝ զվտակ քառադէմ, և ներողութեամբ հզաւրին կատարեցի անպիտան և ախմար գրիչ սուտանուն* Մանւէլ *էրէց՝ յետին ամենայն կարգաւորաց. զոր և յերեսս անկեալ աղաչեմք զհանդիպեալքս ի սուրբ աւետարանիս՝ յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր զստացաւղ սորա* զԱմիր-Եգդինն, *և զորդիքն իւր՝* զԹադէոս *քահանայն, և* զԱլեքսանոսն, *և* զՄաքէոսն, *և զկենակիցն իւր աստուածապաշտ* զՇամամն, *և զհարսներն իւր*
285բ զԴաստագուլն *և* զէսան-Փաշէն, // *և զփոքր որդիքն իւրեանց գնորաբոյս՝* զՄարտիրոսն, զԳաւիթն, զՅուսկանն, [ *և* զՀասանջանն, Արսենն, զԱկովբըն ]****, *և զդստերքն իւրեանց* զԽոնձէն, *և* զՄարթէն, *և* զԹաղա-Մէլիքն *յիշեցէք ի Քրիստոս աստուած, որ յոյժ փափագանաւք ըստացան զսա ի հալալ վաստակոց իւրոց՝ յիշատակ իւրեանցն, և ծնաւղաց իւրոց՝ մեծ հաւրն* Մուրատին *և մաւրն* Խոնտ-Խաթունին, *և մաւրքւերն՝* Թաղա-Մէլի-

---

* *Այս վերջին չափական պարբերությունը գրված է 231բ էջի ստորին լուսանցքում։*

** *Ստացողի այս հիշատակարանը անթվական է։ Հնագրական տվյալներով գրված պետք է լինի ԺԶ դարում։*

*** *Հիշատակարանի այս վերջին պարբերությունը գրված է 231բ էջի առաջին սյունակի՝ ձեռագրի գրիչ Ստեփանոսի կողմից դատարկ թողնված տողերի վրա, ուր պետք է գրվեին ձեռագրի ստացողների անունները։ Պարբերությունը կցում ենք ստացող Վէլիի հիշատակարանին, որովհետև դրանք գրված են նույն (Առաքելի) ձեռքով։*

**** *Փակագծի մեջ առնված անունները լրացված են հետագայում, այլ ձեռագրով։ Հիշված Հասանջանը, Ակոբն ու Արսենը, հավանաբար, ծնվել են հիշատակարանի գրությունից հետո։*

բին, և քւերն իւր Սալթանին և Յուստիանին, և ամենայն արեան մերձաւորաց իւրեանց, և աներին իւր Ջհանշին, և կենակցին իւրոյ զՀարսաթին...

Դարձեալ աղաչեմ զձեզ, ո՛վ ընթերցաւղք սուրբ գրոցս, յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր զաստուածապաշտ առն զՍտեփանոս, և զկենակիցն իւր զՀիրիքն, և զդուստրն իւրեանց զՀեղինէն, և զորդին զՄարտիրոսն, որ բազում փափագանաւք ազնական եղեն ի գինս յայս Աւետարանիս ի հալալ վաստակոց իւրեանց, յիշատակ իւրեանց, և ծնաւղացն իւրեանց՝
286ա Հաւր իւր Զինիկին և մաւրն // Սառային, և քւերացն իւր Թուղծամին և Թամամին, և ամենայն արեան մերձաւորաց իւրոց, ի վայելումն Թադէոս քահանային, և եղբարցն իւրոց, և որդոց իւրոց...

Գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվականիս Հայոց ՋԽ. (1491), ձեռամբ յոգնամեղ և փցուն գրչի Մանւէլի, ի գաւառս Գեղամայ, ի գեւղս որ կոչի Փառակունիս, ընդ հովանեաւ սուրբ վանորէիցս, ի հայրապետութեանն տէր Սարգիս կաթուղիկոսին, և ի երկրիս հայրապետին տէր Մելքիսէթ արհեպիսկոպոսին, ի ժամանակիս, որ և խանկարեցաւ թագաւորութիւնն Յեաղուպ-բէկին՝ և մեռաւ, և նստաւ ի տեղին իւր Պայսոնղուրն փոխանակ հաւր իւրոյ...

Բ

228բ ...Զ՚Կառիկ աղախինն Քրիստոսի յիշեցէք ի բարի, որ մեղ մէկ սուրահի գինի ըղրկեց իւր սեղանովն, աստուած զիւր մեղքն թողու*։

224

ԱՒԵՏԱՐԱՆ

Նոր Ջուղա 561, ՄՏՄ

Վաճառող՝ Սարգիս
վայր՝ Տաթև

212բ Ես՝ տէր Սարգիս եպիսկոպոս Տաթևացի՝ սուրբ Աւետարանս իմ ան /// որդոյն տէր Մարտիրոսայ, իւր կողակցին /// և որդոյն Գինոսայ, իւր հալալ ապրանաց երետ զգինն ՃԾ. (150) տանկայ՝ էառ զԱւետարանս։ Ես՝ Սարգիս եպիսկոպոս իմ կամաւ և յաւժարութեամբ ծախեցի զսուրբ Աւետարանս Մարտիրոսայ. ով որ այլ տաւի անի՝ այլ անիծած և կապանացն իւրն ընկնի, մասն ու բաժին Ուդային առնու և ընդ Կայենի։

Ես տէր Մարտիրոս տուի զԱւետարանս իմ հալալ արդիւնից իշատակ ինձ, և ծնողաց իմոց՝ հաւրն իմ Իճանիսայ, մաւրն իմ Զարպարսայ(՞), կողակցին իմ Գուացոց(՞), որդոյն Գինոսայ: Ով որ կարդայ աստուած ողորմի ասէ։

Ի թվին ՋԽ. (1491)։

---

* Ձեռագրի ծաղկող Սարգիս եպիսկոպոսի հիշատակագրությունները տե՛ս 1496-ի թվականքում։

## 225

## ՃԱՌԸՆՏԻՐ

*Երևան 4822*

*Գրիչ՝* Մովսէս
*վայր՝* Արծկէ

471ա *Փառք ... որ ետ կարողութիւն տկար անձանց մերոց՝* Մովսեսի *և*
Յակոբի. *հասանել յաւարտ հոգենորոգ տառիս, որ կոչի Ճառընտիր, ի քա-*
*ղաքիս* Արծկէ, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և Պատերազմի*
*սուրբ Նշանիս, և սուրբ Ստեփաննոսին, և սուրբ Սքանչելագործին, ի*
*խնդրոյ աստուածասէր տանուտրոշն պարոն* Խալիֆին, *յիշատակ իւրն, և*
*ծնօղաց իւրոց՝* Գորգուն *և* Սալչուկին, *եւ մեծ պապուն իւրոյ* Մինասին, *և*
*մեծ մամուն* Հալուայ-խաթունին, *եւ եղբարցն իւրոց կենդանեացն* Միրի-
ջանին *և* Մուրադին, *և հանգուցելոցն* Մինասին *և* Աղաջանին. *եւ կենակ-*
*ցին իւրոյ* Բէկի-խաթունին, *այլ և հարսինն իւրոյ* Մաըր-Մէլիքին, *և*
*որդւոց նորին՝* Մէճէրին *և* Վաչօին. *որ են որդիք* Միրիջանին, *եւ քուեր*
Խալիֆին՝ Թիլիփաշին, Գուլամին *և* Նադարին, *եւ հօրքըւերն իւրոյ* Գուլ-
փաշին, *և որդւոցն իւր* Աստուածատուն, *և* Ազատին՝ *անպարտ նահատա-*
*կին, որ յայսմ ամի անմեղ սպաննաւ ի յանօրինաց, ի դրանն իւր, և սուգ*
*մեծ եթող ծնօղաց և ազգականաց իւրոց։*

*Եւ պատճառ սպանման նորա եղեւ այսպէս, զի յայսմ ամի, որ բո-*
*վանդակեցաւ թվականս մեր Ջխ. (1491), եղեւ մեծ խռովութիւն ի վերայ*
*երկրի։ Զի մեռաւ* Աղուպ *փատշահն ի թախթն իւր՝ ի* Թաւրէզ, *և մնաւ ընդ*
*իւր մայրն և եղբայրն։ Եւ* Սօֆի-Խալիլն *եդ ի թախթն զորդի փատշահին*
զԲայսանղուրն, *և կոտորեաց ի յազգէ փատշահին, որ էին բայսանդուռ,*
*աւելի քան զքսանն մեծամեծ պարոնայք։ Եւ բազում զօրս ժողովեալ և*
*աճապարեալ գնաց ի յ*Երազ, *և անդ ի* Համադան *կոտեալ և բազում պա-*
*րոնայք ի սուր անցան։ Եւ կոտորեալ զնոսա դարձաւ և դիմեաց ի վերայ*
Սուլէմանին, *որ էր ի դաշտին* Համթայ, *առ ստորոտ* Սեաւ *լերինն, մա-*
*քառեալ պատերազմաւ ընդ* Գուլաբին, *որ էր եղբօրորդի* Սօֆի-Խալըլին,
*և էր մեծ պարոն և ուլուսբէկի։ Եւ մինչ* Սօֆին *ի* Բերկրի *եհաս,* Սուլէման-
բէկն *կոտեալ կոտորեաց զզօրսն* Գուլաբուն *և եսպան զնա։ Եւ անտի*
*դարձեալ եկն ընդդէմ* Սօֆուն: *Եւ* Սօֆին *եկեալ կոխեաց զաշխարհս մեր,*
471բ *և գնացեալ եհաս առ // ափն* Եփրատայ, *ի դաշտին* Մանծկերտու: *Եւ* Սու-
լէմանն *անցեալ միւս կողմով ծովուն և գնացեալ եհաս յերկիրն* Գաւաշից՝
*հանդէպ* Աղթամարայ, *և անդ զօրաժողով առնէր։ Իսկ* Սօֆին *դարձեալ*
*դիմեաց ի վերայ* Վանայ *և* Ոստանայ՝ *բարկութեամբ լի, ի յաւերեալ զաշ-*
*խարհն և կորուսանել զտէր աշխարհին* զՍուլէմանն: *Եւ ընդ անցանելն*
*աւերեցին զերկիրս* Արծկոյ, *և աւար հարին, և բազում ոճիրս գործեցին, և*
*մարդիք սպաննեցին։ Վասն որոյ և յայսմ դառնութեան աւուրքս սպան-*
*նաւ բարետեսիլ և քաղցրահայեաց մանուկն* Ազատ. *և սուգ անպատմելի*
*եթող ծնաւղաց իւրոց և ազգականաց։*

*Իսկ* Սօֆին *գնացեալ աւերեաց* զԱմուկ, զՎան *և* զՈստան՝ *երկրովն,*
*և արար առ և թալան և շատ աւերք։ Եւ զվաներն առաւել աւերեցին, զի*

զդարանսն գտին, և զգրեանսն* և զամենայն սպասք եկեղեցեացն յաւար առին։ Իսկ Սուլէմանն կոտորեաց զքուրդն Էզդինշէր, որ եկեալ էր յետնէ՝ դարան գործել նմա, անձինս ԳՌ. (3000)։ Եւ անտի դարձեալ դիմեաց ի վերայ Սօֆուն, և եհաս ի դաշտն Վանայ, և կոտորեաց զնա անդ. և առեալ զորդի փառշահին և տարեալ եդ ի Թաղթն։

Եւ մինչ այս պատերազմս աստ գործեցաւ, եղեալ էր նոյնպէս ահագին պատերազմ ի Շիրազ, և սպաննաւ քաշն Ղայիթմազ, որ ոչ էր նման նմա ուժեղ մանուկ ի յազգն Թուրքմանաց։ Եւ միւս այլ կռիւ ի Մանծկերտ եղեւ, մինչ Սօֆին անդ էր, և կոտորեցան և անդ եւս բազումք։ Եւ յետ այսորիկ, համարձակեցան ազգն Վրաց, և ելեալ ի դուրս՝ շատ աւերք արարին, և զհայ և զտաճիկ թալանեցին, և շատ վրդովմունք եղև, և գեղք և գաւառք աւերեցան։ Եւ եղև սղութիւն հացի և ամենայն իրաց, զի կապեցաւ ամենայն աշխարհս, որ ոչ կարէին ի տեղաց ի տեղ երթալ։ Եւ եղեւ չերմն յոլով և ցաւք ազգի-ազգի ի մարդիկք։

Այս ամենայն գործեցաւ ի յայսմ ամի, որ էր թվական մեր Ջ. և Խ. (1491)։

Իսկ ես՝ Մովսէս գրիչս, ի սոյն դառն և դժար ամի ձեռնարկեալ գրեցի
զհոգիանորոգ տառս յիշատակ բարի և բարեխօս առ Քրիստոս վերոյյիշե-
ցեալ տանուտրոջն Խալիֆային և ամենայն արեան մերձաւորաց նորին՝
կենդանեացն և հանգուցելոցն։ Վասն որոյ աղաչեմ զընթերցողք և զլսողք
472ա շահաւետ // կտակիս յիշել ի Քրիստոս և աստուած-ողորմի ասել պարոն
Խալիֆային, և իւր ծնօղացն՝ հարցն և մարցն, եղբարցն, և քւերցն, և
ամենայն ազգականացն։ Եւ զի ետ ընծայ և նուէր ի գեւղն իւր ի Պնշնա-
գոմերն, ի դուռն սրբոյն Գէորգեայ և սրբոյն Յովհաննու Մկըրտչին, ի վա-
յելումն մանկանց սուրբ եկեղեցւոյ...

Դարձեալ, աղաչեմ յիշել ի տէր և աստուած-ողորմի ասել և մեզ՝ գրագրացս Յակոբ գրչին և իւր հօրն Յովանէս քահանային, և ամենայն արեան մերձաւորաց նորին։

Այլ և ինձ՝ Մովսէս գրչիս, և ծնօղացն իմոց՝ Դանիէլ քահանային, և Հայ-խաթունին, և հօրեղբարցն իմոց Կիրակոս կրօնաւորին, Սիմէոնին և Մեռունին, և որդւոյ նորա տէր Աւագին, որ յայսմ ամի կտըրճամահ եղեւ ի տիս մանկութեան և կսկիծ դառնութեան հասոյց մեզ... Այլ և յիշել բարի կամօք զնորահաս մանկունս իմ՝ զՄիՖայէլ և զԱնանիա, ոո աշխատեցան ի նշայել և ի կոկել թղթիս...

472բ Դարձեալ, աղաչեմ ի տէր. Յիսուս յիշել զարժանաժառանկ տառիս
զքահանայք ժամանակիս՝ զտէր Յովանէսն, զտէր Վարդանն, զտէր Սա-
ճակն և զՍտեփանոս սարկաւագն, զոր վայելել տացէ նոցա զտէր զգիրքս
ի յերկար ժամանակս և փոխանակ լաւ պահելոյ և խնամելոյ վարձս բա-
րեաց նոցա տացէ տէր աստուած, ամէն։

---

* 1489 թ. ընդօրինակված Երևանի № 5860 ձեռագրում կա մի անթվական հիշատակարան. «Դարձեալ, յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր զԹարխոդարն, և զծնաւղս իւր զՅովանէս և զմայրն իւր զՆիգար-Փաշէն. և զկողակիցն իւր զԳուլամ-Փաշէն, որ զսուրբ ի գիրքս ի Սօֆու գերութենէն ազատեաց և ետ ի տէրն իւր....» (էջ 448բ)։

Ամենայն հավանականությամբ այդ հիշատակագրությունն արված է կամ 1491 թ. կամ դրանից մի քանի տարի հետո միայն։

## 226

## ԳԱՆՁԱՐԱՆ

*Երևան 5438*

Գրիչ՝ Յակոբ
Վայր՝ Արծկէ

244բ *Աւրհնութիւն … որ ետ կարողութիւն սխալամիտ և անմար գրչի* Յա*կոբի եպիսկոպոսի հասանել յաւարտ Գանձարանիս՝ ի դառն և ի չար ժամանակիս, որ բազմացեալ են անաւրէնք ի վերայ երկրի և զքրիստոնեայք ի յերկրմանի կու պահեն։*

*Եւ արդ եղև գրաւորութիւն սորա ի քաղաքն յ*Արծկէ: *Զի իմ եղբայրն՝ շնորհալից քահանայն* Ղազար՝ *քառասուն և ինն գանձ գրեաց և ոչ ժամանեաց յաւարտ գրոցս, այլ ի տիս երիտասարդութեան և ի հասակ մանկու-*
245ա *թեան դառն և տարա//ժամ մահուամբ յաստուած փոխեցաւ և եթող մեզ սուգ անմխիթար, և գիրքս անկատար մնաց։*

*Եւ ես՝ մեղուցեալ գրիչս* Յակոբ *եպիսկոպոս՝ դառն սրտիւ և տխուր դիմաւք գրեցի մեղաւոր ձեռամբս մինչև ՀԵ. (75) գանձն ի սուրբ ուխտիս որ կոչի* Խճգրակատար, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի լուսանկար տաճարի, ի հայրապետութեան տեառն* Սարգսի *ընդհանուր Հայոց կաթողիկոսի, ի թուականութիւնս Հայկազան տոմարի ՋԽ. (1491) ամի, յաշխարհակալութիւն ազգին նետողաց* Աղուբ–բէկի, *որ յայսմ ամի բարձաւ ի միջոյ և նստաւ ի թաղթն* Խադէրբէչան Սօֆի–Խալիլն, *և* Սուլեմանն *ի* Միջագետս Ասորոց, *և աշխարհս ի տարտարոս են, միթէ աստուած քաղցրանայ և աշխարհս խաղաղանայ։*

245բ *Եւ արդ, ես՝ թափու//րս ի բարեաց և փարթամս ի չարեաց սնոտանուն* Յակոբ *եպիսկոպոսս աղաչեմ զձեզ … յիշեսջիք զծնողսն իմ, զհայրն իմ* զՆերսէս *քահանայ, և զմայրն իմ* զԽաթուն–Մելիք, *և զեղբայրն իմ զշնորհալից քահանայն* Ղազար, *որ եղեր աչացս խաւար, և զքուերքն իմ* զՔիչի *և* զՋինար, *և զեղբաւրորդին իմ* Զաքարիայ *սարկաւագն, որ թուղթս կոկեաց, և զհոգևոր մայրն մեր* զԲէկին, *որ շատ երախտիք ունի ի վերայ մեզ յիշեսջիք և լի բերանով և ուղիղ սրտիւ աստուած-ողորմի ասացէք…*

*Զձեզ աղաչեմք հայրք իմ զթածք*
*Անմեղադիր լեր սխալանաց,*
*Զի իմ եղբայրն յինէ գնաց,*
*Էր շնորհալից 'ւ անուշասաց.*
*Որբերն խիստ են շիւարած,*
*Իւրեանց կարիճ հայրն է մեռած,*
*Մէկն է բոկիկ ու գլխիբաց,*
*Մեւսն տկլոզ՝ մարմինն ի բաց,*
*Նոքա կարօտ ամէն բարեաց,*
*Տխուր նստին և դեգերած։*
*Փորս և աղիքս է գալարած,*
*Էլ ճար չունիմ քան զտէր աստուած,*

*Որ ինքն տէր է անտիրաց՝*
*Նախախնամող որբոց 'ւ այրեաց,*
*Զմեզ չթողու ինքն ի ձեռաց,*
*Փրկէ զմեզ ի փորձանաց*
*Եւ ի ձեռաց անաւրինաց.*
*Զանկարգս ի կարգս քահանայաց,*
*Որ անարժանս եմ ի գրչաց.*
*Մաքրէ զհոգիս իմ ի մեղաց,*
*Արժան առնէ լուսոյն փառաց,*
*Զի մեզ և ձեզ մասըն բարեաց*
*Պարգևեսցէ Քրիստոս աստուած։*

Բ

244ա *Որք կարդայք 'ւ ասէք և եղանակէք,*
*Զմեղուցեալ* Յակոբ *գըրիչս յաղաւթս յիշեցէք.*
*Աղաչեմք զձեզ լալով անդադար*
*Յիշեցէք յաղաւթս զշնորհալից եղբայրն իմ զ*Ղազար,
*Զի և նա գըրեաց ըզկէս գանձիս ճարտար,*
*Զժամանեաց յաւարտ սուրբ գըրոցս՝ զմեզ արար շիւար.*
*Իմ աղիքս ի փորս է առէր գալար.*
*Մեռաւ իմ եղբայր պատուական, վա՜յ է ինձ հազար։*
*Ըձեզ աղաչեմ ·պանծալի եղբայր,*
*Զեղկելի գրիչքս յիշեցէք յաղաւթս անդադար։*
*Թէ ձայնդ է անուշ և քաղցրաբարբառ՝*
*Լաւ եղանակէ 'ւ ուրախ լեր դու սըրտովդ յաւժար։*
*Թէ բառքդ է խոշոր, մարդոյ դուր չի գար,*
*Ի գատէ կացիր եղկելի՝ մըտաւք խելագար։*

## 227

### ՇԱՐԱԿՆՈՑ

*Երուսաղէմ 1741*

*Գրիչ՝* Մատթէոս
*վայր՝* Աղթամար

375ա *...Աստանաւր յանկ ելեալ աւարտեցաւ տառս Մանրուսմանց... ձեռամբ անիմաստ և անարհեստ գրչի* Մատթէոսի, *յաստուածախնամ կղզիս* Աղթամար *կոչեցեալ, ի հայրապետութեան տեառն* Զաքարիայի, *և ի թուականութեան հայկազեան տումարիս յինհարիւրի և խ. (40)-ին (1491), ի դառն և ի սաստիկ տրտմութեան ժամանակի։ Յորում ամի անողորմ և քաղցր կամք արարչին ի գառնութիւն շարժեալ յիւրական արարածս, որ ելեալ ոմն անիծեալ ի յաստուծոյ* Սովփի *անուն ի* Թաւրիզոյ, *և եկեալ բազում զաւրաւք ի* Վան *քաղաք, և աւերեալ և զբազումս աւար և գերի արարեալ և զսպասք եկեղեցւոյ և զԱւետարան և զամենայն սրբութիւնսն և զգրեանքն տարեալ գերի։ Եւ ով կարէ պատմել զաւերն, զոր արար։ Եւ*

եկեալ ի յՈստան քաղաքն, և անտի եկեալ հրոխտալով նստաւ ի դաշտն Գաւաշիցն. դէմ յանդիման տեղւոյս։ Եւ զայրանայր ի վերայ մեր որպէս զգազան պիղծն այն, և բազում չարիս խորհէր, թէ առնում զտեղն և զամենայն սրախոյնող առնեմ և զսրբութիւնսն քակեմ։ Որով՝ սաստեալ սուրբ խաչի զաւրութեանց յետս դարձոյց զնա. և գնաց Սուլիման-բէկն զհետ, և կոտորեաց զնա ի դաշտին Վանայ, և կորեաւ անիծեալն յաստուծոյ Սոֆի անունն այն։

Արդ ի յայս զառն աւուրքս գրեցի զգիրքս զայս յիշատակ հոգւոյ իմոյ և ծնաւղացն Կարապետին և Խաւնձա-Խաթունին, և հաւրեղբաւր տէր Յովանէս եպիսկոպոսին, և եղբաւրն իմոյ Ազիզբէկին...*

## 228

### ԱՒԵՏԱՐԱՆ

Նոր Ջուղա, 338, ՍՏԱ ՄՏՄ

Գրիչ՝ Յոհաննէս
վայր՝ Համաւրեց գիւղաքաղաք

242ա ...Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվականիս Հայոց ՋԽ. (1491), ձեռամբ անիմաստ և անարժան գրչի Յոհաննէս աբեղայի ... ի հայրապետութեան տեառն տէր Սարգսի, և ի ղանութեան Բայաանդուրոյ, որդոյ Աղուպ-բէկս, գրեցաւ ի գեղաքաղաքիս Համաւրեց, ընդ հովանեաւ սուրբ Կոթողիկէիս և այլ սրբութեանցս, որ աստ կան հանգուցեալ, ամէն։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա յիշեսջիք... զիս՝ զՅոհաննէսս, և զհոգևոր զհայրն իմ զՅովաննէս, և զկողակիցն իւր զՍալթան-բաշին, և որդիքն իւր, և զդստերքն իւր, և զհոգևորն՝ ղհաւատաւոր քոյրըն իմ զԽաւրամզէն, որ շատ աշխատանք կրեց ի գրել սուրբ Աւետարանիս... Արդ ցանկացող եղեալ սուրբ Աւետարանիս և ետ գրել Ղասումն ի հալալ արդեանց իւրոց յիշատակ իւրն և ծնողաց իւրոց Արղութին, Սիրխաթունին, և եղբարցն Յոհանիսին, Գրիգորին, Հայրապետին, Սարիբէկին.

## 229

### ՄԱՇՏՈՑ

Երևան 959

Հետ. ստացող՝ Դաւիթ
վայր՝ Բերդակայ վանք

309ա Զվերջին ստացող սուրբ տառիս զԴաւիթն և զկենակիցն իւր զԲէկին և զԿիրակոս երէցն և զծնօղսն իւրեանց յիշեցէք ի Քրիստոս և լի բերանով աստուած-ողորմի ասացէք նոցա, որ ազատեցին յայլազգեաց և ետուն կրկին ի դուռն սուրբ Յովանիսին Բերդակոյ և սուրբ Աստուածածնին՝ յիշատակ հոգոյ իւրեանց և ծնօղացն, աստուած զիւրեանց մեղքն թողու և

* Հայտնի է նաև, որ Աղթամարում 1491 թ. Կարապետ գրչի կողմից, ընդօրինակվել է Մայր մաշտոց (տե՛ս Ց. Թոփճեան, Ցուցակ Խ. Դատեանի, Բ, էջ 55)։

*ազատէ զնոսա ի չարէ և ի մեղաց, ամէն։ ՋԽ. (1491) թւին ազատեցին զսուրբ գիրքս* Կիրակոս *Հաւչօշ էրէցն և* Դաւիթն *ի* Սօֆու *թալանէն, գնեցին ի հալ[ալ] արդեանց և ծրի յուղարկեցին ի* Բերդակա *վանքն յիշատակ հոգոյ իւրեանց. և որք հանգիպիք աստուած-ողորմի ասացէք, և աստուած ձեզ ողորմի, ամէն։*

## 230

## ԱԻԵՏԱՐԱՆ

*Ն. Ակինեան, Ցուցակ Վասպուրականի 211, սյուն, 517—518, Շատախի Դաշտի թաղի եկեղեցի*

*Գրիչ՝* Իսրայէլ
*վայր՝* Շատախ, Անջողոնց վանք

*Փառք... Ուստի և տեսեալ զսորայս անճառ փրկագործութեան խորհուրդ՝ ոմն պատվական* Վարդան, *ցանկացաւ աստուածախօս սուրբ Աւետարանիս, և ետ գրել յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնողացն՝ հօրն* Գրիգորին *և մօրն* Թօրվանդին, *և եղբայրց՝* Սարգսին *և* Աւետիսին, *և հօրեղբօրորդւոյն* Մուրադին, *և հօրն* Աստուածատրոյն, *և մօրն* Շամամին, *և միւս հօրեղբայրն* Սուլտանշին, *և զաւակացն՝ Հայրապետին,* Շահնտանին, Սուլտանշին, *և* Բաղդասարին, *և* Ղազարին, *և* Դարմանին:

*Եւ արդ ես՝ յետինս քահանայից, անարժանս ի մանկունս եկեղեցւոյն, հրաման առեալ ի պատուիրանադիր առաքելական բանէն, որ ասէ. Յոր կոչումն կոչեցար՝ ի նմին կացջիր։ Եւ արդ իմ, ո՛չ բերելով զայսպիսի վստահութիւն, այլ ունայն յամենայն բարեվայելչութենէ, որ առաքինեացն է համարձակութիւն, այլ ի բարեխօսութիւն մաղթելով զամենայն սուրբ[ս]ն և ի մարդասիրութիւն աստուծոյ յուսադրեալ զկործանեալ, լքեալ անձն իմ եղկելի։*

*Ո՞վ դիւրակործան մարմին երկրածին, որո՞վ ձայնարկութեամբ զքեզ աւաղեցից կամ զի՞արդ[և] զորո՞ց նշանակեցից. զմարմնական տարածմա՞նց, եթէ՞ զհոգեկան սխալանաց, զկամայի՞ց, եթէ՞ զակամայից, զոր ոչ բաւէ նամակս վերաբերել և կամ ի գիր շարաբառնել։ Այլ գիտողին ընգաղտներևակսն, նմա առաջի կարգեալ հողից գանձն իմ մաղթանօք, որ կարողն է կեցուցանել և վերստին հրաշագործել յիս՝ աղօթիւք ամենայն սրբոց։*

*Արդ, գրեցաւ սուրբ Աւետ[արանս] ձեռամբ* Իսրայէլ *անիմաստ և տխմար գրչին։ Եւ իմ անընդունակ գոլով յարուեստ գրչութեան և բազում մեղաց ցնորիւք պաշարեալ, թէ յոտից մինչև ցգլուխ չիք առողջութիւն, այլ ըստ կարի մերում, զոր պարգևեաց մեզ մարդասէր հոգին, բաւում աշխատեալ իմ՝ գրեցի անարժան ձեռօք իմովք, յընտիր և յըստոյգ յօրինակէ, կենաւք տառապանաւք։*

*Գրեցաւ ի յերկիրս* Մոկաց, *ի քաղաքս որ* Շատան *կոչի, յոտ[ս] և ի գուռն սուրբ Աստուածածնիս* Անջողոնց, *ի թուականիս Հայոց ՋԽ. (1491) ամին, ի դառնացեալ ժամանակիս, որ սասանեցաւ յերկիրս ի գար[նա]նային ժամանակին։*

## 231

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան. 6273 (Գ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան հայոց), էջ 361, Մարզվանի եկեղեցի*

*Գրիչ՝* Առաքել
*վայր՝* Աւագ վանք

*....Արդ, աղաչեմ զձեզ, ո՜վ մանկունք նոր Սիոնի, որք հանդիպիք այս սուրբ Աւետարանիս՝ կարդայք և օգտիք ի սմանէ, յիշեցէք սրտի մտօք յաղօթս ձեր զծոյլ և զհեզգ ծառայս ծառայիցդ աստուծոյ զԱռաքել սուտանուն աբեղայ։ Եւ գրեցաւ սուրբ Աւետարանս ի դուռն սուրբ Առաքելոց, որ կոչի Աւագ վանք, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Կարապետին, և այլ բազմահաւաք սրբութեանցս, ի յառաջնորդութեան տէր Յոհաննէս եպիսկոպոսի, ի թուին Ջխ. (1491)։ Եւ այլ աղաչեմ անմեղադիր լինել խոշորութեան և սխալանաց, զի կար մեր այս էր. և որ յիշէ յիշեալ լիցի ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է օրհնեալ յաւիտեանս։*

## 232

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*Երևան 7366*

*Գրիչ՝* Մարտիրոս
*վայր՝* Բաբերդ

ա

655ա *...Արդ, աւարտեցաւ քրիստոսահիմն և աստուածաշէն քաջ նահատակաց և մարտիրոսաց հոգիաբուխ սուրբ տառս ի թվականութեան Հայոց Մեծաց Ջ. և խ. (1491), ի խնդրոյ մեծահաւատ և աստուածասէր քրիստոնէիցն և հարազատ եղբարցն խոճայ* Ջրախին *և խոճա* Փիրումին, *...յիշատակ իւրեանց, և ծնաւղաց իւրոց* Ամիր-Տատային *և* Ուլու-Խաթունին, *և զաւակաց իւրեանց փոքր* Տատային *և* Պարոնին, *և այլ ամենայն արեան մերձաւորաց նոցին...*

655բ *...Ստացան զսուրբ տառս ի հալալ ընչից իւրեանց... ի քաղաքս* Բաբերդ, *ի դուռն սուրբ Յոհան եկեղեցւոյն և այլ կենսակիր սուրբ նշանացն։*

*Բայց գրեցաւ սուրբ մատեանս ի քաղաքս* Բաբերդ, *առ դրան սուրբ Աստուածածնին, ձեռամբ անարհեստ և թարմատար, մեղսամած* Մարտիրոս *գրչի։*

*Եւ որք հանդիպիք սմայ կարդալով կամ աւրինակելով՝ յիշեցէք ի սուրբ և ի մաքրափայլ աղաւթս ձեր զվերոյգրեալքս ի սմա՝* զՋրախն *և* զՓիրումն *և զամենայն արեան մերձաւորս նոցին և զմեղաւոր հողս* զՄարտիրոս *սուտանուն գրիչս, միայն թէ արժան իցեմ։*

*Արդ, խոշորութեան և սղալանաց որ ի սմայ անմեղադիր լերուք, կար մեր այս չափ էր։ Այլ և խնամով պահաւղք աւրհնին յաստուծոյ և յամէնայն սրբոց, ամէն։*

Բ

Տէր և աստուած ամենայնի
Եւ արարիչըդ համայնի,
Յորժամ փառաւք գաս յաշխարհ,
Նըստիլ յաթոռ դատաստանի,
Այց արասցէս քո ծառայի,
Ստացաւղ ճառիս Յայսմաւուրքի,
Որ մինչ ի յայս կայր ի մարմնի ·
Եւ այժմ հոգով առ քեզ յուղղի*։

Գ

Ամենազաւր տէր իմ Յիսուս
Ինձ ողորմեայ՝ մեղուցելոյս,
Եւ բըժըշկեայ ցցաւս ի հոգւոյս,
Որպէս պատմի աստ՝ ի գըրոյս։
Այլ և հայեաց ինձ՝ եղկելոյս,
Որ աստ ծըփիմ ի մէջ ծովոյս,
Վառեայ զճըրագ աչաց մարմնոյս
Եւ անվընաս հան զիս ի լոյս**։

Դ

Մեծ վարդապետ և րաբունի
Տէր Մխիթար*** հեզահոգի,
Որ գովեցար յայսըմ ճառի
Ընդ երանելեացն երանելի,
Յորժամ գայցէ տէրն ամենի
Նըստի յաթոռ դատաստանի
Լեր բարեխաւս յայնմ ատենի
Վասն եղկելոյս քարտուղարի,
Այլ և ճառիցս ըստացողի՝
Երկու եղբարցն, ի մի վայրի,
Այց առնել տէրն յայնմ ատենի,
Յորժամ դատէ զազգս ամենի։

Ե

Զձեզ աղաչեմ մանկունք բարի
Եկեղեցւոյ և սուրբ ուխտի,
Որք հանդիպիք յայսըմ վայրի
Յիշման արէք զիս արժանի՝
ԸզՄարտիրոս մեռեալ հոգի՝

* Գրված է 223բ—224ա էջերի ստորին լուսանցքներում։
** Գրված է 251բ—252ա էջերի ստորին լուսանցքներում։
*** Խոսքն ուղղված է Մխիթար Կերմանեցի վարդապետին, որի վարքի ստորին լուսանցքներում (328բ—329ա էջերի վրա) գրված է այս հիշատակագրությունը։

*Բարեաց Թաթուր՝ չարեաւք իլի,*
*Ըզծրագրող այսըմ տառի,*
*Որ Յայսմաւուրք անուն կոչի**։

## 233

## ԳԻՐՔ ՋԵՌՆԱԴՐՈՒԹԵԱՆ

*Բրիտ. Թնգ.* or. *2615, Ֆ. Կոնիբեր, Ցուցակ, 43, էջ 90*

*Գրիչ*՝ Յովանէս
*վայր*՝ Կեսարիոյ գաւառ,
Գրիգորի Նիւսացւոյ վանք

108ա *...Գրեցաւ Ջեռնադրութեան գիրքս ձեռամբ* Յովաննիսի *յանցաւորի ի*
*գաւառս* Կեսարիոյ, *ի հռչակաւոր անապատս սրբոյն* Գրիգորի Նիւսաց-
ոյն։ *Զի է լաւ և ընտիր աւրինակ, շինեալ և յաւրինեալ ի տէր* Առաքելէ
Սիւնեաց *եպիսկոպոսէ, եւ մեք վասն առաւել գեղեցկութեանն գրեցաք*
*զսա ի Թվ. Ջխ. (1491)...*

## 234

## *ՄԱՇՏՈՑ*

*Տիրայր, Ցուցակ Օքսֆորդի Բոդլեան գրատան,* Ms. Arm. E. 7.
*Երևան, Մատենադարան «Անհատական արխիվներ» Թղթ. 119, էջ 400—401*

*Գրիչ*՝ Յուսիկ
*վայր*՝ Խառաիշարու վանք

201ա *...Գրեցաւ ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի՝ սուտանուն* Յուսիկ
*կրաւնաւորի, ի Թուիս Հայոց Ջխ. (1491), ի վանքս* Խառաիշարու, *ընդ հո-*
*վանեաւ սուրբ Կարապետին և սուրբ Աստուածածնին և սուրբ Սարգ[ս]ի*
*զաւրավարին, յառաջնորդութեան սուրբ ուխտիս քաջ րաբունապետ* Ստե-
փանոս *վարդապետի և ԺԵ. (15) անձն աբեղի, որ կան ի յայս լսարանիս։*
*Ով ոք հանդիպիք ի սմայ յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զանարժան*
201բ *գրչակս զմեղս//աւէր, և զծնաւղս իմ և զամենայն արեան մերձաւորս իմ,*
*խոշորութեան և սղալանաց անմեղադիր լերուք, զի այս էր կարս իմ։*

*Յիշեսջիք և զստացաւղ սորայ զտիկին* Մարթայն, *որ ստացաւ զսա*
*ի հալալ վաստակոց իւրոց՝ յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց* Աստուածա-
տուր *քահանայի, և ամենայն արեան մերձաւորացն, ի վայելումն որդոյն*
*իւրոյ Նորածին* Թաքէոս *քահանայի, և որք յիշէք՝ յիշեալ եղիջիք ի Քրիս-*
*տոսէ աստուծոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։*

---

* *Գրված է 630բ—631ա էջերի ստորին լուսանցքներում։ Նման չափածո գրություններ կան նաև այլ էջերում։ Բացի այդ, յուրաքանչյուր վարքից հետո, գրիչը հիշատակում է ձեռագրի ստացողներ խոճա Չրախին և նրա եղբայր Փիրումին։*

## 235

### ԱԻԵՏԱՐԱՆ

*Երևան 6807*

Գրիչ՝ Յունան

299բ *....Գրեցաւ սուրբ քառաբուխ Աւե//տարանս ի Հա[յոց] Թուականիս Ջխ. (1491), ձեռամբ անարժան և մեղապարտ գրչի՝ սուտանուն վերակոչեալ, որ միայն զձևս ունիմ և ոչ զգործն՝* Յունան *եպիսկոպոսի, որ ոչ եմ արժանի գրել զանունս ի կարգի, ի խնդրոյ սրբասէր և բարեմիտ քահանային* Ովանիսին, *յիշատակ իւր, և ծնողացն իւրոց , և եղբարցն, և ազգականացն, եւ կողակցին իւրոյ* Մարիանին, *և որդոցն իւր* Ալեգսանեոսին, *և նորաբողբոջ դեռաբուս փոքր սարկաւագին* Ազարիային, *աստուած վայելել տացէ նմայ, ամէն։*

*Արդ, աղաչեմ զսրբազան դասս քահանայից ... յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր զմեղապարտ գրիչս եւ զստացող սուրբ Աւետարանիս* զՅովանէս *քահանայն, և զամուսին* զՄարիանն, *որ խիստ փափաք ունէին* 300ա *սուրբ Աւետարանիս. վասն յիշատակի // իւրեանց։*

*Դարձեալ, կրկին աղաչեմ զամենեսեան, որ սէր ունէք և արուեստ ոչ, զի խամ էաք և անկարող. խոշորութեան և սղալանաց անմեղադիր լերուք, զի կար մեր այս էր, եւ դուք յիշեալ լիջիք առաջի ահաւոր բեմին Քրիստոսի, ամէն։*

## 236

### ՃԱՌԸՆՏԻՐ

*Բ. Կիւլէսէրեան, Ցուցակ Անկիւրիոյ 2, սյուն. 34*

*Նախագաղափարի գրիչ՝* Եսայի

301ա *Գրեցաւ պատճառ և մեկնութիւն Բարձրացուցէիս, զոր արարեալ է երիցս երանեալ կաթողիկոսի Հայոց տեառն* Ներսէսի, *ի խնդրոյ* Վարդան *վարդապետի, որ կայ ի* Հաղբատ *ի դամբարանի, ի թվոյս հայկազեանս տումարի ինն հարիւր քառասուն (1491), ձեռամբ* Եսայի *քահանայի և պիտակ անուն վարդապետի, աշակերտի մեծի հռետորի և գիտնական վարդապետի* Ներսեսի:

## 237

### ՃԱՌԸՆՏԻՐ-ՏՕՆԱԿԱՆ

*Երևան 1524*

676բ *...Արդ, ցանկացաւղ եղև այսմ սուրբ գրոցս աղայ* Խդրըն, *և կողակիցն իւրոյ* Փաշայչանն, *և զորդիքն իւրեանց՝* զՊապն, Յովսէփ, Բէկիշէն, Մուրադշէն, *և զդստերքն* Խդրին՝ Լայլուն-Փաշէն, Մաղար-Փաշէն. *և ստացան սուրբ գիրգս յիշատակ յիւ[ր]եանց, և ծնաւղաց իւրեանց՝ զհայրըն իւրեանց հանգուցեալն ի Քրիստոս* զԲաղդաղշէն *և* զԽանձին, *որք*

Հանդիպիք ի սմա ընթերցելով կամ կարդալով յիշեսջիք ի յաղաւթս ձեր և աստուած զձեզ յիշէ իւր միւսանգամ գալըստեանն, ամէն*։

Թվ. Ջխ. (1491), եղո՜ւկ զՂարիպ վարպետս, թէ ոնց լինիմ յայս ղարիպութիւնս**։

## 238

### ՃԱՇՈՑ

Տեղն անհայտ, ՄՏՄ

Գրիչ՝ Յոհաննէս
վայր՝ Թանատեա՞ց վանք

Գրիչ Յոհաննէս կրօնաւոր՝ միաբան Թանատեաց վանից, ստացող Միրանշահ, գրեալ յաւրինակէն Սահակնոյ:

## 239

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 357

91ա Աստուած աւրհնէ զԱստուածայտրին կողակիցն և զիւրեանց ծնաւղ զՊաղտատ-Մելիքն, որ տւին զիւրեանց խաւունն Աւետարանիս յիշատակ։ Թվ. Ջխ. (1491)։

## 240

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 10220

Ստացող՝ Մինաս

239ա Եւ արդ ես մեղուցեալս յարդարոց և ա[նար]ժանս ի կարգաւոր[ա]ց՝ ծառայս ծառայիցդ աստուծոյ Մինաս քահանայն, ստացանք զսուրբ Աւետարանս ի հալալ և ի քիրտնաջան վաստակոց մերոց, յիշատակ մեզ անջնջելի և կայուն անդառնալի մեզ, և ծնաւղաց մերոց՝ հաւրն իմոյ Հերայպետին և մաւրն իմոյ Մաղթում-Փաշային***, և հաւրեղբաւրն իմոյ Եսային, և կողակցին իւրոյ Կուլի-Խաթունին, և իւր ծնաւղացն, և եղբարցըն Եղիլշահին, Աբրահամին, կենակցին իմոյ Մաղթումին, և Քնքուշին, և Սառային, և Նիգարին, և այլ ամենայն մերձաւորացն մերոց՝ կենդանեաց և հանգուցելոցն։ Եւ լի բերան աստուած-ողորմի ասացէք, և աստուած ղձեզ ողորմեսցի, ամէն։

Ի թվին ի Ջ. ու Խ. (1491)։

Դարձեալ երես անգեալ աղաչեմ զձեզ… յիշեցէք… զտէր Մինասին, և զորդին իւր տէր Մարտիրոսն, և զիւր եղբայրին <իւր> զՅոհանէս, զՊաղ-

* «Ամէն»-ը գրված է փակագրով։
** Այս տողը գրված է այլ ձեռագրով։
*** Տողերի միջտեղում այլ ձեռագրով գրված է՝ «և ւ արեան մերձաւորացս»։

տայսարն. զԳասպար և զՈւրատն, և զմայրն իւրեանց զՄխումն, և Կուլըստանեին*, և զՔնճուշն, և զՆիկարն, և զՆխտիարն, և զամենայն արեան մերձաւորս, ամէն։

## 241

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 9660

Ծաղկող՝ Պարսամ

Ծա Պարսամ ծաղկողս անյիշելիս
Ծաղկող եղէ Աւետարանիս,
Տէրն աղաչեմ տենչմամբ սրտիս,
Եւ զարարիչն բոլորիս,
Որ զձեզ անփորձ պահէ յերկրիս.
Անմեղադիր լերուք ծաղկիս**։

---

* Անունը գրված է տողամիջում։

** Ավետարանից մնացել է միայն տերունական նկարների և Համարաբարբառի մի մասը։ Հիշատակարանը գրված է նկարներից մեկի ներքևում։ Պայմանականորեն ենք տեղադրում 1491-ի թվաշարքում. նույն այս Պարսամ գրիչը նկարազարդել է մի այլ Ավետարան 1493 թվականին՝ Աղթամարում (տե՛ս էջ 191, Հիշատակարան № 252)։





## 242

### ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 4782

Գրիչ

ա

220ա *Ո՜հ, ո՜հ, զայս դառն տարիս, ցորեանն ի Կ. (60) թկ. (թանկա) ու չկա, կորեկն և զարին ի Ծ. (50) թանկա, և աղքատք ամէն խիստ տառապին և անիծեն զՍօֆին:*

*Թվ. ՋԽԱ. (1492)*:*

բ

305բ *Այսաւր փախեաւ Սուլիման-բէկն ի Թավրիզու, թվ. ՋԽԱ. (1492), արեգի Գ. (3), աւուր ամառնամտին, յերեսաց Ըռուստամ ամիրզի, և աշ ///*

գ

230բ *Ձեռքըս փըտի ՚ւ ի հող դառնա,*
*Գիրքս յիշատակ առ ձեզ մընա.*
*Որք ընթեռնուք ՚ւ օգտիք ի սմայ,*
*Յիշէք առ տէր զգծող սորայ:*

դ

292բ *Թամուրի տարին ի յԱլընջա ի խիսար են եղել: Անդ է ասցել Մաաբէոս վարդապետն զտաղս ողբական բանիւ**:*

ե

201ա *Կարմիր կիրակէին ասա և ուրախացիր դու կարմիր գինով***:*

զ

213բ *Ո՜հ, ո՜հ, անդէրն մոլորեցոյց, անմեղադիր լերուք:*

է

217բ *Յորժամ զմեղեդիս երգես զմեղաւոր գծիկս յիշես, ո՜վ եղանակող:*

ը

248ա *Տաղս**** ի յըրինակի գծօղէն՝ ի Մինասենց [Թումայ] քաշ և արի փիլիսոփայէ: Աստուած լուսաւորի զուր հոգին, ամէն:*

---

* *Այս և հաջորդ բոլոր հիշատակագրությունները գրված են նշված էջերի ստորին լուսանցքներում:*

** *Խոսքը «Սրբոյն Յակոբայ Մծբնայ հայրապետի» մասին գրած տաղի մասին է, որ սկսվում է «Այսաւր զոչեմք բերկրանաւք» բառերով:*

*** *Խոսքը «Նոր կիրակէի» գանձի մասին է:*

**** *Խոսքը գիշերապաշտման տաղի մասին է, որ սկսվում է «Արարչակից հօր անեղին» բառերով:*

Բ

290ա Ա՜խ, իմ էրէսս ձեզ ի մոխրին, ինձ ասացէք զտէր ողորմին*։

## 243

### ԱՒԵՏԱՐԱՆ

Հ. Յ. Քոսեան. Ցուցակ Արծնեան վարժարանի 14, ՀԱ. 1961, սյուն 133

Գրիչ՝ Խաչատուր
վայր՝ Ցաղացքարայ վանք

...Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի ձորս Աղեկեաց, ի վանքս Ցաղացքարայ, ի գրան Կենսաբեր սուրբ Նշանիս, և սուրբ Բևեռացս Քրիստոսի, և սուրբ Աստուածածնիս, և սուրբ Կարապետիս, և սուրբ Առաքելոցս, առ ոտս փառաւոր և մեծազգի արհեպիսկոպոսիս տէր Գրիգորի, զոր տէր աստուած պահեսցէ զնա երկար ամօք, ամէն։ Արդ, ես՝ Թանկազիգ ապաշխարողս ստացայ զսուրբ Աւետարանս և ետու հարազատ եղբայրն իմ... ի տէր Խաչատուրն՝ յիշատակ մեզ, և ծնողաց մերոց, պապին իմոյ ծերացեալ, և ի Քրիստոս փոխեցեալ երախտաւորին մեր տէր Դաւթին, հաւրն մերոյ Այշիբէկին, և մաւրն մերոյ Իկտիշին, և աւագ եղբաւրն մերոյ Գալըստին, և կողակցին իւրոյ Ջանխաթունին, և դեռաբուսիկ և աստուածապահ մանկանն իւրոյ Եղիշէին, ուստերաց և դստերաց իւրոց, ամէն։

Յիշեցէք զգծողս զԽաչատուր քահանայս, և զհայրն իմ զԱսուատուրն, և զմայրն իմ զՔարամ: Գրեցաւ ի թուականութեանս հայկազեան տումարի ՋԽԱ. (1492)։

## 244

### ԱՒԵՏԱՐԱՆ

Նոր Ջուղա 415, ՄՏՄ

Նորոգող և կազմող՝ Մանւէլ
վայր՝ Կուֆի գիւղ

264 ...Զստացող սորա զըՍտեփաննոս քահանայ... յիշատակ հաւր իւրոյ Սաֆարշին և մաւր իւրոյ Թամարին, որ ետ զգինս սուրբ Աւետարանիս ի հալալ վաստակոց իւրոց, յիշատակ հոգոյ իւրոյ, և ի վայելումն որդոյ իւրոյ Ստեփանոս քահանայի... Ընդ սոցին և զնորոգաւղ սորա և զկազմող՝ զՄանւէլ անարժան գրիչս յիշեցէք... Թվ. ՋԽԱ. (1492)։

---

* Նման հիշատակագրություններ, ուր գրիչն արտահայտում է իր վերաբերմունքը ընդօրինակվող գանձի կամ տաղի նկատմամբ, կամ տալիս է համապատասխան ծանոթություններ գանձի հեղինակի, գրության և նպատակի մասին՝ շատ կան ձեռագրում։

Այսպես, օրինակ, 269բ էջում ընդօրինակված է «Ի ձայն հրճուանաց խրախանամք» բառերով սկսվող մի երգ, որ վերնագրված է «Տաղ անոյշ»։ Գրիչը լուսանցքում նկատում է, որ այդ տաղի «Ոչ անոյշ գիտեմ, ոչ չանոյշ» և այլն։

## 245

### ՄԱՇՏՈՑ

**Երևան 4201**

Գրիչ՝ Կարապետ
Վայր՝ Ախթամար

264բ *...Արդ, ես՝ մեղուցեալ և անարժանս յամենայնի* Կարապետ *քահանայ... կատարեցի զսա ի կղզիս* Ախթամար, *ընդ հովանեաւ սուրբ Խաչիս և սուրբ Սարգսի զաւրավարիս, ի հայրապետութեան տեառն* Զաքարիայի, *ի թվականութեանս Հայոց ՋԽԱ. (1492)։*

*Բայց ես մեղուցեալ և անարժան ծառայս ծառայիցդ աստուծոյ խուսըն** Պաւղոսս, *եւ որդիս իմ* Յոհանէս *Նտուք գրծագ[ր]ել զսա ի խալալ և յարդար վաստակոց մերոց, յիշատակ հոգոյ իմոյ, և ծնաւղացն իմոց՝ հաւրն* Յոհանեսին *և մաւրն* Թանկ-Խաթունին, *և հաւրեղբաւրն* Գրիգորին. *և կենակցին* Խաթունին, *և զաւակացն, և* Պաւղոսի *կենակցաց* Բաղդալին
365ա *և* Մըրաթին, *և որդոցն* Յոհանեսին, Դաւիթ, *և //* Գրիգորին, Վարցին, *և դստերացն* Գոհարին, Թանգ-Խաթունին, Դովլաթին, Ազիզ-Խաթունին, Ղարիպ-Խաթունին, Թուրուանդին, Թաւրիզին *և այլոցն ամենեցուն, և հարսինն* Մարմէլիքին, *և զաւակացն* Պաւղոսին, Գուլստանին, *և այլ ամենայն արեան մերձաւորացն մերոց՝ կենդանեացն և հանգուցելոցն առ Քրիստոս...*

*Դարձեալ, աղաչեմք ձեզ, ո՛վ քահանայք և ժողովուրդք, որ լի ընթանուլ աստուած-ողորմի ասիցէք ինձ՝ մեղաւք մեռեալ հոգոյս* Կարապետ *քահանայիս՝ գրողիս, ծաղկողիս և կազմողիս, և իմ ծնաւղացն՝ հօրն* Յոհանեսին *և մաւրն* Շարմ[լի]քին, *և հօրեղբաւրն իմոյ* Հայրապետ *սրբակրաւն աբեղային, և* Մինասե[ն]ց Թումայ *արի և քաջ փ[ի]լիսոփային, և կենակցին իմոյ* Ղամար-Խաթունին, *և զաւակացն* Թումին, Մինաս *սարկաւագին,* Խաչատուրն, *և դստերացն* Շախփաշին, Մահսումին, *և եղբաւրըն իմոյ*
365բ Միխիթա//րին, *և որդոյն* Նախպարոնին *և* Մկրտչին, *որ ի յայսմ ամի փոխեցան առ Քրիստոս և թողին սուք անմխիթար Բ.(2) եղբաւրս, և զքոյրն իմ* զՓաշէն, *և զայլ ամենայն մերձաւորըն մեր, և աստուածողորմի ասացէք և աստուած ձեզ և մեզ ողորմեսցի ի յաւուրն ի դատաստանին, ամէն...*

## 246

### ՄԱՇՏՈՑ

**Երևան 6884**

Գրիչ՝ Զաքար
Վայր՝ Դվնիկ գիւղ

173բ *Փառք... որ ետ կարողութիւն տկարամիտ և փծուն գրչի ղարիպ* Զաքարի *հասանել յաւարտ սուրբ գրոցս, որ կոչի Մաշտոց. ի թուականիս*

* *Իմա «հիւսն»*

Հայոց ի ՋԽԱ. (1492), ի գեղս Դվնիկ, ընդ հովանեաւ սուրբ Գրիգորի տաճարիս, ի յաստուածաշէն տունս իմ սանահւրացս՝ տէր Կարապետի
174ա և Ամիր-էդլի, որ և աստուած հաստ//ատուն և խաղաղ կենաւք պահեսցէ զսոսա իւրեանց ընտանեաւք, ամէն։

Արդ, խնդրող եղեւ այս աստուածաշունչ գրոցս հաւատարիմ տանուտէրն Գրիգոր, և ստացաւ զսա ի հալալ և յարդար վաստակոց իւրոց յիշատակ իւրն, և բարի ծնաւղացն՝ հաւրն Հարապետին և մօրն Խալասին, և եղբարցն Կարապետին և Վարդպարոնին, և քուերն Գուլշատին, և որդոյն Կիրակոսին և Սուլտանին, և դստերցն Բաղտատին և Սալչուկին, և ամենայն արեան մերձաւորացն, ամէն։

174բ Արդ, որք հանդիպիք այս գրոցս լի բերանով և ուղիղ սրտիւ աստուած-ողորմի ասացէք հաւատարիմ տանուտրոջն Գրիգորին, և ամուսնոյն Սուլտանին, և դստերցն Բաղդատին և Սալչուկին, և փեսայիցն Շահամիրին և Սանակին, և Գրիգորի եղբարցն՝ Կարապետին և Վարդպարոնին, և եղբօրորդոցն Հարապետին, Շանպարոնին, և Աստուածատուրն, և Նուրադնին: Այլ և զաւակացն՝ գնացելոցն առ աստուած Ամիրխէրին, Ստեփանոսին, Ամիրին և Մերուճին:

175ա Եւ արդ, մի ոք իշխեսցէ ծախել զսա և կամ դրաւել՝ ոչ ի մերոց և ոչ յաւտարաց.և եթէ ոք յանդգնի և ծախէ կամ հեռացնէ, զպատիժն Յուդայի առցէ և զԿայենին և զԱրիոսին, ամէն։

/// Մկ՛ր ]տչին, ամէն, այլ և հարսներուն՝ Հարմելիքին և Թուրվանդին*.

Եւ արդ, սխալանացս անմեղադիր լերուք, զի ստիպով դրեցի ի ղարիպութիւնս, և կարն իմ այս էր։

## 247

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՆԵՐԱԾՈՒԹԵԱՆՆ ՊՈՐՓԻՒՐԻ՝ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ, ԵՒ ՍՏՈՐՈԳՈՒԹԵԱՆՑ ԵՒ ՅԱՂԱԳՍ ՄԵԿՆՈՒԹԵԱՆ ԳՐՈՑՆ ԱՐԻՍՏՈՏԵԼԻ՝ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՈՐՈՏՆԵՑԻՈՅ

Երևան 1921

Գրիչ՝ Անդրեաս
վայր՝ Ամասիա

183բ ...Շնորհիւ տեառն կատարեցի գիրքս, որ է արտաքին իմաստասիրութեան լուծմունք, որ է իմաստք մեծ իմաստնասիրացն Պորփիւրի և Արիստ[ոտ]էլի՝ մեկնեալ մեծի և անյաղթ փիլիսոփային Դաւթի եւ լուծեալ ի մեծ հռետորէ Յովհաննէսէ վարդապետէ Որոտնեցւոյ և ի լուսաւոր բաբունապետէ Գրիգորէ եռամեծէ՝ ձեռամբ մեղաւորիս և փցուն, ողալոտ և ծոյլ, դատարկ յամենայն բարեաց Անդրէաս անարժան երիցու, կամաւք և յաւժարութեամբ խաւճայ Ամիրտովլաթ բժշկին, քանզի հմուտ գոլով ամենայն աստուածաշունչ գրոց, այլև ամենայն արտաքին իմաստասիրութեան հանճարոց, զոր և այժմու ժամանակիս երկրորդ Պտղոմէոս յայտնեալ ըստ գրասիրութեան։ Զի բազում դիրս թարգմա-

* Կես տող դատարկ է թողնված, գիրքը նվեր ստացող վանքի անվան լրացման համար։

*նեաց ի յարապ և ի պարսիկ լեզուէ ի մեր բառ, գիտելով քաջ և զնոցայն գիրն և լեզու։ Որ և յարգեալ և պատուեալ ի թագաւորացն իսմայելացւոց, զի յառաջն բնակէր ի քաղաքս յ*Ամասիա, *և յետոյ՝ գնացեալ ի* Կոստանդինուպալիս *առ թագաւորն, որ* Մահմատ-խան *կոչիւր, և յետ մահուան նորա՝ թոռն նորին սուլտան* Ահմատն *առաքեաց և էբեր առ ինքն՝ ի քաղաքս յ*Ամասիա, *ի տեղի սնընդեան իւր և յոյժ սիրով ընկալաւ, յորում ժամանակի գրեցի զգիրքս ի վայելումն իմաստնայեղ անձին իւրոյ և յիշատակ առ յապայսն։*

*Արդ, եղև գրաւ գրոյս ի թվ. ՋԽԱ. (1492)։*

*Աղաչեմ յիշել ի տէր զվերոյգրեալսդ՝ զխաւճայ* Ամիրտովլաթ *բժիշկըն՝ զստացւող սորա և զամենամեղ գծողս, և դուք յիշեալ լիցիք առաջի Քրիստոսի։*

*Դարձեալ, կրկին աղաչեմ յիշել ի տէր զտէր* Սարգիս *քաջ բաբունին և զզտէր* Թադէոս *զրոց աշակերտն, որ ի նորին աւրինակէն գրեցի զգիրքս, զի աւրինակ սորա գրեալ էր ձեռամբ տէր* Թադէոսին, *ի յաշխարհն* Հոնաց, *ի քաղաքն* Դազարիա, *որ այժմ կոչի* Կաֆայ:

## 248

## ԳԱՆՁԱՐԱՆ

*Թ. Գուշակեան, Ցուցակ Սեբաստիոյ ս. Նշանի 134, էջ 82*

*Գրիչ՝* Յովանէս
*վայր՝* Սեբաստիոյ գաւառ, ս. Նշան վանք

531 *...Գրեցաւ և աւարտեցաւ Գանձարանս աստուածային մատենից ձեռամբ յոգնամեղ և տարտամ և /// * Յովանէս *գրչի, ի գաւառս* Սեբաստիոյ, *ի դրանս սուրբ Նշանիս, ի թվականութեանս Հայոց ՋԽԱ. (1492), և ///* Յով]անէսիս:

*Արդ, որք հանդ[իպիք /// յիշեսջիք զմեղաւք ի լի գրչակ[ս///*

## 249

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*Երևան 6273 (Ղ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան հայոց), էջ 365, Ամասիայի ս. Նիկողայոս եկեղեցի*

*Գրիչ՝* Գրիգոր
*վայր՝* Թոխաթ

*Գրեցաւ սա ի թուին ՋԽԱ. (1492), ի* Թոխաթ *քաղաքի, ի դուռն Պարսամայ ճգնաւորի, ձեռամբ* Գրիգոր *երիցոյ...*

[ *Յիշեցէք զբարեպաշտ* Սալչուկն, *որ եստ զվաթսուն Յլորի, և ստացաւ զսա, և եդ յիշատակ ի դուռն* Ամասիոյ *սուրբ* Նիկողայոսի ]*։

* *Փիրղալեմյանը չի հայտնում, թե երբ է կատարվել այս նվիրաբերությունը։*

## 250

### ՇԱՐԱԿՆՈՑ

*Հռոմ 24, Տիսերան, Ցուցակ, էջ 305*

*Նորոգող՝* Ատոմ

292բ *Ո՜վ դասք լուսերամից և հանդիսի կայճառք արփիափայլք, ծիծ-*
*ռունք բանաւորք՝ գուշակ գարնան, հոգևորք ծաղիկ պարտիսաց բուսողք*
*շուշանից գեղազարգեալք ի բանաւոր երկրի ի դիտանոց Սիոնի՝ մայրն*
*վերնոյն Երուսաղէմի, մանկունք սուրբ եկեղեցւոյ՝ յիշեցէք ի բարին*
*Քրիստոս զստացողք սուրբ տառիս զբրբասէր քահանայքն* ըզՄխիթար.
293ա զՅովաննէս *և* զխաչատուր, // *և զծնաւղսն իւրեանց՝* զՆերսէս *քահանայ*
*և* զՍտեփանոս *քահանայ,* զՆօնօֆար *և* զԲաղդատ, *և զկողակիցքն* զԹաւ-
րէզ *և* զՇարբաթ, *և զորդին իւր զգեղեցկատիպն, զիմաստունն, զբալ-*
*մաշնորհն, զարի և քաջ սարկաւագն* զՅակոբ, *որ յայսմ ամի փոխեցաւ*
*առ Քրիստոս և սուգ անմխիթար եթող զծնօղաց իւրոց։ Արդ աղաչեմ*
*զհանդիպողքդ սմա սուրբ սրտիւ և բոլորախօս լեզուաւ աստուած-ողոր-*
*մի ասացէք և աստուած ձեզ ողորմեսցի յահեղ աւուրն դատաստանի։*

*Նորոգեցաւ եղանակաւոր տառս Ջ. և ԽԱ. (1492) թուին, ձեռամբ*
*մեղաւոր ծերի* Ատոմի, *ի վայելումն դպիրացն* Ներսեսի, Վարդանի, Թա-
դէոսի *և* Ստեփանոսի, *զորոց վայելել տայ նոցա աստուած ընդ երկայն*
*աւուրս մինչ ի խորին ծերութիւնն առողջ հոգով և մարմնով, ամէն։*

## 251

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4309*

*Հետ. ստացող*

295ա /// *եւ զաներն իմ* զՄէհրանն, *և զոքանչն իմ* զԽոյանդն, *և զդուստրն*
*իւր* Դանայ-Խաթունն [ *յիշեցէք* ], *ամէն։*

*Թվ. ՋԽԱ. (1492)**։

---

** Այդ թվականին Քաղցրահայաց վանքում Մարգարե և Ղուկաս գրիչներն ընդօրինակել են մի Մաշտոց (տե՛ս Հ. Ոսկեան, Տիարբեքիրի նահանգի վանքերը, ՀԱ, 1963 թ., սյուն. 68)։*

ՋԽԲ 1493

## 252

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4937

ա

Գրիչ՝ Յակոբ
վայր՝ Աղթամար

322բ ...Եւ արդ ես՝ յետինս ի գրչաց և անարժանս ի կարգաւորաց սուտանուն կրօնաւոր Յակոբ... կատարեցի զսա մեղսամած մատամբս իմով յաստուածաբնակ կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ ամենայաղթ սուրբ Խաչիս և սուրբ Նշանիս, ի հայրապետութեան տեառն Զաքարիայ կաթողիկոսի, թուականիս Հայոց ՋԽԲ. (1493)... ի դառն և ի վշտաբեր ժամանակի, քանզի Գ. (3) ամ է, որ աշխարհս անտէր է ի փաթշահէ, և յայսմ ամի թագաւորեաց Ռոստամ փաթշահն, և ոչ գիտեմք, թէ՞ այլ ինչ տի տեսանեք, զինչ տեսաք այլ աստուած տեսնուլ չտա. և այս բաւական է։

Արդ, որ ճաշակէք յաստուածային բուրաստանէս... յիշեսջիք յերկնագնաց յաղօթս ձեր զյառաջ յիշեցեալ ստացող սուրբ Աւետարանիս [զխոջայ Միրիջանն, և զծնօղսն՝ զԱւետիսն և Աւրղու-Մէլիf, և զկողակից զՆուրիփաշէն, և զաւակսն զՈւլուխոջէն, և զԱստուածատուրն, և զԽոջաջանն, և զԱւիտիս Ստեփանոսն, և զեղբարքն զԽոջազատէն և զՈւլուխոջէն՝ զխանկուցեալ ի Քրիստոս, և զՀազարբէկն ]*:

323բ ...Ընդ նոսին և զանպիտան Յակոբ գծողս սորա, և զծնօղսն մեր զՅովսէփ և զՓաշայ, և զեղբայրն իմ զՍուֆիաս, և զկողակի[ց]քն զԱրմանի-Խաթուն և զԹուրւանդայ, և զորդին զՍտեփանոս, և զկողակիցն զՆղաշ, և զայլ ամենայն արեան մերձաւորքն իմ՝ զկենդանիքն և զհանգուցեալքն։ Նաև զհոգևոր երախտաւորքն իմ և զվարպետքն՝ զքաջ և արի և ընտրեալ փիլիսոփայքն՝ զտէր Թումայ և զտէր Հայրապետ և զտէր Յովաննէս, և զայլ ամենայն երախտաւորքն՝ զկենդանիքն և զհանգուցեալքըն յիշեցէք և լի բերանով և ուղիղ սրտիւ աստուած-ողորմի ասացէք...

324ա Եւ ինքն Քրիստոս աստուած, որ տէրն է փառաց և տուող ողորմութեանց ամենեցուն առհասարակ ողորմեսցի՝ ստացողին, և մեղաւոր գծողիս, և ծաղկող [Պարսամին, և իմ ծնօղին, և ամենայն զարմիցն, ամէն ],** և թուղթ կոկողին և աստուած-ողորմի ասողին, և ինքն եղիցի աւրհնեալ, գովեալ և բարեբանեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

---

* Փակագծերի մեջ առած հատվածը գրված է ծաղկող Պարսամի ձեռքով։

** Փակագծերի մեջ առած հատվածը լրացրել է ծաղկող Պարսամը գրչի կողմից դատարկ թողնված երկուսուկես տողերի վրա։

Բ

Ստացող՝ խոջայ Միրիջան
վայր՝ Խարականց գիւղ

324ա Եւ դարձեալ յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զտէր Ներսէս քահանայն, որ միջնորդ եղև այսմ յիշատակիս։ Եւ ես խոջայ Միրիջանս* ետու զսուրբ Աւետարանս ի Խարականց գեղ, ի դուռն ծնօտի սուրբ Գորգուն, անջինջ յիշատակ հոգոյ իմոյ և ծնօղաց իմոց, և մի ոյք յանդգնի հեռացուցանել ծախելով կամ գրաւելով, ոչ յիմոց և ոչ յօտարաց. և ոյք համարձակի և հեռացուցանէ, նա դանէծքն զԿայէնին և զՅուդային և խաչահանուացն առցէ, ամէն։

324բ Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զԽարականից տէր Կարապետն, և զտանուտէրքն՝ զԲէկլարն, և զՅովանէսն, և զԳորգոնց Յովանէս, և զՅովանէս խուսն**, և զԿիրակոսն, և զիւր որդիքն՝ զՄկրտիչն և զՂուգիջանն, և զՅովանէսն, և զհանգուցեալ տանուտրէքն զԱւետն, և զՍատաղէն, և զԱտոմ, և զԹումէն՝ մեծ և փոքր առհասարակ...

## 253

## ՄԱՇՏՈՑ

Ն. Քարամեան, Ցուցակ Բեռլինի 58, էջ 47, Ալիշան «Սիսական», էջ 487

Գրիչ՝ Մանուէլ
վայր՝ Շահապունէf, Կոֆի գիւղ

256ա ...Գրեցաւ Մաշտոցս ձեռամբ բազմամեղ և փցուն գրչի Մանուէլի, ի ձորս Շահապունեաց, ի գեաւղս Կոֆի կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ եկեղեցոյս և սուրբ խաչերոյս և Վարդանանց սուրբ նահատակացս, ի թվականիս Հայոց ՋԽԲ. (1493), ի ժամանակին, որ Ըռաստամ անուն փատշահ կանգնեցաւ և գնաց ի վերայ Շարվանայ...

## 254

## ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 6273 (Ղ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան հայոց), էջ 366, Վան՝ Կենգանանց գիւղ,

Գերութիւնից ազատող՝ Թաւագալ
վայր՝ Ախլցխէ

Թուին ՋԽԲ. (1493) բերաւ յԱխլցխէ քաղաք, և Քրիստոս աստուած օրհնէ զԹաւագալն, որ շուտով թափեաց ի գերողացն։ Աստուած զինքն ազատէ ի դժոխոցն, ամէն։ Ղրկեցաք ի յաթոռն՝ ի սուրբ Էջմիածին:

---

* Հիշատակարանը Միրիջանի անունից գրել է ծաղկող Պարսամը։ Խոջա Միրիջանի և նրա «կողակից» Նուրի-Խաթունի պատկերները գծված են ձեռագրի 6բ էջի վրա, Քրիստոսի պայծառակերպության նկարի ստորին մասում։

** Իմա՝ «հիւսն»։

# 255

## ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 6348

Հմտ. ստացող՝ Ներսէս
վայր՝ Կալեր գիւղ

Ա

388ա ...Արդ, ես՝ Ներսէս երէցս...//... ցանկացող եղեալ յամենայն բարութեանց ի սուրբ և ի ծերացեալ* Աւետարանիս, զոր առի ի հալալ ընչից իմոց յիշատակ ինձ, և ծնողաց իմոց՝ հաւրն իմոյ Գրիգորին և մաւրն իմ Խոնձին, քվերցն իմ Անա-Խաթունին, մամին և մեծ մաւրն իմ Խուրմիկին, հաւրեղբաւրն Եզեկելին, և ամուսնին իմոյ Դիլշատին, որ նորայ հալալ ընչովն գնեցի զսուրբ Աւետարանս իւր հոգոյ [յ]իշատակ, զոր աստուած վայելեալ տացէ իւր հոգոյ մենարանին, ամէն։

Եւ Քրիստոս աստուած, որ առատն [է] ի տուրս ողորմածաց՝ ողոր-
388բ մի Թաւայֆալին, և կողակցին Թանկսուլին, և իւր որդոյն ...//... զփոխարկեալն ի Քրիստոս զԹեղուպաթն և զկենդանի որդիքն առհասարակ ուրհնէ։

Դարձեալ, ուրհնէ աստուած մայրն Դոճար, որ փափաքանաւք սրտիւ և [յ]ուսոյ հաւատով մէկ նոհ երետ սուրբ Աւետարանիս՝ ըստ իւր որդոյ հոգոյն, որ ի Քրիստոս հանգուցեալ է, և միւս եղբայրն ուրհնէ, որ կամակից եղև հոգոյ բանին՝ զԽոնդամիրն...

Արարիչն աստուած ուրհնէ զԿալեր գաւղն և զժողովուրդն առհասարակ, որ բարի բանի կամակից են։ Ի թվականիս Հայոց ՋԽԲ. (1493) յառ Ներսէս էրէցն, և իւր որդի Թանկրիղուլին, Մարկոս կուսայկրաւն աբեղէն, Գրիգորն, Ղուկասն, և հարսն Թուխծամն, և դուստրն Խոնձէն զսուրբ Աւետարանս յիշատակ հոգոյ իւրեանց, ամէն։

Բ

Ես Ովանէս աբեղէս վկայ եմ առաջի աստուծոյ։ Մըրաղէն, իւր որդի Յարխաշն ծախեցին զԹետարանս Ներսէս իրիցին ԿԵ. (65) թանկայ. աստուած շնհօրք անի**։

Գ

Ես՝ Պօղոս էրէցս, որդի Յակոբ քահանային, տվի զԱւետարանս կարդալ ի գեղս Վարդէբլուր՝ քանի գեղ շէն է. և թէ գեղս էլնէ ի տեղացս՝ Աւետարանս էլ առնում անդրուց. վկայութեամբ տէր Նէր[ս]իսին և Դրիգոր աբեղային***։

* Ձեռագիրը գրված պետք է լինի ԺԳ դարի վերջերին, կամ ԺԴ-ի սկզբներին։ Պահպանվել են ավետարանիչների ճաշակով նկարներ, որոնց հեղինակն է Թորոս նկարիչը. «Զսուրբ պատկերացս նկարաւղ զԹորոս մեղաւոր յիշեա ի տէր Յիսուս Քրիստոս» (էջ 1բ)։

** Գրված է սկզբի մագաղաթյա պահպանակի վրա։

*** Հիշատակագրությունը գրված է Հովհան ավետարանիչի նկարի վերևում, շրջանակի մեջ, հավանաբար 1493 թվականից ոչ շատ հետո։

## 256

### ԱՒԵՏԱՐԱՆ

Գ. Սրուանձտեանց, «Թորոս Աղբար», Բ, էջ 504
Կամախ՝ Թադէոս առաքեալի վանք

Գրիչ՝ Ստեփան
վայր՝ Այրիվանք

Յանկացող սուրբ Աւետարանիս ոմն ի կանանց Համանգուլ անուն հաւատաւոր և ապաշխարող, կուսամանուկ գոլով ի տղայութենէ, նա գրել զսա... յիշատակ... հայրն իւր Յովանիսին, և մայրն իւր Խոնթ-Խաթունին, և եղբարց իւրոց Յորդանանին, և Սարգիս դպրին, և ամենայն արեան մերձաւորաց՝ Ջուհարին, Շահանդուխտին, Եղիսաբեթին: Գրեցաւ ...ի հրաշալի Այրիվանս, ընդ հովանեաւ սուրբ և հրաշափառ և շնորհաբաշխ աջոյն Յովհաննու Մկրտչին և սուրբ Յակոբ բարեխաւսի, զոր բերեալ հրեշտակն ի Նոյան տապանէն, և այլ բազում սուրբ նշանացս, որ աստ կան։ Գրեցաւ լուսազարդ մատեան ի թվ. Հայոց Ջ. և ԽԲ. (1493), ի հայրապետութեան տեառն Սարգսի, ի յաթոռն սուրբ էջմիածնի, ի ղանութեան Ռուստամ-բէկի, նեղիմք... ի դառն և ի նեղ ժամանակիս, ոչ գտանելով հանգիստ վասն ծովացեալ մեղաց մերոց։

Գրեցաւ ձեռամբ Ստեփանի... խաբեբայի և ոչ աբեղայի, և եղբաւրն իմոյ Հայրապետի և գրոց աշակերտի. և առաջնորդութեան սուրբ ուխտիս տէր Յովանիսի և եղբաւր նորին տէր Ստեփանոսի եպիսկոպոսի, որ... ի նոյն ամի փոխեցաւ ի Քրիստոս, և յառաջնորդ նոցին տէր Բարսեղ եպիսկոպոսի, որ է թոռն մեծին Պռաւշայ:

## 257

### ՄԱՇՏՈՑ

Երևան 6450

Կազմող՝ Յովսէփ
վայր՝ Ագուլեաց վանք

238բ ...Յիշեցէք ի Քրիստոս զՎարիկն, և զկենակիցն իւր զՀռիփսեմ, և զաւակաց իւրոց, որ զթուղ[թ]ս երետ, լի սրտիւ աստուած-ողորմի ասացէք նմա, և ոյք ուղիղ սրտիւ զմեզ յիշէ ՙի[ն]քն յիշեալ եղիցի. ամէն։

Ընդ նմին զէդիլն և զՌուստամն, և զՂանդի, զՋանբեկի, Մուդամ, Գուլզադայ յիշեցէք ի յաղաւթս ձեր՝ զՊապին, կողակիցն՝ զՄադարն և զհանգուցեալ կողակիցն՝ զՄինայ-Խաթունն յիշել աղաչեմ։ Զվերջին կազմողս՝ Յովսէփ աբեղայս, զՎերին թաղի քահանայքս՝ զտէր Խաչատուր, և զտէր Գրիգոր, և զտէր Անտոն, և զտէր Սէթն, և զսարկաւագունքս՝ զՆուրամիրն և զՏիրացուն յիշել աղաչեմ։

Կազմեցաւ Մաշտոցս ի թվ. ՋԽԲ. (1493), ի վանքս Ագուլեաց, ի հայրապետութեան տէր Ազարիին, ձեռամբ Յովսէփ մեղսասէր աբեղայիս. յիշել աղաչեմք, աստուած զձեզ յիշէ, ամէն։

239ա Արդ աղաչեմք զամենեսեանդ, որք հանդիպիք սմայ կարդալով կամ աւրինակելով, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր և աստուած զձեզ յիշէ իւր միւսանգամ գալուստն, ամէն։

Աստուած աւրհնէ զՊապն ի յիւրմէն
Եւ ըզորդիքն ի սուրբ կուսէն,
Եւ ըզհարսներն՝ իւրոյ աջէն.
Աւրհնէ զՄաւղաւրն ի սուրբ որդէն,
Եւ ըզսեղան ի սուրբ հոգէն,
Աւրհնէ զկարասն ի հնձանէն,
Աւրհնէ զտունն բոլորովէն։

## 258

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿԵԱՅՑ ԹՂԹՈՑ ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

Երևան 4515 (Ղ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան հայոց, Բ), էջ 233—235 և 3276 (էջ 316)*

Գրիչ՝ Մովսէս Արծկեցի
վայր՝ Արծկէ

...Այսմ երևելի և մեծ ճոխութեանս ցանկացող եղև արհին գովելի և վերատեսուչ հոտին Քրիստոսի եպիսկոպոսն տէր Վարդան՝ աթոռակալ մայրաքաղաքին Խլաթայ:

Եւ ես՝ Մովսէս գրիչս Արծկեցի, հարկեալ ի սիրոյ սորա սկսայ չնորհօք տեառն, և ողորմութեամբ նորին աւարտեցի զաստուածաշունչ կտակս ի ՋԽԲ. (1493) թուականիս, որ է տանուտէր խոյն**, ընդ հովանեաւ Պատերազմի սուրբ Նշանիս, և սուրբ Աստուածածնիս, և սուրբ Սքանչելագործիս. ի յանխաղաղ ժամանակիս, որ սպանաւ Բայսանղուրն և Ըռստամն*** փատշահ հաստատեցաւ****։

Որ և ի սոյն ամի եղև աստուածասաստ պատուհասն ի վերայ երկրի, զի վասն ծովացեալ մեղաց մերոց եկն մահտարաժամ, և տարածեցաւ ի վերայ ծովեզերիս. և եղև շատ խեղճ և ողորմ բաներ, և բազում տունք աւերեցան և դրունք փակեցան։

Արդ ի սոյն դառնացեալ ամիս ես՝ Մովսէս յիմարեալ հոգիս, աւարտեցի զշնորհածաւալ և զհոգևոր տառս, ի խնդրոյ պատուեալ պետին մերոյ տէր Վարդանի, որ ստացաւ յիշատակ բարի զաստուածաշունչ կտակս և ընծաեաց ի դուռս մօրս լուսոյ Մատնեվանից սուրբ Աստուածածնիս՝ ի սեպհական աթոռս իւր, բարեխօս հոգւոյ իւրոյ, և ծնողաց իւրոց՝ հօրն Յովանիսին և պապուն իւրոյ Շաճերուն, ...որ են [միաբանք

* Հիշատակարանը բնագրով չի հասել։ № 4515 ձեռագիրը հիշատակարանների ժողովածու է, իսկ № 3276 ձեռագրում հիշատակարանի սկզբի մասը տեղ է գտել որպես նախագաղափար ձեռագրի հիշատակարան։

** «Որ է տանուտէր խոյն»—միայն № 3276 ձեռագրում։

*** № 3276 ձեռագրում՝ «Ռոստամն»։

**** Այսքանով ավարտվում է հիշատակարանը № 3276 ձեռագրում։

Մատնավանից]՝ *երկու* Յովանէսն, *և* Ստեփաննոս *կրօնաւորն, և հովիւ* Յովանէսն... [*Աղաչեմ*] Մովսէս *գծողս յիշել, և զծնողսն իմ* զԴանիէլ *քահանայն, և* զՀայխաթուն, *և զհօրեղբարսն իմ՝* զԿիրակոս *սրբասնեալ կրօնաւորն, և* զՍէրուն, *և* զՍիմէոն, *և բոլոր սրտիւ աստուած-ողորմի ասել...*

259

*ԳԱՆՁԱՐԱՆ*

*Երևան 6495*

*Կազմող՝* Կարապետ
*վայր՝* Ամիրդալի վանք

*Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զՍքանչելագործի կրաւնաւորքս՝ զմեծ տէր* Ստեփանոսն, *և* զՍիմէոն *հերպետն, ըզտէր* Թումէն, *զտէր* Յակոբն, *և զերեք տէր* Գրիգորն, *զտէր* Ներսէսն, *զտէր* Կարապետն, *զմիւս տէր* Ստեփանոսն, *որ զմեզ ընդունեցին սիրով։ Քրիստոս աստուած զիւրեանց*
437բ *հոգին լուս//աւորէ յերկնային արքայութիւն, ամէն։*

*Դարձեալ, աղաչեմ յիշեցէք ի Քրիստոս* զՔոճնափաւշն, *որ յ*Արծկոյ *ի* Բաղէշ *զԳանձարանս շալիկեց. արարիչն աստուած զիւր աշխատանք յերկնից արքայութիւն պարգևէ, ամէն։*

*Եւ զիս՝ զանարժան* Կարապետ *մղդէսիս՝ զկազմող սուրբ տառիս յիշեցէք ի Քրիստոս, և աստուած զձեզ յիշէ յիւր սուրբ գալուստն, ամէն։*

*Կազմեցաւ սուրբ Գանձարանս ի թվին ՋԽԲ. (1493), ի սուրբ ուխտըս սուրբ Յովանէս և սուրբ Սիոն, որ* Ամիրդալի *վանք կոչի, և նմայ փառք յաւիտեան։*

260

*ԱՒԵՏԱՐԱՆ*

*Հ. Ոսկեան, Տարօն-Տուրուբերանի վանքերը, էջ 185*

*Գրիչ՝* Կոստանդին
*վայր՝* Տարօնի
Իննակնեան վանք

*...Ի գաւառն* Տարօնոյ, *յերկնահանգէտ սուրբ ուխտիս և հրեշտակացոյց մենաստանիս յ*Իննակեան *վանս, ընդ հովանեաւ սուրբ Կարապետին,... յառաջնորդութեան ուխտին տեառն* Մելքիսեդիկ *եպիսկոպոսի, ի խնդրոյ* Հայրապետ *քահանայի։*

261

*ՃԱՇՈՑ*

*Երևան 4515 (Ղ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան հայոց, Բ), էջ 235*

*Վայր՝* Բաղէշ

*...Գրեցի գիրքս ի քաղաքս* Բաղէշ, *ընդ հովանեաւ սուրբ Հինգ խորանին, ի թվ. ՋԽԲ. (1493) ամին։ ...Աստուած-ողորմի ասացէք գծողին, և ծնողաց իւրոց* Յոհանիսին *և* Ազիզին:

262

ՄԱՇՏՈՑ

Վենետիկ 744

Գրիչք՝ Մարգարէ և Ղուկաս
վայր՝ Բալու

Գրիչք Մարգարէ և Ղուկաս դպիր, ստացող պարոն Աւրան, գրեալ ի Բալու և եդեալ ի ս. խաչ Աղամայ (*)։

263

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5469

251ա Արդ աղաչեմք զձեզ ով սուրբ մանկունք եկեղեցոյ յիշեսջիք ի սուրբ յաղաւթս ձեր զՀեզահոգի քահանայն զտէր Ստեփանոս մաղգասին, որ ստացաւ զսուրբ Աւետարանս յիշատակ հոգոյ իւրոյ և ծնողացն* ըստ մարմնոյ զհայրն զՅակոբՑՑ և զմայր զՇամամՑ, յիշատակ է ի դուռն սուրբ Ստեփանոսին և սուրբ Սարգսին... թվ. ՋԽԲ** (1493)։

264

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6273 (Ղ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան հայոց) էջ 366, Զմիւռնիոյ ս. Ստեփանոս եկեղեցի

Գրիչ՝ Սաճակ
վայր՝ Մելտենոյ վանք

...Գրեցաւ սա ի թուին Հայոց ՋԽԲ. (1493), ձեռամբ անարժան Սահակ աբեղիս, ի վանքս Մելտենոյ, ի դուռն սուրբ Լուսաւորչին...

Յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր զտէր Սիմէօն եպիսկոպոսն, և զփակակալ սուրբ ուխտիս զՂազար աբեղայն, և զԹորոս աւագ սարկաւագն... և զՍահակ սուտանուն կրօնաւորս, [որ] գրեցի զսուրբ Աւետարանս։

---

* Շարունակությունը եղծված է և հազիվ է կարդացվում։
** «Բ» տառը քերված է ։

## 265

### ՇԱՐԱԿՆՈՑ

Երևան 9060

Գրիչ՝ Պաւղոս

45ա Ջեղկելի և զփծուն գրիչս զՊաւղոս, որ մեղք իմ բազում է, քան զաւազ ծովու և քան զշիտս անձրևաց, աղաչեմ յիշել ի տէր։ Գրեցաւ ի թվ. ՋԽԲ. (1493)։

## 266

### ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 6865

Ծաղկող՝ Աբրահամ

87բ Ջանարժան Աբրահամ նկարիչ յիշեա և սաս միշտ տէր ողորմեա. թվիս ՋԽԲ. (1493)։

## 267

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4155

Գրիչ՝ Ազարիա
վայր՝ Դէմդէմաշէն

ա

296ա ...Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի գեաւղս Դէմդէմաշէնըս, ընդ
հովանեաւ սուրբ Աստուածածնիս և Սեփանայ սուրբ Առաքելոյն։ Ի հայ-
րապետութեան, տեառն Սարգիս կաթողիկոսին, և փաթշահութեանն
Ըռըստամ-բէկին. և ի թուականութեանն Հայոց ՋԽԳ. (1494), ձեռամբ
մեղա[ պարտ Ա ]զարիիս...

Արդ, որք ճաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենալի սե-
ղանոյս, որք պատահիք սմա տեսութեամբ կամ ընթերցմամբ, յիշեսջիք
ի սուրբ և ի մաքրափայլ յաղաւթս ձեր զառաջ յիշեցեալ ստացող սուրբ
296բ Աւետարանիս զտէր Անդրէասն, և // զկողակիցն իւր զՋոճանբաղտն, և
զեղբայրսն իւր զ[Ջհան]շէն*, զՄէրունն, որ ստացան զսա յիշա[տա]կ
իւրեանց, և ծնաւղաց իւրեանց՝ հաւրն Շահամիրին և մաւրն Նաւրմելի-
297ա քին... // ընդ նոսին և զանպիտան գրիչ, և զծնաւղսն իմ զԱմիր-Ազիզն,
և զամենայն արեան մերձաւորսն իմ, և զտէր Բարսեղն, որ աշխատեցաւ
ի թու[ղ]թ կոկելն և զուսուցիչն մեր։

Ո՜վ սուրբ դաս երամիս, սխալանաց և խոշորութեան գըրոցս թո-
ղութիւն արարէք, զի ի ճանապարհի էի ի գեղէ ի գիւղ, ի մէջ ընդանեաց
և ձմեռային /// ժամ կանայքն /// [խափա]նէին կանոնս կարգել և աղանդս
շարադրել, յայնժամ խստանայր սիրտ իմ ի յազգի ազգի խաւսից կա-
նանց։

Ո՜վ սուրբ կարդացողք և լսողք, լի բերանով և ուղիղ սրտիւ աստու-
ած-ողորմի ասացէք սոցա, զոր գրեցաք և զորն չգրեցաք...

բ

88ա Դարձեալ, յիշեսջիք ի սուրբ յաղաւթս ձեր զտէր Բարսեղն, որ աշ-
խատեցաւ ի քարտիսի կոկելս։ Դարձեալ, կրկին անգամ աղաչեմ յիշել
ի տէր աստուած զԲաղտատ խաթուն, որ մայրական գթով կու ուրախաց-
նէր զիս. և զՀռիփսիմեայ խաթուն, և զտէր Բարսեղն, որ բազում աշխա-
տեցաւ հետ մեզ, լի բերանով և ուղիղ սրտիւ աստուած-ողորմի ասացէք...

---

* Այս անունը այստեղ և հիշատակարանի շարունակության մեջ, ուր կրկին հիշվում են ստացողի մերձավորները, դիտավորյալ քերված է։

*Ծաղկող՝* Ստեփանոս Առընջեցի

Գ

137բ *Ծաղկեցաւ Աւետարանս ձեռամբ* Ստեփանոս *եպիսկոպոսի յ*Առընջեցո, *ի խնդրոյ* Անդրիաս *իրիցու, ի դառն ժամանակիս, զի* Դավրէժ *շահաստան քաղաքին զեկեղեցին քակեցին և մեծ դառնութիւն արարին Հայոց ազգիս, ի թվ. ՋԽԴ. (1495)։*

Դ

225բ *Նկարեցաւ Աւետարանս ի հայրապետութեան տեառն* Սարգսի *և ի պար[ոն]ութեան* Յրորստամի՝ *նստեալ ի թախտն Հուլաւի:*

5բ *Նկարեցաւ Համաբարբառս և Աւետարանս ձեռամբ* Ստեփանոսի *եպիսկոպոսի յ*Առընջեցո, *ի դուռս սուրբ Մարիամ Աստուածածնիս, ի խնդրոյ տէր* [Անդրիա]ս *իրիցու, ի դառն ժամանակիս, զի զքահանայք կողոպտէին և հարկս առնէին ի գլխոյն նոցա. թվ. ՋԽԴ. (1495), ի ղանութեան* Ռուստամին:

## 268

## ՄԱՇՏՈՑ ՁԵՌՆԱԴՐՈՒԹԵԱՆ

*Երևան 1071*

ա

*Գրիչ՝* Գրիգոր

20բ *Զաստուածապատիւ արհեպիսկոպոսն զտէր* Ստեփանոս՝ *զստացաւղ սորա յիշեսջիք առաջի Քրիստոսի աստուծոյ մերոյ, ընդ նմին և զծնաւղ նորին, և զհարազատսն իւր, և զգծողս սորա զ*Գրիգոր *քահանայ աղաչեմ յիշել ի տէր. և յիշողացդ ողորմեսցի տէր, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն**։*

Բ

*Նկարիչ՝* Ստեփանոս Առընջեցի

41ա *Ժ. (10) ոսկ[ի]*** *գնաց գրոյս, նկարեցաւ ձեռամբ* Ստեփանոսի. *ի վանս* Առընջուց, *թիւ ՋԽԳ. (1494).*

## 269

## ՄԱՇՏՈՑ

*Երևան 8357*

*վայր՝* Հաղբատ

80ա *...Արդ, եղև զրաւ գրչութեան յայսմ աստուածային և հոգէնուագ աստուածաբան Մաշտոց վարդապետի արարեալ* [*գրիս*]*, որ կոչի Մաշտոց,*

---

* *Այլ ձեռագրով ավելացված է հետևյալը. «և զվերջին ստացաւղ* Եսայի, *ի թվ.* ՌԸ. *(1559)»։*

** *Ձեռագիրն ունի մի շարք կիսախորաններ, լուսանցազարդեր և գլխագրեր, որոնք նկարված են ոսկի ներկի լայն օգտագործմամբ։ Հայտնի է, որ այդ ոսկեգույն ներկը ստանում էին բնական ոսկու բարակ շերտերից։ Այսպիսով, նկարիչն այստեղ տեղեկություն է տալիս ձեռագրի ծաղկման համար օգտագործված ոսկու չափի մասին։*

ի թվականութեանս հայկազեան տումարի ՋԽԳ. (1494)-երրորդի, ի սուրբ և ի գերահռչակ ուխտս Հաղբատու, ընդ հովանեաւ սուրբ Կաթողիկէիս, և աստուածընկալ սուրբ Նշանիս, և այլ սրբութեանց, որ աստ կան հաւաքեալ, ի հայրապետութեան Սարգսի Հայոց կաթողիկոսի և ի
80բ ղանութեան Թաւրիժի Թաղխտի Ռըստամ-պէ[կի /// սան-պէկին, և յառաջնորդութեան սուրբ ուխտիս Հաղբատա տէր Յոհաննէս արհեպիսկոպոսի և այլ միեղէն եղբարցս։

Արդ, գրեցաւ Մաշտոցս ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի սուտանուն աբեղի, որ անուամբս միայն եմ և ոչ գործով։

Ես՝ Յակոբ քահանայս, ետու գրել զՄաշտոցս ի հալալ ընչից իմոց, վայելումն անձին իմոյ և յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց [Բէկբասին, և մաւրն իմոյ Շամամին. և եղբաւրն իմոյ Հէրպետին, և նամուսին իմոյ Թանկազիզին, և զաւակաց իմոց Էրէմիին, Անանիին, Հովադեղին, և Հազարղեղին. Ամիրին, և դուս[տ]րն իմ՝ Շիրազն ու Նուշան]*:

## 270

### ԱԻԵՏԱՐԱՆ

Ախալքալաքի Կուլիկամ գիւղ, Ալիշան, «Հայկարան»

Գրիչ՝ Գալուստ
վայր՝ Հոռոմայր

Գալուստ գրիչս սուտանուն աբեղայ՝ ծերացեալ ալեօք... գրեցի։ Ստացող պարոն Դոշմին, և կինն իւր էդիմելիֆ, և հանգուցեալ եղբայրն Մուրատն, ի վայելս կուսակրօն Մանուէլ աբեղային... Նաև դստերն իւր պարոն Խաթունշանն և Հողիջաn (՞) և Շահսալթանն, և եղբօրորդոյն իմոյ Հէնուպին, և որդոյ Նորին Գանգիպին (՞), որ ետ օգնութիւն սուրբ Աւետարանիս Ա. (1) ֆլորի... Եւ գրեցաւ Աւետարանս ի թվ. Հայոց ՋԽԳ. (1494), ի դուռն սուրբ Նշանիս Հոռոմայրի, ի յառաջնորդութեան տէր Արիստակէս եպիսկոպոսի, և պարոնութեան Լոռոյ պարոն Ղդրին, և ի դիւանութեան երկրիս պարոն Դաւիթին, և եղբօրորդւոյն իւրոյ պարոն Ամիրջանին ///

## 271

### ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 5833

Գրիչ՝ Աստուածատուր
վայր՝ Եղեգեաց անապատ

241ա ...Աւարտեցաւ սուրբ Աւետարանս ի յանապատիս Եղեգեաց, ձեռամբ Աստուածատուր անպիտան ծառայի, ի թվականիս ՋԽԳ. (1494)։

Արդ, ցանկացող [եղ]եալ այս սուրբ Աւետարանիս բարեմիտ և սըր-
241բ բասէր և մեծահաւատ** // եւ ստացաւ զսա ի հալալ ընչից իւրոց զլուսաւոր և զմաքրափայլ Աւետարանս, բըժիշկ հոգոյ իւրոյ, կցորդ, յոյս և ապաւէն

* Փակագծերի մեջ առնված հատվածն ավելացված է այլ ձեռագրով։
** Տող ու կես դատարկ է թողնված՝ ստացողի անվան լրացման համար։

*առ Քրիստոս և ճար ճանապարհին վերջին, և բանալի դրանն արքայութեանն, և գանձ յերկինս անկողոպտելի, և առ Քրիստոս միջնորդ և բարեխաւս իւրն և իւր <ի> ծնաւղացն**։*

## 272

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Նոր Ջուղա 403, ՄՏՄ*

*Գրիչ՝* Թումայ
*վայր՝* Աղթամար

332ա *...Ու արդ, ես... սուտանուն քահանայ* Թումայ, *որ զձև ունիմ քահանայի և ի գործոց թափուր և ունայն ...կատարեցի զսա մեղսամած մատամբս յաստուածաբնակ կղզիս* Աղթամար, *ընդ հովանեաւ ամենայաղթ սուրբ խաչիս և սուրբ Նշանիս, ի հայրապետութեան տեառն* Զաքարիայի, *ի թուականիս Հայոց Ջ. և ի ԽԳ. (1494)... բազում աշխատանաւք ըծագրեցի զսա ի ստոյգ և յընտիր աւրինակէ կենօք տառապանօք, ի դառն և ի վշտաբեր ժամանակիս, յորում կամք ընդ հարկի անաւրինաց... Զառաւ յիշեսջիք յերկնագնաց յաղաւթս ձեր յիշեալ ստացող սուրբ Աւետարանիս զաստուածասէր տանուտէրն* զԱմենաւազն, *և զծնաւղսն իւր* զՀերապետ *և* զՍուլդան-Մելիք, *և զորդին* զխլզաթն, *և* զԱսպանանշէն, *և* զՄուրատն. *եւ այլ ոչ ունէին ժառանգ ըստ մարմնոյ, ստացան զսա յիշատակ իւրեանց և զաւակացն։ Այլ և զկենակիցն* զԱմենաւազուն՝ զխաթուն-Փաշէն, *և զծնաւղսն իւր* զԲաղշաիշն *և* զՍուլտան-խաթուն, *և զպապիկն՝* զԲարձգործենց Աւետիսն, *և զկենակիցն* զխաթունշէն, *և զեղբայրն* զՄուսեխն, *և զորդին* զՌւսուփն, *և զքեռիքն* զԿարապետն *և* զէզդանբաշխն, *և զհոգևոր որդին մեր* Աստուածատուրն, *և զկենակիցն* զՍալչուկ-խաթուն, *և* զՎարդան *կրաւնաւորն՝ զփակակալ սուրբ խաչին... և զազգն ամենայն...*

## 273

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Մ. Բարխուդարեանց, «Արցախ», էջ 112*

*Ստացող՝* Յոհանէս
*վայր՝* Աղթամար

*Զաւրութեամբն աստուծոյ կատարեցի զսուրբ Աւետարանս զայս յաստուածախնամ կղզիս* Աղթամար *...ի հայրապետութեան տեառն* Զաքարիայի *և ի թուաբերութեան հայկազեանս տումարի ՋԽԳ. (1494)***, *ի դառն և ի նեղ ժամանակիս։*

*Արդ. ես* Յովհանէս *ետու գծագրել զսուրբ Աւետարանս...*

---

* *Շարունակության մեջ, ԺԶ դարի ձեռագրով, ստացող Մարկոս երեցը խնդրում է հիշել իրեն, իր ծնողներին՝ Էտկար և Ճահանպաշտ, եղբայրներին Գրիգոր, Ռստակէս, Տրուն, Մուրատ, քվերնեացն (իմա՝ քույրերին) Կուլում, Սիրամարէ, Հարձրևարդ, Գոհար, կնոջը Աթայմէլիքին և այլոց։*

** *Մ. Բարխուդարյանի «Արցախում» տպագրված է ՋԻՋ. (1497), սակայն այդ թվականին Զաքարիա անունով կաթողիկոս չի եղել։ Առաջարկում ենք թվականն ուղղել՝ ՋԽԳ. կարծելով, որ հրատարակողը շփոթել է «Խ» «Ի» և «Գ»—«Ջ» տառերը։*

## 274

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4515 (Գ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան Հայոց, Բ), էջ 236*

*Գրիչ՝* Առաքել
*վայր՝* Մոկաց Բռնաշէն գիւղ

*...Արդ, կատարեցաւ աստուածախօս Աւետարանս ձեռամբ անարժան և ախմար գրչի* Առաքելի, *ի խնդրոյ պատուական տանուտիրոջ* Յովհաննէսի...

*Գրեցաւ սուրբ Աւետարանս ի յընտիր և ի լաւ օրինակէ, ի յերկիրս* Մոկաց, *ի գեօղս որ կոչի* Բռնաշէն, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և սուրբ Կարապետին, և Գէորգայ զօրավարին, ի դառն և ի նեղ ժամանակիս, ի թուականութիւնս Հայոց ՋԽԳ. (1494)։*

*Արդ, աղաչեմ զսրբութիւնդ ձեր յիշեցէք զառաջին և զվերջին ստացող սուրբ Աւետարանիս* զՅովանէնէս *և* զՋաքար...

## 275

### ՈՍԿԵՓՈՐԻԿ

*Երևան 6273 (Գ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան Հայոց), էջ 367—368, Վան, ի Նորաշէն եկեղեցին*

*Վայր՝* Մոկաց Դաշտ գիւղ

*...Արդ, գրեցաւ ճառս որ կոչի Ոսկեփոր, ի վայելումն* Վարդան *քահանային... ի թուականիս Հայոց ՋԽԳ. (1494), ի վայելուչ գեղս, որ* Դաշտ *ասի, ի յոտս սուրբ Յակոբ հայրապետին... Կէսն գրեցաւ և կէսս մնաց շատ ամ, և ապա աւարտեցաւ, զի չար ժամանակ եկ ի վերայ երկրիս* Մոկաց...

## 276

### ԺՈՂՈՎԱԾՈՒ ՄԵԿՆՈՒԹԵԱՆՑ

*Երևան 3275*

*Գրիչ՝* Մաղաքիայ
*վայր՝* Եկեղեաց գաւառ, Կապոսի վանք

302բ *...Արդ, ես՝ յետնեալս ի մէջ ընկերի,*
*Նուաստ և հողս նըրքնեալ հոգի*
Մաղաքիայ՝ *սպասաւոր բանի,*
*Ի յերկրէն* Խախտեաց *գաւառի,*
*Որ այժմ նա* Բաբերդ *անուանի*
. . . . . . . . . . . . .*
*Ջտնտեսին զառակն յիշեցի,*
*Խորհեալ սկսա ես ի մտի,*
*Գիտեմ զինչ պարտ է ինձ պատշաճի,*

* *Դուրս ենք թողնում 32 անհետաքրքիր տողեր, որոնցում գրիչը պախարակում է ինքն իրեն։*

Զայն ես առնեմ, որ շահ ինձ լինի,
Ես ցանկացող վաղուց հետ էի։
Բայց մարմնովս ես տկար էի,
Զտկարութիւնս ես ի բաց եդի,
Շնորհաւք հոգոյն տեառն Յիսուսի,
Որ զաւրացուցանող է յամենայնի,
Զիս զօրացոյց ի մին րոպէի,
Որ յօժարեցա յայսմ ներգործի,
Որ սկսա գրել գիրքս մատենի,
Որ է յայտնիչ աստուածային բանի,
Զամէնն ի մի ես ժողովեցի
Ի մի տփի, որպես փունջ կազմեցի,
Զինչ որ խնդրեն ի սա գտանի
Եւ հասանեն ի բաղձանք սրտի,
Որ ողորմիս ասեն՝ ինձ մեղաւորի,
Միոյն հազար և նոցա լինի,
Ամէն, ամէն և եղիցի։

303ա Արդ, գրեցաւ աստուածային մատեանս ի թվաբերութեանս հայկազանս տումարի Ը. և ի Ժ. (18) յոբելեան, ի քառեակ տասն երրեակ թիւ յաւելման (1494)*։ Ի գաւառս յԵկեղեաց, ի հռչակաւոր սուրբ ուխտս Կապոսի, ի դուռն սրբոյն Յակոբայ և սրբոյն Սիոնի, և առ ոտս մեծ րաբունապետին Յովանիսի և քաջ տիեզերալոյս վարդապետի և յոյժ գիտուն փաղերայի,

Այժմ հոգոյն ( սա. տեղի,
Անաւթ ընտիր սա գտանի
Յաշխարհի, որպէս լոյս վայլի,
Իմանալի կրակ բոլորի,
Զլոյսն ծագէ ի մէջ աշխարհի
Եւ լիով լնու ըզփորուածս երկրի,
Փոքրիկ երկիր մարգըս անուանի,
Փորուածք մարդոյն միտքն է ի մարմնի,
Սա լուսաւորող է զնոյն տեղի,
Անգիտութեան խաւարն ջնջի,
Ով որ սորա խրատին է տեղի,
Պատճառ բազմաց սա լուսոյ լինի,
Ինքն հասանի լոյսոյն գերարփի...

Եւ առաջնորդութեան սուրբ ուխտիս սրբազան և սուրբ ընտիր կրօնաւորին տէր Ներսէսին և տէր Յովանիսին և այլ գրոց աշակերտեալ մանկանցս, որ աստ են հաւաքեալ՝ զԲ. (2) Գրիգորսն, և զՅուսիկ վարդապետն, որ գաւազան էառ այժմուս, զտէր Սիմաւոնն, զտէր Հարապետն, և զայլսն, և զքաղցրաձայն հնչողն զտէր Թադէոս դասավարն, և զտէր Կարապետն.

* Այսինքն 900 (18 հոբելյան) +40 (քառեակ տասն)+3(երրեակ թիւ), որ կլինի Հայոց 943 կամ մեր թվարկության 1494 թվականը։

և զայլ աբեղայք, որ հաւաքեալ կան ի վանքս։ Աղաչեմ զձեզ, ո՛վ գունդ լոյսերամ խմբից, յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զբազմերանեան զվարդապետն իմ, և զտէր Ներսէսն, և զտէր Յովանէսն. և զիւրեանց եղբայրսըն աստուած խաղաղութեամբ պահէ ի յայսմ աշխարհիս, և յետ աստեացս, զերկնից արքայութիւնն պարգևէ։ Դարձեալ յերես անկեալ աղաչեմ զսրբազան պատահողքդ, որ չմոռա[նա]յք զիս ի յաղօթից զանարժան և զդրժող ոգիս՝ զխըխայթեալ Մաղաքիաս, և զծնաւղսն իմ՝ զհայ-
303բ րըն իմ զԱմիր-Գրիգոր ոսկեգործն, որ է որդի Ամիր-Մելիքին, // զմայրն իմ զԴշխոյ-Մելիքն, և զհօրեղբայրն իմ զԱմիր-Սֆանդարն, և զեղբարսն իմ զԱմիր-Ջիհանն, և զխուպիճանն, որ տղայ հասակաւ առ Քրիստոս գնաց և մեզ մեծ սուգ էթող և կսկիծ և հառաչ, և զայլ արեանառու մերձաւորս իմ, ով ոք որ յիշէք և յիշեալ լինիք դուք ի Քրիստոսէ աստուծոյն իմ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

## 277

### ԺՈՂՈՎԱԾՈՒ ԳՐՈՑ ԳՐԻԳՈՐԻ ՆԻՒՍԱՑԻՈՑ ԵՒ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՎԵՑՕՐԷԻՑ ԲԱՐՍՂԻ ԿԵՍԱՐԱՑԻՈՑ

Երևան 620

Գրիչ՝ Մաղաքիա Բաբերդացի
վայր՝ Եկեղեաց գաւառ,
Կապոսի վանք

ա

298ա ...Արդ, գրեցաւ սա ի կարգի,
Աստուածայինս մատենի,
Տխեղծ ձեռացս անարժանի
Յոյժ անպիտան Մաղաքիի,
Ի թուաբերութեանս հայկազնի
Արեթականս գրոհի
Իննհարիւր հարաբարդի
Քառեակ տասանց և երրորդի (1494)
Ի յԵկեղեացս գաւառի,
Հռչակեալ սուրբ յանապատի,
Ի համալսարանս Կապոսի.
Ի յամսոյն հոկտեմբերի
Ի երեսունն կատարի։
Ի դուռն սրբոյն Յակոբի
Սուրբ հայրապետին Սքանչելագործի
Եւ հիւանդաց բժշկողի.
Առ ոտս սուրբ վարդապետի
Մեծ րաբունոյն Յովհաննիսի,
Ի ժամանակիս, որ անբարի
Սա լոյս ծագի մէջ աշխարհի.
Լուսաւորող սա համայնի՝
Հայոցս տառապեալ ազգի,

Ուսուցանող սա միշտ լինի
Ի տուէ և ի գիշերի.
Զխրթնածածուկ բանս մատենի
Յայտնէ մանկանցս Սիովնի,
Զբանս առնու սա ի մտի
Իբր կերակուր ի բերանի.
Ծասկէ ժամէ ի խորհրդի
Կակղցէ զիմաստ բանի,
Լնու ի միտս լսողաց՝
Աշակերտացն որպէս տղի.
Այս կերակրոցս ով փափագի
Եւ ճաշակող սորա լինի՝
Յանմահ հացէն նայ ոչ սովի
Յավուր մեծի դատաստանի.
Այսմ հացիս պատճառ սա լինի
Եւ բիւր բարի սորա պարգևի,
Ի յանմահական սեղանն բազմի,
Հայրն լուսոյ սա տեսող լինի,
Եւ բարբառէ սա համարձակի,
Եւս և մանկունք իմ, զոր երկամբք ծնի՝
Տեառնդ աստուծոյդ իմ ընծա բերի.
Եւ խնդրեմ զխոստացեալն բարի,
Յայնժամ յէն լուսոյ ձայն բարի լինի.
Եկայք աւրհնեալքդ դուք արժանի,
Ժառանգեցէք պատրաստեալ ձեզ տեղի։
Եւ առաջնորդ սուրբ ուխտիս մեծի
Տէր Ներսէս սուրբ կրօնաւորի,
Համշիրաք նորին հարազատի
Տէր Յովանէս կուսան աբեղի,
Արժան լինի մեծ աստիճանի՝
Եպիսկոպոս մեծագոյն կարգի.
Հովուէն զհօտ բանաւոր հաւտի,
Որպէս տեառն հաճոյ լինի,
Անփորձ կենան ի յայսմ աշխարհի
Ի սատանայական պեղծ մեղաց ախտի*
Ի մարմնոյ ելանել աստի
Սոքա հասնին անանց պսակի։
298բ Զաշակերտեալ մանկունք Սիոնի,
Որ սպասաւոր են տեառն բանի,
Սոքա սիրող են գրոց իմաստի.
Տէրն տացէ զիւրեանց խնդրելի,
Որ լինին խրատիչ բարի
Եւ լուսատու լինին աշխարհի։

---

* Ձեռագրում՝ ախտն։

Ընդ նմին և զիս՝ զեղկելի
ԶՄաղաքիա մեղանագիծ չարի,
Յիշեցէք ի սուրբ յաղաւթի,
Ո՛վ պատահողքդ այսմ մատենի,
Եւ զծնաւղս իմ ըստ մարմնի,
Եւ զեղբարսն իմ հարազատի,
Միոյն հազար ձեզ լիցի
Ի սոսկալի այնմ մեծ ատ[են]ի,
Քաղցր ձայնին լինիք արժանի
Ի բարի տեառնէն մերում արարչի։
Եկայք աւրհնեալք ձայնին սխրալի
Ձեզ և մեզ տեղ աւթևանի,
Ամէն, ամէն և եղիցի։

Բ

41բ Ո՛վ սուրբ ընթերցողք և բանի սիրողք, յորժամ ընթեռնուք զաստուածային մատեանս... նա զանարժան Մաղաքիաս զԲաբերդացիս յիշեցէք միով ողորմայիւ...

Գ

104ա ...Այլ և յիշեսջիք զերախտաւոր և զհոգևոր ծնօղս՝ զմեծ տիեզերալոյս վարդապետս Յովանէս, որ բազում երախտիք ունի ի վերայ մեր ուսուցանելն*։

## 278

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐԿՈՏԱՍԱՆ ՄԱՐԳԱՐԷԻՑ ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ

Երուսաղէմ 424, Ն. Պողարեան, Ցուցակ, Դ, էջ 119—120

Գրիչ՝ Մաղաքիա Բաբերդցի
վայր՝ Կապոսի վանք

398 Զստացօղ աստուածային մատենիս զաստուածային բաբունապետն Համշենցի և զծնօղսն նորին և զամենայն արեան մերձաւորսն նորին, ընդ նմին և զեղկելի գրիչս, և զիմսն ամենայն յիշեսջիք առաջի ատենին Քրիստոսի, մանաւանդ ի ժամ պատարագին, և Քրիստոսի փառք։

## 279

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 9273

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Աւաք վանք

325ա ...Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվականութեանս Հայոց ՋԽԳ. (1494), ի սուրբ ուխտս որ կոչի Աւաք վանք, ի դուռն սուրբ Աստուածած-

* Աննշան հիշատակագրություններ կան նաև ձեռագրի 71ա և 150ա էջերում։

նիս և սուրբ Կարապետիս և սուրբ Առաքելոցս, ի յառաջնորդութեան տէր Յոհանէս եպիսկոպոսի։

Արդ, ես ի սրտէ խոցեալս և մեղուք լցեալս Գրիգոր սուտանուն աբեղայ... Յիշեսջիք յարժանաւոր աղաւթս ձեր զուսուցիչն իմ զԱւետիք վարդապետն և զիս՝ զանարժան հողս զԳրիգոր. և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, և խոշորութեան և սղալանաց մի մեղադրէք. զի կար մեր այս էր։

325բ Արդ, ես՝ նուաստ ծառայս աստուծոյ Մովսէս երէցս, բազում ամաց ցանկացայ սուրբ Աւետարանի. և փափաքանաւք ետու գրել զսա ի յայրդար ընչից իմոց, յիշատակ ինձ՝ Մովսէս երիցուս, և ծնաւղաց իմոց՝ հաւրն իմոյ Ստեփանոս քահանային և մաւրն իմո Մելիքին, և զաւակացն իմոց Ստեփանոսին և Խաչատրին, և ամենայն արեան մերձաւորաց իմոց...

## 280

### ՇԱՐԱԿՆՈՑ

Երևան 2428

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Սիրունճարի վանք

177բ ...Գրեցաւ Զայնքաղս ի թվիս ՋԽԳ. (1494), ի վանս որ կոչի Սիրունճարի վանք, ի դուռն սուրբ Յակոբայ, ձեռամբ բազմամեղ և անարժան Գրիգոր աբեղիս։

Արդ, աղաչեմ զձեզ զամենեսեան և յերեսս անկեալ արտասուաւքս համբուրեմ զոտս ձեր ես անարժանս յարժանաւորաց, անկարգս ի կարգաւորաց. վա՜յ ինձ, որ զձեն ունիմ և գործով անարժան գտանիմ։ Աղաչեմ զձեզ, որ լի բերանով աստուած-ողորմի ասէք ինձ՝ մեղաւորիս՝ անարժան Գրիգարիս, ամէն։

## 281

### ՇԱՐԱԿՆՈՑ

Վենետիկ 854

Գրիչ՝ Վրթանէս
վայր՝ Երզնկա, Խոզնցիք գիւղ

Արդ, գրեցաւ Շարակնոցս և Տաւնացոյց ի մի տուփ, ձեռամբ բազմամեղի և անարժանի Վրթանէս սուտ երիցու*, ի թվ. Հայոց ՋԽԳ. (1494), ի գաւառս Եկեղեաց, որ այժմ Եզնկայ կոչի, ի գիւղս Խոզնցիք, ի դրան սուրբ Աստուածածնին և սուրբ Կարապետին։

* Գրչի ուսուցիչն է Սիմէոն Եերունին։

## 282

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6273 (Ղ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան հայոց),
էջ 367, Եւդոկիայ՝ Յովհ. Ոսկեբերանի վանք

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Եւդոկիա

...Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ մեղապարտ և անարհեստ Գրիգոր գրչիս, որ ունիմ զսուրբ քահանայութեան անուն ի վերայ անարժան անձինս, բայց ներողութեամբն մարդասիրին Քրիստոսի աստուծոյ մերոյ յանկ եղեալ աւարտեցի զսուրբ Աւետարանս ի. քաղաքիս Եւդոկիայ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և սրբոյն Պարսամայ, և սրբոյն Ստեփաննոսի Նախավկային, և սրբոյն Մինասայ, ի թուիս ՋԽԳ. (1494)։ Յիշեցէք ի սուրբ աղօթս ձեր զԳրիգոր գրիչ և զծնողսն իմ, զհայրն իմ զՇնոֆոր պարոն, և զմայրն իմ Վարդտիկին, և զեղբայրն իմ զԱնդրէաս քահանայ՝ զփոխեցեալսն առ Քրիստոս, և զմիւս եղբայրն իմ զԱռաքել, որ բազում վիշտս կրեց ի յանօրինաց...

Յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր զՓիլիպպոս քահանայն, որ ստացաւ զսուրբ Աւետարանս և եդ յիշատակ ի դուռն սուրբ Նշանիս։

## 283

### ԱՒԵՏԱՐԱՆ

Մ. Աթոռ 13, «Էջմիածին» 1950 թ., VII—VIII,
էջ 83

Ծաղկող՝ Յովանէս

311ա ...Նկարեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ [յ]ոգնայմեղ և փցուն գրչի սուտանուն Յովանէս աբեղայի։ Յիշեալ լիցիք ի Քրիստոս։ Ի խնդրոյ Աստուածատուր քահանայի, և իւր որդոյ Թոմա քահանայի, և իւր յա[ր]եան մերձաւորաց։ Ով որ հանդիպիք՝ լի բերանով աստուած-ողորմի ասացէք և աստուած զձեզ յիշէ իւր միւսանգամ գալըստեան, ամէն։

Ի թւին ԹՃԽԳ. (1494)։

## 284

### ԺՈՂՈՎԱԾՈՒ ԲԱՆԻՑ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ, ԳՐԻԳՈՐԻ ՏՂԱՅԻ ԵՒ ԱՅԼՈՑ

Երևան 5707

Հետ. ստացող՝ Սիմէոն

Ո՜վ սուրբ մանկունք և հոգևոր եղբարք, զայս Նարեկացիս Յակոբ վարդապետ ինձ՝ Սիմէոն վարդապետիս ետուր։ Զնստանա Էրկիրս աւերեցին, այս յԱղթամար էր, և բերաւ Յակոբ վարդապետն ի Վան։ Յորժամ զօրքն Թուրքաց կոտորեցան՝ վարդապետն փախեօ ի Վանա, և երեկ ի Նարեկ, հեծելէն նախատակեցօ, գիրքս մնաց ի Վան, մօտ յաշխա[րհա]-

կան երէց մի, նա բփախուց և տարօ, յԱղթամար, տէր Զաքարէն* խաչ, տարօ։ Ես Սիմէոն վարդապետս Լ. (30) թանկայ տուի ու թափեցի։

Արդ, որք հանդիպիք կարդալով կամ օրինակելով, յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր զՅակոբ վարդապետն ծնողօքն իւրովք, ընդ նմին զիս Սիմէոն վարդապետիս, հանդերձ ծնողօք մերովք և արեան մերձօրօքն, և դուք հանդիպեալքդ սմա, լի բերանով և ուղիղ սրտիւ աստուած-ողորմի ասացէք զՅովանէս Թաղաշարենց, և կենակիցն իւր յիշեցէք ի Քրիստոս**։

* Կարծում ենք, որ Աղթամարի կաթողիկոս Զաքարիա Դ-ն է, որ աթոռակալել է 1489—1494 թթ.։ Ըստ այդմ հիշատակարանը գրված պետք է լինի նրա կենդանության օրոք, ուստի մինչև 1494 թվականը։

** Նույն այս հիշատակարանի սկզբի մասը Ղ. Փիրղալեմյանի ձեռագիր ժողովածուի մեջ (Երևան № 6273) ընդօրինակված է որպես 1392 թ. մի հիշատակագրության շարունակություն։ Հետևելով նրան տպագրել ենք նաև «ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ» ժողովածուի մեջ (Երևան, 1950, էջ 597)։

## 285

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Գ. Սրուանձտեանց, «Թորոս Աղբար» Բ. էջ 446—447*
*Տիգրանակերտ, ս. Կիրակոս եկեղեցի*

*Գրիչ՝* Թումայ
*վայր՝* Աղթամար

*...Յիշեցէք ի Քրիստոս... ոգծողս կրաւնաւոր* Թումայ, ... *և զերախտաւոր վարպետն իմ և զհոգևոր հայրն զտէր* Ներսէս *արհիեպիսկոպոսն. և զհարազատ եղբայրն իւր զտէր* Ստեփաննոս *կաթողիկոսն, որ բազում աշխատանաւք ուսուցին ինձ զարուեստ գրչութեանս և բազում երախտիք ունին ի վերայ իմ. աստուած իւրեանց փոխարէն հատուցանէ զերկնից արքայութիւնն և զանվախճան թագաւորութիւնն, ամէն։*

*Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուա[կանութեանս] Հայոց ՋԽԴ. (1495) ի սուրբ և աստուածաբնակ և աստուածապահ աթոռս* Աղթամար *կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Փրկչի տաճարիս և սուրբ Գէորգ զաւրավարիս։*

*Այլ և յանցեալ ամին փոխեցաւ ի Քրիստոս կաթողիկոսն մեր տէր* Զաքարիայն, *որ էր յարմատոյ և ի ցեղէն մեծ թագաւորին* Գագկայ, *և եթող մեզ և ամենայն քրիստոնէից սուգ անմխիթար, որ և տէր աստուած մեր դասեսցէ ի թագաւորական գահոյս իւր, ուր հաճոյքն աստուծոյ են, ամէն...։*

## 286

### ՍԱՂՄՈՍԱՐԱՆ

*Թբիլիսի, Հայերէն ձեռ. հավաքածու 195*

*Գրիչ՝* Բարսեղ
*վայր՝* Ուրծ գեղայքաղաք,
Տափի վանք

*...Արդ յանգ ելեալ աւարտեցաւ հոգիաբուղխ սուրբ տառս // որ կոչի Սաղմոսարան, ի լաւ և յընտիր աւրինակէ* Յովաննէս Գառնեցւոյ: *Գրեցաւ ձեռամբ յոգնայմեղ և անարուեստ գծողի* Բարսեղ *աբեղայի, որ միայն անունս ունէի և գործով ուրացեալ գտի, ի գառն և ամբարիշտ ժամանակի. ի թվականիս Հայոց ՋԽԴ. (1495), ի գաւառիս* Արարատեան, *ի գեղայքաղաքիս որ կոչի* Յուրծ. *ի սուրբ ուխտս որ կոչի* Տափի վանք, *ընդ հովան[ե]աւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Յակոբիս, ի յաշխարհակալութեան* Ըռըստամ-բէկին, *և ի կաթողիկոսութեան տէր* Սարգիսին:

*Արդ, յերեսն անկեալ աղաչեմ զձեզ, ո՛վ սուրբ ընթերց//ողք յիշեցէք զբազմայմեղ գծողս, և զհայր իմ* Մատուռն, *և զմայրն իմ* Սալթանն: *Այլ*

և անմեղադիր լերուք խոշորութեան և սղալանաց գրոյս, զի ըշտապեցայ, և ոչ կարի արեստ(՞) ի գծելː Դարձեալ աղաչեմ յիշել ի բարին Քրիստոս զմեղաւոր գծողս, զմիակեցն զՎարդան աբեղէնː

## 287

## ԱՒԵՏԱՐԱՆ

Մ. Աթոռ 39, «Էջմիածին», 1951 թ. հունվար-մարտ, էջ 83*

Նկարող՝ Սահակ
վայր՝ Գեղամայ երկիր,
Դարանախս գիւղ

ա

214ա—214բ ...Արդ, աղաչեմք զհանդիպողք սուրբ Աւետարանիս կարդալով կամ տեսանելով կամ աւրինակելով, յիշեցէք զԱզարիայ քահանայն, որ ստացաւ զսայ ի հալալ ընչից իւրոյ՝ յիշատակ իւրն, և ծնաւղաց իւրոց՝ հայրն իմոյ Ճանպուղին և մայրն իմ Մարթին, և եղբայրն իմ Կարապետին, Մարգարին, Մկրտչին, եղբաւրորդին իմոյ Ովանեսին, Պետրոսին, և որդոյն իմոյ Ճանպուղին, Նաղաշին, Եբրիանոսին, և Ե. (5) դստերացն՝ Մարգարտին, Ամպարին, Կուլմէլիքին, Սալթան-Մէլիքին, և հարսին իմ Շիրազին, և հաւրեղբաւր իմ Աղպուղին, Մարգարին, և ինձ տառապելոյ Ազարիայ իրիցոյս, և կենակցին իմոյ Խաթունին: Ստացաք զսուրբ Աւետարանս յիշատակ մեզ և ննջեցելոց մերոց՝ լինողանեաց և հանդուցելոց...

Ընդ նմին և զիս՝ զնկարողս յիշեցէք, որ եմ պարտական և սևերես ամենայն կարգաւորացː Նկարեցաւ ի թվականիս Հայոց ՋԽԴ. (1495), ի տանս Գեղամայ, ի գեաւղս որ կոչի Դարանախս, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և աստուածառաք սուրբ Նշանիսː

Յիշողդ աւրհնին ի աստուծոյ և ամենայն սրբոց, ամէնː

բ

97բ ԶՍահակ սուտանուն աբեղա եմ սևերես ամենայն կարգաւորաց և պարտական բազում քանքարացː Նկարողս յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր, ո՛վ սուրբ ընթերցողք և կարդացողք, հանդերձ ծնողաւք իմովք և աստուած զձեզ յիշէ յիւր միւսանգամ գալըստեանն, ամէն, և անմեղադիր լերուքː

Աղաչեմ զձեզ, ո՛վ եղբարք, ընդ նմին և զստացող սորայ զԱզարիայ քահանայն յիշեցէք, և աստուած զձեզ [յիշ]էː

գ

Գրիչ՝ Ստեփանոս

58բ ...Ողորմեա անիմաստ մեղաւոր և փծուն գրչին, որ ութ տառիւ անուն դոչին, այն առաջին և այն յետին, որ համարով վերաբերին, տասն և եաւթըն հազար բոլորովին և չորս հարիւր և վեցին**ː

---

* Ձեռագիրը մանրամասն նկարագրված է նաև Ա. Երեմյանի կողմից «15-րդ դարի մի գրչագիր աւետարան» հոդվածում (տե՛ս «Բազմավէպ», 1951, էջ 310—311)ː

** «Ստեփաննոս» անվան տառերի թվական արժեքների գումարը, իրոք, 17406 է. այսպես՝ Ս=2000+Տ=4000+Ե=5+Փ=8000+Ա=1+Ն=400+Ն=400+Ո=600+Ս=2000, գումարն է՝ 17406ː

## 288

## ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետիկ 132 (329), Բ. Սարգիսեան, Ցուցակ, Ա, 585—586

ա

Գրիչ՝ Քրիստոսատո՞ւր
վայր՝ Վայոց-ձոր, Եղեգիս

312բ ...Արդ գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվականիս Հայոց ՋԽԴ. (1495), ի կաթողիկոսութեանն տեառն Սարգսի՝ յաթոռ սուրբ էջմիածնի. եւ վերագիտող այժմ նահանգի պարոն-տէր Եղիշա արքեպիսկոպոսի՝ որդոյ իշխանաց իշխանի պարոն Սմպա[տայ], որդոյ մեծին Տա[ր]սաիճի, զոր տէր աստուած տացէ զսա մեզ ընդ երկայն աւուրս՝ ուղիղ վերակացութեամբ. ի ղանութեանն Ուռուստամ փաթշահի, ի նահանգիս Վայո–ձորոյ, ի մայրաքաղաքս Եղեգիս. ընդ հովանեաւ երից տաղաւարացս սուրբ Կաթողիկէին, և սուրբ Աստուածածնիս, և սուրբ Ստեփանոսիս, և կենդա[նա]րար սուրբ Նշանիս*: Ի խնդրոյ աստուածապատիւ և մահդասի Ազարիա աբեղայի, զոր տեսեալ զանառիկ մեծութիւն սորա՝ և ետ գրել զսա ի լաւ և յընտիր արդինակէ, յիշատակ իւր և բարի ծնողաց իւրոց, հաւր իւրոյ՝ Սաճակ աղին. և մաւր իւրոյ Սիբխաթունին, և եղբարցն Յոճանիսին և Յովանիսին, և որդոցն Սաճակ քահանային, և եղբօրն՝ ծնելոյն ի սմին ամի Մովսէսին, և Վրթանէս սարկաւագին, և եղբօրն Յորղանանին, և դստերացն՝ Մարամին և Բեկիխաթունին, Սալթան-Մէլիքին, Ողուլ–Մէլիքին, Խոնդքարին, և Խոնդ- խաթունին, Նազ–Մէլիքին, Սիբ–Խաթունին և Խաթուն-Փաշին, Ղզլարբէկին և Դուլթէզին, և հաւրեղբարցն Յակոբ ճգնաւորին և Աղբուղին, և կենակցին իւրոյ Սուրաթին:

Ընդ նոսին անարժան փծուն անարգ և կոխան ամենայն քահանայից, մանավանդ ամենայն ստեղծւածոց, խուզած զՔրիստոսատուրիս** և ծնողսն:

Արդ, դուք և մեք ի մի բերան փառս վեր առաքեսցուք ամենազաւրին աստուծոյ, որ հասոյց մինչ ի վերջին գիծ տառիս:

բ

Գրիչ՝ Մոճիր

138ա Զստացող լուսազարդ սուրբ Աւետարանիս զԱզարիայ սրբամիտ կրաւնաւորն՝ հանդերձ ծնաւղաւքն՝ յիշեա ի տէր, աղաչեմ, և զՄոճիր գծողս.

գ

Վաճառող՝ Ազարիա

312բ Ես Ազարի երէցս Աւետարանս տվի Բարսեղ եպիսկոպոսին: Տախեցի է. (7) մարչինի, Շաղուպաթն վկա, Սա[ր]ֆիսն վկա, Նէրսէսն վկա, աստուած մեզ միջնորդ:

---

* Մինչ այստեղ նմանահանությամբ հրատարակել է Ղ. Ալիշանն իր «Սիսականում» (էջ 150) և «Այրարատում» (էջ 353):

** Տպագրված է «զՔսիսս»:

## 289

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5303

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Վայոց-ձոր,
Վերի-Նորավանք

ա

...Արդ, ըստ նոյն անպացուցի աստուածայնոց իրաց հետևեալ աս-
392բ տուածաբան և քաջ բաբունապետն Աբրահամ ...//... ստացաւ զաստուա-
ծախաւս մատեանս, որ յորջորջի աւետաւոր երկնից արքայութեանն, ի
յիշատակ հոգւոյ իւրոյ և ի ժառանգութիւն ընդանեաց իւրոց կենդանեաց,
և ի փրկութիւն հոգոց ննջեցելոց իւրոց, հօրն իւրոյ*, և հաւրեղբաւրն՝
աստուածաբան վարդապետին Աւագտիրի, և մաւր իւր Գոնձին, և աւագ
եղբաւրն Դաւիթ քահանային, և միւս եղբաւրն բարեմիտ և կուսակրաւն
393ա աբեղային Զաքարիայի, և // կրտսեր եղբաւրն իւր՝ միայնակեաց և սպա-
սաւոր միաբանիցն Յակոբին, և այլ միւս եղբաւրն աշխարհի՝ Մարգարին,
և եղբաւր որդոյն իւր՝ դեռաբոյս և կուսակրաւն աբեղայի Վրդանիսի:

Արդ գրեցաւ սայ ի յերկրիս Վայոյ-ձորոյ, ի գաւառս Եղեգիս, և սուրբ ուխտս որ կոչի Վերի Նորավանս, ընդ հովանեաւ սուրբ Սիովնիս, և սուրբ Աստուածածնիս, և այլ ամենայն սրբոցս, որ աստ կան հաւաքեալ բարեխաւսել առ տէր վասն մեր, ձեռամբ յոգնամեղ, վտիտ, փանաքի, եղկելի և թշուառական Գրիգոր անարժան և ծոյլ աբեղայի, ի խանութեան Ըռուս-
393բ տամին՝ յազգէ տաճկաց, ի քաղաքն շահաս//տան, որ է Թաւրէժ, և ի հայ-
րապետութեան Հայոց տեառն Սարգսի՝ յաթոռ սուրբ Էջմիածնին։

Վասն որոյ աղաչեմք զամենեսեան, որ լուսաւորիք սովաւ կարդալով կամ աւրինակելով և հոգևոր խրախութեամբ, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զքաջ բաբունին զԱբրահամ՝ զստացաւղ սորա և զծընաւղսն իւր, եւ զիս զանարժանս և զպարտականս բիւր բանքաբոյ՝ զԳրիգոր և զծնաւղսն իմ յիշման արժանի առնել, և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ՝ աստուծոյ մերոյ, ամէն։

Այլ և խոշորութեան և սղալանաց գրիս անմեղադիր լերուք, զի կար մեր այս էր։

Գրեցաւ սա ի թվականիս Հայոց ՋԽԴ. (1495)։

բ

126ա ԶԱբրահամ քաջ բաբունապետ ստացաւղ սուրբ Աւետարանիս և
զԳրիգոր մեղաւք մեռեալ գրիչս աղաչեմ յիշել ի տէր Յիսուս։

գ

Նկարիչ և ստացող՝ Աբրահամ

29բ Զանարժան Աբրահամ ստացիչ և նկարիչ** սուրբ Աւետարանիս, հան-
դերձ ծնողօք և վարդապետաւք յիշեսջիք ի սուրբ և աստուածամերձ յա-
ղօթս ձեր, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

* Անունը քերված է։

** Աբրահամի նկարները բազմաթիվ են և կատարված մեծ վարպետությամբ։ Նա տիրի–

## 290

### ՄԱՇՏՈՑ

*Շուշի, Ղազանչեցոց եկեղեցի, ՄՏՄ*

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Գողթան երկիր,
Զորավանք-Բուստ գիւղ

371ա ...Եւ եղև զրաւ աւարտման սորա յերկիրս Գողթան, ի փոքր անապատս Փառակայ, որ կոչի Զորավանք, ընդ հովանեաւ սուրբ Գէորգիս, և սուրբ Սքանչելագործ աջիս, և ամենայն սրբոց, որ աստ կան հաւաքեալ։ Անդի ելաք և եկաք ի սուրբ և փառաւոր վանքս Բուստոյ, և աստ գրեցաք զՔահանաթաղս, ի դրան սուրբ Աստուածածնիս և առ ոտս փառաւոր և սուրբ Նշանիս և ամենայն սրբոցս, ամէն։

Եւ առաջնորդ սուրբ ուխտիս տէր Մեսրովբ հեզահոգի և բարի աբեղայ, և ընդ նմին ընկերակիցն իւր զՄովսէս ընտիր աբեղա և զհայր վանացս զՍարգիս միայնակաց, արքեպիսկոպոսութեան Գողթան գաւառիս տէր Ազարիային, թագաւորութեան Ռստամ-բէկին, որ խիստ նեղ և դժար ժամանակ էր, քրիստոնէից ազգս խիստ նեղացեալ էր ի ձեռն անաւրինաց, ևս առաւել քահանայքըն...

Ստացող և հոգացող և առաջնորդող սուրբ դրոցս՝ տէր Մեսրոբ, յիշատակ իւր, և ծնողաց իւրոց. ամէնաւրհնեալ և աւրհնութեանցն արժանաւոր ահղս Բուստայ քահանայքն և տանուտէրքն լաւ կանգնեցան և ետուն գրել գիրքս այս յիշատակ իւրեանց և ամենայն մերձաւորաց իւրեանց, և որ բազում և որ սակաւ աշխատեցան, ամենեքեան վարձս աստուծոյ առնուն հազարապատիկ և բիւրապատիկ։ Արարիչն աստուծ կենդանեաց առողջութիւն սայ և ննջեցելոցն արքայութիւն տայ, ամէն։ Ձեռամբ ապիկար և անարհեստ դրչի՝ յոգնամեղ և սուտանուն Կարապետ աբեղայի, որ միայն անուամբս եմ և ոչ գործովս։ Արդ, երես անկեալ աղաչեմք ... զամենեսեան, որ սղալանաց և խոշորութեան և գրչափոխութեան դրոցս թողութիւն առնէք, յետոյ-յառաջ գրեցաւ սա, աւրինակն երկու էր։

Գրեցաւ ի թվականիս Հայոց ՋԽԴ. (1495), անմեղադիր լերուք, զի կար մեր այս էր, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

## 291

### ՍԱՂՄՈՍԱՐԱՆ

*Երևան 7777*

Գրիչ՝ Աւետիք
վայր՝ Պալախաւրոյ վանք

ա

190ա ...Իսկ ես՝ անարժանս և անպիտանս Աւետիք աբեղա, ի բազում ամաց տենչմամբ տոչորեալ էի ուղղաբան Սաղմոսարանի. ահա հանդի-

---

նական նկարների ստորին լուսանցքներում թողել է ամեն մի նկարի մասին բացատրական ոտանավորներ, որոնց տողասկիզբ տառերով հոդվում է իր («Աբրահամ») անունը։

«Պայծառակերպության» նկարի ցածում (էջ 12բ) Աբրահամը թողել է իր («ստացող և

պեցա ընդիր աւրինակի Յովաննէս Դառնեցոյն, որոյ յիշատակարանն
գրած էր այսպէս. «Եւ գնացի,—ասէ,—ի սուրբ ուխտն Հաղբատ, և երկրր-
պագեցի սուրբ խաչին և սուրբ գերեզմանին մեծ և տեսանող Հայոց սուրբ
վարդապետին Յովաննիսի մականուն Սարկաւագ, այն որ զսաղմոսն բա-
ղում ճգամբ՝ ի թարգմանչագիր Սաղմոսարանէ գաղափարեաց։ Եւ իմ
հանդիպեալ նոյն Սաղմոսարանի սուրբ վարդապետի՝ առեալ համբուրե-
ցի, եւ գրեցի զսա յիւրմէն ամենայն ստուգութեամբ՝ զբանն, զգիրն,
զհարցուկն, զհանգիստն, զտունն, զկէտն, զստորն»։
Արդ, ես՝ ի սրտէ խոցեալս վասն մեղաց Աւետիք աբեղայ, գրեցի
զսա ըստ իմում կարի, թէպէտ և ծեր էի և ՀԸ. (78) տարոյ, և վաղուց թո-
190բ ղեալ զարուեստս, այլ // իմով տկարութեամբս ուղղեցի, որ նոյն աւրի-
նակն եղև։ Վասն որոյ համարձակ լիցին ուսանելով, թէ աւրինակելով։
Բայց մի ոք իշխեսցէ ի հոգոյն սրբոյ տգիտաբար բան թիւրել և կամ
զգրեալսն չստուգել յաւրինակէս, որպէս և ես. որ թէպէտ գիրս յոյժ անար-
վեստ է, այլ զբանն ուղղեցի կրկին և երեքկին։
Եւ արդ, գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց ՋԽԴ. (1495), ի ստո-
րոտ լերինս հիւսիսոյ, ի դրունս սրբոյ Գէորգեա քաջ և արի զինաւորին և
այլ սրբութեանցս, որ աստ կան, և յառաջնորդութեան սուրբ ուխտիս Յու-
սիկ վարդապետի, և մեղուցելոյս՝ Աւետիք աբեղի, և միաբան եղբարցս՝
Մարտիրոս աբեղին, և Յովակիմ աբեղին, և Յոհաննէս աբեղին, և Խաչա-
տուր մալազին, եւ այլ միաբան սուրբ ուխտիս զուսմանակիցս յիշեսջիք
ի մաքուր սուրբ յաղաւթս ձեր, և աստուած զձեզ յիշէ, ամէն...
191ա ...Այլ աղաչեմ անմեղադիր լինել սխալանաց և խոշորութեան գրիս,
զի յոյժ ծերացեալ էի և բազում ամ հեռացեալ ի յարուեստէս։ Այլ ի միտս
եկեալ գրեցի յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց՝ հաւր իմոյ Վահան երիցու
և մաւր իմոյ Էմին-Մելիքին, և եղբարց իմոց, և եդի յիշատակ ի դուռն
սրբոյն Գէորգեա զաւրավարին։
Եւ արդ մի ոք իշխեսցէ հանել զսա ի դրանէ սուրբ եկեղեցոյս յափշ-
տակելով, կամ վաճառելով, կամ փոխան տալով, և գրաւ դնելով, կամ
191բ ումէք շնորհելով. ոչ իմոքն // և ոչ աւտարք. և ով յամառի կամ ձեռնամուխ
լինի՝ մասն և բաժին զՅուդայի մատնչի և զխաչահանուացն ընկալցի։ Եւ
որք լրբին զգիրս զայս կտրելով կամ եղծանելով՝ կտրեսցի ի կենացն յա-
ւիտենից։ Փակակալք և սպասաւորք խնամով պահեսցեն՝ ոչ յարձակս ըն-
գենլով կամ առանց դաստառակի, զի մի ղատեսցին ի տեառնէ։ Յաւրի-
նակ և յընթերձումն մի խնայեսցի։
Կատարողք պատուիրանիս աւրհնին յաստուծոյ և յամենայն սրբոց,
ամէն...

Բ

235ա ...Գրեցաւ ձեռամբ Աւետիք աբեղայի ի վանս Պալախաւրոյ, ի դուռս
սուրբ Գէորգեա զաւրավարի, ի թվ. ՋԽԴ. (1495)...

նկարող գրոցս») և Զաքարիայի («աւկր Զաքարայ սիրելի եղբայր մերս») պատկերները։ Այդ
նկարն ավարտված է «թվ. ՋԽէ. (1498)»։ Հաջորդ էջում կարմիր թանաքով նույն Աբրահամը
թողել է մի հիշատակագրություն. «Զբարեմիտ և զերկիւղածն յաստուծոյ զԱզիզն, որ շատ կու
ծառայէ մեզ, և ետ ընծա սուրբ Աւետարանիս. յիշեցէք ի Քրիստոս, թվ. ՋԾԱ. (1502»)։

Գ

6ա ...Սաստիկ ծռեցաւ ճշգրիտ բանքդ (Սաղմոսարանին) ի ձեռն անփութութեան գրագրաց և թուլութեան ուսումնաւորաց։ Զոր վերահասու եղեալ մեծ իմաստասէրն Հայոց հոգեխառն վարդապետն սուրբ Յովհաննէս մականուն Սարկաւագ, որ գնաց ի գերահռչակ սուրբ ուխտն ի Հաղբատ։ Եւ գտեալ ի յարկեղ սուրբ վարդապետացն և թագաւորացն զթարգմանագիր Սաղմոսարանն, և պարապեալ ի յայնմ աւուրս բազումս՝ ի լոյս էած զգանձն ծածկեալ, և եբաց զխցեալ աղբիւրն, և ցրուեաց ընդ ամենայն սահմանս Հայաստանի զաւրինակս զայս։ Եւ այդ նշմար սեակի, որ ծրի յառաջիկայդ՝ յայնմ աւրինակէն է հաստատուն, սիրելի։

Եւ ղստացաւղքս՝ զմեզ յիշեսջիք յաղաւթս ձեր, ես և դիս զԱւետիՐ գծողս։

## 292

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Մ. Սմբատեանց, «Երնջակ», 135—136*

Գրիչ՝ Մանուէլ
վայր՝ Կուէի գիւղ

...Գրեցաւ սուրբ Աւետարանս թւականիս Հայոց Ջ. և ԽԴ. (1495), ընդ հովանեաւ սուրբ Հազարբիւրացս, և սուրբ Նշանացս, և սուրբ եկեղեցեացս ի գիւղս Կուէի կոչեցեալ, ի խնդրոյ հաւատարիմ և աստուածասէր առն Ջանղուրբանին և ամուսնոյն իւրոյ Ջաւահրին, որ փոխեցաւ ի Քրիստոս, ի վայելումն որդւոյ իւրոյ Գալուստ քահանային, եղբարցն Ջանիբէկին, Յովհաննէսին, Թադէոսին, Գրիգորին, և քեռացն Փաշայ-խաթունին, Մարիամին, Շաղոսկին, Խոնձադին, և կողակցին իւրոյ Գուլ-խաթունին, և դստերն Մէլիք-խաթունին, որ յոյժ փափագանաւք ստացան զսուրբ Աւետարանս ի հալալ վաստակոց իւրոց՝ յիշատակ իւրեանց, և ծնողաց իւրեանց՝ հաւրն Գալստին և մաւրն Փաշայ-Մէլիքին, և ամենայն մերձաւորաց իւրոց։

...Եւ զիս զանպիտան դծողս զՄանուէլ, և զծնողս իմ, և զամենայն արեան մերձաւորս իմ, և զերախտաւորսն, և զսպասաւորսն, որք հանդիպիք սմա տեսանելով կամ կարդալով կամ աւրինակելով, լի սրտիւ և ուղիղ մտաւք աստուած-ողորմի ասացէք... Եւ սխալանաց և խոշորութեան գրիս անմեղադիր լերուք, զի կար մեր այս էր, զի լոյս աչիս պակասեալ էր և հոգս և պատրանք աշխարհիս զմեզ ընկղմեալ էր, ի դառն և դժուար ժամանակի, որ յոյժ վշտացեալ կամք ի յայլազգեաց վասն ծովացեալ մեղաց մերոց, վասն որոյ և ինքն, որ առատն է ի տուրս բարեաց ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յուսացելոցս ողորմեսցի յիւր միւսանգամ գալըստեանն, ամէն։

## 293

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Թբիլիսի, հայերէն ձեռագր. հավաքածու 112*

*Գրիչ՝* Բարսեղ
*վայր՝* Քաջբերունիք,
Ասպիսնակ գիւղ

*...Արդ, յանկ ելեալ աւարտեցաւ աստուածախօս և աւետաբեր սուրբ Աւետարանս ի Թըւիս Հայոց ՋԾԽԴ. (1495), ի գաւառիս Քաջբերունեաց որ կոչի Արճէշ, ի գեաւղս Ասպիսնակ, ընդ հովանեաւ սուրբ Ստեփանոսի սուրբ տաճարիս։*

*Այլ և գրեցաւ սա ձեռամբ* Բարսեղ *մեղսամեհր գրչի, ի խնդրոյ բար[ի] միակեց* Սատաղին, *որ ստացաւ զսա ոչ յաւելորդաց և կամ ի փարթամութենէ, այլ ի բազում տքնայնութեամբ յաղթահարեալ ի սիրոյ սուրբ Աւետարանիս, ըստ գրեցելոյն՝ թէ Սէր կատարեալ ի բաց մերժէ // զերկիւղ. նայ զանձս ի յերկինս և բարեխօս առ տէր աստուածն Յիսուս Քրիստոս։*

*Արդ, ըստացաւ հաւատարիմ և բարի տանուտէրն* Բարունակն *յիշատակ իւրն, և ծնօղացն* Սալչուկին, *և հօրն* Խուրովին, *և եղբօրն* Մարտիրոսին, *և* Յոհանիսին, *և* Պետրոսին:

*Դարձեալ կրկին անգամ աղաչեմ յիշեցէք ի ժամ սուրբ պատարագին զբարի միակեցն* զՍատաղէն, *որ ստացաւ զսա ի հալալ վաստակոց իւրոց, յիշատակ իւր և ծնօղաց իւրոց...*

## 294

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 6273 (Գ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան հայոց), էջ 369—370, յԱրծուաբերի ուխտ*

*Գրիչ՝* Յոհաննէս
*վայր՝* Արճէշ

*Եւ արդ, ես յետինս ի կարգաւորաց ...* Յոհաննէս *սուտանուն քահանայ շնորհիւ տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զսուրբ Աւետարանս ի Թուականիս Հայոց ՋԽԴ. (1495) ամին, ի քաղաքիս* Արճէշ *կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ տաճարիս Աստուածածնիս, ի հայրապետութեան տեառն տէր* Սարգիս *կաթողիկոսի։*

*Արդ, աղաչեմ զձեզ զամենեսեան, զի լիակատար սրտիւ աստուածողորմի ասացէք անմեղ նահատակին* Բաճլուին, *որ ի ձեռն արեանարբու չալատաց սրախողխող կոտորեցին, և եղև պատարագ ընդունելի և ճըշմարիտ մարտիրոս. կատարեցաւ և եղև արժանի անանց պսակին, և անթառամ դրախտին կենաց, և պայծառ առագաստին՝ հանդերձ ծնողօքն, ամէն։*

## 295

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 6273 (Ղ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան հայոց), էջ 368—369, Վան՝ Տիրամայր եկեղեցի*

Գրիչ՝ Զաքարիա
վայր՝ Վան

...Եւ գրեցաւ սա ի թուաբերութեանս Հայոց ՋԽԴ. (1495), ի հայրապետութեան տեառն Սարգսի, և մերոյ աթոռակալի և առաջնորդի սուրբ ուխտիս Վարագայ քաջ հռետորի և տիեզերալոյս վարդապետին Ատոմի, և տէր Յովհաննէս արհիեպիսկոպոսի, ի քաղաքս որ կոչի Վան, ընդ հովանեաւ սրբազան առաքելոցս Պետրոսի և Պօղոսի, ձեռամբ անարժան և սնոտանուն երիցու՝ Զաքարիայի անարհեստ գրչի։ Յիշեցէք ի Քրիստոս ի սուրբ յաղօթս ձեր զստացող սուրբ Աւետարանիս զՍահակ սրբասէր կրօնաւորն, որ ստացաւ զսա ի յարդեանց իւրոց և ետ ի դուռն Վարագայ սուրբ Նշանին, անջինջ յիշատակ իւր և իւրոցն ամենայնի...

## 296

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 5751*

Գրիչ՝ Սարգիս
վայր՝ Ամիրդոլի վանք

266բ ...Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի վերջացեալ աւուրս և ի սպառեալ ժամանակիս՝ ՋԽԴ. (1495) թըւականիս Հայոց, ի վանքս որ կոչի Ամիրդոլ, ընդ հովանեաւ սուրբ Յովանիսին և սուրբ Սիոնին, ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի Սարգիս սնոտանուն աբեղայի։ Զոր և տեսեալ իմ զսէր և զփափաք Զարղարին և զԴուխթարին՝ յանձն առեալ գրեցի զսուրբ Աւետարանս յիշատակ հոգւոց իւրեանց. և ծնողացն՝ սպարն Մուրատին, և մօրն՝ Մինայ-խաթունի*, և զաւակացն՝ Ամիր-Սարգսին և Հազարբէկին...

Դարձեալ, կրկին անգամ աղաչեմ յիշել առ Քրիստոս զստացաւղ սուրբ Աւետարանիս Զարղարն, և զփեսայն իւր զպարոն Սլեմանշէն, և
267ա զորդին իւր զԱւղալ-Քարամն, // և զկողակիցն իւր՝ զԴուխթարն, որ բազում երախտիք ունին ի վերայ նորա որդիայլյս...

Դարձեալ, աղաչեմ զամենիսեան, որք հանդիպիք սուրբ Աւետարանիս միով աստուած-ողորմիւ արժանի արարէք զտառապեալ գրիչս... զՍարգիս սնոտանուն աբեղայ, որ անունս ունիմ և գործս ոչ, և ծնողքն իմ զՍֆանդարն և զՇնաւֆորն...

Դարձեալ աղաչեմ յիշման արժանի առնէք զմեղաւոր գրիչս, և զուսուցիչն իմ զտէր Ստեփանոսն և զտէր Արիստակէսն, և զհոգևոր եղբայրքն իմ զտէր Կարապետն և զտէր Դաւիթն, զի շատ երախտիք ունին ի վերայ

* Մուրատի և Մինայ-խաթունի պատկերները նկարված են ձեռագրի 11բ էջում։

մեր՝ հոգևոր և մարմնաւոր... Անմեղայդիր լերուք սղալանաց և խոշորա-
267բ նաց, // զի այլ գիրք չի գրեր. այդ յանճարու եղեւ, զի ճանապարհ հանդի-
պեցաւ ինձ*, եւ ինչք չունէի, վասն այն պատճառին յանձն առի դրել։

## 297

## ԳՐՈՒԹԻՒՆՔ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՋԻԱՆԶԱՑԻՈՅ

Երևան 3495

Գրիչ՝ Գրիգոր Տաւռեացի
վայր՝ Եկեղեաց գաւառ,
Կապոսի վանք

141բ ...Արդ, գրեցօ գիրս մեծին աստուածաբանին Գրիգորի և թվականիս Հայոց ՋԽԴ. (1495), ձեռամբ ներգև ոգոյ և թարմատար գրչի պիտակ անուն Գրիգորի՝ աշակերտի մեծին րաբունապետին Յովանիսի, որ մականուամբ Համշինցի կոչի։ Եւ գրեցաւ գիրքս ի վայելումն մանկանց Սիովնի ուղղասիրութեանցն դասի։

Արդ, որք օգտիք ի սմանէ գրելով ի քարտի կամ ուսմամբ իմաստի նախաշաւիղ հետևողացն առաքելագումար խմբիցն երջանկի, զանըստերիւրն գնալով ձեզ ուղղի՝ յիշել մաղթեմ անմոռաց սրտիւ զկարօտս աղօթից սրբազանիցդ դասի, զի թերևս օժանդակութեամբ աղաւթից ձեր րղձի ցօղեսցի կաթիլ մի ցօղոյ յամէներանեանն տեառնէ ի կրկնամեռս իմ ոգի, որոց խնդրողացս առհասարակ ողորմութեան ցօղն տեղասցի հանդերձ մերովքն ննջեցելովք և ձերովքն ամենի, յորոց միով բերանով փառաւորի ամենասուրբ երրորդութիւնն յօիտեանս յօիտենից, ամէն**։

## 298

## ԳՐՈՒԹԻՒՆՔ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՋԻԱՆԶԱՑԻՈՅ

Երևան 114

Գրիչ՝ Մաղաքիա Բաբերդացի
վայր՝ Եկեղեաց գաւառ,
Կապոսի վանք

148բ ...Արդ, գրեցաւ գիրս մեծին աստուածաբանին Գրիգորի, ի թվականիս Հայոց ՋԽԴ. (1495), ձեռամբ յոգնամեղ և փծուն Մաղաքիայ Բաբերդացոյ, յիշատակ ինձ, և ծնօղացն իմոց, և ի վայելումն մանկանց Սիովնի՝ ուղղասիրութեանցն դասի։

Արդ, որք օգտիք ի սմանէ գրելով ի քարտի կամ ուսմամբ իմաստի՝ նախաշաւիղ հետևողացն առաքելագումար խմբիցն երջանկի զանըստերիւրն գնալով ձեզ ուղղի՝ յիշել մաղթեմ անմոռաց սրտիւ զկարօտս աղօ-

* Լուսանցքում, այս տողի ուղղությամբ, գրված է «Եմա» (=Երուսաղէմ)։ Հավանաբար ձեռագիրն ընդօրինակել է Երուսաղեմ գնալու համար դրամ հայթայթելու նպատակով։

** Ձեռագրի երկրորդ մասը, որ պարունակում է Կիւրեղ Աղեքսանդրացու «Գիրք պարապմանց»-ը, ընդօրինակել է նույն գրիչը հաջորդ՝ 1496 թվականին։ Այդ մասին հիշատակարանը տե՛ս 1496-ի թվաշարքում։

թից ձեր ըղձի ցողեսցի կաթիլ մի ցօղոյ յամենըրանեանն տեառնէ ի կըրկնամեռս իմ ոգի, որո՛ց խնդրողացդ և փափաքողացս առհասարակ ողորմութեան ցօղն տեղասցի հանդերձ մերովքն ննջեցելովք և ձերովք ամենի. յորոց միով բերանով փառաւորի ամենասուրբ երրորդութիւնն յաւիտեանս. ամէն*։

## 299

## ԱՒԵՏԱՐԱՆ

Հ. Քյուրդյանի հավաքածու

Գրիչ՝ Խաչատուր
վայր՝ Եկեղեաց գաւառ, Կապոսի վանք

...Զայս ամեն զմտաւ ածեալ հաւատարիմ և աստուածասէր տանուտէրն պարոն Գորգէն, և զկողակիցն իւր զԱզիզն, և զեղբայրն իւր Դալուստ, և զքոյրն իւր Մարխաթուն, յիշեցեալ զայն որ ասէ թէ՝ Երանի որ ունիցի զաւակ ի Սիովն և ընդանեակ յԵրուսաղէմ։ Եւ ետ գրել զըկենսունակ սուրբ Աւետարանս յիշատակ իւրն և ծնաւղացն իւրոց, հաւրն իւրոյ Յովհաննէսին, և մօրն իւրոյ Սիմրային, և զաւակի նորա Աստուածատրին, և զկենակիցն իւր զԿուլիկ. և զեղբաւրորդին իւր զՊզտիպարոնն, և զկենակիցն իւր զՃուհարն, և եղբարն նորա Նուրպարոնին. ի վայելումն Յէզէկէլ սարկաւագին։ Գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուականիս Հայոց ՋԽԴ. (1495) ամի, ի գաւառս Եկեղեաց, ի յանուանի և ի հռչակաւոր անապատս որ կոչի Կապոսի վանք, ընդ հովանեաւ սուրբ Յակոբի և սուրբ Սիոնի։ Առ ոտս Յովանէս քաջ բաբունապետի Համշի[ն]ցոյ, որ դաս ասելով բացայայտէ զխորս աստուածային գրոց և լուսաւորէ զմեզ զամենեսեան, զոր տէր աստուած պահեսցէ ընդ երկայն աւուրս սպառազուլց ամօք և յետ աստեացս էլանելոյն ընդ առաջին սուրբ վարդապետացն դասեսցէ՝ ծնօղաւքըն եւ ազգականաւքըն իւրօք, ամէն։ Եւ ի յառաջնորդութեանս սուրբ ուխտիս տէր Ներսէսի եւ պատուական աբեղայի՝ Հոգուն Հեզ և վարուքն բարի, զոր տէր աստուած պահեսցէ անսասան մինչ ի խորին ծերութիւն ամէն։ Արդ աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սուրբ Աւետարանիս կարդալով կամ տեսանելով և կամ աւրինակելով, յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր զանարժան գծողս զԽաչատուր, և զծնաւղսն իմ, և զամենայն արեան մերձաւորք իմ, և թողութիւն մեղաց հայցեցէք ի Քրիստոսէ. և նա, որ առատն է ի տուրս բարեաց մեզ և ձեզ ողորմեսցի, ամէն։ Եւ զԱսին աբեղայն, որ բազում փափաքանաւք ետ գրել սուրբ Աւետարանս յիշատակ իւր և ծնողացն իւրոց պարոն Գորգին:

Դարձեալ աղաչեմ յիշել ի տէր աստուած զմիաբան սուրբ ուխտիս առհասարակ ամէն։

---

* Մաղաքիայի այս հիշատակարանը Գրիգոր Տարոնացու հիշատակարանի (տե՛ս Նախորդը) ընդօրինակությունն է։

Այս հիշատակարանների համեմատությունը պարզ ցույց է տալիս, թե ինչպես որոշ գրիչներ բառացի ընդօրինակել են ուրիշների կազմած հիշատակարանները, փոխելով միայն հատուկ անունները և տվյալ ձեռագրի ընդօրինակման հետ կապված հանգամանքների մասին տվյալները։

## 300

### ՈՍԿԵՓՈՐԻԿ

Վենետիկ 241 (96), Բ. Սարգիսեան, Ցուցակ Բ. 622

Գրիչ՝ Խաչատուր
վայր՝ Եկեղեաց գաւառ
Կապոսի վանք

Գրեցաւ սուրբ տառս որ կոչի Ոսկեփորիկ, որ է բան խրատական և կանոնք սուրբ հարցն, ի թուականութեանս Հայոց ՋԽԴ. (1495), ի գաւառս Եկեղեաց, ի յանապատս որ կոչի Կապոսի: Եւ ի առաջնորդութեան սուրբ ուխտիս տեառն Ներսէսի և քաջ րաբունապետի Համշի[ն]ցոյ, ձեռամբ բազմամեղի Խաչատուր աբեղայի, ի վայելումն տէր Գրիգոր հեզահոգի կրաւնաւորի, զոր տէր աստուած վայելել տացէ նմայ երկար կենաւք ի փառս աստուծոյ, ամէն։

## 301

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Տ. Պալեան, Ցուցակ Կեսարիոյ, էջ 9—10,
Ա. Ալպոյաճեան, «Պատմ. Հայ Կեսարիոյ», էջ 1850

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ Կեսարիայ գաւառ, Մանտիսոն գիւղ

739ա— ...Արդ յայսմիկ և ի սոյնպիսիս նայեցեալ հոգոց հանելով երջանիկ
714բ երկիւղածն և աստուածասէր Սիրատանն, և յիշեաց զբանն որ ասէ, թէ Երանի որ ունիցի զաւակ ի Սիոն և ընդանի յԵրուսաղէմ, և ցանկացող եղև այսմ հոգևոր բուրաստանի, և ետ գրել զսա յարդար վաստակոց իւրոց յիշատակ իւր, և ծնողաց իւրոց՝ հաւրն իւրոյ Յովանիսին և մաւրն Տաւվլաթին, և իւր տղին՝ դեռաբոյս զաւակին Պուդախին, և եղբաւրն պարոն Վարդին, և հաւրեղբաւրն Շիրիշին, և զաւակացն Գրիգորին և Խաչիկին, և պարոն Վարդին կնոջն Խասիկին, և իրենց զաւակացն Կեցունին, Խուաավերտէ, Կույէ, և Մուղալին, Գրիգորի դստերն Տանսուխեն, Տաւվլաթին, Մամախաթունին, Լատիփին, Ճաշիկին, Դաւթին և ամենայն արեան մերձաւորացն իւրեանց՝ կենդանեաց և հանգուցելոցն, ամէն։ Այլ և զՍանակ երէցն, և զծնաւղսն իւր՝ ըզՏերեւն և զԳուհարն, և զերիցակինն իւր, և զնորատունկ տղայսն իւր զԱմիրն և զԳրիգորն, և զեղբայրն զէմպաքն, և զկին Մայրանէ, և զնորատունկ տղայս իւրեանց զԱստուածատուրն, և զՔիմիայն*, և զպապն իւր զՍիմաւոն երէցն, և զքեռին իւր զՅուսէփ երէցն, և զտղայն իւր զԱստուածատուրն, որ բարեաց և Այսմաւուրաց պատճառ եղեն աշխատանաւք և կերակրաւք և ըմպելեաւք և շղաւաթաւք և խնամաւք, հատուցէ նոցա Քրիստոս աստուած վարձս զերկնից արքայութիւնն, ամէն։

* Տ. Պալեանի մօտ՝ «զՔիմխայն»։

Արդ, գրեցաւ սա ձեռամբ մեղաւոր և անարժան և անպիտան փցուն գրչիս Յովանէս արեղի, ի թվականութեանս Հայոց յինն Ճ. և ԽԴ. (1495), ի գաւառս Կեսարիոյ, ի գիւղս որ կոչի Մանդիսոն, ի դուռն սուրբ Աստուածածնին և սուրբ Խաչին և սուրբ Թորոսու, ի Հայրապետութեան տեառն Յոհաննիսի, և յեպիսկոպոսութեան տեառն Կիրակոսի:

Արդ, աղաչեմ զամենայն դասս քահանայից, որք հանդիպիք այսմ լուսազարդ մատենիս յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր զվերոյգրեալսն՝ զՍիրատանն, և զկենակիցն իւր զՏանսուխն. և զդեռաբոյս զաւակացն իւրեանց զՊուղախն, և զամենայն ազգայինսն իւր, որ ստացաւ զսուրբ գիրքս ի հալալ ընչից իւրոց, և ետ յիշատակ ի դուռն սուրբ եկեղեցեացն...

Դարձեալ աղաչեմ զամենեսեան յիշել ի մաքրափայլ յաղօթս ձեր զմեղաւոր հողս զՅովանէս գրիչս, և զծնաւղսն իմ զԹորոսն և զՍառայն, և զեղբայրն իմ զհանգուցեալն առ աստուած զԿարապետն, և զուսուցիչն իմ և զսնուցիչն զԱռաքել աբեղայն, և զամենայն արեան մերձաւորն իմ ...Այլ և զքահանայն դրան սուրբ եկեղեցեացս զՍիոն երէցն, և զԱբրահամ երէցն, և զՍահակ երէցն, որ զմեզ լաւ ընդունեցան և մեծարեցին և պատուեցին ... Այլ եւ զսարկաւագունք սուրբ եկեղեցւոյս, և զհամայրէն ժողովուրդքս՝ զմեծ և զփոքր, զայր և զկին, զծեր և զտղայ, զերիտասարդ և զկուսան ... Այլ և զաւրինակիս շնորհաւղն զԱնդրէաս սրբասէր քահանայն, և զեղբայրն իւր զՇիրինն, որ զաւրինակն շնորհեցին և ստացան իւրեանց բարի անուն և բարի յիշատակ։ Այլ և Ըռիստակէս երէցն, որ մարումն երես թանաքի, յիշեսցէ զնոսա Քրիստոս աստուած յիւր սուրբ արքայութիւնն, ամէն։

Քահանայք և սարկաւագունք, առանց դաստարակի մի պահէք և ի մոմէ պատրաստ բռնեցէք, և զկարդալն անփոյթ մի առնէք, զի գրեալ է, թէ.

Տանմասէրն չէ գրկած
Ի պսակաց մարտիրոսաց,
Այլ և հաղորդ նոցին փառաց
Առանց ցանից և տանջանաց։
Զի և դուք արժանի լինիջիք սրբոյն ի լոյս։

## 302

### ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 6273 (Գ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան հայոց), էջ 368, Ամասիոյ ս. Աստուածածին, նաև Հ. Քյուրտյան, Պատմ. երկու ճշտումներ («էջմիածին», 1964, Դ, 34—35)

Գրիչ՝ Աբրահամ
վայր՝ Կոստանդնուպօլիս

...Յամի թուաբերութեանս մերոյ սեռի ՋԽԴ. (1495) կատարեցաւ սուրբ Աւետարանս՝ աստուածախօս մատեանս... Աստուածասէր քրիստոնեայ մղդեսի խոճայ Յովհաննէսն, որ մեծաւ սիրով ստացաւ զսա յաղագս

յիշատակի հոգւոյ իւրոյ, և ծնողաց իւրոց՝ հաւրն Արեւին և մաւրն Մար-գըրտին, և եղբարցն Քարիմին և Եազտանպաղշին, և զաւակին մղտեսի Ամիրին, Մխիթարին* և Սինանին, և կենակցին Շահ-Փաշային, և այլ ամե-նայն արեան մերձաւորացն...

Եւ գրել զսա սիրով և մեծաւ հաւատով ձեռամբ մեղասէր Աբրահամ աբեղայի, որ անուամբ միայն կոչիմ աբեղայ և գործով խաբեբայ։ Արդ ոք հանդիպիք սուրբ և պատուական Աւետարանիս, յիշեսջիք ի Քրիստոս զմղտեսի խոճայ Յովանէսն, և վերսն ամեն՝ ընդանեաւք, զարմաւք և զա-ւակաւք, և ասացէք աստուած ողորմի... Կատարեցաւ սուրբ Աւետարանս ի մայրաքաղաքս որ կոչի Կոստանդնուպօլիս, ի դուռն սուրբ Աստուածած-նին, որ այժմ կոչի Սուլու Մանաստիր, ի հայրապետութեան տեառն Սար-գըսի և յարհիեպիսկոպոսութեան տէր Կարապետի Կաֆայեցւոյ։

### 303

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5480

Ստ. ստացող՝ Ստեփաննոս Դոշենց

253բ Արդ, ի թուականիս Հայոց ի Ջ. և ի ԽԴ. (1495) ամին ես՝ Դոշենց Ստեփաննոս ետու վերըստին կազմել և նորոգել զսուրբ Աւետարանս, որ է յիշատակ նախնեացն մերոց. և էր կայն խնացեալ, և տուի կազմել զսա և ի վերայ կողին այլ յաւելուլ ի յարծաթ և ի յոսկի. և երբ զյիշատ[ա]կ[ա]-րան կարդան, նա մեզ էլ աստուած-ողորմի ասեն՝ Դոշենց Ստեփաննո-սին, և իւր ծնաւղացն՝ Յովսէփին, Մըսլի-Մելեքին, և կենակցին Խա-[թուն-փաշէն], և զավ ակացն ///

Դարձեալ, կրկին յիշեցէք ի Քրիստոս զհեզահոգի տանուտէրն զԴո-շենց Ստեփաննոսն, և զծնօղսն իւր զՅովսէփ և զՄըսըր-Մելէքն, և զկենա կիցն իւր զԽաթուն-Փաշէն, և զզաւակս սոցա զՅովաննէսն և զԴաւլի-խաթունն և զԴոլզոլն և ///

### 304

### ՇԱՐԱԿԱՆ

Նախավկայի վանք, ՍՏԱ

Գրիչ՝ Կարապետ

86բ Ա՛խ, ո՛, վա՛յ զիս մեղաւք լաւռացեալ ոգիս՝ անարժան և անպիտան գրչի սուտանուն Կարապետիս, որ զիս մէկ բերան յիշելոյ արժանի արարէք, թվականին ՋԽԴ. (1495)։

### 305

### ՏՕՆԱՑՈՅՑ

Երևան 8630

Գրիչ

84ա ...Գրեցաւ Տաւնացոյցս և Աւետարանացոյցս բովանդակ տարոյն ձե-ռամբ յոգնամեղ և անարհեստ, սուտ և անպիտան քահանայի ///** ի վա-

* Մխիթար անունը լրացված է այլ ձեռագրով։

** Ջնջված է։

յնլումն սուրբ և մաքուր աբեղային Աստուածատրուն, յիշատակ յոգոյ իւ-
րոյ և ծնաւղացն, թվ. Հայոց ՋԽԴ. (1495) ամին։

## 306

## ԱՒԵՏԱՐԱՆ

Մայր Աթոռ 194, «Էջմիածին», 1963 թ. Զ., էջ 59—60

Գրիչ՝ Աստուածատուր
կազմող՝ Մարտիրոս

309բ Նուաստ ծառայս ծառայիցդ Աստուծոյ՝ Կարապետ եպիսկոպոս Կա-
ֆայեցի՝ բազմամեղ հողս, որ ամաչեմ կոչիլ ի բարձրագոյն քահանայա-
կան անուանէն, զի դատապարտութիւն է ինձ անունս այս, զի անարժան և
զազիր գործաւք բազմամեղութեամբ լալով ասեմ զանբարկանալի Աս-
310ա տուած յոյժ բարկացուցի։ Երկրորդ անառակ որդիս, որ // առի ի բարի
հաւրէն զբաժին իմ և զամենայն աւուրս իմ յանաւգուտ այէտս ծախեցի և
ոչ դարձայ և ոչ ուրախացուցի զերկնաւոր հայրն, և սպառեցան աւուրք իմ,
և էի յագարակն եղջերի խոզարած մինչև նայեցաւ յիս միածին փրկիչն տէ-
րըն Յիսուս Քրիստոս, մարդասէրն և մարդասիրի հաւր որդին, որ չքաւորե-
ցայ և սովամահ լինէի, ազգեաց յիս յիւր անչափ սիրոյն և ի պարգևաց
սուրբ հոգւոյ։ Եւ իմ այլ ոչինչ ունելով տաս տեառն աստուծոյ իմոյ զսուրբ
Աւետարանս, որ յիմ հալալ արդեանց գնեցի, և զաւետարանիչքն նկարել
տուի, և նոր կապել տուի և դրի յիշատակ իմ հոգոյս և իմ ծնողացն ի սուրբ
Գէորգ տաճարիս, որ կոչի Սուլու մանաստիր: Մի ոք իշխեսցէ գրաւել որ ինչ
ազգ պատճառանաւք, և թէ ոք զսուրբ Աւետարանս զայս բռնաբար իշխա-
310բ նութեամբ կամ գողութեամբ // վասն իւր ագահ բարուց հանցէ ի սուրբ
ուխտէս, և իւր առանձին ստանալով՝ թէ եկեղեցական և թէ աշխարհական,
ո՛չ ազգական և ո՛չ ի ծանաւթից չունին իշխանութիւն, միայն սուրբ Եկե-
ղեցիս, ինքն Քրիստոս լինիցի նմա դատախազ յիւր մեծ և սոսկալի ահեղ
ատենին։ Եւ թէ ոք զյիշատակս եղծանել կամիցի ի սուրբ մատենէս, ինքն
եղծանի և ջնջի ի դպրութենէ կենաց, մասն զՅուդայի առցէ, և ընդ խաչա-
հանուացն դատի Աստուած։

Թվին ՋԽԴ. (1495) յուլիս Թ. (9) գրեցաւ յիշատակարանս ձեռամբ
Աստուածատուր աբեղայի Կաֆեցոյ:





## 307

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4266

Գրիչ՝ Ովանէս
վայր՝ Մաքենացոց վանք և
Սաղմոսավանք

ա

271բ …Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ ոգնայմեղ և փծուն գրչի Ովանէս սուտանուն աբեղի անարժանի, և գործաւքս եմ չարաւք իլի, ով ոյս արուեթեան ունի լի բերանով և բոլոր հաւատով ողորմի ասի և ինքն աստուծոյ տեսոյն արժան լինի։ Գրեցաւ սուրբ Աւետարանս, առաջի գլուխըն ըսկիզբն արարաք ի Մաքենիսն և աւարտն վճարեցաք ի Սաղմոսավանք, ընդ հովան[եաւ] սուրբ Սիոնիս և սուրբ Նշանացս, որ աստ կան հաւաքեալ, և ի սոցին սպասաւորացս՝ Կիրակոս քաջ հեռետորին, ի հայրապետութեանն տեառն Սարգսի, ղանութեան Ըռըստամ-պէկի, ի թուականիս Հայոց Ջխե. (1496), ի նեղութեան ժամանակի, ի խնդրոյ աստուածասէր և երկիւղած և հաւատարիմ Սպահանին, և իւր կողակցին Գուլին, և ծնաւղաց իմոց* [Աթայբակին. և եղբարցն իմ** Մարգարին, Ջանփաշին, Զաքարին, Դալուստին, Նաւասարդին, Շնճաւորին]***:

272ա Ո՞վ, լուսերամակ դասք քահանայից, աղաչեմ զձեզ, ով ոք հանդիպիք կարդալով կամ աւրինակելով, միով աստուած-ողորմիւ արժան արնէք և աստուած զձեզ յիշէ իւր արքայութեան, ամէն։

Անմեղադիր լերուք խոշորութեան սորա, զի կար մեր այս է։

[Ես Սպահանս գրել ետոյ զսուրբ Աւետարանս յիշատակ ի հոգո իմո, և կողակցին իմո Գուլին, և հոգևոր որդո իմո Ովանէսին. ոչ ում դաւի չկա, ոչ իմ ազգիս, ոչ աւտարաց, անիրաւքն պատժին]։

Աստուած ողորմի Տէտա-Խաթունին, որ շատ կերակրեց զմեզ։

Ծաղկող՝ Ստեփանոս Յառընջեցի

բ

3բ Ծաղկեցաւ սուրբ Աւետարանս Ստեփանոսի Յառընջեցոյ ի խնդրոյ տէր Յովանիսի, թվ. Ջխե. (1496)****։

* Պետք է գրեր «իւրոց» այսինքն՝ ստացող Սպահանի։

** Իմա՛ «իւր»։

*** Փակագծի մեջ առնված սույն և հաջորդ հատվածները գրված են այլ (հավանաբար ստացողի) ձեռագրով։

**** Գրված է Մատթէոս աւետարանիչի պատկերից ներքև՝ ստորին լուսանցքում։

## 308

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան, Մատենադարան, Կաթողիկոսական դիվան, թղթ. 240, վավ. 130,
Շուշի, Ագուլեաց եկեղեցի ՄՏՄ

ա

Գրիչ՝ Իգնատիոս
վայր՝ Քանայգեռ

267բ ...Բայց գրեցաւ սա ի սուրբ ուխտս ի Քանայգեռոյ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Յակոբ տեառնեղբաւր կենաց բարեխաւսիս, և այլ բազմահաւաք սրբոց, որ աստ կան հաւաքեալ, ի թվականիս Հայոց ՋԽԵ. (1496), ի հայրապետութեան տեառն տէր Սարգիս կաթողիկոսի, ի յաթոռ սուրբ Էջմիածնի Վաղարշապատու...

Գրեցաւ անարժան և տխմար Իգնատիոսի թափուր յամենայն բարեաց, դարձեալ յիշեցէք զԳալուստ մահտասին (ստացող), և զհայրն Ինոֆ, և զմայրն Ալչայ-Խաթուն, և զմեծ տատն Սիրա-Խաթունն, և զեղբայր զՍարիբէկն, և զՅովճանՆէսն, և զքոյրն Նդիսաբեբն և զԹամարն, և զհանգուցեալն զՄարքայ և Շահալամն, և զբարեկամքն զԹաւաֆալն, և զհաւրեղբայր որդին զՅորդանանն, և զմաւրաքոյրն զ Մելիֆրուղբն, և զԴուճիսյն. և զԽոնդիկն. մանաւանդ զհարսներն զՄանիշակն և զԴուլումն, և զփեսայն զՅորդանանն, զԱմիրմուլֆն և զԱւաֆն, ամէն։

Դարձեալ յիշեցէք զՏրդատն, որ աւգնական եղև ի տուրս ինչ... ընդ նմին ... զՋանիբէկ միայնակեացն, որ յաւքտակար եղև սուրբ Աւետարանիս, որ կազմել ետուր ի հալալ վաստակոցն ... Աւետարանս Գալուստ միայնակեցին է...

Ծաղկող՝ Ստեփաննոս Յառնչեցի

բ

7բ Ծաղկեցաւ Աւետարանս և Համաբարբառքս ձեռամբ Ստեփաննոս եպիսկոպոսի Յառնչո, ի խնդրոյ Գալուստ աղաւթասէր և հեզահոգի միայնակեցի, որ ետ գրել և նկարել յիշատակ հոգո և ծնաւղաց իւրոյ...

գ

81բ Ծաղկեցաւ Աւետարանս ձեռամբ Ստեփաննոս եպիսկոպոսի Յառնչեցո, ի խնդրոյ Գալուստ հեզահոգի աղաւթասէր [ միայնակեցի ], ի հայրապետութիւն տեառն Սարգսի, ի թվ. ՋԽԷ. (1497)։

## 309

### ՀԱՐՑՄԱՆՑ ԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՎԱՑԻՈՅ

Երևան 817

Սարգիս կաթողիկոս

142ա Ես՝ Սարգիս կաթողիկոս, տվի զիմ սիրական Հարցմունքս իմ հոգևոր որդուն՝ Հերապետ գրոց աշակերտի, Կիրակոս վարդապետի աշակեր-

տին, ինձ յիշատակ։ Ի թվ. ՋԽԵ. (1496), որ քանի ի ձեռն առնու՝ զմեզ ի յիւր սուրբ աղօթքն յիշէ, և յետ նորա՝ ով որ հանդիպի։

### 310

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6648

Գրիչ՝ Ալեքսանոս
վայր՝ Մաճենացոց վանք

264ա ...Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվականիս Հայոց ՋԽԵ. (1496), ձեռամբ անիմաստ և անարժան, հեք ֆանաք վտիտ Ալեգսանոս անուամ[բ] միայն աբեղայ և գործով ունայն և վաքար եմ քան զամենայն մարդ, ի սուրբ ուխտս Մաճենացոց, ի դուռս սուրբ տաճարիս Աստուածածնիս, և հայր Սողոմոնի գերեզմանիս, և այլ բազմահաւաք սրբոց, որ աստ կան, ի առաջնորդութեան Սարգիս վարդապետին և այլ միեղէն եղբարցս. գծագրեցի զսա յիշատակ ինձ, և ծնաւղաց, և եղբարց իմոց. հայրն իմ Էտկեարին, և մայրն իմ Մարթին, և հարազատ եղբարցն Յովհաննիսին և Իբրիանոսին, // և հանգուցեալ եղբարցն Աքանիսին և Ովանեսին. և մանկագոյն դիաւք եղբօրորդոյն իմո, որ փոխեցաւ առ Քրիստոս և եթող մեզ դառն կսկիծ և մորմոքելի սուգ. և ստացա զսա գրել ի վայելումն անձին իմոյ և դեռաբոյս դպրի Պաւղոսի՝ եղբաւրորդոյն իմոյ։

Ո՜վ, սուրբ դասք լուսերամից, կարդալով կամ գաղաքարելով՝ զվերոյգրեալսն աղաւթս յիշեցէք, և ուղիղ սրտիւ մեղաց թողութիւն հայցեցէք...։

Այլ և սղալանաց և խոշորութեան գրոցս թողութիւն շնորհեցէք, զի կար մեր այս էր և ոչ աւելի։

### 311

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6352

Ծաղկող՝ Ստեփանոս Յառընչեցի
վայր՝ Ի վանքս Գաւառն

ա

9բ Ծաղկեցաւ ձեռամբ Ստեփանոս եպիսկոպոսի Յառընչեցոյ համաբարբառս՝ աւետարաններով և խորանով և մանրածաղկով, ի խնդրո Ամիր-Եզտինին, ի հայրապետութեան տէր Սարգսի նստեալով յաթոռն ամս Իէ. (27), ի փաթշահութեան Ըռըստում-Միրզին, թվ. ՋԽԵ. (1496)։

Բայց խորանս առաջի այլում էր ծաղկած*։

* Դրված է Մատթէոս աւետարանչի նկարի ստորին լուսանցքում։

Բ

91r Նկարեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ Յառըճչեցո, ի խնդրոյ Ամիր-Եզտին աղին։ Յիշեցէք զինքն և զծնողսն իւր ի Քրիստոս, ամէն։

Կատարումն ծաղկիս եղև ի վանքս Գաւառաճ, ի դուռս սուրբ Սարգսի զաւրավարիս, ով ոք հանդիպիք յիշեցէք ի տէր Մաթէոս աւագէրէց Գաւառանս, որ բազում սէր ցուցուց մեզ. դարձեալ յիշեցէք զտէր Ստեփանոս սպասաւոր սուրբ ուխտիս և աստուած զձեզ յիշէ, ամէն։

312

ԱՒԵՏԱՐԱՆ

Հ. Աճառեան, Ցուցակ Նոր Բայազէտի, 6, էջ 7

Գրիչ՝ Աստուածատուր
վայր՝ Եղեգեաց անապատ

254ա ...Շնորհիւ աստուծոյ և ողորմութեամբ նորին և գործակցութեամբ սուրբ հոգոյն յանգ եղեալ աւարտեցաւ սուրբ Աւետարանս ի յանապատիս Եղեգեաց ձեռամբ Աստուածատուր անպիտան ծառայի, ի թվ. ՋԽԵ. (1496), հայրապետութեան տեառն Սարգսի, և եպիսկոպոսին մեր տէր Եղիշային: Արդ, ցանկացող եղեալ այս սուրբ Աւետարանիս բարեմիտ և հեզահոգի քահանայն Մաթէոս, և ետ գրել զսայ ի հալալ ընչից իւրոց զլուսաւոր և զմաքրափայլ Աւետարանս, թժիշկ հոգւոյ իւրոյ, կցորդ, յոյս և ապաւէն առ Քրիստոս, և ճար ճանապարհին վերջին, և բանալի դրանն արքայութեանն, և զանձ յերկինս անկողոպտելի և ապաւէն առ Քրիստոս, միջնորդ և բարե[խաւս] իւրն, և իւր ծնաւղացն՝ հաւրն* Մկրտիչին և մաւրն Բաղտատին, և որդոցըն Վարդանէս, Ոսկան, Գրիգորին, Ներսէսին, և կենակցին Խոնտին, հարսին Սերովին, և ամենայն ազգականաց՝ կենդանեաց և մեռելոց, ամէն։ Եղբաւրն Արճիպարին, Սատաքիարին, և դըստերացն Զատի-Սաւղթանին, Նարկիզին, և Գուլումին, և Թուրանգին, և Խուտի աղին, և կենակցին Մըսրխաթունին, և իւր խնամին Սափարշին, և Գիլումին, Աթանեսին, և ամենայն ազգականացն...

313

ԱՒԵՏԱՐԱՆ

Մատենադարան, Հին ցուցակ 19, էջ 37

Ծաղկող՝ Ստեփանոս Յառըճչեցի

ա

3ր Ծաղկեցաւ սուրբ Աւետարանս Ստեփանոսի Յառըճչեցո ի խնդրո տէր Յովճանիսի, թվ. ՋԽԵ. (1496)։

* Անունները լրացված են այլ ձեռագրով։

Բ

138բ Նկարեցաւ ձեռամբ Ստեփանոս եպիսկոպոսի Յարընչեցո, ի խնդրո տէր Յովանէս Դրախտկեցո, ի հայրապետութեան տէր Սարգսի և ի փաթ-շահութեան Ըռըստումի, թվ. ՋԽԵ. (1496)։

## 314

### ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 3333

Գրիչ՝ Արիստակէս
վայր՝ Սանահին

...Արդ, եղև կատարումն սուրբ Աւետարանիս ի թվականութեան հայ-կազեան տումարի ՋԽԵ. (1496), ի դառն և ի չար ժամանակի, եւ ի հայ-
308բ րա///պետութեան տեառն Սարգսի /// ի սուրբ Էջմիածինն, ի յաստուածա-պահ գաւառիս Լաւռոյ, ի յերկնահանգէտ և ի գերահռչակ ուխտիս Սանահ-նո, ի դրան մօր լուսոյ սուրբ Աստուածածնիս և հրաշափառ Կաթողիկէիս, և ի յառաջնորդութեան տէր Բարսեղի, ձեռամբ մեղապարտ գրչի Արիս-տակիսի, որ և մեծ յուսով և տենչալի սիրով ստացաւ զսուրբ Աւետարանս վարդապետն Սարգիս յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց ///, եւ ի վայելս անձին եղբաւրորդւոց իւրոյ Դօիթ քահանայի և Գալուստ սարկաւագի, և մանկանց Սիոնի նորո///։

## 315

### ԱԻԵՏԱՐԱՆ

Գ. Սրուանձտեանց «Թորոս Աղբար», Բ, էջ 423, Տիգրանակերտ, ս. Սարգիս եկեղեցի

Գրիչ՝ Մանուէլ
վայր՝ Կուֆի

...Ի թվ. Հայոց ՋԽԵ. (1496), ի դառն և դժար ժամանակի, յոյժ տա-ռապեալ եմք։ Գրեցաւ ի գիւղս Կուֆի կոչեցեալ, ընդ հովանեաւ Հազարա-բեւրոցս և սուրբ Նշանիս և այլ սրբոցս, որ աստ կան՝ ի բոլորակացս մեր, ի խնդրոյ բարեպաշտ և երկիւղած քրիստոնէից Գուզալին և ամուսնոյն իւր Խռնծին...

## 316

### ՄԱՇՏՈՑ

Երևան 6273 (Վ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան հայոց), էջ 371—372, Աղթամար

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Աղթամար

...Գրեցաւ ի կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ սուրբ խաչիս, ի հայ-րապետութեան տէր Ատոմի, և ի թագաւորութեան ՋԽԵ. (1496), ձեռամբ Կա-

ռապետ քահանայի։ Ես Մուրատս և կողակիցն իմ տուեր եմք զՄաշտոցս սուրբ Աստուածածնի դրան Հօրգոմուն:

## 317

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Գ. Սրուանձտեանց «Թորոս Աղբար», Բ, էջ 426, Տիգրանակերտ, ս. Սարգիս եկեղեցի*

Գրիչ՝ Զաքարիա
վայր՝ Բաղէշ

Գրեալ յԱւեխու վանք մերձ ի Բաղէշ, յառաջնորդութեան Յակոբ եպիսկոպոսի և Վարդան հէրպետի, ձեռամբ Զաքարիա սարկաւագի, ի հայրապետութեան տեառն Սարգսի ընդհանուր Հայոց կաթողիկոսի Վաղարշապատու էջմիածնի, և Աղթամարայ տեառն Ատոմի, ի թվ. Հայոց ՋԽԵ. (1496), ի դառնութեան ազգին նետողաց Ռստում-բէկին, ի դառն և ի չար ժամանակիս, որ բռնացեր են ի վերայ Հայոց ազգիս...

## 318

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 9422*

Տէր աստուած Յիսուս Քրիստոս, որ նստիս ի քրոբէական աթոռ, ողորմեա քո արարածոցս, թվ. ՋԽԵ. (1496)։

Զտըւող արծաթոյս զՄելիքսեթ եպիսկոպոս սուրբ Կարապետի յԸ. (յիշեցէք).

Զկազմող պատկերացս զԿարապետ աբեղայս զԲաղիշեցիս յԸ.

Զծսկերիչ Սեանդարն եւ զՇանդուբաթն յԸ.

Յի Քի ծառա Կարապետ աբեղա*։

## 319

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Մշոյ Առաքելոց վանք, ՀԱ, 1937, սյուն 320*

Կազմող՝ Կարապետ Բաղիշեցի
վայր՝ Մուշ

Ի վերջին դարիս և յետնում ժամանակիս... յորում է թվականութիւն մեր ՋԽԵ. (1496). առաջնորդք սուրբ ուխտիս Ղազարու վանացս տէր

* Այս ձեռագրի կազմը Մաշտոցի անվան մատենադարանում պահվող լավագույն ու գեղարվեստական բարձր ճաշակով և հմտությամբ կատարված արծաթե կազմերից մեկն է (նկարագրությունը տե՛ս Գ. Հովսեփյան, Մի էջ հայ արվեստի և մշակույթի պատմությունից, Հալեպ, 1937, էջ 43—45)։ Հիշատակագրությունները ուռուցիկ տառերով դրվագված են նկարազարդ արծաթե կազմի տարբեր մասերում։ Վերջին տողի «Կարապետ աբեղա» բառերը գրված են բարձ (կնիք հիշեցնող) փակագրով։

Եղիայ *արհիեպիսկոպոս և տէր* Թորոս *արհիեպիսկոպոս և տէր* Ղազար *վարդապետն տեսին զսուրբ Աւետարանս, զի յոյժ հնացեալ էր կազմն և էր առանց արծաթոյ, և անտես և անվայելուչ գոլով արտաքուստ ի տեսողացըն. վասն որոյ ետուն վերստին կազմել զսա և արծաթապատ զարդարել, որպէս և տեսանէք...*

*Արդ, յիշեցէք ի Քրիստոս զհաւատարիմ և զհամեստ կանայքս* զՋիշաՓՆ *և* զՈւռումշէՆ, *որ սակաւ ինչ արծաթով աւգնական եղեն ի զարդ Աւետարանիս... Նաև զսուաանուն* Կարապետ *աբեղայս* զԲաղիշեցի՝ *զվերջին կազմողս յիշեցէք, ...[ և ]* զՄարգարայ *քահանայն, [ և ] զծնողսն իւր։*

## 320

## ԳԻՐՔ ՊԱՐԱՊՄԱՆՑ ԿԻՒՐՂԻ ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑԻՈՑ

**Երևան 3495**

*Գրիչ՝* Գրիգոր Տարօնացի
*վայր՝* Եկեղեաց գաւառ.
Կապօսի վանՔ

338ա *Արդ, եղև գրաւ գրչութեանս ի թվականիս հայկազեան տումարի Ջխե.*
*(1496), ի գաւառն* Եկեղեաց, *որ* Եզընկայ *կոչի, ընդ հովանեաւ սրբոյն*
*Յակոբայ և սուրբ Սիոնի, որ մականուամբ* Կա ի փոսի *վանք կոչի. ի յա-*
338բ *ռաջնորդութիւն տէր* Ներսիսի, *ի համալսարանս երիցս եր//ջանկի և տի-*
*եզերալոյս* Յովաննէս *քաջ հռետորի, որ է աշխարհաւ* Համշէնցի՝ *ի ցեղէ*
*թագաւորական. ձեռամբ յոգնամեղ և փծուն գրչի* Գրիգորի *սուտանուն*
*աբեղայի, որ եմ աշխարհաւ* Տարօնացի, *ի վանացն* Գլակայ*, *զոր մեծաւ*
*տաժանմամբ գրեցի զգանձս անկողոպտելի ի յաշակերտութիւնս, յիշա-*
*տակ ինձ, և ծնողաց իմոց, և ամենայն արեանառու մերձաւորաց, և ի վա-*
*յելումն և ի խրատ մանկանց եկեղեցոյ։ Արդ, աղաչեմ զձեզ, որք հանդի-*
*պիք սմա ուրինակելով կամ կարդալով, յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս*
*ձեր զանարժանս՝ հանդերձ ծնողաւքն իմ և արեան մերձաւորաւք, և*
*զվարդապետն իմ* զՅովանէս *քաջ րաբունին, և աստուած զձեզ՝ յիշողացդ*
*և մեզ՝ յիշելոցս, առհասարակ, ողորմեսցի յիւր միւսանգամ գալուստն,*
*ամէն։*

*Նաև զանարժան ծառայս ծառայիցդ աստուծոյ* զԿարապետ *սուտանուն աբեղայս՝* զԲաղիշեցիս *յիշեցէք ի բարին Քրիստոս, որ զայս վեց տետր ու կէսս գրեցի։ Զի զգիրքս Նոր էր գրած և յահէ սըմբակաց հեծելոց կայր ի պահըստի ի ծերպս վիմաց. և յիշմանէ անձրևաց ապականեալ էր, զոր ծըրեցի ըստ իմում կարի։ Յիշեցէք ի տէր և աստուած զձեզ յիշէ, ամէն։*

---

* *Կա տեղեկություն, որ Գրիգոր Տարոնեցին այս նույն՝ 1496 թվականին ընդօրինակել է նաև մի Ավետարան (տե՛ս ՀԱ, 1944, սյուն 74 ծանոթ.)։*

## 321

## ՇԱՐԱԿՆՈՑ

*Երևան 1625*

Գրիչ՝ Հառապետ
վայր՝ ԱւաՓ վանՓ

381ա ...Արդ, գրեցաւ եղանակաւոր տառս, որ կոչի Շարակնոց ի լաւ և ընտիր աւրինակէ խլոյ, ձեռամբ Ոհանէս կրաւնաւորի։ Իսկ նա սկսաւ ըզՇարակնոցս ի վանքն ԱւաՓ, և ոչ ժամանեաց յաւարտ սորին, այլ մինչև ի խաչին կարգն գրեաց և փոխեցաւ առ Հարսն։ Եւ ես՝ մեղաւք զառածեալս և յետնեալս ամենեցուն առի և զպակասն լցուցի ըստ կարի իմում՝ ի թուականիս Հայոց ՋԽԵ. (1496)։ Ով ոք հանդիպիք սմա տեսանելով և կամ այլ ինչ իրաց՝ յիշեսջիք ի յաղաւթս ձեր զառաջին գրծողն սորա զՅոհանէս աբեղէն, ընգ նմին և զերկրորդս՝ զՀառապետ աբեղէս, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

## 322

## ՍԱՂՄՈՍԱՐԱՆ

*Կ. Սրուանձտեանց «Թորոս Աղբար», Բ, էջ 303, Կամախ, Թադէոս առաքեալի վանք*

Գրիչ՝ Հայրապետ
վայր՝ Կապոսի վանՓ

Գրեցաւ ի թվականին հայկազանի
Ի յոբելեան տասն և ութի,
Ի չորս տասն և հինգն աւելի*,
Ի յեկեղեացս գաւառի,
Ի վանքս այս որ Կայ ի փոսի**,
Ի գրունքս այս գովելի՝
Սուրբ Յակոբի և սուրբ Սիոնի։
Առ ոտս մեծ րաբունապետի
Յովանեսի քաջ հռետորի,
Ի յառաջնորդութեան այս սուրբ ուխտի
Տեառն Ներսէսի մաքրամտի,
Եւ միեղէն եղբարցս բարի,
Բոլոր վանիցս աբեղայի,
Որ քան զերեսունն են աւելի,
Հաճոյական ծառայք բարի։
Այլ և զստացող այս սուրբ կտակի

* Տասն և ութ յոբելյանը լինում է 900 (18×50), «ի չորս տասն (բնագրում՝ Դ. Ժ.) և հինգն աւելի»=45։ Այսպիսով հիշատակարանը գրված է Հայոց 945, կամ մեր թվարկության 1496 թվականին։

** Այսինքն՝ Կապոսի վանքում, որ գտնվել է Երզնկա քաղաքի արևմտյան կողմում։

Զտէր Կիրակոս հեզահոգի...
Զեռամբ իմով գծագրեցի
Ես՝ Հայրապետս մեղաւքս իլի...

Ողորմի ասացէք Կիրակոս սուտ կրաւնաւորիս,... հաւրն իմոյ Թոռոսին, և մաւրն իմոյ Համելիքին, և եղբարցն իմոց Ստեփաննոսին և Խաչատուրին, և հաւրեղբարցն Վրթանիսին և Հարապետին, և մաւրքուերցըն Կիրայ-Խաթունին և Շնորհաւորին, մաւրեղբարցն՝ Տէրտուրին...

## 323

## ՄԱՅՐ ՄԱՇՏՈՑ

Հ. Ց. Քոսեան, Ցուցակ Արծնեան վարժարանի 30, ՀԱ 1962, էջ 30—32

ա

Գրիչ՝ Աւետիք վարդապետ
վայր՝ Կայիփոսի անապատ

71բ Զառածեալ մեղաւք զԱւետիք պիտակ անուն վարդապետ զգրող սորին յիշել ի տէր, և զհայր իմ զՍամւէլ, և զմայր իմ զԳոհար:

բ

Գրիչ՝ Եզէկիել

251ա ...Արդ գրեցաւ սուրբ տառս որ կոչի Քահանայաթաղ. և Քահանայաւրհնէք, Հիմնարկէք և Եկեղեցաւրհնէք ի սուրբ անապատս որ կոչի Կայիփոսի, ընդ հովանեաւ սուրբ Յակոբայ սքանչելագործի, ձեռամբ տխմար գծայգրողի Եզեկիէլի: Ի վայելումն սուրբ և ընտրեալ եպիսկոպոսի տէր Ներսէսի: Յիշատակ իւր և նախնեաց իւր, հաւրն իւր Ղուկաս քահանային, և մաւր նորա Գոհար-Մէլիքին, և եղբաւրն Աստուածատրին, և հաւրեղբաւր Սարգսին, և իւր որդոյն Ամիր-Շաֆէ, և Յեւատին, և այլ ամենայն արեան մերձաւորաց՝ կենդանեաց եւ ննջեցելոց, ամէն։ Եւ եդ յիշատակ ի դուռն սուրբ Գէորգայ զինաւորին։ Խնամով պահողք աւրհնին յաստուծոյ եւ ի սուրբ Գէորգայ։ Ի թվին ՋԽԵ. (1496)։

## 324

## ԱՆԳԻՏԱՑ ԱՆՊԷՏ ԱՄԻՐԴՈՎԼԱԹԻ ԱՄԱՍԻԱՑԻՈՅ

Բրիտ. թանգարան Or 3712, Ֆ. Կոնիբեր, Ցուցակ էջ 318,
Ա. Սիւրմէեան, Ցուցակ Հալէպի Բ, 5, էջ 39

Փոխեցաւ ի Քրիստոս Ամիրտովլաթ բժիշկն՝ թարքմանող գրոցս, ի թվ. ՋԽԷ. (1496), դեկտ[եմբերի] Ը. (8), աւրն հինգշաբթի*։

* Վրաց. ՍՍՌ Գիտ. ակադեմիայի Ձեռագրերի ինստիտուտի № 52 հայերեն ձեռագրի մեջ կա անստույգ մի հիշատակագրություն՝ ըստ որի Ամիրդովլաթ Ամասիացին մեռել է 1485 թ. դեկտեմբերի 15-ին. այնտեղ գրված է. «Փոխեցաւ ի Քրիստոս Ամիրտովլաթ բժիշկն ի թվականութեանս մերոյ ՋԼԴ. (1485), դեկտեմբեր ամսոյ ԺԵ. (15), աստուած լուսաւորէ զիւր հոգին. ամէն» (էջ 284)։

## 325

## ՇԱՐԱԿՆՈՑ

*Երևան 1617*

Գրիչ՝ Խաչատուր

*...Գրեցաւ շարունակ աստուածաշունչ տառս ի Շարակնացս ի թվականիս Հայկազնեա տումարի ՋԽԵ. (1496), ի դառն և ի չար ժամանակիս, որով նեղիմք ի յահէ անաւրինաց, ձեռամբ ամենամեղ, սուտ և փծուն գրչի Խաչատուր անարժան աբեղայի ///*։*

* Մ. Տեր-Մովսիսյանի Ցուցակի մեջ տեղեկություն կա այն մասին, որ 1496 թվականին Տշող գյուղում ընդօրինակվել է նաև մի Ճաշոց։

## 326

### ՄԱՇՏՈՑ

Երևան 6964

ա

Գրիչ՝ Մաթէոս եպիսկոպոս
վայր՝ Սոկութլու գիւղ

136բ ...Արդ, եղև գրաւ գրչութեան սորա ի թուաքերութեանս Հայոց ՋԽԶ. (1497), ի գեաւղս որ կոչի Սոկութլու, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և այլ բազմութեան նշխարաց, ի հայրապետութեան տանս Աղվանից տեառն Առաfելի, խաղաղութեամբ ընդ այն աւուրս արասցէ Քրիստոս աստուածն մեր, ամէն։

Արդ, ես՝ Մաթէոս եպիսկոպոս, ապաւինեցայ ի յոյսն ամէնեցուն, որ առատ է ի տուրս և բաշխաւղ ի խնդրողս, ձեռն արկի և շինեցի զմա-
137ա գաղաթս*, և գծագրեցի ըղ//Քահանայաթաղս, և ետու ընծա սուրբ Աստուածածնիս յիշատակ հոգւոյ իմոյ, և ծնաւղաց իմոց՝ հաւրն Ստեփանոս քահանային և մաւրն Խոնդումին, և եղբարձցն Թաթէոսին, Ամիրին, Այէf-սիանոսին, և քւերցն Թըրվէնդին, Աթամէլիfին, Շանմէլիfին, և եղբաւրորդոյն իմոյ Ազարին, Ստեփանոսին և Նէրսէսին, ամէն։

Արդ, աղաչեմ զձեզ, ո՛վ սուրբ քահանայք, որք հանդիպիք ընթերձմամբ և կամ գաղաքարելով՝ յիշեսջիք ի Քրիստոս զտառապեալ Մաթէոսս և զծնաւղսն իմ, ամէն։ Եւ դուք՝ յիշողքդ յիշեալ լիջիք ընդ [յ]իշեցելոցս առաջի զենման գառինն անարատի, միաքան արժանի լիցուք յաւիտենական կենացն, ամէն։

Բ

Աղվանից կաթողիկոս տէր Առաfել

137բ Թվին Հայոց ՋԽԵ. (1496), տանուտէր խեցգետինն, եաղացաւ ՇաhՀիւսէին անուն Շաfու պարոնն հետ Շըրվանշան փաթշահին իր եսպարան գնաց ի Դաւրէզ՝ ի Ըռըստամ պարոնն մաւտ։ Էառ ըզՇըխըրշայն՝ զորդին Շըրվանշանին է (7) հազար հեծելազաւրաւք եկօ բանակեցաւ ի փոքրն դաշտն, որ Սուլուչայ** անուն որչորչի։ Քակեցին աւերեցին զերկիրն Դըղլաթայ Ը. (8) աւր։ Իսկ արին Աւտուլ-փաթա պէկն զփաթշահն Շանիշըրվանն՝ տամբ և տեղաւք, որդովք և ընդանաւք եբեր ի ամրոցն Դըղլաթայ. հնարիւք ջապիւր կտրեց և ամրացոյց անառիկ ղամրոցն Դղլաթ, որ յայժմ

* Շատ անորակ մագաղաթ է։

** Սկզբից գրված է եղել «Շորլուչայ», ապա լուսանցքում ցույց է տվել, որ սկզբնատառ «Շ»-ի փոխարեն պետք է կարդալ «Ս»։

Ղապալայ կոչի։ ԽՌ. (40000) զաւրս ժողովեաց Ատուլ-փաքա պէկն ի
138ա վերայ փաթշահին, և բանակեցան գումարեցան ճակատ առ ճակատ։ ||
Իսկ ազգէն Պայանդուրին Իպրէիմ անուն ԺԵՌ. (15000) արամբք բանա-
կել էր առ ափն Կուր գետոյն, հանդէպ երկրին Դրղլաքա։ Էլչի և պատգա-
մաւոր առաքեաց Շաճիշրվանըն մաւտ ի Իբրէիմն՝ խաղաղութեամբ պատ-
ճառաւ, և պարիշեցան հետ իրար. և առաքեաց Իպրէիմն՝ ցիր և ցան արար
զաւրքն Երխշային և Շահ-Հիւսէինին, և ինքեանք ամաւթալից դիմաւք
փախըստեամբ գնացին Դավրեժ, ի Ըոըստամ փաթշահն ի մաւտ, նայ սի-
րով ակամբ ընդեցաւ ի նաքան, և ետոյ փախըստեամբ եկաւ Շահ-Հիւսէ-
ինն ի ոտք փաթշահին, և ծովակուր եղեալ պեղծըն և անիրաւն՝ սատակե-
ցաւ Շահ-Հիւսէինն ի փառն սատանաի։ Եւ եղև խաղաղութիւն և ուրախու-
թիւն մեծ ի յերկիրս Աղվանից, և ամենեքեան՝ քրիստոնեայք և այլազ-
138բ գիք ի մի բե||րան գոհութիւն և փառս մատուցին ամենապարգև տըւա-
ղին աստուծոյ, որ եբարձ զչարն ի միջոյ։

Եւ ի միւս ամին (1497) [յ]արեաւ ոմն արքանեակ սատանայի և կա-
մարար բելիեարեան դասուն ի Հոռոմաց տանէն՝ սուլթան Մահմուտ
անուն, ի յազգէն Պայանդուրի, որդի Եաղուբլուին, էառ զթախտն Դայ-
վրէժու և եսպան զԸոըստում-պէկն, և զբազումս ի ցեղէն Պայանդուրի ի
սուր սուսերի մաշեաց, և բազում ոճիրս գործեաց անասելի. և ներողու-
թեամբն աստուծոյ նստաւ ի թախտն Դայվրէժու՝ ամրակառոյց հաստա-
տութեամբ, և բազմերախտ Քրիստոսի յուսոյն մերոյ փառք յաւիտեանս,
ամէն։

139ա Ես՝ ետնեալս ի հայրապետաց և դսրովեալս ի կարդապետութեանց
տէր Առաքեալ կաթողիկոսս, տկար մտաւք արմարեցի զսակաւ բանս. և
որք հանդիպիք կարգալով իշեցէք զիս ի մաքրափայլ աղաւթս ձեր, ամէն։
Եւ ձեզ՝ յիշողացդ և յիշելոցս, առհասարակ, ողորմեսցի Քրիստոս աստու-
ածն մեր ի յաւուրն ապագայի, ամէն, եղիցի։

## 327

### ԳԱՆՁԱՐԱՆ

*Երևան 5402*

Գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Խիզան քաղաք

387ա Փառք ... որ ետ կարողութիւն ամենասխալ և մատնագեղև գրչիս
Մկրտչիս պիտականուն <և> հասանել ի վերջ գրոցս Գանձարանի. որ
գրեցաւ սա ի խնդրոյ սրբասէր քահանայի Յովանիսի, որ եռափափաք
սրտիւ ըստացաւ բզսուրբ Գանձարանս յիշատակ հոգոյ իւրոյ, և ծընաւ-
ղացն՝ հաւրն Խզրշին և մաւրն Խաթմելէքին, և զաւակացն տէր Նիկողայո-
387բ սին, որ էր մուղդասի՝ զտարաժամ փոխեալն առ աստուած, || որ տղայ
ամաւք փոխեցաւ առ Քրիստոս և եթող սուք անմխիթար հաւրն...

Արդ, աղաչեմք զամենեսեանդ, ո՛վ սրբասէր վարդապետք, եպիսկո-
պոսք և քահանայք և բոամիկ ժողովուրդք՝ յիշեցէք ի մաքրափայլ յաղաւ-
թըս ձեր զստացող սուրբ գրոցս Գանձարանիս զՅովանէս քահանայն, և

զծնաւղսն իւր զԽրդըրշէն և զԽաթմելիքն, և զկողակիցն [զՂա՞]լամն. և զաւա[կն] զտէր Նիկողայոսն, և զկողակիցն ըզԱդէն. որ յեւթն աւրն երկուքն փոխեցան առ Քրիստոս...

Դարձեալ, կրկին անգամ աղաչեմ զձեզ.... Նա խոշորութեան գրիս և սխալանացս անմեղադիր լերուք, զի կայր մեր այս էր, և զիս՝ զանարժան գրիչս՝ ըզփծուն և զպիտակ սուտանուն Մկրտիչ յիշեցէք ի Քրիստոս, և զծնաւղսն իմ զՍուլտանշէն և զԹուրվանդէն, և զվարպետն իմ զՅովանէս

388ա // քահանայն, և զմիւս վարպետն ըզՓիլիպոս քահանայն և զամենայն արեան մերձաւորսն իմ...

Այլ և գրեցաւ սուրբ Գանձարանս ձեռամբ Մկրտչի, ի թվականիս Հայոց ՋԽՁ. (1497), և ի հայրապետութեան Էջմիածնի տեառն Սարգսի. և ի մերոյս հայրապետի Աղթամարայ տեառն Ատոմի, և ղանութեան այլասեռից Ռուստամ-բէկի, և մերոյս պարոնի Դաւիթ-բէկիս. ի քաղաքս, որ կոչի Խիզան*, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի, և սուրբ Սարգսի և որդոյ նորա Մարտիրոսի, և սուրբ Յարութեան, և սուրբ Գէորգայ, որ է [սա]կաւ մի հեռի, զոր տէր աստուած անսասան պահէ զաթոռ հայրապետական և զթագաւորական մերոյ ազին. և զայլասեռից պարնաց աչք քաղցըր առնէ ի վերայ քրիստոնէից։ Ապա խիստ պաշարեալ ենք յամէն դիմ, զոր տէր աստուածըն մեր առաջնորդէ մեզ զբարին, ամէն։

Այլ և կացցէ սուրբ Գանձարանս ի վանքս Բարիձորոյ, ի դուռըս սուրբ Աստուածածնի և ի սրբոցս, որ աստ կան հաւաքեալ, և ի սորին սպասաւորացս՝ տէր Ստեփանոսի րաբունապետի, և տէր Սարգիս կրաւնաւորի, և

388բ տէր Մկրտչի, և Յովանիսի, և Ներսեսի, և // Ղազարի, և այլ միաբանիցս, որ լաւ պահող լինին գրոցս, և մի ոք իշխեսցէ գրաւել կամ ծախել, ո՛չ ի մերոց և ո՛չ յաւտարաց, և ով ոք յանդգնի գրաւել կամ ծախել ըզսա՝ նա զանէծսն ղԿայենին առնէ և զպատիժն զՈւզային կրեսցէ, ամէն...

Եղբարք, անմեղադիր լերուք խոշորութեան գրիս, զի յայսմ աւրէն, որ սկիզըն արարի՝ ցաւ առի, մինչև աւարտեցաւ ի ցաւէս չի խլսայ, ապա ցաւոտ անձամբ գրեցի և տխուր դիմօք։ Աղաչեմ զձեզ անմեղադիր լերուք, զի կար մեր այտ է։

## 328

### ՇԱՐԱԿՆՈՑ

Յ. Ասֆալգ և Յ. Մոլիտոր. Ցուցակ Գերմանիայի 10, էջ 45—46
Նաև ՀԱ, 1440, սյուն. 209—211

Գրիչ՝ Յովսէփ Աղթամարցի
վայր՝ Բերկրի, Արգելան վանք

...Արդ, գրեցաւ սա յերկիրս Տարբերունւոյ, ի սուրբ մենաստանիս որ կոչի Արգելան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Կարապե-

* Բնագրում՝ «Խազան»։

տի, և սուրբ Յարութեան, և սուրբ Վարդապետի գերեզմանիս, և սուրբ Նշանիս, և սուրբ Սեղանիս, զոր է ածեալ սուրբ վարդապետն տէր Յուսկան որդին, և այլ սրբութեանց որ աստ կան հաւաքեալ, ի կաթողիկոսութեան տէր Սարգսի, որ է նստեալ ի Վաղարշապատ քաղաքի, և յԱղթամար՝ տէր Ատոմի, և ի թագաւորութեան Ըռաստամի: Արդ, գրեցաւ սա ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս Մկրտիչ մեծ րաբունւոյ, և հոգիազարդ եպիսկոպոսի տէր Ստեփանոսի, որ այս մին ամ է, որ ամենեցուն միաբանեալ յուղարկեցին ի քաղաքն Վաղարշապատ հրամանաւ մեծի րաբունապետիս Մկրտչի, և ետուն ածել առ ի յառաջնորդութիւն իւրեանց, զոր տէր աստուած պահեսցէ զսայ յամենայն հնարից չարին։ Այլ և ի հերպետութեան բարէբարոյ և մաքրամիտ կրաւնաւորի Մկրտչի սքբասիրի և այլ ամենայն միաբանիցս առ հասարակ, զոր և յոյսն ամենայնի պահեսցէ զսոսա խաղաղական կենաւք ի հաճոյս կենաց իւրոց, ամէն։ Քանզի սիրով ընդունեցին և ընկալան զմեզ իբրև զվաղ ժամանակաց եղբայր և պատուով մեծարէին զիս ոչ ըստ անարժանութեան իմում, այլ ըստ բնածին բարի բարուցն իւրեանց, զոր տէր աստուածն մեր հատուսցէ սոցա պարգևս յիւր անճառ պարգևացն, ամէն։

Գրեցաւ սա ի թվականութեան մերոյ ՋԽԶ. (1497) ամին։ Արդ, ես՝ յետինս և անպիտանս յամենայնի Յովսէփ սուտանուն կրաւնաւոր՝ անուամբ միայն և ոչ գործով, վասն զի յոյժ հեռացեալ եմ յամենայն բարեգործութեանց, ծոյլ և պղերգ ի մանկանց եկեղեցւոյ, ըստ իմում կարի գրեցի զսա յընտիր աւրինակէ, զոր է դրեալ ձեռամբ քաջ քարտուղարին Գրիգորի խուլ կոչեցելոյ ի վայելումն ///*.

Ո՜վ մանկունք սուրբ եկեղեցւոյ, որ հանդիպիք սմա աւրինակելով կամ ինչ իւիք տեսութեամբ՝ յիշեցէք ի Քրիստոս զստացող սորա զՍտեփանոս կրաւնաւորն, և զծնողսն իւր զՅովանէսն և զխոնդֆարն, և զեղբարսն իւր զպարոն Գորգն զհանգուցեալսն ի Քրիստոս, և զՂարիպշէն, և զքուերսն իւր զԴէճրանն և զՄելիֆ-խաթունն, և աստուած յիշեցողդ ողորմեսցի։

Այլ և աղաչեմ յիշել ի տէր զհոգևոր հայրն և զկրկին զծնաւղն իմ յիմաստս զտէր Կարապետ Բերկրցին, որ բազում աշխատութեամբ ուսոյց մեզ զարուեստքս՝ զշինել մագաղատիս և զգրել սորին, այլ և զնկարելն, որ ընդ հովանեաւ սորա ծաղկեցի զսա ոսկով և բազմերանգ գունով, զոր և տէր աստուածն ամենայնի փրկեսցէ զսա յամենայն հնարից սատանայի։ Դարձեալ, աղաչեմ յիշել ի տէր զհամշիրակ եղբայրն իմ զՍմբատ սարկաւագն, որ բազում աշխատեցաւ ի շինել մագաղատիս, զոր տէր աստուած տացէ նմա շնորհս և ջանս ուսումնասիրութեան, ամէն։ Այլև աղաչեմ յիշել առ տէր զտէր Ստեփանոս նորընծայ կրաւնաւորն, որ սպասաւոր եղև մեզ միամտութեամբ, քանզի զթոնիրն վառէր և ջուրն բերէր և զգլխիկս լուանայր, զոր տէրն տէրանց բացցէ զդուռն անպատում շնորհաց իւրոց ընդդէմ տէր Ստեփանոսին և տնտէս Ասպահանշին, ամէն։

Այլ և աղաչեմ յիշել սրտի մտաւք ի տէր զիս՝ զամենամեղ գրիչս զՅովսէփ Աղթամարցիս, և զծնաւղսն իմ տէր Աւագ և զՄէճրիար, և զեղբարսն իմ՝ զհանգուցեալսն ի Քրիստոս՝ զԱստուածատուր և զԱզիզբէկն,

* Ջնջված է երեք տող։

և զկենդանիքս՝ զՇահարբէկն և զԱւռանն, զոր տէր Աստուած պահեսցէ զսոսա կանաւք խաղաղական ի մխիթարութիւն սրտի իմոյ, ամէն։

## 329

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4154

Գրիչ՝ Սարգիս
վայր՝ Էրընջակոյ Երկիր.
Բերդիկ գիւղ

220բ ...Ըստ նմին աւրինակի սրբասէր և իմաստուն տանուտէրք երեք՝ յա-
նունն առաջնոյն Մուրատ, և երկրորդն Քամարազ, եր[ր]որդն Ջոմարտ՝
եղբարք էին միմեանց, միշտ և հանապազ բորբոքէին ի սէր սուրբ և ի
տիեզերալոյս և քարոզ քառավտակ Աւետարանիս, և ըստ բնաւոր բարուց
բարոյն ախորժական կամօք, մեծաւ տենչմամբ ստացան զսայ անջնջելի
արձան՝ ի մխիթարութիւն անձանց և ի յոյս փրկութեան։
Ես ես՝ յոգնամեղս և փցունս ի գրչաց Սարգիսս՝ յանձն առեալ ըստ
իմում կարի յանգ հանեալ կատարեցի զխնդիր սոցա, շնորհաւք և ողոր-
221ա մութեամբ մեծին աստուծոյ և փրկչ//ին Յիսուսի Քրիստոսի՝ տեառն մե-
րոյ։
Ի թուականիս Հայոց ՋԽԶ. (1497), ի հայրապետութեան տեառն
Սարգսի, ընդ հովանեաւ սուրբ Ստեփաննոսիս, ի յերկրիս Էրընջակոյ, ի
Քառատակ գեղս, որ Բերդիկ կոչի, յեպիսկոպոսութեան գաւառիս տէր
Յովաննիսի, ի շփոթ և ի դառն ժամանակիս, յորում նեղեն և հարկապա-
հանջեն զքրիստոնեայքս յամենայն կողմանց վասն անչափ մեղաց մերոց։
Եւ զաւրացաւ անաւրէն ազգն տաճկաց և աւարի արար զԹաւրէժոյ եկե-
ղեցին, այս երկու ամ է, որ եղև վիշտ մեծ ազգիս Հայոց։ Եւ մեք կամք
սրտաբեկ և ի դողման, թերևս այց արասցէ մեզ անբարկանալին աստու-
ած և դարձուցէ զպատուհաս և զնախանձ։
Եւ արդ, աղաչեմ զամէնեսեան սիրովն աստուծոյ՝ զընթերցողսդ և
զլսողսդ, յիշման արժանի առնել զվերո ստացողք սորա՝ զպատուական
արքս զՄուրատ և Քամարազս և զՋոմարտն, և զծնողս իւր՝ զՍալթանշայ
և զԽէրխաթուն, և զորդիքն զԵաղուպ, զՍալթանշայն, զՄուղամ, զՍար-
221բ գիս, // զԹայիբշէն, զՊապիկն, և զՄարտիրոսն. զՆափշէն: ԶՔամարազն
և զորդիքն՝ զՂոչիկն, զՂարամանն, զԱլթունն, զԱւանն և զՓիրիջանն և
Ըսկանդարն*, և կողակիցն զՍաւարն՝ փոխեալ ի Քրիստոս, և զՄարխա-
թունն: ԶՋոմարտն, և զծնողսն՝ զՅովաննէս և զՄամիկն, և զկողակիցն
զՇուքրան, և զորդիքն զՍարգիս երէց՝ զգծող Աւետարանիս, և զՏէրտէրն.
զԷտկարն, և զԱնդիասն, և զՅովանէսն, և զայլ արեան մերձաւորսն, եւ
առաւել ի ժամ սուրբ պատարագին, զի արժանասցին ողորմութեան ի
Քրիստոսէ աստուծոյ մերոյ։

* Մի բառի տեղ անգրել է թողնված։

Ընդ նոսին և ես՝ ոգնամեղս գրչաց Սարգիս, երեսս անկեալ աղաչեմ յիշել և զիմ անարժանութիւնս և զորդին իմ զՂուկասն և զայնոսիկ, որք յանձնեցին յիշել ի տէր զինքեանս։ Ընդ որս ողորմածն աստուած յիշողացըդ և յիշելոցս առատապէս ողորմեսցի...

222ա Յիշեցէք և զթոռներն Մուրատին՝ զՀազարբէկն, զՍտկարն, զԴրիգորն, զԽումարշէն, զՄիրազն, և զհարսներն՝ զՈւստիանէն, զՄարիանէն, թոռներն Քարամազին՝ զՅովաննէսն, զԽաչատուրն, զԱստուածատուրն, զԽարսեղն, զՂուկասն, և զհարսներն՝ զՍապաճն, զՄարգարիտն, զԱրզուզան: Եւ զՋումարտին թոռներ՝ զԱմրիազն, զԻգնատիոսն ///*

## 330

### ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 7880

Գրիչ՝ Մխիթար
վայր՝ Ի գաւառս Կաղզվանայ

227ա ...Գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուականիս Հայոց ՋԽԶ. (1497), ի հայրապետութեան տեառն տէր Սարգսի, և ի ղանութեանն Անմատին. որ ի Ղում սատակեցաւ. ի գաւառս Կաղըզվանայ, ի վանքս սուրբ Լուսաւորչին և սուրբ Վարդիհաւրն և այլ բազմայհաւաք սրբոցս, որ աստ կան հաւաքեալ, ձեռամբ յոգնամեղ և անիմաստ գրչի Մխիթար աբեղաի, և ոչ գործովս

227բ Այլ և աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք այս սուրբ Աւետարանիս տեսանելով, կամ կարդալով, կամ աւրինակելով, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զվերոգրեալս ի սմայ, և աստուած զձեզ յիշէ յիւր ողորմութիւնն, ամէն, եղիցի, եղիցի։

Դարձեալ, յիշեցէք զստացող սորին զՄիրանշէն, և կողակիցն իւր Ազիզ-Մելիքն, և եղբայրն իւր Գուռշիկն, որ ստացան զսա ի հալալ ընչից իւրեանց...

## 331

### ՇԱՐԱԿՆՈՑ

Կրակով, Բ. ՀԱ, 1887, էջ 56

Ստացող՝ Յովաննէս
վայր՝ Սանահին

659— ...Գրեցաւ շարունակ աստուածաշունչ տաղի Շարականացս ձեռամբ
661 սրբասէր կրաւնաւորի և գեղեցկաշար գրչապետի տէր Արիստակէս ճըգնազգեաց կրաւնաւորի, ի դրան մաւր լուսոյ՝ ի յերկնահանգէտ, մեծարգոյ և ի գերահռչակ ուխտի Սանահին վերաձայնելոյ, ի դրան սուրբ Աստուածածնիս և հրաշափառ Կաթողիկէ սուրբ տաճարիս և աստուածընկալ սուրբ Նշանիս, ի թվականութեան հայկազեան տումարի ՋԺԽԶ. (1497), ի Հայ-

---

* Շարունակությունը՝ մի երկու տող պատռված է։

րապետութեան տէր Սարգիս կաթողիկոսի, առաջնորդութեան սուրբ ուխտիս տէր Բարսեղ եպիսկոպոսի։

Արդ, ես յետինս ի ծնունդս եկեղեցոյ և անարգս ամենայնի Յովաննէս պիտակ անուն վարդապետ. ի ծընընդենէ սնեալ և վարժեալ ի դրան սուրբ Աստուածածնիս Սանահնա, ետու գրել զսայ հայրեղբայրորդոյն իմոյ տէր Արիստակիսի՝ շնորհազարդ և ճարտար գրչի, յիշատակ հոգոյ իմոյ, և ծնաւղացն իմ՝ հայրն տէր Պարոնին, որ է փոխեալ առ Քրիստոս, և մայրն Հաւռաւմսին, և եղբայրն Ստեփաննոսին, և ամուսնոյն իւրոյ Մարգարտին, և ծաղկեալ շաւակաց նոցին Ղազարին և Խէր-Պարոնին, զի դեռ ես եմ գրել պնակիտ, որ կարդա և վայելէ զՇարակնոցս, և դստերացն Անապնոզին, Եղսաբեթին, Թամամին ու Դովլաթին:

Ո՜վ սուրբ տեսողք, յորժամ տեսանէք զծաղկաւէտ և ոսկիազարթ և զմարգարտաշար Շարակնոցս, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զիս՝ զբազմամեղս Յովաննէս պիտակ անուն վարդապետ, հանդերձ ծնաւղաւք և հարազատաւք, և ամենայն արեան մերձաւորաւք՝ կենդանաւք և ննջեցելաւք, և աստուած զձեզ յիշէ իւր միւսանգամ գալստեան, ամէն։

Դարձեալ յիշեմք զառաջին երախտաւորքն մեր զհօրեղբայրքս, որ են փոխեալ առ Քրիստոս՝ զտէր Յոհաննէս ճգնազգեաց և ամենայն առաքինութեանց ուսուցիչ և վարպետ՝ փակակալ սուրբ ուխտիս Սանահնու, և զտէր Ներսէս փիլիսոփայն, և զՋտնփաշէն, և զամուսին իւր զՆուրկարն, որ են եղեալ ի տապանի դրան սուրբ Աստուածածնիս։ Ընդ որս յիշեսջիք և զհարազատ քոյր իմ զՍիթ-Խաթուն, որ է մեռեալ տղա հասակաւ, և զմիւս քուր իմ զԱզամաթն, որով յիշողացդ և յուսացելոցս ողորմեսցի Քրիստոս աստուած և նմա փառք յաւիտեանս, ամէն։

Ընդ որ միաբանք սուրբ ուխտիս զտէր Մանուէլ և զտէր Մկրտիչ կրաւնաւորքս, որ են զարթ և պայծառացուցիչ սուրբ ուխտիս, զի մեք և սոքա գրեալ լիցին ի գիրն կենաց, ամէն։ Զի էր թվականս Հայոց ՋԾԽԶ. (1497), որ գնաց Երուսաղէմ, և ի դառնալն եկ ի Բերկրի, և տվի ոսկել զՇարակնոցս, և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։

## 332

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6288

Նորոգող՝ Տիրաւագ
վայր՝ Թաւրէզ

173բ Բարեխաւսութեամբ սուրբ Աստուածածնիս և սուրբ կենսատու խաչին թողցէ զանցանս պարոն Ուլախաթունին՝ զներելին և զաններելին, զկամաւին և զանկամային։

Զի յոյժ հնացեալ էր սուրբ Աւետարանս, և ետ նորոգել զսա ի ժամանակիս, որ Էմատ—խան եկն Թավրէզ թվ. ՋԽԶ. (1497)։ Եւ որ հանդիպիք յիշէք զպարոն Ուլախաթուն և զիւր ծնաւղսն, և աստուած-ողորմի ացէք (իմա՝ ասացէք) նոցա։

174բ Եւ զիս՝ զչեմարժան ծառայս զՏիրատուն յաղաւթս յիշեցէք և ի շողքդ արժանի լիցիք արքայութեանն աստուծոյ։
Յիշեցէք զՇահրիարն և զամենայն արեան մերձաւորն իւր։

## 333

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 3530

ա

Գրիչ՝ Մատթէոս
վայր՝ Կողուց վանք

331բ ...Աստանաւր յանկ ելեալ աւարտեցաւ քառաբուխ և քառավըտակ աստուածախաւս սուրբ Աւետարանս այս ի թուաբերութեան Հայկազան տումարիս ՋԽԶ. (1497 )ամին, ի սուրբ ուխտս ի Կողուց վանքն, ընդ հովանեաւ սուրբ Գրիգորիս և սուրբ Կարմիրակ Նշանիս, եւ ի յառաջնորդութեանս տէր Դանիէլի, ի դառն և ի վշտալից ժամանակիս, յորում ի խիստ և ի նեղութեան և ի չար ծառայութեան կամք ազգին նետողաց, դի յոյժ նեղեն և կեղ[եքեն զազգս քրիստոնէից ///*
332ա ...[Եւ արդ, ես՝] անարժան ծառայս ծառայիցդ աստուծոյ Մատթէոս սուտանուն աբեղայ, տեսի զփափագ և զսէր հաւատարիմ տանուտրոջն պարոն Գորգն զոր ունէր առ հոգևորսն, և տկար անձամբ յանձն առի կատարել զհայցուածս նոցա**։
[Դարձեալ, յիշեցէք ստացո]ղի սորա պարոն Գորգուն, և իւր կենակցին Մարգրտին, և իւր ծնաւղացն Մխիթարին և Շաղփաշին, և իւր զաւա-
332բ կացն, // և զհաւրեղբայրքն իւր զԿարապետ, զՄխիթարն, և զՅովանէս, և զյորդիք նոցին զէզդան և զՄիրան և Ջաֆարէն:

Բ

Ստացող՝ Մարգարիտ

Ես՝ Մարգարիտս դրել տըւի զսուրբ Աւետարանս և ետու զսա ի ձեռն Միքայէլ քահանային, դի այլ մարդու դաւէ չի լինի հետ սորա. և որ դառնա և յանդրքնի, նա նըզովեալ լիցի յաստուծոյ և յամենայն սրբոց***։

## 334

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 158

Գրիչ՝ Մատթէոս
վայր՝ Աղբամար

342բ ...Աստանաւր յանկ ելեալ աւարտեցաւ ... Աւետարանս այս ի թուաբերութեան հայկազան տաւմարիս ՋԽԶ. (1497) ամի, յանառիկ և ի տի-

---

* Ձեռագրից թերթ է ընկել։

** 14 տող պատարկ է թողնված ստացողի մասին լրացուցիչ տեղեկություններ գրանցելու համար։

*** Ավետարանը մի քանի տասնամյակ հետո (հավանաբար ԺԶ դարի սկզբներին) գնում ու նվիրում են Սխկոյ վանքին Մկրտիչն ու իր կենակից Շահգուլը։ Գնման և նվիրաբերման վկաները հիշատակվում են ստորև բերվող հատվածում։

րախնամ կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ սուրբ Խաչիս և սուրբ Սարգիս
զօրավարիս. եւ ի հայրապետութեան տեառն Ատոմի կաթողիկոսի. ի
դառն և ի վշտալից ժամանակիս, յորում ի խիստ և ի նեղութեան և ի չար
344ա ծառայութեան կամք ազգին նետողաց, // զի յոյժ կեղեն և կնղեքեն զազ-
գըս քրիստոնէից....

Լիակատար բերանով և ուղիղ մտաւք աստուած-ողորմի ասացէք
ստացողի սորա [Թումային, և իւր ծնաւղացն՝ Շատիպէկին և Մուլքանին.
Թէւդաւրին, և Խէրմէլիքին, և կողակցին իւրոյ Մուղալին, և իւր ծնաւղացն՝
Ազիզպէկին և Մարթային]*...

Դարձեալ, յերեսս անգեալ աղաչեմք, զիս՝ զանարժան և զմեղսամած
գծողս յիշեցէք ի Քրիստոս՝ զՄատթէոս անուն կրաւնաւոր, և ղծընաւղսն
344բ իմ // զԿարապետ և զԽոնձա-Խաթուն, և հաւրեղբաւրն իմ զտէր Յովանէս
եպիսկոպոսն, և զեղբայրն իմ զԱզիզբէկ, և զդեռաբոյս զաւակ նորին
զԴարման, և զՄերուն պահէ ի դառ սասմանէ, ամէն։ Եւ զուսուցիչն իմ
զտէր Յակոբ կրօնաւորն, զկենդանիքն և զհանգուցեալքն առ Քրիստոս, և
լի բերանով և ուղիղ մըտօք աստուած ողորմի ասացէք նոցա և ստացո-
ղին, գծողին և աշխատողացն...

Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զՅովսէփ կրօնաւորն, որ յոյժ աշխա-
տութեամբ նկարեց զսուրբ Աւետարանս, աստուած իւր վարձահատոյց
առնէ զերկնից արքայութիւն և զանրաւ բարութիւնսն, ամէն։

### 335

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 3534

Գրիչ՝ Մատթէոս
վայր՝ Աղթամար

ա

350բ ...Աստանաւր յանկ ելեալ աւարտեցաւ քառաբուխ և քառավըտակ
աստուածախաւս սուրբ Աւետարանս այս ի թուաբերութեան հայկազան
տաւմարիս ՋԽԶ. (1497) ամին, յանառիկ և ի տիրախնամ կղզիս Աղթա-
մար, ընդ հովանեաւ սուրբ Խաչիս և սուրբ Նշանիս, եւ ի հայրապետու-
թեան տեառն Ատոմ կաթողիկոսի, ի դառն և ի վշտալից ժամանակիս, յո-
րում ի խիստ և ի նեղութեան և ի չար ծառայութեան կամք ազգին նետո-
351ա ղաց, զի յոյժ նեղեն և կեղ//եքեն զազգս քրիստոնէից։
...Այսպէս և [հաւատարիմ մայրն մեր Բէկի, տենչալի սիրով և փա-
փաքմամբ սրտի յաստի կենացս յուսահատեցաւ և անտի կենացն փա-
351բ փագեցաւ, եւ ըստացաւ]** // զաստուածախաւս կտակս զայս՝ արար ճարակ

«Ու են վկայք այսմ վաճառիս Միրզայ Մուստաֆէն, եւ եղբարն Մահմատն, և Մէլիք
Փաշշան, և բոէս Մարտիրոս» (էջ 334ա)։

* Ստացողի և նրա ազգականների հիշատակությամբ փակագծերի մեջ առած սույն հատ-
վածը, ինչպես և մի քանի այլ հատվածներ, որ կրկնություն լինելու պատճառով չընդօրինակե-
ցինք, գրված են մի այլ գրչի՝ «անարժան Գրիգորի» ձեռքով։

** Փակագծերի մեջ առնված այս և հաջորդ հատվածները, գրչի կողմից դատարկ թողնված
տողերի վրա, գրանցված են այլ թանաքով ու ձեռագրով։

փրկութեան հոգոյն իւրոյ... Եւ ետ զսուրբ Աւետարանս գծագրել ջերմեռանդ սիրով հաւատարիմ և աստուածասէր [և անզաւակ մայրն մեր Բէկի] ի հալալ վաստակոցն իւր, յիշատակ բարի հոգոյ իւրոյ, և ծնաւղացն իւրոյ [հօրն Ըռստակիսին, և մօրն Խռնձին, և եղբարցն Աշրաֆին և Դարմանին, և քուերցն Գուլըստանին և Շահփշին, ամէն]։

Իսկ ես ... Մատթէոս սուտանուն աբեղայ տեսի զփափագ և զսէր հաւատարիմ [և անորդի մօրն իմոյ Բէկուն], զոր ունէր առ հոգևորսն, և տկար անձամբ յանձն առի կա[տարել ///։

Բ

Նկարիչ՝ Յովսէփ

13բ ԶՅովսէփ Նըկարօղ սուրբ Աւետարանիս յիշեցէք ի Քրիստոս և աստուած ողորմի ասացէք։

## 336

## ԱՒԵՏԱՐԱՆ

Տիրայր եպս., Ցուցակ Օքսֆորդի Բոդլեան գրատան, Ms. Arm. E. 1
Երևան, Մատենադարան, «Անհատական արխիվներ», թղթ. 120
էջ 943—848

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Ախթամար

283ա–286ա ...Զոր տեսեալ և իմացեալ զսորա անճառելի աւետիքն և զահագին զսպառնալիքն և զամենեցուն զփրկագործութեան խորհուրդ ամէնաւրհնեալ և հոգիացեալն ի գործս ամենայն առաքինութեանց Ստեփանոսն. զարհուրելով ի սպառնալեացն և փափաքելով աւետեացն ստացաւ զանառիկ մեծութիւնս և զանկողոպտելի գանձս՝ սուրբ Աւետարանս յիշատակ բարի իւրն, և ծնաւղաց իւրոց* Գրիգորին և Թուրվանդին, և եղբարցն Միրանշին, և որդոյ նորին Մաղսուդին, եւ հաւրեղբաւրն Շաֆարին, եւ մեծ պապուն Կարապետին, և Նւատշին. և այլ ամենայն արեան մերձաւորաց՝ կենդանեացն և հանգուցելոցն առհասարակ...

Ես Ստեփանոսս ստացայ սուրբ Աւետարանս ի հալալ և յարդար վաստակոց իմոց յիշատակ հոգոյ իմոյ, և կենակցին իմոյ Շնոհվորին, և դստերն Մեխրուրանին, և Գուխարին, Փրնջուն, և Խանումին, և ջոջ մամուն Անանցին, և փեսային իմոյ Ստեփանոսին, և Մխիթարին, և որդոյն Թոռոսին, աստուած անփորձ կենաւք պահէ զսոսա, ամէն։

Եւ արդ, ես յետինս ի կրաւնաւորաց և անպիտան և անարժանս ի մանկունս եկեղեցւոյ, և անիմաստս ի գիր գրչութեան Գրիգոր սուտանուն աբեղա շնորհիւ տեառն սկսայ և ողորմութեամբն նորին կատարեցի զսուրբ Աւետարանս ի Թուականիս Հայոց Մեծաց ՋԽԶ. (1497), ի յաստուածապահ աթոռս Ահթամար, ընդ հովանեաւ երկնանման և պայծառազարդ սուրբ Խաչի տաճարիս, և ի հայրապետութիւն տեառն Ատոմ կաթողիկոսի։

* Տասը տող դատարկ է թողնված։

*Արդ, որ ճաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենալի սեղանոյս, և որք պատահիք սըմա տեսութեամբ կամ ընթերցմամբ՝ յիշեսջիք յաղաւթս ձեր և ի սոսկալի ժամ սուրբ պատարագին* Ստեփաննոսն *և զկենակիցն իւր, և մեղաց թողութիւն խնդրեցէք ի Քրիստոսէ, զի ողորմածն աստուած ողորմութեամբ շնորհեսցէ մեզ և ձեզ, ամէն, և զծնաւղսն իւր. և զամենայն վերոյգրեալսն ի սմա...*

*Ընդ նոսին աղաչեմ և յերեսս անկեալ պաղատիմ յիշման արժանի առնել զանպիտան դրիչս, և զծընաւղսն իմ* զՍարգիս *և* զԽալիմ, *և զեղբարքն իմ, նաև զվարպետն իմ, որ ուսոյց մեզ զարուեստ գրչութեան, յիշեցէք ի բարին Քրիստոս... Այլ և աղաչեմ անմեղադիր լինել խոշորութեան գրիս և սխալանաց, զի անընդունակ եմ արուեստի գրչութեան և բազում մեղաց ցընորիւք պաշարեալ, այլ ի սիրոյ հարկեալ և սիրով վճարեալ...*

## 337

## *ԱԻԵՏԱՐԱՆ*

*Վիեննա 62, Յ. Տաշեան Ցուցակ, էջ 284—285*

*Գրիչ՝* Յովհաննէս
*վայր՝* Հիզան քաղաք

303բ— *...Ուստի եւ տեսեալ զսորայս անճառ փրկագործութեան խորհուրդ*
305ա *ոմն ի լուսածնեալ զարմից սրբոյ Սիոնի* Խուդադար *անուն կոչեցեալ, զոր ի վաղուց հետէ ցանկայր այսմ աստուածախաւս սուրբ Աւետարանիս. եւ ետուր զսա գրել յիշատակ հոգւոյ իւրոյ, եւ ծնողաց իւրոց* Դաւթին[*] *եւ* Ջուհարին:

*Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի մեծ թվականիս Հայոց ՋԽԶ. (1497), ի կաթողիկոսութեան հայկազեան սեռի տեառն* Սարգսի, *եւ ի մերոյ կաթողիկոսութեան Աղթամարայ տէր* Ատոմի, *զոր տէր աստուած Իսրայէղի պահպանեսցէ անսասան զաթոռ հայրապետական եւ զթագաւորական մերոյ ազին։*

*Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս* զԽուդադարն, *եւ զծնօղսն իւր* զԴաւիթ *եւ* զՋուհարն...[**]

*Դարձեալ ... յիշեցէք ի Քրիստոս զփծուն գրիչս* զՅովաննէս *քահանայ, եւ զծնաւղքն իմ* զՄկրտիչ *քահանայն եւ* զՇամամն, *եւ զեղբայրն իմ* զԶգեկիէլ, *որ մականուն* Քաւթաւթ *կոչի, եւ զամենայն արեան մերձաւորս մեր...*

*Եւ արդ, կացցէ Աւետարանս ի ձեռն տէր* Աստուածատրուն, *յիշատակ* Խուդադարին, *եւ ծնօղաց իւրոց* Դաւթին *եւ* Ջուհարին, *եւ իմ հօրեղբօր* Ծարունակին, *ամէն, ի դուռս սուրբ եկեղեցոյս, որ կոչի սուրբ Գորգ, ի գիւղս որ կոչի* Որձակ: *Եւ մի ոք իշխեսցէ զսա ծախել կամ գրաւել...*

*Եւ արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի քաղաքիս որ կոչի* Հիզան, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, եւ սուրբ Սարգսի զօրավարին եւ որ-*

---

[*] *Այս և հաջորդ (Ջուհար) անունից հետո մեկական տող դատարկ է թողնված։*

[**] *Հրատարակիչը հայտնում է, որ չարունակությամբ եղած անունները հետագայում ջնջվել և վրաները գրվել են նոր անուններ։*

գոյն նորա Մարտիրոսին, եւ սուրբ Յարութեան, եւ սուրբ Գէորգեայ, որ է սակաւ մի հեռի, ձեռամբ Յովանիսի, որ չէ յիշելի։ Որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով անմեղադիր լերուք խոշորութեան գրիս, զի կայր մեր այս էր։

Դարձեալ, կրկին անգամ աղաչեմ զձեզ յիշեցէք ի Քրիստոս ղատացող սուրբ Աւետարանիս զփոխդիր Խուդադարն եւ զծնօղքն իւր...

## 338

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7563

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ Ամ գիւղ

...Արդ, կատարեցաւ աստուածախաւս և տիեզերաքարոզ Աւետարանս ի խնդրոյ պատուական քահանայս տէր Կիրակոսն յիշեցէք ի Քրիստոս, և հայրն Մարտիրոսն, և մայրն զՄարիամն, և զկենակիցն իւր զԱլթուն, և զաւակն իւր Ռըստակէսն. Հայրապետն և Պետրոս, Մելքիսէթն, Մարքէն. Շնոխուորն, և եղբայրն իւր Սահակ, և զաւակն իւր Սադաղէն, Միխթարն. Առաքելն, Տաւնապետն, Յոհանէսն, Թասուխն, և կենակիցն Թամարն, և միւս եղբայրն Մկրտիչն, և կենակիցն Խայոցն, և զաւակն իւր զՔաֆուռն, զԾղիսէն, և զմիւս եղբայրն զԳրիգորն, և զկենակիցն զԱլթուն, և զաւակն իւր զՅակոբն. և զԳոհարն, և զմիւս եղբայրն զԽաչատուրն, և զկենակիցն իւր զԹամարն, և զամենայն արեան մերձաւորս, և որ աստուած-ողորմի ասէ աստուած իւրն ողորմի, ամէն։

284բ Եւ արդ, ես՝ ունայնս ի գործոց բարեաց անուամբ Յովանէս և մականուն քահանա, որ անուամբս եմ և եթ և ոչ արդեամբք, որ ձայնիւ բարձրացեալ և հոգով կորացեալ, գրեցի զսուրբ Աւետարանս ի գեաւղս որ Ամ կոչի, ընդ հովանեաւ սուրբ Յակոբայ հայրապետին։ Եւ աստուած-ողորմի ասացէք հաւրն իմոյ Դանիլին, և մաւրն Գոհարին, և իմ եղբայրցն Շահաբին, և Թումին, և Աղշին, Դաւլուաթշին, և քուերն Թուրուանդին, և ամենայն արեան մերձաւորացն աստուած ողորմի ասացէք...

Ի թվականիս ՋԽԶ. (1497) գրեցաւ։

Եւ արդ ... տէր Կիրակոսն, և զհայրն իւր զՄարտիրոսն, և զեղբայրքն իւր Սախակն. զՄկր[տի]չն, զԳրիգորն, և զԽաչատուրն, և զմայրն իւրեանց զՄարիամ, և զամենայն արեան մերձաւորս...

## 339

## ՈՍԿԵՓՈՐԻԿ ԳՐ. ՏԱԹԵՒԱՑԻՈՅ ԵՒ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՏՕՄԱՐԻ ՅԱԿՈԲԱՅ ՂՐԻՄԵՑԻՈՅ

Յ. Թոփճեան, Ցուցակ Արմաշի 7, էջ 36

Գրիչ՝ Գրիգոր Տարօնեցի
վայր՝ Կայիփոսի վանք

245 Փառք... գրեցաւ գիրքս որ կոչի Վերլուծութիւն պարապմանց սրբոյն Կիւրղի ասացեալ ընդդէմ երկաբնակաց զոր եւ արարեալ է զվերլուծու-

թիւնս զայս Գրիգորի քաջ հռետորի և տիեզերահռչակ վարդապետի, ի խնդրոյ Գէորգեա քաջ փաղիրային և մեծ րաբունոյն։ Եւ գրեցաւ սա ձեռամբ իմով՝ անարժան եւ սուտանուն աբեղիս Գրիգորիս, որ եմ աշխարհաւ Տարանեցի ի Վանացն Գլակայ։ Արդ, գրեցաւ վերլուծութիւնս ի թուականութեանս հայկազան տոմարի ՋԽԶ. (1497), ի գաւառս Եկեղեաց որ Եզրնկայ, ընդ հովանեաւ սրբոյն Յակոբայ և սուրբ Սիոնի, որ Կայիփոսի վանք կոչի, ի համալսարանս Յովհաննէս քաջ րաբունապետին, որ է աշխարհաւ Համշինեցի, և յառաջնորդութիւն տէր Ներսեսին՝ որդոյ խոճայ Ասարպէկին։

## 340

## ԱՒԵՏԱՐԱՆ

Նոր Ջուղա 524, ՄՏՄ, ՄՏԱ

Գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Տարաւնոյ Եղրդու վանք

238ա ...Գրեցաւ աստուածախաւս և աւետաբեր սուրբ Աւետարանս ի թուիս Հայոց ՋԽԶ. (1497), ձեռամբ անարժան և մեղսաթաւալ գրչի Ստեփանոսի, ի գաւառն Տարաւնոյ, յերկնահանգէտ սուրբ ուխտիս և ի հրեշտակացոյց մենաստանիս Եղրդու կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և Յովանու Մկրտչին, և սուրբ Ստեփանոսի Նախավկային, և սուրբ Գրիգոր մերոյ լուսաւորչին, և Աւրհնաբուղ սուրբ շիշ իւղոյս, և Արծուաբեր սուրբ Նշանիս՝ ներկեալ արեամբն Քրիստոսի, ի հայրապետութիւն տէր Սարգիս կաթողիկոսի և յառաջնորդութիւն սուրբ ուխտիս տէր Պետրոս եպիսկոպոսի, և նորակնունք տէր Յովանէս եպիսկոպոսին և այլ միաբանիցս՝ մեծի և փոքու առհասարակ։

...Յիշեցէք ... զընտրեալ և զարժանաւոր, զպատուական և զկուսակրաւն աբեղայն զտէր Աստուածատուրն, որ գնեաց զԱւետարանս յիշատակ իւր հաւրեղբաւրն տէր Թորոս երիցուն, և իւր կողակցին Դիլշատին, և իւր փեսային Կարապետին և Սաշշու (՞)։

## 341

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԳՐԵԱՆՑ ԴԻՈՆԻՍԻՈՍԻ ԱՐԻՈՊԱԳԱՑՒՈՅ

Երևան 114

Գրիչ՝ Մաղաքիա Բաբերդացի
վայր՝ Եկեղեաց գաւառ, Կապոսի վանք

450բ ...Արդ, գրեցաւ մատեանս սուրբ ի գաւառս յԵկեղեաց, ի սուրբ յանապատս Կապոսի, ի դուռն սուրբ Յակոբի և այլ սրբոցն, և առաջնորդութեան տէր Ներսէս սրբազան կրաւն[աւոր]ի, թուաբերութեանս Հայկազան տումարի Ջ. (900)-երորդի, քառասուներորդի և Զ. (6)-երորդի (1497)։ Ես՝ մեղաւորս՝ զառածեալս և հողոյ հաւասարեալ խըխայթեալ Մաղաքիաս Բաբերդացի, յոգնաբաղձ տենչիւք ցանկացեալ հոգւով ի սէր

այսր մատենի՝ գրեցի զսա մեծաւ չարչարանաւք և տաժանմամբ, ի վայելումն վարժման մանկանց Սիովնի, և ի պայծառութիւն սուրբ և կաթողիկէ եկեղեցւոյ զարդ և գանձ անդրժելի։ Վասն որոյ աղաչեմ զամենեսեան զգաստ սրբազանիցդ, յորժամ պատահիք սուրբ մատենիս կամ ընթեռնելով կամ այլ ինչ կերպիւ, թէպէտ որ չեմ արժանի յիշելոյ, այլ յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զիս, և զծնաւղսն իմ՝ զհայրն իմ զզԱմիր-Գրիգորն, և զիւր եղբայրն զզԱմիր-Սմանդարն, և զմայրն իմ զԴշխոյ-Մելիքն.
451ա // և զեղբայրն իմ զզԱմիր-Ջիհանն, և զիւր որդիքն, և զմիւս եղբայրն իմ՝ զխուպիճանն. որ երիտասարդ հասակաւ առ Քրիստոս գնաց և մեծ սուք եթող և լաց և հառաչ, և զամենայն արեանառու մերձաւորս իմ, հանդերձ ամենայն զարմաւք համայնաւք…

## 342

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երուսաղէմ 298

Ն. Պողարեան, Ցուցակ, Գ, էջ 139—140

Գրիչ՝ Մաղաքիա
վայր՝ Կապոսի վանք

640ա—…Արդ, ես Մկրտիչ աբեղայս և տրուպս ի մէջ ընկերաց* զայս ամե-
644ա նայն զմտաւ ածի և յիշեցի զայն, որ ասէ, թէ Երանի որ ունիցի զաւակ ի Սիովն և ընտանեակ յԵրուսաղէմ, և ետու գրել զկենսունակ սուրբ Աւետարանս յիշատակ ինձ և ծնողաց իմոց և հարազատ եղբարց իմոց**։

Արդ, գրեցաւ ի թուականութեանս Հայոց Ջ. և ԽԶ. (1497), ի գաւառս Տեկեղեաց. ի սուրբ անապատս Կապոսի, ի դուռն սրբոյն Յակոբայ և այլ սրբոցն, և ի դասակալութեան վանացս մեծ և քաջ րաբունապետին մերոյ Յովանիսի, որ յայսմ ամի առ Քրիստոս փոխեցաւ և զմեզ որբ եթող։ Եւ յառաջնորդութեան սուրբ ուխտիս տէր Ներսէս կրաւնաւորին և այլ բազմահաւար կրաւնաւորացս։

Արդ, աղաչեմ զձեզ, ո՛վ մանկունք նոր Սիովնի, զվերոյգրեալսն զյիշման արժանին և զքաջ րաբունապետն մեր և զտէր Ներսէսն և զայլ կրաւնաւորսն։ Որք հանդիպիք այս սուրբ Աւետարանիս կարդալով և կամ աւրինակ գնելով յիշեցէք ի մեղսաքաւիչ յաղաւթս ձեր զվերոյգրեալսն, մանաւանդ զսրբասէր և զառաքինասէր զՄկրտիչ աբեղայն, որ ստացաւ զսուրբ Աւետարանս ի հալալ ընչից իւրոց և արդար վաստակոց իւրոց, յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց՝ հաւրն իւրոյ Խաչատրին և մաւրն իւրոյ Թուրուանդին. և եղբարցն իւրոց Կարապետին և Եղիազարին և Դալըստին, և որք յիշէք յիշեալ լիցիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ։

Նաև զբազմամեղ ոգիս և զանպիտան և զանարժան գրչիս զխրխայթեալ Մաղաքիաս յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր միով տէր-ողորմայիւ, և միոյն հազարապատիկ և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերո, ամէն։

---

* Հրատարակիչը հայտնում է, որ «Երեք կարճ տողեր քերված են և տեղը առանց գրված տարբեր բոլորգրով»։

** Երեք տող դատարկ։

## 343

## ՍԱՂՄՈՍԱՐԱՆ

Երևան 7945

ա

Ծաղկող՝ Սիմէոն
վայր՝ Եզնկա

11բ Յիսուս Քրիստոս՝ բան եւ որդի,
Որ կոչեցար որդի Դաւթի,
Յորժամ փառօք գաս Հայրենի
Եւ դասք սրբոց ընդ քեզ լինի՝
Զտէր Յովանէսն մեծ արհի
Արա փառաց քո արժանի,
Եւ Սիմէոնս որ ծաղկեցի,
Զարմօքն իւր հաղորդ լինի*։

բ

Գրիչ՝ Մեսրոպ

Նա Զստացւող գրոցս զտէր Յովհաննէս արքեպիսկոպոսն յիշեսջիք և զյետնեալս՝ զփծուն գրիչս զՄեսրոպ աբեղայս։

գ

66բ—67ա Բազում տրտում է զիս առեր
Եւ ստուծոյ ահն է պատեր,
Մեղքս է անթիւ, որ չկայ եզեր
Հոգիս մեղաւք է ըմբռներ։

դ

84բ—85ա Ո՞վ քահանայքդ սրբազան,
Սարկաւագունքդ արիական,
Յորժամ երգէք զսաղմոսս Դաւթեան՝
ԶՄեսրոպս յիշեցէք առ տէրն ամենայն։

ե

86բ—87ա Արդ, ես՝ Մեսրոպս եղկելի,
Տարակուսեալ կամ ի վշտի,
Ճար մի պիտէր ինձ խրատի,
Մինչ մեղացս դարձ լինի,
Հոգիս յախտից թեթևասցի։

զ

162բ—163ա ՈՀ վասն <վասն> դառն ատենիս
Եւ տրտմութիւն է Եզնկիս՝
Մահ տարաժամ պատուհասիս
Եւ յարաժամ որոգայթիս։

* Գրված է երկաթագիր տառերով Դաւիթ մարգարէի պատկերը երիզող կապույտ ծապավենի վրա, սպիտակ ներկով։

է

165բ—166ա Բարունապետն Համշենցի
Երկրորդ անյաղթ հռետորի
Հրաման եհաս տեառն արարչի
Վաղճանն եղև ի յայսմ ամի*,
Մահտարաժամ որոգայթի
Ծածկեաց զլոյսն ի գրուանի,
Լռեաց բարբառ քաղցր բանի
Յաշակերտացս զ[եղկե՟]լի։

ը

171բ—172ա Մահուն երկիւղն է զիս պատեր
Եւ գժոխոց ահն եմ անկեր
Հոգով մտաւք տարակուսեր,
Տոռունք մեզաց զիս պարփակեր։

թ

187բ—188ա Յոյժ տատանի միտքս հետ չարի
Ի յարկածից սատանայի
Յամէն ժամու և սահաթի
Սուտ աշխարհիս անցաւորի։

ժ

199բ—200ա Արդ, ես Մեսրոպս ի Նուաստից,
Որ դեգերեալ եմ ի զբաղից
Ազգի-ազգի փորձի դիւից
Որ միշտ պատրեն զիս յաղաւթից**։

* Յովհաննէս բարունապետ Համշենցին վախճանվել է 1497 թվականին (տե՛ս նախորդ երկու հիշատակարանները)։ Ըստ այդմ էլ անթվական այս հիշատակարանը տեղադրում ենք 1497-ի թվաշարքում։

** Համանման բովանդակությամբ չափածո հիշատակագրություններ, որոնք ոչ մի նորություն չեն ավելացնում գրչի և ձեռագրի գրության հանգամանքների մասին բերված հիշատակագրությունների մեջ եղող տվյալների վրա, կան նաև ձեռագրի ստորև նշվող էջերի ներքին լուսանցքներում՝ 25բ—26ա, 49բ—50ա, 62բ—63ա, 69բ—70ա, 71բ—72ա, 79բ—80ա, 90բ—91ա, 99բ—100ա, 102բ—103ա, 104բ—105ա, 105բ—106ա, 139բ—140ա, 146բ—147ա, 150բ—151ա, 153բ—154ա, 157բ—158ա, 159բ—160ա, 168բ—169ա, 179բ—180ա, 181բ—182ա, 184բ—185ա, 186բ—187ա, 189բ—190ա, 191բ—192ա, 192բ—193ա, 194բ—195ա, 197բ—198ա, 201բ—202ա, 205բ—205ա, 207բ—208ա, 210բ—211ա, 211բ—212ա, 213բ—214ա, 216բ—217ա, 218բ—219ա, 219բ—220ա, 220բ—221ա և 223բ—224ա։

344

ՄԱՇՏՈՑ

Գ. Սրուանձտեանց «Թորոս Աղբար» Բ, էջ 305
Կամախ, Թադէոս առաքեալի վանք

Գրիչ՝ Կիրակոս
վայր՝ Խարտիշարայ վանք

Գրեալ ի սուրբ անապատն Խարտիշարայ վանք, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ Կարապետին և սուրբ Սարգսի զաւրավարին, ի թու. Հայոց ՋԽԶ. (1497), ագոստոս ամսոյ ԻԲ. (22), առ ոտս Ստեփաննոս քաջ րաբունապետի և իւր եղբաւրորդոյն Յովհաննէս Հայրապետին... յիշեցէք... զԿիրակոս կրաւնաւոր փծուն գրիչս...

345

ՏԻՍԱԿԱՆ ՄԱՏԵԱՆՔ

Երուսաղէմ 265
Ն. Պողարեան, Յուցակ, Գ, էջ 63—64
(Հմմտ. Մ. Աղաւնունի «Միաբանք և այցելուք Երուսաղէմի», էջ 196)

Կազմող՝ Կարապետ

2 Ի Կարապետ փակակալէ
Սուրբ Յակոբայ սպասաւորէ...
Մեք ի վերինն յԱրեւելէ,
Ի գաւառէն Վայի-ձորէ,
Ի բնիկ գեղջէ յԱյրեբնեցէ.
Ի վանք նորա մեր սընեալ է,
Մեր ազգականքն ամէն անդ է,
Ջտէր Մելքիսէթն ընտրեալ ազգէ,
Որ մեզ քեռի սայ յորջորջէ,
Այլ և յիշէք ձեր սուրբ սրտէ։
Բայց մեք եկայք ի Սաղիմէ,
Երկրպագել փրկչին մերմէ,
Եւ մեր տեսեալ զերգս ի Դաւթէ՝
ԶՍաղմոսարանս որ եղծեալ էր,
Ըստ իմ կարեացս զսա նորոգէ,
Զկազմել սորա և զաւլէ։
Որ Հանապազ յատեանն երգէ,
Որ զողորմին սորա ասէ,
Յառաջիկայիցն և ի յետնէ,
Ախմարամիտս զձեզնէ խնդրէ՝
Խնամով պահէք զդա ի ձեթէ և ի մոմէ։
Ի թվին Հայոց ինն Հարիւրէ,
Քառասուն վեց յաւելորդէ (1497)
Նորոգեցաւ սայ ի մերմէ,
Ի Կարապետ փակակալէ,

*Զեր ամենեցուն հնազանդ հողէ,*
*Զմէկ ողորմին ձենէ խնդրէ,*
*Տէր մեզ և ձեզ ձրի տայէ,*
*Զարքայութիւն ձեզ պարգևէ*
*Ի մեծ աւուրն այներեկէ։*

## 346

## ԳՐՈՒԹԻՒՆՔ ԳՐԻԳՈՐԻ ՆԱԶԻԱՆԶԱՑԻՈՅ*

*Երևան 112*

*Գրիչ՝* Յոհանէս
*վայր՝* Եկեղեաց գաւառ, Կապոսի վանք

ա

182ա ...*Արդ, գրեցաւ գիրս մեծի աստուածաբանին Գրիգորի ի յամի Ջ. հարիւրերորդի և չորից տասանց և վեցեակ թուի (1497), ձեռամբ ներգեւեալ ոգու և թարմատար գրչի՝* Յոհանէս *սուտանուն աբեղի...*

182բ ...*Արդ, գրեցաւ ի վանս* Կայիփոսի, *ի դրունս սուրբ Յակոբա և սուրբ Սիոնի, ի յառաջնորդութեան տէր* Ներսէսի *սիրասնունդ, յոյժ գովելի խնամակալ որբոց, սորին յիշատակն ալրհնութեամբ եղիցի, ամէն։ Նաև զերիցս երանելին* զՅովանէս *բաբուն արին, որ յայսմ ամի հանգեաւ ի Քրիստոս Յիսուս։ Աւա՜ղ, աւա՜ղ.*

*Ուրախութեամբ սկիզբն առի*
*Եւ տրտմութեամբ յաւարտ հասի,*
*Քանզի ոչ ժամանեաց բաբուն արի*
*Բացայայտող այսմ տառի,*
*Ակն պայծառ և հրաշառի,*
*Աստուածաբան հիանալի,*
*Վեհ, իմաստուն և գովելի,*
*Այսաւր մահու նա պարուրի։*
*Աղբիւրն քաղցր ախորժելի*
*Զովացցնէր ղպասկեալ հոգի,*
*Ցամաքեցաւ նայ այսմ ամի,*
*Որ և բնաւ ոչ երևի։*
*Արեգականն նմանի*
*Զլոյսն պայծառ յինքն ունի,*
*Էջ ի նէրգին կիսագընտի՝*
*Խաւարեցոյց ղմեզ՝ զեղկելի։*
*Աւաղ զրկանացս։*

---

* *Ձեռագրի երկրորդ մասում ընդօրինակված է Կիւրեղ Աղեքսանդրացու «Գանձուց գիրքը», այդ մասի հիշատակարանը տե՛ս 1498-ի թվաշարքում։*

Г

164ր Տէր Մաղաքէ դու աննման,
Քաջ րաբունի յաճախաբան
Զփոխերուս զառաջս զամէնն
Զձայնն լսէ զերանական,
Աւրհնեալ եկեալ դու յաւիտեան։

## 347

## ԳԱՆՁԱՐԱՆ

*Ա. Սիւրմէեան, Ցուցակ Հալէպի. Ա, 71, էջ 150—151*

*Գրիչ*՝ Վրթանէս Արեելցի
*վայր*՝ Երուսաղէմ

577 *Փառք ... որ ետ կարողութիւն տկար ոգւոյ* Վրթանէս *անարժան կրաւնաւորի հասանել յաւարտ Գանձարանիս, յամի Հայոց թվականի ՋԽԶ. (1497), ի դառն և անբարի ժամանակի...*

*...Սուրբ վարդապետն* Գրիգոր [Խլաթեցի] *մեծաւ տաժանմամբ ի հողս անկեալ ժողովեաց զպիտանի գանձերս և եդ կարգաւ ի միում տփի զասացեալս ի հոգէկիր արանց յառաջնոց և յետնոց, և ինքն զթերին ելից, որոյ յիշատակն աւրհնութեամբ եղիցի...*

*Արդ, այսոսիկ ցանկացեալ եղև բարէմիտ և սրբասէր տէր* Աւագ *երէցն, և ետ գրել զսա եռափափաք և սիրատարփ հոգով յիշատակ իւրն, և ծնաւղաց իւրոց՝ հաւրն* Ստեփանոսին *և մահդասի մաւրն իւրոյ* Լուսնին, *և հանգուցեալ եղբաւրն մահդասի* Կարապետին, *և միւս այլ եղբաւրն պարոն* Զգօնին*, *և երէցկնոջն* Եղներին, *և ծաղկեալ զաւակացն* Ոհանէս *դպրին և* Գրիգորին, *և քոյր սոցին* Շնոնորին, Մարիամին, *և* Սիմոյին: *Զոր տէր աստուած վայելել տացէ ի յայսմ աշխարհի և ի հանդերձեալն՝ զերկնից արքայութիւնն տացէ, ամէն։*

*Եւ ես՝ անարւեստ և անարգս* Վրթանէս *աբեղայս յ*Արեելիցի, *և յ*Արարատ *գաւառէ, ի տեղի չարչարանաց սուրբ Լուսաւորչին Գրիգորի, յիշեցէք և ղծնաւղսն իմ ըզ*Մկրտիչն *և զ*Նուկբարն. *սկսայ և յաւարտ հանեցի նոցին կամաւքն և բարի կամաւք ստացաւղի սորա տէր* Աւագին:

*Եւ արդ, գրեցաւ սա ի քաղաքս սուրբ* Երուսաղէմս, *ընդ հովանեաւ սուրբ Յակոբիս և այլ սուրբ տնաւրինականացս Քրիստոսի, յամս հայրապետութեան Հայոց* Ոհանէս *կաթողիկոսի և եպիսկոպոսութեան տէր* Մարտիրոսի, *և ըռէիսութեան* Յովանիսի Կուզ *կոչեցելոյ և* Մուզատիմին, *որ սուրբ Յակոբայ զլուխն նորոգեցին և զԾնունդն շինեցին տրաւք քրիստոնէից, և փակկալ սուրբ Յակոբայ տէր* Կարապետին, *և սուլդանութիւն* Մսրայ՝ *ոչ ոք կայր, զի մեծ սուլդանն սատակել էր և որդի նորա ոչ կարէր թագաւորել, զի աւէին թէ չէ արժան. այլ աստուած ի բարին կատարէ, ամէն...*

---

* *Ցուցակի հրատարակիչը հայտնում է, որ անունը բերված է։*

ՋԽԷ 1498

## 348

### ԱՒԵՏԱՐԱՆ

Նրչկան գիւղ, Իրան, Փերիա, ՄՏՄ*

Գրիչ՝ Բարսեղ
վայր՝ Քաջբերունիք.
Ասլիսնակ գիւղ

(5) Արդ, բարոյ ամենայն ոք ցանկայ, ոմանք մասանց և այլք բոլորին։ Աստուածասէրն և դերազունիքն, ամենօրհնեալն և հոգիացեալն ի գործ ամենայն առաքինութեան կինն Թուրվանղէն՝ տեսեալ զսորա անհաղին սպառնալիքն և զանճառելի .ւսետիքն և նռափափաք սրտիւ և յաւժար ... կամաւք ստացաւ զսուրբ Աւետարանս յիշատակ իւր և հասարաթամահ որդոյն իւրոյ՝ փեսա Պուտախին, որ էր որբ և էղզար(՞)մնացեալ ի հօրէն իւրմէ ի պարոն Սարգսէն, որ էր խիստ գովելի և իմաստուն և սիրելի ամենեցուն. որ և նա թուխ մուրուաւք խեղճ մեռաւ և հասարաթով եթող սուգ ընդանեաց իւրոց՝ սա այս դեռաբոյս պատանիս, որ մնաց ժառանգ ի բարի հօրէն իւրմէ. և սա տարաժամ մահով և կարճամահ և մանկամեռ փոխեցաւ ի քրիստոս։ Եւ ողորմելի մայրս՝ Թուրվանղէն զայս /// սորոյ խոհեմութիւն արիութիւն ողջախոհութիւն և արդարութիւն և այլ բազում պատճառս յորս գաղափարի չորս գլուխ աւետարանիչքս։ Զի թէպէտ բազում բանք, որ երևին ի սա ներհակ միմեանց, այլ քաջ ճշմարիտ և յոյժ միաբանք միմեանց։

(3) ամենայն անասելի կսկիծ տեսեալ և դառն սրտում կենօք և լալոտ աչօք անցոյց զսակաւ ժամանակս, և ապա՝ հետ Բ. (2) ամաց՝ խեղճ ողորմելի մայրն Թուրվանղէն ... փոխեցաւ ի հանգիստ, և եղաւ առ սիրուն որդոյն Պուտախին, և Ամիր-Սարգսին, վասն որոյ ամենեքեան ուղիղ սրտիւ և լի բերանով աստուած-ողորմի ասացէք հասարաթամահ շողպատկեր Պուտախին. և հօր և մօր նորին, ամէն։ Եւ զմնացեալ յիշատակս նոցա զպարոն Ջաջուն, և զծնողս իւր՝ զոէս Յովաննէսն և զխաթուն-Մէլիքն. որ յայսմ ամի երկուքն փոխեցան ի Քրիստոս՝ ի միում ամոան, և վասն որոյ աստուած ողորմի ասացէք։ Այլ և Թուրվանղին դստերն՝ Գուլիմսուն, որ և նա ի սոյն ամի՝ հարսն փոխեցաւ ի Քրիստոս, և մնացեալ դստերացն Թուրվանղին՝ Բէկի-խաթունին և Պստիկ-խաթունին /// Գուլիմսրին, որ երեք ամսէն պսակած հասարաթամահ եղև, և զկենդանի յիշատակս նոցա զպարոն Միբայէլն, և զծնողսն իւր, և զոէս Մկրտիչն, և զԳուլիմսրին. այլ և զմայրն Մուղամն և /// Ղադամ /// զՄիբայէլն, և զամու-

---

* Հիշատակարանի 6-րդ և 7-րդ հատվածների սխալաշատ ընդօրինակությունը տպագրված է Հ. Տեր-Հովհանեանցի «Պատմութիւն Նոր-Ջուղայի» աշխատության Բ հատորում (Ն. Ջուղա, 1881, էջ 304—305)։

*սինն իւր զնուբարն, որ գնաց առ աստուած Գ. (3) զաւակօք, և զմիւս կենակիցն իւր զԹամսի-խաթունն, և զնորաբողբոջ զաւակս նորա զՇախզադէն և զՇաղաւաթն ...զնոր տանուտէրն զպարոն Ջաջուռն, որ տղայհասակ՝ Ի. (20) ամաց՝ ի տանուտրութիւն հաստատեցաւ, և է ձեռնաւոր գեղիս։*

*(Թ) Արդ, յանկ ելեալ աւարտեցաւ աստուածախօս և աւետաբեր սուրբ Աւետարանս ի Թվ. ՋԽԷ. (1498) ամին, ի գաւառս Քաջբերունի, ի գեաւղս Ասպիսնակ, ընդ հովանեաւ սուրբ Ստեփանոսի և սուրբ Երրորդութենիս։*

*Եւ արդ, յայսմ ամի յորում թվականն էր ՋԽԷ. (1498) և տանուտէր տարոյ կոյսն*, ի ձըմըռնային սառնասառոյց ժամանակի, որ էր աւր Սահմի-փետրւար ամսոյ**, եղև փորձութիւն և նեղութիւն Հայոց ազգիս, զի արեանարբու և գազանաբարոյ զօրքն խմայէլեան և հեծեալքն Պարսկաստանից շրջեցան ի Հայաստան աշխարհն։ Նախ ի գաւառն Վասպուրական՝ ի Վան և յՈստան անթիւ բազմութիւնք հեծելոց, որ էր ԺՌ. (10,000), ընդ ինքեանս ունելով զնորընծայ փադշահն զԱլուանդ. և կացին անդ ԺԵ. (15) աւր, ուտելով և առնելով, ծեծելով և խլելով՝ զրկեցին զտառապեալ ազգս Հայոց։*

*Եւ ապա անդի ելեալ եկին ի գաւառս Քաջբերունոյ անհամար աղդ թաթարաց. և եկեալ նստան և ձմեռնացան քաղաքովն և երկրովն։ Եւ ի սաստիկ ցրտասասառոյց եղանակին՝ զմարդ և զանասուն ի տանէն հանէին և ինքեանք մտանէին ի ներքս՝ գրաստօքն իւրեանց. և զկերակուրսն, զոր ամբարեալ էին մարդոյ և անասնոյ՝ զամենեսեան ըմբռնեցին և առին։ Եւ նովաւ ոչ բաւացան, սկսան չարչարել զքրիստոնեայսն վասն խոտի և յարդի, գարոյ և դինոյ, և վասն կերակրոց և ըմպելեաց։ Այլ և բազումք ճարճ ձգեցին ի վերայ քրիստոնէից, որ ի գլուխն ԲՌ. (2000) դահեկան։ Եւ բազում տանջանօք չարչարէին զքրիստոնեայս՝ (2) կախէին և ծեծէին և ի բանդ արկեալ՝ պահէին յերկաթս մինչև չտային զհարկս։ Եւ անմեղ քրիստոնեայքն տոռեալ և կապեալ էին, զի ոչ կարէին նստել վասն ահի և երկիւղի անօրինացն, և ոչ կարէին փախչել վասն սաստկութեան ձըմեռանն, զի ձիւնամեծ էր և ձիւնն սառկասառոյց առեալ էր զդուռն։ Եւ քրիստոնեայքն ահաբեկ եղեալ ոչ գիտէին եթէ զինչ արասցեն։ Եւ այս ամենայն նեղութիւնս մարգկան եղև, իսկ անասնոց խեղճն և սովալլուկ լինելն ո՞ կարէ պատմել։ Քանզի յորժամ հատաւ խոտն և յարդն և գարին և դեռևս ձիւնն առեալ ունէր զդուռնս և անասունքն յոյժ նուաղէին և դարման ոչ գտանէին, վասն որոյ ամենեքեան կոչելով, աղաղակելով, բայելով, կռնչ[ել]ով գետազան սովամահ մեռանէին, և ողորմելի քրիստոնեայք զիւրեանց խեղճն թողեալ՝ զնոսա ողորմ լացին, և աւաղէին դիաթաւալ շ /// ջել անասն /// անհաւատ զօրն թաթարաց այնչափ կացին և նստան մինչև հատաւ խոտն և յարդն և գարին, և ապա յարուցեալ դարձան և գնացին ի տեղիս իւրեանց՝ ուստի եկեալ էին։ Զի ի սուրբ Սարգսէն*** մինչև ի ծառազարդարն յայսպիսի նեղութիւնս եկաց քաղաք և երկիր, վանք*

* *«Պտմ. Նոր Ջուղայի» ունի՝ «տանուտէր տարւոյն խոյն»*

** *«Պտմ. Նոր Ջուղայի» ունի՝ «որ էր օր փետրվարի հինգն»*

*** *Սուրբ Սարգսի տոնը 1498 թվականին եղել է փետրվարի 10-ին, իսկ ծառզարդարը՝ ապրիլի 8-ին։ Այսպիսով Քաջբերունիքի հայերի տառապանքը տևել է շուրջ 2 ամիս։*

և անապատ։ Իսկ նոքա որ գնացին ի Թաւրէզ և խառնեցան ընդ Իբայ-Սուլթանին, և դարձեալ անդրէն բարդար(*) յըղըրկեցին ալեկոծեալ երկիրս Արճիշոյ, և ողորմելի քրիստոնեայք ահաբեկ եղեալ էին և յուսահատեալ։ Վասն որոյ ամենեքեան ելեալ փախստական եղեն տամբ և ըռզա-կօք յօտար երկիր, և գնացեալ մնացին մինչև ի ժամանակս համբարձմանն և պենտակոստէն, որ է յեղիական պասն։ Եկեալ բերին զՄուրատ-խանն՝ զորդին Աղուբ փադշահին ի Նամախոյ ի դուռս, և եկին ի գաւառն Միւնեաց, որ է Ալնջայ: Զայն լուաւ Իբայ-Սուլթանն (1) /// եկեալ բազում հեծելով և ճակատեցան ընդդէմ իրերաց առ ափն Երասխայ: Եւ ոչ կարէին պատերազմել վասն հորդասահութեան գետոյ, մինչև փոքր մի նստաւ ջուրն։ Եւ ապա պատերազմեալ՝ արարին բազում կոտորումն։

Եւ առ Իբայ-Սուլթանն [զՄուրատ]-խանն, և տարեալ ընկէց ի բերդն Մակուայ, և արար գալուալական ի դղեակս նորա։

Իսկ Ղասում պարոնն՝ որդին Ջհանգիրին, որ էր ի յԱմիդ և ի Մերդին, իբրև լուաւ զառաջանալն Իբայ-Սօլթանին, և յարուցեալ բազում հեծելօք և եկն պատերազմել ընդ նմա, և եկեալ պատահեցան միմեանց ի ստորոտ լերին ի Սուկաւ, որ է Քոսադաղ, և կացին դէմ իրերաց ԺԷ. (17) օր։ Իբրև գիտաց Ղասում ըզզօրութիւն [Իբայ-Սօլթանին՝ եղև փախստական։ Իսկ]* Իբայ-Սօլթանն զհետ գնացեալ ոչ եհաս նոցա, վասն որոյ զբարկութիւն սրտին յանմեղ քրիստոնեայսն եհան՝ ետ ասպատակաւ քանդել և աւերել և թալանել զգաւառն Բասենոյ և զԱւրնկոյ, որ էառ լերամբքն և մայրիւն Լիբանանու։ Եւ շրջեցան հեծելազաւրքն ի յերկիրն ամենայն, և առին զամենայն առ ի զաւար մինչև ի Կառնոյ քաղաքն, որ Թէօդուպալիս, որ կոչի Արզրում: Եւ ապա անտի դարձաւ Իբայ-Սօլթանն և եկն ի յԱղոյեռվիզն, ունելով ընդ իւր զնորընծայ փաթշահն զԱլուանդ՝ զորդին Իւսօֆ-իմիրզին**, և եկեալ նստաւ յԱրճէշ աւուրս և տեսեալ զկարմունջ գետոյ նորա աւեր և խորտակեալ. վասնորոյ հրաման ետ շինել զկարմունջ գետոյ։ Իսկ նենգաժոտ ազգն մահմեդական մատնեցին զգերեզմանսն քրիստոնէից, որք էին տապանք մեռելոց ի վաղուց ժամանակաց: Զնոցա քարինս ասաց քակել և շինել զկարմունջն, և աստուածուրաց ազգն անօրինաց սկսան քակել զշիրիմն հարց մերոց և տարան ի շինումն կամրնջին։

(4) Իսկ ի հասանելն մեր ի Նաւասարդն դարձեալ եղև սուգ անմխիթար և կսկիծ աղիողորմ ազինս Հայոց, զի նենգաւոր և ոխակալ ազգն Մարաց դարձեալ զօրացան և եկեալ ասպատակեցին զերկիրն Ռշտունեաց. և արարին բազում առ և թալան։ Աւրըստաւրէ սպասէին առման վասն աստուածապահ կղզոյն Աղթամարայ, ասելով թէ զինչ ի ծովու բոլորս մալ և գանձ կայ՝ ամենայն անդ է եդեալ։ Վասն որոյ ի դիպող ժամու կալան Դ. (4) փուռն և մտեալ ԲՃ. (200) քուրդ յանարիկ կղզին Աղթամար, և առին զամենայն ոսկի և զարծաթ, զգանձ և զկումաշ, զգիրք և զաւետա-

* Ձեռագրում անընթեռնելի բառեր են եղել։ Լրացնում ենք ինքներս, բովանդակությունը հասկանալի դարձնելու համար։

** Մ. Տեր-Մովսիսյանի մոտ՝ «Ըասօվֆի Միրզին», սրբագրում ենք ըստ այլ աղբյուրների։

*ռան, զաչ և զխաչ, և արարին զԱղթամար որպէս հուղս մրգապահեաց՝ ըստ յառաջատեսութեան Դաւթի, որ գուշակեաց վասն Երուսաղէմի, և ասաց աստուած՝ Մտին հեթանոսք ի ժառանգութիւնս քո և պղծեցին զտաճար սուրբ քո, աստանօր այն կատարեցաւ ի վերայ Աղթամարայ։ Եւ այս ամենայն, որ եղև և եկն ի վերայ մեր, վասն մեղաց մերոց։*

*(7) /// ամենեցուն, և զբարի ամուսինն զԽաթուն-Փաշէն, և զնորաբողբոջ զաւակս նորա զԽօշխաբարն, զԿարապետն, և զքոյր նորա զՋանաղէն, այլ և հարազատ եղբայր իւր զպարոն Մարշէն, և զկենակիցն իւր զԽանումն, և զզաւակս նորա զԽանզադէն, և զերախտաւոր քոյրն իւրեանց զՄուղալն, և զզաւակս նոցա, և զամենայն արեան մերձաւորսն՝ զկենդանիսն և զննջեցեալսն ի Քրիստոս, ամէն։ /// զպարոն Ջաֆ[ուռ /// և զՄիրզայեյն, և զՄարշէն, և զիւրեանց մեծ պապերն՝ զՅովասափն...*

*Փծուն գրիչս զԲարսեղ սուտանուն քահանայ և գործով ունայն և թափուր զիմ անարժան երեսս ձեզ ի գետին դնելով՝ միոյ աստուած-ողորմոյ արժանի առնել՝ զիս զեղկելի գրիչս, և զհայրն իմ զՄկրտիչն, և զմայրն իմ զՄելիքն, և զամուսինն իմ զՄուարքն, և զզաւակսն՝ զՎարդանճէսն և զՅովհաննէսն, և զուսուցիչն իմ զտէր Ազարիայն, և զԿարապետ քահանայն, և զձեր /// երախտիք ունի ի վերայ իմ և /// նոցա վարձահատոյց լիցի միւսանգամ գալուստ, ամէն*։*

## 349

## ՄԱՇՏՈՑ

**Երևան 960**

Գրիչ՝ Վանական
Վայր՝ Զորէվանք

ա

*...Արդ, յերեսս անկեալ աղաչեմ զմանկունս սուրբ եկեղեցւոյ, որք հանդիպիք աստուածաշունչ կտակիս որ կոչի Մաշտոց, որ է սա կատա-*
307ա *րեալ է. (7) խորհրդոյ եկեղեցոյ և ունի սա շարադր//եալ յինքեան զեւթն*
*աստիճան եկեղեցոյ, այլ և զամենայն հոգէկան և մարմնական անդամոց մերոց. զոր թէ կամիս շուտով գտանես ի յըսկիզըն դրոցս նկարեալ ի ցանկն։*

*Արդ, ես՝ յետինս ի կարգաւ[որ]աց և տրուպս ամենայն եկեղեցայականաց Վանական եղէ ցանկացող այսմ գանձի և պատուական մարգարտի, ի նեղ և դառն ժամանակի, որ եղև հալածումն ի վերայ ամենայն քրիստոնէից։*

---

** Հիշատակարանի թերթերը, ըստ երևույթին ձեռագրի կազմելու ժամանակ՝ շփոթվել և սխալ են դասավորվել։ Մ. Տեր-Մովսիսյանը չի նկատել այդ, և հիշատակարանն ընդօրինակել է հենց այդպես՝ թերթերի խառն դասավորությամբ։ Ձեռքի տակ ունենալով ընդօրինակության մեքենագիր օրինակը, իհարկե, դժվարությամբ միայն հնարավորություն պետք է ունենայինք շտկելու հիշատակարանի խառնված պարբերությունները ու մասերը։ Այդպիսի մի փորձ, այնուամենայնիվ կատարեցինք։ Հիշատակարանի մեր վերակազմած բնագրի հատվածները համարակալել ենք (պարբերությունների սկզբում, փակագծերի մեջ թվահամարներ նշանակելով)՝ ըստ մեքենագիր օրինակի համապատասխան հատվածների հերթականության։*

Զի եկն Մուրատ-Խանն ի Շամախոյ, որդի Յաղուպ-Բէկին, և չուեալ
եկն ի Բազարչայն՝ էած հալածումն ի վերայ ամենայն քրիստոնէից։ Տան-
ջէր զաշխա[րհա]կանս և զկարգաւորքս և ասէր. Տուք զչիրզայն, թաւա-
ութ-ի չիղրայն, թասխիր-ի թաւ[ա]ութ*. զի ոչ գիտէին, թէ զինչ բարբան-
ջեսցեն և տանջեսցեն զհաւատացեալս։ Եղև հալածումն ի յերկրիս Վայո-
ձորոյ. փախեաւ ամենայն երկիրս ի լերինս և ի ծերպս վիմաց։ Ի սոյն
ժամանակի եղև իսկիզբ գրոցս, ի գուղս, որ կոչի Փոնձաքաղ. գրեցօ մին-
չև ի Սրբեալ տաճարին**։ Եւ անդի գնացեալ ի վանկս Զորիվանս, զաւուրս
Լ. (30) փաղչելով գրձագրեցաք, մինչ ի մկրտութիւնն***։ Եւ անդի փա-
307բ խէաք ի ձորակս, որ կոչի Ծակքար, // և անտի ոչ եւո թուլ սատանայ, և
ած ի վերայ տաճիկ մի փիատայ, և փախըստական արարեալ զկրաւնա-
ւորքս։ Եւ իմ՝ առեալ զաւրինակն, փախչէի ի ստորոտ լերինն, և նորա
հետամուտ եղեալ զհետ իմ, և ես առ տէր աղաղակելով փախեա մղաւն
մի, և զերծոյց զիս տէր ի նմանէ, և ոչ կարաց հասանել։ Նորա դարձեալ
ի տեղին, որում ըղխրճիճսն արարեալ էինք, տարաւ զաւանակն վանիցն,
և եթող զբեռն ի վերայ միաբանիցս, զի տէր աստուած դիցէ զբեռինս մե-
ղաց սոցա ի յուս նորա և առաքեսցէ իւր ինքն կամեսցի։

Ի ամսեանն հինգերորդի եկն Իպի-Սոլտեանն ի Դայեվրէժոյ, եւ եղեն
ճակատ առ ճակատ, և ախտահարեալ զՄուրատ-Խանն, և արար զնայ
ձերբակալ, և եդ ի բանտի, և ինքն գնաց ի Արզրում, ի վերայ Ղասում-
բակին. եղև խաղաղութիւն։

Եւ իմ դադարեալ ի տեղին, որում հալածեաց տաճիկն, դրձագրեցի
մինչ ի Կոչումն յապաշխարութիւն****։ Եւ անդի ոչ եւո թուլ ոսոխն. էած ի
վերայ իմ իժ մի. և իմ հայեալ ի յաւրինակն, կայր իժ մի մերձ ի յաւրինա-
կըն, և բանայր զբերանն առ իս. իմ զայն տեսեալ՝ զահի հարեալ փախեա։
308ա Եւ իջի վանկս Զորէվանս, // աստ վճարեալ, ի դրան սուրբ Աստուածածնի
տաճարիս, ի աջոյն սրբոյն Կուրղի հայրապետին, և մարմարոնեա սուրբ
Գաբրիէլի, և սրբոց Վարդան[ան]ց նշխարացս, և այլ սրբոցս, որ աստ
կան հաւաքեալ։

Եւ եղև գրաւ դծագրութեան սորա ի թվիս Հայոց ՋԽԷ. (1498), առ
ոտս աստուածաբան վարդապետացս Վարդան վարդապետի, և Աբրահամ
հռետորի, եւ առաջնորդ սուրբ ուխտիս տէր Զաքարիա բարէմիտ կրոնա-
ւորի, և այլ կրաւնորացս՝ զտէր Վրդանէս հայրպետն, զմիւս զտէր Վրդա-
նէսն. որ զկէս գրոցս թուղ[թ]ն կոկեց, եւ միակեցք Բ. (2)՝ զԱկոբ կուսա-
կրոն, եւ զընկեր նորին զՂուկասն, ի ղանութեան Ալպանտ իմիրզայի, որ-
դի Յուսուփ-բէկի. թոռն մեծ Հասն-բակին, ի աթոռակալութեան սուրբ էջ-
միածնին տէր Սարգսի, եւ իշխանց տեղոյս պարոն Արղութայի, թոռն մեծ
Զումային:

* Պարսկերեն «Տվեք չիղիան, չիգիայի տարբերությունը և տարբերության թերացումը»։ Ըստ Ղ. Ալիշանի՝ «Տուք զհարկն և վաղվաղակի տուք» («Սիսական» էջ 209)։

** Այսինքն՝ մինչև ձեռագրի 33բ էջը, որից սկսում է «Կանովն պղծեալ տաճարի» մասը։

*** Այսինքն մինչև ձեռագրի 80բ էջը։

**** Այսինքն մինչև ձեռագրի 234ա էջը։

ի յայսմ ամի եղև հարուածք մեծամեծք, և եհար Իսլա-Սոլթանն քաջ ասպարապետն Ալպանդ միրզաին՝ յաղիս Դ. (4). և ած ուեր ի վերայ յերկրին Բասինու, և կողոպտեալ զամէնեսեան. եւ էրէրայր ամենայն աշխարհս իբրև զնաւս հողմայկոծեալ այլեաց ի մէջ ծովու, ի տեղիս տեղիս մահ։ Այս ամենայն եկն ի վերայ մեր վասն ծովացեալ մեղաց մերոց։

303բ Արդ, ես՝ Վանական հէք, փանաք, որ միայն զանունս ունիմ և ոչ զգործս, որ շնորհաւք սուրբ հոգոյն ըսկսեալ և ողորմութեամբ նորին կատարեալ, յիշատակ ինձ և ծնողաց իմոց՝ հոգևոր վարդապետին իմոյ Յակոբ վարդապետին, եւ պապոյն մերոյ Աստուածատուր տնտեսին, և ծնողաց մերոց Էռնէլշային, և զմայրն իմ Հռիփսիմա, և եղբարցն իմ Դաւթին. Միրանշաին, Իսպահանշաին, զՋանիբէկին, զԱստուածատուրն, զԹումայ դպրին, զոր տէր աստուած վայելել տացէ, եւ զքեռսն մեր՝ զհանգուցեալսն առ Քրիստոս՝ զՄինախաթուն, զԽորիշայ, և զկենդանիս զՇահինար, և զհօրաքուր մեր զԽոնթշայ, և զԴունարին կողակիցն Մանիշակ, և սիրելի մաւրաքուր մեր զՄարղայն, փոխեցեալն առ Քրիստոս ՋԽԶ. (1497) թվ[ականին], էթող մեզ տրտմութիւն։

Դարձեալ, կրկին անգա[մ] աղաչեմք յիշել ի տէր զվերոյգրեալքս ի սմա զտէր Զագարա քարէմիտ կրաւնօոր՝ առաջնորդ սուրբ ուխտիս, և զեղբայր սորին զԱկոբ միայնակեցն, որ զաւրինակն շնորհեցին, և քաղում սպասու ջանացին առ մեզ...

Բ

90բ Ո՜վ տղայացեալ մանուկդ Յիսուս, դու ողորմեա ամենայն հաւատացելոց և ինձ մեղուցեալ Վանական սուտանուն կրօնաւորի, վա և եղուկ, զի կամ ես ի ծերպս վիմաց սասանեալ և տարէկուսեալ ի ահէ անօրէնաց, ի թվ. Ջխէ. (1498)։

Գ

234ա Վա՜յ 'ւ եղուկ, զի կայի ի մէջ վիմաց, ի արգելական խցի, ի հայեւ յաւրինակն տեսի իժ մի, զի մերձ էր ի օրինակն. և տեսեալ զահի հարայ և փախայ։

## 350

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 3048

Գրիչ՝ Առքստակէս
վայր՝ Ձորայ վանք

290ա ...Արդ, գրեցաւ նամակս աստուածային և արարչին խաւսեցեալ կտակ և բանին կենաց հրամաեալ բանս՝ սուրբ Աւետարանս աստուածաբան և աստուածախաւս ի թուաբերութեանս Ջխէ. (1498), ի վանքս Ձորայ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Ակոփէս, սուրբ Ամէնափրկչէս։ Ի թագաւորութիւն Առքստամ փատշային, Էմատ-խանին, թագաւորութեան Յալպանդ-միրզին, // պարոնութեամբ Յիպայ-Սուլթանին, հայրապետու-

*թեամբ տէր Շմաւոնի, եպիսկոպոսութեամբ տէր* Սարգիսին, *ըստ խնդրոյ և փափաքանաց և հաւատարիմ և ուղղափառ, պատուական* Երազիզ, *ամուսին իւր* Մանիշակ, *դեռայրուսիկ որդին իւր* Ստեփաննոս *քահանա...*

291ա *...Արդ յերեսս անկեալ աղաչեմ ... յիշեսջիք ըխաւարեալս հոգով, և զաղքատս ի բարեաց գործոց, զփծուն և զտխմար և զյետին գրիչ* զԱռքստակէս *սուտանուն...*

291բ *...Ողորմածն աստուած թողութիւն շնորհեսցէ ամենայն յանցանաց իմոց, և ծնաւղաց իմոց, և վարդապետին իմոյ տէր Թումին, և արժանի արասցէ երկնից արքայութեան, ամէն...*

## 351

### ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 3629**

*Գրիչ՝* Ալեքսիանոս
*վայր՝* Մաքենացոց վանք

*...Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվականիս Հայոց Ջխէ. (1498), ձեռամբ անարժան, հեք,* ֆան[*աք* /// Ալեքսիանո]սու, *միայն աբեղա. և գործով ունայն և վաթար եմ քան զամենայն մարդ, ի սուրբ ուխտս* Մաքենացոց, *ի դուռս սուրբ տաճարիս և հայր Սողոմովնի գերեզմանիս և այլ սրբոց, որ աստ կան. ի առաջնորդութեան սուրբ ուխտիս* Սարգիս *վարդապետին։ Եւտոյ եկաւ եպիսկոպոս մի* Դաքէոս *անուն, հակառակութիւն մէջ անկաւ, և ի չարէն ոչ եղև միաբանութիւն սոցայ՝ ելաք։* Ի *Մաքենիսն սկսա և [ի* Վ]ասակաշէն *վճարեցի։ [Այսմ ամի եղև /// խռովութիւն խիստ,* Եսայ-Սալթան *անուն պարոն էառ* զԱհմատ-խանն *և* զՄուրատխանն, *և էած աւեր աշխարհի, զերեք տարէն մալն* Գ. *(3) ամսումն էառ։ Աստուած զիւր ումր կարճ անէ սրբոց բարեխաւսութեամբ, ամէն։*

## 352

### ՄԱՇՏՈՑ

**Երևան 1084**

*Գրիչ՝* Փիլիպոս եպիսկոպոս
*վայր՝* Հաղբատ

43ա *Ո՜վ սուրբ հայրապետ և անուանակիր սրբոյն* Սարգսի *զաւրավարին, և սրբասնունդ եպիսկոպոսք, և սիրողք սրբութեան քահանայք, և սարկաւագունք, և անմահութեանց արժանաւորք դպիրք, և ժողովուրդք, յերես անկեալ աղաչեմք զհանդիպող եղբայրքդ սուրբ էջմիածնի աթոռոյդ՝ յիշել ի սուրբ յաղաւթս ձեր զնուաստ ոգի* զՓիլիպոս *եպիսկոպոս՝ սակաւ աշխատող տառիս, և ինքն ողորմածն աստուած ողորմեսցի ձեզ և մեզ ի միասին յաւուրն ահեղ առենին իւր, ամէն, ամէն։*

---

* *Գրչի անունը՝ Ալեքսիանոս պատռված է, վերականգնում ենք Մաքենացոց վանքում նույն ձեռագրով ընդօրինակված № 220 (1499 թ.) գրչագրի հետ համեմատելով։*

Գրեցաւ ի սուրբ ուխտս ի Հաղբատ, առ ոտն տեառն Սարգիս կաթողիկոսին ամենայն Հայոց, յորս էաք փախուցեալ ի յանաւրինաց վասն դառնութեան ժամանակիս և ծանր հարկապահանջութեան. ՋԽէ. (1498) թվ.։

## 353

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6273 (Ղ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան հայոց), էջ 373, Վան՝ Տիրամայր եկեղեցի

Գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Հաղբատ

...Եւ արդ տրուպս յամենայնի Մկրտիչ լոկ անուամբ աբեղայս գրեցի զսա ի թուին Հայոց ՋԽէ. (1498), ի հոչակաւոր սուրբ ուխտս Հաղբատու, ընդ հովանեաւ տէրունական սուրբ Նշանիս և այլ բազմահաւաք սրբութեանց. ի հայրապետութեան տեառն Սարգսի ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս տէր Իգնատիոսին, ... ի խնդրոյ խոճայ Կարապետին և իւրայնոցն ամենեցուն։

## 354

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 8409

Նկարիչ՝ Աբրահամ
վայր՝ Սևան կղզի

ա

13բ Թվ. ՋԽէ. (1498).
Ջաստուածաբան մեծ բաբունի՝
ԸզԴանիէլ քաջ և արի՝
Եւթնարփենի շնորհիւ իլի,
Մեկնէ զբանս համասեռի,
Նստեալ ի սուրբ Սևան կղզի,
Առաքինեալ և անուանի.
Լոյս ծագելով ամենայնի
Ի ժամանակս դառն և յետի։
Սա զարդարէ զեկեղեցի,
Եւս առաւել զՍևան կղզի
Ի զանազան զարդ պերճալի,
Պճնեալ ի տիպս հրճուելի,
Որպէս և այս մատեան բանի՝
Աւետարեր տեառն Յիսուսի.
Եւ զսա գրել իմոյս ձեռին
Յետ այրեցմանն դիւացն ատի.

Յիշման առնէք զսա արժանի
Ով ոք կարդա կամ հանդիպի։
Նայ և զգրչակս յետ ամենի։
Կարքօորաց, որ կան յերկրի,
Եւ դուք առջիք վարձս բարի
Բարեաց տուողէն յամենայնի։

Բ

93բ Զաստուածարան մեծ րաբունին՝
ԶԴանիէլ՝ մեկնող բանի,
Զստացաւղ սուրբ մատենիս,
Եւ զաշակերտ նռայմեծիս
ԶԱբրահամ անվարժ գրչիկս՝
Յիշել յաղօթս ձեր արժանիս,
Եւ դուք առնէք վարձս բարիս։

Գ

15բ ԶԱբրահամ նկարիչս յիշեա և ասա միշտ տէր ողորմեա*։

## 355

## ՃԱՇՈՑ

Նոր Ջուղա 435, ՄՏՄ

ա

120ա Զստացող սուրբ գրոցս զքարեմիտ և զնրչանիկ զպատուական ծերունի քահանայ զՄեսրովբ և զորդին իւր զՄելքիսէթ քահանայն յիշեցէք, և զիս՝ զմեղուցեալ անարհեստ գրիչս ի սուրբ յաղաւթս ձեր, և աստուած զձեզ յիշէ։

Բ

Ծաղկող՝ Ստեփանոս Աորնջեցի

120բ Իսկ նըկարեալ եղև սմին
Ձեռամբ փըցուն յարհեստ գըչին՝
Ստեփանոս եպիսկոպոսին.
Որ գաւառուն յԱյրարատին,
Ի խնդրոյ տէր Մեսրոբին
Եւ իր որդո Մելքիսէքին.
Հայրապետութեան տէր Սարգսին,
Նստեալ յաթոռ Լուսաւորչին,
Իննհարիւր քսան թվին**,

* Աբրահամ նկարիչի ծաղկած այս ձեռագիրը հիմնականում ընդօրինակված է 1471-ին (տե՛ս ԺԵ դարի հիշատակարաններ, մաս Բ, էջ 315)։ Աբրահամը, ըստ երևույթին, ի նատար է ածել ձեռագրի ընդօրինակությունը և վարպետորեն ծաղկել է այն՝ ձեռագրի բուն մասի գրությունից մի երկու տասնամյակ հետո, ավարտելով այդ գործը 1498 թվականին։
** Բնագրում՝ «Ջի. թվին»։

Ելից զԹիւ վեց քառասնին.
Եւ Ըռըստում մեծ պարոնին՝
Նստեալ ի Թախտն ի Հօլաւին,
Եւ ժառանգեալ զաշխարհս նորին՝
Մինչև ի ծովն Հընդկային.
Բայց ծաղկեցաւ գիրս Թվին
Ջխէ. ամին (1498)...

### 356

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Փոկա գյուղ, ՄՏՄ, Ալիշան, «Սիսական», էջ 161**

*Գրիչ՝* Աստուածատուր
*վայր՝* Եղեգնաց վանք

*Գրեցաւ ի յանապատիս* Եղեգեաց, *ընդ հովանեաւ սուրբ Ամենափրկչի տաճարի, ձեռամբ* Աստուածատուր *անպիտան ծառայի, ի Թվին Ջխէ. (1498) ... կինն* Մամէն ... *յիշատակ ... հայրն* Ղուպաթին, *և մայրն* Գուլիճանին, *և եղբօրն* Մամին՝ Քեղպարին, Ելէճսիանոսին, *զՀապելն.* Ղազէն, Մարգարէ, *զքոյրսն* Սելվիկն *և զ*Մարիամն, *և զայրն և զ*Ֆարամազն**, *և զորդիսն՝* Ազիր, Վրդանէս, *և* Վարդան, *և* Ջուլայն, Ջալում, *զ*Գարիանայ***, *և զհոգևոր որդին* Մամին՝ Ստեփանոս, *զ*Հէկազն, Բարէն, Ղուկասն, Նուկարն, Դանիէլ, Միրզէն, Ոսկան. *և հարսներն* Եղիսաբէթն, *զ*Ալախաթունն...

### 357

### ՇԱՐԱԿՆՈՑ

*Երևան 2445*

*Գրիչ՝* Կարապետ Բերկրցի
*վայր՝* Բերկրի

346ա ...*Աւարտեցաւ աստուածաշունչ տառս, որ կոչի Շարակնոց ի դառն և*
*ի նեղ ժամանակիս, ի յաւուրս* Ալուանդ *փաթշախի, որ բազում աւերը*
*արար* Իքա-Սալքան, *և աշխարհս ի նեղութիւն հայեաց։*
*Ի թուականութեանս Հայոց ի Ջխէ. (1498) գրեցաւ սուրբ գիրքս ի քա-*
*ղաքս* Բերկրի, *ընդ հովանեաւ սրբոյն Գէորգեա զաւրավարին և յառաջ-*
*նորդութիւն սուրբ ուխտիս տէր Յուսկա որդւոյ՝ քաջ բաբունապետին*
Մկրտիչ *վարդապետի և* Ստեփանոս *արհեպիսկոպոսի, ձեռամբ յաւգնա-*
*մեղ և անարհեստ գրչի* Կարապետի Բերկրցոյ, *ի վայելումն* Ստեփանոս
*խաչընդուս կրաւնաւորին, յիշատակ իւրն, և ծնաւղաց իւրոց, և ամենայն*
*արեան մերձաւորաց։ Դարձեալ, աղաչեմ յիշել ի տէր* Ստեփանոս *կուսա-*
*կրաւն աբեղայն, որ ըստացաւ ըզսա ի հալալ արդեանց իւրոց՝ յիշատակ*
346բ *իւրն, ծնաւղացն՝ հայրն* Ղարիպշին *և մայրն* Ոսկան, *և եղ//բարցն* Աբրա-
համին, *և* Յակոբին, *և* Բախտիարին, *և քևերն* Բաճր-Ազըզին *և* Նշխունին.

---

* *Ղ. Ալիշանը հիշատակարանի բովանդակությունը վերապատմել է իր խոսքերով։*
** *«Սիսական»-ում՝ «Քարամազ»*
*** *«Սիսական»-ում՝ «Գայիանէ»*

և պապանցն՝ Սաղադին, և ամուսնոյն իւրոյ Մարթին, և Ստեփանոսին՝ երախտաւոր հաւրն իմոյ։

Դարձեալ, աղաչեմ յիշել ի տէր Յոհանէս վարդապետն իմ, որ բազում երախտիք ունի առ մեզ։ Ընդ նոսին աղաչեմ յիշել ի տէր զհանգուցեալն ի Քրիստոս զԴանիէլ եպիսկոպոսն, և զմիաբանքս սուրբ ուխտիս՝ զտէր Յոհանէս եպիսկոպոսն, և զհէքրպետ տէր Մխիթարն, և զմեծ տէր Մխիթարն. և զտէր Աստուածատուր Նրղաշն, և զտէր Թորոսն, զՎարդան, զՊաղոսն. և զտէր Մէլքսեդէքն, զԿիրակոսն, զՂազարն, զՅովանէսն, զԽաչատուրն, զՄկրտիչն, և զայլ ամենայն միաբանսն, և զմայրքեերքն իմ զՄրուարն. զԱրուսն, և զծաղկեալ զաւակսն իւր զտէր Կարապետն, զՅակոբն. զՍադաղէն, զԴարուէշն, զԽարտէշն. և զիւր եղբարքն, և զքոյրն իւր զՄէնրուքանէ, և զամենայն արեան մերձաւորսն, ամէն։

Դարձեալ, աղաչեմ յիշել ի տէր զքարի կինն զՍառէն, որ է. (7) շախ-
347ա ուխի ազնական եղև գրոցս, աստուած ողորմի իւր հոգուն։

Դարձեալ, աղաչեմ յիշել ի տէր զԿարապետ ծաղկաւղս. զմազաղատս զուգեցի, և գրեցի, և զարդարեցի ոսկով և ծաղկիւ։ Աղաչեմ զձեզ, ո՛վ սուրբ եղանակողք, յիշման արժանի առնել զիս, և ծնաւղսն իմ, և զեղբարսն իմ, և զամենայն արեան մերձաւորսն իմ. և որ լի և առատ աստուած-ողորմի ասէ՝ և աստուած իւրն ողորմեսցի, ամէն։

Դարձեալ, աղաչեմ յիշել ի տէր զհոգևոր հայրքն իմ և զուսուցիչքն իմ՝ զտէր Մինաս ծաղկողն, և զՊետրոսն, որ բազում երախտիք ունին ի վերայ մեզ. աղաչեմ զձեզ աստուած-ողորմի ասէք և աստուած ձեզ ողորմի, ամէն։

Ընդ նոսին աղաչեմ յիշել ի տէր զիրիցմէրն զԽանումն. որ Բ. (2) շըրուանով ազնական եղև գրոցս, աստուած իւր հոգուն ողորմի, ամէն։

Դարձեալ, աղաչեմ յիշել ի տէր զտէր Ստեփանոսի հարսներն՝ զՄրուարն, զԹուրվանդէն, զհանգուցեալ զՄրուարն, և զաւակսն իւրեանց՝ զԽլղարն, զՂազարն, զԿարապետն. զՂարիպշէն, զԱւետիսն...

347բ Ընդ նոսին աղաչեմ յիշել ի տէր զքուերորդիքն իմ՝ զՄխիթարն, զՍարգիսն, զՏոնապետն...

Որպէս դիւրին է նաւավարի խաղաղութեամբ հասանել յեզր ծովին, այնպէս գրչի՝ յետին գծին։

Ձեռքս փտի՝ ի հող դառնայ,
Գիրքս յիշատակ առ ձեզ մնայ,
Որք ընթեռնուք աւքտիք ի սմայ՝
Յիշէք առ տէր զգծող սորա։

358

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4955

Ծաղկող՝ Կարապետ Աղբամարցի

ա

294ա ...Արդ, այսմ դաղափարութեան ցանկացաւղ եղէ ես Թումայ միակեցս, և ետու գրծագրել զսա ի հալալ և յարդար վաստակոց իմոց, յիշա-

տ[ակ] հոգոյն իմոց, և ծընաւղացն իմոց՝ հաւրն իմոյ Սարխսին և մաւրն իմոյ Նազճաթունին, և եղբարցն իմոց Ֆառճաւին, Հայրայպետին, և Մխիթարին, և այլ ամենայն արեան մերձաւորացըն մերոց՝ կենդանեաց և հանգուցելոցն։

294բ Ես Թումայ միակեցս եստու զսուրբ Աւետարանս || ի գեաւղս, որ կոչի Առնաց, ի դուռն սուրբ տաճարիս Գէորգայ, ոչ ոք չիշ[խ]եսցէ հեռացուցանել զսա կամ ծախելով կամ գրաւելով, ոչ ի մերոց և ոչ ի յաւտարաց, և որ յանդգնի և արասցէ՝ նա պատժի ի Քրիստոսէ, ամէն։

Դարձեալ ... յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր զմեծ րաբունապետս զՍտեփաննոս վարդապետն, որ ԺԲ. (12) տարի շիւար մնաց, որ միակեց ի յաստուած փոխեցաւ և եղբայրքն կոծ չի էրին մինչև վարդապետն թ·ամամել էրետ...·

Եւ աղաչեմ զձեզ յիշեցէք և զիս՝ զանարժան ծառայս ծառայից աստուծոյ զԿարապետ ծաղկողս Աղթամարցի, և զծնաւղքն իմ, և զերախտաւորքն իմ՝ զանհաս փիլիսոփայքն, և զամենայն նր[ն]ջեցեալսն ի Քրիստոս...

Բ

18բ Զկարապետ ծաղկող Աղթամարցի*:

Գ

20ա Թվ. ՋԽԷ. (1498), ձեռամբ մեղաւոր Կարապետ քահանայի ծաղկողի Աղթամարցոյ:

Գրիչ՝ Յովանէս

Դ

236ա Զամենայն մեղօք զառածեալ ոգիս զՅովանէս սուտանուն գրիչ և զծնօղսն իմ՝ զՎարդաշախն և զՈւսլուն յիշեցէք ի Քրիստոս։

Ե

295ա Դարձեալ, աղաչեմ յիշեցէք ի Քրիստոս զուսթայ Մարտիրոսն զԱրռաճամցին, և զծնօղսն իւր՝ զԹադոս և զՋիզար, և զաներն իմ զՈղոմն, և զկենակիցն իւր զՇայխստան, և զկենակիցն զԱլամշայն, և զուսթայն զԱմիրմուլքն, և աստուած-ողորմի ասացէք նոցա, զի և աստուած ձեզ և մեզ ողորմեսցի, ամէն։ Զի զգրոցս զկաշի էրէտ, աստուած զիւր տա զարքայութիւն։

---

* Գրված է Քրիստոսի պայծառակերպության պատկերի ստորին եզրի վրա՝ երկաթագիր տառերով։ Գրությունը վերաբերում է պատկերի ձախ կողմում նկարված հոգևորականին, որը, այսպիսով, ծաղկող Կարապետի պատկերն է։

## 359

## ՄԱՇՏՈՑ

**Երևան 5181**

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Աղթամար

ա

206ա ...Արդ, այսմ աստուածեղէն և երկնապարգև գանձին և լուսափայլ և
ծաքուր մարգար<գար>տիս և անուշահո//տ և վարդափըթիթ բուրաս-
տանիս ցանկայցաւղ եղէ ես՝ մեղաւոր և անարժան ծառայս ծառայիցդ
աստուծոյ Ղբշախ-[խա]թունս և այրս իմ խուսն Մուրատս, ի խնդիր ելաք
այսմ աստուածունակ կտակիս, որ է հիմն և հաստատութիւն սուրբ հա-
ւատոյս մեր կաթուղիկէ սուրբ եկեղեցոյ և կարգաց քրիստոնէից, որ և կո-
չի անուն սորա Մաշթոց։ Վասն այսորիկ արարեր երանաշնորհ և
երանելին Մաշթոց վարդապետն, զի սովաւ աւրհնի եկեղեցի, եւ
հաստատի սեղան սրբութեան՝ յորոյ վերայ պատարագի Քրիստոս, սո-
վաւ աւրհնի աւազանն մաքրագործող, ուր երախայքն մկրտեալ լինին
արարողութեամբ կարգելոցն ի սմա որդիս աստուծոյ, սովաւ աւրհնի
206բ պսակ զուգելոցն յամուսնութիւն առ ի յած//ումն որդեծնութեան, սովաւ
կատարին զենմունք նուիրաց և պատարագաց՝ մատչին աստուծոյ առ ի
յիշատակ ննջեցելոցն, սովաւ աւրհնին սերմանիք և պտուղք անդաս-
տանաց և այգեաց մատուցողացն յանուն տեառն, սովաւ աւրհնի և այն
համեմիչ աւանդեալն յառաքելոցն, սովաւ աւրհնի և ջուրն մաքրիչ ամե-
նայն անմաքուր իրաց, սովաւ ընդունի աստուած զղջումն եկելոցն յա-
պաշխարութիւն, և սովաւ արձակին ապաշխարողքն ի կապանաց մեղաց
իւրեանց։ Սա քարոզէ զպատուիրանն աստուծոյ համարձակութեամբ ի լուր
ամենեցուն, սովաւ լուացեալ մաքրի աղտեղութիւն զարշապարաց մերոց,
զոր աւանդեաց տէրն իւրոց աշակերտացն ի մեծի հինգշաբթին, սովաւ
207ա աւրհնի և նշան պարծան//աց խաչին Քրիստոսի, յորոյ վերայ բեւեռի
Քրիստոս անմէկնելի հեղմամբ և երկրպագի յամենեցունց, սովաւ յուղար-
կին հաւատով և ուղիղ դաւանութեամբ վախճանեալքն առ Քրիստոս և
աւրհնեալ կլնքին գերեզմանք նոցա։
Արդ, այսմ աստուածեղէն և երկնապարգեւ գանձիս և լուսափայլ և
մաչքուր մարգարտիս ցանկացաւղ եղէ ես՝ մեղաւոր և անպիտան ծառայս
ծառայիցդ աստուծոյ խուսն Մուրատս և կենակիցս իմ Դիփչախս. և ետուք
գծագրել զսա և զԱյսմաւուրքս ի հալալ վաստակոց մերոց՝ յիշատակ հո-
գոյ մերոց, և մեր ծնաւղացն հաւրն Մարգարին, մաւ[ր]ն Խութլուին, և
եղբաւրն Առսմին, և զորդոյն Յովանիսին, և միւս եղբաւրն Կարապետին,
207բ և կենակցացն Խումարին և Քընճուշին, և քուերացն // Մարքային, և դըս-
տերն Շահնիբաթին, և միւս քուերացն Գուլմէլէքին և Արմէլէքին, և որ-
դոցն Վարոցին, Մարգարուն, Մխամին, և դստերացն Ջանիփաշին, և որ-
դոյն Ֆառխշին, Սալին, և որդոյն Ջանիարին, Սալբանին, և որդոյն Մու-
րադին, Գանջխայրունին, Աղաջանին, Խաչսալջանին, և այլ ամենայն
արեան մերձաւորաց մերոց՝ կենդանեաց և հանգուցելոցն ի Քրիստոս...

Դարձեալ, աղաչեմ յիշեցէք ի Քրիստոս զՂուփչախ-խաթուն, և զհայրն իւր զՍտեփանոս քահանայն, և զմայրն իւր զխալիմ-խաթուն. և զեղբայրքն իմ զՅովանէս և զՄուրատն, և զքուերքն իմ զխոճէն. և որդին Քուշաf, զՄրուաթ, Մէլիf-խաթուն:

208ա Դարձեալ, աղաչեմ յիշեցէք ի Քրիստոս և զիս զանարժան ծառայս ծառայիցդ աստուծոյ զԿարապետ քահանայս, և զծնաւղքն իմ զՅոհանէս և զՇարմելիf, և զհարեղբայրքն իմ՝ զմեծ և զընդրեալ փիլիսոփայքն և զքարտղողայքն զՄինասենց Թումայն և զՀայրապետ արեղայքն. և զՄինաս ծաղկաւղն և զՄուղդասին, որ երախտիք ունի ի վերայ իմ՝ ի ծաղկելս և ի գրելս. աստուած ուրենց վարձահատոյց լիցի, ամէն...

208բ Դարձեալ աղաչեմ լիլ բերանաւք և ուղիղ մտաւք աստուած-որորմի ասացէք ինձ՝ մեղաւորիս և իմ դառն սրտիս ի յայսմ աշխարհիս, զի ողորմածն աստուած ողորմէսցի ձեզ և ինձ՝ մեռեալ հոգոյս խուսն Մուրատշին. և իմ ծնաւղացն, ... և ինձ Կարապետ գծողիս*, և կենակցին իմոյ Ղամարխաթունին, և զաւակացն Մինաս սարկաւագին, Խաչատրուն, Շախբաշին, Սաղտումին, որ ի յայսմ ամի առ Քրիստոս գնացին և թողին ինձ սուք անմխիթար մինչև ի մահ։

Բ

Աղաչեմ զքեզ սուրբ Աստուածածին բարեխաւսեա առ որդիդ միածին զի թողցէ զմեղքն խուսն Մու[ր]ադին, և զկողակցին զՂփչախին, և գիրեանց ծնաւղացն և զաւակացն և զազանիացն** ամե[ն]այնի, և զԿարապետ քահանայ//ի, և զՄինասենց Թումայ անյաղթ փիլիսոփայի, և զՀայ-
257ա րապետ վարպետի, և զծնաւղսն մեր, և զկողակիցն, և զաւակսն, և աստուած-ողորմի ասացէք և աստուած ձեզ ողորմի և մեզ և այն քահանային, որ զյիշատակարանս կարդայ և զաստուած-ողորմին ասէ և զանբիծքն և զաւետարան կարդայ աստուած անեղով և ասէ հար մեր։

Քրիստոս զէն քահանայն աւրհնէ, որ զգիրքս խնամէ և ի յանձրևէ պահէ, նայ աստուած զիւր հոգին և զմարմինն խնամով պահէ և երկնից արքայութեան արժանի առ[ն]է, ամէն։

## 360

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 8449

Գրիչ՝ Ազարիայ

վայր՝ Ախլցխոյ գաւառ, Մողնոյ վանք

274բ ...Գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվականիս Հայոց ՋԽԷ. (1498), ի սուրբ և ի գերայհռչակ մենաստանս, որ կոչի Մողնոյ վանք, ընդ հովանեաւ կամայկատար սուրբ Աստուածածնիս, և սուրբ Գէորգայ զաւրաւա-

---

* Կարծում ենք, որ այս Կարապետ գծողը նախկին հիշատակարանի հեղինակ Կարապետ ծաղկող Առթամարցին է։ Համենայն դեպս անկասկած է, որ այս Կարապետը՝ լինելով Թումայ Մինասենցի աշակերտը՝ ապրել է ԺԵ դարի. 2-րդ կեսին։

Հիշատակարանը պայմանականորեն տեղադրում ենք 1498-ի թվաշարքում։

** Իմա՝ զազգայնոցն։

րիս, և այլ սրբոց որք աստ հաւագեալ կան։ Ձեռամբ բազմայմեղ և անար-
ժան քահանայի, որ անուամբ միայն եմ և գործով թափուր և անմաքուր,
որ չեմ արժան կրել զանուն Ազարիայ աբեղայի, ի խնդրոյ պատուական,
275ա երկիւղած, հաւատարիմ և աստուածայսէր // [Թանգազիզն, և այրն իւր
զԳալուստն, և զծնողսն իւր՝ հայրն իւր զՄկրտիչ և զմայ[ր]ն իւր զՀայ-
րաքն, և Լաշճարի որդիքն՝ զկենդանիք և զհանգուցեալքն, որ պատճառ
եղեն սուրբ Աւետարանիս առնելոյ... ]*։
Գրեցաւ ի ժամանակս պարոնութեան պարոն Ղորղորայի, որ այս
ամի փոխեցաւ առ Քրիստոս, զոր տէր աստուած ընդ սրբոց դասակից և
275բ պսակակից արասցէ, և քաջամարտիկ զաւակաց նորին՝ պարոն Քայի-//
խուսրովի և Միր Ջաճաքուկի, և հայրապետութեան գաւառիս մերոյ
Ախլցխայ տէր Սրապիոնի, զոր տէր աստուած հաստատուն պահեսցէ ի
վերայ գաւազանաց իւրոց, ամէն։

Ընդ նոսին յիշեսջիք և զիս բազմմայմեղ գրիչս Ազարիայ սուտանուն աբեղայս, և զծնողսն իմ Մելքիսէթ քահանայ, և զմայրն իմ զՄարգախաթունն, և զեռարոյս եղբայրն իմ Մինաս դպիրն, և հանիկն իմ Սադրջահանն:

Աղաչեմ զձեզ չմեղադրել խոշորութեան և սղալանաց գրոյս, զի զեռ այս առաջին էր և այլ չէի գրել։ Եւ որ զմեզ յիշէ ի տէր՝ ինքն յիշեալ լիցի ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Աստուած ողորմի մահդասի Սարգսին, որ թխթի կոկելն և թանաքն եփել նայ էլ ուգտեց։

## 361

### ԱՒԵՏԱՐԱՆ

Հ. Քյուրտյանի հավաքածու, 63

Զանարժանս Ազարիայ աբեղայս գրողս աղաչեմ յիշել ի տէր։ Ջխէ. (1498) թվին, աւրն կիրակի, փոխեցաւ պարոն Ղորղորան ի աստուած, որ եւ աստուած ընդ սրբոց դասակից եւ պսակակից արասցէ, ամէն։

## 362

### ԱՒԵՏԱՐԱՆ

Ե. Լալայեան, Ցուցակ Վասպուրականի 214, սյուն 525—526, Աղթամար 12

Գրիչ և ծաղկող՝ Պարսամ

Փառք... ուստի և տեսեալ զսորայ անճառ փրկագործութեան խորհուրդ ոմն ի լուսածնեալ զարմից սրբոյն Սիովնի, բարի և հաւատարիմ կին ոմն՝ Թավրէզ անուն՝ ցանկացող եղև կենսաբեր սուրբ Աւետարանիս, և ետ գրել ի հալալ և արդար վաստակոց իւրոց՝ յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնաւղացն Եղկանց Եղօին, մօրն՝ Սառային, և զաւակացն՝ տարաժամ հանգուցելոցն ի Քրիստոս Յիսուս, և առն իւրոյ Մսեճին, մականուն Ղու-

* Փակագծերի մեջ առնված հատվածը գրված է կամ նույն գրչի կողմից հետագայում՝ այլ գրչով ու թանաքով, կամ ուրիշի կողմից։

զիկ կոչեցեալ, և զաւակացն, և եղկանց ննջեցելոց, մեծու և փոքու նոցին, և ամենայն զարմից։ Որ ետ գծագրել զսուրբ Աւետարանս ի հալալ վաստակոց իւրոց, ի դառն և ի նեղ ժամանակիս, յորում կամք այլայլորան(՞) և փախուցեալ ի տեղաց տեղիս, թվականիս Հայոց ՋԽԷ. (1498), ի հայրապետութեան տեառն Առաքել կաթողիկոսի, ձեռամբ յողնամեղ և փծուն գրչի՝ Պարսամ սուտանուն քահանայի, որ անուամբս եմ և գործովս թափուր գտանիմ, որ ծաղկող եղէ և կազմող սուրբ Աւետարանիս։ Երեսս ի գետին աղաչեմ զձեզ լի բերանով աստուած-ողորմի ասացէք Մսեխին և Թաւրեզին, և իւրեանց ծնաւղաց, և զաւակացն, և ամենայն զարմիցն։ Ընդ նոսին և Պարսամ ծաղկողիս, և իմ ծնողքն, և ամենայն զարմիցն, ամէն։

Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս և զՅովճանէս քահանայն, և զեղբայրս զիւր զՄկրտիչն և զԴաւիթն, և ծնօղս իւրեանց, որ լաւ խնամ տանին ի վերայ Աւետարանիս։ Եւ որ յանզգնի և ծախէ զԱւետարանս, նա զվարձը զԿայէնին և զՅուդային առնէ, ամէն։

## 363

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6273 (Գ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան Հայոց), էջ՝ 373—374, Վան՝ Տիրամայր եկեղեցի

Գրիչ՝ Դաւիթ
վայր՝ Մոկք, Դինեկանց գիւղ

...Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ անարժան և ախմար գրչի Դաւիթ քահանայի՝ յընտիր և ի ստոյգ օրինակէ, կենօք տառապանօք և բազում պանդխտութեամբ և աղքի ազգի տրտմութեամբ, զոր վասն ծովացեալ մեղաց ժամանեն ինձ փորձութիւնք ամ յամէ, և ոչ տայ ինձ հանգչել ըստ սատացւոյն [Յոբայ] ասից։ Եւ է ի մեծ թուականիս Հայոց ՋԽԷ. (1498), ի կաթողիկոսութեան Հայոց տեառն տէր Առաքին և տէր Սարգսին, և ի ղանութիւն Թաւրիզոյ Այմատ խանին, որ ի յայն տարւոյն սպանեցին, յերկիրս Մոկաց, ի գիւղն որ կոչի Դինակաց, ընդ հովանեաւ սրբոյն Գէորգեայ, և սուրբ Նշանին, զոր սուրբ Հռիփսիմէքն հիմնարկեցին, և սուրբն Դինէ կոյսն անդ վախճանեցաւ, և եղին հիմն սուրբ Նշանին։

Եւ արդ, աղաչեմ զձեզ ... յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զԴաւիթ անարժան գրիչս, և զվարպետն իմ զտէր Ներսէս հեզահոգի ընտրեալ և պատուական եպիսկոպոսն, և զեղբայր իւր տէր Ստեփաննոս կաթողիկոսն. աղաչեմ զձեզ լի բերանով աստուած-ողորմի ասացէք սոցա, ամէն։

## 364

### ՇԱՐԱԿՆՈՑ

Երևան 8588

Վայր՝ Հիզան

190ա Ջստացող սուրբ գրոցս զմաղդասի Վարդան քահանայն, որ ըստացաւ զայս /// ռաշջարանս և ետ եռափափաք և /// վ սրտիւ գրել զպակասու-

Թիւնս զայսոսիկ բղորդեաց և քան զոսկի սրբեաց յիշատակ հոգոյ իւրոյ և ծնօղացն։ Զոր տէր աստուած զփափաք սրտին իւրոյ կատարեսցէ ի բարին և վայելել տացէ զսայ սորայ մինչ ի խորին ծերութիւնն, ամէն։

Այլ և զիս զանյիշելիս ի գրչաց /// զանկարգս ի կարգաւորաց ա[ղա-չեմ] յիշել ի տէր աստուածն ամենայնի։

Արդ, գրեցաւ ի թվ. ՋԽէ. (1498) ամին, ի քաղաքս որ կոչի Հիզան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և սուրբ Յարութեան, և սուրբ Սարգսի, և սուրբ Մարտիրոսի, և սուրբ Գէորգեա, ի խնդրո բարէսէր և պատուական Վարդան քահանայի։

## 365

### ԳԻՐՔ ԳԱՆՁՈՒՑ ԿԻՐԻՂԻ ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑՒՈՑ

Երևան 112

Գրիչ՝ Յոհաննէս
վայր՝ Կապոսի վանք

Յաւարտ հասայ այս սուրբ տառիս,
Աստուածային բուրաստանիս,
Այս հոգևոր սուրբ մատենիս,
Հոգով լցեալ սուրբ կտակիս,
Որ է յոգեալ Կիւրղի մեծի
Աստուածայբան վարդապետի,
Ընտրեալ և քաջ ախոյանի
Եւ ուղափառ դաւանողի,
236ա Հայրապետին Աղէքսանտրի,
Եղբաւրորդոյն Թէոփիլի,
Որ էր գլուխ Սինհոդոսի
Սուրբ ժողովոյն Եփեսոսի.
Արիացաւ ընդդէմ չարին
Մարդադաւան պեղծ Նեստորին,
Որ ուրացաւ զորդի կուսին
Եւ հայհոյեաց զծնաւղ նորին։
Նորա բանին ոչ հաւանեալ,
Զնորա աղանդն սայ հերքեալ,
Զնայ ի տեղոյն իւր հալածեալ
Եւ զկոյսն սուրբ ծնաւղ դաւանեալ։
Նայ ի բանէն իւր ոչ լռեալ,
Սուրբ այս Կիւրեղ զնա անիծեալ,
Յերկիր ի ներս վտարանդեալ,
Ի հալածանսն սատակեալ.
Ի խելացն հիմարեալ
Եւ զլեզուն զարշ խածատեալ,
Անզեղջ մահուամբ զկեանքն աւարտեալ։
Սայ զքաջութիւնս, որ յարդարեաց,
Յերկար ամաւք մարմնի ճգնեաց,

Բարի մահուամբ յերկինս գնաց,
Խառնեալ ի դասս անդրանկաց։
Իւր յիշատակ զգիրքս աւանդեաց
Եկեղեցիս ուղայփառաց,
Ի սփոփանս սուրբ մանկանց
Եւ ի վանումն հերձուածողաց։
Գրել զսայ ի Կաքոսի
Հռչակաւոր յանապատի,
Առ ի դրան սուրբ Յակոբի,
Ի յԵկեղեացս գաւառի,
Բաբունեացն հրաշալի՝
Յովանիսի 'ւ Ստեփանոսի
Յառաջնորդութեան տէր Ներսէսի,
Ես՝ Յոհաննէսըս եղկելի։
Չորս երկեակ և մի թուակ
Քառեակ տասնեակ և ի եւթնեակ
Յաւարտ եկաւ այս սուրբ կտակ
Ի դառնայցեալս այս ժամանակ*։
Ինձ եղկելոյս սայ է ճարակ,
Եւ խոցելոյս սպեղանակ,
Ի ներ[կայիս ա]յս ժամանակ
Եւ ապայգայս մեզ յիշատակ,
436բ Թողութիւն ինձի լիցի
Իմ ծնողացն և իմոյ զարմի,
Եղբաւրն իմոյ Աստուածատրի՝
Ընտրեալ և ուրբ քահանայի,
Որ վճարեաց զկեանքն աշխարհի
Սուգ մեզ հասոյց անչափելի,
Մանուկ տիաւք փոխեալ աստի
Գնաց յերկիրն կենդանի.
Ղամբար վառեալ է սայ մեզի
Բոլոր ամէն իմոյ զարմի,
Որք են մարմնով յայսմ աշխարհի
Եւ մեռելոցն, որ ի հողի,
Որոց լիցի մասն բարի՝
Յուսիկ անուն վարդապետի,
Տէր Աւետիք կրօնաւորի
Ընտրեալ և սուրբ, մաքուր ծերի։
'Ի իւսեմ զբանս մաղթանաց
Առ ձեզ խաւսիմ զբանս ըղձանաց
Արտասուայթոր հառաչանաց,

* Ծածկագիր այս թվականի միակ ճիշտ վերծանումը հետևյալն է. «Չորս երկեակ և մի թուակ»-ը հավասար է 9-ի (4×2+1). սա հարյուրավոր թիվն է. «քառեակ տասնեակ և ի եւթնեակ»-ը հավասար է 47-ի (4×10+7), ուստի թվականն է 947 հայկական, կամ 1498՝ մեր թվարկության։

Դուք ողորմիս տուք մեր անձանց,
Թողու զմեզս Առաքելի
Ընտրեալ և սուրբ կարգօորի,
Ամէն չարէ ինքն ազատի
Եւ սպարզերես մշակ լինի,
Ինձ այլ ներումն եղիցի,
Որ զյիշատակս գրեցի,
Թող ի[մ] մեղաց գիրն ջնջի
Տէրն բարի հետ ինձ հաշտի։
՚Ի իւծեալ դիմաւք առ ձեզ գոչեմ
Ջքան մաղթանացս աւարտեմ,
Թէպէտ և յոյժ լրբայքան եմ
Սակայն զձեզ խիստ աղաչեմ,
Նայ և ձեզ ի մասն լիցի,
Որ զողորմիսն տայք մեզի,
Միոյն և ձեզ հազար լիցի
Տէրն բարի ձեզ ողորմի։
Ամէն, ամէն և եղիցի
Քան զոր սսի և խնդրիցի
Մեզ և ձեզ բարի լիցի
Յապազայի աւրն վերջի*։
Վա՜յ, վա՜յ, վա՜յ, ալֆ, ալֆ։

Մ.ա.ն.ի.լ.ի.տ.շ.ի.թ.ն.ա.ր.ե.բ.ր.ա.զ.ա.հ.յ.ա.վ.ս.ի.շ.ր.գ.ս.ո.կ.ա.ր.
[ի.կ]**։

366

ԳԱՆՁԱՐԱՆ

Թ. Գուշակեան, Ցուցակ Սեբաստիոյ ս. Նշանի 142, էջ 85

Վայր՝ Երուսաղէմ

...Գրեցաւ աստուածային սուրբ տառս, որ կոչի Գանձարան ի սուրբ քաղաքս Երուսաղէմ, ի սուրբ ուխտս Փրկիչ, ընդ հովանեաւ սուրբ Կափարիչ վիմիս, ի թուականութեանս Հայոց Ջխէ. (1498) ամի, աստուածասէր տանուտէրն Յովհան և իւր կենակիցն Մօրէ գնեցին զԳանձարանս յիշատակ բարի հոգւոյ իւրեանց, և ծնողացն իւրոց, և որդւոյն Սամուէլին, և ի Քրիստոս հանգուցեալ Կոստանդին, Սարգսին և Կարապետին, և ամենայն արեան մերձաւորաց՝ կենդանեաց և մեռելոց, ամէն. ի սուրբ եկեղեցիս, ի գեղս որ կոչի Բանձառ: Յիշեցէք ի սուրբ և ի մաքրափայլ յաղօթս ձեր առաջի զենլոյն Քրիստոսի զՅովհան..., և զկինն իւր Մօրէ, և զծնաւղսն իւրեանց, և աստուած-ողորմի ասացէք և մեղաց թողութիւն խնդրեցէք. և Քրիստոս աստուած, որ առատն է ի տուրս բարեաց, ձեզ՝ յիշելեացդ և մեզ՝ յիշեցելոցս առհասարակ ողորմեսցի, ամէն։

---

* Տնատառերով հոդվում է հետևյալը. «Յովհաննիսի գրչի թողութիւն»։

** Պետք է կարդալ աջից-ձախ (սկսելով վերջից)։ Այդ դեպքում ստացվում է հետևյալը— «Կիրակոս գրչիս վայ հազար բերան. թ[է] ի[ն]չ տի յինամ»։



18—271

## 367

### ԱՒԵՏԱՐԱՆ

«Բանասէր» ամսաթերթ, 1905 թ. յուլիս, թիւ 7, էջ 194—195*
ՀՄՄ. Երևան 9027, էջ 57ա

Պակաս մասի լրացնող և նորոգող՝ Յովհաննէս
վայր՝ Կոստանդնուպոլիս

Արդ, զվերջին զստացաւղս սուրբ Աւետարանիս պարոն Երէցփոխանն Թոխաթցի, որ յիշատակ եղեալ էր ի սուրբ ...եկեղեցին։ Եւ վասն ժամանակիս դառնութեան և մեր մեղացն մտեալ գողք և կողոպտեցին զսուրբ եկեղեցին. և այս սուրբ Աւետարանս արծաթեայ կազմ էր, զկողքն և զկէս գլխոյ Աւետարանիս հետ կտրեցին և տարան. իւրեանց դառն կենաց այն սուրբ Աւետարանս. ի նոյն տարիս չորս եկեղեցի կողոպտեցին Հայերուն և ֆռանկնուն։ Եւ զվերջին կիսայծրող և կազմաւղ սուրբ Աւետարանի որդի խոճա Եմինին անարժան ծառայ Յովհաննէս երէց անուամբ միայն և գործովք յունայն յիշեցէք ի տէր։ Ընդ հովանեաւ սուրբ չարխափան Աստուածածնին, որ Նիկիտացոց է, ի թվ. ՋԽԷ. (1498), ի հայրապետութեան տէր Կարապետի՝ քաղաքիս Կոստանդիանոսի: Եւ դարձեալ գրել և կազմել երետ տէր Երէցփոխանն աստուած զինքն նորոգէ իւր արքայութեանն...

## 368

### ՃԱՇՈՑ

Երևան 7471

Հետ. ստացող

61ա Տէր Աստուած Յիսուս Քրիստոս ողորմեայ խոճայ Գրիգորին և յիշեա յ ի քում արքայութեանդ, և տուր համբերութիւն խոճայ Մարշայ յերեփոխանին, և տուր առողջութիւն նմայ, որ շնորհեաց զայս սուրբ գիրքս Երեշխևոր սուրբ Աստուածածնին վանացն, ի թվին ՋԽԷ. (1498), և յուլիս ամսոյ ի ԺԵ. (15)։

## 369

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երուսաղէմ 1942

Գրիչ՝ Երեմիա
վայր՝ Կեղի

272ա Փառք ... որոց ցանկացող եղեալ բարեսէր և աստուածասէր կին մի Մարիամ անուն, և ջանաց ստանալ զանառիկ մեծութիւնս և զգանձս անկողոպտելի յիշատակ հոգւոյ իւրո, և ծնողաց իւրոց Մարտիրոսին և Թուր-

* «Բանասէրի» նշված համարում նկարագրված է 1297 թ. Սկեռայում ընդօրինակված այս Ավետարանը, որը պահվելիս է եղել, Կ. Պոլսի ս. Հրեշտակապետաց թաղի մատենադարանում։

ւանդին, Շահպարոնին և Արղունին, Պարոնշին, Տանապետին. և քերցն Սալչուքին... եւ ետ զսա անչինչ յիշատակ ի ձեռն Մկրտիչ քահանային և Յունան քահանային, ի դուռն սուրբ Սարգսին...

Գրեցաւ սա ի Թուիս Հայոց ՋԽԷ. (1498), ձեռամբ Երեմիա մեղաւոր և սուտանուն սարկաւագի, ի քաղաքիս Կեղի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և սուրբ Յակոբին, և սուրբ Սարգսին...

## 370

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 8761*

ա

*Գրիչ՝* Յակոբ Ներսէսեան
*վայր՝* Արծկէ

347ա ...*Եւ արդ գրեցաւ սա ի քաղաքս* Արծկէ, *ընդ հովանեաւ ամենամաքուր սուրբ Աստուածածնի և սուրբ Նշանացս Սքանչելագործի և Պատերազմի, ի թուականութիւնս հայկազեան տոմարի ՋԽԸ. (1499), եւ ի դառնութեան* Ալւանդ-բէկի *և զաւրավարին* Իպայ-Սալթանի: *Յայսմ ամի, որում աւերեցաւ մեծ կաթողիկէն* Էջմիածինն, *և կաթողիկոսն տէր* Սարգիսն *փախըստական եղև. և ղաւրացան ազգըն մարաց և եկեալ առին զամուր կղզին* Աղթամար *և թալանեցին, և զԲաղէշ քաղաք հրով այրեցին*
347բ *և թալանեցին, և շատ վը//նաս արարին:*

*Եւ արդ, գրեցաւ սա ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի* Յակոբ *եպիսկոպոսի և* Զաքարայ *դպրի, վասն որոյ աղաչեմ զձեզ յիշեսջիք ի սուրբ յաղաւթս ձեր զմեղուցեալ գրիչքս, և զծնօղսն մեր* զՆերսէս *քահանայ և* զԽաթուն-Մելիք, *և զեղբայրն իմ զշնորհալից քահանայն* Ղազար՝ *զփոխեցեալն ի Քրիստոս...*

*Դարձեալ, կրկին անգամ աղաչեմ զձեզ յիշեսջիք ի սուրբ յաղաւթս ձեր զստացող սուրբ Աւետարանիս զմուղդասի* Ստեփանոսն*, *և զծնօղսն՝ զհայրն* Մովսէս *և զմայրն* Շահնուբաթն, *և զամենայն արեան մերձաւորսըն՝ զկենդանիսն և զհանգուցեալսն...*

բ

*Միւս գրիչ՝* Զաքարայ

348ա *Եւ աւրհնեսցէ Քրիստոս աստուած* զԱռըննկաւս *գեղի քահանայքն՝ զտէր* Մինասն, *և զտէր* Դանէլն, *և զոէս* Խօշխաբարն, *և* զՄարտիրոսն, *և զայլ մեծ ու փոքրն, զայր և զկին պահէ առողջ՝ հոգով և մարմնով: Եւ խոշորութեան և սխալանաց գրիս անմեղադիր լերուք.*

*Զի ահ էր և փախ,*
*Եւ յամէն օր կուզինք մեք մահ,*
*Եւ մեք եղաք աստուածապահ,*
*Յանօրինաց ըերծանք անահ:*
*Ես* Ստեփանոս *մահդասի,*
*ԶԱւետարանս գրել տուի,*

* *Ձեռագրի 10ա էջում «Քրիստոս նստեալ ի չորեքկերպեան աթոռ» պատկերի ստորին մասում նկարված է ստացողը: Նկարի վերին մասում գրված է «Ստեփանոս մախդասին էս»:*

*Յեկեղեցիքս Առընելուսի,*
*Որ ոչ ծախսի, ոչ գրաւի՝*
*Ինձ յիշատակ անջինջ լիցի։*
*Որ ի ծախել զայս յօժարի՝*
*Զմասըն առցէ ընդ Յուդայի,*
*Եւ ի խաչի լուսոյն զրկի։*
*Աւետարանիս լաւ պահողի,*
*Վարձս բարեաց պարգևողի,*
*Ինձ մեղուցեալ ախմար գրչի,*
*Որ եւթն տառիւ անունս կոչի**
*Յանցեալն, այժմուս 'ւ յապագայի*
*Տէրըն տերանց ողորմեսցի։*

*Դարձեալ աղաչեմ զձեզ յիշել ի տէր զԴարմաճ և զԱստուածատուրն, և զաստուած զձեզ յիշէ, ամէն։*

## 371

### ԱԻԵՏԱՐԱՆ

**Երևան 6324**

*Ստացող՝* Հերապետ
*վայր՝* Պատրկի վանՐ

303ա *...Արդ, ի վերջին դարիս և ի յայս դառն ժամանակիս, ի թվ. ՋԽԸ. (1499). քուրթն էառ զանառիկ կղզին զԱղթամար վասն ծովացեալ մեղաց մերոց, և բազում աւէրս արար, և մալ ու մանդրուն՝ հայի և տաճկի, աւտարի և բնականի թալանեաց և տարաւ։ Ընդ որս և զսուրբ Աւետարանս զայս տարան ի Շատախ. և հանդիպեցաւ սա աստուածասէր և հաւատարիմ և ամենայն սուրհնութեանց արժանաւոր տանուտէրն* Հերապետ. *և տեսեալ զսա ի ձեռս անաւրինաց և թափեաց զսա ի նոցանէ տուեալ ինչս բազումս. և բերեալ եդին ի նոյն մեծափառ սուրբ ուխտին ի՝* Պատրկի վանՐ, *յիշատակ հոգոյ իւրոյ և ծնաւղացն՝* Վարդանին *և* Մլքան-խաթունին:

*Վասն որոյ յերես անկեալ աղաչեմ զսրբութիւնդ ձեր, ո՜վ պատուական և ընտրեալ կրաւնաւորք՝ վայելողք սուրբ Աւետարանիս, յիշեցէք ի*
303բ *Քրիստոս զառաջ յի//[շե]ցեալ ըստացող [սուր]բ Աւետարանիս [զ]հաւատարիմ տանուտէրն զ*Հերապետ, *և զծնաւղքն իւր՝ զ*Վարդան *և զ*Մլքան-խաթուն, *և կողակիցն զ*Մարթայ, *և զդստերքն զ*Մռչան, *զ*Ոսկին *և զ*Գուհար, *և զեղբարքն զ*Մարտիրոս, *և զ*Յովսէփ, *որ կեծակն անգաւ ի վէրէն ի* Շամանի *և սուք անմխիթար եթող, և զ*Յոհանէս, *և զ*Մարտիրոսի *որդիքն՝ զ*Վարդան *սարկաւագ, զ*Յովսէփ *և զ*Յովաննէս, *զմայրն զ*Շամամ, *և զդստերքն զ*Խաթուն *և զ*Ազիզ-խաթուն, *զհաւրքուրն զիրիցամէր* Շնօհուռն, *զէրէցն զտէր* Սարգիս, *զ*Գրիգորն, *զմիւս հօրքուրն զ*Մարգարիտ. *և զորդին զ*Թումայ *և զ*Առաքել, *և զհայրն զ*Մարտիրոս, *և զայլ ամենայն*

* *Գրչի անունն է Զաքարայ։*

արեան մերձաւորքն՝ զկենդանիքն և զննջեցեալքն յիշեցէք և լի բերանով
և ուղիղ սրտով աստուած-ո[ղո]րմի ասացէք ևս առաւել ի ժամ սուրբ և
սոսկալի պատարագին, առաջի զենլոյն Քրիստոսի, յիշեցէք ի մաքրա-
փայլ յաղաւթս ձեր զաստուածասէր տանուտէրն զՀայրապետ, զի յոյժ
դառնութեամբ փրկեաց զսա ի յանաւրինաց. աստուած զինքն և զիւր
ննջեցեալքն ի դառն դժոխոցն փրկէ և իւր սուրբ տեսոյն արժանի առնէ,
ամէն*։

## 372

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5222

Գրիչ՝ Մարգարայ.
վայր՝ Ախբակու երկիր, Երընկանի գիւղ

276բ ...Արդ, որք հանդիպիք սուրբ Աւետարանիս կարդալով կամ օրինա
կելով, ասացէք լի սրտիւ և բոլոր հաւատով... ողորմեա ստացողաց սո-
րա Ատոմին, և Խաբիպին, Շաֆարին, Թագուհին, Ըստեփանոսին, և ամե-
նայն զաւակացն, և եղբարցն՝ Ղարիպին, Մկր[տ]չին, և Մարտիրոսին, և
այլոցն...

277ա Յիշեա Քրիստոս աստուած զստացողք սուրբ Աւետարանիս զԱտոմն
և զկինն իւր զԽաբիպն, որ ստացան զսուրբ Աւետարանս յիշատակ իւրե-
անց և ամենայն ազգականացն և ծնօղացն և ետուն ջերմեռանդ սիրով և
մեծաւ փափագանաւք ի դուռն**

277բ ...Քրիստոս աստուած ողորմեա ամենայն մեղաւորաց քրիստոնէից
զղջացելոց, ևս առաւել Խաբիպ-Խաթունին, և իւր ծնօղացն Ըստեփանո-
սին, և մօրն Ոսկոյն, և եղբօրն Ղարիպին, և առն իւրոյ Ատոմին, և ծնօ-
ղացն Շաֆարին և Թագուհին, եղբարցն Մարտիրոսին, Մկր[տ]չին, և քը-
ւերցն Հոռոմսեմին, Շնաւորին, և որդոցն Ջանազըզին, Մուրատին, Սօ-
սընին, Խալիֆին, Սմբատին, և դստերցն Բաղդատին, Խոնձին, Սաղդա-
թին, Մրուաթին, Մուղամին, Խանումին, հօրեղբօրն Սարգսին և Վար-
դանին:

278ա ...Արդ, գրեցաւ սա ի յերկիրս Ախբակու, ի գեաւղս Երընկանի, ընդ
հովանեաւ սուրբ Աստուածածնի տաճարիս և Ջուխտակ սքանչելագործ
սուրբ նշանացս, ի թուականիս Հայոց ՋԽԸ. (1499), ի դառն և ի նեղ ժա-
մանակի, զի ոչ կայր փաթշահ, և ազգն մարաց աւերեցին և քանդեցին
զՅէշատ, զՍալամաստ, զԱխբակ, զՎան, և զՈստան, և զԱղթամար: Եւ
այս ամենայն վասն մեր մեղացն եկն ի վերայ մեր. ձեռամբ անարհեստ
Մարգարայ մեղաւորի, ի խնդրոյ Խաբիպ-Խաթունի:

Արդ, որք հանդիպիք սմա աստուած-ողորմի ասացէք Խաբիպ-Խա-
թունին, և Ատոմին, և ամենայն արեան մերձաւորաց նոցին. մանաւանդ
278բ գծօղիս և իմ ծնօղացն՝ Մկրտիչ // քահանային և Շնախորին, և եղբօրն

* Ավետարանը գերվել ու ազատվել է գերությունից ոմն Յոհանէսի կողմից նաև 1525 թվականին։

** 6 տող անգրել է թողնված այն վանքի անունը գրելու համար, որին նվիրաբերվելու էր ձեռագիրը։

Յովանէս քահանային, և վարդապետացն Զաքարիայ վարդապետին և Սուքիաս կրօնաւորին, և Վարդան կազմողին, և Մելքսէթ կրօնաւորի, և այլ ամենայն հոգևոր և մարմնաւոր եղբայրացն։

373

ԱԻԵՏԱՐԱՆ

Վենետիկ 130 (1196), Բ. Սարգիսեան, Ցուցակ Ա, 576—578

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ Հիզան

310ա ...Կին ոմն Ռուզ կոչեցեալ անուն, զոր ի վաղուց հետէ ղանկայր այսըմ աստուածախաւս Աւետարանիս, և գրեցի զսա յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնօղացն՝ հօր Սուքիասին և մօրն Գուլստանին, որդոյն Գրիգորին, կողակցին Ղազարին և ամենայն արեան մերձաւորաց, և լի բերանօք աստուած-ողորմի ասացէք ամենեցուն, ամէն։

Եւ արդ, գրեցաւ Աւետարանս ի քաղաքիս որ կոչի Հիզան, ի մեծ թուականիս Հայոց ՋԽԸ. (1499), ի կաթողիկոսութեանն Հա[յ]կազեան սեռի տեառն Սարգսի, և ի մերոյ կաթողիկոսութեան Ախթամարայ՝ տէր Առոմին, զոր տէր աստուած Իսրայէլի պահպանեսցէ անսասան զաթոռ հայրապետական և զթագաւորական մերոյ ազինս։ Եւ արդ աղաչեմ զձեզ՝ սուրբ քահանայք և ժողովուրդ, յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զստացող սուրբ Աւետարանիս՝ զհաւատարիմ կին Ռուզ, և զկողակիցն զՂազարն, և զծնօղսն Սուքիաս և զԳուլստան, և զորդին զԳրիգոր...

Եւ արդ գրեցաւ սուրբ Աւետարանս ի քաղաքիս որ կոչի Հիզան, ընդ հովանեաւ սրբուհոյ Աստուածածնին, և սուրբ Յարութեան, և սուրբ Սարգսին և որդւոյն Մարտիրոսին, և սուրբ Գէորգա զօրավարին, որ է սակաւ մի հեռի։ Ի դառն և ի նեղ ժամանակիս, զի աշխարհս ամենայն ի յերերման կան, զի ոչ թագաւոր կայ և ոչ իշխան, զի որդին Էզդընշրին Չէնիդ-բեկն եմուտ ի յԱղթամար*:

Այլ գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ Յովանէս գրչի։ Արդ, եղբարք որք հանդիպիք սմա՝ կամ կարդալով կամ օրինակելով, անմեղադիր լերուք խոշորութեան գրիս և սխալանացս բանիս, զի անգեալ եմ ես ի ձեռս սատանայի, և ոչ կարեմ մի ժամ խլըսիլ ի ձեռաց նորա։ Եւ արդ, աղաչեմ զձեզ սուրբ քահանայք և ժողովուրդք, յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զփծուն գրիչս զՅովանէս քահանայն, և զծնօղքն իմ՝ զՄկրտիչ քահանայն և զՇամամն, և եղբայրն իմ զՆզեկիէլ. և զհօրեղբայրն իմ զՍտեփանոսն, և զամենայն արեան մերձաւորսն, և լի բերանով աստուած-ողորմի ասացէք։ Դարձեալ կրկին անգամ աղաչեմ զձեզ՝ յիշեցէք ի Քրիստոս զԿարապետ քահանայն, և զծնօղսն իմ զՄկրտիչ և զՍուլտան, և զկողակիցն Գօհարն, և զՂբելն, և աստուած-ողորմի ասացէք ամենեցուն, ամէն։

---

* Երկուս ու կես տող ջնջված է, թողնված։

Դարձեալ կրկին անգամ աղաչեմ զձեզ՝ յիշեցէք ի Քրիստոս զԲուղդանդարն, և զկողակիցն զԹուրվանդէն, և զորդիքն՝ զՄխիթարն, և զամենայն արեան մերձաւորս...

Եւ արդ, կացցէ սուրբ Աւետարանս ի գեօղս որ կոչի Իւրեանց, ընդ հովանեաւ սուրբ Նիշանին և այլ սրբոցն որ անդ կան, յիշատակ Ռուզին, և ծնօղացն՝ Սուլխասին և Դուլստանին: Եւ մի ոք իշխեսցէ զսա ծախել կամ գրաւել կամ հեռացնել ի դրանէ սուրբ եկեղեցոյս, եթէ ի մերոց, եթէ յօտարաց, նա զանէծքն զԿայենին առցէ և զպատիժն զՅուդային, ամէն: Եւս առաւել յիշեցէք ի Քրիստոս զուսուցիչն մեր զՅովանէս քահանայն և զՓիլիպոս քահանայն, և աստուած-ողորմի ասացէք ամենեցուն, ամէն։

## 374

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6273 (Ղ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան հայոց), էջ 376, Վան՝ ս. Յակոբ եկեղեցի

Գնող՝ Մուրատ
վայր՝ Ախլցխէ

Թուին Հայոց ՋԽԸ. (1499), որ Ղօրղօրէն թալանեց զԱրարատեան զգաւառն և բերաւ զսուրբ Աւետարանս ի յԱխլցխէ քաղաքն, և ծառայ ծառայից Մուրատ գնեցի զսա յանարժանից այնոցիկ։

## 375

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6822

Գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Հաղբատ

317բ ...Եւ կատարեցօ սա ի թվն. Հայոց ՋԽԸ. (1499), ի մեծ մենարանիս
Հաղբատա, ընթ ովանեօ սուրբ Կաթուղիկէիս, և ի կենաց փայտէ սուրբ
Նշանիս, և այլ բազմահաւաք սրբութեանցս, ի հայրապետութեան տեառն
Սարգսի, որ յայսմ ամի ի հարկէ անօրինացն եբեկ ի Հաղբատս. Եւ յա-
ռաջնորդութեան սուրբ ուխտիս տէր Ստեփանոս եւ տէր Իգնատիոսի Եւ
տէր Յոհանէսէ արհեպիսկոպոսաց, եւ զԴաւիթ րաբունապետն։ Ձոր. տէր
318ա աստուած ընդ երկայն օուրս արասցէ հանդերձ միաբանօք ուխտիս, !
ամէն։ Վասն որոյ աղաչեմք զսրբասնեալ քահանայ[ք]դ և որք հանդիպի-
սմա կարդալով, կամ տեսութեամբ, կամ օրինակ գնելով՝ յիշեցէք ի սըր-
բափայլ աղօթս ձեր եւ զիս՝ զեղկելի Մկրտիչս, որ անարժանութեամբ
յանդգնեցա ձեռնարկել ի յահեղ հրամանս աստուածային, հանդերձ
ծնօղօքն, եւ զհոգևոր վարպետն իմ զԿարապետ՝ հայր վանացն, եւ զմար-
մնոր ծնօղքն իմ՝ զկենդանիս և զհանգուցեալսն, եւ զհայրն իմ Խաչա-
տուր քահանայն, և զմայրն իմ Մերիկ, եւ զհանիկն իմ Հուսնիշատն, որ
բազում աշխատութեամբ սնոյց մեզ, եւ զեղբարսն իմ՝ զկենդանիսն և
զհանգուցեալսն, եւ զվարդապետն իմ զտէր Իգնատիոս արհեպիսկոպոս
քաջ քարտուղարս, որ ուսոյց մեզ զարուեստ գրչութեան, որ մարմնոր

ախտոյիւք կառավարէր զմեզ, եւ զտէր Խաչատուր գրոց աշակերտն, եւ զծաղկող տէր Յովանէսն։ Յիշեցէք և զհոգևոր եղբարս մեր զՅոհանէս դպիրն, որ զթուղտն կոկեաց և սպասօրէ մեզ, եւ զԿոստանդ դպիրն, եւ
318բ զԱրզանէս կուսա//կրաւն տնտեսն աբեղայն, որ քաղցրահամ կերակրով զմեզ ճաշակեաց։ Եւ դուք, որ յիշէք զվերոգրեալքս ի սմա, յիշեալ լիջիք ի բարի յօրին դատաստանի ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ ասէ՝ Եկայք աւրհնեալք հօր իմոյ, ժառանգեցէք զարքայութիւն աստուծոյ, և հանգուսցէ զձեզ ի կեանսն յաւիտենից, ամէն։ Խոծորութիւն և սղալանաց գրոյս անմեղադիր լերուք. զի կայր մեր այս չափ էր. հայր մեր որ յերկինս*։

## 376

### ԱՒԵՏԱՐԱՆ

Մ. Բարխուդարեանց, «Աղուանից երկիր», էջ 257, Վարդաշեն

Գրիչ և ծաղկող՝ Ստեփաննոս
վայր՝ Աղուանք, Ճալէթոյ աթոռ

Տէր Առաքէլ կաթուղիկոս Աղուանից... ետ գրել զԱւետարանս ի հալալ ընչից իւրոց, յիշատակ հոգւոյ իւր և ծնողաց իւր...

Արգ, գրեցաւ Աւետարանս հպատակ հոգոյ Ստեփաննոս եպիսկոպոսի, ի յաթոռն Ճալէթոյ, ի յաշխարհն Աղուանից,... ի թվականիս Հայոց ՋԽԸ. (1499)։ Եւ բերաք ի գաւառս Արարատեան, ի վանս Հառընջոյ Տիրամօր սուրբ Աստուածածնիս։ Եւ աստ ծաղկեցաւ ոսկով և բազմերամ գոյներով ի բաղում միջոցաւ, զի ժամանակս երերան էր և ոչ գոյր խաղաղութիւն։ ՋԾԴ. (1505)** թվին վճարեցաւ նկար սորին։

## 377

### ՄԱՇՏՈՑ

Երևան 1039

Գրիչ՝ Մաքէոս
վայր՝ Կեչառիս

132ա Փառք... որ եւուր զաւրութիւն իմոյ տկարիս Մաքէոս սուտանուն կրաւնաւորի՝ ծոյլ և պղերգ անարժանի՝ հասանել ի յաւարտ սուրբ գրոցս Մաշտոցի։

---

* Շարունակությամբ (318բ—319բ էջերի վրա) գրված է հետագա ստացող Մուրվանի հիշատակարանը՝ ՋԿԶ. (1517) թվականից։ Ուշագրավ է հիշատակարանում ստացողի հանգուցյալ պապի Նեստարիջան-Թաթուլի անվան հիշատակությունը։ Անշուշտ, անունն աղավաղված ձևն է Նեստանդարեջան (պարսկերեն «Նեստ-անդարէ-ջահան»—նշանակում է «չկա-նմանը աշխարհում»—կամ «աննման») անվան, որ ինչպես հայտնի է Ռուսթավելու անմահ «Վագրենավորի» գլխավոր դրական հերոսուհիներից մեկն էր։ Բնական է ենթադրել, որ հիշատակարանի գրության ժամանակ Հայաստանի հյուսիսային շրջաններում «Վագրենավորը» ճանաչված ու սիրված մի ստեղծագործություն է եղել այն աստիճան, որ նրա հերոսների անունները տարածվել են կյանքում ու կենցաղում։

** ՋԾԳ. (953) թվականը համապատասխանում է մեր թվարկության 1504 և ոչ 1505 թվականին։ Ցավոք, միջոց չունենք պարզելու, թե տպված տարեթվերից որն է սխալ կամ ճիշտ՝ ՋԾԳ.(=1504)-ն, թե՞ 1505(=ՋԾԴ)։

Արդ, գրեցաւ զսայ ի յերկիրս Ծաղկընու, ի Հըռչակաւոր վանքս որ
132բ կոչի Կեչառիս, ձեռամբ մեղապ//արտ և անարժան դրչի Մարկոսի, ընդ
Հովանեաւ սուրբ Լուսաւորչիս, սուրբ Աստուածածնիս, սուրբ Նշանիս, սուրբ
Յարութիւնիս և ամենայն սրբոցս, որ աստ կան հաւաքեալ, ի հայրապետութեան տեառն Թադէոսի, որ նստեալ է ի Վաղարշապատ քաղաքի
մեծապայծառ և լուսակառուց, յերկնահանդէս յաստուածաբընակ սուրբ
յաթոռոյն էջմիածնայ: Եւ առաջնորդութեան սուրբ ուխտիս պարոն-տէր
Փիլիպոսին, այլ և ստացող սուրբ գրոցս Մաշտոցիս, որ է հիմն հաւատոյ
է. (7) խորհուրդ սուրբ եկեղեցոյ, որ ///*

## 378

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4153*

ա

Գրիչ՝ Վանական
վայր՝ Գեղամա երկիր, Կածիֆ գիւղ

257ա ...Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ մեղապարտ և փծուն գրչի
Վանական սուտանուն աբեղայ, որ ձևովս միայն կրաւնաւորեալ և ոչ գործով, ի յերկիրս Գեղամա, ի գեւղս որ կոչի Կածիֆ, ընդ հովանեաւ սուրբ
Աստուածածնիս և այլ սրբոցս որ աստ կան հաւագեալ, առ ոտս երջանիկ
րաբունապետի Աբրահամ[ի], ի թվականութեանս հայկազան տոմարի
ՋԽԸ. (1499), ի հայրապետութեան տեառն Սարգսի, եւ յաշխարհակալութեան** Ալվանդին՝ որդին Յաղուպ-բէկին, եւ ի վրաց թագաւորութեան
Կոստանդիլին: Արդ, ես՝ Ջանիբէկ միայնակեցս, ստացա զսուրբ Աւետարանս ի հալալ արդեանց իմոց, յիշատակ ինձ, և ծնողաց իմոց՝ հայրն իմ
Մարտիրոսին և մաւրն իմ Շիրազին, և եղբարցն իմ Սայուրբէկին, Անիբէ-
257ա կին, // Կթխիկին, Սարգսին և Ամիր-Սարգսին, եւ քըւերն իմ Մարիանին,
Դունա-Մելիքին, և հարսին Ուստիանին, և արեան մերձօրաց մերոց
Ալէքսանոսին, Ստեփանոսին, և դստեր նոցա Այգունին և Մինքիրին...

բ

Նկարիչ՝ Յովանէս

121բ— Զնկարող և զկազմող սուրբ Աւետարանիս զմեղապարտ Յովանէսս
122ա յիշեցէք ի Քրիստոս:

գ

Ստացող՝ Ջանիբէկ

ԶՋանիբէկ ստացող սուրբ Աւետարանիս յիշեցէք ի Քրիստոս և աստուած զձեզ յիշէ, ամէն:

---

* Շարունակությունը (երկու թերթ) կտրված է: Տարեթիվը պարզվում է մի թերթիկի վրա արված նկարագրությունից, ըստ որի. «Մաշտոց ութածալ բոլորգիր, գրեալ ի թուղթս բամբակի ի Մատթէոս կրօնաւորէ, ի հայրապետութեան տեառն Թադէոսի, յամի ազգական ՋԽԸ. և փրկչական 1499, ի վանսն Կեչառիս, յերկրին Ծաղկնուտ:

** Շարունակությունը գրել է ստացող Ջանիբէկ միայնակեցը:

## 379

### ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 220

Գրիչ՝ Աղեքսանոս
վայր՝ Մախենացոց վանք

274 ...Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվականիս Հայոց ՋԽԸ. (1499), ձեռամբ անարժան հեք Ցանաք Աղեքսանոս անուամ[բ] միայն աբեղա և գործով ունայն և վաթար եմ քան զամենայն մարդ։ Ի սուրբ ուխտս Մախենացոց, ի դուռս սուրբ տաճարիս Աստուածածնիս և հայր Սողոմոնի նշխարացս և այլ սրբոց, որ աստ կան։ Ի առաջնորդութեան սուրբ ուխտիս
274բ Թաթէոս եպիսկոպոսին /// սղալութեան գրոյս և խոշորութեան թողութիւն արէք, զի կար մեր այս էր և ոչ աւելի։

## 380

### ԱԻԵՏԱՐԱՆ

Մ. Աթոռ 48, «Էջմիածին» 1951 թ. IV—VI
էջ 83—84

Գրիչ՝ Մելքիսեթ
վայր՝ Արծկէ

314բ— ...Որոյ ցանկացող եղեալ սուրբ Աւետարանիս համեստ և սրբասէր
317բ մայրն Քնքուշ ///* Մկրտիչի, և զտղայքն իւր, զամենայն արեան մերձաւորսն առ հարկն յիշէք ի Քրիստոս...

Արդ, յերես անգեալ աղաչեմ զձեզ, ո՛վ մանկունք սուրբ եկեղեցւոյ և հանդիպողք անգին մարգարտիս կարդալով կամ օրինակելով, յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զկենդանի նահատակն զտէր Աստուածատուրն. որ դառն և չարաչար մահուամբ ի ձեռաց անօրինի սրամոյն գիշերահալած դողալով սարսափմամբ ի յահէ ճալատէն խոցոտեալ արեանթաթախ և ոսկրաբեկ տանջանօք փոխեցաւ ի Քրիստոս... Բացցէ տէր աստուած զդուռն մտից դրախտին կենաց բարի վերստին և գերագոյն նահատակին՝ տէր Աստուածատուրն և դասեսցէ ընդ աջակողմեան աւազակին զինքն, և զծնողսն իւր զտէր Խաչատուրն, և զորդիսն ի[ւր] զնորընծա քահանայ զտէր Յովանէսն, և զորդոց որդիսն, զծաղկեալ զաւակսն իւր՝ զՇաղաւաքն, և զԱստուածատուրն, և զտէր Աստուածատրու կենակիցն զՔնար-Խաթուն, և զմեծ հարսն իւր զՇնոհտրն, և զկրսեր որդին զՄխիթարն, և զամուսին իւր զՄահսում-Փաշէն, և զամենայն արեան մերձաւորսն, ամէն։

Դարձեալ յերես անգեալ աղաչեմք ... յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զմայր տէր Աստուածատուրին՝ զՓաշա-Մելիքն, և զմայր տէր Յովանիսին՝ զՀազրէվարդ, և զՔնքուշն, որ զարծաթն երետ Աւետարանիս, և զմայր նորա զՏայրու-Խաթուն, և զամենայն արեան մերձաւորք տէր Աստուածատուրին՝ զկենդանիքն ընդ երկայն աւուրքս առնէ և զննջեցեալքն՝ յիւր արքայութիւնն հանգուսց[է]...

* Չորս բառ ջնջված է։

Դարձեալ յերես անկեալ աղաչեմ զընթերցող սուրբ Աւետարանիս, յիշել. ... զմեղսամած և զանարհեստ փանաք գրչիս Մելքեսէք չանարժան ծառայիս, և աստուած զձեզ յիշէ յիւր արքայութիւնն։

Գրեցաւ Աւետարանս ի քաղաքն Արծկէ, ընդ հովան[ե]աւ սուրբ Աստուածածնի տաճարիս և պատերազմի սուրբ Նշանիս, ի թվականութեանս Հայոց ԹԾ. և ԽԸ. (1499), ի յաւգնութիւն տէր Յովանիսին և իւր տղայոցն, ամէն։

Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զՄկրտիչն, և զկողակիցն իւր զՄուդամն. և զգեղաքոյս որդին զԱստուածատուրն, և լի բերանով աստուածողորմի ասացէք և աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։

## 381

## ՄԱՇՏՈՑ

**Երևան 6326**

Գրիչ՝ Թումայ
վայր՝ Աղթամար

406ա ...Եւ արդ, ես յետինս ի գրչաց անարժանս ի կարգաւորաց՝ սուտանուն քահանայ Թումայ ... կատարեցի զԱւագ Մաշթոցս մեղսամած մատամբ իմով, յաստուածաբնակ կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ ամենայաղթ սուրբ Խաչիս, և սուրբ Նշանիս, և սուրբ Յարութեան անապատիս, ի հայրապետութիւն տեառն Նորընծայ կաթողիկոսին Աստմայ, և թուականիս Հայոց ի Ջ. և ի ԽԸ. (1499)։

Զոր ... բազում աշխատանօք գծագրեցի զսա ի ստոյգ և յընտիր աւրինակէ, զոր սրբագրեաց և փարթամացոյց հեռաւորն Գրիգոր վարդապետն քաջն և արին, կենաւք տառապանաւք և բազում տրտմութեամբ ի
406բ զառն և ի վշտալից ժամանակիս, յորում կամք ընդ // հարկի անաւրինաց։

Արդ, որք ճաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենալի սեղանոյս, և որք հանդիպիք սմա ընթերցմամբ կամ տեսութեամբ և կամ աւրինակ դնելով, յիշեսջիք յերկնագնաց յաղօթս ձեր պյառաջ յիշեցեալս զստացող սուրբ տառիս դաստուածասէր և հեզահոգի կին Խամօշն, և զծնօղսն իւր՝ զՂազարն և զՍուլտան-Մելիքն, և զեղբայրքն զՄինաս կրօնաւորն, և զՀերպետն, զԽալիֆէն, զՊետրոս, և զՊօղոս, և զքուերքն զԱդուքն, և զԽալիմն, և զԴուլփաշէն, զտարաժամ զաւակսն իւր զհանգուցեալսն ի Քրիստոս* զՄխիթարն, և զԹումէն, զԽումարն, և զԱշխիբէկն, և զԴանէլն, և զայրն՝ զԱւետիսն և զսորին ծնօղսն՝ զՍուլտան-Ղազան, և զՄինէն, և զՎարդխաթունն, և զհովիւ Յակոբն, և զծնօղսն սորա, և զՔնճուշն, և զորդին զԹումէն, զՋանազիզն, և զորդին զՅովանէսն, և հովիւ Յակոբի դստերն Խանումին, և զայլ ամենայն ազգատոհմսն նոցա և զարեան մերձաւորսն յիշեցէք ի Քրիստոս, և լի բերանով և ուղիղ սրտիւ աստուածողորմի ասացէք...

407ա Ընդ նոսին և զամենամեղ սուտանուն աւաղաշ Թումայ, և զծնողսն իմ զԳրիգոր քահանայ, որ ուսոյց ինձ զարուեստ գրչութեան, և զՔրման-

* Իմա՝ և զաւակսն իւր զտարաժամ զհանգուցեալսն ի Քրիստոս։

Խաթուն, և զհօրեղբայրն իմ՝ զհռչակաւոր քարտուղարն զԹումայ կրօնա-
ւորն, որ մականուն Կռռնով կոչի, և զկենակիցն իմ, և զդուստրն իմ զՆաճ-
մուլՖն, և զծոցասնունդ որդին իմ զպարոն Դորգն, որ փոխեցաւ առ Քրիս-
տոս և եԹող սուգ ծերուԹեանս իմոյ՝ խոց անբժշկելի և վէրք անողջանալի.
ո՜հ, ո՜հ, մինչև յաւր մահուան իմոյ։ Եւ զայլ ամենայն ազգատոհմն մեր՝
զկենդանիս և զհանգուցեալսն...

Եւ արդ, ես՝ Խամաւշ-Խաթունս տուի զԱւագ ՄաշԹոցս ի յաստուածա-
պահ գեաւղս ի Բատականց, ի դուռն սուրբ Աստուածածնին, յիշատակ ինձ
և ծնաւղաց իմոց։ Եւ մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսա ի դրանէ սուրբ
Աստուածածնին կամ ծախելով, կամ գրաւելով, կամ այլ ինչ աղագաւ, ոչ
յաւտարաց, ոչ ի կարգաւորաց և ոչ յաշխարականաց։ Եւ եԹէ ոք յանդգնի
407բ և // հեռացուցանէ, նա զանէծքն դաւձին և զԿայենին ժառանգեսցէ, և
զմասն զՅուդային և զայլ խաչահանուացն առցէ ինքն և կամակիցքն նո-
րա, հանդերձ ծնաւղօք և ազգականօքն, ամէն...

Այլ և յիշեցէք ի Քրիստոս զարհեպիսկոպոսն զտէր Ստեփաննոսն և
զխեզահոգի քահանայքն՝ զտէր Մկրտիչն և զտէր Հերապետն, և զաս-
տուածասէր տանուտէրքն՝ զրոէս Խաչատուրն, և զՍտեփաննոսն, և զմիւս
Ստեփաննոսն՝ Բֆոցն, և զորդին զԿարապետն, որ յորդորիչ և միջնորդ եղեն
սուրբ գրոցս...

409ա Եւ այլ աւրհնեսցէ զաստուածասպահ գեօղն զԲատականց և զիւր տա-
նուտէրքն՝ զայր և զկին, զծեր և զտղայ. աւրհնուԹիւն աստուածային ի վե-
րայ իւրեանց եղիցի և ի վերայ վաստակոցն. և յետ աստեացս ելանելոյ
դասակից և պսակակից արասցէ ժողովրդեան Իսրայէլի՝ հանդերձ ծնաւղօք
և ազգականօք, ամէն։

382

ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 5399

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ Հիզան քաղաք

401ա ...Աւարտեցաւ ՔրիստոսահիմՆ Գանձարանս ի խնդրոյ վայելուչ և
սրբասէր կրօնաւորիս Գրիգորի, ի մեծ Թվականի ՋԽԸ. (1499), հայկազան
սեռիս տումարի (1499), ի հայրապետուԹեան տեառն Սարգսի։ Եւ արդ,
գրեցաւ Գանձարանս ի քաղաքիս որ կոչի Հիզան, ի յիշատակ Գրիգոր
քահանային և ծնողացն իւրոյ Ներսէսին և Թանգմելեքին, և եղբաւրն
Աբրահամին, և որդոյն իւրոյ Թումա սարկաւագին, մեծ պապուն Մելք-
401բ [ս]եթին, և կողակցին Աղունին, և // ամենայն արեան մերձաւորացն...

Ո՜վ մանկունք սուրբ եկեղեցոյ, որք հանդիպիք այսմ Գանձարանիս
կամ կարդալով կամ օրինակելով, անմեղադիր լերուք խոշորուԹեան և
սղալանաց գրիս, զի կայր մեր այս էր։

Կրկին մաղԹանօք աղաչեմք զձեզ յիշեցէք ի մաքրափայլ յաղօԹս ձեր
զսուտանուն գրիչս Յովանէս, և զծնօղքն իմ զՄկրտիչ քահանայն, և զՇա-
մամ, և զեղբարն իմ զՆզեկիէլն, և զհօրեղբայրն զՍտեփ[աննոս] ///

### 383

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5396

Գրիչ՝ Սուքիաս
վայր՝ Ով գիւղ

ա

291բ ...Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվականիս Հայոց ՋԽԸ. (1499), ի գեօղս Ով, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի տաճարիս, ձեռամբ անարժան և մեղսամած և անիմաստ գրողի Սուքիասի, որ զանունս ունիմ և զգործս ոչ։

292ա Արդ, աղաչեմ զսրբութիւնդ ձեր՝ դդասք սրբա//զան քահանայիցդ, որք հանդիպիք սուրբ Աւետարանիս կարդալով կամ աւրինակելով կամ տեսանելով՝ խոշորութիւն գրիս և սխալանացս անմեղադիր լերուք, քանզի ի դառն և ի նեղ ժամանակի դրեցաք, որ ամենայն ազգս Հայոց իբրև գծով ալէկոծին ի ձեռն անաւրինաց և շրջին յաշխարհէ յաշխարհ և հանգիստ ոչ գտանին։ Արդ, աղաչեմք զձեզ, ո՛վ մանկունք սուրբ եկեղեցոյ, աստուած-ողորմի ասացէք մեղուցեալ գծողիս Սուքիասի, և ծնօղաց իմոց, և ամենայն արեան մերձաւորաց իմոց, և Գրիգոր սարկաւագին, որ զթուխտս կոկեաց...

292բ Դարձեալ, կրկին անգամ յիշեցէք ... Քրիստոսա//դաւան և ուսումնասէր կրօնաւորին Վարդանի, որ ստացաւ զսուրբ Աւետարանս ի հալալ վաստակոց իւրոց, յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնօղաց իւրոց՝ հաւրն Աբրահամ քահանային և մաւրն Գօհարին, և եղբարցն Յովանէսին և Յոհանէս քահանային, և Յովանէսի կնոջն Եւային, և իւր տղայոցն Ստեփանոսին և Գօլազիզին, և դստերացն Նազլին և Սուրաթին, և Յոհանէս քահանայի կնոջն Խամօշին, և իւր գեռաբոյս որդոյն Յովսէփին, և այլ ամենայն արեան մերձաւորացն սոցա՝ կենդանեացն և հանգուցելոցն...

բ

1ա Զնկարող սուրբ Աւետարանիս զՄկրտիչ Հիզանցի յիշեցէք ի Քրիստոս միով ողորմիւ և աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։

### 384

### ՄԱՇՏՈՑ

Վենետիկ 1157

Գրիչ՝ Թումա
վայր՝ Բուղերիկոյ երկիր,
Հաւրախու վանք

Արդ, գրեցաւ սուրբ տառս ի յերկիրս Բուղերիկոյ, ի վանքս Հաւրախու, ընդ հովանեաւ տիրամաւր սուրբ Աստուածածնին, ի թվ. Հայոց ՋԽԸ.

(1499), ի խնդրոյ ուստայ Ուսուֆ ոսկերչին, ի Թումայ գրչէ Աղթամարցի արեղայէ ... Աստուած ողորմի ասացէք Թումայ գծողիս, ...տէր Ստեփաննոս կաթողիկոսին, և եղբաւր նորին տէր Ներսէսին, որ ուսուցին ինձ զարուեստ գրչութեանս։

## 385

## ԱԻՍՏԱՐԱՆ

Գ. Սրուանձտեանց «Թորոս Աղբար» Բ, էջ 328

Ակն, Բինկայ գիւղ

Գրիչ՝ Մեսրոբ Երզնկացի
վայր՝ Երզնկա, Կայիփոսի վանք

...Գրեցաւ ձեռամբ քարտուղարի
Եւ յոգնամեղ ւրիտակ գրչի...
Մեսրոբ անուն բանասիրի...
Ի հայկազեան հայոց սեռի
Ի թվականիս իննհարիւրի*,
Զորեքտասանք և ութ (1499) թուի,
Մայիս ամսոյ ի վեցեկի,
Ի մայրաքաղաքս Երզնկայի,
Որ եկեղեաց գաւառ կոչի,
Մեծահռչակ վանք Կայփոսի,
Որ կայ ի լեառն Սեպուհի,
Եւ տէր Ներսէս առաջնորդի՝
Աղնուական ի մեծ տոհմի,
Սուրբ և մաքուր յոյժ գովելի,
Որ հրեշտակաց է բաղձալի։
Եւ քաջ հռետորն մեր բարի,
Որ Ստեփաննոս միշտ յորջորջի,
Վարժէ զմանկունս յիմաստ բանի,
Որք են յակճիռս աննիրհելի։
Այլ և զնաղաշն գովելի՝
Զտէր Սիմէոնն Խարբերդցի,
Որ զարդարեաց ծաղկաւք իւի,
Գոյն զգունով զարմանալի։
Զձեզ աղաչեմ եղբարք բարի,
Որք ընթեռնուք հոգւով իւի,
Զիս յիշեցէք ի յաղաւթի՝
Զգրչակ Մեսրոբս Երզնկացի,
Այլ և զհայրն իմ բաղձալի
ԶԱմիրդովլաթն նազելի,
Եւ զմայրիկն իմ գովելի

* Տպագրված է «ի թվականիս Ջ. Ի., որ անշուշտ սխալ է։ Մենք սրբագրում ենք Ջ-ի, այսինքն «իննհարիւրի»։

Առ տէր աստուած ամենայնի։
Այլ և զեղբայրն իմ ցանկալի
ԶՄանկաւագն Հարազատի,
Եւ զաւակունքն իւր ուռճալի
Դուք յիշեսջիք սիրով սրտի...

## 386

### ԱԽԹԱՐԱԿԱՆ ԲԺՇԿԱՐԱՆ

**Երևան 4600**

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Համշինու երկիր, Եղնովիտ գիւղ

...Գծագրեցաւ սուրբ Բժշկարանս ի թվին ՋԽԸ. (1499), ի կչիռ կեն-
զանակերպի, ձեռամբ անիմաստ և մեղսամած գրչի Կարապետ երիցու, ի
յերկիրս Համաշինու, ի գեւղս Եղնովիտ, ընդ հովանեաւ սուրբ Աստուա-
107ա ծածնի, և սուրբ Սիովնի, և սուրբ Խաչիկ հաւրն հոգևորի, // և սուրբ Վար-
դանացս, որ աստ կան հաւաքեալ ի պահպանութիւն երկրիս և գաւառիս
մերոյ, ամէն։

Գծագրեցաւ սուրբ Բժշկարանս* ի վայելումն և ի պահպանութիւն ան-
ձին իմոյ Կարապետիս, և զաւակաց իմոց Վարդանին, և Ստեփանոսին. և
Յոհաննիսին, և եղբարցն իմոց, և ամենայն ընդանեաց. և յշտեմարանաց
մերոց լիութիւն նոյնպէս յորժամ զԵ. (5) նկանակսն ԵՌ. (5000)-ւսն և յԷ.
(7) նկանակսն ի Դ. (4) հազարսն և որպէս ի ձեռն Պարսմա ճգնաւորին զը-
107ա շտեմարանս նորա լիացոյց և զարձեալ զսեղանսն // բազմացոյց և զգաւսն
լցոյց կրկին անգամ, նոյնպէս և ի ձեռն սուրբ Նիկողայոսի առատացոյց.
նոյն աւրհնութեամբն աւրհնեսցէ տէր աստուած զշտեմարանս և զսեղանս
և զուրախարար բաժակ**. և որպէս աւրհնեաց զհայր Աբրահամ և զԻսահակ
և զՅակովբն և բազմացոյց զխաշինս և զանասունս նոցին՝ նոյն աւրհնու-
թեամբ աւրհնեսցէ զխաշինս և զանասունս մեր։ Յիսկզբանէ արարածոց
մինչ ի յայս աւրհնութիւն, որ ելեալ է ի բերանոյն աստուծոյ վասն սիրո-
108ա ղաց իւրոյ հանգիցէ ի վերայ մեր և զաւակաց //մերոց, և ըշտեմարանաց
մերոց, և խաշանց, և անասնոց, և կաթին, և մայրեաց, և մեղուաց, և ան-
դաստանաց, և արտորէից մերոց. և իբրև զաղբիւրս զարնանային յորդ-
եսցէ և առատացուսցէ զամենայն գոյութիւնս մեր, աջն անեղին և բազու-
կըն հզաւրին եղիցի մեզ հովանի և պահապան ի վերայ մեր ամենայն ըն-
տանեաց մերոց ի յաջողումն և ի սէր սուրբ արքայութեանն և անմահ թագա-
ւորին, ամէն։

Մեք հանապազ երես ի գետին առ նա պաղատելով և նա զիւր սուրբ
և զամենազաւր և զբաշխող աջն ի վերայ մեր տարածելով և զմեզ յամե-
նայն չարէ փրկելով յերևելեաց և յաներևութից, ամէն։

---

* «Բժշկարան» ասածը զանազան հմայական աղոթքների ու բանաձևերի մի ժողովածու է, որը բնավ առնչություն չունի գիտական բժշկականության հետ, բայց հարուստ է հնագույն ծագում ունեցող կախարդա-հմայական բանաձևերով։

** Երկու բառ ջնջված է, գուցե գրված է եղել սխալմամբ։

387

ԳԱՆՁԱՐԱՆ

*Թ. Գուշակեան, Ցուցակ Սեբաստիոյ ս. Նշանի 140, էջ 85*

Գրիչ՝ Խաչատուր
վայր՝ Սեբաստիա, Անապատ վանք

*Փառք ... որ ետ կարողութիւն հասանել յաւարտումն աստուածունակ տառիս, որ է Գանձատետր ի պայծառութիւն սուրբ եկեղեցեաց։*

*Արդ, գրեցաւ սա ձեռամբ բազմամեղ մեղսամակած և անարհեստ գրչիս՝ սուտանուն* Խաչատուր *աբեղիս, որ զանուն ունիմ, բայց ի գործոցն յոյժ թափուր և հեռի, ի թվականիս մերոյ ՋԽԸ. (1499), ի քաղաքս* Սեբաստիա, *ի վանս որ կոչի* Անապատ *ի դրունս սուրբ* Աստուածածնին, *ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս տէր* Սողոմոնին, *և տեառն* Խաչատուրին, *և այլ միաբան եղբարցս։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով, յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր զիս՝ զանարժան և զանպիտան գրչակս՝* զԽաչատրիկս, *և ծնողսն իմ, և զամենայն արեան մերձաւորսն՝ զկենդանիսն և զհանգուցեալսն...*

*Ըստացող այսմ Գանձարանիս զմաղտեսի* Սաւռազն, *և զկողակիցն իւր* զՂիմաքն, *և զդեռաբոյս զաւակն իւր* զՍատաքիարն՝ *զքաղցրաբարբառ աղաւնին (յիշեսջիք)։ Եւ եդ զսայ յիշատակ իւր և զաւակին իւրոյ* Յակոբին, *որ տղայ հասակաւ փոխեցաւ առ Քրիստոս յոյսն ամենեցուն, ի դրունս սուրբ Լուսաւորչին և սուրբ* Աստուածածնին. *յիշեցէք ի մաքրափայլ աղօթս ձեր զմաղտեսի* Սաւռազն *և զամենայն արեան մերձաւորսն...*

388

ՄԱՇՏՈՑ

ИВАН В—7

Գրիչ՝ Խաչատուր

ա

*Արդ, գրեցաւ սայ ի դուռս Նորակնունք Աստուածածնիս, ի թուաբերութեանս Հայոց ՋԽԸ. (1499)։*

բ

Խաչատուր *գրիչս յիշեցէք, աստուած ողորմի ասացէք։*

գ

*Մարմարս տանծի փայտ էր, կոկիչս խոզի ա[տա՞]մն էր, և գրիչս չեմարժան էր, թղթի գինն խիստ թանկ էր։*

դ

*Ախ վայ գրիս, իմ ճարս ինչ կու լինի։*

Ե

Եղիսաբեթն ծաղկած կենա, որ եբեր մին քրեղէն բանջար՝ և եբեր յաւշն ի վերա։

Զ

Աստուած ալրհնէ զՁիշաքն և զորդին նորա Յովանէս սարկաւագն, որ մին քարեղէն բանջար եբեր և երկու հաց ի վերա։

Է

Ամենակալ աստուածն ալրհնէ զԱմիրբար–աղէն, զիւր որդիքն առհասարակ, մին ծանր սեղան եբեր։

Ը

Աստուած փառաւորէ զտէր Վրթանէսն, որ ալրինակն շնորհեաց, որ այս մի քանի բանքս գրեցաք։

Թ

...Տէր Ստեփանոսն փառաւորել, որ զօրինակն շնորհել։

Ժ

Աստուած փառաւորէ զտէր Կունիկն, որ ալրինակն շնորհեց։

ԺԱ

Աստուած ալրհնէ զՋունայիթն, մին քարեղէն մածուն և երկու հաց եբեր, որ կերաք ու գրեցաք։

ԺԲ

Գրեցաւ սա ձեռամբ ամենամեղ և անարժան Խաչիկ իրիցու, որ միայն զանունս [ուն]իմ և ոչ գործով։

ԺԳ

Աստուած ալրհնէ զՇանճատարն, որ ալրինակն շնորհեց, ալգտեցաք զգանձերս։

ԺԴ

Աստուած ալրհնէ զԱղէն և զտղայսն նորին, մին քարեղէն կորկոտ եբեր, որ կերաք և գրեցաք զսայ։

ԺԵ

Կանէքն ծաղկի, որ ճըմբուռ եբեր մին քարեղէն, հացն ի վերայ։

ԺԶ

Պօղոսն շատ ապրի, մորի եբեր մին փունջ, որ կերա, դարձեալ զայս գրեցա*։

* Այս հիշատակագրությունները գրված են ներքին լուսանցքների վրա։ Ձեռագիրն էջակալված չէր, այդ պատճառով չկարողացանք նշել էջահամարները։

## 389

### ԱՒԵՏԱՐԱՆ

Տ. Պալեան, Ցուցակ Կեսարիոյ Ա, տետր Բ, էջ 48
(Կեսարիայի ս. Աստուածածնի. եկեղեցի. 3)*

Գրիչ
վայր՝ Երուսաղէմ

257բ ...Արդ, գրեցաւ աստուածային սուրբ Աւետարանս ի սուրբ քաղաքն Երուսաղէմ, ի սուրբ աթոռ Տեառնեղբաւրն, որ այժմ է վանք Հայոց ազգին. ընդ հովանեաւ լայնանիստ, շնորհալից և դեղեցկայարմար սուրբ Յակովբայ տաճարիս, և այլ սուրբ տնաւրինականացս, որ կան ի սուրբ քաղաքս Երուսաղէմ, ի թուականութեանս Հայոց Ջ. և ԽԸ. (1499) ամի։ Ստացաւ զսա քրիստոսասէր և երկիւղածն աստուծոյ Յարապն ի հալալ ապրանացն, և եդ յիշատակ իւր և կենակցին Խաթունին, ի դեղն Խանձառն, յիշատակ բարի հոգոյ իւրոյ և ծնաւղաց իւրոց։ Արդ, աղաչեմ զմանկունսդ սուրբ եկեղեցոյ, որք վայելէք յաստուածային սեղանոյս, յիշեսջիք ի սուրբ և ի մաքրափայլ յաղաւթս ձեր առաջի զենլոյն Քրիստոսի զՅարապըն, և զիւր կենակիցն, և զծնաւղսն իւր, և ամենայն արեան մերձաւորս, և աստուած-ողորմի ասացէք և մեղաց թողութիւն խնդրիցէք, ամէն։

Եւ ով ողորմի աս ///·

## 390

### ԱՒԵՏԱՐԱՆ

Դ. Սրուանձտեանց «Թորոս Աղբար» Բ, էջ 434
Տիգրանակերտ ս. Սարգիս եկեղեցի

Գրեալ ի Թվ. Հայոց ՋԽԸ. (1499), ի քաղաքն ի յԱթախ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի և Գէորգայ զաւրավարին, ի խնդրոյ պատուական տանուտիրոջն պարոն Սատախին...

## 391

### ԱՒԵՏԱՐԱՆ

Նոր Ջուղա 402, ՄՏՄ

Հետ. ստացող՝ Ճանիաղայ

193ա Ճխարկու որդի Ճանիաղին, մայրն իմ Ղուլ, և զեղբայրն իմ ի Քրիստոս հանգուցեալ Մարտիրոս քահանայ, կողակիցն իմ Սալիկ, և որդիքն իմ Մարտիրոս, դուստր Մարիան, Եթար, Խաթուն, Մարիշա, քուրն իմ Հասրաթ, Էվէտմելիf, Սարիկ, Նսրաթ. աղաչեմ զձեզ յիշեսջիք...

Թվական ՋԽԸ. (1499)։ Ես Հանէս գրեցի։

---

* Նոյնը տե՛ս նաև «Մաղիկ» շաբաթաթերթ, 1891 թ. №41, էջ 1։

## 392

## ՈՍԿԵՓՈՐԻԿ

*Արմաշ 186, Թոփճեան Ցուց. էջ 343*

*Գրիչ՝* Յուսիկ քահանայ
*վայր՝* Եդոկիա

162 *Փառք... Գրեցաւ սուրբ տնաւրինականքս ի քաղաքս* Եդոկիոյ *թվ. ՋԽԸ. (1499), ձեռամբ բազմամեղ և անիմաստ գրչի՝ սուտանուն* Յուսիկ *քահանայի, ... յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր...*

## 393

## ՇԱՐԱԿՆՈՑ

*Զմմառի վանք 72 (216), Քէչիչեան Ցուցակ, էջ 116*

*Գրիչ՝* Կարապետ

ա

115բ *Զստացաւղ տառիս* և զգծող սորա զ*Կարապետ *երէցս աղաչեմ յիշել ի տէր, և աստուած զձեզ յիշէ յիւր միւսանգամ գալուստն, ամէն։ Թվին ՋԽԸ. (1499)։*

բ

203բ *Ո՜վ սուրբ նշան տէրունական,*
*Մեղաւորիս լեր ւգնական,*
*Պահել ըզմեզ միշտ անսասան,*
*Ի չար ախտիցըն դիւական*
*Եւ աղաչեա զՅիսուս արքայն,*
*Ողորմելով յիւր դատաստանն,*
*Տալ մեզ բաժին յարքայութեանն*
*Եւ ժառանգել զկեանս անվախճան։*
*Աւրհնեալ է աստուած յամենայն ժամ**։*

## 394

## ԱԻԵՏԱՐԱՆ

*Իրան, Փերիա գավառի Բժշկերտ գյուղ, ՄՏՄ*

*Գրիչ՝* Մկրտիչ

ա

*Զսուտանուն ծրողս զպղերգս, զծոյլս, որ չեմ արժանի յիշման, յիշեսջիք։*

բ

*Փառք ... յամի Չ. և ԽԸ. (1499) թուականութեան Հայոց, և ես* Մկրտիչ *անարժան քահանայ ... գրիչ...*

---

* Տեղ է բաց թողնված։
** Կան նաև այլ՝ անարժեք հիշատակագրություններ։

# 395

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7979

Գրիչ՝ Յակոբ

294բ ...Որոյ ցանկացող եղեալ բարէմիտ և բարեսէր կինն Խաթիր-Խաթուն,
որ մնացեալ էր յառնէն իւրմէ // և զատեալ և մեկնեալ յաշխարհս վայելչութեանց՝ ի տանէ, ի մէլքէ, յորդւոց և ի դստերաց՝ յոյս և ապաւէն ունե-
լով զՔրիստոս և զսուրբ Աւետարանս։
Վասն որոյ յօժար կամօք ստացաւ զսա ի հալալ արդեանց իւրոց յի-
շատակ հոգւոյ իւրոյ, և առն իւրում Նալբանդ Կարապետին, և ծնօղաց
իւրեանց Ջաֆարին և Թաղամէլիքին, և Հաբիբի հօրն Աստուածատրուն, և
մօրն Ջանմէլիքին, և զաւակացն Մլքամին, որ երիտասարդ հասակաւ
ճեղդամահ եղեւ յանօրինաց և զդառնութիւն այրութեան իւրոյ կրկին վի-
րաւորեաց, զի սուքն ոչ միայն էր ծնօղացն, այլ և ամենայն տեսողացն,
և դստերն Թուրվանդին, որ ի հասակս նորհարսնութեան փոխեցաւ ի
Քրիստոս, Յակոբին, Բարխօդարին, Աստուածատրին, և Նարին-Խաթու-
նին, Թաղամէլիքին, և միւս որդւոյն Խըդըրշին, որ տարաժամ մահւամբ
փոխեցան յաշխարհէս. այլ և ամենայն արեան մերձաւորացն՝ կենդա-
նեացն և հանգուցելոցն ի Քրիստոս, ամէն։
295ա Այլ և եղբարցն // Խօշխաբարին և Խօջին, որ և զԱւետարանս սոքա
տւին գրել ի հալալ վաստակոց իւրեանց, յիշատակ հոգւոց իւրեանց և
քւերն Խաթիբին, զի յորժամ զսորա որդին անօրէնքն խեղդամահ արարին
ի ծառէն կախեալ, ի մէջ այգւոյն իւրոյ ի մէջաւրէի, և յոյժ դառն կսկիծ
եղեւ ծնօղացն և ազգայնոցն և բարեկամացն, վասն զի միաւոր էր և յոյժ
գեղեցկապատկեր և վայելուչ հասակաւ, վասն որոյ զրկեցաւ յաշխարհէս
և մնաց սոցա քոյրն Խաթիբն առանց յիշատակ։
Եւ եկեալ անօրէնք զտուն և զայգին և զապրանքն զամէն պարնական
բթըլմալ արարին, վասն որոյ եղբարքն գնացին ի պարոն և ի դատուր ան-
կան, և շատ կաշառօք ազատեցին յանօրինաց։ Վասն այս պատճառի ետ
քուրն զէգին Խօշխաբարին և Խօջին և զիւր հոգին ի սոքա ապըսպըրեց։
Եւ սոքա ետուն զԱւետարանս գրել յիշատակ հոգւոյ իւրեանց, և քըւերն
Խաթիբին, և առն իւրում Կարապետին, և որդւոյն Մլքամին, և ծնօղացն
295բ Աստուածատրուն և Ջանմէլիքին, // և եղբարցն Մրտէրին, Աղաջանին, Յո-
վանիսին, Խօշխաբարին և Խօջին, և մօր սոցա Դըիմ-Խաթունին, և եղբօր-
որդւոցն՝ Աղուբին, Սաֆարին և Աստուածատրուն, որ է ժառանգ սոցա, և
էդգարին, զոր տէր աստուած ընդ երկայն աւուրս առնէ, և հարսներուն՝
Նարին-Խաթունին, և Մաղսում-Խաթունին, և տղայոց սոցին Քօճնափո-
շին, Աղայպապուն և Նիգաճդարին, որ տարաժամ մահւամբ փոխեցան ի
Քրիստոս։

Վասն որոյ յերես անկեալ աղաչեմ յիշել յաղօթս ձեր զվերոյասացեալքս և լի բերանով աստուած-ողորմի ասացէք։

Արդ, գրեցաւ սա ի թըւիս Հայոց ՋԽԹ. (1500) ամի, ի դառն և դժար ժամանակի, որ Թաֆրիզոյ փատշահութիւնն խաբաներ էր և Աղ-օլուցոյ ազգն յիրար անկած էին, և պարոնութիւն սոցա ոչ հաստատէին, և աշխարհս կայր յերերմանի, վասն զի միմեանց ոչ հնազանդէին և յԳ. (3)—Դ. (4) գիմաց բաժանեալ էին փատշահութիւնն, և զմիմեանս կոտորէին. և շատ հայ և թուրք թալանեցան, և գեօղք և քաղաքք աւերեցան, և ազգք քրդաց կոտորեցան և սպանեցան։

296ա Ի սոյն դառնացեալ ամի ձեռն // արկեալ գրեցի զսա ես՝ Յակոբ մեղուցեալ գրիչս, ընդ հովանեաւ ամենամաքուր սուրբ Աստուածածնի տաճարիս, և սուրբ Ստեփանոսի Նախավկայիս, և պատերազմի սուրբ Նշանիս։

Արդ, որք հանդիպիք սուրբ Աւետարանիս կարդալով կամ օրինակելով յիշեցէք յաղօթս ձեր զվերոյասացեալքս՝ զԽաբիբ մամն, և զնալբանդ Կարապետն, և զորդին զՄալեամն, և զեղբարքն զԽօշխաբարն և զԽօջէն, և զամենայն արեան մերձաւորսն, և լի բերանով և ուղիղ սրտիւ աստուածողորմի ասացէք, և Քրիստոս աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։

## 396

### ՃԱՇՈՑ

Երևան 4557

Գրիչ՝ Գրիգոր Եպիսկոպոս
վայր՝ Գեղարքունիք, Խորոտիկ ուխտ

571բ …Որոյ շնորհաւք և աւժանդակութեամբ յանկ ելեալ աւարտեցաւ գերափառ և հոգիազարդ աստուածաբան տառս վասն խնդրոյ բարեսէր և հեզահոգի Մէլիք Աւանին և որդւոյ նորա Աղաբեկոյն, ձեռամբ բազմամեղ և անարժան գրչի Գրիգոր եպիսկոպոսի, ի թվականիս մերում Ջ. և ԽԹ. (1500) ամի։ Քանզի որք մեծութեան ընչից ըղձանան, ոչ ինչ աշխատութիւն զմտաւ ածեալ յայլմէ յայլ անցանել գաւառս հեռագնացս ուղևորու-
572ա թեան, որպէսզի շահն աճեցուցանել մարթասցեն։ Եւ այ /// ընդ համատարած ծովուն ///*։ Ըստ այսմ պայմանի, ամենագովելի և երջանիկ, ընտրեալ և պատուելի, աստուածահաճոյ և ամենագովութեանց արժանաւորին Մէլիք Աւան՝ թոռն Գոշ վարդապետին, որդի տէր Սա[ր]էսին, գրել ետուր զսուրբ տառս ի Սանահնոյ աւրինակէն, և մեծաւ փափագանաւք, ի հալալ ընչից և յարդար վաստակոց իւրեանց ստացաւ զսա յիշատակ բարի հոգւոյ իւրեանց, և ծնաւղաց նորին, և այլ ամենայն արեան մերձաւորին։ Ով որ հանդիպիք սուրբ կտակիս յիշեսջիք մաքրափ[այլ] յաղաւթս ձեր զորդիք Մէլ[իք] Աւանին՝ զՄելքիսէթ քահանայն, Աղաբեկին, զԱռուստամն, զդստերքն՝ Շահ-Սալթանն, Մելիք-Իսլամն, Շահ-Իսլամն, Խոնդխաթունն, Արզուխանն:

* Յոթ մաշված տող բաց ենք թողնում։

Դարձեալ աղաչեմ յիշել առ Քրիստոս զհանգուցեալ եղբայրն զՓիրումն, զկողակիցն և զորդի և զդուստր նորին, /// աղաչեմ յիշել առ Քրիստոս /// Մել[քիսէդն, և զամուսինն իւր Ուստիանէ. և ///* Մէլ]քիսէդին. զԱյեանին /// եանին Փի /// ոս, Փիրև /// և զդստերքն Թ /// փորգլուն բեկ ///:

Դ Դարձեալ աղ[աչեմ ման]կունսդ եկեղեցւ[ոյ որք ընթ]եռնույս զսուրբ տառս [յիշեցէք] ի սուրբ աղաւթս ձեր [առաջի ա]սացեալ ստացող /// Մէլիք Աւանն, և զամուս[ինն] իւր զպարոն Արսուտան, և մայրն իւր զհանգուցեալն առ Քրիստոս Եսան, և զծաղկեալ [որ]դիքն զԱղաբէկոյն՝ զԱղաբաբէն, և հանգուցեալ զա[ւակ] Փիրին, և զդստերքն Գ///կին, Խանիբէկին. Գալխաթուն, և կողակիցն Աղբէկոյն զհանգուցեալն /// Թանաւշեն, և զկենդան///իք Խաթունն, դարձեալ աղաչեմ աղ[աչեմ] յիշել առ Քրիստոս զԱռըս[տամն և] զամուսինն իւր /// և զորդիքն զԱւե /// Ոլուսբէկ խաւեա /// Ամիրբէկն: Դարձեալ [աղաչեմ] յիշել առ Քրիստոս զքոյ[րք Մէլիք] Ավանին՝ Նու/// Ջիչաf, Մուր /// զԹանկսուղ**:

572բ Արդ գրեցաւ սուրբ տառս /// տարեան գիրք և /// ի դառ]նացեալ ժամանակիս [յորո]ւմ նեղիմք յանաւրենաց /// թենէ եւս առաւել ի /// կնի հարկապահանջու[թենէ]։ Ի Հայրապետութեան /// Սարգիս կաթուղիկոսի և պատ[րիարքի Վա]ղարշապատու էջմի[ածնի. յ]աշխարհակալութեանն /// Խանին որդոյ Ուս/// ին, ձեռամբ ամեն[ամեղ և ան]արհեստ գրչի Գրիգորի [եպիսկոպոսի] /// զանունս մի]այն ունիմ և ոչ զգործս, որ /// Արծէ քաղաքէ /// արադէպ /// գաւառս Գեղարքունի /// ուխտս որ կոչի Խորոտիկ [ուր հան]դիպեցաք բարեմիտ եպիսկոպոսի տէր Ղուկասի. և մոռացաք զաստ[անդ]ական կեանս մեր։ Վասն յոյժ սիր[ելոյ] և փափագանաց սորա ձեռն արկ[եալ] սկիզբն արարաք սուրբ գրոցս, ի դառն չարաչար տանջանաւք աւարտեցաք ի մեծի աղուհացից երկրորդ շաբաթի[ն], ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Նշանիս, և սուրբ Յակովբիս, և սուրբ Գէորգիս, և այլ ամենայն սրբոցս, որ աստ հաւաքեալ կան։

Արդ երեսս անկեալ աղաչեմ զգասս հայրապետիցդ և քահանայից, որք հանդիպիք սուրբ գրոցս կարդալով կամ աւրինակելով, յիշեսջիք ջեռմեռանդ սրտիւ հայցմամբ ի հեշտալուր տեառնէն մերմէ Յիսուսէ Քրիստոսէ, զի ողորմեսց[ի] և զթասցի, թողցէ, քաւեսցէ զամենայն յանցանս, զկամա և զակամայ զստացողի գրոց[ս] Մէլիք Ավանին. և նախնեաց նորա, և ընդանեաց նորա՝ համորէն ամենեցուն, ամէն։

Դարձեալ աղաչեմ յիշել առ Քրիստոս զսրբասնեալ հեզահոգի զտէր Ղուկաս եպիսկոպոսն, և զվարպետն իւր Անանիայ սուրբ և մաքուր և [ա]ղաւթասէր աբեղայն, և զԱստուածա[տուր///ն, և զԽաչատուր աբեղայն, [և ըս]պասաւոր վանացն զՇանիջան ապաշխարողն, որ սպասաւորեաց և կերակրեաց զմեզ։ Դարձեալ աղաչեմ յիշել առ Քրիստոս զտէր Ղուկաս եպիսկոպոսն, և զհայրն իւր զՀասան, և զեղբայրն զՓարաեան. և զԱղաեան, և զՊապաջան, և զորդիք նոցին, և զայլ ամենայն արեան մերձաւոր նոցին...

---

* Սկսվում է երկրորդ սյունակը, որը խիստ մաշված ու պատռված է։

** Խաթարված է 17 տող. բաց ենք թողնում։

Դարձեալ աղերսանաւք պաղատիմ առ ձեզ, յիշօղ երկնագնաց յաղաւթս ձեր զԳրիգոր բազմամեղ գրիչս, և զեղբաւրորդին իմ զՄկրտիչ մաշյաղն, զի բազում աշխատանօք կռկեաց զթուղթս, և զծնաւղսն իմ՝ զհայրն իմ Խաչատուր և զմայրն Սիթխաթուն, և զեղբարքն իմ զՎիրապտուրն, զԱստուածատուր, և զհանգուցեալն առ Քրիստոս զՅովաննէս, զՂրդանէս, զԲայրամշէն, և զքոյրն իմ զՆուբկարն, և զԳ[ու]լին: Ո՞վ եղբարք, անմեղադիր [լերու]ք սղալանաց սորա, զի կայր մեր [այս էր///*

# 397

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6273 (Ղ. Փիրղալեմեան, Նշխարք պատմութեան հայոց), էջ 376—377, ի ս. Սքանչելագործ

Գրիչ՝ Յակոբ
վայր՝ Արծկէ

...Եւ արդ, գրեցաւ սա ի քաղաքս Արծկէ, ձեռամբ մեղապարտ գրչի Յակոբ սուտանուն քահանայի, ընդ հովանեաւ ամենամաքուր Աստուածածնի, և սուրբ Ստեփաննոսի տաճարացս, և պատերազմի սուրբ Նշանիս, ի դառն և ի նեղ ժամանակիս, որ աշխարհս ամէն յերեբմանի է Աղօ[ղ]լուի թագաւորութիւն անհաստատ էր և յիրար անկած, և միւս դիմաց Ղարայ-օղլու ոմն ելաւ, և կռուեալ յոյժ կոտորեցան և կորեան։ Ի թուականիս մերում ՋԽԹ. (1500) ամի, ի հայրապետութեան տեառն Սարգսի կաթուղիկոսի։

Եւ արդ ես ըստ բազում հայցման և խնդրոյ վարդապետիս մերոյ տէր Նիկողայոսի գրեցի զսուրբ Աւետարանս յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնողացն Կալամին և Թուրվանդին: Այլ և զանազան ծաղկող և զարդարող երանգերանգ գունօք սուրբ Աւետարանիս զԲերկրցի տէր Կարապետն, որ զարդարեաց ծաղկօք զսուրբ Աւետարանս, և զծնողսն իւր զՏիրատուրն և զՆիգարն, և զեղբայրն զՀերպետն, որ ձեռամբն անօրինաց սպանաւ, տէր աստուած ընդ սուրբ մարտիրոսացն դասեսցէ, ամէն։

# 398

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Վիեննա 170, Յ. Տաշեան Ցուցակ, էջ 485—486

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Եղնովիտ գիւղ

ա

49բ Զմեղաւոր ծրողս զԿարապետ երէցս յիշեցէք եւ աստուած զձեզ յիշէ յիւր միւսանգամ գալուստն։ Թվն. ՋԽԹ. (1500)։

բ

57ա Թվին. ՋԽԹ. (1500), մուտն ի կարճին, փետրվարի ԻԸ. (28), բարեկենդանին յետի ուրբաթին աստուածասաստ բարկութիւն տեղեաց ի վե-

* Ջորս տող մաշված է։

բայ գեղիս մերոյ Եղեովտա, գաւառիս Սուրբ Խաչիկ հաւրն մերոյ, զի եկն Ճվկայձորն հուսի և աւար եհար զեկեղեցիս սուրբ Սիոն՝ ժամատնովն, և զՍրստագենց կալն՝ սարպնովն և մարագովն, և զհաց և զոզակ ամենայն ցիր և ցան արար, և զԴաւիթ որդին իւր ի մէջ կալին եսպան։ Եւ զպատրիկ Թաւաճալին զսարպինն հացովն, և զտունն և զգոմն տավրովն, և զկինն Դ. (4) տղովն՝ ի վայր էառ և եսպան. եւ մէկ անպիտայն տղայն Գ. (՞) ապրեցաւ ի մէջ հուսոյն, և Բ. (2) ոտքն մսեցաւ ի ծնկանէն ի վայր և բացուաւ, և Ի. (20) աւուր յետև մեռաւ*։

Եւ զհոռոմ Ստեփանոսն և զիւր կինն Դ. (4) տղովն, և զտունն, և զտեղն, և զտավարն և զամենեսեան բնաչինչ արար, որ ի Ե. (5) աւուր յետև զշունն ողջ գտան և այլքն ամենայն՝ մեռեալ։ Տեսէք զհրաշքն Աստուծոյ և զարձարուք մեղաց ձերոց։

Գ

87բ Տէր աստուած բարեխաւսութեամբ սուրբ հայրապետիս Երրեմի ողորմեա ստացողի գրոցս Կարապետ երիցու, և ծնաւղաց իմոց տէր Յովսէփին, և Հոռոմագիսին, և Եղիսաբեթին, և ամենայն արեան մերձաւորաց, ամէն։

390

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 3002

Գրիչ՝ Յունան եպիսկոպոս

վայր՝ Վարդանաշատոյ երկիր,

Գետիսիմոն գիւղ

...Շնորհաւք տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զքառաբուխ սուրբ Աւետարանս, յիշատակ հոգւոյ իմոյ, և ծնողաց իմոց՝ հաւրն իմոյ Մխիթարին և մաւրն իմոյ Յասուկանին...

330ա ...Այլ և ըստացա զսուրբ Աւետարանս յիշատակ ինձ և ամենայն արեան մերձաւորացն՝ ազգաց և ազգայնոցն, նաև փոխեցեալ և հանգուցեալ նախնի հայրապետքն մեր՝ տէր Իգնատիոս վարդապետն, տէր Յորդանան արհիեպիսկոպոս, տէր Ներսէս եպիսկոպոսն, և զհայրն իմ զՄխիթար յիշեցէք ///։

Այլ և յիշեցէք զկենդանիքս մեր, որ բազում երախտիք ունին ի վերա մեր՝ զհար զլուխ հաւրեղբայրն իմ զտէր Մաթէոս քահանայն, և զկողակիցն իւր զՀեղինէն, և զորդիսն զՎարդան քահանայ, և զԹադէոս: Այլ և զհարազատ եղբայրն իմ զՍադոն, և զկինն իւր Խոնծզատայ, և որդիքն իւր՝ Մխիթարն, Տալաթիարն, Սատ //// աբեղէն, զԻգնատիոս, և միւս աբեղէն Ազարիէն:

Ընդ նմին յիշեցէք ի Քրիստոս զքիրն իմ զՆարդան, և զորդին իւր զտէր Առաքեալ եպիսկոպոս, որ տղա հասակաւ փոխեցաւ ի Քրիստոս և մեզ կոծ եղև։

Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվականիս Հայոց ՋԽԹ. (1500), ձեռամբ անարժան գծողի Յունան եպիսկոպոսի...

---

* Տպված է ամեղաւ (՞)։

330բ *Գրեցաւ սուրբ Աւետարանս ի երկիրս Վարդանաշատոյ, ի մերձակա գեղս որ կոչի* Գետիսիմոն, *ընդ հովանեաւ սուրբ Կարմիր Աւետարանիս, և սուրբ եկեղեցեացս, և սուրբ նահատակիս, որ ի ժամատունս է։*

*Յիշատակ է սուրբ Աւետարանս մաւրն իմոյ* Ասուկանին *և հաւրն իմոյ* Մխիթարին, *ով ոք որ հանդիպիք յաղաւթս յիշեցէք։*

## 400

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7274*

*Գրիչ՝* Յովանէս
*վայր՝* Վարագ

**ա**

319բ *...Արդ, յա[ն]կ ելեալ կատարեցաւ սուրբ Աւետարանս ... ի հռչակաւոր և յաստուածաբնակ ուխտս* Վարագ, *ընդ հովանեաւ սուրբ և աստուածազաւծ Նշանի և է. (7) ստեղեան սուրբ տաճարացս։*

*Եւ ես՝ թափուրս ի բարեաց գործոց* Յովանէս *սուտանուն աբեղայ և գործովս խաբեբա, ընդ հովանեաւ սուրբ Նշանիս կատարեցի զսուրբ Աւետարանս, մեղսամած մատամբս յօրինեցի, միթէ քաւի մեղս ի մարմնի։*

*Ի թվականիս Հայոց ՋԽԹ. (1500), ի հայրապետութեան տեառն* Սարգըսի, *և մերոյ աթոռակալի սուրբ ուխտիս Վարագայ տէր* Յովանէս *եպիսկոպոսի, և ի թագաւորութեան սոլթան* Ախմադի:

*Արդ, աղաչեմ զմանկունսդ սուրբ եկեղեցոյ յիշեցէք ի Քրիստոս և ի*
320ա *սուրբ յաղօթս ձեր զյառաջ յիշեցեալ ստա//ցող սորա՝ զաստուածասէր և զբարեպաշտ* զՀալւէն, *և զծնօղքն իւր* զՆուրադին *և* զԽաբիպ-Խաթուն, *զեղբարքն* զՄուրատն *և* զԹուխմանուկն, *և զքուերքն* զԱզիզ *և* զԽայ-Խաթուն, *և զառն իւր* զՅովանէս, *և զորդիքն իւր, և զդստերքն, ...որ ետ գրել զսուրբ Աւետարանս ի յարդար վաստակոց և ի հալալ ընչից իւրոց, զարգարեաց և եդ ի դուռն Տիրամայր Աստուածածնի տաճարի* Արարուց *և սուրբ* Միրանաւորի, *յիշատակ բարի հոգո իւրո և ծնողաց իւրոց և ամենայն ազգականացն...*

*Եւ արդ, ... յիշման արժանի արարէք և զիս զանարժանս՝* զՅովանէս
320բ *գծողս, և զծնօղ//քն իմ՝* զՋանազիզն *և* զԽայ-Հաթուն, *և զպապիկն իմ* զԱստուածատուրն, *և զդայեակն իմ* զԱզիզ-Խաթուն, *և զդպրութեան վարպետըն իմ* զԿարապետ *քահանայ՝ սրբազան, առաքինի, և զհօրեղբայրքն իմ* զՍտեփանոս *կրօնաւոր՝ անյաղթ փիլիսոփա, և* զԱղմուրշա, *և զաւրհնօղքն իմ՝ զտէր* Յովանէս *եպիսկոպոս, և զվարդապետն* Թադէոս, *և զհոգևոր զհայրն իմ զոսկերիչ* Ասպանանշէն, *և զեղբայրքն իմ զուսթա* Առոմ *Ճարտա[րա]պետ, և* զԿարապետ, *և փոխեցեալն ի Քրիստոս* զԴրիգոր, *և զեղբաւրորդեակ իմ* զԱբիսողոմ *ստընդէա՝ դեռաբոյս ծաղիկ, և զկենդանիք և զհանգուցեալքն, և զայնոսիկ, որ ի վերայ մեր երախտիք ունին ի հոգևորն և ի մարմնաւորս... Եւս առաւել յիշեցէք ի Քրիստոս զարուեստի վարպետն իմ* զՍուքիաս:

**բ**

249բ *Քրիստոս աստուած քո փրկական չարչարանօքդ ողորմեայ մեղաւոր գծագրիս և* Խալայ-Խաթունին, *ամէն։*

## 401

### ՇԱՐԱԿՆՈՑ

*Ղ. Ալիշան, «Հայկարան»*

Գրիչ՝ Առաքել
Վայր՝ Խարտիշարոյ վանք

*...Ի յամուրս* Զմշկածագի, *ի հռչակաւոր անապատս* Խարտիշարոյ՝ *ի համալսարանս, ընդ հովանեաւ Աստուածածնիս և սուրբ Կարապետիս և սուրբ Սարգսիս, առ ոտս երջանիկ* Ստեփաննոս *վարդապետիս...*

## 402

### ԳԱՆՁԱՐԱՆ

*Ա. Սիւրմէեան. Ցուցակ Հալէպի Ա, 71, էջ 151*

Վայր՝ Հալապ

*Յինն հարիւր Հայոց թուական*
*Քառասուն* և ինն ըսկսեալ նոր ամ (1500)*
Մովսէս *վարդապետն և ես՝ ծառայն՝*
*Եկայք յաշխարս Արևմտեան,*
*Զի տենչացաք սուրբ Յարութեան.*
*Եկեալ հասաք տունըս* Շամեան՝
*Հալապ քաղաք՝ ի շահաստան։*
*Հանդիպեցաք ուրախութեան*
*Եւ ցնծացաք հոգով լըման,*
*Զի նոր շինեալ էր սուրբ խորան*
*Յանուն սրբոց քառասուն մանկան,*
*Այլ և զխորանն Մարունեան,*
*Նոյնպէս զաղգին ըզհոռոմեան։*
*Զսոքա շինեալ էր զամենայն*
*Աստուածասէր բռայիս* Յիսայն.
*Այլ և խըցեր հանգըստարան՝*
*Ի գալ հիւրոցն ուտարական,*
*Զի հանգիցեն խաղաղական.*
*Հանդերձ դըստիւքն իւրեանց, որ կան։*
*Շինեաց դարպաս թագաւորական,*
*Որ ժամատեղ էր ամառան՝*
*Քահանայից տեղ հանգըստեան,*
*Զի վայելին խաղաղական։*
*Աստուած պահէ զպարոն* Յիսեայն,
*Զինքն և ըզզիւրքն զամենայն,*
*Որք ի յայժմուս կենդանի կան*
*՚Ի որք ննջեցին ի հող տապան։*

* Բնագրում՝ «խ» (40)։

## 403

### ՄԱՇՏՈՑ

**Փարիզ 52, ՄՏՄ**

Գրիչ՝ Յովանէս Եզրնկացի
վայր՝ Իստաւնաս գիւղ

233 *Գրեցաւ ձեռնադրութեան գիրքս Անկուրիայ, գիւղն* Իստաւնաս. *ի դուռն սուրբ Աստուածածնին, ձեռամբ* Յովանէս *եպիսկոպոսին* Եզրնկացոյ, *որ զ*Անկուրիայ *շատ վշտի և չարչարանաց հանդիպեցայ, ով կարդալով կամ ատրինակելով զգիրքս զայս մի բերան զողորմիս տայ... գրողին հոգոյն* Յոճաննէս *եպիսկոպոսին... Այլ յիշատակ է գիրքս և վայելումն* Նիկողայոս *եպիսկոպոսին, գրեցաւ ի թվին ՋԾԽԹ. (1500)։*

## 404

### ՇԱՐԱԿՆՈՑ

**Երևան 1579**

ա

Նկարիչ՝ Աբրահամ

209բ *Թվ. ՋԽԹ. (1500)։*

*Զանարժան* Աբրահամ *նկարիչ գրոյս յիշեա, ո՜վ սուրբ եղբայր, ի տէր Յիսուս Քրիստոս**։

բ

*Մի մասի գրիչ*՝ Ղուկաս

276բ *Զսակաւ աշխատողս մէկ տետրիս* Ղուկաս *մեղաւոր յաղօթս ձեր յիշեցէք, ո՜վ սուրբ ընթերցաւղք, և զ*Գրիգոր *աբեղայն՝ գրող այսմ Շարակնոցիս յիշեցէք ի Քրիստոս, որ երիտասարդ տիաւք վախճանեցաւ և եթող մեղ կսկիծ բաղում։*

## 405

### ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 7771**

Գրիչ՝ Մելքիսէթ

*...Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս այս ձեռամբ* Մելքիսէթի *անիմաստ և ախմար գրչի... ի մեծ թուիս ի յեղանական շրջագայութեան արեգակյան ստորիշիւք երկնաշու ճանապարհաւ յերկնից յերկիր հայելով, ըստ արարչութեան չափեալ յ*Ադամայ *մինչեւ ցայսր ամք ՑՊՂԹ. (6899), իսկ*

* Գրված է Քրիստոսի պայծառակերպության նկարի ստորին մասում։ Եաչափայտի աջ և ձախ կողմերում նկարված են ձեռագրի ստացողների պատկերները։ Ձախ մասում նկարված է հասակավոր մի հոգևորական, որ է «Տէր Վանական ստացող գրոցս», աջ մասում նկարված է «Թումայ դպիրն՝ եղբայր Նորին»։

ի Հայկազանց թուականիս ՋԽԹ. (1500), ի դառն և ի չար ժամանակիս, որ կանք ի մէջ վշտի վասն բազում մեղաց մերոց։

298բ ...Յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր զաստուածասէր և զբարեմիտ խաչատուրն, և զկողակիցն իւր զՍալչուկն, և զորդիսն իւրեանց զՄխիթարն, զՍտեփանոսն, զխուդաբախշն, և զդուստրն իւրեանց զՋիշաֆն, զՍալամն և զՍուլտանն, և զՇահումն, և զծնօղսն իւրեանց՝ զԱբրահամն և զՍուլտան-Մէլիքն, և զեղբայրն իւր զՅոհանէսն:

Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զԿարապետ քահանայն և զեղբայրն իւր զՄարտիրոսն... Եւ որ յանդգնի և ծախէ կամ գրաւէ՝ զպատիժն ընդ Յուդայի առցէ, այլ կացցէ և մնասցէ [ սա ] ի ձեռն Կարապետ քահանային։

## 406

### ԱՆՅԱՅՏ ՁԵՌԱԳԻՐ

Ղ. Ալիշան «Սիսական», էջ 76

Ոմն յիշատակագիր

Յովհաննէս արեղէն մարտիրոսացաւ ի գեօղս որ կոչի Երախտիկ, ի ղանութեան Ալվանդ փաթշահին, թվ. ՋԽԹ. (1500)։

## 407

### ԱՒԵՏԱՐԱՆ

Ա. Սիւրմէեան, Ցուցակ Հալէպի Ա., 30, էջ 68

539բ Յայսմ ամի առի զսուրբ Աւետարանս, որ էր թվականս ՋԽԹ. (1500), ի ժամանակս քրիստոնեասէր թագաւորիս Ալատօլի, որ խիստ սէր և շաղաւաթ ունի ի վերայ հայ ազգացս՝ աստուած զինքն ընդ երկայն աւուրս առնէ և զիւր չարկամն խափանէ և զլխավարէ, և աւրհնէ աստուած զիւր թագաւորութիւնն, ամմէն։

## 408

### ԺՈՂՎԱԾՈՒ

Երևան 732

Գրիչ՝ Յովհանէս Համշինցի

221բ *Զսակաւ գիծս գրեցի*
*Եպիսկոպոս Համշինցի*
*Զայս անպիտ[ա]ն յամենայնի,*
*Որ Յովանէս անուն կոչի,*
*Ցաւալ նեղեալ յայս յաշխարհի,*
*Դառն և դժնեայ և անբարի*
*Միտքս փութով ի չար դիմի,*
*Եւ ի բարոյն յոյժ հեռացի,*
*Ու ահեղ աւուրն ///*
*Իմ գործոց ինձ պատրաստի։*
*Թվ. ՊԾ. (1401)։*

## 409

### ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ

Երևան 5597

258բ *Ես Յովանէս կրօնաւոր, Թումաս ոկչ. (ոսկերի՞չ), Կիրակոս կրօնաւորքս վերստին թափեցաք զսուրբ նշանն Գետարգել, բերաք ի սուրբ Եղիշէի ուխտն՝ ի Վարդպատրկէ վանքն, առ երջանկաշնորհ կրօնաւոր առաջնորդն սուրբ վանիցն, և ետուք յիշատակ սուրբ Գէորգայ և սուրբ Եղիշէի, ի կործանման պիղծ Թամուրին՝ ՊԾ. (1401) թվականին, և սպասաւ կացաք մեք սուրբ Սքանչելագործ Նշանին՝ մինչ ի մահ։ Ով որ հանցէ կամ գողասցէ զսուրբ և կենսատու խաչն, մասն և պատիժ Կայենին և Յուդային առցէ, ամէն*։*

---

* *Այս հիշատակագրությունն ընդօրինակված է ԺԷ դարի ձեռագրով։ Սկզբում ունի «Թվ. ՊԸ. (1359)-ին», իսկ վերջում՝ «Յայսմ տարոյս Մարտիրոս կրօնաւոր բազում չարչարանօք մարտիրոս եղև, ի ՊԵ. (1359) թվ.» հիշատակագրությունները, որոնք արտագրվել են, հավանաբար, նախագաղափար օրինակից։*

## 410

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7679*

*Հետ. ստացող՝* Աւագ-Տիկին

276բ *Ես՝* Աւագ-Տիկինս՝ *դուստր* Եմինի, *գնեցի զսուրբ Աւետարանս ի հա-լալ ընչից իմոց և ետու զսայ հոգևոր որդոյն իմոյ* Յովանէս *իրիցու, որ անուամբ յորջորջի* Անեցի. *և ետու զսա յիշատակ ինձ և ծնողացն իմոց՝ հայրն իմում* Եմինին *և մայրն իմում* Խաթունին, *և* Հանում, *և ամենայն արեան մերձաւորացն, որ յիշէ զիս և զն[ն]ջեցեալսն իմ։ Ի թվ. ՊՆ. (1401)։*

## 411

## ՃԱՌԸՆՏԻՐ

*Երուսաղէմ 3229*

*Գրիչ՝* Ներսէս
*վայր՝* Գամաղիէլի վանք

934 *Յանկացող եղեալ սրբոցս և գրոցս հաւատ//արիմ ծառայն աստու-ծոյ* Ասատ *միայնակեացն...*

*Արդ,* Ասատ *միայնակեացս ետ գրել զգիրքս զայս յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնօղացն՝ հօրն* Ամենին *և մօր* Խոնդին, *և եղբաւրն* Սիմէոնին, *և ամենայն արեան մերձաւորացն՝ կենդանեացն և հանգուցելոցն ի Քրիս-տոս, ամէն։*

*Արդ, գրեցաւ գիրքս այս ձեռամբ մեղսամած և անարժան ծառայիս աստուծոյ* Ներսէս *վարդապետի, ի դուռն ընդ հովանեաւ* Գամաղիէլ *առաք-եալի, ի թվականի հայկազեան տումարի ՊԾԱ. (1402), ի բռնակալու-թեանն այլասեռին՝ արեանարբու* Թամուր-Լանկին, *ի կաթուղիկոսութեա-նըն Ըռուշտունեաց նահանգին տեառն* Դաւթի *հայրապետին, եւ սուրբ ուխտիս առաջնորդութեան* Ստեփանոս *եպիսկոպոսին։*

*Այլ գովելի և ցանկալի,*
*Որ սիրտ ունի բարով իլի,*
*Հեզ և խոնարհ, երկիւղալի,*
*Աստուածասէր յամենայնի,*
*Եւ* Հայրապետ *աբեղայի՝*
*Զխաչն բարձեալ զՔրիստոսի,*
Ներսէս *սիրող տեառն Յիսուսի,*
*Եւ հետևող նորին շաւղի,*
Վարդան *ժրաջան և գովելի*
*Մարմնով յերկրի, մտօք յերկնի,*
935 *Եւ* Մկրտիչ *փոքր երիցուն՝*

*Սպասաւորի եկեղեցոյն,*
Ստեփաննոսին *պսակ անուն՝*
*Սիրտ սուրբ ունի հրեշտակական,*
Պետրոս *յանուն սարկաւագին*
*Եւ սպասաւոր սուրբ սեղանին,*
Աստուածատուր *մեր տնտեսին՝*
*Ջցանկալի մեր մուղդասին,*
*Քաջ և արի ժիր մըշակին՝*
*Որ* Խաչատուր *անուն կոչին,*
*Կրսերագոյն սարկաւագացն՝*
*Երկուց* Դաւթին, Ստեփաննոսին.
*Եւ համօրէն միաբանիցս*
*Ամենեցուն ի միասին,*
*Բազուկն հօր, աջն անեղին*
*Յաւէտ անփորձ պահէ զսոսին։*
*Ո՜վ սուրբ մանկունք նոր Սիոնի,*
*Որք հանդիպիք այսմ գրի՝*
*Խնամս արէք այս սոփերի,*
*Որ է դրախտ պտղով իլի.*
*Զայս ձեզ սեղան պատրաստեցի,*
*Որ կերակրիք յամենայնի*
*Սուրբ քահանայք սիրող բանի,*
*Սարկաւագունք յոյժ գովելի,*
*Նայ և ժողովք ամենայնի՝*
*Առհասարակ փոքու, մեծի,*
*Հայցեմ ի ձէնջ բանս բաղձալի*
*Պարգևս ինձ տալ զինչ աղքատի,*
*Ոչ արծաթ և ոչ ոսկի*
*Զինչ անցաւոր պէտք, որ լինի,*
*Այլ արարէք ղիս արժանի*
*Վասն միոյ տէր ողորմի,*
*Զի թէ յիշէք զմեզ ի բարի*
*Տէրն ողորմած ձեզ ողորմի։*

*Աստանաւր անգեալ՝ յերկիր առ սուրբ գարշապար ոտից ձեր, ո՜վ դասք երանելի սրբասէր և աստուածասէր քահանայիցդ և ժողովրդոցդ, յիշատակ զստացող գրոցս* զԱսատ *միայնակեցն, և զիւր ծնօղսն, և* զՆեր-սէս *գրիչս, և զիմ ծնօղսն, և զվարդապետքն մեր* զՅովհաննէս *և* զԿիրա-կոս. *և աստուած զձեզ յիշէ, ամէն։*

## 412

## ԱՒԵՏԱՐԱՆ

*«Բանասէր», Փարիզ, 1905, էջ 99—100*

*Գրիչ՝* Գրիգոր Խլաթեցի
*վայր՝* Մառնեվան (մերձ ի Խլար)

ա

*Փառք ... որոյ ցանկացող եղեալ երջանիկ քահանայն* Կարապետ *անուն, որ միայնացեալ էր յամուսնոյն իւրոյ միով պատանեկաւ, և էր նա երիտասարդ հասակաւ և բարի բնութեամբ և բարուք։ Ուստի շարժեալ ի սէր աստուածային գանձուցս և ջանաց ստանալ զանարիկ մեծութիւնս և զգանձս անկողոպտելի, ի վայելումն անձին իւրոյ և դեռաբոյս պատանեկին* Ըղբստակէսին, *և յետ աստեացս յիշատակ բարի հոգւոյ իւրոյ, և ծնաւղաց իւրոց՝* Հայրապետին *եւ* Խասխաթունին: *Եւ ես յետինս բանասիրաց և տրուպս կարգաւորաց* Գրիգոր *պիտակ անուն խնդրողս բանի, տեսի զեռափափաք սէր և զջան սրբասնեալ քահանային, զոր ունէր հետ սուրբ Աւետարանիս, մոռացայ զտկարութիւն անձինս զպակասութիւն աչաց լուսին և ձեռնարկեալ գրեցի զսուրբ Աւետարանս ընդ հովանեաւ ամենամաքուր սուրբ Աստուածածնի ի վանս* Մառնեվանի, *մերձ* Խլաթայ՝ *մայրաքաղաք* Բզնունեաց *գաւառի, ի հայրապետութեան տեառն* Կարապետի *ընդհանուր կաթողիկոսի և մերոյս նահանգի տէր* Դաւթի *Աղթամարայ կաթողիկոսի։ Իսկ յաշխարհակալութեան նեստողաց ազգին միր* Թամուրին. *և զարմից և զաւակից նորին։ Եւ գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց ի* ՊԾԱ. *(1402) ամին։ Արդ որք հանդիպիք սուրբ Աւետարանիս տեսանելով կամ ընթեռնելով կամ գաղափար առնելով ի պէտս օրինակի, յիշեցէք ի Քրիստոս զստացող սորա զ*Կարապետ *քահանա, և զծնաւղսն իւր զ*Հայրապետ *և զ*Խասխաթուն, *և զեղբարսն* Կարապետին *ստացողի սորին, և զդեռաբոյս պատանին զ*Ըղբստակէսն, *որոյ անուան գրեցաւ սուրբ Աւետարանս ի սփոփանս սրտի, ի պահպանութիւն* Ըղբստակէս *պատանեկի, որ ի մաւրէն որբ մնաց ի տիս համբակին, որոյ տէր Աստուած վայելել տացէ ընդ երկայն աւուրս ի սպաս պաշտման աստուածաբարբառ աւետալուր հրամանացս, վասն որոյ հայցեմ յաստուծոյ հասանել* Ըղբստակէսին *ի կարգ աստիճանի քահանայութեան, ունել զսուրբ Աւետարանս սուրբ ձեռաւք և ամբիծ վարուք արժանապէս քաղաքավարութեամբ և անարատ սրբութեամբ, անսասան կենօք և երկար ամաւք՝ մինչ ի խորին ծերութիւն պահել զ*Կարապետն *և զ*Ըղբստակէսն *ընդ պահպանութեամբ և վայելչութեամբ սուրբ Աւետարանիս։ Հայցեմք ի տեառնէ աստուծոյ սոցին զԱւետարանս վայելել և զօրութիւն Աւետարանիս զխօճա* Բենիամին *և զծաղկեալ որդին իւր զխօճա* Կարապետն *պահեսցէ անարատ ոգւով և մարմնով, նաև զեղբարս իւր զմահտեսի* Աստուածատուր, *և զծաղկեալ զաւակն իւր զխօճա* և զնոսին անսասան պահել ամէն և եղեցի։*

Բ

Գովեստ տացուք Հայր անեղին,
Եւ միածին նորին բանին.
Բամից Համայն արարողին
Հոգւոյն սրբոյ զարգարողին.
Ի յախտաժէտ անձնէ յետին
Որ սպասաւոր կոչեմ բանին՝
Գրիգորիէ անվարժ անձին,
Թմբրեալ մտաւք յախտս կրկին,
Որ ետ ինձ կար տկարս անձին,
Ու զգիմն ու զնուն Հասոյց ի մին
Բամեալ զբոլորս որ ի միջին
Գիմն առաջին եւ նուն յետին.
Ինձ երանի Հազար ընդ մին
Որ և տեսի զաւարտ սորին։
Էն է գիտակ՝ տէրն ամենին,
Որ այն գրիչն է առաջին
Որ զբենն եՀան յԱբրաՀամին
Ի՝ եՀաս յաւարտն որ գրեալ էին,
Քառսուն երկու ար ամենին
Տառս գրեցաւ աստուծային**։

## 413

## ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 4185

Կազմող՝ Սարգիս

1ա Ստացաւղ սուրբ բուր[աստա]նիս զՍարգիս մականուն /// յաղաւթս յիշեցէք ի Քրիստոս. /// ծնաւղք և աղգակա[նաւք և] արեա[ն մ]երձաւորաւք աղ[աչեմ] ի տէր, ընդ նմին զՀոգևոր եղբարքն իմ ղտէր Ալեքսանոս աղաչեմ յիշել ի տէր /// աղաչեմ որ զՅովաննէս քաՀանայն, որ տղայ Հասակաւ փոխեցաւ ի Քրիստոս աղաչեմ յիշել, ըստ սոցուն Հիշմամբ արժանի առնէք զՅովաննէս կրաւնաւորն, որ բազում աշխատեալ է վասն պատճառի սուրբ [Աւետարան]իս։

---

* Անվան լրացման Համար տեղ է թողնված։

** ԺԵ դարի Հիշատակարանների Ա մասի № 23 Հիշատակարանը սրա մի փոքր մասն է, որ քաղել էինք «Հանդես ամսօրեայ»-ի 1917—1918 թ. 59 էջից։ Այս ձեռագրի Հիշատակագրություններից է նաև № 29-ը, որ վերցրել էինք Ս. Հայկունու «Բազրեանդ» ուսումնասիրությունից (էջ 229—230). Հրատարակիչն այստեղ Հայտնում է, որ Ավետարանի վերջում ընդարձակ մի յիշատակարան կայ, զոր ժամանակ չեմ ունեցած օրինակելու։ Հիշատակարանն ամբողջությամբ տպագրված է եղել «Բանասէր»-ի 1905 թ. թիվ 4-ի 99—100 էջերում, որ մեր աչքից վրիպել էր ժամանակին։

Կազմեցաւ ձեռամբ Սարգիս /// յիշել ի տէր։
Թվիս ՊԾԱ. (1402) էր, որ կազմեցաւ /// անց Ի. (20)-ին և Քրիստոսի
փառք յաւիտեանս...

## 414

## ՈՍԿԵՓՈՐԻԿ — ՀԱՒԱՔԱԾՈՅ

Վիեննա 705, Հ. Ոսկեան, Ցուցակ, էջ 236—238

Գրիչ՝ Յակոբ վարդապետ
վայր՝ Անձնաժնապատի վանք

ա

430ա— Զոր և ես ծանրաբեռ ոգի գլուխս մեղաւորաց /// և բազում աւրինակ
440բ ամենայն ///նաց, որ մարմնով կենդանի ///ցեալ և կենաւք ոչ անարատեալ
սոսկ անուամբ Յակոբ վարդապետ, զոր յոյժ ամօթ և նախատինք է ինձ
զտիրական անուն առ իս յորջորջել, զի զդիմակն գործեցի և ոչ ունիմ պա-
տասխանի յահեղ աւուրն դատաստանի։ Վասն այսորիկ վաղվաղակի յամե-
նայն սուրբսն դիմեցի, որ սիրելի են Քրիստոսի, և են առ նա ի հանգստի, և
որ կարդալով, է որ գծագրելով և է որ աղաչելով, զի զարդարադատ դատա-
ւորն իմ զՅիսուս Քրիստոս յողորմութիւն շարժեսցեն ընդ պարտապանիս
բազում քանքարացն շահից։ Զի յոյժ փափագէի զհիացական վարս և զա-
ռաքինութիւնս սրբոց հարանցն և զաստուածազգեաց լուսաւորչացն զպատ-
մութիւն ի մի հաւաքել, <մեղաւոր և անարժան ձեռօք գծագրէի> դի
անուշահոտս ի մէջ հովտաց ի շահ և յօգուտ լսողաց և կարդացողաց, ևս
առաւել կրաւնաւորաց աստուածասէր անձանց և փափագողաց։ Եւ կամէի
զի մեղաւոր և անարժան ձեռօք գծագրէի, զի առաւել աւրհնէի ի նոցանէ
զհոգեւոր /// բայց տկարութիւն մարմնոյս յաղթեաց փափաքանացս և ոչ
կարացի այժմ գծ/// արժանանալ, վասն որոյ զքեռորդին իմ յորդորեցի ի
համբակութեան ժամու՝ Աստուածատուր կոչեցեալ։ Եւ ետու գրել զայս
արեգակնափայլ բուրաստանս զանբիծ և զանարատ զա[յ]րիացելոցն
Աստուծոյ, որ են սկիզբն կենաց ճանապարհին և բացօղ մտիցն առա-
գաստին, նախ եւ յառաջ զպատմութիւն մեր Լուսաւորչին, և զհետ նորա
զնշխարացն սուրբ Կարապետին, և զամենայն սրբոց դասին զբանքն եւ
զգործքն ի միասին, զԸնթհանրական թուղթ Ներսէսին, և զկտակ որդւոցն
Իսրայէղին, զՈվասափին, և զԱնտոնի, զՊարսամայն, և զՊօղոսին, զար-
բա Մարկոս ճգնաւորին, զայլոց բազմաց զհետ նոցին։ Եւ կոչի գիրքս այս
Ոսկեփորիկ, որ է լցեալ անապական գանձիւք, և բարի աւրինակաւ միշտ
զբարին դիտել ի հրաւիրումն առ աստուածասիրաց անձինս, զի ծովիցն
զարթուցիչ է և յանցաւորացն յուսով յորդորիչ, և առաքինեացն կրկին
ուսուցիչ է, յերկրէ յերկինս ի վեր հանիչ, ընդ հրեշտակացն պարակից։
Եւ արդ աղաչեմ զձեզ յետինս ի բանասիրաց, ո՜վ մանկունք նոր Սիոնի,
հոգևոր հարք իմ և եղբարք, կրաւնաւորք և սուրբ կուսանք, քահանայք և
աշխարհականք, բարի կարդացողք և աստուածասէր լսողք՝ զՅակոբ
կրտսեր և զտրուպս ի վարդապետս յիշել բոլորով սրտիւ առ Յիսուս բա-

րին ի կարդալոյն ժամանակին, այլ և զերախտաւորքն մեր՝ զուսուցիչքն և զհանգուցիչքն։ Եւ առաւել զաստուածապաշտ ծնօղքն մեր զԱտոմ և զՂբել, և զհօրեղբայրն մեր զՅովաննէս կրօնաւորն։ Աղաչեմ, աղաչեմ սիրովն Քրիստոսի, սոցա ամենեցուն խնդրեցէք մեղաց թողութիւն, և եղբօրն իմոյ Վարոսին, դուռն վերին առագաստին բացցի նոցա յօրն վերջին, այլ և դասուցն աջակողմին, սոցա լիցի մասն և բաժին, կարդացողին և լսողին, և ողորմի ասացողին։ Դարձեալ զլսող բանին հոգեշահ խրատին, սիրովն արարչին և իւր հրամանին Գրիգոր կրօնաւորին մաքուրն ի յոգին, որ յոյժ ցանկացող եղև այս սուրբ գանձարանիս, զի զամէն զթուղթ գրոց սա պարգևեաց և յաւգնական եղև մեր աղքատութեան*, զի մասնակից լիցի սրբոցն հանդիսի, զի օգնական և կցորդ եղև մեր աղքատութեանս, զի զամէն թուղթ գրոցս սա պարգևեաց և յորդորեաց զմեզ ի սորա վաստակս ի գրել և ի յանգ հանել և բաղում օրինակաց ի մի ժողովել։ Զոր և հայցեմ ի տուողէն բարեաց՝ յամէնառատ ձեռացն Յիսուսի, զոր փոխանակ այս նամակի զիւր վերջին օրինակն առնէ ի բարի, հոգւով և մարմնով լիցի պարակից ընդ Լուսաւորչին և ընդ շառաւիղին։ Այլ և զբարի ծնօղքն սորին զԼուսէր և զՃաւոց/// և զամենայն արեան մերձ/// Աստուած իւր արքայութիւն/// առնէ եւ ընդ սրբոց ///եսցէ։ Այլ և /// գրոցս զԱստուածատուր/// յուսումն վար/// մանկութեան ար/// յիշման և աղաչեմ ///ադիր խոշորութեան եւ սխա/// զի առաջին էր, զի ամենայն զոր ///ղայութեան յոռի է և անկատար, վասն այսորիկ անպարսաւ մնասցէ, զի ԺԶ (16) ամաց է։ Դարձեալ յիշել ի բարին աստուած զծնօղքն գծողին զԱտոմ և Շմաւոն, և զքոյրսն նորա Գոհար և զԽօնդմէլէf, և այլ ամենայն իւրեանց նախնօքն և/// ցեղօքն ի բարին Յիսուս, լինել նոցա արժանի աջակողմանըն դասի, յարքայութեանն տեղի։ Եւ առաւել զմաքրամիտ ոգին զԿիրակոս կրօնաւոր, որ օգնական եղեւ գրութեան կտակիս, զի մասն և բաժին ունիցի ընդ Յովասափ արքայի։ Դարձեալ գծագրեցաւ սուրբ մատեանս ի թուականի Հայոց Պ.՚ եւ ԾԲ. (1403) ի ցանգալի յանապատիս/// (անունը ջնջուած) որ ի յըռամկաց բառից ասի/// (ջնջուած)։ Ընդ հովանեաւ աստուածընկալ սուրբ Նշանիս, ի դուռն սուրբ մօրն լուսոյ և այլ սուրբ եկեղեցեացս, ի հայրութեանն Կիրակոսի/// և զգրելն մեր/// Աստուած զամէնառատ բա///ին. ի կաթու///ոյ նահանգիս/// ի բռնակալութեան ///տութեան ի վերայ ամենայն/// ամուրի, որ տիրեաց ///լից դռնէն մինչեւ ի դու/// յարեւմուտս ի հիւսիս, ի հարաւ ամենայն ցամաքաց /// ընկաց/// զի քսան ամ է, որ Աստուած ///եալ է զսա ի վերայ աշխարհաց ան/// օրօք և միաբան ընգերօք /// ժողով մի հաւաքեալ որպէս ///մս մարախաց, զի զամենայն երկիր բլուր արարին և տապալման աւերեցին մինչև ի Կազբիական՝

Սպանանելով և գերելով,
Ջառ և զապուր ժողովելով,
Զըստնտեայս քարի տալով,
Եւ զծնօղսն տանջելով,

---

* Հրատարակիչը հայտնում է, որ վերջին բառերի («զի զամէն... աղքատութեան») վրա գիծ է քաշված։

Զերկիր արեամբ ոռոգելով,
Վասն մեղացն որ գործելով,
Յահէ նոցա սասանելով,
Բազմաց հոգիքն ելանելով
Եւ ի մեղացն ոչ դառնալով,
Այլ որ մնացին աւերելով,
Անթիւ չարիս յոյժ գործելով,
Ժամ և զաղօթս մոռանալով,
Ի գինարբուս բորբոքելով,
Ոչ թէ ռամիկք զայս առնելով,
Այլ գլուխք հօտիցն որ նստելով
Եւ մարմնոյ կարիքն յոյժ խնդրելով...
Զհոգւոյ մոռանալով,
Եւ զանցաւորս սիրելով,
Յանանց կենացն զրկելով։

Եւ թէպէտ այս սուր և գերութիւն, մահ և մորեխ, որ զամենայն աշխարհ տապալեաց և ամայի արար, ոչ դարձաք և ոչ ստրջացաք ի սովորական մեղացն, այլ խնամով ի նոյն չարիսն մնացաք։ Իսկ ողորմած Աստուած ներողութեամբն իւրով զգաւառս Ըռշտունեաց և զծովեզերայքս քաղաքովք իւրեանց յայս աստուածասաստ նեղութենէս, որ բաղում էր և ոչ մի՝ պահեալ, աստուածային աջն նախախնամական յամենայն է, քանզի բազում գերիք օտար և թափառականք աս մեզ եկին յամենայն աշխարհէ, լիացան և ոչ գերեցան։ Եւ ես՝ ծանրաբեռն ոգիս, ամենայն արարածովքս իմ արարչին երկիր պագանեմ, որ զայս ամենայն առ մեզ տնօրինեաց և զապագայն եմք ի յինքն անձին։

Բ

31ա Քրիստոս աստուած, Լուսաւորչին չարչարանաւք և բարեխաւսութեամբ ողորմեա ստացողի և յարմարողի սուրբ գրոց Յակոբ վարդապետին, և Գրիգոր կրաւ[նաւ]որին, և միւս անգամ քո գալստեանդ մասնակից և արժանակից արա զսոսա Լուսաւորչին մերոյ Գրիգորի, ծնաւղաւքն և ամենայն ազգականաւք։

Գ

114ա Ես անարժան Յակոբ սոսկ անուամբ վարդապետս քո բանից սիրողս և քո սիրոյ փափագողս զայս փոքր փանաքի բանիկ զաղաչանս գրի, որ ցուցի ստա, որ դու զիս իմ ծնաւղաւքն յիշես առաջի Քրիստոսի, և զԳրիգոր կրօնաւորին, որ սուրբ գրոցս աւժտիք և ձեռնտու եղաւ, և զԹումայ՝ միայնակեցացն զողջախոհ ոգին, որ զաւրինակն շնորհեաց, և զիս զբազմամեղ գրիչս յիշես ի Քրիստոս։

Գրիչ՝ Աստուածատուր

Դ

151ա Յորժամ կարդաք զՈսկեփորիկս,
Դուք յիշեցէք զԱստուածատրիկս,
Որ գրեցի զսուրբ գանձիկս,

Հրամանաւ իմ վարդապետիս,
Ի տղայութեան ժամանակիս,
Ի դուռն սուրբ Աստուածածնիս,
Ի վանքս մեծ Անձնապատիս,
Ընդ հովանեաւ սուրբ Նշանիս։

Ե

50ա Ով եղբարք անմեղադիր լերուք վասն սղալմանց, զի օրինակն ի ջուրն անկեր ու երկու ներքին լուսանցքին յիրար կպեր։

Գ

380բ Քրիստոս Աստուած, քու սուրբ ծնօղի բարեխօսութեամբդ ողորմեա ստացողի գրոց Յակոբայ վարդապետին, և իւր ծնօղացն, և ինձ գրողիս՝ մեղապարտ Աստուածատրոյ, և իմ ծնօղացն Ատոմու, Շաւֆարի, Դոճարի, և ամենայն նախնեացն իմ, և միով ողորմիւ աստուած-ողորմի ասացէք, որ Աստուած զձեզ յիշէ յիւր երկնից արքայութիւնն, ամէն։ Այլ և սխալմանցս անմեղադիր լերուք, զի էր շոք, և ճանճ, և շոյտ ձանձրանայի ի գրելն, ու այս առաջին գիր է, անմեղադիր լերուք։

## 415

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 3784

12բ Եւ Զարիբէկ, ամուսին իւր Մայրիամ, և ծնողաց իւրոց, ձեզ և զմեզ յիշէ աստուած, նա յիշէ որ դատի։

Թվ. ՊԾԲ. (1403) [գր]եցաւ, Նաւասարդ*։

## 416

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 2382

Գրիչ՝ Գրիգոր Տաթևացի
վայր՝ Տաթև

ա

206բ Փառք փրկչին Յիսուսի, և յիշատակ գրչիս Գրիգորի՝ պիտականուն վարժապետի, ամէն։

բ

Զստացող սորին զտիեզերալոյս մեծ վարդապետն Հայոց Յովհաննէս Որոտնեցի, եւ զիս՝ սակաւ աշխատողս Գրիգոր սպասաւոր նմին, աղաչեմ զձեզ յիշել ի տէր, ամէն։

* Սրան նախորդում է Գրիգոր Երեցի որդի Սարգսի հիշատակագրությունը՝ Ավետարանի միաբանելու մասին, որը վերջանում է «...Աստուած թողու Սարգիսայ ու գիր ծնողաց մեղք, ամէն» նախադասությամբ. անմիջապես հետո սկսում է Զարիբեկի այս հիշատակագրությունը։

Թվ. ՊԾԲ. (1403) գրեցաւ վերջին գիծս ընդ հովանեաւ սուրբ Առաքելոյս միաբանից ուխտիս Տաթևոյ*:

## 417

## ԱԴԱՄԳԻՐՔ ԱՌԱՔԵԼԻ ՍԻՒՆԵՑԻՈՅ

Բ. Կիւլէսէրեան, Ցուցակ
Անկիւրիոյ 148, սյուն. 737

Հեղինակ՝ Առաքել

Ես տէր Առաքեալ անձամբ տառապեալ, վասն իմ հայցեցէք, ընթերցողք, տեառնէ զթողութիւն. զեղբայր իմ Բարսեղ քահանայն անմեղ և զհայրն իմ Դաւիթ յիշեցէք յաղաւթս ձեր զաւրեղ։ Եւ որ զմեզ յիշէ ի յուղիղ սրտէ՝ ծաղկալից պսակ ընկալցի յաստուծոյ մերմէ։

Թիւ Հայոց մեծի ութ հարիւր տարի յիսուն ու երեք (1404) ամ էր մրտեալ, որ զայս բանս գրեցի Ադամ ու Եւայի։

Արեանարբու գազան զիս խոցեալ էր մինչ ի վաղճան։

## 418

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 10169

Հետ. ստացող՝ Ղազարա

313բ Զվերջին ստացող սուրբ Աւետարանիս զՂազարա քահանայս, որ գնեաց ղսայ ի հալալ ընչից իւրոց, ի վայելումն անձին իւրոյ, և յիշատակ ծնողաց իւրոց՝ հաւրն Առաքելին և մաւրն իմ Ուլուխին, և ամենայն զարմից իմոց՝ կենդանեաց և հանգուցելոց։ Եւ որք կարդայք կամ աւրինակէք յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր զմեզ և զմեր ծնաւղսն, և յիշողքդ աւրհնեալ լիջիք յաստուծոյ, յամենայն սրբոց և ի մէնջ, ամէն։ Թվ. ՊԾԳ. (1404)։

## 419

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՒԵՏԱՐԱՆԻ ԵՓՐԵՄԻ ԿԻՊՐԱՑԻՈՅ

Երևան 4750

Գրիչ՝ Ստեփանոս Արտամետցի

137բ Մեք յետինքս ի կարգաւորաց Ստեփանոս Արտամե[տ]ցի և Յովանէս Շատախեցի տեսաք զայս ծաղկազարդ և հոգեշահ գիրկս, և ցանկացաք կարգաւորաց յիշման, և գրեցաք զյիշատակս զայս։ Եւ գարձեալ, երես անկեալ աղաչեմ զդասս լուսերամ քահանայիցդ, որք հանդիպիք կար-

* Ձեռագիրը, որ ստվարածավալ մի ժողովածու է տարբեր նյութերի, ընդօրինակված է Գրիգոր Տաթևացու կողմից Հովհան Որոտնեցու համար, ուստի՝ 1386 թվականից առաջ։

Այս հիշատակարանը վերաբերում է միայն հետագայում, ձեռագրի վերջում ավելացված «Գիրք վեց սկզբանց» բնագրին։ Լրացնելով այդ նյութը 1403 թվականին, Գր. Տաթևացին վերհիշել է ձեռագրի բուն մասի ստացող իր մեծանուն վարդապետին։

գալով, յիշեսջիք ի վերնաթոիչ յաղաւթս ձեր զմեզ և զմերսն ամենայն, և ինքն, որ առատն ի տուրս բարեաց, տասցէ ձեզ յիշող[ացդ] և մեզ յիշեցելոցս, ամէն։

Թվ. ՊԾԴ. (1404)։

## 420

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

**Երևան 3651**

Հետ. ստացող՝ Մկրտիչ

330բ ԶՄը[կ]րտիչ սարկաւագս յիշեցէք [ի տէր] և աստուած զձեզ [յի]-
շէ, ամէն։ Ի թվ. ՊԾԴ. (1404) ապրիլ ամսոյ ԻԱ. (21) աւրն։

## 421

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

**Երուսաղէմ 1273***

ա

Գիրս մնայ ով որ վայս գիրս կարդայ տր /// և նորայ վայի վայի զմեղուցեալուս և մեղաւորս տէր մեղայ քեզ ///**

բ

/// Ուգայ եղան վասն այրումին նոքայ վկութի/// գլխուն աստուած զնայ ի տուրս արար և բռնավորք աղտեցին (՞) բիւր Ռ /// աւրա որդուն և սուրբ Հոգին, որ լսեց մեզաւորնում, զի նորա համար /// և զինքն շուտով պանտէն Հանին և թվ. ՊԾԴ. (1405) բռնվեցաւ ծառայարդ /// ուրբաթն աւրն, և եկաց մինչև նոր կիրակին։ Զաս գիրս գրեցի, որ Խաչիշայ // կարդայք մի մեղայդ[ր]էք, ո՞վ ախրարք և սիրելիք, և այլ աստուած աւրհնէ զկարդացողն, զի պիղծութիւն /// այսպէս***։

գ

189 Արդ, աղաչեմ զամենեսեան՝ զընթերցողսդ և զունգնդիրսդ, յիշեսջիք ի սուրբ և ի մաքրափայլ աղաւթս ձեր զմեծազարմ իշխանաց իշխողն զպարոն Վասիլ. հանդերձ աստուածապարգև զաւակաւք իւրովք, այլ և ախմար և զտառապեալ գրիչս աղաչեմ յիշել աղաւթիւք****...

---

* Այս ձեռագրի Գ. հիշատակագրությունից մի տող (Վասիլ իշխանի մասին), քաղելով Մ. Տեր-Մովսիսյանի Ցուցակից, տպագրել ենք ժողովածուիս Ա. մասում (էջ 55, հիշատակարան № 58)։

** Գրված է կարմիր թանաքով 1—3 էջերի լուսանցքի վրա։ Հետագա կազմողի դանակին զոհ են գնացել էջի ծայրերին գրված բառերը։

*** Գրված է 21—29 էջերի վերին լուսանցքներում։

**** Այս հիշատակագրությունը գրված է, անշուշտ, 1405-ից առաջ, հավանաբար ԺԳ. դարի վերջերին, կամ էլ ԺԴ. դարում։

## 422

### ՏՕՆԱՑՈՅՑ ԵՒ ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Երուսաղէմ 1742

Գրիչ՝ Մկրտիչ

ա

18ա Քրիստոս աստուած ի միւսանգամ գալստեան քո և յարութեան մերոյ յիշեա զբազմամեղ գրողս՝ զՄկրտիչ սուտանուն աբեղա, և պայծառացո զմարմին խոնարհութեան մերոյ ըստ նմանութեան փառաց քոց և որ դամար հանդիսին, ամէն։

բ

-149ա Զստացող եղանակաւոր տառիս զՄկրտիչ կրաւնաւորս և զՅակոբ վարդապետն՝ զքաղցր երգող երաժիշտ մեծ փիլիսոփայն, որ զօրինակն շնորհեաց, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զնոսին և զծնողքն իւրեանց. և որ առատն է ի տուրս բարեաց՝ տացէ զանսպառ ուրախութիւնն, ամէն, եղիցի, ընդ նմին և մեղապարտ գրչիս։

գ

75ա Ի ծննդենէն Քրիստոսի մինչև առ մեզ, որ է թվ. ՊԾԵ. (1406). ՌՆԸ.

## 423

### ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Երևան 178

Գրիչ՝ Յակոբ Ղրիմեցի

255բ ԶՅակոբ Ղրիմեցիս զսիրող բանի, զսակաւ բանս նշանաւոր և պիտանի, որ համառօտեցի յերկրորդ Մակաբայեցոց, զի լինիցի առձեռն պատրաստ, աղաչեմ յիշել ի տէր, և դուք յիշեալ լիջիք ի նմանէ ամմէն։ Ի թվ. Հայոց ՊԾԵ. (1406)*։

## 424

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 2496

Գրիչ՝ Մանուէլ
վայր՝ Բջնի

367բ Զանբաժանս ի բարեաց և զանզեղջս ի չարեաց, զհանդիպողս այսմ հայրէնաւան[դ] և կանոն[ա]կան սահմանադրութեանս, զտէր Մանուէլ նուաստ եպիսկոպոս Բջնոյ եւ Այրարատեան նահանգի յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր, որով և դուք յիշեալ լիջիք ընդ սրբոցն՝ ի համագումար հանդիսին, ամէն։

Թվին ՊԾԵ. (1406)։

* Աստվածաշունչը գրված է 1253 թ. Միքայել գրչի կողմից։ Յակոբ Ղրիմեցին լրացրել է պակասները՝ սկզբից և մեջտեղից։

## 425

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 4066

Հետ. ստացող՝ Ենովք
վայր՝ Պղնձայգոյ անապատ

223բ Յանուն ամենակալին աստուծոյ Հօր և որդոյ և Հոգւոյն սրբոյ. նուաստ Ենովք աբեղայս ի Պղնձայգոյ անապատէն գնեցի զսուրբ տառս, որ է տեսութիւն Սաղմոսին և Երեմիայի և Երգ երգոցին՝ մի մեկնիչ և այլ բազում բանք պիտանիք և ազտակարք: Արդ, ստացայ ի հալալ արդեանց իմոց յիշատակ ինձ և եղբարց իմոց և ծնողաց իմոց, զի որքան կենդանի եմ՝ ես վայելեմ, և յետ մահուանն իմոյ կրսեր եղբօրն իմ եղիցի՝ Ստեփանոսին:

Արդ, որք օգտիք ի սմանէ ուսմամբ կամ օրինակելով՝ յիշեցէք զվերոյասացեալ վերստին ստացօղ սորայ զԵնովք աբեղայն և զիւրսն ամենայն, և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւի[տեան], ամէն:

Ի թվ. ՊԾԵ. (1406), յունիս ամսոյ ի ԺԴ. (14):

## 426

## ՏՕՆԱՊԱՏՃԱՌ

Երևան 1979

Ծաղկող՝ Ղազար

ա

/// եղկելիս, քանզի բազում մեղք ունիմ յիշ[եց]էք ի Քրիստոս Ղազար ան[արժ]ան ծառայս և աստուած ձեզ յիշէ. ա[ն]մեղայդիր լերուք, զի նորուսում էի*:

Բ

Գրիչ՝ Ստեփաննոս եպիսկոպոս

36բ—37ա Քրիստոս որդի աստուծոյ, ի քո յահաւոր գալստեան, յորժամ // գաս ի նորոգեալ զազգս մարդկան, յայնմ աւուր ահեղին յանուանէ կոչեա զծառայս քո զՍտեփանոս եպիսկոպոս՝ զստացաւղ տառիս, և զհայրն իմ Կիրակոս, և մայրն իմ զՆազխաթուն, բարեխաւսութեամբ սուրբ առաքելոց քոց՝ Յոհաննու և Յակոբայ: Ընդ նոսին և զեղբարսն իմ՝ զկենդանիքս և զհանգուցեալսն ի Քրիստոս: Նա և զերախտաւորսն մեր զՆերսէս վարդապետ, և զՅոհաննէս բաբունի, և զԿիրակոս վարդապետ՝ իւրեանցայովքն, ամէն:

Գ

47ա ...Լուսաւորեա զիս... զՍտեփանոս եպիսկոպոս և առաւել թղթի կոկողացն:

Դ

47ա Ո՛վ սուրբ մկրտիչ Քրիստոսի, քո սուրբ միջնորդութեամբդ և բարի քաղաքավարութեամբդ աղաչեա զմկրտեալն առ ի քէն ո՛Քրիստոս աստու-

* Գրված է Դավիթ մարգարեի նկարի վերին ձախ անկյունում:

*ածն մեր ի քո յիշատակի աւուրս, զի դասակից քեզ և ամենայն սրբոց արասցէ զստացող տառիս* զՍտեփանոս *եպիսկոպոս, և* Ներսէս *վարդապետ,* զՅովանէս, զՊօղոս, զՎարդան, զԿարապէտ, զՍտեփանոս, *և* զՄրկրտիչ, զԴաւթեաւճն, զՊետրոս *սարկաւագ,* զՅովսէփ *և զայլ միաբանքս, որք կան յայս տեղիս, ընդ նմին և ծնօղսն իմ։*

Ե

94ա *....Ջստացող սորա* զՍտեփանոս *եպիսկոպոսն, ... նա և ղուսուցիչն մեր և զերախտաւորն,* զՆերսէս *վարդապետն և զծնօղսն իւր։ Եւ առաւել քահանայքն մեր՝* զՅովանէս, զՊօղոս, զՎարդան, զԿարապետ, զՍտեփանոս, զՄկրտիչ, *և զսարկաւագունքս մեր* զՊետրոս, զՅովսէփ. զԴաւիթ *և զմիւս* Դաւիթն, *նաև զգործաւորք սուրբ ուխտիս՝ զտնտէս, զմաճկալ, զհովիւ։*

Զ

110ա *Որ և զիս՝ զանարժան և զտխմար գրչակս* Ստեփանոս *եպիսկոպոս, և զհարազատ եղբարսն իմ* զՕղիա *և* զՅոհաննէս, *որ սրով այլազգեացն կատարեցան...։*

Է

169բ *Եւ առաւել բաբունոյս մերոյ* Ներսեսի. *և ինձ տրխմար և անարհեստ գրչիս, և իմոցն ամենայնի։*

Ը

249բ *... և* զՂազարոս, *որ թուխթս կոկեաց։*

Թ

370ա *Խաչիւտ քո, Քրիստո՛ս, լուսաւորեայ զհոգի* Աստուածայտուր *մուղդասուն, որ զայսչափ թուղթս է տուել, և ինձ մեղապարտ և անարժան գրչիս։*

Ժ

387բ *Քրիստոս աստուած... փրկեա և պահպանեա զՄուղդրսի տնտեսն, որ զայս չափ թուղթս երետ։*

ԺԱ

248բ *Աւաղ զայս դառն և դժւար աշխարհս, թէ որպէս կարենք զերծանել ի մեղաց**։

## 427

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

*Վենետիկ 21 (376), Բ. Սարգիսեան, Ցուցակ, Ա, 166*

*Վաճառող՝* Յոհան

*Ես* Յոհան *աբեղայ՝* Մարտիրոսայ *որդի առ[ի] զԱռակս և զՑորս ի պարոն* Բուրթէլէն** *Ռճ. (1100) դահեկանի և դարձեալ ծախեցի* Մարտի-

---

* *Գրված է ստորին լուսանցքում։ Գրողը Խիզանի ս. Խաչի միաբաններից է, որը եպիսկոպոս է դարձել ԺԵ դարի սկզբներին։ Ձեռագիրը դնում ենք 1407-ի թվաշարքում, երբ նա առաջին անգամ հիշվում է որպես եպիսկոպոս։*

** *Հավանաբար Սյունյաց իշխան Իվանեի որդի Օրբելյան Բուրթելի մասին է խոսքը, որ իր երկու զավակների հետ զոհ գնաց 1407 թ. համաճարակին. ըստ այդմ ձեռագրի վաճառքը կատարվել է հավանաբար ԺԵ դարի սկզբներին՝ մինչև 1407 թվականը։*

*րոս արեղէն, իմ սրտի յաւժարութեամբ նոյն դնովն։ Յայսմհետէ նորա է, այլ մարդոյ դաւի չկայ ու ոչ խաւսք։*

*Ես՝* Խնձորաշահ *վկա, ես,* Իշխան *վկայ, ես* Բարսեղ *վկայ, ես* Պաւ*անուն վկայ։*

*Եւ ես* Մարտիրոս *անարժան աղաչեմ զամենեսեանդ, որք հանդիպիք սմայ կարդալով կամ աւրինակելով յիշեսջիք ի սուրբ յաղօթս ձեր զհոգևոր հայրն իմ զ*Իշխան *և զամուսինն իւր զ*Ամբար*, որ ի հալալ արդեանց բստացան ըղսայ յիշատակ իւրեանս։*

## 428

### *ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿԱՆ ԺՈՂՈՎԱԾՈՒ*

*Երևան, պատառիկ 830*

*Ստացող՝* Յակոբ Ասպիսընկեցի

1ր *Այլև զվերջին ստացող զ*Յակոբ *վարդապետս* Ասպիսընկեցի *առ Քրիստոս յուսն ամէնի և սատուած զձեզ յիշէ և նմա փառք**։

## 429

### *ՃԱՌԸՆՏԻՐ*

*Երեան 2783*

*Գրիչ՝* Գրիգոր վարդապետ

ա

29ր *Ողորմի ստացողի գրոցս* Շահնունեցի Ստեփանոս *աբեղային, և ծնողաց նորին, ամէն, և* Գրիգոր *գծողին։*

բ

48ա *Ով հանդիպողք այսմ գրի՝*
*Ընտիր բանիցս գովելի,*
*Զմեզ յիշեցէք դուք ի բարի,*
*Յորժամ լըսէք յայս ատենի,*
*Մեզ ասացէք տէր ողորմի,*
*Սրբագրչի և ստացողի,*
Աննայի *՚ւ իւրոյն ծնողի՝*
Աղտր-Տիկնայ *և* Թօղանի,
*Այլեւ իւրոցն զաւակի,*
*Ստացողի մաւրն* Աննայի,
Թադէոսի, Մաթէոսի
*Եւ հաւրն նոցին այն* Մըկըրտչի:

գ

58ա *... Մանաւանդ ստացողի գրոցս...* Բեկերուն *և* Ալխաթունին...

* *Ձեռագիրը գրված է եղել 1334 թ. Գլաձորում, Յունան գրչի կողմից. պահպանվել է միայն 1 թերթ հիշատակարան և այս հիշատակագրությունը։ Հակոբ Ասպիսընկեցին 1408 թ. Տաթևում ընդօրինակել է Գր. Տաթևացու Քարոզգիրքը։ Նույն թվականին նա հիշատակված է Գր. Տաթևացու Մեծոփա վանք գալու առիթով, նրան ունկնդրելու եկած վարդապետների շարքում։*

Դ

68ա *Մանաւանդ ստացողի գրոցս* Հռոփսիմին *և* Ստեփանոսին:

Ե

72ա *Ողորմի ստացողի գրոցս* Անձային, *և ծնողաց նորին* Աղտր-Տիկնա, *և* Թօղանին, *այլև զաւակաց* Անձային՝ Թադէոսին *և* Մաթէոսին *և* Խութլու-Մէլէքին, *և հաւր նոցին* Մկրտչին, *ամէն, և* Գրիգոր *գրչին, ւկիտականուն վարդապետին։*

Զ

91ա *Մանաւանդ ստացողի գրոցս*՝ Յովսէփ *երիցուն, և* Վարդկայ *հոգոյն, և* Գրիգորի *գծողի սորին, և ծնողաց նորին, ամէն։*

Է

*Գրիչ*՝ Վարդան

173բ *Արդ աղաչեմ զամէնեսեան, որք աւգտիք ի սմանէ, յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր* զՎարդան *մեղապարտ գրիչ և զծնողսն մեր և զամենայն ազգայինսն։ Յիշեցէք և* զԹորոս *երաժիշտ, որ ղաւրինակս ետ և աստուած զձեզ յիշէսցէ**։

## 430

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երուսաղէմ 1105***

*Գրիչ*՝ Ղազար
*վայր*՝ Աւագ վանք

ա

786 *Փառք ..., փափաքէի այսմ տառիս և ծաղկաւետ բուրաստանիս և յաւ-
ժարեցայ ի գործ իբրև վասն բանի մակացութեան և ի վարժս կրթութեան,
առ ոտս մեծ հռետորին և քաջ վարժապետիս իմոյ, որ միշտ քախէ
զգրունըս իմաստից միջնորդութեամբ սուրբ հոգոյն, որով սփռէ զեղու և
միշտ հեղու առ մեզ, և մեք ըստ կարողութեան մտացս մերոյ ընդունիմք,
որ և մանաւանդ մեզ կրկին երախտաւոր է, որ և կրկին վարձս հատուցէ
տէր աստուած, մանաւանդ թէ երեքկին, որ և երիցն աւթեան է՝ տեսակա-
նաւն և գործնականաւն է ղարդարեալ, և մասամբ առաքինութեամբ պայ-
ծառացեալ, ղի վարդպետն տա զփոխարէնն։ Այլ որ մեզ երախտաւորք
են և ուսուցիչք յաւէտ թէ և սպասաւորք իմաստութեանց և եղբարք հա-
րաղատք ի վարդապետէս [իւրոց կամ խնուացնէ և կամ մաքրէ]***, զի մեր
աղքատութեանս բազում գործոյ պատճառ են, որ և զաւրինակ գրոցս
787 շնորհեցին // և զփոխարէն ի Քրիստոսէ առնուցուն ղանվաղջան ուրա-
խութիւնն և զկեանս յօիտենական։ Այլ և զեղբայրս մեր ըստ հոգոյ և*

---

* *Այս ձեռագրի մյուս հիշատակարանները, որտեղ և ժամանակն է նշված (1409 թ.), տպագրված է սույն ժողովածուի Ա. մասում (էջ 99, հիշատակարան № 100)։*

** *Քաղելով Մ. Տեր-Մովսիսյանի ձեռագիր ցուցակից սույն ժողովածուի Ա մասում տպագրել ենք այս ձեռագրի գլխավոր հիշատակարանից մի քանի տող միայն (տե՛ս էջ 98, հիշատակարան № 98)։*

*** *Փակագծերի մեջ առնված բառերը ջնջված են անընթեռնելի դառնալու չափ։*

զսնընդակից մեր և զնորընծայ և զշնորհալից եղբայրս մեր զՍտակէս, որ գայ ևս բանի սիրող է. և ցանկացաւղ աստուածային իմաստիցն, և միշտ [ը]ղձայ, թէ հասանի, և թէ ժոյժ ունի, նա կատարի, զի յաստուծոյ հասարակաց շնորհ սպարգևի, բայց ըստ ընթակայիս, որ պատշաճ* է և պատրաստի. և զի սա ևս մեզ աւգնական եղև ի գրոցս ի դրել և ի կազմել, զի Քրիստոս յիւր գալըստեան զայն կատարածն լսել տայ որդովն, հանդերձ ծնաւղաւքն, թէ Եկայք մտէք յուրախութիւն տեառն, այլ և զիս զանարժանս, թերևս արժանի առնէ աստուած իւր անչափ գթութեամբն։ Որ և ձեռամբ իմով գրեցաւ ի թուականութեանս Յաբեթական տումարիս ի Պ.-երրորդիս և Ծ.-ներորդ, Ը.-երորդ (1409) ամի կատարի։

Արդ, աղաչեմ, աղաչեմ, զի կար մեր այս էր, և դեռևս գիր առաջին է այս, եւ վասն շտապ գրելոյն և այս հետ դասին, որ և քան զմարտիրոսութիւնն այլ է դժուարին, և դեռևս ի կարդալս նոր էաք, և տկար մարմնով, և միշտ չարչարէաք, և այս չափս կարացաք գծել։ Այլ և զգծողս՝ զիս զանարժանս ի կրաւնաւորաց Ղազար անուամբ կոչեցեալ, և զեղբայրն մեր զԹորոսն. որ սարկաւագ էր և այժմ քահանայ եղև, որ աւգնական եղև ի թղթիս ստածելն, առհասարակ, յիշեցէք հանդերձ հարբ և ծնաւղօք, և աստուած զձեզ յիշէ յիւր ատենին, և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն, ամէն։

Բ

563 Ո՜վ իմաստուն ընթերձող, մի մեղայդրել սխալանաց, զի անչափ է, զի սիրող եմ բանի, և խիստ եմ աղքատ. թէ չէ յարուեստէս խիստ եմ անմար և մարմնովս յոյժ տկար, և ի մեղքն ոչ տկար և ոչ հեզգալ, այլ արագ և խիստ ճարտար, բայց միայն միշտ ծուլանալ, վայ է։ Եւ մեզ մի մեղադրէք վասն գրոցս, թէ ախմար է գրող սորայ, վասն սխալանացս, որ պատահի ի գիրքս և կամ վասն անյարմար կարգիս, այլ ողորմած եղբուք և ողորմիս ասացէք, որ ևս դուք լսէք, այլ և մեր ծնաւղացն՝ հոգևորացն և մարմնաւորացն և այլ երախտաւորացն, որ մեզ երախտաւորք են։

Այլ և պատճառ գրոցս այս է, զի մեք տկար էաք ի քերդողացն, և աղքատ էաք ի մարմնօոր ընչաց, և անտէր էաք, և մեք միայն եմք մնացել ի յազգէ՝ ի հոգևորէ և ի մարմնօորէ, և բանի սիրաւղ էաք և յոյժ փափաքաւղ։ Մեք յոյս զայս գրաք, թէ գրոց փափաքողքն այսպիսեացս սովոր են, կարեն զսխալն ուղղել և զմիտս բանին յայտնի կացուցանել։ Գրեցաւ սա յառաջնորդութեան սուրբ ուխտիս մեծ վարժապետիս մերոյ Գէորգէյայ, ի գաւառէս Դարանաղեայ, որ և առաջնորդ է սա վանիցս Աւաք կոչեցեալ, ընդ շքով տիրամաւր սուրբ Աստուածածնիս և սուրբ Առաքելոցս և սուրբ Կարապետիս, զի և աղքատաց է սա տեղիք, մանաւանդ թէ շնորհս բաշխեն և առաւել պարգևեն։

Գ

Ո՜վ եղբարք իմ, հանդիպողք սմա, աղաչեմ անմեղադիր լինել մեզ, զի զհետակա քարոզիս զօրինակն ըշտապով էր, մենք զայս ի տեղն թողաք և զան գրեցաք, ապա հետ այս քարոզիս այսոր կէսն է և այս նշանս**։

---

* Այս բառը ձեռագրում հապավված է այսպես՝ պտճ.»։

** Այգ նշանը դրված է 628 էջի սկզբում. ուստի այդտեղից սկսվում է կիսատ ընդօրինակված քարոզի շարունակությունը։

Գ

*Մի մասի գրիչ՝* Արիստակէս Սեբաստացի

*Ո՜վ եղբայր իմ սիրելի,*
*Եւ սպասաւոր տեառն բանի*
*Մեծ քաջունոյն* Գէորգէի՝
*Հայրն իմոյ բազմերախտի,*
*Տէր* Ղազար *առաքինի*
*Եւ կրաւնօոր խիստ ի մարմնի՝*
Արիստակէս Սեբաստացի.
*Որ զսակաւ գիրս գրեցի,*
*Ընկալ սիրով և լեր անմեղադրելի,*
*Թէպէտ ի տուն տայն զքեզ վիրաւորեցի։*
*Եւ այս քան, զոր ես քերեցի,*
*Ի խորհուրդ երրորդութեանն յարմարի,*
*Զոր իմաստնոցն է այս պարզ և յայտնի։*

431

*ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ*

*Երևան 5861*[*]*

*Գրիչ՝* Մկրտիչ
*վայր՝* Մեծոփա վա՞նք.

ա

46բ *Աղաչեմ և ես տարամերժեալս ի կենաց մեղացն գործովս, զսուրբ ընթերցողսդ, զի յորժամ ընթեռնուք և կամ հարաւանցի տեսութեամբ, յիշման արժանի առնել միով տէր-ողորմաիւ, զի ըստ աղաչանաց ձերոց քաղցր ակամբ հայեսցի յիս ստեղծիչն իմ Քրիստոս, զոր խոստովանիմ ճշմարիտ աստուած։*

*Մանաւանդ յիշել աղաչեմ զծաղկեալն ծերութեամբ և զարթնացեալն ընդդէմ բարի գործոց, զբազմերախտ և զհոգևոր հայրս իմ զ*Կարապետ *կրօնաւորն, որ բազում աշխատեալ է ի վերա մեր, և տակաւին ևս կայ ի նոյն գործ։ Հատուսցէ նմա Յիսուս Քրիստոս զպսակն անթառամ և զկեանըս անվախճան։ Եւ դուք ասացէք, ամէն, ամէն եղիցի։ Զի և ձեզ ողորմեսցի ողորմածն աստուած, ամէն, զի ամենայն եթե[ր]ածին կարօտ է ողորմութեանն աստուծոյ։*

բ

*Յայսմ վայրի յիշեցէք ի Քրիստոս զբազմերախտ հայրս մեր՝ զ*Կա-
113ա րապետ *կրոնաւոր, որ զը//[ն]աց օրինակ եբեր, զի յօրինակս մեծ սխալ գոյր, թողցէ Քրիստոս աստուած զամենայն սխալանս սորա, ամէն։*

---

[*] *Ձեռագիրն ընդօրինակված է Սարգիս Մեծոփեցու 1409 թվականի ընդօրինակությունից (Մատենադարան, № 921) և վերջում արտագրված է նաև Սարգսի հիշատակարանը (տե՛ս ԺԵ դարի հիշատակարաններ», էջ 93—94), սակայն վերջից թերթ է ընկել և թերի է։ № 921 ձեռագրի ստորին լուսանցքում կատարված ուղղումներն ու լրացումները այստեղ արդեն բնագրի մեջ են անցկացված։*

[1] *Ձեռագիրը, ուստի և հիշատակագրությունները, գրված են Գր. Տաթևացու կենդանության օրոք, հետևաբար՝ 1410-ից առաջ։ Պայմանականորեն դնում ենք 1409-ի թվաշարքում։*

Գ

137ա Քրիստոս աստուած... յիշեայ զմեղուցեալ ծառայքս քո զԿարապետ և զՄկրտիչ, և քաղցր ակամբ հայեաց ի գինս արեան քո, զի դու ես բազմ-ողորմ։

Դ

140բ Տացէ Քրիստոս աստուած զիւր անմահական պտուղն Ստեփանոսին, որ հանապազ կերակրէ զմեզ պտղով այգոյս։

Ե

154բ ... Մանաւանդ փրկեսցէ Քրիստոս աստուած զաղէխարշեալ ծերունի հայրս իմ զՍրպէլ ի կողմանէ ձախոյն և դասեսցի ի դասու աջակողման ամէն, զի աշխատի բազում երթևեկութեամբ։

Զ

352բ Տէր աստուած իմ Յիսուս Քրիստոս յորժամ գաս ի պսակել զսուրբս քո աղաչանօք սրբոյն Եղիայի և Ենովքայ քաղց[ր] ակամբ հայեա ի ծառայքս քո՝ ի Կարապետ կրօնաւորն՝ պատրաստող դրոց նիւթոյս, և ի Մըկըրտիչ գծող գրոյս, զի յոյժ կարօտ եմք ողորմութեան քո։ Մանաւանդ և զծնողս մեր՝ զհանգուցեալսն և զկենդանիսն, և դուք որ զամէն ասէք, զնոյնն գտջիք, ամէն, եղիցի։

Է

370բ Տէր աստուած իմ, պսակեայ զբարեպաշտ մայրն իմ զԲաղդատ, և ողորմեա նմա ըստ մեծի ողորմութեան քում։

Ը

376բ ...Մանաւանդ զԿարապետ կրօնաւորն, որ տուն կուտայ գրոյս, տացէ Քրիստոս սմա տուն և տեղի առ սուրբ և սիրելիս իւր, ամէն։

Թ

12ա ...Մանաւանդ յիշել աղաչեմ ի տէր Յիսուս զերկրորդ ստացիչն իմ զԿարապետ Բ. (2-րդ) կրօնաւորն, որ յոյժ աշխատի վասն իմ։

Ժ

Գրիչ՝ Թումայ

217 Աղաչեմ զքնարդ հնչման հոգւոյն աստուծոյ՝ զսիրասնունդ զհոգևոր և զհարազատ եղբայրդ իմ զՄկրտիչ կրօնաւոր և զաշակերտեալդ բանին աստուծոյ ընկալ զսակաւ գիծս ի Թումայ մեղուցեալ քո հոգևոր եղբօրէ, ի հաճոյս քո և մի ի զայրացումն, և յիշեա ի սրբանուէր աղօթս քո, վասն սիրոյն Քրիստոսի աղաչեմ զքեզ, զի այս էր կար մեր։

## 432

### ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

Երուսաղէմ 569, Ն. Պողարեան, Ցուցակ, Բ, էջ 110—111

Գրիչ՝ Թումայ

ա

Զանարժան հողս յիշեայ, եղբայր, ի սուրբ աղաւթս քո խնդրող բանիս զԹումա: Աւա՜խ տառապանացս, բաղձանքս նեղէ զիս, և թուղթս վատ, և աւրինակն փութով խնդրի։

Բ

Աւա՜խ, որ մութն է և չեմ տեսնել, հոգիս կու ելանէ, ո՞նց գրեմ, և կաթիլքս աւելի։

Գ

Թվին ՊԾԸ. (1409) Անդրէասն փոխեցաւ ի Քրիստոս, ի սահմի ի Ա. (1), օրն երկուշաբթի, և սաստիկ ձիւն։

Դ

Աւա՜ղ, որ լոյս չեմ գտանել որ գրեմ, ձմեռն է և մութն, այսօր եղև փոքր մի լոյս։

Ե

Աւա՜ղ եւ եղուկ զիս, թէ որքան է տառապանքս, ձմեռն և մութն, և չարն կատարեալ հեղաւ թանաքն, և եղև անձինս խաւար։

Զ

Թվին ՊԾԸ. (1409) աւրհնեցաւ քըւերորդին իմ Ստեփանոսն աբեղայ, յաղուհացն ի միջոցն կիրակին, որ արարերն օրհնութիւն։

Է

Հոգի Թումի, բանի խնդրողի, Լուսաւորչին Գրիգորի յանձն եղիցի*։

## 433

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Զմմառ 227 (276), Մ. Քեչիշեան, Ցուցակ, էջ 542

86բ Արդ յերեսս անկեալ պաղատիմ մանկանցդ եկեղեցւոյ, որք հանդիպիք այսմ կտակիս, յաճախիմաստ քերականիս և /// թեան խրատիս, յիշեսջիք ի բարին Քրիստոս զա /// արեգակն զքրիստոսածաւալ աղբիւրն զհոգևոր հայրն մեր և զծնաւղ զմեծ րաբունապետն Գրիգորիոս որդի Ծերին, որ /// ողորմութիւն շնորհեաց մեզ մեղուցեալ անձին պիտակ անուն վարդապետի /// ի մեծ թուականին Հայոց ՊԾԹ. (1410) /// ոչ ըստ արժանաւորութեան իմոյ, այլ ըստ անխարդախ սիրոյն և հայրական [գթո՜ւ]-թեանցն, զոր ունի առ մեզ։ Եւ դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ։

Այս Քերականս /// բարձր /// Աստուածածնին, ամէն։

## 434

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 1716

Գրիչ՝ Յակոբ Ղրիմեցի

75բ Զմեղուցեալ Յակոբ վարդապետս Ղրիմեցի աղաչեմ յիշել ի տէր, ի թվիս ՊԾԹ. (1410)**։

---

* Առաջին հիշատակարանից բացի, բոլոր մյուսները գրված են էջերի ներքին լուսանցքներում։

** Ձեռագիրը գրված է 1276 թվականին. երկու թերթ հետագայում լրացրել է Ղրիմեցին և վերջում թողել այս հիշատակագրությունը։

## 435
## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5982

ա

346բ Փառք անծնին Հօր և ծնիցելոյն ի նմանէ որդոյն միածնի...
Արդ գրեցաւ ի թիւս Հայոց ՊԾԹ. (1410) ձեռամբ ան*

բ

Աղաչեմ զքեզ զիս էլ յիշեայ յորժամ կարդաս զյիշատակարանս՝ ըզծաղկաւղս և դու յիշեալ [լի]ջիք**։

## 436
## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ՄԱՏԹԷՈՍԻ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

Երուսաղէմ 1223***

ա

583 ... Արդ, գրեցաւ հոգիարուխ մատեանս, որ է քաղուածոյ աւետարանին Մաթէոսի, արարեալ մեծ րաբունոյն և քաջ հռետորի, տիեզերահըռչակ և մեծահամբաւ վարդապետի՝ զուարթուն անուն կոչեցելոյ, ի պարծանս մանկանց եկեղեցոյ և ի յիշատակ բարի հոգոյ իւր և իւրոյ վարժապետի, զոր տէր Յիսուս փոխանակ այսմ հոգևոր գանձոյ տացէ նմա զբազմելն ի սեղան հաւրն, և մատուակել նմա զփափագելին իւր՝ զանհասանելին այժմոյս, զոր և անդ յայտնելոց է սիրելեաց իւրոց, այսինքն զխորհուրդ իւրն տնաւրէնութեան, այլ և երանաւէտ ձայնին արժանաւորեսցէ լսել՝ Ծառա բարի և հաւատարիմ, և տալ իշխանութիւն ի վերայ Ժ. (10) քաղաքաց յաղագս շահեցուցանելոյ զարծաթ բանին, և մտանել յուրախութիւն տեառն, ամէն։

584 Եւ գրեցաւ սա ի թվականութեանս Հայոց ՇԾ. և ի Կ. (1411) ամի, ի սուրբ մենաստանս, որ կոչի Աւագ անապատ, ընդ հովանեաւ ամենաւրհնեալ սրբոյհոյ Աստուածածնին և սուրբ Կարապետիս և սրբոց Առաքելոցն, ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս մեծ րաբունապետիս և քաջ փաղերային՝ վարժապետիս մերոյ Գէորգ վարդապետի։

Արդ, գրեցաւ սայ ձեռամբ յոգնամեղ և սուտանուն կրաւնաւորի Աւետիքի, վասն որոյ աղաչեմ զգրոց աշակերտեալ մանկունք և զսիրողըք բանի, զի ի հանդիպիլն ձեր այսմ տառի յիշեսջիք ըզսուտանունս սիրող բանի, խնդրելով զթողութիւն յամենագութ տեառնէն մերմէ... Այլ և յիշեսջիք զբազմերախտ և զգորովագութ հայրն իմ հոգևոր և զուսուցիչս՝ զհեզահոգի և զսրբասնեալ բանի սպասաւորս զտէր Սանճակ, և զհարա-

---

* Շարունակությունը, անհայտ պատճառով, չի գրված։

** Ծաղկողի այս հիշատակագրությունը գրված է 346բ էջի ստորին լուսանցքում։

*** Այս հիշատակարանից մի փոքր հատված, քաղելով Մ. Տեր-Մովսիսյանի Ցուցակից, հրատարակել ենք սույն ժողովածուի Ա. մասում (էջ 130, հիշատակարան № 131)։ Հետևելով Մ. Տեր-Մովսիսյանին այնտեղ ձեռագիրը սխալմամբ կոչել ենք «Մեկնութիւն տոմարի Յակոբայ Ղրիմեցւոյ», որ միայն ձեռագրի վերջին մասի նյութն է. հիշատակարանը նրան չի վերաբերում։

*զատ եղբայրն իւր՝ զշնորհալի և զդեռաբոյս ծաղիկն՝ զտղայ հասակու զփոխեցեալն առ Քրիստոս* զՏղապարոնն, *և զհայրն իւրոյ՝ զպատուելի քահանայն* զՍեղբեստրոս, *զոր և մարտիրոսական արեամբ նահատակեցաւ, աղաչեմ յիշել ի տէր և մեղաց թողութիւն խնդրել, զի տկարութեանս մերոյ ուգնական եղև, և զկէս գրոցս գրեաց, զոր տէր Յիսուս գրեսցէ զսայ ի գիրն կենաց անջնջելի...*

Բ

*Ո՜հ, ո՜հ եղկելի անձինս և թշուառ ոգոյ, զի յամենայն բարութեանց դատարկացեալ եմ և փարթամացեալ մեղաւք, մանաւանդ զի գաղտնի նետից բանսարկուին խոցեցայ այժմ**։

## 437
## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 5510***

*Գրիչ՝* Թագւոր
*վայր՝* Ոստան

ա

274բ *Արդ ես* Թագւոր *և որդիքս իմ* Մերու[ն], Նիկողայոս, Խաչատուր *և* Դաւիթ, *տե[սաք զԱւե]տարանս գերի ի ձեռս տաճկանց, միաբան[եցաք] և գնեցաք սուրբ Աւետարանս յիշատակ մեզ և [ծնող]ացն մերոց և ամենայն մերձաւորացն՝ կենդանիացն և հանգուցելոցն։*

*Արդ որք հանդիպիք աստուածայ[ին] բուրաստանիս և ամենայն սուրբ սեղանոյս, յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զբարէսէր հոգիքն* զ[Մե]րուն, զԽաչատուրն, զՆիկեղոսն, *և* զԴաւիթ, *և ծնողսն իւրեանց* զԹագւորն *և* զՇուշան, *և զքոյրս* զԱմբարն, *և զկողակիցն իւրեանց* զՓաշէն, *և* զՇարմելէֆն, *և զաւակս իւրեանց՝* զԹումէն *և* զԹագւորն *և* զՊօղոսն, զՎասակն, զՍարգիսն *և* զԱտոմն *և այլ ամենայն արեան մերձաւորս իւրեանց՝ զկենդանիսն և հանգուցեալսն։ Եւ որ լի բերանով և բոլոր սրտիւ Աստուած ողորմի ասէ զողորմութիւնն ի Քրիստոսէ առցէ, ամէն։ Ընդ նոսին* զՀաթունշն *և* զՀամօշն:

Բ

*Դարձեալ յիշեցէք զպարոն* Թագւորն *և զորդին իւր* զԴաւիդն *և զորդին* Գաւթին Զ/// զն *և զայլսն, և զորդի* Հայրապետին զԽաչատուրն *և զդուստրն* զԳուլէն, զՎարդն, զՇուշանն, զԽամուշն *և* զԳրիգորն, *և* զՄերունն, *և զԲ (2)* Շուշանն *փոխեալն առ Քրիստոս, և կողակիցն* Հայրապետին զՄոչանն, *և զեղբայրքն՝* զՄերունն *և* զՊետրոսն՝ *զփոխեցեալն առ Քրիստոս, և զմիւս որդին* Դագւորին զ[Նիկե]ղայոսն, *և զորդի նորին* զՅովաննէս *քահանայն, և* զԱտ[ոմն], *և* զՍարգիսն, *և զորդին* Յովաննէս *քահանայն,*

---

* *Գրված է 498—499 էջերի ստորին լուսանցքում։*

** *Հիշատակարանի սկիզբը տե՛ս սույն ժողովածուի Ա մասում (էջ 128—129, հիշատակարան № 129), ուր կա թվականը (1411 թ.) և վայրը։ Երկրորդ էջը, որ ծածկված էր ուրիշ թղթով, անջատեցինք վերջերս և ներկայացնում ենք ստորև։*

զԿարապետ քահանայն, և զորդի նորին զՄելքոնն և զԿիրակոսն և զմի///ս Մելքիսեթն փոխեցեալն առ Քրիստոս։

Ո՜վ լուսերամ դասք քահանայից և սարկաւագաց և ժողովրդաց, երեսս անկեալ աղաչեմ զձեզ՝։

## 438

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7353

Ստացող՝ Հայրապետ

2բ Դարձեալ աղաչեմ զընթերցող սուրբ Աւետարանիս, զի յիշէք ի սուրբ յաղաւթս ձեր զվերստին ստացաւղ սուրբ Աւետարանիս զսրբակրաւն քահանայն զՀայրապետ, որ ի յարդար վաստակոց իւրոց ըստացաւ զսայ ի յիշատակ իւր և ծնողաց իւրոց, և ի վայելումն անձին իւր և զաւակի իւրում, ի թվ. ՊԿԱ. (1412) ամի։ Արդ, որք աւգտիք ի սմանէ յիշեց[էք] ի սուրբ յաղաւթս ձեր զպատուելի քահանայն զՀայրապետ, և զծնողսն իւր, և զամենայն արեան մերձաւորսն իւր, և Քրիստոս աստուած զձեզ յիշեսցէ յիւր սուրբ յարքայութիւնն և ի փառսն, ամէն։

## 439

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐ. ՆԱՐԵԿԱՑՒՈՅ ԵՒ ՆՈՐԻՆ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՐԳՍԻ ՎԱՐԴԱՊԵՏԻ

Երուսաղէմ 1324

Գրիչ՝ Սիմէոն

վայր՝ Սուրխաթ

717 ... Աստանօր իրաւապէս զկայ առցէ ի կատարումն և ի գլուխ աւարտման այսմ աստուածապատում մատեանս որ կոչի Նարեկ, զոր արարեալ է մեծ վարդապետն Հայոց Գրիգոր Նարեկացին, և զլուծումն սորին, զոր արար յետոյ վսեմամիտն և ճարտարաբանն Սարգիս վարդապետն՝ ի յառաջին ձայնէն մինչև յաւարտ շնչոյն լիակատար զլուծումն արել է։ Այժմ աղերսեմ և խնդրեմ ի խորոց սրտէ զհարազատգութ Հայոց և եղբարց մերոց հոգևորաց, զի կաթ մի արտասուաց ի կաթիլ դուլէ ձեր. մաղթանաց ցաւղեսցէ վասն կենաց հարազատին իմ եղբօր Յովանէսի կոչեցելոյ, և ինձ տառապեալ ոգւոյս Սիմէոնիս, և լուասցէ զբազմաշարաւ ոսկերս մեղօք մեռելոյս, զի մեք՝ երկոքեանս եմք գրել զգիրքս, սակաւ մի ի Նարեկացոյն և զլուծումն ես գրեցի, և զգիրալիր ընթեռնելոյն զձեռնագիրն նա գրեց, որք իբրև զմի մարմին բանական և յերկուց առ մի կերպարան շինել դիմաց կենցաղակցելով, ոչ միայն հարազատք, այլ և միաշունչ համապատիւք զուգահաւանք, ի չորից աչաց առ միևնոյն շաւիղ խորհրդոյ տեսանելք։ Եւ մաղթեմ եղբայրական սիրով ի ճաշակողաց... այսմ սեղանոյ յոքնօրէն և ախորժահամ հանդերձելոյ՝ յիշատակէլ ի մաղթանս ուղիղս զծնօղսն, և զեղբայրն մեր, որ հոմանուն է ատենա-

* Երկրորդ հիշատակարանը գրված է այլ ձեռագրով, մի փոքր ուշ, սակայն հիշյալ անձնավորությունները նույնն են (Թագվորն ու իր ժառանգները), այդ պատճառով դրեցինք այստեղ Վերջին տողը մաշված է և չի կարդացվում։

հաս զօրավարին, և դարձեալ կրկին անգամ աղաչեմ, զի յիշման արժանի առնէք զՅովանէս կրօնաւորն զմակյանումն մի մոռանայք, զի սա ծնօղ է մեզ հոգևոր և նախախնամող մեր տկարութեանս։ Որ և ձեզ յիշողացդ և մեզ յուսացելոցս, առհասարակ, ողորմեսցի բարերար և բազմողորմն աստուած Յիսուս Քրիստոս, ամէն։

Շրջապատեալ զմեզ շրջագայութեամբ տումարի հայկազեան սեռից՝ հարիւրից կրկնակի քառից և միոյ թուոյ և ժ.-անց վէցից (1412), զղանութիւնն Ճալալատին սուլտանն, որդի Թօղթամիշին. և տիրեաց աշխարհիս մերում, որ կոչի Սուրխաթ։ Գրեցաւ սայ ի յայսմ նահանգիս ի հրեշտակաբնակ վանօրեայս, առ դուրս սուրբ Լուսաւորչիս, որ է հուպ սուրբ Յովանէսին, որ կոչի Օթուզ. նա և զպատուելի ծերունին զՏանեական վարպետն, և զհեզահոգի եղբայրն մեր զԹադէոս կրօնաւորն. և զՍարգիսն յիշ[եցէք]։

## 440

## ՅԻՍՈՒՍ ՈՐԴԻ ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼԻՈՅ

Երուսաղէմ 1238

ա

Գրիչ՝ Առաքել

277ա Գրեցաւ ոտանաւոր տաղս Ներսէսի ձեռամբ Առաքելի մեղօք լցեալ և անիմաստ գրչի. ի թվ. Հայոց ՊԿԱ. (1412)։ Արդ, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր զԱռաքել գծող և զծնողսն։

բ

Գրիչ՝ Վարդան

283ա Զմեղապարտ գրիչս զսուտանուն քահանայ Վարդան աղաչեմ յիշել ի տէր սուրբ աղաւթիւք ձերովք, և զծնողսն մեր, և զեղբարս, և զամենայն ազգայինս, և աստուած զձեզ յիշէ։

## 441

## ԱԻԵՏԱՐԱՆ

Երուսաղէմ 251, Ն. Պողարեան, Ցուցակ, Գ, էջ 17—20

Ստացող՝ Կոստանդին Վանեցի

ա

327բ Ես նուաստ անուամբ միայն եպիսկոպոս տէր Կոստընտինս Վանեցիս, զոր էի սուրբ Աթոռն, նայ հրաման եղաւ ինձ ի յիմ պարոն ի հոգևոր տիրոջէն և ի տէր Վահրամէն. և ի յայլ իշխանացն գնալ ի Կաֆան. վասն նոցա սիրոյ և խաղաղութեանն։ Եւ ես ի հարկէ և յիշխանութենէ սուրբ Աթոռոյն, յանձն առի անկամայ սրտիւ գնալ ըստ հրամանի պարոնացն։ Եւ վասն դժնդակ և սաոնամանաց աւգան, որ էր սիրտ ձմռան, յունվար ժե. (15), շատ վիշտ և չարչարանք կրեցաք ի ճանապարհին, որ ժե. (15) աւր ի ձունին ի մէջն գնացաք գիշեր և ցորեկ, որ շատոց ոտք և ձեռք և ականջ անկաւ ի դառնութեան ժամանակին։

Եւ հփ որ ի նաւ մտաք, նայ բարիատեացն սատանա չարոյց ի վերա մեր ազգի-ազգի չար հողմեր, որ զոր Ա. (1) աւրն կերթայաք, նաև մէկալ աւրն ի յետ կու բերեր, և հանց ալեկոծութեան հանդիպեցաք, որ ճար չունէաք զԱստուած, և ինքն Քրիստոս աստուած ողորմեցաւ ու ազատեց զմեզ ի յանդնդային կործանմանէն, ըստ մարգարէին, որ ասէ՝ Անցաք մեք ընդ հուր և ընդ ջուր և հաներ զմեզ ի հանգիստ քո։

Եւ անաւրէն անհաւատ պարոն Խրիմին Կաւկան պաշարեալ էր զաստուածայպահ քաղաքն զԿաֆայն, և յամէն աւր աստուածասաստ բարկութիւն, ու կոխ, ու արիւնահեղութիւն էր ի վերայ քրիստոնէիցն։ Եւ այնպէս ի նեղութիւն մնաց քաղաքն, և մենք մինչև ի գալուստ հոգոյն սրբոյ, որ է պենտայկոստն։ Եւ ետ աստուած զիւր անխռով խաղաղութիւն քաղաքին և երկրին, ըստ բանին տեառն, թէ Զխաղաղութիւն իմ տամ ձեզ։ Եւ ես տէր Կոստընդինս որ բերի զքաղաքին զքահանայք, և զտանուտէրքն, զխոճանին և արաք յիւրեանց մէջն խաղաղութիւն և սէր։

Եւ ես տէր Կոստընդինս, որ ի բազում ժամանակաց ի վեր փափաքէի այսպէս վայելուչ ձևաւք աղէկ մագաղաթ պայծառ, գեղեցկայգիր, բոլորգաբան, ոսկիափայլ, և երփներփ գոյնաւք ծաղկեալ և առատայլի ոսկով զարդարեալ աստուածայխաւս և սուրբ Աւետարանի. և ի բազում քաղաք և ի գեղ, ի վանք, ի յանապատ խնդիր էի և ի հարցումն, և ոչ կարէի գըտանել ըփափաքելիս իմ։ Այլ ապաւինելով յաստուած աւր ըստ աւրէ խնդրէի ի յաստուծոյ, զի տացէ զխնդրուածս սրտի իմոյ։ Եւ Քրիստոս աստուած, որ առատն է ի տուրս բարեաց և գիտող է գաղտն[ե]աց մարդկան, յայտնեաց զսուրբ Աւետարանս մեզ, ըստ բանին տեառն, եթէ Որ հայցէ՝ գտանէ և որ բախէ՝ բաց[ց]ի նմայ։ Եւ այլ թէ Զոր ինչ խնդ[ր]էք հաւատով, յանուն որդոյ ի հաւրէ, տացի ձեզ. և այլ թէ Որ գայ առ իս, ոչ հանից ղնա արտաքս։

Եւ էր սուրբ Աւետարանս ի խոճայ Ասիլատինն ի մատ գրաւական, որ էր ազգաւ ասորի, ՌԲՃ. (1200) դրամաւ։ Եւ մենք քահանայք և տանուտէր առ նա յուղարկելով շատ աղաչանաւք և աւրհնութեամբ հազիւ կարացաք առնուլ զսուրբ Աւետարանս, Ռ. (1000) դրամ, որ է ֆլորի ԻԲ. (22) և տվաք նոր կապել, և ԹՃ. (900) դրամ տվաք որ արծաթեցին, որ է ֆլորի Ի. (20), և ի Սամիսոն տվաք ոսկիչրել Գ. (3) ֆլորի, որ է ջումլայ ԽԶ. (46) ֆլորի։

Արդ ես նվաստ անուամբ միայն եպիսկոպոս տէր Կոստընդինս Վաճկացիս, յերես անկեալ աղաչեմ զամենիսեան զհարքս և զեղբարքս և զորդիքս, որք հանդիպիք այսմ աստուածախաւս և սուրբ Աւետարանիս, եպիսկոպոսունք, վարդապետք, քահանայք, սարկաւագունք, կարդալով, տեսանելով կամ աւրինակելով, աղաչեմ զձեզ յիշեցէք ի սուրբ և ի մաքրափայլ յաղաւթս ձեր զտէր Կոստընդինս, և զծնաւղս իմ զՎասիլ, և զմայրըն իմ զՏիրունին, և զԱստուծոյ աւրինաւք զամուսին իմ զՄարիուն, և զաստուածարար որդեակն իմ զԱկոբ, որ Ժ. (10) ամեայ փոխեցաւ ի Քրիստոս և ինձ մեծ սուգ և տրտմութիւն եղև, որ այլ չունիմ ինձ մխիթար յաշխարհս, բայց միայն զՔրիստոս, որ մխիթարիչ է հոգոց և մարմնոց, կենդանեաց և ննջեցելոց։

Դարձեալ աղաչեմ զձեզ սուրբ հարք. յիշեցէք և զհարազատն իմ՝ զՄառանէ, զՄարթա, Զապլուն, զԱվիծ, և զայլ արեան մերձաւորքն իմ առհասարակ։

Դարձեալ աղաչեմ զձեզ սուրբ հարք, յիշեցէք զայնոսիկ, որք կանկ-նեցան և աշխատեցան և աւգնական եղան ի սուրբ Աւետարանիս ի գնելն, ի յարծաթելն, ի յոսկելն, և ի յայլ ամենայն անաւթքս եկեղեցւոյ։ Եւ զիս զանարժանս զտէր Կոստընդիս արժանացոյց Քրիստոս և կատարեց զխնդրուածս իմ, որպէս աստուածահայրն ասէ. Տացէ տէր ի սրտէ քումէ, զամենայն խնդրուածս քո նայ կատարեսցէ։ Եւ այլ թէ Զկամս երկիւղա-ծաց իւրոց առնէ տէր, աղաւթից նոցա լսէ և կեցուցանէ զնոսայ։ Եւ խնդրեմք ի Քրիստոսէ, որ զձեզ՝ զյիշողքս և զմեզ՝ զյիշեալքս սուրբ Հայ-րապետացն և սուրբ վարդապետաց դասակից և մասնակից արասցէ։

Արդ ի վերջին ժամանակիս դարձեալ գնեցաւ սուրբ Աւետարանս ձե-ռամբ տէր Կոստընդնիս, և նոր կազմեցաւ, և արծաթապատ զարդարեցաւ, ի մեծ թվին Հայոց ՊԿԲ. (1413), ի հայրապետութեան տեառն տէր Յակո-բայ կաթողիկոսի ընթանուր ամենայն հայկազան սեռի, և ի նորա աթո-ռակալութեան տէր Վանրամին, և յիշխանութեան Հայոց պարոնացն՝ պա-րոն Կարապետին և պարոն Թորոսին, որդիք պարոն Ասիլպակին, զոր խնդրեմք ի Քրիստոսէ և ի սուրբ Լուսաւորչէն, որ պահել է և պահեսցէ խաղաղութեամբ՝ մինչև ի խորին ծերութիւն, ամաւք և աստուածատուր զաւակաւքն, և ամենայն գոյիւք, ամէն։ Եւ Քրիստոսի փառք յաւիտեանս յաւիտենից ամէն, ամէն։

Արդ աղաչեմ զամենեսեան զվերջին յիշատակարանս գրողն՝ զանու-ամբ միայն էրէցս զԱստուածատուրս յիշել ի տէր, և դուք յիշեալ լիջիք ամէն։

Բ

4ր Աստուած աւրհնեալ է յաւիտեան,
Որ է գիտող գաղտնեաց մարդկան,
Եւ տայ պարգևս առատական,
Որք հաւատով ի նա յուսան,
Արդ աղաչեմ զամենեսեան,
Որք կարգաւորքդ էք միաբան,
Որք ընթեռնուք զԱւետարանս
Ի հանդիսի կամ ի խորան
Զտէր Կոստընդիս ղանպիտանս
Յիշել յաղաւթս արէք արժան։
Որ այսպիսի Աւետարան,
Փափաքէի ի փոքրութեան,
Բազում քաղաք և ի գեղան,
Խընդիր էի և ի հարցման։
Ես ոչ գտնի այսպէս յական,
Եւ ոչ ամէն շնորհօք ի լման։
Ամէն իրօք սա գովական,

Ու հաճելի աչաց մարդկան։
Ձեաւք է լաւ և աններման,
Ոսկով իլի և երփգունեան,
Գեղեցկագիր 'ւ ուղորդաբան,
Մագղագ պայծառ, որ հեշտ կարդան։
Ոսկի անուն տէրունական,
Հայնց որ վայլէ փրկչին անուան.
Համաբարբառքն ի ներս ի լման.
Ոտանաւորքս ի մէջըն կան։
Արծաթապատ և պատուական,
Բազմապատկերք և փրկչական։
Եւ աղաչեմ զամեննսեան,
Որք հանդիպիք այսմ մատեան,
Զյիշատակարներս ի լման կարդան,
Զինչ որ ի չորս դլուխն կան,
Եւ զիս յիշման արէք արժան,
Եւ իմ մեղացըն թողութեան,
Ըստ բանին տէրունական,
Եւ հրամանին անսխալական,
Թէ զոր կապէք՝ կապեալ մընան.
Եւ արձակեալքն ուրախանան։
Ես այս յուսով եմ ի հայցման,
Տէր Կոստընդիս ես անպիտան։
Ընծայեցի զԱւետարանս՝
Ի սուրբ քաղաքս տնաւրինական,
Երուսաղէմըս պանծական,
Որ Քրիստոսի է գերեզման.
Ինձ և իմոց պատճառ յիշման,
Որ զմեզ յիշէք միշտ անխափան.
Եւ դուք և մեք ի մի բերան
Աւրհնեմք զաստուած ի յաւիտեան.
Որ կատարէ զկամըս հայցման
Եւ ըղձնդիրս որդոց մարդկան։

Գ

6ր—7ա Աստուած աւրհնեալ յամենայնի,
Հայր և որդի և սուրբ հոգի,
Որ տաւ իւրս [ա]շխարհի,
Ըզպարգևս առատ և իլի։
Տէր Կոստընդինըս Վաճկեցի,
Որ ի փափագ Աւետարնի,
Եւ ոչ ես այսպիսի,
Գեղեցկագիր ոսկով իլի,
Արծաթապատ և ցանկալի,

*Մագաղաթ պայծառ որ հեշտ կարդցի,*
*Աստուած էրետ ինձ գովելի*
*Անգին մարգրիտ և ջաւհարի,*
*Որ ալ չկայ իւր նմանի,*
*Քան թէ միայն ինքս լինի։*
*Ո՛վ քահանայք և պատուելի,*
*Որք ընթեռնուք զսա ի յարկի,*
*Կամ ի յառեան սուրբ տաճարի՝*
*Յիշման արէք զիս արժանի.*
*Զտէր* Կոստընդին *մեղօք իլի,*
*Մաղթեմ ի ձէնչ տեառն բանի,*
*Թէ զոր թողուք՝ թողեալ լիցի,*
*Եւ ձեր բանիւըդ ջընջեսցի։*
*ԶԱւետարանըս Քրիստոսի,*
*Որք տեսանէք, զոր ես գնեցի*
*Ի մանկութեան ժամանակի,*
*Եւ մեծ ջանիւ յաւարտ ածի,*
*Նախնեացն գրեալ ի* Կլայի.
*Եւ ես գնելով արծաթեցի,*
*Տէր* Կոստընդինս *ըղ*Վահկեցի,
*Եւ յոյժ սիրով և պանծալի,*
*Զդրամն և զարծաթն ուրախալի*
*Տւի զարդարեալ զբանս Յիսուսի,*
*Զի աստէնս վայելչասցի,*
*Եւ յապագայն պըսակեսցի։*
*Եւ յորժամ վաղճան կենաց հասցի,*
*Եւ առ Քրիստոս ինձ գնալ լինի,*
*Մնալ յիշատակ ի տաճարի,*
*Որ Յարութիւն անուն կոչի,*
*Ի Քրիստոսին գերեզմանի,*
*Ի Գողգոթայ խաչին տեղի,*
Յերուսաղէմ *մեծ քաղաքի,*
*Ի սուրբ Յակոբ եկեղեցի։*
*Ոչ ոք հանէ զսա ի յաստի,*
*Ոչ տայ ի ձեռս անօրինի.*
*Թէ յայլազգեաց ահ մի լինի,*
*Դընէն պահուստ ի յամրոցի,*
*Կամ ի* Կիպրոս *կղզին տանի,*
*Մինչ բարկութիւն այն անցանի։*
*Դարձեալ բերեն ի սոյն տեղի,*
*Եւ վարձս առցեն ըստ վաստակի։*
*Թէ բռնաւոր մարդ հանդիպի,*
*Որ յաստուծոյ ոչ երկընչի,*
*Որ զսա ծախէ և կամ տանի,*

Նա անիծից արժան լինի,
Եւ մասն առցէ ըղՅուդայի,
Զխաչահանուացըն Քրիստոսի։
Զայս յիշատակ ես ինձ եդի,
Որ միշտ պահեն յեկեղեցի,
Վասն յիշելոյ զմեզ ի բարի,
Եւ թողութիւն մեզաց լինի.
Ինձ և որդոյն իմ Յակոբի,
Նաև ծնողացն իմ և ազգի,
Եւ ամենայն մերձաւորի,
Ով զմեզ յիշէ մտաւք բարի,
Իւր թողութիւն մեղաց լինի,
Մեզ և նոցա ամենայնի
Ողորմութիւն պարգևեսցի,
Ընթերցողաց սորա տացի,
Արքայութիւնըն Քրիստոսի.
Ամէն, ամէն և այս լիցի,
Որք մեզ ասեն Տէր ողորմի։

## 442

### ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

Երևան 917

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ հաուրաստայ վանՙ

ա

412ա ...Արդ ես Գրիգոր անձն եղկելի,
Նուաստ և անպիտան ամենայնի,
Ցանկացա գրելոյ այս սուրբ տառի,
Որ և Հարցմունք անուն կոչի,
Մեծ հեռետորին Գր[ի]գորին,
Աստուածաբան վարդապետի,
Լուսաւորիչ մերոյ ազգի,
Ըզսա գրեցի ես ի քարտի,
Առ ի վայելս ինձ ի յաստի,
Եւ յիշատակ յետ վախճանի,
Այլ և ծնողացն իմոց բարի՝
Յրոստակես քահանայի,
Տօնա տիկնոջ՝ մօրն իմ հեզի,
Փոխեցելոյն յայս կենցաղի։
Այլև եղբարցս իմ մարմնի՝
Յովհանէս քահանայի
Եւ Սամուէլ սարկաւագի,
Եւ Բ. (2) քերցս իմ նազելի,

Հանդերձ որդւովք իւրեանց բարի,
Եւ համօրէն ազգատոհմի,
Միշտ յիշատակ սա եղիցի,
Այժմ և աւուրն ապագայի,
Յորժամ փառօք գայ Հայրենի։
Արդ գրեցաւ գիրքս բաղձալի
Ի գաւառս Քաջբերունի,
Որ յԱրճիշոյ այժմ անուանի,
Ի յանապատս հրաշալի,
Որ Խառաբաստ անուն կոչի,
Ընդ հովանեաւ Աստուածածնի,
Կմբեթազարդ* վիմարդեանի,
ՊԿԲ. (1413) թուականի,
Ի կաթողիկոսութեան մերոյն վեհի՝
Յակոբ անուն Հայրապետի,
Եպիսկոպոսութեան այս գաւառի՝
Տէր Ստեփանոս տղայ համբակի,
Եւ յառաջնորդութեան մերոյս ուխտի՝
Յակոբ անուն վարդապետի։
Սա կրօնաւորք կարգեալ ունի
Համանման սուրբ Անտոնի.
Որք հաւաքեալ կան յայս տեղի,
Ի դուռն սուրբ քաւարանի,
Աղօթել վասն աշխարհի,
Եւ ակն ունին տեառն վարձի։
Եւ ես նուաստ յամենայնի,
Որ և Գրիգոր անուն կոչիմ,
Ըղձեւս ունիմ կրօնաւորի,
Գործովքս եմ վատ և աղտեղի։
Արդ պաղատիմ աղերսալի,
Որք հանդիպիք այսմ տառի,
Յիշման առնէք գիս արժանի,
Զի թողութեան մեզ պարգևի,
Յառատաձիր տեառնէն ձրի,
Եւ ձեզ և մեզ ողորմեսցի
Փրկիչն Յիսուս յամենայնի
Այժմ և յաւուրն աներեկի,
412բ Յորժամ փառօք գայ Հայրե//նի։
Եւ նմա փառք եկեղեցի,
Ընդ Հօր Հոգւովըն ճշմարտի,
Յաւէտ այժմուս և միշտ էի,
Եւ յանըսպառ յաւիտէնի, ամէն**

* Ձեռագրում՝ «Կմէթազարդ» ձևով։

** Ձեռագիրը, «որ էր կարի հնացեալ», 1651 թ. Տեր Թաթեոսը նորոգել է տվել։ Այդ ժամանակ ընդօրինակել են նաև քայքայված հիշատակարանը։

բ

233բ Զնուաստ ոգի Գրիգոր՝ աշակերտ բանի,
Որ կամք այժմ ի վանս Հերմոնի,
Առ ոտս քաջ հռետորի
Եւ բազմերախտ սուրբ ծնողի՝
Յովհաննէս րաբունապետի,
Մի մոռանայք եղբարք բարի,
Այլ յիշեցէք սրտով իլի։

գ

331ա Զնուաստ տառապեալ Ղարիպս յիշել աղաչեմ զպատահողսդ սմայ*։

դ

367բ Վկայութիւն այս է ընդ[դ]էմ շուն անխթարմայից, լաւ սերտուիր**։

ե

Գրիչ՝ Յովանէս

120ա ԶՅովանէս Աորնեէցի գծող էջիս յիշել աղաչեմ։

443

ԿԱՑՐԴԱՐԱՆ

Երուսաղէմ 2431, (հմմ. «Սիոն», 1960, էջ 179)

Գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Ցիպնայ վանք

Փառք ամենասուրբ երրորդութեանն հօր և որդւոյ և հոգոյն սրբոյ, որ ետ զաւրութիւն տկարիս հասանել ի վերջ Կցըրդարանիս՝ ի վանքս Ցիպնա, ընդ հովանեաւ սուրբ Կաթողիկէիս, սուրբՍտեփանոսի և Վասիլ թագաւորի սուրբ Նշանիս, ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի Մկըրտըչի, ի խնդրո սրբասնեալ քահանայի Մկրտչի, ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ ծնօղաց իւրոց։

Արդ աղաչեմք զամենեսեան, որք օկտիք ի սմանէ կամ գաղափարէք, յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր զհայրն իւր զՅոհանէս քահանայ՝ զփոխեցեալ առ Քրիստոս, և թողութիւն հայցեցէք նորա, և զեղբարսն իւր զՄովսէս և զՂազարն//, և որ զաստուած ողորմին ասէ՝ աստուածն իւրն ողորմեսցի, ամէն։

Եւ զուսուցիչն իմ Թումայ կրոնաւորն յիշեցէք ի Քրիստոս։
Ի թվին ՊԿԳ. (1414)։

* Գրված է ներքևի լուսանցքում, կարմիր թանաքով։
** Այսպիսի հիշատակագրություններ կան նաև ձեռագրի 384ա, 403ա, 404ա և այլ էջերում։

Այլ և օրինակիս շնորհողի Յովանէս սրբասնեալ քահանայի, աստուածն ամենայնի պարգևէ նմա զիւր արքայութիւնն իւրն և ծնօղաց իւրոց, ամէն։ Եւ գծաղկեալ զաւակքն իւր ընդ երկայն աւուրս առնէ աստուած։ Ամէն և եղիցի։

## 444

## ՀԱԻԱՔԱԾՈՅ ԵՐԿՈՅ ԳՐ. ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

Վիեննա 593, Հ. Ոսկեան, Ցուցակ, էջ 48, 49

Գրիչ՝ Յակոբ Ասպիսբնկեցի
վայր՝ Սուճարայ վանք

ա

234ա Յակոբ սպասաւոր բանի, և զԱնդրէաս կուսակրաւն աբեղայ, և միա-գումար զամենայն ազգայինս յիշեցէք ի տէր միով Աստուած ողորմայիւ, և Աստուած զձեզ յիշէ, ամէն։ Գրեցաւ ՊԿԳ. (1414) ի վանս Սուճարայ. ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, որ Արծրւաբեր կոչի։ Որիշ որիշ գրեցաւ վասն այն բացատ մնաց, բաւ է։

բ

Այլ և զՅակոբ խնդրող բանի, որ մականուն Ասպիսբնկեցի կոչի, և զեղբայրն իմ Անդրէաս կուսակրօն քահանայ յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր, զի խիստ դժուարաւ գրեցի ի թվի ՊԿԳ. (1414) ամի։

## 445

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

Շվեդիա, Ուպսալայի համալսարան, Ֆ. Մակլեր, Ցուցակ 88, էջ 180—181

Գրիչ՝ Յունան
վայր՝ Մեծոփայ վանք

728ա ...Արդ, ի թվականիս հայկազան տումարիս ՊԿԳ. (1414) գրեցաւ գիրք քարոզութեանս առաջին հատորին, հաւաքեալ ձեռամբ սուրբ հօրն մերոյ երկրորդ լուսաւորչի և մեծ վարժապետի Գրիգորի՝ աշակերտի Յոհաննու Որոտնեցւոյ, որ մականուն Կախիկ կոչիւր. յիշատակ նոցունց աւրհնութեամբ եղիցի, որ կախեցան զբանէն կենաց և ղբազումս ի նոյն [հ]որդորեցին, զոր երանեմ ում որ հանդիպի։

Արդ, գրեցաւ սա յերկրիս Քաջբերունի, ի սուրբ ուխտս Մեծոփայ. ընդ հովանեաւ Տիրամօր աստուածածնիս և սուրբ Յակոբայ հայրապետի և յառաջնորդութեան բազմերջանիկ վարդապետ Թովմայի, որ զբազում եղբարքս մխիթարէ ուսուցանելով ղանձնւր. (՚) իսկ տաղով և դասիւ ես, և առաւել ես ինձ պատճառ եղև վճարման գրոցս, զօրինակն շնորհեաց, տեղիք և կերակուր պատրաստեաց։

Արդ, մեղսամակարդ գերիս աղաչեմ զաստուած, միջնորդութեամբ ամենայն սրբոց, զի տացէ սմա զբարին փոխարէն հարիւրապատիկ և բիւ-

*բապատիկ և կրկին կենօք անսայթաք պահեսցէ ամենայն իւրովքն՝ հոգևոր և մարմնաւոր եղբարբք, որ ծաղկեալ կայ յայսմ ժամանակի. ընդ որս և զհասարակ սպասաւորք սուրբ տեղեացս, որ ի սուրբ եկեղեցոյս և որ ի մարմնաւոր պէտս՝ առաջինք և վերջինք։*

*...Եւ գրեցաւ ձեռամբ անարհեստ և անիմաստ, մեղսամած, մատնադեգև սխալագիր գրչաց սուտ տէր* Յունան, *որ զանուն և զաստիճան առի ինքնիշխան կամօք և ի գործոյն բազում հեռաւորութեամբ յետս կացի, զայս ասեմ խոստովանաբար սուրբ հանդիպողացդ և խնդրեմ զթողութիւն ամենայն մեղաց, խոնարհիլ ի ձերում բարձրութենէդ ի մեր փոքրկութիւնս միով տէր ողորմայիւ սրտի մտօք։*

*Այլ և զհոգևոր հայրս մեր* զՍարգիս *մուղդասի, որ բազում աշխատեալ ի թղթի բերելն, ի կոկելն և յամենայն սպաս պիտոյից, ոչ միայն մարմնաւորին, այլ և հոգևորին սատար տանի. որոյ յիշատակն աւրհնութեամբ եղիցի, ամենայն իւրայեաւքն հանդերձ։*

*Արդ, աղաչեմ զհանդիպողսդ սրտի մըտօք յիշել զամենայն վերոյգրեալսդ և զիս՝ զեղկելի անձն, որ ի վայելս իմոյս գրեցի, եթէ տէր տացէ, և յիշատակ անջնջելի յետ մեր և մերոցն ծնողաց՝* Առաքելին *և* Ամինիային, *եղբարցն Բ. (2)՝* Ղազարոյն *և* Խոցադեղեն, *և ամենայն արեան մերձաւորք. և դուք ձերայովքն և ամենայն հաւատացեալք յիշեալ և աւրհնեալ լիցին յամէններանեան բերանոյն ի տեառնէ մերմէ Յիսուսէ Քրիստոսէ...*

*Խոշորութեան և սխալանացն թողութիւն խնդրեմ աղաչանօք, զի այս էր կար մեր։*

## 446

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

**Երևան 7463**

Գրիչ՝ Սիմէոն
վայր՝ Ղրիմ

91ա *...Նաև զգրող սորա* զՍիմէոն *անարժան, որ իմ ծովացեալ մեղաց իմոց յայս ամի յունիս ԺԱ. (11) թվ. ՊԿԳ. (1414)* Քերիմպերտի *սուլտան ի* Ղրիմն *երեկ, շատոց մեծ պակասութիւն եղև, աւարութիւն եղև, ոհ, ոհ, ոհ, ոհ, ոհ, վա՜յ։*

## 447

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երուսաղէմ 2663**

339ա—341ա ... Ներսէս, *զոր ի վաղուց հետէ ցանկայր այսմ աստուածախաւս սուրբ Աւետարանիս և ետ գրել զսա յիշատակ հոգւոյ իւրոյ և ծնօղացն, ի մեծ թուիս Հայոց ՊԿԳ. (1414), ի կաթողիկոսութեան հայկազեան սեռի տեառն* Յակոբայ, *և ի մերոյ կաթողիկոսութեան Ախթամարայ տեառն* Դաւթի, *և ի թագաւորութիւն այլասեռից* Ղարայ–Ուսուֆի, *զոր տէր աստուած Իսրայէլի պահեսցէ անսասան զաթոռ հայրապետական և զթագաւորական մերոյ ///*



22—271

*Արդ, աղաչեմ զամենեսեան... յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զՅովճաննէսն, և զհայրն իւր զԱռաքելն. և զմայրն զՈսկին, և զամենայն արեան մերձաւորսն իւր, և լի բերանով և բոլոր սրտիւ աստուած-ողորմի ասացէք...*

*Դարձեալ, կրկին անգամ աղաչեմ յիշել յերկնագնաց յաղօթս ձեր զխալիմն, և զայրն զԹումէն, և զորդին զԲադրոն, և զամենայն արեան մերձաւորս նոցա, և լի բերանով աստուած-ողորմի ասացէք և աստուած բարերարն՝ մեզ և ձեզ առհասարակ ողորմեսցի, և նմա փառք յաւիտեանս, ամէն։*

## 448
## ԳԱՆՁԱՐԱՆ
*Երևան 5951*

ա

187ա *Ո՜վ լուսերամից դասք, ի յայսմ հրաշալի տանիս յիշեսջիք ի մաք[ր]ափայլ յաղաւթս ձեր զմեղաւոր ///* և զծնաւղսն իմ, և աստուած զձեզ յիշէ, ամէն։*

բ

183ա *///աքս Գ. (3) գէլ զկապէն ի վերա Եձգեցին ու բըռնեցին. Թվ. ՊԿԳ. (1414)**։*

## 449
## ԺՈՂՈՎԱԾՈՒ
*Երևան 8775*

*Գրիչ՝* Գրիգոր Խլաթեցի
*վայր՝* Երուսաղէմ

ա

219բ *Փառք, պատիւ և գոհութիւն ամենասուրբ երրորդութեանն, որոյ շնոր-*
*հիւ կատարեցաւ լուսաւոր վարդապետութիւնս սրբոյն Գրիգորի մեր Լու-*
*սաւորչի՝ գիրքս որ կոչի Յաճախապատում ի թըւականութեանս Հայոց*
*ՊԿԴ. (1415), ի հայրապետութեան տեառն* Յակոբոսի*, և յեպիսկոպոսու-*
220ա *թիւն սուրբ // քաղաքիս* Երուսաղէմայ *տէր* Պօղոսի*, հեզ և բարի և սրբա-*
*կրօն եպիսկոպոսի։ Որ ժողովեաց զմեզ յիւր տան, և դարմանեաց ի յիւր*
*սեղան և հանգոյց զմեզ պատւով, ի վեր քան զարժանն։ Որոյ հատուցանէ*
*տէր փոխարէն՝ զկեանս ի յաստիս արտհեշտութեան յերկար ամօք մինչև ի*
*խորին ծերութեան։*

*Եւ յետ աստեացս՝ յերանական*
*Ջնա փոխէ կեանս անվախճան*

* Գրչի անունը, ինչպես և նախորդ բառը, որ երկբայաբար կարդում ենք՝ «զմեղաւոր», քերված է։

** Այս հիշատակագրության սկզբի մասը գրված է եղել նախորդ էջի ստորին լուսանցքում, այդ էջն այժմ բացակայում է, ուստի հիշատակագրությունը մնում է կիսատ։

Փառօք դասէ յաջակողման,
Ձնա իւր ծնողօքն յերկնից խորան, ամէն։
Աբրահամու գոգոյն արժան,
Ընդ հայրապետացն սրբազան։

Եւ արդ գրեցաւ սա յաստուածակոխ քաղաքս յԵրուսաղէմ, ի վանս սուրբ Յակոբայ, ընդ հովանեաւ առաքելական գլխոյ որդոյ որոտման, ձեռամբ յոքնամեղ և անարհեստ գրչի՝

Գրիգորի մեղապարտի,
Պիտականուն վարդապետի,
Որ ցանկացայ այս[մ] տարի,
Գրոց մերոյս Լուսաւորչի,
Որ ի վաղուց փափագէի,
Եւ որոնեալ չգտանէի
Մինչ որ յԵրուսաղէմ եկի
220բ Եւ // աստ գըտի, զոր ցանկայի։
Յոր ձեռնարկեալ եմ և գրեցի,
Զայս լուսատու բանքս ի քարտի։
Մին կարօտ այլ կայ ի սրտի
Մեղապարտիս իմ Գրիգորի,
Որ Զգաւն անուն գիրքն Յակոբի՝
Զայն Մըծբնայ հայրապետի,
Զայն այլ գըրեմ հողըս գէբի,
Ընդ լուսատու այս բանեբի,
Որ երկոքեանն ի մի տըփի
Լիցին բաներս հոգելի՝
Սուրբ Յակոբայ և Գրիգորի
Պայծառ բաներս Լուսաւորչի։
Արդ՝ ես քըտամբ գծագրեցի
Զայս հոգելի բանքս ի կարգի,
Եւ իմ կամաւ ես բաշխեցի
Լերդահատոր եղբօր որդի,
Զսա Մկըրտիչ վարդապետի,
Իմ սիրելի բարեկամի։

Արդ՝ որք հանդիպիք սմա. յիշեցէք ի միտս բարի զՄարգարէ աբեղայ՝ որ մեզ բարի ակն կուտայ։ Եւ զՏատիկ մայրն, որ լի սրտիւ մեզ պէտ կու առնէ՝ դարմանէ և սպասաւորէ, աստուած իւր հոգոյն ողորմի՝ Տատիկ մամուն, և Մխիթար միակեցին՝ որ զԹուղթս կոկեց, և ինձ մեղապարտ գծողիս, ամէն։

221ա Այլ և աղաչեմ յիշել առ տէր բարի կամօք և սրտի մտօք զամենաերջանիկ և հեզահոգի եպիսկոպոսն՝ զտէր Մելքիսէթն, որ աշխատեցաւ ի Թղթիս նշայելն, և ԺԲ. (12) տապաղով ինքն սայար եղև գրոցս գրելոյ, աստուած վարձատրէ նմա զանճառ բարիսն և ծնողաց նորին, ամէն*։

* Գրված է «Յաճախապատում ճառքն» ավարտելուց հետո։ Շարունակել է ձեռագիրը և ընդօրինակել Վարդան վարդապետի՝ մի քանի ճառերը. դրանց վերջում եղող գրչի և ստացողի հիշատակարանները տպագրված են «ԺԵ. դարի հիշատակարաններ»-ի Ա մասում (տե՛ս 178)։

Բ

61ա Ողորմի ստացողի գրոցս և գծողի սորին Գրիգորի բանի խնդրողի. և
ծնողաց նորին Մերինէ և Խոյանգինէ, ամէն, և որ զամէնն ասէ։

Գ

130ա Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին բարեխօսութեամբ ողորմեա Քրիստոս
ստացողի գրոցս Մկրտիչ վարդապետին, և ծնողաց նորին, և ամենամեղ
գծողին Գրիգորին:

Դ

199ա Զմեռեալս մեղաւք զեղկելի գրողս Գրիգոր յիշեցէք ի Քրիստոս, և
զլերդահատոր եղբայրն իմ զՄկրտիչ վարդապետ՝ ստացող սորա, և ծնող-
սըն մեր և զնորա*։

Ե

300բ ...Տէր, մի՛ յիշէր դու զիմ չարիս,
Մի՛ բարկանար մեղապարտիս,
Այլ զթութեամբ նայեա յառ իս,
Յայսմ մեղաւոր ու գարշելիս։

Զ

61ա Զնըկարող խորանիս զԳրիգոր երէցն յիշեցէք։

## 450

## ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Երևան 9554

Հետ. ստացող՝ Աստուածատուր
վայր՝ Երուսաղէմ

299ա Արդ, յետ անցեալ աւուրց և ժամանակաց առաջին ստացողացն և
հրաշազարդ աշխատողացն որ ի սմա, ի թվականութեանս Հայոց ՊԿԴ.
(1415) կրաւնաւոր ոմն ազնուական յԱրևելեան տանէ և յԱրարատեան
գաւառէ, ի գերահռչակ մենարանէ Սաղմոսաց աւանէ, ի տիս համբակաց
299բ սնընդեամբ և ուսմամբ աշակերտեալ // քաջ հռետորին և մեծ սոփեստին
Հայոց Յակոբայ, զարդարեալ ամենայն առաքինութեամբ հոգւոյն արու-
թեամբ՝ տեսականաւն և գործնականաւ, ճգնատեսակ, սրբասէր և կուսա-
կրօն քահանայ Աստուածատուր անուն, ի յայս և ի սոյն ամի եռափափագ
սիրով և մեծ յուսով հետևեալ ի սուրբ քաղաքն Երուսաղէմ՝ յերկրպագու-
թիւն աստուածընկալ սուրբ գերեզմանին Քրիստոսի աստուծոյ մերոյ և
հանդիպեալ այսմ ոսկիաճաճանչ բուրաստանի և գեղեցկանկար երաժըշ-
տական տառի, որ և ըստ արժանոյն սիրեաց յոյժ։ Եւ ստացաւ զսա ի հա-
լալ յընչից իւրոց յիշատակ հոգւոյ իւրոյ և ծնօղաց իւրոց փոխեցելոցն ի
300ա Քրիստոս՝ հօր Ստեփանոսի // և մօրն Մարիկ ապաշխարողի, և հարազատ

* Այս կարգի հիշատակարաններ կան նաև ձեռագրի 80բ, 171բ, 212բ, 253բ, 278ա
էջերում։

եղբաւր իւրոյ Զաքարէի, և ի վայելումն նորաբողբոջ զաւակաց նորա։ Վասն որոյ աղաչեմք զամենեսեան, որք ագուք ի սմանէ ուսմամբ կամ գաղափար առնելով, յիշեցէք ի Քրիստոս զվերջին ստացօղ սորա զԱստուածատուր քահանայ, հանդերձ վերոգրեալ իւրայովքն ամենայնիւ. որով յիշողացդ և յիշեցելոցս համանգամայն ողորմեսցի Քրիստոս աստուած, և նմա փառք այժմ և յանպայման յաւիտեանս, ամէն։

## 451

## ԹՈՎՄԱՅԻ ԱՔՈՒԻՆԱՑՒՈՅ ՅԱՂԱԳՍ ԵՒԹՆ ԽՈՐՀՐԴՈՑ ԵԿԵՂԵՑՒՈՅ

Հռոմ 45, Տիեբրան, Ցուցակ, էջ 75

Գրիչ՝ Յրա Գրիգոր
վայր՝ Քռնա

ա

391ա Գերապատիւ և գերահրաշ հայր մեր ըստ հոգո Յրա Յօւէփ կոչեցեալ՝ մականուն Շաճապօնեցի, սկսեալ զաստուածային խորհրդաւոր գործառնութեան մատեանս և ոչ առեալ զաւարտ վասն վրդովման ժամանակին և ի խստութենէ այլազգեաց, և մնացեալ թերատ բազում ամ։ Եւ յետո շնորհեաց մեզ ի խնդրո մեր՝ լնլով զթերին։ Յաղագս որո ես՝ նուաստս ի Քրիստոս և յետինս յորդիս Սիոնի, ապիկար ոգիս Յր. Գրիգոր սպասաւոր բանի շնորհօք գթութեամբք տեառն և փրկչին Յիսուսի Քրիստոսի սկսեալ և կատարեալ յանկեցաւ, և ստաց[այ] զսա բազում փափագմամբ ախոեան ներհականն դասուց և ընդունարան /// ացն աստուծոյ, որ ի սմա հաւաքե[ալ] կան պէս պէս և ազգի ազգի ծիրս պարգևաց։

Ընդ որո և զմատեանս հոգեպատումս մեծահրաշ մարգարէիցն և գերազանց հրաճաշակ առաքելոցն, որ են զուշակ ներկայիս և պատմիչ ապագա իրացն եղելոց, իբր գեղեցկութիւն ոսկո ընդ սրբափայլ արծաթս գասեալ և կամ շափիղայս ընդ կարկեհան յեռեալ, զոմն ուսուցիչ ներկաիս իբր ստուեր ճշմարտի, և զոմն աւետաւոր անսպառ յաւիտենին, ի հաստատութիւն սրբոց և ի գործ պաշտաման, որ ըստ հոգոյն ներգործի ի յուսումն վարժողաց, որ ի լաւագոյնն վերաբերի և ի յարութիւն մտաց թուլացելոց և պնդութիւն ստորաքարշ կամաց և յօգուտ մանկանց նորոյս օրինի, պսակ պարծանաց կաթողիկէ սուրբ եկեղեցո, որ ի գոյսս ամենայն համեմատեալ գերագոյն և բարձր, քան զնոսին տեսանի մտաց աչօք և յամօթ ծաղանաց բռնութեան բարուցն Բելիարա և հետևողացն նորա։

Արդ, մակագրեալ եղև աստուածային տառս յամի հազարերորդի չորեք հարիւրերորդի ժ. (10)-երորդի հինգերորդի (1415), յուլիս ամսո ԻԳ. (23) օրն, եւ ի թուականութեանս Հայոց ՊԿԴ. (1415), վասն որո աղաչեմ զաստուածաբան ընթերցողսդ և զվաեելողսդ զխալանս մեր որ սատ՝ հարազատաբար սիրով ուղղել, և զմեզ հանդերձ ծնողօքն մերօք հոգեւորօք և մարմնաւորօք ի տերունի բարիսն յիշատակել։

Արդ, եղև գրութիւն սորա ի վանեւում և ի յօգուտ կարգին և որ ի ծոց սմին եղբարց Յր. Լօրէնցի, Յր. Մարտիրոսի, Յր. Կոստանդի, Յր. Յոբի,

*և այլ նորալոյզրոզ մանկանցս որք կան։ Եւ թէ արժանի արասջիք զիս յիշել և զուսուցիչն իմ՝ հոգևոր հայրն զսրբակրօն քահանայ զՏր. Պետրոս և զմարմնաւոր ծնողսն իմ զտառապեալ հայրն իմ՝* զԽոցադեղ, *և զմայրն իմ* զԹանկիկ, *և զեղբայրն իմ* զԲէկի, *որ կայ այժմ, և այլ ամենայն արեան մերձաւորքն...*

**Բ**

10բ *Ջտառապեալ ոգի նուաստ* Գրիգոր *խնդրող բանի՝ զսակաւ աշխատող այսմ տառի յիշել աղաչեմ։ ՊՆԺԵ. (1415), յուլիս ԻԳ. (23) աւարտ էառ։*

## 452

## ՅԱՂԱԳՍ ԱԶԳԱԿԱՆՈՒԹԵԱՆ

*Երևան 10137*

*Հեղինակ՝* Յակոբ Ղրիմեցի
*վայր՝* Մեծոփա վանք

290ա *Արդ, ո՜վ սուրբ բաբունապետդ հեզահոգի*, ընկալ զսակաւ ընծայս ի տխեղծ մտանց և յանարժան անձնէ իբրև ղխերևէշս այրոյն լոմայի՝ ի քումդ յընդարձակութեան գանձարանի սրտիդ ունենկի։ Եւ ըստ կորովի մտաց քոց զպակասն լցցես, և զաւելորդն կշռեսցես։ Ջի եղբայր եղբօր է օգնեալ իբրև զքաղաք ամուր և բարձր՝ ասացաւ, զի ընդ տուեցելոյ շնորհաց սուրբ հոգւոյն, կար մեր այս էր։*

*Ողջ լեր ողջունեալդ ի հոգւոյն սրբոյ եւ զմեզ ի սուրբ աղօթից քոց և յանկեղծ սիրոյ մի մոռանար աղաչեմ, աղաչեմ։ Եւ թէ մահու ձայն լսես, ի սէրն Քրիստոսի, աստուած-ողորմի հրամէ քո սուրբ բերանովդ մեղաւոր հոգւոյս, թէև չեմ արժանի։*

*Գրեցաւ ի թվականութեանս Հայոց ՊԿԵ. (1416), ի հռչակաւոր վանքս* Մեծոփայ, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ Կուսին, և սուրբ վարդապետաց գերեզմանացս։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնոյք կամ օրինակէք, մեղաւոր* Յակոբ *վարդապետիս աստուած ողորմի համեցէք՝ ինձ և ծնօղաց իմոց։ Եւ մարդասէրն աստուած ողորմեսցի ձեզ, և ծնողաց ձերոց, նմա փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն***։

* *Անտարակույս Թովմա Մեծոփեցուն է դիմում Հակոբ Ղրիմեցին. համանման դիմումներ նա կատարել է նաև այլ առիթներով (տե՛ս «ԺԵ. դարի հիշատակարաններ», մասն Ա, էջ 182)։*

** *Բացի «Յաղագս ազգականութեան» փոքր աշխատությունից (զետեղված «Կանոնագիրք հայոց» ժողովածուի վերջում) Հակոբ Ղրիմեցին ու նրա ուսուցիչ Գևորգ Երզնկացին մասնակցություն են ունեցել նաև «Կանոնգրքի» խմբագրման գործին։ Այդ մասին Անկյուրիայի Կարմիր վանքի № 43 ձեռագրում կա ստորև բերվող հիշատակարանը.*

*«Արդ, աղաչեմք զորդիքդ լուսոյ և զմանկունքդ նոր Սիովնի, զչերմացեալքդ աստուածային սիրովն ի յուսումնասիրութիւն տեսականին և գործնականին, մանաւանդ եթէ հնազանդք և կատարողք սրբոյ կանոնացս, որ աւանդեցաւ ի ձեռն հոգոյն միջնորդութեամբ ընտրելոցն իւրեան, աղօթիւք և մաղթանօք, նաև հառաչմամբ սրտիւ յիշատակել առ աստուած զարժանն յիշատակելոյ՝ զերիցս երանեալ երջանիկ բաբունին՝ զպետն վարժից և զքաջ փաղերայն հայ-*

## 453

## ՅԱՂԱԳՍ ԱՒՈՒՐՑ ՀՆԳԻՑ ՀՐԱՄԱՆՔ ԳԷՈՐԳ ՐԱԲՈՒՆԱՊԵՏԻ ԵՒ ԾԱՌԱՅԱԲԱՐ ԿԱՏԱՐՈՒՄՆ ՅԱԿՈԲԱՅ ԱՇԱԿԵՐՏԻ*

*Երևան 1849*

*Հեղինակ՝* Յակոբ Ղրիմեցի

ա

225ա *Զհրաման հարկի րաբունոյդ իմոյ և վարդապետի ... Գէորգ վարժապետի քաջ փաղերայի Թորգոմեանս տոհմի և հայկազեանս սեռի ընկալա հնազանդ ծառայս քո և աշակերտ* Յակոբ Ղրիմեցի *և ներգևեալս ոգի՝ յաղագս աւուրց հնգից ստուգութեամբ քննել ըստ տումարական արհեստից և անսխալ ցուցանել զաւուրցն պատկեր։ Զոր անհնար է ըստ բազում ջանից այլոց ազգաց քրիստոնէական տոհմից անսխալ բերել զաւուրցս պատկեր. վասն որոյ յոյժ շառագունին ի յաղթիլ սմին։ Ծանիր րաբունի իմ, զի ոչ եթէ ատ զզիմ ջանից ցուցանեմ զքաջութիւն, այլ զՍարկաւագ վարդապետին, որ հասարակ ամենեցունց յայտնի է առն քաջութիւն ի գիտութիւն մակացութեանս. այս զնորայն աշխատասիրութիւն և զվաստակ ջանից, զոր փարթամ և երկար բանիւք շարագրեալ է զաւուրցս զստուգութիւն, մեք զայն ջանիւ մեծաւ համառօտեցաք վասն ուսումնասէր անձանց, զի առձեռն պատրաստ և դիւրին լիցի ի տրամաբանութիւն անիրաւ հակառակորդաց յաղագս այսմ իրի։*

բ

230բ *Այս քան առ այս և զմեղաւոր ծառայս քո աղաչեմ յիշել ի յաղօթս ձեր և դու յիշեալ լիջիր ընդ մեծացն աստուածաբանից։ Բայց դիւրին է րաբունոյդ իմոյ զպակասն լնուլ, զաւելորդն կշռել և անմեղադրելի լինել մեղուցեալ աշակերտի քո, զի քաջ գիտակ են տկարութեան ծառայի քո. ողջ լեր տէրդ իմ ի տէրն հասարակաց՝ յաստուածն իմ Յիսուս Քրիստոս։*

## 454

## ԱՐՀԵՍՏ ՏՈՒՄԱՐԱԿԱՆ ՅԱԿՈԲԱՅ ՂՐԻՄԵՑՒՈՅ

*Երևան 1849*

*Հեղինակ՝* Յակոբ Ղրիմեցի

230բ *Արդ ես՝* Յակոբ Ղրիմցի *և զառածեալս մեղօք յերկրի՝ աշակերտ Դէորգ րաբունապետի՝ զխնդիր սիրալի և զհրաման հարկեցուցիչ, որ յաղա-*

---

*կազուն սեռիս՝ զմեծ հռետորն Գէորգ, որ ի պակասն գրոցս շատ աշխատեցաւ և գրեաց բազմաշնորհ մատամբն իւրով առ ի կատարել զթերին։*

*Ընդ նմին և զՅակոբ Ղրիմեցիս՝ զաշակերտս մեծիս րաբունոյ, որ զաղիւսակս և զբոլորակս գրոշմեցի, հանդերձ խրատիւք, նաև դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ. որում փառք...» (Բաբգէն կաթողիկոս, Ցուցակ հայերէն ձեռագրաց Կարմիր վանուցն Անկիւրիոյ, Անթիլիաս, 1955, սյունակ 235)։*

* *Յակոբ Ղրիմեցու այս և հաջորդ անթվական հիշատակարաններն ու մանր հիշատակագրությունները պայմանականորեն դնում ենք 1416 թվականի նրա հիշատակարանին առընթեր։ «Յաղագս աւուրց հնգից» և «Արհեստ տումարական» աշխատությունները (խորագրերը մենք ենք նշանակում ըստ բովանդակության) շարադրվել են Հակոբի ուսուցիչ՝ Գևորգ Երզնկացու (մ. 1416 թ.) հանձնարարությամբ, ուստի 1416 թվականից առաջ։*

գրս հոգևոր զաւակացն իմ մանկանց Սիոնի և նորաբողբոջ կուսակրօն
քահանայից թարմատար ոգով սոսկ անուամբ միայնակեացս Յակոբ սա-
կաւ ինչ դասիւ ի տումարական արհեստէս ուսուցաք սոցա։ Իսկ սոցա ծա
նուցեալ զդժուարութիւն իրին աղաչանօք խնդրեցին ի նուաստութենէս մեր-
մէ ընդ բանիւ ուսուցանելոյն և գրով աւանդել նոցա։ Եւ հարկեալ զմեզ բա-
րունապետին իմոյ կատարել զխնդրուածս նոցա ըստ հրամանի տեառն.
թէ Ամենայն որ խնդրէ ի քէն՝ տուր։ Վասն որոյ առանց յապաղելոյ բուռն
հարաք ոչ ըստ բոլոր արհեստին, այլ սակաւ ինչ ի գլխաւորագունից մա-
սանց մակացութեանս ի հարկաւորացն, և համառաւտաբար ղբանս
իմաստասիրաց և զեկեղեցոյ սուրբ վարդապետաց աշխատասիրելոց ի
231ա գործս յայս՝ զբանս նոցա, որ տարածեալ էր ի բազումս, || մեք զայն գըլ-
խաւորօրէն ի մի վայր հաւաքեցաք։ Եւ զի էր ուրեք, որ ծածուկ ունէր զտե-
սութիւնս միտք բանին, մեք զայն պարզ և յայտնի բանիւ բացայայտեցաք
ի զուարճութիւն ուսումնասիրաց տումարական մակացութեանս*, և յոյս
զայս ունելով ի մտի, թէ որոց քաղցր թուեսցի մակացութիւնս այս ի յու-
սանիլն զաստուած-ողորմին մեզ ասասցեն յորդոր սրտիւ՝ մեղուցեալ ան-
ձինս, որ և ինքեանք ողորմութեանն աստուծոյ արժանասցին ամենայն
հաւատացելովքն հանդերձ, ամէն**։

---

* Աշխատությունը շարադրված է հարց ու պատասխանով։

** «ԺԵ. դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ» ժողովածուի առաջին մասի հրատարակությունից հետո Հակոբ Ղրիմեցու մասին մեզ հայտնի դարձած բոլոր հիշատակագրությունների այստեղ ամփոփելու համար նշենք նաև հետևյալը. 1. Մեր Մատենադարանի № 2136 ձեռագրի 88ա էջում պահպանվել է Հակոբ Ղրիմեցու հիշատակագրությունը Քրիստոսի խաչելության օրրի շարադրման մասին. «Արդ, ես՝ Յակոբ մեղաւոր վարդապետս Ղրէմեցի, որ ի խաչելութեան քարոզիս աշխատեցայ, աղաչեմ զձեզ ի սէր խաչելութեան Քրիստոսի, զի ի սոսկալի աւուր աստուած-ողորմի հրամայէք մեղուցեալ հոգոյս և մեր ամենեցուն» (հմմ. ԺԵ. դարի հիշատակարաններ, մասն Ա, էջ 655). 2. Վիեննայի № 389 ձեռագրի 111բ—113բ էջերին ընդօրինակված է «Յաղագս շեշտի և պարույկի...» խորագրով մի փոքր բնագիր, որին կից հիշատակագրությունից կարելի է հետևցնել, որ այն շարադրել է Յակոբ Ղրիմեցին։

Ահա այդ հիշատակագրությունը. «Այսոքիկ խրատք վերածնութեան բացերևալէս հաւաքեալ ի վերայ բազում անուանց զզանազան արուեստս գրչութեան, այսինքն զշեշտ և զպարոյկ, թէ ի վերայ որոյ գրի պարտ է գծագրել և կամ ընթեռնուլ իմաստուն գրչաց և մտաւոր ընթերցողաց, յաշխատասիրութենէ և յանճարեղ և իմաստուն րաբունոյն Յակոբայ՝ աշխարհաւ Ղրիմեցւոյ, մնացեալ առ մեզ, որոյ ողորմեսցի Քրիստոս աստուած մեր և տացէ նմա վարձս ըստ վաստակոց իւրոց և ըստ քրտնաջան աշխատութեանցն հազարապատիկ և բիւրապատիկ աստ և ի հանդերձեալն զանտրտում ուրախութիւնն, հանդերձ ծնօղօք իւրաւք ամէն» (Յ. Տաշեան, Ցուցակ, էջ 842—843)։

3. Մեր Մատենադարանի № 9244 ձեռագրի 139ա էջում (Հմմտ. նաև Հ. Տաշեան, Ցուցակ հայ ձեռագրաց մատենադարանին Մխիթ. ի Վիեննա, էջ 689, Բաբգեն կիթողիկոս, Ցուցակ հայերէն ձեռագրաց վանուցն Անկիւրիոյ, սյուն. 730—731) կա այսպիսի հիշատակագրություն. «Խրատք ժամատեղաց ըստ արեւելեան սահմանացն սկսուածոց և ասութեան աղօթից, զոր խնդրեալ սուրբ վարդապետն Յակոբ Ղրիմեցի ի րաբունոյն Գրիգորէ Խլաթեցոյ: Եւ նա կատարեաց այսպէս. որ զասոււ որ աւուր ձայնն լինի՝ այսպէս տէր եթէ ղՇրթունս, զՔէն զոհանամք, Աւրհնեալն տէրն մեր» են։

4. Սույն ժողովածուի Ա հատորում, Գ. Փիրղալեմյանի «Նօտարք»-ից քաղելով, որպես 193-րդ հիշատակարան, տպագրել էինք Յակոբ Ղրիմեցու «Յաղագս ազգականութեան բաժանմանց» աշխատության փոքրիկ հիշատակագրությունը, որը սակայն ավելի անաղարտ պահպանվել է Վիեննայի № 469 ձեռագրում։ Ստորև տալիս ենք աշխատության ամբողջական խորագիրը և հիշատակագրությունը, քաղելով Հ. Տաշյանի ցուցակից.

## 455

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 10200

Վայր՝ Երուսաղէմ

353բ Գրեցօ չորս հինգ տետրակս ի Հարցմանց գրոց, զոր արարեալ վարդապետին Գրիգորի եռամեծի ընդդէմ կուրացեալ ազգին տաճկաց Գրեցօ սորա առաջ[ին] աւրինակն ի լուսազարդ քաղաքն յԵրուսաղէմ, ի սուրբ Փրկիչն, ի վայելուչ խոճայ Կոկճա-Թաճաթին։ Ով որ ազատի ի սմանէ կամ աւրինակէ, յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր և աստուած զձեզ յիշէ իւր սուրբ յարքայութիւն։ Թվ. ՊԿԵ. (1416)*։

## 456

### ԿԱՆՈՆՔ ՏԱՂՈՑ ՋՓՈՐՐ ԱՍՏԻՃԱՆՍ

Վիեննա 599, Հ. Ոսկեան, Ցուցակ, էջ 59

Գրիչ՝ Յակոբ

171ա ՋՅակոբ մեղսասէր գծող յիշեսջի[ք] առաջի Քրիստոսի՝ հանդերձ ծնողաւք իւրովք կրկնակի, ամէն։ Բաղձալի զոլով հրաքուն էութեանց և ի հողանիւթեա մարմնօ վերանեալ սլայծառ ջահն և ամուր սին ելեղեցւոյ մեծ րաբունին Կարապետ, որ ետ գրել զսա ի լաւ աւրինակէ եռափափաք սրտիւ յիշատակ իւրն /// քեռորդւոյ իւրոյ /// որ խաչաչարչար մշակին /// Նորրնծայ եպիսկոպոսին տէր Ստեփ[աննոս], Աստուած վայելել տացէ նմա ընդ եր[կայն աւուրս]։ Գրեցաւ ՊԿԵ. (1416) թվականին Հայոց։

## 457

### ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

Երուսաղէմ 2179

Գրիչ՝ Յոհանէս

վայր՝ Հիզան

... Եւ ես անարժան և սուտանուն կրօնաւոր Յոհ[անէս] գծեցի ձեռամբ իմով զգիրս սուրբս յիշատակ ինձ, եւ ծնաւղաց իմոց /// և մօրն
705 իմո Մամխաթունի, եւ հաւուց իմոց... Նաև զյիշատակի արժանաւոր //' զհոգև[որ] հայրքն մեր զՅոհ[անէս] և զԱւետիս րաբունիքս, որ են մեզ տածօղք հոգէպէս և մարմնապէս և վարժիչք աստուածային պատուիրա-

*Այլ և կանոնք Յակոբայ Ղրիմեցւոյն արարեալ ի խնդրոյ Թովմայի հրեշտակակրօն վարդապետի սրբոյ ուխտին Մեծոփայ, յաղագս պսակի ամուսնացելոց և ճիւղագրութեանս։

«Եւ այսքան յաղագս ճիւղագրութեան շատ լիցի, որ ցուցեալս եղև ի մէնջ. ըստ մտաց նախնի սրբազան հայրապետաց, ի խնդրոյ Թովմայի վարդապետի հրեշտակարենակ սրբոյ ուխտին Մեծօփայ, և ես ծառայաբար կատարեցի Յակոբ վարդապետս Ղրիմեցի՝ աշակերտ Գէորգա վարդապետի Երզնկացւոյ. վասն ազգականութեանց և բաժանմանց, և Քրիստոսի փառք» (Յ. Տաշեան. Ցուցակ, Հ. 946)։

* Ժողովածուն գրված է 1624—1634 թթ. Տրապիզոնում։ Հիշատակարանը վերաբերում է նախագաղափարին։

նացն բարեաց յիշման ի տէր արժանի առնել. նաև ղհոգևոր հայրն իմ և զուսուցիչն զԲարսեղ և զծնօղս իւր...

Արդ, գրեցաւ սուրբ մատեանս յաստուածապահ և գերափառ եւ ի գերահռչակ ուխտս, որ Աւաք սուրբ խաչ կոչի, եւ ընդ հովանեաւ սուրբ Նշանիս, որ յայսմ ամի դարձաւ ի տեղի իւր, ի թուականիս ՊԿԵ. (1416)՝ ի գաւառս Հիզան քաղաքիս։

Արդ /// ազատեցաւ /// սուրբ խաչն /// որ իբրև զխաչահան /// Հ. (70) հազար դրամաւ գնեցաք /// մի ոք իշխեսցէ հեռացուցանել //

## 458

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 1391

Գրիչ՝ Սիմէոն

300բ Զվերջինս ի ծնունդ եկեղեցւոյ զվերջացեալս յամենայն բարեաց՝ տեսականաց և գործոց, զգծող վերջին բանից և գործոց աստուածաբանն աւետարանչի, ի թուիս ՊԿԵ. (1416), զՍիմէոն վարդապետ՝ պարտական բիւր քանքարոյ՝ յիշեսջիք սրտի յօժարութեամբ ի մաքրափայլ յաղօթս ձեր, բարեխօսութեամբ մաքրեցելոյ և սիրելի աշակերտին Յոհաննու, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

## 459

### ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Երուսաղէմ 2433

Գրիչ՝ Տիրատուր

Արդ, գրեցաւ եղանակաւոր տառս ի սուրբ յանապատս, առ ոտս սուրբ Լուսաւորչիս և սուրբ Կարապետիս և այլ սրբոցս, որ աստ կան, ձեռամբ
204 բազմայմեղ և անարժան կրաւն//աւորի Տիրատուր աբե[ղայի]։

Այլ և խոշորութեան և սխալանաց սորայ անմեղադիր լերուք, զի այս է գիրս առաջին. և ոչ եթէ գրող էի, այլ վասն աւրինակիս խիստ շտապեցայ և անփոյթ արարի, զի պաւրինակն ի մեզ չէին տալ։ Ընդ նմին և
205 զՍարգիս կուսակրաւն աբեղայ, որ ետ գրել զսա // յիշատակ իւր և ծնաւղաց իւրոց։ Ո՜վ եղբայր, անմեղադիր լերուք, զի ձմերային ժամանակ էր և թանաքս և թուխտս վա[տ]թար, և մեք խիստ աղքատ, և վասն կարեաց աղքատութեանս մեր գրեցաք ղսայ, աղաչեմ յիշել յաղաւթս ձեր։ Գրեցաւ սա թվ. ՊԿԶ. (1417)։

## 460

### ՄԱՇՏՈՑ

Երևան 4282

Գրիչ՝ Ստեփանոս*

176ա Ամենասրբուհի աստուածածին, բարեխաւսեա առ միածինդ աստուած /// ահաւոր և միւսանգամ գալստեան իւրոյ ողորմեսցի քաղցր [բնո՞ւ]-

* Այս նույն գրիչը Տշողում 1417 թ. ընդօրինակել է մի Մաշտոց, իսկ 1419 թ.՝ մի ճաշընտիր։

*թեամբ ամենայն հաւատացելոց, ամէնւ Եւ առաւել և ինձ ողորմեսցի Յի-սուս աստուած՝ մեղաւոր և բազմ[ամ]եղ փծուն գրչի* Ստեփանոս *սուտա-նուն քահանայի, որ զանունս ունիմ և զգործս ոչ, և ծնողաց իմոց* Գրիգոր *քահանայի և* Խութլու-Մէլէքի՝ *առ Աստուած փոխեցելոցն, և կողակցին իմ* Մինայի, *և եղբարցն* Յոհանէսի *քահանայի և* Առաքելի, *որ փոխեցաւ առ աստուած որդովն՝* Թումայ *քահանայիւ, և կարդացողաց և լսողաց, ամէնւ*

## 461

## *ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ*

*Արմաշ 212, Յ. Թօփճեան, Ցուցակ, էջ 414*

*Գրիչ՝* Թովմա վարդապետ

ա

32բ *...Վարդապետս* Թովմա *... յոյժ աշխատեցայ ի գրել քարոզիս, զի-յետոյ գրեցի յաստուածարնակ ուխտս, առ մեծ վարդապետիս* Գրիգորի *մականուն* Ծերենց, *Քրիստոս լուսաւորէ զսա հոգւով և մարմնով, հան-դերձ միաբան եղբարբք, ի ՊԿԷ. (1418) թվականիսւ*

19բ *...Զպիտականուն վարդապետս* Թովմա *աղաչեմ յիշել ի տէր,... նաեւ ղհարազատն իմ* Սալթանշէն, *որ ի թվ. ՊԿԲ. (1413) փոխեցաւ ի Քրիս-տոս...*

## 462

## *ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՂՕԹԻՑ ԵՒ ՊԱՏԱՐԱԳԻ*

*Երեւան 1329*

*Ի թվին Հայոց ՊԿԸ. (1419) դրեցօ կանոնս* և զգիրքս գնեցի ի ՊԿԷ.*
31ա *(1418) յուլիս ԻԳ. (23) օր, որ էր վարգին կիրակիէնք. // զայս սակօ կա-նոնքս գրեցի յըշտապ, մի մեղադրէք ինձ, ո՜վ սուրբ հայրք, այլ յիշման արժանի ար[ա]րէք զիս, և զհայրն իմ զպարոն* Մկրտիչ, *և մայրն իմ* զՄլքէխաթուն, *և զեղբայրն իմ* զԱբրահամ, *և զքոյրն իմ* Սահրաբ-Մելիքն. *և զամենայն մերձօորս իմ յիշեցէք ի Քրիստոս ողորմայիսւ*

## 463

## *ՄԵԿՆՈՒԹԻՒՆՔ ԳՐՈՑՆ ՍՈՂՈՄՈՆԻ ԵՒ ՅՈԲԱՅ Գ Ր. ՏԱԹԵՒԱՑԻՈՅ*

*Վիեննա 599, Հ. Ոսկեան, Ցուցակ, էջ 58*

*Գրիչ՝* Պետրոս
*Վայր՝* Բերկրի

*Մանաւանդ յիշեսջիք զարի և զքաջ րաբունապետն* զԿարապետ, *որ յոյժ փափաքելի սիրով ետ գրել զսա ի վայելումն անձին իւրոյ, որոյ տէր աստուած վայելել տացէ և յետ աստեացս ելանելոյ զաստիր և մասնա-*

* *Խոսքը «Անանիա Հայոց վարդապետի ասացեալ խրատ քահանայից» նյութի մասին է, որ ընդօրինակել է հիշատակագիրը ձեռագրի 2բ—34ա էջերի լուսանցքներումւ*

կից արասցէ վարդապետացն սրբոց հանդերձ ծնողօքն իւրովք, ամէն։ Այլ և զանպիտան գծողս զՊետրոս զկործանեալ և զտարակուսեալս մեղօք յիշման արժանի արարէք, զի գրեցի զսա ի քաղաքիս Բերկրի ի թւին ՊԿԸ. (1419)։ Այլ զծնողսն իմ զՄկրտիչ քահանայն, որ ի գրել սորա զանազան պտղով կերակրէր զմեզ, որ և կերակրէր զսա տէրն ամենայնի անմահական պտղովն, ամէն։ Այլ և զեղբայրն իւր Թումայ ընդ երկար աւուրս արասցէ Քրիստոս աստուած, որ աշխատէր սա զմարմնաւոր գործն մեր, և ես աստ՝ զհոգեւորն։ Դարձեալ կրկին աղաչեմ լուսերամից դասքդ՝ յիշեսջիք զմեղուցեալ գծողս սորա և անմեղադիր լերուք սխալանաց սորա, և մեզ՝ յուսողաց և ձեզ՝ յիշողաց տացէ Քրիստոս աստուած զերկնից արքայութիւնն։

## 464

## ԵՐԳԱՐԱՆ ԿԱՄ ԳԻՐՔ ԿՑՈՐԴԻՑ

Զմմառ 90, Մ. Քէշիշեան, Ցուցակ, էջ 188.

Նորոգող՝ Թումա

Ո՜վ պատուական հարք իմ և եղբարք՝ ուսանողք և զաղափարողք այսմ նրաժշտական երգարանիս, աղաչեմ զձեզ յիշեցէք ի Քրիստոս զստացող սորին և զամենիմաստ և զհանճարեղն, ոհամեստ և զուսումնասէր քահանայն զՍտեփաննոս. և լի բերանով և ուղիղ մտաւք աստուած-ողորմի ասացէք նմա, և ծնողաց նորին Առոմ քահանային և Խաթուն-Մէլէքին, և կենակցին իւրոյ Մըսր-Մէլէքին, և այլ ամենայն արեան մերձաւորացն, վասն զի յոյժ փափագմամբ ետ նորոգել զսա ի վայելումն անձին իւրոյ, որոյ տէր աստուած վայելել տացէ զսա նմա ընդ երկայն աւուրս, ամէն։ Այլ և զամենամեղ և զանարժան սուտանուն գծագրողս Թումա և զծնաւղսն իմ յիշման արժանի արարէք միով աստուած-ողորմեայիւ, և ձեզ ողորմեսցի Քրիստոս, ամէն։ Ի ՊԿԸ. (1419) թվին նորոգեցաւ։

## 465

## ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

Երուսաղէմ 2148

Գրիչ՝ Յովանէս

260 ... Ի թուաբերութեան հայկազեան տոմարի Պ.-երորդի վաթսներորդի Ը.-երորդի (1419) եղև գրաւ այսմ աստուածաշունչ և հոգովն աստուածային բղխեալ ծաղկազարդ Հարցմանցս և զարդարեալ ամենայն առաքինութեամբ գունագեղ ընդրող զանցեալ գեղով բազմայզան մեծ րաբունին և իմաստասէր հռետորն հայկազեան ազգի Գրիգորիս՝ պետն ամենայն հանճարի, որ առեալ իմաստս բազմայզան և ազգի-ազգի աստուածաշունչ հին և նոր կտակարանաց և արտաքին իմաստասիրացն, քերթողն բազում աշխատութեամբ և երկամբք ժողովեալ զամենայն իմաստս ճարտասանից ի մի վայր, և տուեալ մանգանց եկեղեցոյ՝ ի զմայլումն և յըն-

*թերցումն և ուսումն ամենայն առաքինութեան, և պատասխանք ընդդէմ ամենայն ազգաց՝ չարաց և բարեաց։*

*Արդ և ես՝ եղկելիս անպէտս ի պիտանեաց, և վերջինս ի մանգանց եկեղեցոյ* Յովանէս *սպասաւոր բանի.*

*Որ չեմ արժան այսմ շնորհի*
*'Ի ոչ սպասաւոր յեկեղեցի,*
*Որ ըկարգս առի, աղտեղեցի,*
*Եւ յաստուծոյ աշացն ելի,*
*Այլ թախանձեմ պտէրն բարի*
*Ջառնէ որդի զիս գեհենի,*
*Զի նա քաղցր է և բարի,*
*Վերստին ողորմեսցի,*
*Որ ցանգացա այսմ տառի՝*
*Յոգէնորոգ գանձարանի,*
*Եւ ըստ կարի գծագրեցի*
*Յոյժ երկամբք և վշտալի,*
*Ի նեղ 'ւ անծուկ ժամանակի,*
*Ի յայլ և յայլ աւթագայի,*
*Զի յիշատակ սայ ինձ լիցի*
*Եւ իմ նախնեացն, որ ի կարգի,*
*Հօրն իմոյ* Ամիրբէկի,
*Եւ մօրն իմոյ* Մարթայի,
*Եւ այլ ամենայն մերձաւորի՝*
*Հանգուցելոցն և կենդանի,*
*Լիցի նոցա մասն բարի,*
*Ի յարարչէն ամենայնի։*
*Նաև աղաչեմ զձեզ սիրելիք,*
*Որք հանգիպիք այսմ կտակի՝*
*Յիշման առնէք զմեզ արժանի*
*Եւ զվերոյգրեալքդ, որ ի կարգի,*
*Զի աստուած սովոր է այսմ բանի,*
*Որ այլովք՝ այլում ողորմեսցի,*
*Զի ձեզ բան է հեշտալի*
*Եւ ձեզ պարգև յոյժ ըղձալի.*
*Եւ տէրն, որ առատն է ի տուրս ձրի՝*
*Ջեզ և մեզ ողորմեսցի,*
*Այժմ և յաւուրն յապագայի...*

## 466

### *ԺՈՂՈՎԱԾՈՒ*

*Երևան, 598*

*Հետ. ստացող՝* Գրիգոր

219բ *Ո՜վ դասք քահանայից, յորժամ ընթեռնոյք զնուծմունքս և օգտիք ինչ ի սմանէ, յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զԱստուածատուր հե-*

զաՀոգի քաՀանայ, և զկենակիցն իւր զէվատ-Մէլիք, և զորդին իւրեանց զԱզարիա դեռաբոյս սարկաւագ և զՅոհաննէս. և զՅակոբ. և զդուստր իւր ըզՎառվառ, և զփեսայն իւր զՄաթոս քաՀանան, և զՀայրն իւր՝ զփոխեալն ի Քրիստոս զՅակոբ, և զմայրն զԳուլխաթուն, ամենքդ առՀասարակ աստուած-ողորմի ասացէք սոցայ և մեղաց թողութիւն խնդրեցէք այսքան յիշատակելոցս ի սմայ։ Զի Աստուածատուր քաՀանայս շարժեցաւ ի բարեաց առաջնորդէն աստուծոյ, և ետ զխուծմունքս յիշատակ իւր անջնջելի ի նուաստ և ի վերջացեալս ամենայնի Գրիգոր սպասաւոր բանի, զի որքան ես կենդանի եմ՝ կարդամ, և երբ մեռանիմ՝ տամ ի վարդապետք որ կարդան, որ սորայ անունն Համապազ յիշեսցի ի մէջ եկեղեցոյ, և որք յիշէք՝ աստուած զձեզ յիշէ ամէն։

Թվ. ՊԿԸ. (1419)։

## 467
## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 2690

Ստացող՝ Բարսեղ
վայր՝ Եղիազարու վանք

ա

326ա Փառք... որ ետ կարողութիւն տկար անձինս Բարսեղ սոսկանուն բանի սպասաւորիս, որ ետու գրել զաստուածաշունչ տառս առաքելոց պրակիս, զոր մեկնեալ է սա Յովհաննու Ոսկեբերանին և սուրբ Հօրն Եփրեմի, և թարգմանեալ է ի յունաց ի Հայու Գրիգորի Վկայասէրի Պահլաւունոյ:

Արդ, գրեցաւ ի մեծ թուականին Հայոց ՊԿէ.* (1418), ի գաւառն երկոտասան սուրբ առաքելոցս Եղիազարու վանացն, ի յիշատակ ինձ և ծնողաց իմոց**, այլ և ուսուցչին իմոյ՝ քաջ Հռետորին Սրապիոն րաբունապետին եղիցի յիշատակ մատեանս այս։

Արդ, աղաչեմ զձեզ, ո՜վ մանկունք, յորժամ ընթեռնուք և կամ աւրինակէք զՄեկնութիւն գործոց առաքելոց, յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր զԲարսեղ վարդապետս և զամենայն ազգատոՀ[մ]սն իմ, և որք յիշէք՝ յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ։

բ

Ծաղկող և կազմող՝ Յովհաննէս

120բ Զանպիտան Հողս, զապիկար ծրողս, ո՜ պըւետիկոս, յիշեա ի Քրիստոս։

Նկարեցաւ ձեռամբ Յովհաննիսի ի ՊԿԸ. (1419) թուի***։

գ

326ա Գծագրեցաւ ձեռամբ Կարապետ**** եպիսկոպոսի և ծաղկեալ կազմեցաւ ձեռամբ մեղապարտ Յովաննիսի, ընթերցողք ասէք ողորմի։

* Թվականը քերված է և նորից է գրված։

** Երկու տող թղնված է անգրել։

*** Գրված է Եփրեմ Ասորու և Յոհան Ոսկեբերանի Համատեղ պատկերների. տակ։

**** Այստեղ Հիշատակվող Կարապետը ձեռագրի մի մասի գրիչն է։

## 468

## ՍԱՂՄՈՍԱՐԱՆ

*Երուսաղէմ 6798*

Գրիչ՝ Սիմէոն
վայր՝ Մաւրիկ անապատ

...Աստանաւր յանգ ելեալ աւարտեցաւ Հոգէլից մատեանս սուրբ մարգարէին Դաւթի ի ստոյգ և յընտիր աւրինակէ, որ է գրած ձեռամբ
375 Յովհաննէս Դատնեցոյն, և իմ առեալ գրեցի փութով//։ Գրեցաւ ձեռամբ յոգնամեղ և տխմար գրչի սոսկանուն Սիմէոնի, ի սուրբ անապատս, որ Մաւրիկ կոչի, ի դուռս սուրբ Լուսաւորչի, և սուրբ Աստուածածնին, և սուրբ Նշանի և այլ բազմահաւաք սրբոց, որ աստ հաւաքեալ կան։ Արդ, յերես անկեալ աղաչեմ զձեզ սղալանաց դրիս մի մեղադրէք, զի կարն մեր այս էր։

Արդ, որք աւկտիք ի սմանէ յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր զՍիմէ[ո]ն եպիսկոպոս, որ զկարգն ունիմ և ոչ զգործ. և որ մի բերան ողորմիս ասէ, միոյն Հարիւրապատիկ իւր ողորմեսցի աստուած, ամէնէն ամէն։ Գրեցաւ սայ ի Հայրապետութեանն տէր Պաւղոսի, և յառաջնորդութեան տէր Մկրտչի. և է իմ Հոգևոր եղբայր։ Ի թվականին Հայոց ՊԿԹ. (1420), ի մարտի ԺԸ. (18)։

## 469

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՏՈՄԱՐԻ ՅԱԿՈԲԱՅ ՂՐԻՄԵՑՒՈՅ

*Երուսաղէմ 1574*

Գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Արգելան

ա

Ի թուիս մերոյ ՊԿԹ. (1420), ի սահմի ամսոյ ի Ա. (1) հանգեաւ սուրբ ճգնաւոր վարդապետն Յովաննէս մականուն Սաղախ, որոյ յիշատակն աւրհնութեամբ եղիցի, զի էր նա բարի բնութեամբ և ամենեցուն յորդորող ի բարի ուսմունս և ի վարս առաքինութեան*։

բ

212 Այլ և յիշել աղաչեմ զիս՝ զեղկելի զծոյլ զքնափ և զմեղսասէր գծողս՝ զՄկրտիչ սոսկանուն վարդապետ, որ ի վաղուց հետէ փափագէի սուրբ դաւանութեանս, որ գծագրեցի զսա ի քարանձաւ անապատս, որ կոչի Արգելան, ի թվականիս ՊԿԹ. (1420) շրջագայութեան տումարի։

---

* Գրված է 186—187 էջերի ստորին լուսանցքում։

## 470
## ԳԱՆՁԱՐԱՆ
*Երուսաղէմ 6798*

Գրիչ՝ Երեմիա
վայր՝ ի Կեղոյ քաղաքս

ա

280բ *Գրեցաւ սուրբ // գիրքս որ կոչի* Գանձատետր, *ասացեալ է ի Հոգե-լից վարդապետացն ի խրախութիւն մանկանց եկեղեցոյ, ձեռամբ* Երեմիա *սարկաւագի, ի* Կեղո *քաղաքս, ի Թաղս որ կոչի* Բարձր մաճալա*, ի դուռն սրբոց վկայիցն՝ սուրբ Սարգսի զաւրավարի և որդոյ նորա Մարտիրոսի, և Գէորգա զաւրավա[րի], և սուրբ Յակոբա, և սուրբ Աստուածածնին. որոյ շնորհիւն եղև սկիզբն գրոցս, որ յամենայն ժամ զաւրացուցանէ զտկար և զտրտում բնութիւնս իմ ապաւինելով յիր զաւրութիւնն և ի քաղցրախաւսութիւնն, ամէն։*

*Արդ, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով, յիշեցէք զստացող սորա զ**

բ

7բ *Ո՜վ եղբար, գիրք կապած էր յորժամ զգանձս գրեցի ի փառս աստուծոյ։*

գ

52ա *Ո՜վ տէր իմ, ութ աւուր գանձն յաւրինակս չկար, զու զերորդ աւուրն գանձն ասայ***։

## 471
## ԺՈՂՈՎԱԾՈՒ
*Երուսաղէմ 1574*

Գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Արգելան

*Այլ և յիշել աղաչեմ զիս՝ զեղկելի, զծոյլ, զքնափ և զմեղսասէր գծողս* զՄկրտիչ *սուտանուն վարդապետ, որ ի վաղուց հետէ փափագէի սուրբ դաւանութեանս, որ գծագրեցի զսա ի քարանձաւ անապատս, որ կոչի* Արգելան*, ի Թվականիս ՊԿԹ. (1420) շրջագայութեան տոմարի։*

## 472
## ՃԱՇՈՑ
*Երևան 3790*

Գրիչ՝ Յովհաննէս
վայր՝ Մոխրաբերդ գիւղ

1ա *Եւ արդ ես [անպտ]ուղս ի բարեաց՝ անարժան քահանայ ///* Յոհաննէս *գրիչս տեսի զսէր [և զփա]փաք սրբասէր քահանային* Յովանիս[ի և

---

* *Շարունակությունը չի գրված։*

** *Հիշատակարաններն անթվական են, սակայն ձեռագրի 1ա էջում Մ. Տեր-Մովսիսյանը հարցականով նշանակել է ՊԿԹ—1420 թվականը։ Կարծում ենք, որ նա ինչ-որ հիմք է ունեցել այդ թվականը նշանակելիս։*

տ]կար անձամբս յանձն առի [և ամէն]ակարող ղաւրութեամբ աստուծոյ կա[տարեց]ի զսուրբ գիրքս ի դառն ժամա[նակի], որ ի ծովացեալ մեղաց մերոց /// գործոց եկն ազգի-ազգի [պատու]հաս ի վերա երկրի՝ սով, սրած[ութիւն], մահտարաժամ և յայսմ [ամի մ]արախ բազում ի յաշխար[հս և եկ]եր զամենայն բոյս դալարի և եղ[կո՞ւ]թիւն մեծ, յո-րու[մ էր] թիւս Հայոց /// նաւաս[ար]դի ամսոյ ի Ի. (20), ի [հայրա]պետութեանն տէր Դաւթի և /// ի բռնակալութեան [Ղարա]-Յուսուֆի*:

Ա[րդ], գրեցա[ւ Քրիստոս]ա[գիր մա]րգարէական և առաքել[ական] մարդ[իր]ոսական տառս [ձեռ]ամբ յոգնամեղ և անարուե[ստ գրիչ] Յոհաննիսի քահանայի, բազ[ում աշխա]տանաւք և քրտամբք։ Հոգ /// ք և յաւժընդակութեամբ և կարո[ղու]թեամբ [կատար]եցի զսուրբ գիրքս յերկիրս Բոշտունեաց, ի գեաւղս որ կոչի Մոխրաբերդ, ընդ հովանեաւ սուրբ Յովաննիսին, ի խնդրոյ Յովանէս քահանային, հօրն Սա///**

Ընդ նոսին ինձ աստուած ողորմի ասացէք՝ Ստեփանոս գրչի, և իմ ծնաւղացն, և կարդացողացն, և լսողաց առհասարակ ողորմեսցի Քրիստոս աստուած, ամէն։

## 473

### ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

Երևան 10198

Գրիչ՝ Յոհանէս Մոկացի
վայր՝ Եղիվարդ և Անձնապատ

ա

401բ Փառք ամենասուրբ երրորդութեան ... Ի թուաբերութեան Հայկազան տոմարի Պ.-երրորդի վաթսներորդի իններորդի (1420) գրեցաւ և յանկ ելեալ աւարտեցաւ մատեանս աստուածային, որ կոչի Հարցմունք, ձեռամբ յոգնամեղ և անպիտան Յոհանիսի՝ Մոկացի կոչեցեալ, ի գեղէն Ապարանից, ի գաւառէն Մամրտանից:

Արդ, եղի ի մտի հետևել ընթերցմանց և տեսի զփափագելիս ղայս զգանձս աստուածային հաւաքեալ, յոյժ ցանկացող եղէ սմայ։ Բայց տըկարութիւնս իմ բացեալ ի սմանէ զիս առնէր, ոչ կարէի ստանալ ի չքաւորութենէ, և գրելոյ անվարժ ամէնևին և անկիրթ էի։ Ապա քաջալերս առեալ ի յեղբարց, ապաւինելով իմ յամենակարողն և ի հզօրն զօրութեամբ ձեռն ի գործ արկի գրել ըստ իմում կարի, ի գաւառն Արարատեան, ի գեօղն Եղիվարդ կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սրբոյն Յակոբայ, առ ոտս Սիմէոնի րաբունապետի և քաջ հեռետորի Հայոց, որոյ թողեալ զբաղումն մարմնական, նաև զհանգիստ մարմնոյ, տուեալ զանձն ի չարչարանս, վասն յոյսոյն Քրիստոսի, անհանգիստ տքնութեամբ և անդադար ընթերցմամբ աշխատի ի գիրս աստուածային հնոյ և նորոյ կտակարանաց, այլ և նորից և արտ[ա]քնոց, առատապէս

402ա լիացուցանէ զ//մանկունս, որ առ սա հաւաքեալ կան։ /// Ը.-երորդ հա-

---

* Ղարա-Յուսուֆը մահացել է 1420 թ. նոյեմբերին, ուստի հիշատակարանը այդ թվականից հետո գրված չի կարող լինել։

** 20 տող պատռված է։

տորն անտ գրեցաւ, բայց /// մահիճս իւր հեծէ և ծնրնդկանն ի յ[ե]րկ[ու]ն[ս] ճղիցէ. և ես ոչ կարացից լռե /// ո ահումս /// ի որ եղև առհասարակ, զի քաղցրութիւն /// ի դառնութիւն փոխեցա[ւ]։ Զի ապերախտ եղար առ երախտա[ւ]ո[ր]ն և ապաշնորհք առ բազմապարգևն, միշտ մեղուցեալք առ երկայնամիտն. մինչ զի զարդար զցասմունք շարժեցաք ի մեզ. առաքեաց զմեզ ըստ մարգարէին զզօր իւր մեծ, այսինքն զմարախ և զխառինճ, որ էր կոնտն և թևաւորն, խառն ի խուռն ընդ միմեանս. զի առաջին տարին եկն թևաւորն և սերմանեաց, և ի միւս այլ տարին ի գարնան եղանակին ընդ խոտոյն ի վեր փչեաց առաւել, քան զբոյսս։ Մինչ զի լի եղև ի խորութիւն ձորոց և ի լայնութիւն դաշտաց, ի գագաթունս լեռանց. էր երկիր առաջի նորա իբրև զդրախտ փափկութեան և զկնի նորա դաշտ ապականութեան՝ ըստ մարգարէին։ Էկեր զամենայն խոտ և աշառեաց և սպառեաց զամենայն վաստակ սերմանեալ. Նուաղէն անասունք. լքեալ դատարկեցան երկրագործք ի վաստակելոյ, խցեալ կալնուին դերդ և զպատուհան ի ներքս լինելոյ նոցա։ Մինչ զի զերդս պահէին աւելելով, կամ մաղ ի վերա դնելով, և ապա հաց ի ներքս եփէին։ Ամենայն ժողովք ջուրց սպառեալ է բարեհամք դիշահոտեալ տղմային արիւնատեսիլ իբրև զեգիպտացոցն լինէր։ Ի ներքս կոտորելոյ նոցա անբնակ ի մարդոյ և յանասնոյ գեօղք լինէին, գնալով նոցա յայլ տեղօջէ յայլ։ Քակեցաւ ամենայն միաբանութիւնք, որ հացիւ և կերակրով էին շաղկապեալ։

Եւ ապա իմ եկեալ ի յերկիրս Ըռշտունեաց ի [ գերա ]հռչակ և հանդիսական անուամբ բարձրացեալ /// [մենաստ]անիս Անձնապատ կոչեցեալ։ Եւ /// դրոցս Բ. (2) այլես հատորսն կատարեցի ընդ հո[վանեաւ սուրբ] Աստուածածնին և սրբոյն Գրիգորին Լուսաւորչի, [յա]ռաջնորդութիւն հերսյետաց երկուց՝ եղբարց հարազատաց՝ Կարապետի և Յովհաննիսի սրբասնելոց աբեղայից, [որ]ոց լիցի մասն և բաժին ընդ սուրբս և ընդ սիրելիս աստուծոյ՝ ծնօղօք և արեան մերձաւորօք, ամէն։ Բայց իմ դեգերեալ աստ, առ ոտս երջանիկ րաբունապետիս Յակոբայ Ասպիսնըֆցի կոչեցեալ, վայելչատիպ, չափահասակ բարիոք ալեաւք ծաղկեալ, զուարճախաւս [առ]ատաբան [բա]նաւոր* և ուսուցանող ան[ձան]ձրոյթ** յոյժ գութ ունելով առ գրոց աշակերտսն, ես առաւել ի վերա իմ ուսուցանելով, կերակրելով, այլև զդեստիւ, որոյ եղիցի մասն և վիճակ ժառանգութեան ընդ ամենայն սրբոց ուղափառ վարդապետաց, հանդերձ սրբասնեալ կրօնաւորիւ եղբարբն իւրով Անդրեասիւ, ծնօղօք, և ամենայն արեան մերձաւորօք, աստ և ի հանդերձելումն, ամէն։

Դարձեալ աղաչեմ զամենեսեանդ, որք հանդիպիք այսմ գրոց օրինակելով կամ ընթեռնելով կամ տեսանելով, յիշեսջիք*** զիս զտառապեալս Յոհանէս, և զծ[ն]աւղսըն իմ՝ զհայրն իմ զԱբրահամ և զմայրն զԲաղդատ, և զեղբարսն իմ՝ զփոխեցեալսն առ աստուած։ Եւ ով որ ուղիղ սրտով և լի բերանով մին տէր-ողորմեայ ասասցէ, ողորմութիւն գտցէ ի

* Բառը գրված է լուսանցքում։

** Գրված է՝ «անձրոյթ»։

*** Գրված է՝ «յիշեսջիք»։

Քրիստոսէ աստուծոյն մերոյ, որում ընդ Հօր և ընդ Հոգւոյն փառք, պատիւ և իշխանութիւն այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Եւ այս երրորդ ամ է մարախս դեռ կայ*։

## 474

## ՄԱՇՏՈՑ ԵՒ ԳԱՆՁԱՐԱՆ

Վիեննա 910, Հ. Ոսկեան, Ցուցակ, էջ 495

ա

Գրիչ՝ Հայրապետ

97բ Գրեցաւ Մաշտոցս այս ի թուին Հայոց ՊՀ. (1421), ձեռամբ Հայրապետ աբեղի, ի խնդրոյ աստուածասէր և պատուական քահանա[յ]ի Վարդանի: Որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով աղաչեմ յիշել յաղաւթս ձեր, և աստուած զձեզ յիշէ, ամէնն։

բ

100բ Գրեցաւ զանձս այս ձեռամբ անիմաստ գրչիս ի վայելումն կուսակրօն աբեղի Կիրակոսի, և հարազատ եղբօր իւրոյ Վարդան քահանայի, և դեռաբոյս եղբօրորդոյ իւրոյ Խաչատրի: Տէր աստուած ընդ երկայն աւուրս արասցէ և հասուցանէ ի խորին ծերութեան, ամէն։ Արդ աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք այսմ սուրբ Մաշտոցիս տեսանելով կամ կարդալով կամ աւրինակելով, աղաչեմ յիշման արժանի առնել զստացող սորա զՎարդան քահանայն, որ ստացաւ զսա յիշատակ իւր, և ծնողաց իւրոց. և ամենայն արեան մերձաւորաց. և որ լի սրտիւ թողութիւն խնդրէ ստացողացս և աշխատողացս ի սմա, ամենագութն և ամենակարողն աստուած Յիսուս Քրիստոս թողցէ և նոցա զամենայն յանցանս իւրեանց, ամէն։ Ընդ նմին և զերախտաւոր հայրն մեր զՊետրոս կուսակրաւն աբեղայ, որ զաւրինակն շնորհեաց, շնորհեսցէ նմա տէր զաստուածային անանց պսակըն և զարդարէ հոգւով և մարմնով, ամէն։ Արդ, այս Մաշտոցս ժառանգ է Վարդան քահանայի և եղբաւր իւրոյ Խաչատրի: Յիշեցէք յաղաւթս ձեր զմայր Խաչատրին՝ Մելիքն, զի աւգնական եղեւ ի գրոցս գնել։

## 475

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Երեւան 6333 (Յ. Քարդամյան, Ցուցակ Վասպուրականի) 263

Գրիչ՝ Մկրտիչ
Վայր՝ Վան

Փառք ... որ ետ կարողութիւն տկար և տարտամ անձին փցնամատն և մեղսասէր գրչի Մկրտիչ անարհեստ և պիտականուն երիցու հասանել յաւարտ գրոցս պիտանի ... որում ցանկացեալ սիրատարփ տենչմամբ ամենագով պատուական կրօնաւորն և բարեսէր աբեղայն Ատոմ սիրով

* Հիշատակարանի կարևոր մասը՝ մորեխի նկարագրությունը ու գործած չարիքը՝ բառացի նույնությամբ կրկնել է 3 տարի հետո Թումա Սպառկերտցի գրիչը։ Նրա հիշատակարանը տե՛ս 1423-ի թվաշարքում (ԺԵ. դարի հիշատակարաններ, Ա, էջ 301—302):

ցանկացաւ այսմ աստուածարեալ գանձիս, և ստացաւ զսա յիշատակ բարի իւր, և ծնողաց իւրոց Պարիշաճին և Մարթային, նաև զմիաբանք սուրբ ուխտին՝ Կոցի սուրբ Խաչին, և սուրբ Կարապետին, և սուրբ Աստուածածնին, և սուրբ Գրիգորին, և սուրբ Հռիփսիմեանցն, զառաջնորդ ուխտին զտէր Մխիթար եպիսկոպոսն, և զԿարապետ սպասաւոր բանի, և զՄելքիսէթ կրօնաւոր, և զՄկրտիչ կրօնաւոր, և զԿարապետ կրօնաւոր, և զՍարգիս կրօնաւոր, և զՅովհաննէս կրօնաւոր, և զՍիմէոն կրօնաւորն, և զՅովաննէս կրօնաւոր, այլ և զԴաւիթ կրօնաւոր, հանդերձ ամենայն բնակչօքն, որոց տացէ տէր աստուած հանգիստ արքայութիւն արդարոց։

Արդ, գրեցաւ սա ի խնդրոյ Ատոմ աբեղային, ձեռամբ յօգնամեղ և անարհեստ դրչաց՝ Գրիգոր աբեղայի և Մկրտիչ սուտանուն երիցու և Կարապետի, ի Վան քաղաքի, յամի ՊՀԱ. թուականիս Հայոց (1422)...*

Յայսմ ամի ելեալ Շահռուխ չաղաթայն անքնին զաւրաւք և եկն ի Խլաթ և շատ պակասութիւն եղև մեզ և շատոց։ Զի զառաջին[ն] փախաւ Թուրքմանն ի Ներքին երկիրն և անտի դարձեալ եկն ի վեր Թուրքմանն բազում զօրաւք ԾՌ. (150000) ձիաւորաւք և շատ խայտառակ կոտորեցան ի չաղաթի զօրացն; ի գաւառն Վաղաշկերտոյ մերձ Բագաւանայ///**

Բայց, զի ողորմած էր Շահռուխ և քաղցր էր բարուք նորա, թոյլ ետ նոցա փախչիլ մազապուրծ, և զորս գերացն՝ ազատ արար, և դարձեալ գնաց յերկիր իւր։

Այս գրեցաւ ի ՊՀ. (1421) թուին. դարձեալ ի միւս ամի ուժ առեալ Թուրքմանն զօրացաւ, որոց գլխաւոր էր նոցա Սֆանդար որդին Ուսուֆի. որոյ առեալ բազում զաւրս հեծելոց, և գնաց ի վերայ երկրին Բաղիշո և բազում նահճիրս գործեաց անդ։ Զի էր մերձ Խլաթայ տեղի ինչ ապաստանի, զոր Աղվանից բերդ կոչէին, ուր կային ամրացեալ անդ բազմութիւն քրիստոնէից արանց և կանանց, կարգաւորաց և աշխարհականաց, զոր առեալ ազգն Թուրքի, և սուր ի վերայ եդեալ զանխնայ կոտորեաց զորս անդ էին։

Ո՜հ դառնութիւն վշտին և աղիողորմ կսկծանաց, զի յարձակեցան ի վերայ նոցա որպէս գայլս պատառողս. զոր տեսեալ նոցա զփայլումն սուսերաց և զջաւղալ աղեղացն, թուլացաւ սիրտք նոցա, տկարացաւ զաւրութիւն ի նոցա, բարձաւ աւգնութիւն ի նոցանէ, կարճեաց աւուրք կենաց նոցա, հատաւ յոյս վաղուան մնալոյ։ Զի ամենայն մարդ զանձին իւրոյ զկորուստ հասեալ տեսանէր, զի յետուստ սուրն էր անաւրինաց, և առաջի՝ ծովն խռաւղդայր։ Եւ բազումք ի սրոյ անաւրինացն քարավէժ եղեն ի բարձրութենէն ի յատակս ծովուն։ Անդ էր տեսանել զկսկիծ աղիողորմն աղետին՝ անդ էր տեսանել զփարիլ ծնողացն սրտախորով///***

---

* Հիշատակարանը տպագրված է նաև «ԺԵ. դարի հիշատակարաններ» Ա մասում, 309 համարի տակ (էջ 296—297)։ Այն քաղել ենք Փիրղալեմյանի «Նոտարք»-ից (էջ 86), ուր խիստ համառոտ էր, (սկսվում էր «պատուական կրօնաւոր» բառերից և ավարտվում թվականի մասին տվյալով)։ Բարղամյանի Ցուցակում այն ավելի ընդարձակ է. բերում ենք ամբողջությամբ։

** Մաշված է եղել։

*** Բարղամյանը ցավով հայտնում է, որ հիշատակարանից թերթ է ընկել։

## 476

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Հ. Ոսկեան, Տարօն-Տուրուբերանի վանքերը, էջ 61*

*Գնող՝* Դաւիթ եպիսկոպոս Ղլին
*վայր՝* Տարաւն, Ղազարու վանf

*Փառք ... արդ ես մեղուցեալ յամենայնի Դաւիթ եպիսկոպոս Ղլին կոչեցեալ, մինչդեռ սարկաւագ էի յերկիրս* Տարաւնոյ՝ *ի սուրբ ուխտս... վանիցն Ղազարու կոչեցեալ, ելեալ գնացի ի յերկիրն* Կիլիկիոյ՝ *ի քաղաքս* Սիս... *եկեալ գտի զԱւետարանս... ի* Տարաւդայ, *ի գիւղն* Աշոտի, *առ աշխարհակաց երէց մի և ԺԶ. (16) անգամ երթեւեկ առնելով առ նա և հազիւ կարացի գնել ի նմանէ...։ Եւ ապա եկի ի հայրենի տեղիքն իմ՝ յերկիրս* Տարաւնոյ, *ի սուրբ Առաքեալքս Ղազարու վանք կոչեցեալ՝ ի մենաստանս արեւածագ ... և եդի զԱւետարանս աստ յիշատակ հոգւոյ իմոյ և նախնեաց իմոց...*

*Արդ գրեցաւ յիշատակարանս գրոց սուրբ Աւետարանիս ի թվ. Հայոց ՊՀԱ. (1422)...։ Այլ և զառաջնորդ սուրբ Առաքելոցս՝ զտէր* Մանուէլ *եպիսկոպոս, զազգականն իմ, զհայրապետ* Աստուածատուր *յիշեցէք։*

## 477

## ՃԱՇՈՑ

*Բ. Կիւլէսէրեան, Ցուցակ Անկիւրիոյ, 161, սյուն. 802—809*

*Գրիչ՝* Սամուէլ
*վայր՝* Երուսաղէմ

ա

1266ա— *...Արդ, յայսքան և յայսպիսի բարեզարդ և մեծափառ սրբոցս գու-*
1274ա *մարս բարեխաւսս աշխարհիս, և ապաւէն ապաստանի, քաւութիւն մեղուցելոցս դիմեալ մեծաւ յուսով և փափագմամբ սրտիւ՝ և զարդարեալ ամենայն առաքինութեամբ և պատուեալ ալեօք բարի արմատոյ շառաւիղն և սրբասնունդ կրաւնաւորն և հոգեւոր հայրն իմ, որ բազում աշխատութեամբ սնոյց և ուսոյց զիս և վարժեց ի յարուեստս գրչութեան և բազում բարեաց առիթ եղեւ։ Եւ առաւել ի գալս ի սուրբ քաղաքս յ*Երուսաղէմ Յովանէս *աբեղան, ի գեղջէն որ կոչի* Մըղաշուր, *և կամեցաւ զաստուածաշունչ տառս զայս ստանալ, զոր ի վաղուց հետէ փափագեալ ցանկայր բաղձանաց լուսալրական և հոգիաբուխ մատենիս աստուծոյ։ Եւ ստացաւ զսա ի հալալ ընչից և յարդար վաստակոց զկէս գրոցս, և եդ յիշատակ ի սուրբ Լուսաւորչին գերեզմանն յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնողաց իւրոց՝ հաւրն իւրոյ* Ապաւէնին *և մաւրն իւրոյ* Հռիփսիմէ, *և եղբաւրն իւրոյ* Պատուական[ին *և*] *քուերցն իւր* Մարթային *և* Շնոֆորին, *և զաւակաց նորա և ամենայն արեան մերձաւորաց իւրեանց՝ կենդանեաց և հանգուցելոց։ Աստուած իւր վարձահատոյց լինի աստ և ի հանդե[րձե]լումն և յահեղ աւուրն, ամէն։*

Ընդ նմին յիշեցէք զհեզահոգի և քաղցրուսոյց վարժապետն իմ, որ զձայնաւորն ուսոյց՝ զՄատթէոս կուսակրօն աբեղան, որ յորդորեաց զմեզ ի գալս Երուսաղէմայ, և զինչ որ հոգւոյ և մարմնոյ ունէր՝ ի մեզ երէտ և յամենայն ժամ երախտաւոր է ի վերա մեր։

Ո՜վ մանկունք սուրբ եկեղեցոյ, որք կարդայք և վայելէք, անմոռաց յիշմամբ յիշեցէք յաղաւթս ձեր զՄատթէոս դասակալն, և զհայրն իւր զՍարգիսն, և զմայրն իւր զԳոցն, և զքոյրն իւր զՀեղինէն, և զորդին իւր զՄկրտիչ սարկաւագն, և մեղաց թողութիւն խնդրեցէք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, ամէն։

Աղաչեմ զկարդացաւղքդ սուրբ մատենիս որք հանդիպիք սմա, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զԿարապետ աբեղան զԿընդազրակցին, որ յէրուսաղէմս էր, որ այնպէս սիրեաց զմեզ իբրև զսիրուն եղբայր և գնեաց զկէս գրոցս ի Ը. (8) ֆլուրի, և եդ իւր հոգոյ յիշատակ ի սուրբ Լուսաւորչին գերեզմանն, և ծնողաց իւրոց՝ հաւրն իւրոյ Դաւթին և մաւրն իւրոյ Սուրաթ-խաթունին, և հարազատ եղբարցն իւրոց Վէբենին և Հեթումին և Ալեքսիանոսին և Մկրտչին, և հանգուցելոցն ի Քրիստոս Մառուկին և Ռատին, և քուերցն իւրոց Մարգրտին և Նուշմելիքին, և զաւակաց նոցա, և ամենայն արեան մերձաւորաց նոցա՝ կենդանեաց և հանգուցելոց ի Քրիստոս Յիսուս՝ ի տէր մեր։

Եւ արդ, ես՝ յետինս ի կրաւնաւորս և անարժանս և անիմաստս ի մանկունս եկեղեցւոյ Սամուէլ աբեղայս և անարհեստ գրիչս, հրաման առեալ ի հոգևոր հաւրէն իմմէ և ի պատուիրանադիր առաքելական բանէն, որ ասէ Յոր կոչումն կոչեցար ի նմին կացջիր...* Ոչ վասն մարմնական ինչ արդեանց և կամ ստացուածս երկրաւորս պահանջելոյ գրեցի զսա, այլ վասն սիրոյ փափագանաց աւրինակի սորա, և վասն հոգևոր հաւրն իմոյ ղրձանացն...

Այլ և գրեցաւ սա ձեռամբ Սամուէլի բազմամեղ և ախմար գրչի, և իմ անընդունակ գոլով յարուեստ գրչութեան և բազում մեղաց ցնորիւք պաշարեալ, այլ ըստ կարի մերում, զոր պարգևեաց մեզ մարդասէր հոգին բազում աշխատասիրեալ իմ ի սմա՝ գրեցի անարժան ձեռաւք իմովք յընտիր ընտիր և ի ստոյգ աւրինակէ, կենաւք տառապանաւք և բազում պանդխտութեամբ և ամենայն գոյից պակասութեամբ, ի մեծ թուականիս Հայոց ՊՀԱ. (1422), և նուեմբեր ամսոյ Է. (7), ի հայրապետութեանն տեառն տէր Պաւղոսի կաթողիկոս[ի] ամենայն Հայոց, և յեպիսկոպոսութեանն տէր Յոհաննիսի, ի բարի արմատոյն տէր Գրիգորի՝ փոխեցելոյն ի Քրիստոս, զոր աստուած ընդ երկայն աւուրս արասցէ, ամէն։ Ի յերկնահանգէտ և յաստուածակոխ քաղաքս Էրուսաղէմ և յաստուածայպահ տեղիքս...**

Եւ ես Յակոբ երէցս խուտեցի (իմա՝ ուխտեցի) Քրիստոսի գերեզմա-

* Դուրս ենք թողնում 31 տողանոց մի հատված՝ ուր գրիչն աստվածաբանական դատողություններ է անում։

** Դուրս ենք թողնում մի ընդարձակ հատված, ուր խոսում է Երուսաղեմի սրբությունների մասին։

նին, փափագ ունէի և կամեցա, թէ գնամ, նա Ղազար վարդապետն երաշխաւոր եղաւ ի մեր մէջս և յաստուծոյ՝ զԵրուսաղէմայ ճանապարհին պաշարն տուր և Տարէգիրք առ Լուսաւորչի գերեզմանին, և ես հաւանեցա վարդապետին և կամաւք պարոն Յովանիսին, և տուաք հազար և ՌՄ. (1200) դրամ Տարէգրոց գին, և առաք լաւ Տարէգիրք, զի ի ծնընդեանէն Քրիստոսի մինչեւ ի նոյն աւրն լիակատար է. ի յիշատակ իւր և ծնողաց իւրոց, այլ և յիշատակ կենակցին իւրոյ և ծնողաց իւրոյ՝ հաւր և մաւր, և յիշատակ Խաւարովին, որ է եղբայր պարոն Յովանիսին, այլ և յիշատակ պարոն Յովանիսին, և կենակցին իւրոյ, և զաւակաց իւրեանց Խաչատրին, և այլ զաւակաց նոցա. յայս կեանքս միշտ ի պայծառութիւն և յուրախութիւն հոգոյ և անուան, և յերկարութիւն ժամանակի բարեխաւս. և ի յայն կեանքն ի հանգիստ և ի բարեխաւսութիւն ամենայն ննջեցելոց իւրեանց, այլ և ի շինութիւն տանց և ի յաջողումն վաստակոց և յաղատութիւն ամենայն փորձանաց հոգոյ և մարմնոյ, ամէն։

Եւ բոլոր ազգաւս մեր ///·

Բ

189ա Յիշեցէք զստացող սորա՝ զԿարապետ աբեղան, որ այս աւր մեզ պըըլէ ուտեցոյց։

Գ

Յաւրինակն չէր նշանած, խալտեցա, մի՛ մեղ դնել։

Դ

939ա Զորեքշաբթի կարդա և զԹղթիս կոկողն՝ զՊետրոս աբեղան յիշեա։

Ե

1265բ Աւրհնեալ է աստուած յամենայն ժամ, ամէն։ Աստուծով սկսայ ապրիլ ԻԷ. (27), և կատարեցի նուեմբեր Է. (7), ի փառս աստուծոյ։

## 478

## ԱՒԵՏԱՐԱՆ

Revue des Etudes Arméniennes, t. VII, fasc. 1, p. 96—97

Վաճառող՝ Սիմէոն աբեղայ

422ա Զվերջին ստացաւղ սուրբ Աւետարանիս զպարոն Խութլուպէկն յիւր հալալ արդեանցն գնեաց զսուրբ Աւետարանս ի Սիմէոն աբ[եղ]էս, ի յիշատակ իւրեանն, և իւր կողակցին Մելիք-Խաթունին, և իւրեանց ծնողացն։ Որ ոք հանդիպի սուրբ Աւետարանիս կարդալով կամ աւրինակելով յիշման առնէք արժանի զվերոյգրեալ պարոն Խութլուպէկն և զՏաճական վարդապետն, որ զայս սուրբ Աւետարանս մեզ եբեր, և աստուած զձեզ յիշէ։

Ի թվին ՊՀԱ. (1422) ես Սիմէոն աբեղաս՝ եղբայր Յովանիսի, ծախեցի սուրբ Աւետարանս պարոն Խութլուպէկին:

**479**

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երուսաղէմ 1248*

Գրիչ՝ Թումայ Կաֆայեցի
վայր՝ Եւստաթէի վանք

1009ա ... Առ ստացումն աստուածային տառից և ամենալիր ծաղկաւետ բուրաստանիս՝ նախ Ոսկեփորիկ գրոցս, զոր արարեալ է յեռամեծէ Գրիգոր վարդապետէ, երկրորդ՝ Քաղուածոյ Եսայեայ մարգարէին՝ նոր հարմարեալ աշակերտի նորին Գրիգորի՝ Յովհաննէս վարդապետի, մականուն Կօլոտկանց կոչեցեալ, երրորդ՝ Քաղուածոյ աւետարանին Ղուկայ՝ աշխատասիրութեամբ Մաթէոս վարդապետին, և սակաւ ինչ Յոհաննու աւետարանին, այլ և մասն ինչ ի Տումարէն, հաւաքեալ ճգնաւոր վարդապետին՝ Յակոբայ Ղրիմացոյ:

Արդ, վերջինս ի պարս բանասիրաց անձանց Թումայ Կաֆայեցի ցանկացող եղէ այսքան վերոյասացեալ գրանցդ, վասն որոյ յօժարութիւն սրտիս մոռանալ եւ զտգիտութիւն արհեստիս, զի ոչ գիտէի կատարեալ քարտողարութիւն, և համարձակեցայ առ ի գծագրել զաստուածային բուրաստանս, յիշատակ բարեաց և քաւիչ մեղաց, լուծիչ յանցանաց և
1009բ արբուցանող զջուրն կենաց, պասքե//լոց անձանց մանկանց եկեղեցոյ:

Արդ, եղև գրաւ սորայ ի վանս Եւստաթէի սուրբ Առաքելոյս, առ ոտս քաջ րաբունապետիս մերոյ Մխիթարայ, և յառաջնորդութեան տանս Սիսականի տէրՍտեփանոսի, որդոյ պարոն Սմպատին, որ և յայսմ ամի գնացեալ ի տունն Վրաց՝ առ մայրն իւր, և փոխեցաւ առ Քրիստոս և բաղում անմխիթար սուգ եթող մեզ, և յիշխանութեանն պարոն Պեշքենին՝ եղբօր նորին, և Յովանէս փակակալին, որ է այժմ տեղապահ և աթոռակալ նորին տէր Ստեփանոսին Սիւնեաց վիճակին, ի թուականութեան Հայոց ՊՀԱ. (1422), ձեռամբ անիմաստ և համբակ գրչի Թումայի:

Արդ, որք հանդիպիք այսմ տառիս, յիշեսջիք ի մաքրափայլ և յարժանաւոր յաղօթս ձեր զանարժան և զփանաքի գրիչս զԹումայ, և զհայրն իմ զՍիմէոն քահանայ, և զմայրն իմ զՍային, և զքեռին իմ զՅովանէս քահանայ՝ զփոխեցեալն առ Քրիստոս։ Այլ և զաւրիորդ մանկունքն իմ, զպատանեակն իմ զՅոհանէս, և զեղբայրն իմ զՄելիտոն, որ պանդխտամահ եղեն և յաւտար շիրմի թաղեցան։ Այլ և զխօճայ Նուրատինն՝ զնոր հանգուցեալն առ Քրիստոս երիտասարդ հասակաւ, զորդի խաւճայ Մղնիասին և զեղբայր էմինատինին, և զայլ ամենայն ազգայինս մեր՝ հանդերձ ծնողօք մերովք, որ ոչ կենդանի գիտեմք և ոչ հանգուցեալ։

Յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր և աստուած ձեզ յիշողացդ և մեզ յիշելոցս, առհասարակ, ողորմեսցի, ամէն։ Նաև զհոգևոր հայրն իմ զլոյժ երախտաւորն առ հոգևորն և առ մարմնաւորն, զվարժապետն իմ և զյուսուցիչն, զանհաս երաժիշտն և զքաղցրաձայն փիլիսոփայն զՄնծպարոն սարկաւագն և զուսուցիչն մանկանց Սիոնի, զոր և միոյն հարի-

բապատիկ և Հազարապատիկ տացէ նմայ Քրիստոս աստուած զերկնից արքայութիւն, զպսակն անթառամ և զկեանսն յաւիտենականս*։

## 480
## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 3708

ա

9ա Զսուրբ քահանայքն՝ զվաղջանեալսն ի Քրիստոս զտէր Պաւղոսն, և զտէր Մարտիրոսն. և զտէր Առաքեալն, և զՈվանէսն, և զՇնաճար-Տիկին և զԴաւիթն, և զԹամամն, և զՀերիf-Տիկինն, և զՍիրայմարգն, և զՍաճակն, և զՄարթայ-Խաթունն, և Թումանշէն, և աստուած զձեզ յիշէ իւր սուրբ արքայութեան, ամէն։ Անպատճառ ծախեցաք, որ ոչ ով դաւի չանէ։ Գրեցաւ ի թվ. ՊՀԲ. (1423), մարտի Ա. (1)։

Զ[տէ]ր Կիրակոսն, և զիւր մայրն Խութլուն, և Մէր Խաթունն, ես Մկրտիչ՝ Մարտիրոս իրիցու թոռ, ծախեցի Անտոն իրիցին զսուրբ Աւետարանս անպատճառ, որ ոչ ով դաւի չառնէ։

Ո՞վ սուրբ քահանայք, վասն սիրոյն Քրիստոսի ամէն աւաք հինգշաբթէ մէկ փոխ Աւետարանի, Շարականի, Քրիստոս- որդւոյ արժանի արարէք, զմեզ և զմեր ննջեցեալսն ի ձեր սուրբ աղաւթքդ յիշեցէք, և աստուած զձեզ յիշէ իւր սուրբ արքայութեան, ամէն։ Եւ զԱնտոն էրէցս յիշեցէք ի Քրիստոս։

բ

Այլ գիտութիւն լինի, որ ես Եղիսաբետս, և իմ որդի Մկրտիչս, և իմ եղբայր Դանէլս, և իմ քոյրս Հէրիf-Տիկինս այս պատճառավս ծախեցաք զաստուածաշունչ սուրբ Աւետարանս տէր Անտոնին, որ աստից ի Ռ (1000) տարի այլ ոչինչ մարդ դաւի չանէ, ով որ աւելի կամ պակաս առնէ կամ յայս խաւսիցս յետ գայ, յայս աստուածայշունչ սուրբ Աւետարանի շնորհացս և ի Քրիստոս աստուածութենէ որոշի և բաժանեալ լինի։ Այլ աստուած ի մէջն վկայ, և ես Աբրահամ աբեղէս միջնորդ և վկայ եմ աստուծով։

Թվ. ՊՀԲ. (1423)։

## 481
## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 9552

Գրիչ՝ Յովհաննէս
վայր՝ Հերմոնի վանք

Փառք ... որ հասոյց զտկարս և անպիտան սպասաւոր բանի ի կատարումն աստուածախաւս Աւետարանիս։ Զի ես՝ պիտակ խնդրող բանի Յովանէս մեղսաներկ անձն, մեծաւ յուսով և ծերացեալ անձամբ կամաւքն աստուծոյ սկսայ և շնորհաւք և ողորմութեամբ նորին կատարեցի

275ա ի վանքս Հերմոնի. // առ դրունս սուրբ Լուսաւորչիս և սուրբ Յակոբայ

* Սույն ձողովածուի Ա. մասում, քաղելով Մ. Տեր-Մովսիսյանի Ցուցակից, տպագրել ենք այս հիշատակարանից 6 տող։

կենաց բարեխօսիս․ Ի դառն և յանձուկ ժամանակիս, որ Շահռուխն թագաւորեաց Թաւրիզոյ աշխարհիս, և ղբաղումս ի քրիստոնէից կոտորեաց սրով, և զանբաւս գերեաց, և անչափ նեղութիւնս հասոյց քահանայից և ամենայն եկեղեցականաց։

Արդ, աղաչեմ զամենեսին՝ զհանդիպողքդ սուրբ Աւետարանիս՝ յիշել զմեզ միով տէր-ողորմի ասելով. և որ մեզ ողորմի ասէ, աստուած նմա ողորմեսցի յիւրն գալստեան։ Եւ սղա[լա]նացն, որ գտանի ի սմայ՝ թողութիւն շնորհեցէք, և տէր աստուած թողութիւն արասցէ ամենայն հոգւոյ և մարմն[ոյ] սղա[լա]նաց ձերոց, զի աչքս լաւ տեսող չէր։

Գրեցաւ ի թվականիս Հայոց յութ հարիւր և վացուն (իմա՝ եւթանասուն)* և երկու (1423). յիշողքդ մեր յիշեսցին ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ՝ աւրհնեալոյն յաւիտեանս, ամէն։

## 482

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4819

Գրիչ՝ Ատոմ

304բ ….Արդ, գրեցաւ յիշատակարանս սուրբ Աւետարանիս ի դրան սուրբ Աստուածածնիս, որ կոչի Քաւ և քաւարան, ձեռամբ յոգնամեղ՝ և անարհեստ գրչի, ի թվին ՊՀԲ. (1423) հայկազեան սեռիս տումարի, ի հայրապետութեան տեառն Դաւթի, ի թագաւորութեան Հայոց ազգիս պարոյնաց, ի խնդրոյ աստուածասէր և պատուական կրաւնաւորի Յովանէս քահա-
305ա ն[այ]ի, որ գնեաց զսուրբ Աւետարանս ի հալալ վաստակոց իւրոց … // յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնաւղաց իւրոց Յորդանանին և մաւրս Զմուրթին, և եղբաւրն Մարգարին, և երկու որդոցն Մկրտչին և Ծերուն քահանային, և դեռաբոյս թոռացն Կարապետին և այլոցն ամենայնի… ի ՅԾ. (350) թանկայ, ի ձեռաց անաւրինաց…

Եւ ինքն ամենագութն աստուած, որ հատուցանողն է ամենեցուն՝ ձեղ ողորմեսցի և… այնոցիկ, որ աւգնական եղեն ի գին Աւետարանիս…

306բ Եւ առաւել աղաչեմ յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զմիամիտ աղաւնին և զողջախոհ տատրակն՝ զարհեպիսկոպոս զտէր Վարդան՝ առաջնորդ վանացս, և զեղբայրս իմ զտէր Զաքարայս՝ զկազմաւղ սուրբ Աւետարանիս, և զայլ միեղէն մանկունս, որ կան ժողովեալ ի դուռս սուրբ եկեղ[եց]ոյս…

307ա Եւ ես նղկելի գրիչս Ատոմ անուն աբեղայ, խոցեալս ի սատանայէ, անպիտան և անարժանս ի կարգաւորաց…

---

* Թվականի տասնավորը սխալ է գրված. Սքանդարի գահ բարձրանալու և թագավորության առաջին տարիների մասին հիշատակարանը գրված կարող է լինել ոչ թե 1413, այլ 1423 թվականին։ Այդպես էլ տեղադրել ենք այս հիշատակարանից քաղված և Մ. Տեր-Մովսիսյանի Ցուցակից մեզ ծանոթ երկտողը՝ «ԺԵ դարի հիշատակարաններ» Ա մասում (էջ 304)։

## 483

### ՈՍԿԵՓՈՐԻԿ

Երևան 9474

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Կամուրջ գյուղ

134բ *Փառք... որ ետ կարողութիւն միզսամած և տկար ոգւոյ* Կարապետի
*դրել զպակասութիւն Ագաղրոնիս, յամի ՊՀԳ. (1424) թւականիս մերում։*
*Որ գրեցաւ ի խնդրոյ հաւատարիմ և աստուածապաշտ տանուտրոջն* Ստե-
փանոսի, *որ ստացաւ զսա ի հալալ արդեանց իւրոց, յիշատակ իւր, և բա-*
*րի ծնօղաց իւրոց՝* Անտոնին *և* Մելիքայ–խաթունին, *և գեռաբոյս տղայոցն*
Մկրտչին *և* Կարապետին, *և հանիկ հօրն* Մոմեղնին, *և հօրեղբարցն* Լևո-
նին՝ *փոխեցելոյն առ [աստուած, և]ւ* Լուսերեսուն, *իւրոց տղայո[ցն]*
Տերունին *և* Գորգուն, *և այլ [արեա]ն մերձաւորացն։ Արդ, դր[րեցաւ ի*
135ա *գ]եօղս* Կամուրջ, *ընդ [հովանեաւ սրբոյ] Աստուածածնին յիշա//տակ*
Ստեփանոսին, *և ծնօղաց նորին։*
*Արդ, աղաչեմ զամենեսեան որք հանգիպիք Ոսկեփորիս յիշեցէք ի*
*սուրբ յաղօթս ձեր զպա[ր]ոն* Ստեփանոսն, *և զծնողսն իւր զ*Անտոն *և*
*զ*Մելիքայն, *և զամենամեղ գրծողըս։*

## 484

### ԳԱՆՁԱՐԱՆ — ՏԱՂԱՐԱՆ

Revue des Etudes Arméniennes, t. VII, fasc. 1, p. 96—97

Գրիչ՝ Յոհանէս

ա

530 *...Արդ անգ ելեալ աւարտեցաւ գիրքս որ կոչի Գանձարանս և Տաղա-*
*րանս ձեռամբ մեղապարտ և անիմաստ գրչի* Յոհանիսի *սուտանուն քա-*
*հանայի և որ յիշէքդ զմեզ սրտի մտաւք՝ նայ դուք յիշեալ լիջիք ի Քրիս-*
*տոսէ միւս անգամ գալուստն, ամէն։*
*Գրեցաւ ի թվ. ՊՀԳ. (1424), ի փառս Քրիստոսի աստուծոյ մերոյ,*
*ամէն։*

Բ

470 *Եւ զիս զանպիտան գրչակս զ*Յոհանէս *սուտանուն քահանայն աղա-*
*չեմ զձեզ, ո՜վ ընթերցողք, յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր, և աստու-*
*ած ամենայնի յիշման արժանի առնէ զձեզ ի յի[ւ]ր միւս անգամ գա-*
*լուստն, ամէն։*
*Գրեցաւ ՊՀԳ. (1424)։*

## 485

## ՇԱՐԱԿՆՈՑ

*Երևան 8599*

*Գրիչ՝* Յակոբ
*Վայր՝* Բերկրի Եղեվանք

ա

326բ ... *Արդ, գրեցաւ եղանակաւոր տառս ի թվին Հայոց մեծաց ՊՀԳ.*
*(1424), ձեռամբ ախմար և.սխալագիր, խելայեղ անպիտան գրողի՝ սու-*
*տանուն կրամաւորի* Յակոբի, *ի խնդրոյ պատուական և սրբասէր կրաւ-*
*նաւորի* Յովհաննէսի, *յիշատակ բարի նմա եղիցի։ Ի նահանգիս* Տարբե-
րունի, *որ այժմ* Բերկրի *կոչի, ի սուրբ և ի հրեշտակաձէմ յանապատս*
Եղեվանք, *ընդ հովանեաւ Նախավկայ սուրբ Ստեփանոսի և սրբոց Վար-*
*դանացս արեամբ ներկեալ բազմութեան նշխարացս, ի յառաջնորդութե-*
*ան բարեմիտ* Մելիքսեթ *վարդապետի։*

*Արդ, աղաչեմ զմանկունսդ սուրբ եկեղեցոյ որք աւգտիք ի սմանէ*
*ուսանելով, յիշեսջիք ի բարին Քրիստոս և ցաւակցաբար մեղաց մերոց*
*թողութիւն խնդրեցէք ի նմանէ՝ ի Քրիստոսէ* Յովանէս *մաքրամիտ աբե-*
327ա *ղային, և ծն//աւղաց իւրոց՝ սրբասէր* Ներսէս *քահանայի, և մայրն* Արզում-
մելիքի, *և խանկայ իւրոյ* Խութլու Մելիքի, *և եղբարց իւրոց* Թումա *քա-*
*հանայի՝ [կոչ]եցելոյ ի Քրիստոս,* Վարդանի, Ստեփաննոսի *և* Կիրակոսի.
*և քւերցն* Թանմելիքի, Խաթունմելիքի *և* Մամախաթունի, Մեսրովպի.
Մկրտչի, *և* Կարապետին, *և* Մարտիրոսի...

*Ընդ նոսին աղաչեմ յիշել ի տէր և զիս՝ զանիմաստ գրիչս զՅակոբ.*
*և զծնաւղսն իմ, նաև զհոգևոր որդեակս իմ զ*Գրիգոր *գպիր, որ բազում*
*աշխատանք ունի ի տուն տալ խազելոյն, զոր և տէր աստուած պահեսցէ*
*զսա յամենայն որոգայթից, ամէն։*

*Դարձեալ աղաչեմ յիշել զմիաբանք սուրբ ուխտիս՝ զմեծ և զփոքր*
*զքահանայ և զսարկաւագունքս պահել ի կամս իւր։*

բ

158ա *Զսրտէ խոցեալ և զմեղաւք լցեալ* Յակոբ *յիշեա ի տէր։*

գ

*Ծաղկող՝* Մելիքզատա

308ա *Զանպիտանս և զանարժանս,*
*Ի մեղասէր անձն անթորանս,*
*Քաղցեալ հոգիս ի տարատանս,*
*Բարցի քարամբ ի յապաստանս,*
*Բայց դրուակի հասս յորձանս,*
*Մեղաւք մեռեալ կրիցապանս,*
Մելիքզատա *անմերձ յարգանս*
*Ծաղկող գրոյս ի զարդարանս,*
Յովանիսի *գոլ շահարանս,*
*Յիշատակի միշտ յաւիտեանս**։

* *Գրված է կարմիր թանաքով։ Ծաղկողի լուսանցազարդերն ու նկարները ուշագրավ են և ինքնատիպ։*

## 486

## ՔԱՐՈԶՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ ԵՒ ԱՅԼ ՆԻՒԹԵՐ

Երուսաղէմ 1617

1425 ... Գրեցաւ գիրքս, որ կոչի ասացուածք ձեռամբ մեղաւոր և անարժան Խաչատուր աբեղի, յաղագս խնդրոյ պարոն պարոնաց պարոն Դաւթի, զոր տէր աստուած վայել տա իւրենն, ամէն։ Գրիս պակասութեանն մի մեղադրէք, զի կար մեր այսչափ էր. ղթվական Հայոց ՊՀԴ. (1425),
1426 մեհեկի ԺԸ. (18) գրեցաւ գիրքս ի դրան սուրբ Աստուածածնին, // որ կոչի Քոշտենց վանք, ի գաւառն ի Համշինու, հայրապետութեանն տէր Պաւղոսի, թագաւորութեանն Սքանտար պակին, պարոնութեանն պարոն Դաւթին, յեպիսկոպոսութեանն տէր Սարգսին։ Տէր աստուած՝ Յիսուս Քրիստոս ողորմեա գրողաց, կարդացողաց և լսողաց, ամէն*։

## 487

## ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 8366

Գրիչ՝ Գրիգոր Խլաթեցի
Վայր՝ Ցիպնայ վանք

212ա Փառք ամենասուրբ երրորդութեան... որ ետ կարողութիւն տկար ոգ[ի մա]տնադեգ գրչի հասան[ել յաւա]րտ սորին, որ գրեցաւ [ի խնդրոյ] Աստուածատուր քահանայի, ձեռամբ Գր[իգորի] պիտակ անուն բանի խըն[դրողի ի] վանս Ցիպնայ, ընդ հովանե[աւ ամե]նազօր սուրբ նշանի ի Պ ///** թըւականութեանս Հայի ///

## 488

## ԳԱՆՁԱՐԱՆ

Վենետիկ (Հ. Ոսկեան, Վասպուրականի, Վանի վանքերը, մաս Բ, էջ 388)

Վայր՝ Քաջբերունիք

[Գրեցաւ] ի յերկիրս Քաջբերունեաց, ի դուռն կմբեթայարկ տաճարիս որ յանուն սուրբ Աստուածածնին, առ ոտս առաջնորդի ուխտիս քաջ հռետորի Կարապետի եւ տէր Ստեփանոսի դիտապետի, ի դառն ժամանակի յորում Վասպուրական աւերեալ եղեւ ի Սքանտարէ...***

---

* Այս հիշատակարանի համառոտությունը, քաղելով Մ. Տեր-Մովսիսյանի ցուցակից, տպագրել ենք սույն ժողովածուի Ա. մասում (տե՛ս էջ 344—345. հիշատակարան № 364)։
** Պահպանվել է թվականի միայն հարյուրավորը (Պ—800). Նկատի ունենալով այն հանգամանքը, որ գրված է Գր. Խլաթեցու կողմից՝ տեղադրում ենք պայմանականորեն 1425-ի թվաշարքում (Գր. Խլաթեցու նահատակության թվականը), չնայած այն ջարադրված պետք է լինի դրանից մի-երկու տասնամյակ առաջ։
*** Ձեռագիրն ընդօրինակված է 1425 թվականին։

## 489

### ԾԱՇՈՑ

*Բ. Կիւլէսէրեան, Ցուցակ Անկիւրիոյ, 162, սյուն. 812—813*

*Ա մասի գրիչ՝* Յոհաննէս*
*վայր՝* Կաֆա

ա

470բ—471ա *Յայս հրաշափառ մեծի տանիս*
*Քեզ երանի, որ հանդիպիս*
*Լուսափթիթ բուրաստանիս,*
*Հոգիաբուխ սրբոյ տառիս։*
*Երբ լի սրտանց ծոմր կրկնես,*
*Սիրով հոգւոյդ յաստուած հըպիս,*
*Յայնժամ յիշեա դու զեղկելիս՝*
*Զ*Յոհաննէս *անարժան՝ գծողս գրիս,*
*Զմեղաւք ծածկեալս ի մէջ տղմիս։*

*Գրեցաւ և կատարեցաւ ի թվականութեան Հայոց ՊՀԴ. (1425), ի մայիս ամսոյ ԻԹ. (29) օրն։*

Բ

378ա—379ա *Գ. (3) կիրակին կարդա, որ է բարեկենդան սուրբ Յակովբին, և զմեղաւոր գրիչս յիշեցէք՝ զ*Յոհաննէս *երէցս, և աստուած զձեզ յիշէ։*

## 490

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Բրիտ. թանգ. 11 or. 5626, Ֆ. Կոնիբեր, Ցուցակ, էջ 18*

*Յամի Պ.-երորդի ՀԵ. թվականիս Հայոց (1426) վերստին նորոգեցաւ սուրբ Աւետարանս, որ էր անկեալ ի ձեռս անաւրինաց...*

*Ըստացող* Աղանն, *և ուր ծնօղսն՝ հայրն հանգուցեալ* Վարդանն *և մայր իւր* Հօ[ռ]ոմսիմէն, *և զկենակիցն իւր* Մարա[ն], *և զդուստրն իւր* Յեղսաբետն, *և զզ[ո]ւրն իւր* Հռոմին, *զախբոր///*

## 491

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐԳՈՑ ԵՐԳՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ

*Երուսաղէմ 1225*

*Ընթերցող՝* Թովմա Մեծոփեցի
*վայր՝* Մեծոփայ վանք

ա

8 *Գիրքս է* Մեծոփա *վանաց սուրբ Աստուածածնին, լաւ պահօղն և ընթերցաւղն աւրհնի յաստուծոյ և յամենայն սրբոց։*

---

* *Ձեռագրի Բ մասն ընդօրինակել է Սարգիս վարդապետը 1427 թվականին։*

9 *Ընդ առաջին աշխատողացն յիշել աղաչեմ զպիտ[ակ] անուն վարդապետս* Թովմա:

Բ

13 Մեծոփայ *վանաց սուրբ Աստուածածնին է գիրքս և* Թովմա *վարդապետին, լաւ պահօղն և ընթերցօղն աւրհնի ի յաստուծոյ։*

Գ

392—
393 *Աղաչեմ զսպասաւորքդ բանի փոքր մի ճաշակեա ի քաղցրութենէ սորին և ապա գիտասցես զճաշակ քաղցրութեան հոգևոր պտղին, զի ես ճաշակեցի և ոչ գըտի այլ ճաշակ՝ համեմատ սըմին։ ՊՀԵ. (1426) թվ. դասիւ կարդացի հետ Վարդանայ մեկնչին, և զարմանալի տեսայ զմիտք սորին։ Քրիստոս աստուած ողորմի* Թովմա *վարդապետին և իւր ծնողացն, ամէն**։

## 492

## *ՍԱՂՄՈՍԱՐԱՆ*

*Երուսաղեմ 1983*

Գրիչ՝ Ղազարոս Ղրիմեցի
վայր՝ Երուսաղէմ

315 *... Արդ, ես՝ բազում մեղաւք լցեալս և խխայթեալս և չարաւով լցեալ մեռեալ ոգի* Ղազարոս Ղրիմեցի, *որ տխեղծ մատամբ գծագրեցի զսա հրամանաւ երիցս երանեալ ազնազգեաց եպիսկոպոսի տէր* Մելքիսեթի. *որ զնիւթն շնորհեաց, և ես՝ եղկելիս գծագրեցի։ Եւ եդաք զսա յիշատակ մեզ և ծնողաց մերոց // ի սուրբ Փրկիչս։ Եւ աղաչեմ երես անկեալ զսուրբ սպասաւորքդ սուրբ Փրկչիդ՝ խնամով պահել զսա, և անյապաղ զաստուած-ողորմին ասել, զի վասն այս յուսոյս գրեցի, և որ լի սրտիւ թողութիւն մեղաց մերոց խնդրեսցէ ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, թողցէ Քրիստոս աստուած զիւր սխալանքն, ամէն։*

*Այլ և աղաչեմ յիշել ի բարի զհոգևոր եղբարքն մեր* զՄարուգէն, *որ զթուղթն խազեց, և* զՄկրտիչն, *որ կրեց, և զփակակալն* զՅովաննէս *և* զԿարապետն, *որ բանիւ յորդորեցին, և զկոկող նիւթիս* զՆերսէս, *որ զկէս կոկելէն էառ, և զկէսն եթող։ Նաև շնորհող աւրինակին* Ստեփանոս *վարդապետն յիշեցէք ի բարի մասին, աղաչեմ։ Գրեցաւ գիրքս ի յ*Երուսաղէմ*՝ ի սուրբ Փրկիչս, ի թվ. ՊՀԵ. (1426)***։

---

* *Հիշատակարանները գրված են նշված էջերի ստորին լուսանցքների վրա։*

** *Սույն ժողովածուի Ա. մասում, 1426-ի թվաշարքում (էջ 353, հիշատակարան № 371), Մ. Տեր-Մովսիսյանի Ցուցակից քաղելով, տպագրել ենք նաև Գրիգոր Մակվեցու մի արժեքավոր հիշատակարանը, որ պահպանվել է Երուսաղէմի մատենադարանի № 1582 ձեռագրում։ Այդ հրատարակության մեջ առկա վրիպակներից կարևորները նշում ենք ստորև. թվականը ՊՀԵ.-ի փոխարեն՝ պետք է լինի ՊՀԷ. (1428). տպագրված է «բերդն Մակուայ», պետք է լինի՝ «գղեակն Մակուայ», տպագրված է «նոցա ի յԱրտազ». պետք է լինի «նոցա և երարձ իշխանութիւն նոցա ի յԱրտազ». տպագրված է «ափաթ», պետք է լինի՝ «կերպիւ անիաթ»։*

## 493

### ԾԱՇՈՑ

Բ. Կիւլէսէրեան, Ցուցակ Անթիլիասի, 162, սյուն. 813—814

Բ մասի գրիչ
վայր՝ Կաֆա

942ա ...Արդ, գրաւ գրութեան սորայ եղեւ ի թուաբերութեանս Հայոց ՊՀԶ. (1427) ամի՝ կշիռ կոչեցելոյ, աշխարհիս Լազարաց, յերկիրս Հոնաց, ի մէջ մայրաքաղաքաց, ի մենաստանս մեծի Կաֆայի աստուածապահ քաղաքի, ընդ հովանեաւ մեծի ճգնաւորի սրբոյն Անտոնի, առ ոտս սրբասիրի մեծի րաբունոյ Սարգսի երջանիկ վարդապետի, ի ժամանակս նեղ և խառնակ, զոր տէր աստուած խաղաղացուցեալ հանդարտեցուսցէ ողորմութեամբն իւր, և ի հայրապետութեանն սրբազանի իմաստուն և խոհեմ հանճարեղի՝ մեծի տեառն Պաւղոսի մարդասիրի, և ի յանեպիսկոպոսութեան Կաֆայի, և ի նուիրականութեանն սրբասնեալ և կուսակրաւն եպիսկոպոսին տէր Յովսէփին, և հաւատարիմ սպասաւորի տեառն իւրում և ճշմարտասէր կրաւնաւորի տէր Մելքիսէթ նվիրակի, ձեռամբ նախասացեալ երջանիկ Սարգսի վարդապետի, զի ըզկէս Ծաշոցիս մինչ ի յարութիւնն ///.

## 494

### ՀԱԻԱՔԱԾՈՅ

Կիւլեսերեան, Ցուցակ Ղալաթիոյ 248, էջ 1190—1191

Գրիչ՝ Գրիգոր Կուլեցի

166 Եւ զանպիտան գրիչս յիշեա՝ զԳրիգոր սուտանուն կրօնաւորս, որ մականուամբ Կուլեցի կոչիմ, և զծնօղսն իմ զԷլմէլիք և զԳօհար, և զեղբայրն զպարոն Գորգ, և զու յիշեալ լիցիս ի Քրիստոս[**]։

## 495

### ԺՈՂՈՎԱԾՈՒ ՔԱՐՈԶԻՑ

Երևան 734

Գրիչ՝ Յակոբ Համշենցի

197բ Յակոբ ծառայ անպիտանի,
Որ յիշելոյ չ[եմ արժանի],
Զի եմ բնական ես Համշենցի,
Որ բնաւ բարութիւն ///
Ի հայոց մեծ Թուականի

---

* Ա մասն ընդօրինակվել է 1425 թվականին։

** Ձեռագրի 122 էջում, հավանաբար գրչի կողմից, բերված են ժամանակագրական զանազան զուգահեռներ. դրանցից է նաև «Ի ծննդեան Քրիստոսի մինչև առ մեզ, որ թուական ՊՀԶ. (1427) էջ» համվածը։ Ըստ այդմ ձեռագիրը, ուստի և հիշատակարանը՝ գրված է 1427 թվականին։

Ի ՊՀ. և Է.-երրորդի (1428)
Էկի ի վանքս այս [Հրա]շալի
Տեսի զտէրն իմ ցանկալի,
Զի վաղուց ///*

## 496

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 9450

Գերութիւնից ազատող՝ Գրիգոր և Բարսեղ

172բ Ի թվականիս Հայոց ՊԾՀԹ. (1430) Ջահանշէն, որ գլոռու բերդն Հեսարեց սուրբ Աւետարանս գերի անկօ։ Ես տէր Գրիգորս և Բարսեղ աբեղայս կանգնեցաք Ռ. (1000) դեկան տուաք, թափեցաք ի գերութենէ. յիշատակ մեզ և ծրնօղաց մերոց, ամէն։

## 497

### ՙԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 10062

310բ Ի թվին ՊՀԹ. (1430), որ գնացաք ի սուրբ քաղաքն ի յԵրուսաղէմ: Ընդ նմին և զՅովաննէս մղտասին յիշեսջիք յաղաւթս ձեր, որ ըստացաւ զսա ի յարդար ընչից իւրոց՝ զանձ հոգո իւրո, և յիշատակ ծնաւղաց իւրոց, և ի վայելումն որդոյ իւրոյ Աբրահամ դպրի, և աստուած յիշաղացդ ողորմեսցի, և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։

## 498

### ՃԱՇՈՑ

Բ. Կիւլէսէրեան,
Ցուցակ Անկիւրիոյ, 162, սյուն. 814—815

Յիշատակագիր՝ Կարապետ Երէց
վայր՝ Ախքերման

943— ...Արդ, ի թվաբերութեան Հայոց ի մեծ տաւմարիս ի ՊԾՁ. (1431)
944 ամի բերեալ եղեւ գիրքս այս ի վաճառ ի յաշխարհս Օլախաց, ի քաղաքս որ կոչի Ախքերման:

Արդ, բարէպաշտ և աստուածասէր տանուտէրս այս պարոն Կարապետս ցանկացօղ եղեւ այս աստուածաշունչ մատենիս և գնէ զսայ իւր հալալ արդեանցն ՌՄ. (1200) սպ[իտակ], և դրել է զսայ յիշատակ ի սուրբ Թորոս եկեղեցի՝ յիշատակ իւր հոգուն, և իւր ծնողացն պարոն պապին Թարէլէ, և իւր հօրն պարոն Սարգսին, և իւր հօրեղբօրն պարոն Թո-

---

* Սկսվում է էջի ստորին լուսանցքից (ուր գրված է երկու տող) և շարունակվում մյուս լուսանցքներով՝ շուրջանակի։ Վերջին տողերը մնացել են կազմի տակ և հազիվ մի քանի տառ է կարդացվում։

ռոսին, և իւր խաթուն մօրն Մամուշին, և իւր խաթուն կողակցին Կատարինէ, և իւր եղբօրն Յովանէսին, իւր որդուն պարոն Սիմոնին, զոր տղայ հասակօ փոխեցօ առ Քրիստոս, և միւս որդոյն Յօլիշին, և իւր խաթուն գստերացն յԱզիզին և Էտիլ-Մելիքին, և իւր քուրոյն Նինիֆորին, և Բաւրմբաւսին, Մարտիրոսին, Գալուստին, և Յետնկարին, և ամենայն արեան մերձօորաց ողորմի Քրիստոս, ամէն:

Այլ աղաչեմք ի խորոց սրտէ, քանզի տարին Բ. (2) անգամ պարտին քահանայքն ընթեռնուլ զյիշատակ սուրբ գրոցս ի մէջ ստենի եկեղեցոյ, զի հոգի այնոցիկ, որ յիշատակեն սուրբ գրոցս, հանգիցեն միով տէրողորմայիւ Եւ դուք՝ աստուածասէր ժողովուրդք, մի զլանայք յիշել լի բերանով և կատարելով հօատով զյիշատակ սուրբ գրոցս, զպարոն Կարապետն, և զիւր ծնաւղսն, և զեղբարսն, և զիւր ղօակսն, և զամենայն զիւր արեան մերձօորս, զկենդանիս և հանգուցեալսն յիշել ի տէր, ամէն։

Այլ և յիշեցելոցս և յիշողացս,
Եւ զյիշատակս ընթերցողաց,
Եւ բարեսէր ունկնդրողաց,
Ընդ քանքարին շնորհողաց՝
Ժառանգեսցուք պարգևս բարեաց,
Առ հասարակ տեառնէն բարեաց,
Արժանասցուք մասին շնորհաց
Հանուրց գոյից և ի մասանց,
Այժմ և յանկէտ ժամանակաց, ամէն։

Կրկին անկամ կու աղաչեմ, Առ հասարակ զեղբարս ամէն, Բամեալ սրտիվ պաղատելով. Աղաչեցէք զտէր ողորմած Պարգևս բարեաց պարգևելով, զբիւր քանքար պարտսն թողլով։ Ես Կարապետս և անարժան սուտանուն եմ քահանայ, Տէրն ողորմի մեղօ[ո]րիս և թողութիւն շնորհեսցէ, Երանի թէ ինձ այդ լինէր՝ Բաբունին ինձ ողորմէր՝ Երէց որդի զիս անուանէր Ցնծալ ի յարկսն և ուրախացնէր։

## 499
## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

Երուսաղէմ 569
Ն. Պողարեան. Ցուցակ Ե. էջ. III

Ի ՊՁ. (1431) թվին Աւքման պէկն էառ զՄէրտին:

## 500
## ՈՍԿԵՓՈՐԻԿ

Վիեննա 29 Յ. Տաշեան, Ցուցակ, էջ 171

Վայր՝ Մեծոփա վանք

Ի չքնաղ մատենիս հին օրինակն գրեալ էր ի թուականութեանս Հայկոց ՊՁ. (1431)-ին ի վանքս Մեծոփա, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ վարդապետաց գերեզմանացն*։

*Ձեռագիրն ընդօրինակված է 1746 թ. Կ. Պոլսում։ Հիշատակարանը գրված է «Այլ խրատ հասարակ ազգականաց հոգեկանաց և օրինակացս բաժնից հետո։

## 501

### ՄԱՇՏՈՑ

*Երևան 4265*

**ա**

Գրիչ՝ Թաւրոս

133ա *Փառք ... կատարեցաւ հոգիաքնար սուրբ մատեանս մեծի աթոռոյս սուրբ Փրկչիս և սուրբ Երևմանս և սուրբ Նշանիս աթոռոյս, և ի հայրապետութեան աթոռակալէս ի տէր Սարգէս, և գծող գրիս ղուստանուն աբեղաս Թաւրոսս. յիշեսցիք զՁրֆինն, և զիւր որդին զԱռաֆել սարկաւագըն, որ զաւրինակն շնորհեց մեզ։*

133բ *Դարձեալ և զմեր նախնին, և զհայրն մեր զՄկրտիչն // քահանան, և զիւր ամուսին զՊոլղան յիշեցէք ի տէր և մեղաց թողութիւն խնդրեցէք, ամէն։*

*Արդ, գրեցաք զՄաշտոցս ի ցուրտ և ի դառն ժամանակ, որ և թանաքն մսեցաւ և ոչ եղաւ ղիտոյ, որ ոչ մեղադրէք՝ թէ սղալ լենա, ծեր եմ։*

*Գրեցաւ Մաշտոցս ի կարդ և ի պատիւ ամենայն հաւատացելոց մանգանց եկեղեցոյ մաւր մերոյ Սիոնի, ի խնդրոյ զաւակի իմոյ Յովանէս սարկաւագի, ի վայելումն անձին իւրոյ և զաւակաց իւրոց։ Յիշեսջիք և զիւր ծնաւղն զԽաս-Խաթունն և մեղաց թողութիւն խնդրեցէք։*

*Արդ, որք աւգտիք ի սմանէ ուսմամբ կամ աւրինակելով յիշեցէք և մեղաց թողութիւն խնդրեցէք մեզ և ձեզ ամենեցունն։ Գրեցաւ հոգիայբընարս ի թվին ՇՃ. և ՁԱ. (1432), ձեռամբ անարժան գրչի Թորոսի:*

**բ**

15բ *Արդ, աղաչեմ զամենեսեան որք պատահէք սմա և կարդայք յիշեցէք ի Քրիստոս զանարժան գրիչս Թաւրոսս, և ծնաւղսն իմ, և այլն, որ ի յետև յառաջ գրեցաք։ Ես իմով տգիտութեամբս ժողովեցի զաւրինակ[ն]երն աստի և անտի և հաւաքեցի ի մի տուփ, և ձմեռն էր և ցուրտ, և թանաքն մսեցաւ, և այսչափ էր կար մեր։*

*Գրեց[աւ] թվին ՊՃՁԱ. (1432)։*

## 502

### ՄԱՇՏՈՑ

*Նիկոմեդիա 17. Ստ. Յովակիմեան, Ցուցակ (անտիպ), էջ 93—94*

Գրիչ՝ Յովանէս

վայր՝ Կիրակոս վանք

*Փառք ... որ արժանի արար զանարժանս տխեղծ մատամբ և տարտամ ոգով հասանել յաւարտ աստուածարեալ և հոգիազարդ բուրաստանի Մաշտոց կոչեցեալ, զոր յուսալով յողորմածութիւն բարերարին սկզբմանըս սորա և աւարտման արժանաւորեցաւ։ Արդ գրեցաւ սա ձեռամբ անմար և թարմատար գրչի Յովանէս պիտականուն աբեղայի, ի վանս սուրբ Կիրակոս, ի թուաբերութեանս հայկազեանս տոհմի Պ. և Ձ. և ի մինն (1432)։ Արդ որք պատահիք ամենապէտ տառիս տեսութեամբ կամ ուսմամբ կամ գաղափարելով, յիշման արժանի արարէք զտառապեալ անձն*

և զգծագրող սորայ և զծնաւղսն իմ զԱթանաս և զՄեծխաթուն և զամենայն երախտաւորսն անձին իմոյ ըստ հոգւոյ և ըստ մարմնոյ, զի տէր հատուսցէ ամենեցուն առատապէս ուսուցանողացն իմ և կերակրողացն և զգեցուցանողացն, նաև ամենայն յիշեցողացդ զմեզ, որք բարի խնդրեցէք անձին իմոյ յաստուծոյ զփոխարէն առնու///*

## 503

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երուսաղէմ 1948*

Գրիչ՝ Մարգարէ,
վայր՝ Աւաf վանՀ

227բ ... Արդ աղաչեմ զամենեսեան որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զփանաք և տխմար գրիչս զՄարգարէ սուտանուն աբեղայս, և զհոգևոր եղբայրն իմ՝ մաքրամիտ և զսրբասնեալ կուսակրաւն աբեղայն զտէր Կիրակոս, /// երախտիք ունի ի վերայ մեր, նա և յորդորեաց, մխիթարեաց և աւգնական եղև յամենայն նիւթ... Ընդ նմին և զծնաւղքն իմ զփոխեցեալսն առ Քրիստոս՝ զՍարգիս քահանայ, զհայրն իմ զԱւետիքն, և զմայրն իմ զԱնան, և զեղբայրն իմ զՄարգարէն և զՔրիստափորն: Յիշեսջիք զհոգևոր ուսուցիչն իմ զԱրիստակէս րաբունապետն, որ յայսմ ամի փոխեցաւ առ Քրիստոս։

Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուաքերութիւն Հայոց ի ՊՁԱ. (1432), ի վանքս որ կոչի Աւաf, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Կարապետիս, ի լաւ և ընտիր աւրինակէ, որ գրած էր յԵրուսաղէմ քաղաքի։

## 504

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 6901*

ա

137ա Զփանաքի գրիչս յիշեցէք ի տէր աստուած, ո՞վ սուրբ ընթերցողք սուրբ կտակիս, և աստուած զձեզ յիշէ։

Թվ. ՊՁԱ. (1432)**։

Բ

69ա Տես զբան տ///ում, որ գրիչն /// կորեա[լ///***

---

* Մի թերթ ընկած է։ Այս հիշատակարանից երկու տող քաղել ենք Գ. Փիրղալեմյանի «Նօտարք»-ից (տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 432)։ Ներկայացնում ենք համեմատաբար լրիվը։

** Թվականը գրված է 76ա էջի վրա։

*** Գրված է լուսանցքի վրա. ձեռագրի նորոգման ժամանակ լուսանցքը՝ վերից վար հատել են, դանակին զոհ է գնացել նաև այս հիշատակագրության բառերի մի մասը։

## 505
## ԺՈՂՈՎԱԾՈՒ
*Երուսաղէմ 1631*

*Գրիչ՝* Թադէոս Ավրամենց
*վայր՝* Կաֆա

541 *Ի թվին Հայոց ՊՁԲ. (1433) ամի և ի մարտի ամսոյ Ժ. (10) աւարտեցաւ լուծմունք Պէրի արմէնիասին, որ է իմաստ մեծի և անյաղթ փիլիսոփայի սրբոյն* Դաւթա *քաջ իմաստասիրի, և լուծեալ ի մեծ հռետորէ* Յոհաննէսէ Որոտնեցոյ, *և ի լուսաւոր րաբունապետէ* Գրիգորէ *եռամեծէ։ Եւ զմնացեալս ղայս ի յիմաստասիրացն գրոց խնդրեալ մեր ի բարեսէր վարդապետէն մեր՝ ի տէր* Սարգիս *քաջ րաբունոյ, առ ի կարդալ, և նա խոնարհեալ յաղաչանս մեր աշխատեցաւ ընդ մեզ և կարդացաք՝ սկսեալ ի դեկտեմբեր ամսոյն, աւար[տե]ցաք /// կորովն՝ երկու աւուրն՝ մին ճառ [կարգա]լով, յայնպէս օր ըստ օրէ գրելով հող ի մտի [ու]նէի մի ինչ բան դժուար[ի]մաց, ծածուկ և անյայտ մնացէ ի սմ[ա]նէ, վասն որոյ՝ զոր դիւրիմաց արուեստի և բացատելով ի միմեանց գրեցի և ի լուսան/// ի դասէն իմացեալս գրոշ[մեցի] ի վանս [մենա]ստանի մեծի սրբոյն Անտոնի անապատականի, առընթեր մեծի մայրաքաղաքի* Կաֆայի, *յաշխարհս Հոնաց՝* Գազարիա *կոչեցելոյ։ [Ե]ւ ի հայրապետութեանն տեառն* Կոստանդընեա, *[ե]ւ եպիսկոպոսութեանն նահանգիս մեր* Կաֆայի *և* Ղրըմի՝ *տէր* Կարապետի *սրբասիրի, և ի վարդապետութեանն տէր* Սարգիս *քաջ հռետորի՝ երջանիկ րաբունապետի՝ մերոյ վարժապետի։*

*Արդ, որք պատահիք սմա կարդալով և կամ օրինակելով՝ յիշեսջիք սրտի մտօք ի Քրիստոս ի բարի մասին զանարժանս՝* Թադէոս Ավրամենց *կոչեց[եալ]ոյ և ծ[նաւ]ղսն իմ։*

## 506
## ԱՒԵՏԱՐԱՆ
*Երևան 7305*

*Վաճառքի գիր*

209բ *Յանուն աստուծոյ ես* Մարտիրոսս Սբրայճամու* *որդի,* Թադէոս *քահանային եղբաւրորդի։ Յորժամ վաղճանեցաւ հորեղբայրն իմ* Թադէոս *քահանայն, ես՝* Մարտիրոսս *զնորայ Աւետարանս ծախեցի* Յակոբ *քահանային Ո. (600) դկն.(դեկան), գնին առի մին կով ու մին եզն, ու մատաղ արարի* Թադէոս *քահանային։ Ով ոք որ յայսմ հետէ դաւի առնէ այս Աւետարանիս, կամ յիմ ազգէ կամ յաւտարաց ՅԺԸ. հայրապետացն անիծած եղիցի և մասն զՅուդային և զխաչահանուացն և զԿայէնին առցէ։* Մուսուլման Մուստամ-Փաշին *վկայութեամբ,* Խատկարին *վկայութեամբ,* Սատաթիարին՝ Սապատինին *որդոյն վկայութեամբ,* Կարապետ *քահանային,* Մկրտիչ *քահանային,* Յոհանէս *քահանային՝ սոցա վկայութեամբ. և ես՝* Բարսեղ *քահանայս, որ զգիրս գրեցի՝ վկայ եմ։ Այլ և տանուտերացս վկայութեամբ՝* Տիրատրին *վկայութեամբ,* Խութլուպէկին *վկայութեամբ,*

* *Այս անունը գրված է խնամքով քերված մի այլ անվան փոխարեն, այլ ձեռագրով։*

Գրիգորին վկայութեամբ, Ամսաչանին վկայութեամբ, Պապիկին վկայու-
թեամբ, աստուծոյ վկայութեամբ. մեք ամենեքեան վկայ եմք առաջի աս-
210ա տուծոյ, որ այս Աւետարանս գնեց Յակոբ // քահանայն ի Մարտիրոսէն.
ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ ծնողաց իւրոց։

Եւ ես Յակոբս՝ անարժան քահանայս, յերեսս անկեալ աղաչեմ զա-
մենեսեան, որք հանդիպիք այս սուրբ աստուածային և անապական
գանձարանիս կարդալով կամ աւրինակելով, յիշեսջիք ի բոլոր սրտէ զծը-
նողսն իմ՝ զհայրն իմ զՊէսիկ և զմայրն իմ զՆազ, և զեղբարսն իմ զՎար-
դան, և զՍեալան, զՄէլիքշայ, զԱրթուխշայ, և զքոյրն իմ զՎախախ, և
զբազմերախտ հայրն իմ ըստ հոգոյ և զվարդապետն՝ զՄկրտիչ քահա-
նայն, և զամենայն աստուածային աւրհնութեանց արժանաւոր մայր վար-
պետին իմ զՍամար, վասն զի բազում և անչափ երախտիս ունին ի վե-
րայ մեր, և զայլ ամենայն արեան մերձաւորսն իմ զոր կան այժմ, և որոց
գնացեալ են առ աստուած, զքեռին իմ զՄարտիրոս, և զմեծ մամն իմ
զՍիրամարգ։ Յորժամ յաղաւթս կայցէք յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս
ձեր զվերոյասացեալքս ի սմա, եւ զիս զՅակոբ քահանայս աղաչեմ յի-
շատակել առաջի անմահ գառինն, ո՜վ սուրբ ընթերձողք, վասն զի բա-
զում տենչանաւք և բազում փափա[գա]նաւք ըստացայ զսուրբ Աւետա-
րանս յիշատակ ինձ և ծնողաց իմոց, զոր վերոյ գրեցաք...
210բ ... ի թվ. ՊՁԲ.* (1433)...

507

## ԽԱՇՈՅ

Երուսաղէմ 3232

Գրիչ՝ Տիրատուր
վայր՝ Երուսաղէմ

1078 ... Գրեցաւ սա ձեռամբ մեղապարտ և անարհեստ գրչի Տիրատրոյ
ի թվականութեանս Հայոց ՊՁԲ. (1433), ի նոյեմբեր ԻԸ. (28), ի սուրբ
քաղաքս Երուսաղէմ, ընդ հովանեաւ սուրբ Փրկչիս, որ կափարիճ վէմն է
1079 և Քրիստոսի բանտն, ի հայրապետութեան տեառն տէր Կոստան//դեա
Հայոց կաթուղիկոսի, և ի սուրբ քաղաքիս Երուսաղէմայ եպիսկոպոսու-
թեանն տէր Մարտիրոսի, և ի փակակալութեան սուրբ Յակոբայ Գրիգո-
րիսի անյաղթ փիլիսոփայի և անհաս ձայնաւորի, և նորին ձեռնասնունդ
աշակերտի փոքր եկեղեցապանի Յովանէս կուսակրաւն աբեղայի, և սուրբ
Յարութեան լուսարարին՝ Մարուգէ ճգնազգեաց աբեղային, և այլ մանկա-
գոյն վճիտամիտ աբեղային՝ Թորոսին, որ ի Յարութենէն մինչ ի վարդա-
վառն գրեց, աստուած պահէ զինքն, ամէն։

* Թվականի տասնավորը (Ձ.) գրված է քերված մի այլ թվի վրա, այլ թանաքով և ոչ գրագետ գծագրությամբ. կարելի է կարդալ նաև Կ. (60). այդ դեպքում հիշատակարանի գրության թվականը կլինի 1413։

## 508
### ՃԱՇՈՑ
Երևան 4656

Հետ. ստացող՝ Ուլուպէկ
վայր՝ Դրիմ

506ա Զվերջին ստացաւղ սուրբ գրոցս զպարոն Ուլուպէկն, որ ստացաւ
զսա ի հալալ վաստակոց իւրոց և ետ յիշատակ ի սուրբ Սարգիս յեկե-
ղեցիս յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց, և եղբարց, հօրն իւրոյ պարոն
Շահինշային, և մօրն Ջումլայ-խաթունին, և եղբարց իւրոց՝ Տակալպէկին
506բ և Նիկողո//սին...
Ի թուիս Հայոց ՊՁԲ. (1433) և դեկտեմբեր ամսոյ ի Ա. (1) գնեց
պարոն Ուլուպէկն զսուրբ մատեանս Ռ. (1000) սպիտակ ի յԱւետիքէն,
և է այս Աւետիքս եղբայր Յովել աբեղին, և սոքա որդիք Յովանէսին, և
նա Սարգիս քահանային, և են սոքա յազգէ Նատերանց:

## 509
### ԱՒԵՏԱՐԱՆ
Արմաշ 145, Յ. Թօփճեան, Ցուցակ, էջ 287

Գրիչ՝ Յովհաննէս

157ա ...Ողորմեա ստացողի սորա Թոմա քահանաին և ինձ մեղաւորիս
Յովհաննիս, ի թվ. ՊՃԲ. (1433) գրեցաւ։ Զստացող սորայ և զսուրբ Աւե-
տարանիս զԹումայ քահանայ, որ ստացաւ զայս ի հալալ արդեանց իւրոյ
յիշատակ իւր, և զծնաւղաց իւրոց՝ հաւրն իւր Ամիրին և մաւրն իւր Ալա-
մին, և հաւրեղբայրն իւր զՏիրատուր, և զոնքանչն իւր զԱրզուփանն, և
զամուսինն իւր զԱզիզ, ...ի վայելումն որդեաց իւրոց Ղուկաս սարկաւա-
գին և Սուքիասին և Վրթանեսին:

## 510
### ԱՒԵՏԱՐԱՆ
Հ. Յ. Քոսեան, Ցուցակ Կարնոյ գիւղերու 33, ՀԱ, 1964, էջ 331—332

Գրիչ՝ Առաքել

Արդ գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ անարհեստ գրչի Առաքել
իրիցու ի լաւ և յընտիր աւրինակէ ի յամուր դղեակս կոչեցեալ անուն//*
քաղաք, ընդ հովանեաւ սրբոյն Ստ[եփ]անոսի նախավկայի։ Աղաչեմ
զամենեսին որք հանդիպիք սմայ, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր
զիս, և զծնողսն իմ, և զուսուցիչն իմ զԹադէոս կրաւնաւորն, և որ յիշէ
յիշեալ լիցի ի Քրիստոսէ։ Նաև զարժանին յիշման զստացող սուրբ Աւե-
տարանիս զԿարապետ ժամայկոչն, և զծնողսն սորին Աւագ Պարոն և
զՄինան, և զամուսին սորին զԵրանումին, և զաւակ սորին զՏիրապետն,
և զփեսայ սորին զՆորահատն, և զքոյր սորին զԳարանէն, և զաւակ սո-
ցին զՄըկրտիչն, և զայլ արեան մերձաւորք սորին յիշեսջիք յաղաւթս ձեր։
Այլ և զԿարապետ ժամայկոչն, որ եռայփափաք սրտիւ ետ գրել զսայ ի

* Ջնջված է։

հալալ վաստակոց իւրոց՝ զաւակ ի Սիոնի և ընտանի յԵրուսաղէմ. և ետ զսայ ի յաստուածապահ գիւղն Քսանթան, ի դուռն սուրբ Աստուածածնին և սուրբ Կաթողիկէին, և մի ոք իշխեսցէ հանել զսայ ի սուրբ եկեղեցեացս յիմոց կամ յաւտարաց, զի մի պատժեսցի, իսկ կատարողք աղաչանաց մերոց աւրհնիք յԱստուծոյ և ի մէ[ ն ]ջ ամէն, եղիցի, եղիցի։

Գրեցաւ ի թվ. ՊՁԳ. (1434)։

## 511

## ԼՈՒՍՄՈՒՆՔ ՃԱՌԻՑ ԳՐԻԳՈՐԻ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆԻ

Վիեննա 367, Յ. Տաշեան, Ցուցակ, էջ 755

Լրացնող՝ Թովմա Մեծոփեցի
վայր՝ Մեծոփայ վանք

Զնուաստ վարդապետս Թովմա յիշել աղաչեմ, որ յետոյ գտայ և գրեցի* ի գիրս՝ ՊՁԳ. (1434) թվականիս, ի սուրբ ուխտս Աստուածածնի, որ Մեծոփայ վերաձայնի։

## 512

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երուսաղէմ 2784

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ Գամաղիէլի վանք

ա

645 ... Արդ, կատարեցաւ աստուածախօս և տիեզերաքարոզ Աւետարանս ի խնդրոյ աստուածասէր և հաւատարիմ քահանային և ճգնաւորին և մահդասին Ֆխրաւին, և յվերջին անուանն Կարապետին, յիշատակ իւրն, և կողակցին Մաոչանին, և իւրեանց զաւակացն՝ Ե. (5) որդոցն և Գ. (3) դստերացն, և ծնաւղացն՝ հաւրն Թանաւին և մաւն Աղաւնին, զի որք որ կարդան կամ օրինակեն աստուած-ողորմի ասեն լի բերանով և բոլոր սրտով, և որ ասէ զաստուած-ողորմին և աստուած իւրն ողորմեսցի. ամէն։ Ընդ սորոցս և անսուրբս յիշատակի, զի ողորմածն և ինձ ողորմեսցի, ամէն։ Որ Խաչատուր ծաղկողս կոչի, և իւր տեսոյն արժան լիցի, ամէն։

Սայ՝ Կարապետ քահանայս և ճգնաւորս, զհինկ որդին փեսայացուսնուց և զերէք դստերքն հարսնացու, և ի յորդոցն և ի դստերացն զիրկեցաւ, և անմխիթար մնաց, և ամենեքեան տարաժամ մահուամբ և տղահասակաւ փոխեցաւ առ Քրիստոս՝ յոյսն ամենեցուն, դասաւորեցան ի դաս կուսանացն և արդարոցն։ Եւ այս ճգնաւոր քահանայս լալոտ աչօք, և բեկեալ սրտիւ, և տրտում կենաւք, և ցաւագնեալ անձամբ աշխատէր ի յորդոցն և ի դստերացն զրկեալ, և ոչ մնաց մի մխիթարիչ սրտի իւրոյ։ Այլ ի յաստուած ապաւինելով և վառեալ հաւատովն և սիրով. որ ի

* Հ. Տաշյանը հայտնում է, որ Թ. Մեծոփեցին «կտոր մ'ավելցուցել է» հերձվածողների մոլորությունների մասին Գր. Աստուածաբանի «Քրիստոս ծնեալ» ճառի լուծմունքին։ Հիշատակագրությունը հենց այդ հավելվածին է վերաբերում։

Քրիստոս Յիսուս, ետ գրել զսուրբ Աւետարանս յիշատակ իւրն, և ծնաւղաց իւրոց՝ հաւրն Թանօին և մօրն Արղունին, և հինգ որդոցն, և երեք դստերացն, և ամենայն արեան մերձաւորացն, զոր տէր աստուածն Յիսուս Քրիստոս ընկալցի վսայ որպէս զպատարագն Հաբէլին և զԱբրահամուն և զայլ ամենայն սրբոցն, և որպէս հայեցաւ ի Հաբէլ և ի պատարագ նորայ, նոյնպէս հայեսցի հաճեսցի, ընդ մահդասի Ֆխրաւն, և ի կողակիցն՝ ի Մոջանն, և ի զաւակս իւրոց, և ի ծնաւղսն, ամէն։

646 Այս ճգնաւոր քահանայս կարի խիստ քաջ էր ի յառաքինութիւն և ի սրբութիւն, զի յորմէ հետէ փափագանաւք ընթացաւ ի տեսանել զգերեզման փրկչին և զտեղիք տնաւրէնութեանն Քրիստոսի աստուծոյ մերոյ, հեռացաւ ի մսոյ և ի զանազան մրգոց, ժամանակ ինչ բոլ ընթացաւ, քառասուն ամ ի միասին բնակեցան մահդասին ու կինն՝ իբրև զեղբայր գքոյր։ Այլ և բազում բարութիւնս ժողովէին իւրոց աշխատանաւք, և զամենայն աղքատաց կերակրէին և բաշխէին, և ինքեանք ոչինչ ճաշակէին, զհրամանք տեառն կատարէին, թէ՝ Քաղցեալ և ետուք ինչ ուտել, ծարաւեցի և արբուցէք ինձ, և այլն, որ ի կարգին։ Եւ ի միտ ածեալ զիրականն բանն, թէ՝ Որ ոչ առնու զխաչ իւր և գայ զհետ իմ, չէ ինձ արժանի։ Այլ և ի վերջին ժամանակս ստացան զսուրբ Աւետարանս ի հալալ արգեանց իւրոց, յիշելով զբանն՝ Երանի, որ ունիցի զաւակ ի Սիոն և ընդանեակք յԵրուսաղէմ, յիշատակ իւրն, և կողակցին՝ Մոջանին, և ծնաւղացն, և ուստերացն, և դստերացն, և ամենայն արեան մերձաւորացն։

Եւ արդ, ես՝ խաւարեալս մեղաւք և ունայնս ի բարեաց գործոց, հողս և մոխիրս, և անարժան ի ծառայս աստուծոյ, սպասաւոր բանի անուն Յովանէս յորջորջեալ, հոգով կորացեալ և մտաւք մոլորեալ, ըստ իմում տկարութեանս գրեցի զսուրբ Աւետարանս ի վանքս, որ կոչի Գամաղիէլ, ընդ հովանեաւ առաքելոյս Գամաղէլի, որ յեօթանասնիցն, և ամենայն սրբոց, ու.ք աստ՝ շուրջ զմեօք բանակեալ կան, ի յառաջնորդութիւն վանացս Ստեփանոս եպիսկոպոսի և այլ միաբան կրաւնաւորացս և սարկաւագացս, զոր տէր աստուած պահեսցէ զսոսա խաղաղական կենաւք, ամէն։

Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուականութեանս Հայոց ՊՁԳ. (1434), ի ղանութիւն անբաւ չարին Թուրքի Սքանդարի, և մերոյս քուրթ ամիրիս Դայուդի: Որ և կրկին աղաչեմ զձեզ՝ զկարդացողքդ և զլսողքդ. յիշել ի մաքրափայլ յաղաւթս ձեր զհայրն իմ զՎարդան, և զմայրն իմ զԴիլշատ. և զեղբայրն իմ զՀայրապետ՝ զհանգուցեալն ի Քրիստոս։ Եւ աստուած-ողորմի ասացէք, և որ ասէ զաստուած-ողորմին և աստուած իւրն ողորմեսցի. ամէն։

647 Դարձեալ, կրկին անգամ աղաչեմ զձեզ սրբասէր մանկունք Սիոնի. յիշեցէք յաղաւթս ձեր զՇարաֆն՝ զեղբայր Ֆխրային, և զորդին զԽդրշէն. և զթոռներն զԵգդինբախշն և զԳուճարն և զՇախփաշէն, և զորդիք Եգդինբախշին՝ զԱմի[ր]ազիզն և զՖխրաւն, և զամենայն արեան մերձաւորսն յիշեցէք և աստուած-ողորմի ասացէք, և աստուած, որ առատն է ի տուրս բարեաց, ձեզ և մեզ ողորմեսցի յիւր արքայութիւն, ամէն։

Յիշեցէք ի Քրիստոս զՍուլտանն, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

Բ

231 ... Կարապետ քահանայն կամեցաւ ստանալ զաստուածախաւս սուրբ Աւետարանս, զոր ի վաղուց հետէ փափաքեալ ցանկայր այսմ լուսալրական և հոգիաբուխ մատենիս՝ յիշատակ իւրն, և ծնօղացն՝ հայրն Թամօխն և մաւրն, և զաւակին, զոր տղա հասակաւ փոխեցաւ առ Քրիստոս և մեզ սուգ եթող անմխիթարելի։

Քո ծերացեալ հաւր Ֆխրաւխս
Տուն և դարպաս և սիւն սրտիս,
Շուտով գնացեր յերկրիս երկնից
Եւ մեզ թողեր միշտ ի սգիս։
Արդ, զի՞նչ լինիմ ողորմելիս.
Տարէկուսած յաստուորիս,
Որ չունիմ մի ոք մխիթար սրտիս,
Միշտ և հանապազ ողբա գերիս,
Որքան եմ յայս աշխարհիս։
Փառք փրկչին, արարողին,
Մեծին Յոքա նահապետին,
Աւրհնեալ անունն իւր սքանչելին.
292 Այժմ ի ներկայս ու յապագաին
Եւ յանսպառ յաւիտենին, ամէ[ն]։

Թաք* արքայական, պարծանք անձին իմոյ դու բարձար, ա՜յ,
Թել ոսկի դու շարունակ պսակ գլխոյս իմ վերացար, [ա՜յ]
Գինդ ոսկի՝ ծաղիկ ունգանս՝ ի յականջէս իմ շորթեցար, ա՜յ,
Կամար այտից մարգարտաշար՝ գոյն երեսաց իմ քաշեցար, ա՜յ,
Մանեակ ոսկի շողշողունակ՝ ի պարանոցէս իմ բեկեցար, ա՜յ
Մահիկ մաղշա լուսնանման՝ ի ծոցոյս իմ հեռացար, ա՜յ,
Մեհեանդ անուր բազկիս երակշարժան իմ խոնչեցար, ա՜յ,
Մատանի բիւրեղ ակամբ դու ի սիրոյ սրտէս ոստար, ա՜յ,
Կամարակապ գաւտի միջացս՝ իմ զաւրութիւն իմ ծախեցար, ա՜յ,
Ասեղնալից ոսկեթելտուն ալամ զարդիս կողոպտեցար, ա՜յ,
Ծիրանի արտաճուրակ դու ի թիկանցս այս աւրաք, ա՜յ,
Արտաբերական լապտեր բանի ձայն իմ վստահ նուաճեցար, ա՜յ, .
Դրախտ ծառոց բուրաստանաց՝ հողմով մահու թառամեցար, ա՜յ,
Գարնան ծաղիկ աւետաբեր՝ շողեալ ամբով թաւթափեցար, ա՜յ,
Աւդապարիկ հաւ սիրակամ՝ յանուշ ձայնէդ դադարեցար, ա՜յ,
Լուսին բոլոր լուսով լցեալ՝ թուխ-թուխ ամբով դու ծածկեցար ա՜յ,
Աստղապայծառ մէջ աստեղաց՝ յանկարծակի ի վայր անկար, [ա՜յ],
Ամբ անձրևով ղուարթացար՝ սաստիկ հողմով դու ցրուեցար, [ա՜յ],
Աղբեւր ջրոյ անուշահամ՝ ծարաւելոյս ցամաքեցար, [ա՜յ],
Ծառ կանաչ պտղով լցար՝ սաստիկ կարկտիւ թաւթափեցար, [ա՜յ],
Պարծանք մանկանց քաղցրաբարբառ՝ աստուածասէր և հուրլնկալ,
ա՜յ,
Ձո՞ր գովասան ասեմ քեզ յար, դու աստուծոյ ես կամարար, [ա՜յ].

* Ձեռագրում՝ Թաքս (՜)։

Ծաղկող՝ Խաչատուր

Գ

11 Զխաչատուր ծաղկող յիշեայ*։

Դ

44 Ես անպիտանս յամենայնի
Եւ ծովածուփ նաւս ի յերկրի,
Որ զկարգս առի 'ւ անտես թողի,
Փոշիմանեալ կամ առաջի,
Գըլուխ ի կոր 'ւ ամաւթով լի
Զքեզ աղաչեմ զուրբ տիրուհի,
Բարէխաւսեայ առ քոյո որդի,
Զծաղկողս յիշէ և ողորմի։

Ա՜խ աստուածածին, մի մոռանար զծաղկողս, վասն զի բայց ի քէն զայլ ոչ ոք գիտեմ**։

Ե

37 Յիշեայ զիս տէր, յորժամ գայս արքայութեամբ քո և ողորմեայ ինձ՝ մեղաւորիս։

Զխաչատուր ծաղկողս յիշեցէք ի Քրիստոս աստուած և ողորմի ասացէք ամէն***։

## 513
## ԱՒԵՏԱՐԱՆ
Երուսաղէմ 3279

Գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Խարբերդ

ա

473 Եւ ես անարժանս կինս Մուլքէթ ծառայեցի, որ գրեց զԱւետարանս։

Եւ ես սուտանուն գրիչս Ստեփանոս քահանայ, զանունս ունիմ և զգործս ոչ ունիմ, դառն վշտութեամբ գրեցի թքանաւք ի զարիպութիւն. ոչ աւրինակ կամին տալ, և ով զիս յիշեն, մեղաց թողութիւն խնդրեն ի Քրիստոսէ անարժանիս, նա Քրիստոս իւր տա, ամէն, եղիցի, եղիցի։

բ

597 ... Արդ, եղև գրաւ գրութեանն սորայ ի թվականի Հայոց ՊԶԴ. (1435), ձեռամբ յոգնամեղ և անարժան, անարհեստ և փծուն գրչի Ստե-

* Գրված է «Այլակերպութեան» նկարի վերին մասում, երկաթագիր տառերով։

** Գրված է «Ահեղ դատաստանի» նկարի վրա։

*** Գրված է Աստվածամոր պատկերի աջակողմում և ներքևում։ Ավելի ցած, ձախակողմում, նկարված է մի քահանա, ամենայն հավանականությամբ ստացող Կարապետ-Յխրաւը, ձախակողմում չոքած աշխարհականի պատկերը հավանաբար հենց խաչատուր ծաղկողի ինքնանկարն է։ Խաչատուրի մանրանկարները բացառիկ արժեք են ներկայացնում հայ միջնադարյան մանրանկարչության պատմության համար, որպես Վասպուրականի դպրոցի զարգացման ամենաբարձր աստիճանը ներկայացնող ստեղծագործություններ։

փանոսիս, *որ անարժան է մեղաւք լի է, և սուտանուն քահանայի, որ զանունս ունիմ և զգործ ոչ։ Գրեցաւ ի նուաղեալ և յետին ժամանակիս, զի ամենայն քրիստոնեայք նեղէին յանաւրինաց, և արտայհալածեալք ի տանց և ի ստացուածոց, որպէս և առ մեզ եղև, զի լցցի ասացեալն, եթէ որ քրիստոնեայն է ի հալածանս կացցէ, բայց յոյսն մեր Քրիստոս է։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան և զսուրբ պատարագաւղք Քրիստոսի աստուծոյ մերոյ՝ զքահանայսդ և զսարկաւագունսդ, որք կարդայք զսուրբ Աւետարանս կամ աւգտիք կամ աւրինակէք, յերեսս անգեալ աղաչեմ զձեզ վասն սիրոյն Քրիստոսի յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զմեղուցեալ և զանպիտան ծառայս, որ չի արժան քահանայի, զանունս ունիմ և զգործս ոչ ունի[մ]։*

*Փծուն գրչովս ես գրեցի*
*Եւ ես չի հմուտ, որ գիր գրի,*
*Մի մեղայդրէք կարդացողընի*
598 *Զայտ առ[աջին] գիրն է ընձի*
*Ես [տկ]ար մտաւք ի ձեռն առի*
*Եւ յիմար սրտիւ զայս գիրս և զծաղիկս*
*Ի ձիմեռն աւուրք զայս գրեցի։*
*Ո՛վ սուրբ արժանաւոր քահանայք սուրբ պատարագի,*
*Որ ընդեռնուք յեկեղեցի՝*
*Զիս յիշացէք ի յատենի*
*Վասն սիրոյ Քրիստոսի,*
*Որ աստուած ինձ ողորմի՝*
*Փծուն գրչի* Ստեփանոսի
*Եւ ծնաւղացն իմոյ, ամէն, ամէն և եղիցի։*
*Ո՛վ սուրբ քահանայք և շնորհալի**,
*Որ դուք ծաղիկ էք հոտով լի,*
*Զինչ մանուշակն աւելի՝*
*Քրիստոս ամբողջ պահէ զձեզ ի յատենի։*
*Ես ի յաւտար երկիր էկի*
*Զաւրն ես ի լացէս էլ կացի,*
*Արտաւսելի կենաւք շրջի,*
*Ելնի էրթի ի ժամայտեղի,*
*Որ արտաւսելի յաղաւց կենի*
*Ի սուրբ խորանն յէկեղեձի,*
*Նայ սատանայ յէրէց մտնէր,*
*Զարայխաւսին ի յատենի,*
*Արտաւսելով ի տոն էրթի.*

---

* Գրիչը, լինելով հավանաբար վասպուրականցի, հաճախ շփոթում է ու չի կարողանում կողմնորոշվել՝ «հ»-ո՞վ, թե՞ «խ»-ով պետք է գրել այս կամ այն բառը։ Սխալ չկատարելու մտահոգությամբ, կասկածելի թվացող մի շարք բառեր նա գրում է և՛ այսպես և՛ այնպես։ «Շնորհալի» բառի «հ» տառի վերևում, տողամիջում գրել է «խ», ցանկանալով ասել, որ այդ բառը գուցե կարդացվելու է «շնորխալի» ձևով։ Հաջորդ տողում գրել է «խոտով լի», բայց «խ»-ի վերևում դրել է «հ» («հոտով լի»)։ Գրել է «աստուածայխախին» ընդգծված («խ») տառի վրա դնելով «հ» տառը, «խմէր գինի», նաև՝ «հմեր գինի», «հաց», նաև՝ «խաց»։

Դառն կենաւք զայս գրեցի
Ջուրբ Աւետարանն Քրիստոսի։
Էս ժողովուրդս Քրիստոսի
Աստուածայվախին և բարի,
Վասն սիրոյն Քրիստոսի
Զիս կու սիրին խիստ ուրախայլի,
Որ ես չի խմեր գինի,
Նայ ժողովուրդն ուրախանին,
Զիս կերակրէին յամէն տեղի։
Ով որ ընձի հաց է կերակրեր
Կամ ջուր տուեր ի ծարաւի...

Գ

602 Փառք ամենասուրբ երրորդութեան, որ աստուած եա համբերութիւն և շնորհ ողորմութեան սուտանուն Ստեփանոս քահանայիս, որ գրեցի թքանաւք ի ղարիպութիւն ի Հաբերդ քաղաքիս, ի յամիրութիւն Յալիբէկին, ի եպիսկոպոսութիւն տէր Ստեփանոսին, թուայկանիս ՊԾԴ. (1435)։ Եւ ես սուտանուն Ստեփանոս քահանայ ծախեցի զԱւետարանս սուրբ /// (ջնջված է եկեղեցու անունը) եկեղեցուն ի յութ ֆլաւրի. երկուսն յիշեատակ թողի իմ հաւրն Մարգարուն և մաւրն իմոյ, Ա. (1) գլուխն յիշատակ է ինձ, և զերեքի գլխուն գին տուին վեց ֆլաւրի, զմէկին* գլխուն Մուրատն էրետ ֆլաւրի մի յիշատակ իւր և ծնաւղեաց իւրոց, էն կին (˚) Ա. (1) գլխուն գին էրետ ֆլաւրի մի Մանկայսարի դուստրն Խութան-Մէլիքն և որդին Վարսիլն և կին, յիշատակ իւր և ծնաւղեացն իւրոց, ամէն։ Բ. (2) թանկայ էրետ Դինարն՝ յիշատակ իւր, Գ. (3) կէս թանկա էրետ Էզդինիկին Ճումար-Խաթուն՝ յիշատակ իւր, և Ցաղրայդին կանգնեցաւ զպակասորդն ժողովրդենէն, և ժողովեցին Վարդան Էրէցն և Մանկտեաէն, որ շատ և որ սակաւ ժողովեցին ու տուին ի յիս զվեց ֆլաւրին։ Եւ որ դրամ է տուեր կամ երկուս կամ Գ. (3) յիշատակ իւր, և ծնաւղեաց
603 իւրոց ի դուռն սուրբ Յակոբեա ի յայս || սուրբ Աւետարանս, և որ շատ և որ սակաւ՝ զվարձս հարուրայպատիկ առցէ, և աստուած իւր ողորմութեամբ ջնջէ զանցանքն ժողովրդեան, ով որ յիշատակ է դրեր զսուրբ Աւետարանս ամէն կարդացողացդ և լսողացդ զվարձս հարիւրապատիկ առցէ յաւուր դատաստանին, ամէն, եղիցի։

514

ԳԱՆՁԱՐԱՆ

Յ. Քոսեան, Յուցակ Արծնեան վարժարանի 50, ՀԱ, 1962, սյուն, 340—341

Գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Ձմշկածագի Կարմիր վանք

Արդ, գրեցաւ սա ի Նահանգիս Փռուգիոյ, ի գաւառս Եռապաւլեաց. որ այժմ մականուամբ կոչի ի հոմանուանագրութիւն Ձմշկիկ Յովանէս

* Ձեռագրում՝ «մէկկին» (˚)։

*թագաւորին, որ սպան զկայսրն Ստըմպօլայ զնիկիփոռ և էառ ըզթագն իւր հնարիւն*, և տիրեաց բազում քաղաքաց և աշխարհաց՝ մինչև ի դուռն* Բաղդատայ՝ *ծովեզերովն, և հարկատու արար ԳՃ. (300) քաղաք, կոտորեաց և զօրսն խալիֆային, և էառ ի նոցանէ ԽՌ. (40.000) ձի և ջորի և ՃՌ. (100.000) ծառայս։ Եւ յղեաց ԲՌ. (2000) տաճիկ ծառայս և ԾՌ. (50.000) ձիս և ջորիս Հայոց արքային՝ Աշոտ Յոհաննիսին, վասն զի Աշոտ թագաւորն տուեալ էր յօգնականութիւն նմա ՅՌ. (300.000) ձիաւորս և այլ բազում հետեւակս։*

*Արդ, վասն որոյ յիշատակեցաք զառաջին թագաւորն մեր՝ զարիքն և զյաղթողքն, զքաջքն և զառաքինիքն և մեծ սպառազէնքն, որ մեծապարանոց եւ քաջալանջք խիզախէին ի վերայ այլազգեաց և իբրև զանուրս երկաթիս հոլովելոր ի վայր մղեալ կոխէին, և ընդ իշխանութեամբ կամացն իւրեանց շրջեցուցանէին։ Որ իբրև զարեգակունս և զլուսինս ի մէջ բազմայոյզ աստեղացն զլոյս արձակէին և ծածկէին զլոյս անհնազանդելոցն, և իբրև զջահ և անշիջանելի պայծառ կային ի դրունս սուրբ եկեղեցոյ և ամուր պարիսպ ընտիր հեծելովք ի պարծանս Հայոց ազգիս։ Արդ, երանի տամ ժամանակին այնմիկ, յորս այս գերապատուութիւնս լինէին Հայոց ազգիս, և վրայ Իսմայէլացւոց զնդին, որ ի ծառայութիւն վարէին զնոսա և միմեանց զդերս մատուցանէին։ Եւ այժմ, եղբա՛րք, հարկ է մեզ ի մէջ բերել զողբն Երեմիայի և լալագին հառաչմամբ ողբալ զբեկումն ազգիս Հայոց, և զստրկութիւնս ի մէջ այլասեռից մահմետականաց, որ ոչ գոյր ի միջի մերում թագաւոր կամ իշխան, կամ հայրապետ, կամ քահանայ, որք ոչ են ընդ հարկապահանջութեան պյլասեռից...*

*Արդ, գրեցաւ սուրբ տառս ի թուականութիւնս մերում ՊՁԵ. (1436) ամին, ի հայրապետութեան* Կիլիկեցւոյ *տեառն* Կոստանդեայ, *և յաշխարհակալութեան* Յալիպէկին. *ի յերկիրս* Ձմշկածագուց, *ի սուրբ ուխտս* Կարմիր վանս, *ընդ հովանեաւ սուրբ Կարապետին և աստուածընկալ սուրբ Նշանաց, ի յառաջնորդութեան տէր* Մելքիսեթին, *և լրացաւ ձեռամբ յոգնամեղ եւ տարտամ ոգւոյ անարհեստ* Մկրտիչ *սուտանուն կրաւնաւորի***։

## 515

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 9998*

*Վայր՝* Սորոյ վանք

430ա *Ողորմեա տէր աստուած բարեպաշտ և աստուածասէր* Կարապետին, *որ ցանկացաւ և փափագեաց և ետ գրել զսուրբ Աւետարանս յիշատակ իւր. և ծնաւղացն իւր՝ փոխեցելոցն ի Քրիստոս՝ հաւրն իւր* Անդրիասին *և մաւրն* Սուրաթին, *և հաւրքեռն* Մելիքի, *և եղբաւրն իւր* Հերապետին, *և կենակցին իւր* Աղութին, *և հաւրեղբաւրն* Ստեփանոսին, *և կենակցին իւր* Դըրշախին...

* *Տպագրված է՝ «ըզթագին իւր ի հնութիւն», ուղղում ենք ըստ իմաստի։*

** *Հիշատակարանի Գ. Փիրղալեմյանի կատարած համառոտագրությունը տե՛ս Ժողովածուիս Ա մասում, էջ 466։*

130բ Դարձեալ երես անկեալ աղաչեմ անմեղադիր լերուք խոշորութեան և սղալանաց, զի յոյժ անիմաստ եմ և խելագար և ցնորամիտ։

Գրեցաւ սուրբ Աւետարանս ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, որ ասի Սորոյ վանք. և եմք ռամկաւ եղբարք ժողովեալ ի դուռս սուրբ եկեղեցւոյս, և է հայր վանացս Կարապետ աբեղայս, յոյժ աշ[խ]ատասէր և է պատճառ շինութեան. Աստուած դարձուսցէ զսա կամակից յիւրոյ և տացէ զվերինն խորհուրդ և առնել։ Վա՜յ դառն ժամանակիս, զի ի սիրոյն Աստուծոյ ցամաքեալք և պատուհասիւ լցեալք և ոչ ոք է որ ///

Գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվին ՊՁԵ. (1436)*։

## 516
## ԱՒԵՏԱՐԱՆ

Տ. Պալեան, Ցուցակ Կեսարիոյ, էջ 26

Գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Խարբերդ

...Եւ արդ, ես՝ յետինս ի գրչաց և անարժանս ի կարգաւորաց սուտանուն երէց Ստեփանոս, հրաման առեալ ի պատուիրանադիր առաքելական հրամանէն, որ ասէ. Յոր կոչումն կոչեցար ի նմին կացցես։ Եւ արդ ես ոչ բերելով զայսպիսի վստահութիւն, այլ ունայն յամենայն բարեաց և թափուր, այլ յուսամ ի մարդասիրութիւն Աստուծոյ, զի իմ բազում մեղացս թողութիւն արասցէ, և կենակցին իմոյ Աննայի, և հաւրն իմ Գրիգորի, և մաւրն Շնախորի, և եղբարցն իմ Յովհաննիսի և Յովանիսի, Յովասափի և Մկր[տ]չի, և մաքրոջն իմ Արուս-Խաթունի, և զաւակացն իմոց՝ հանգուցելոցն ի Քրիստոս Յոհաննիսի և Կարապետի, և ընդիր նորահաս մանկանն Մելքիսեդի, որ ԺԷ. (17)-ամեայ փոխեցաւ ի Քրիստոս և եթող սուգ անմխիթար ծնողացս, և դստերացն, և ամենայն արեան մերձաւորացն՝ կենդանեաց և հանգուցելոց, և ամենեցուն, որ երախտիք ունին ի սուրբ Աւետարանս տալով և կերակրելով՝ ռախս Նէֆամառն և կենակից իւր։ Արդ աղաչեմ զամենեսեան որք հանդիպիք կարդալով կամ աւրինակելով՝ մեղաց թողութիւն խնդրեցէք վերոյ գրելոցդ ամենի, և Աստուած զձեր մեղք թողու՝ զխնդրողացդ, ամէն։

Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվին Հայոց ՊՁԶ. (1437), յաթոռակալութեան տեառն Կոստընդեայ, և յառաջնորդութեան արհի և երջանիկ, հեզահոգի, քաղցր և արի և ամենայն գովութեանց արժանաւորի տէր Մարտիրոսի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի և սուրբ Թէոդորոսի, յերկիրս որ կոչի Բերդկան, ի վանքս սուրբ Տիկնայ. և յիշատակարանս գրեցաւ ի քաղաքս որ կոչի Հարբերդ, ընդ հովանեաւ ամենասուրբ Աստուածածնի, և սուրբ Ստեփաննոսի և սուրբ Սարգսի զաւրավարին, ի յառաջնորդութեան թեմիս Հարբերդու քաջ և արի արհիեպիսկոպոսի տեառն Ստեփաննոսի, որ է երևելի և իշխան ամենայն եպիսկոպոսաց աշխարհիս այսմիկ։ Եւ արդ աղաչեմ զձեզ յիշեսջիք ի սուրբ յաղաւթս ձեր զորդի արհիեպիսկոպոսի տէր Մելքիսեթի՝ զտէր Յովանէս զաւագ քաղաքիս, որ է քահանայից ընդունարան, վարդապետաց ասպընջական, եպիս-

* Գրված է ներքևի լուսանցքում կարմիր թանաքով և ապա քերված։

կապոսաց աւթեւան, սրբոց դարան, քաղցելոց կերակրիչ, սքաւորաց մխիթարիչ, բանդելոց բազմաց աւգնական, երևելի ի դրունս աւագաց, ցհրեաց ազատիչ՝ տալով յիրմէ և առնելով յայլոց. լցեալ շնորհաւք անթերի ուսմամբ, յարմատոյ քահանայի և եղբայր անյաղթ փիլիսոփաի, զոր յուսամք յաստուած պահել զսա անփորձ և հասանել ի կարգ քահանայութեան, և մշակ առանց ամաւթո ի դուռն սուրբ եկեղեցւոյս, ամէն։

Ընդ նմին և զկազմող սուրբ Աւետարանիս՝ զգեղազարդ և զհեզահոգի կրաւնաւորս զտէր Թադէոս, որ կազմեաց զսա յիշեսջիք յաղաւթս ձեր, և աստուած զձեզ յիշէ յիւր արքայութեանն, ամէն։

## 517
## ԳԱՆՁԱՐԱՆ

**Անթիլիաս 74**

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Տփխիս

317բ ... Շնորհիւ տեառն սկսայ և ողորմութեամբն աստուծոյ կատարեցի զսուրբ գիրքս, որ կոչի Գանձարան։ Գրեցաւ սայ ի թվականութեանս Հայոց ՊՁԶ. (1437), և ի փոքր թվական ՅԾԴ. (354), և ի հոռոմոցն ՌՃՁԹ. (1189), թագաւորութիւն վրաց Ալէքսանդրու, ի մայրաքաղաքս Տփխիս, ի յանապատս Բեդղահեմ, ի դրան սուրբ Աստուածածնիս, ձեռամբ սուտանուն աբեղայի Կարապետի, ըստ անուանս որ ունիմ, ի գործոցն խիստ թափուր և ունայն գըտանիմ։ Արդ, աղաչեմ զամենեսեան որք աւգտիք ի սմանէ եղանակելով կամ աւրինակելով կամ տեսութեամբ՝ յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր զիս, և զծնաւղն մեր զՊետրոս քահանայ և ըզՇնահատր, և աստուած զձեզ յիշէ*։

## 518
## ՇԱՐԱԿՆՈՑ

**Երուսաղէմ 2479**

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Բերկրի, Արգելան անապատ

664 ... Գրեցաւ սա // ի թվականիս Հայոց ՊՁԶ. (1437), ի յերկիրս Տարբերունի, որ այժմ կոչի Բերկրի, ի սուրբ մենաստանիս և ի հրեշտակաբնակ անապատիս Արգելան: Ընդ հովանեաւ մաւր լուսոյ սուրբ Աստուածածնիս, սուրբ Կարապետիս և սուրբ Յարութեան, սուրբ գերեզմանիս պարոն Յուսկայն որդւոյ, եւ սքանչելագործ սուրբ նշանիս Կարմիրակն կոչեցեալ, ի յառաջնորդութիւն սուրբ ուխտիս հեզահոգի և տիեզերալոյս Մկրտիչ վարդապետի, ձեռամբ անիմաստ և փըծուն գրչի Գրիգոր անարժան և սուտանուն կրօնաւորի։ Ի խնդրոյ պատուական և սրբասէր կրաւնաւորին Գրիգորի, որ ստացաւ զսա յիշատակ իւր, և ծնօղաց իւրոց՝
665 հօրն Յովանու և մօրն // ... էդիլ–Մէլիքին, և եղբօրն Թադոսին և Մէլիք–

* Ձեռագիրը Անթիլիաս է բերված Կիպրոսից։ Մ. Տեր-Մովսիսյանի Ցուցակից քաղելով, սույն ժողովածուի Ա. մասում (էջ 475, հիշատակարան № 520), տպագրել ենք այս հիշատակարանի համառոտագրությունը։

զադին, և քուերցն Շահար-խաթունին և Նարինին, և ամենայն արեան մերձաւորացն՝ կենդանեացն և հանգուցելոցն։ Եւ աղաչեմ յիշել ի Քրիստոս աստուած զշնորհալի և զաստուածիմաստ վարդապետն Մկրտիչ, և զեղբայրն իւր զՍտեփանոս զքաջ փիլիսոփայն։ Ընդ նոսին աղաչեմ յիշել ի տէր զհօրեղբօրորդին իմ զԱստուածատուր սրբահոգի քահանայն և զծնողսն իւր. ամէն...

## 519
## ԺԱՇՈՑ

Երուսաղէմ 3153

Գրիչ՝ Յովսէփ
վայր՝ Դերձկի վանք

ա

1131 ... Արդ, գրեցի ես Յովսէփ աբեղայս զգիրքս զայս ընդ հովանեաւ սուրբ Թէոդորոսի զինաւորի, զոր այժմ Դերձկի կոչի, և այլ բազմայհաւաք նշխարաց, յառաջնորդութեան սուրբ ուխտիս տէր Ներսէսի եպիսկոպոսի և Գրիգորի հայրապետի, որ ետ դրել զգիրքս ի վայելումն իւր, և ծնողաց իւրոց Յովաննիսին և Սիրմային, և ամենայն արեան մերձաւորաց, ամէն։

Յիշեցէք և զվանիցս միաբանքն՝ զՍիմէոն աբեղայն և սարկաւագերն՝ զՄաթէոսն, զՍարգիսն, և զտնտես Յովաննէս, և զԿուռասոյն քահանայն, զԵղիսէն, և զՏիրացու երէցն։ Դարձեալ, ըրկին աղաչեմ զամենեսեան զմանկունսդ սուրբ եկեղեցոյ յիշեսջիք ի մաքրափայլ աղօթս ձեր զմե-
1132 ռուցեալ գրիչս զՈվսէփ, և զուսուցիչն իմ զԱրի//ստագէս վարդապետն, և զծնաւղն իմ զՅակոբ քահանայ, և զեղբայրքն իմ զԱսման սարկաւագն՝ զհանգուցեալն առ Քրիստոս, սուրբ էր վարուք, և զեղբայրն իմ Ասման անուն, և ցանկալի։

Զինչ զաղամի էր իւր հոգին
Ընդ ծագայխառն էր ամովին,
Զեռք, որ չառնէր տուրք աղքատի
Կամ բարձրանայ ի յաղաւթի,
Թող չորանայ նման գոսի,
Որ ի ծառէն անգեալ չախի.
Ագահութիւն նման հրի,
Քանի ձգեն կու բորբոքի,
Թէ շատ տաս, թէ սակաւ
Յետոյ դառնայ ամէն փոշի։

Դարձեալ, աղաչեմ զձեզ, սուրբ ընթերցողք, որ իմ եղբաւրն Գրիգորին լի սրտիւ ողորմիս ասես, որ խիստ մահ էր ընդ ամենայն աշխարհս, ՊՁԶ. (1437), և ինքն և Բ. (2) որդին Մուրայէն և Յակոբն փոխեցան առ Քրիստոս՝ յոյսն մեր...

Յիշեցէք զԼաւտոին քահանայքն՝ զայօք պատուեալ ծերունին զՅով-

*Յ*ոհաննէս, *և զբարի բնութեամբ լցեալն զ*Դանիէլն, *և* Փիլիպպոս *քաղցրա-*
1133 *խաւսն, և* Սարգիս *էրէցն, որ զ//գրոցս զաւրինակն տվին...*

*Ես* Գրիգոր *աբեղայս, որ բազում աշխատութեամբ զգիրքս գրել տվի*
*իմ հոգոյս, և իմ ծնաւղացն, և դրի զսայ ի յանառիկ ղղեակս ի գեաւղս*
*ի* Կոտասխ, *ի դուռն սուրբ* Վասիլ *եկեղեցոյն, որ չունի ոք իշխանութիւն*
*ոչ յիմոցն, և ոչ յաւտարաց, որ հանէ զգիրքս կամ ծախէ և կամ գրաւէ.*
*և թէ լինի, որ յասամանէ չարին կամ հեծելով կամ գողանալով ի յայլ*
*տեղ երթա, որ պահեն ու չդարձուցանեն վերըստին ի սուրբ ուխտս, նա*
*Գ. (3) ժողովոյն անիծած է և բանադրած, և ի քրիստոնէութենէն որո-*
*շած է և զրկված.* Պետրոս *էրէց վկայ,* Յոհաննէս *էրէց,* Մարքոս *էրէց վկայ,*
*առ իս* Ամիր-Հաճաքն *և* Ամիր-Մուսէսն, *մղտեսի* Լիպարիտն, Ամիր-Հե-
թումն *վկայ է. Խնամով պահողն աւրհնի յաստուծոյ և յամենայն սրբոց*
*նորա ի մէնջ, ամէն.* Քրիստոս *աստուած աւրհնէ զձեզ՝ քահանայք և ժո-*
*ղովուրդք, որ լաթով պահէք և ճենճոտ ձեռաւք չբռնէք:*

Բ

1135 *Գրիս խոշորութեան և սխալանաց անմեղադիր լերուք, զի խիստ ի*
*դառնութեան կացի համապազ ի յահ և ի փախ վասն* Խարայիլուկին, *որ*
*սուլդանն* Մսրա *իբրև ղառուծ գոչելով եկավ բազում զաւրաւք վասն*
Աւթմանին, *և ոչինչ կարաց առնել, այլ իբրև զջղջիկան ամաւթալից դար-*
1136 *ձաւ և բազում աւերս արար, որ կ/// երկիրս յանմարդա//բնակ եկաց Բ.*
*(2) տարի. մինչ մէկ էջ կու գրէի ես՝* Ե. *(5) տարպա կելնէի, հայէի, իբրև*
*զծառի տերև ի դողման կայի համապազ:*

## 520
## ԱՒԵՏԱՐԱՆ
**Երևան 4815**

*Նորոգող և կազմող՝* Վարդան

280բ *Քրիստոս աստուած ողորմի* Նիկողոսին *և իւր ծնողացն, որ վերստին*
*նորոգել ետուր զսուրբ* Աւետա*[ր]*անս *յիշատակ յիւր, և ծնողաց իւրոց՝*
*հաւրն իւրո* Մուրադի, *և [մաւ]րն իւրո* Կուլմելիքին, *և կո[ղա]կցին իւրո*
Յուսէփին, *և* Աւամին, *զոր տէր աստուած տացէ սոցա զիւր արքայութիւն,*
*ամէն:*

*Եւ զիս՝ զեղկելի հողս զ*Վարդան, *և զծնաւղսն իմ, զվերջին կազմող*
*սուրբ* Աւետարանիս *աղաչեմ յիշել [յա]ղաւթս ձ[եր], ո՛վ սուրբ ընթեր-*
*ցո[ղք]:*

*Կազմեցաւ ի թվ. ՊՁԷ. (1438):*

## 521
## ՈՍԿԵՓՈՐԻԿ ՄՈՎՍԻՍԻ ԵՐԶՆԿԱՑԻՈՅ
**Երևան 576**

*Գրիչ՝* Թումա

164բ *... Եւ արդ ես* Մովսէս* *ծնունդ յետին ժամանակի և սպասաւոր պի-*
*տակ բանին, ժողովեալ հաւաքեցի սակաւ ինչ ի բանից սրբոց, և եդի*

---

* *Ոսկեփորիկ կոչվող ժողովածուի խմբագիր և անվանի մատենագիր Մովսես Երզնկացին է (մհ. 1322 թ.):*

տառս այս վասն բերման ժամանակի և շփոթման ճշմարտութեան ի բազմաց խուճապելոց։ Եւ եղև գրաւ գրչութեան այսմ մատենի ի մէջ մայրաքաղաքիս Եզնկու, առ աթոռակալութեամբ տեառն Սարգսի արքեպիսկոպոսի, ընդ Հովաննեաւ սուրբ Կաթուղիկէիս, և սուրբ Կարապետիս, և նշխարաց սուրբ Ներսէսիս։

Ես նուաստ վարդապետս Թումա փափաքեցա գրել զտառս զայս հոգէպատում ի թվաբերութեան հայկազան տոմարիս, որ է յարեթական գրոհի ՊՁԸ. (1439), և ի գալստենէ կենարարին ՌՆԼԹ. (1439), իսկ ելանելոյն նախնի մարդոյն ի յանուշակ վայրէն*։ Որք հանդիպիք յայսմ տառի յիշման առնէք զիս արժանի՝ զթարմատար և զանիմաստ գրիչս զԹումա զհամբակս բանի, որ բազում աշխատանօք գրեցի զԳիրս Թղթոց, որոց ամենայնի ողորմի Քրիստոս աստուած, ամէն**։

## 522
## ԱՒԵՏԱՐԱՆ

Երուսաղէմ 3258

Գրիչ՝ Յոհանէս

603 ... [Գրեցաւ] սուրբ Աւետարանս ի թուաբերութեան հայկազան տումարիս ՊՁԸ. (1439), ձեռամբ անարհեստ և փցուն գրչի Յով[անէս] աբ[եղայ]ի, ի վայելումն մաքուր անձանց։ Արդ, աղաչեմ զընթերցաւղսդ սուրբ Աւետարանիս անմեղադիր լերուք սղալանաց և խոշորութեան սորա, զի կար մեր այս էր. և մեղաց թողութիւն խնդրեցէք ինձ և ծնողաց իմոց, և ամենայն արեան մերձաւորաց իմոց, ի յամենառատ պարգևողէն Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

## 523
## ՃԱՇՈՑ

Զմմառ (Անտոնեան հաւաքածոյ) 5

Գրիչ՝ Յովանէս

ա

Զվերստին նորոգող սուրբ Տարէգրոցս զժրաջան մշակն եկեղեցւոյ զնոյն ինքն զխարազնազգեաց ճգնաւորն և զարևելեան ճառագայթն՝ ըզտէր Յոհանէս յաղօթս յիշեցէք, ընդ նմին և զՄաթէոս գծողս աղաչեմ յիշել ի տէր։

Թվ. ՊՁԸ. (1439)։

բ

... Արդ, աղաչեմք զամենեսեան, որք հանդիպիք այսմ տառի կարդալով կամ գաղափարելով, զստացող սորա զՍարգիս միայնակեց Գառաշեցի. որ ետ գրել զՃաշոցս յիշատակ իւր և ծնողաց իւրոց, որ յամէն տարի Բ. (2) ժամ առնեն յոր տեղ որ լինայ, եթէ ի վանք, եթէ ի գեղ,

---

* Արարչագործության թվականը չի նշանակված։

** Ձեռագիրն ընդօրինակված է ԺԷ դարում. հիշատակարանը գաղափար օրինակինն է։ Վերջում կա նաև գովք նվիրված Մովսես Երզնկացուն։

եթէ յայլ տեղի, որ անյապաղ զխնդիրքս կատարեն, և որք կատարէ՝ Քրիստոս աստուած զիւր խնդրուածսն կատ[ար]է, և զիս՝ զբազմամեղ դծողս յիշման արժանի առնէք, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

Գ

ԶԳրիգոր և զծնողսն իւր յիշեցէք ի Քրիստոս, զի պատուեաց զմեզ։

## 524
## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 3483

Հետ. ստացող՝ Խաչատուր

318բ Յիշատակ է գիրքս Խաչատուր աբեղիս։ Ի թվին ՊՁԸ. (1439)։ Զվերջին ըստացողս Խաչատուր աբեղաս յիշեցէք, ո՜վ սուրբ ընթերցողք, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

## 525
## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Ղ. Ալիշան, «Հայապատում», էջ 549
Վենետիկ 12 (1007) Բ. Սարգիսեան Ցուցակ Ա, էջ 128

Վերստին նորոգող և կազմող՝ Հերապետ
վայր՝ Մշոյ Առաքելոց վանք

468ա Այլ և վերջին կազմող լուսազարդ տառիս և ծաղկալէտ բուրաստանիս՝ զՀերապետ կրաւնաւոր աղաչեմ յիշել ի տէր... զի խիստ փտեալ էր և բամբակ դարձեալ, ի տեղիս տեղիս ցեցն է ծակոտեալ, հազիւ կարացի ի կապ ածել...

468բ Դարձեալ, յերես անկեալ աղաչեմ սուրբ և պատուական ուսումնասիրացդ և բանասիրաց անձանց, զի որք հանդիպիք սմա տեսանելով կամ օրինակելով, յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր զառաջնորդ սուրբ ուխտիս զտէր Պօղոս եպիսկոպոս, զի ի ժամանակիս այսմիկ, որ էր թիւս Հայոց ՊՁԸ. (1439), էր սա առաջնորդ սուրբ ուխտիս Առաքելոց, և ի սորին աւուրքս զքահանայ... ոմն անուն Վարդան՝ եղև գործովն Յուդայի և մատնեաց զամենայն սրբութիւնք եկեղեցւոյն անօրինաց՝ զխաչ և զսկի, և բազում խաւար էած աշխիս Հայոց. որ և զաղէտ տարակուսանացն և զկսկիծն օվ կարէ ընդ գրով արկանել*։

Զի յայսմ ամի տիեզերալոյս և քաջ բաբունապետն Թովմա փախստական էր եղեալ յազգէն նետողաց ի գաւառէն Արճիշոյ, և եկեալ հանդիպեցաւ ի սուրբ ուխտն Առաքելոց երկու վարդապետօք և բազում գրող աշակերտօք. և ետես զպատուհաս ցասման. զի պեղծ ամիրայն Մարաց որ ի Մուշ նստէր՝ յաւուր միում բազում զօրօք եկն ի վանքն, և սուտ քահանայն Վարդան ընդ նոսա, և ըմբռնեցին զքահանայքն. զոմն տանջեցին և զոմն ահարեկ առնէին. մտին յեկեղեցին և քակեցին զմին կողմին

* Բ. Սարգիսյանը իր ցուցակում բերում է հիշատակարանը մինչև այստեղ, իսկ հետագա դեպքերը պատմում է իր խոսքերով՝ փակագծերում։ Ամբողջացնում ենք հիշատակարանը, շարունակությունը մեջ բերելով Ղ. Ալիշանի «Հայապատում»-ից։

*շեղ... և հանին բազում խաչ և սկի և սրբոց նշխարք, և տարան ի քաղաքն. ըստ այնմ, որ ասէ ի Սաղմոսն՝ Զթիկունս իմ հարին մեղաւորք։ Եւ սուրբ վարդապետքն և աշակերտքն և սրբասէր քահանայքն ողբս ի բերան առեալ լային ողբալով. և այնքան կսկծացին՝ մինչ զի զգիշերն ամենայն արթուն կացեալ և խնդրեցին յԱստուծոյ զազատութիւն սրբութեանցն։ Եւ ի վաղիւն եկեալ երէց ումն* Մելիքսեդ *անուն և եբեր մասն ինչ ի խաչերոյն. և բազում խաչ և սկի կորեաւ. և այսու ամենայնի պաճառ այն պիղծ չքահանայն եղեւ, որ անունն չէ յիշելոյ. որ և զպատասխանին նա տացէ յաւուրն դատաստանի, ամէն։*

*Այլ և դարձեալ աղաչեմ յիշել ի տէր զվերջին նորոգող և զկազմող տուողն, որ ի վերայ սուրբ գրոցս երախտիք ունի. այլ և զնախախնամօղն աղաչեմ յիշման արժանի առնել. և եթէ մին թխթի կամ մին սակաւ իրաց երախտիք ունի ի սուրբ գիրքս՝ զփոխարէն նորա յաստուծոյ առցէ աստ և ի հանդերձեալն. և եթէ ոք զկազմելն տայ՝ լի սրտիւ միոյն հազար աստուած փոխարէն տացէ նմա. և հենց համարի, թող թէ զԱստուածաշունչս բոլոր նա է տուեր գրել. զի թէպէտ նորոգօղն է, թէպէտ նոր դրող տուօղն՝ ի միասին պիտի պսակին ի Քրիստոսէ։ Եւ որ զբարին կամենայ այս գրոց՝ Քրիստոս աստուած զիւր առատ բարին նմա տացէ աստ և ի հանդերձելումն, ամէն։ Ո՜հ, զեղկելի անձն իմ աղաչեմ, որ յիշել ի տէր միով ողորմայիւ։*

## 526

## *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Բ. Կիւլէսէրեան, Ցուցակ Անկիւրիոյ, 181, սյուն. 886*

*Նորոգող՝* Աբրահամ

*վայր՝* Անկիւրիոյ սուրբ Աստուածածնի վանք

·563 *Ընդ նմին և զԱբրահամ անարժանս աղաչեմ յիշել ի տէր, զի զչնչեալ և զաղալեալսն որ ի սմա ուղղեցի, և աստուած յիշողացտ ողորմեսցի, ամէն։*

*Եւս առաւել զստացող սուրբ Աւետարանիս, որ ետ նորոգել զսայ առ ի յիշատակ ծնողաց իւրոց և ի վայելումն անձին իւրոյ, և յետ ատեացս փոխելո յիշատակ հոգո իւրո և իւրոցն՝ զ*Գրիգոր *քահանայն յիշեցէք աղաւթիւք ի տէր, և աստուած յիշողացտ ողորմեսցի, ամէն։*

*Եղև նորոգումն սորայ ի թուին Հայոց ՊՁԸ. (1439), ի յուլիս ամսո ի ԻԱ. (21), ի դուռն սուրբ Աստուածածնիս, որ և վանքս իսկ է, ի փառս Քրիստոսի և ի պայծառութիւն սրբո եկեղեցւոյ, ամէն։*

## 527

## *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Բ. Կիւլէսէրեան, Ցուցակ Անկիւրիոյ, 312, սյուն. 1315—1318*

*Գրիչ՝* Սարգիս

*վայր՝* Երուսաղէմ

ա

610բ— *...Քանզի գրեցաւ սայ ի աստուածակոխ սուրբ քաղաքս յ*Երուսաղէմ,
615ա *ընդ հովանեաւ ամենայն սուրբ տնաւրինականացս Քրիստոսի աստուծոյ*

մերոյ, ձեռամբ նըւաստ ծառայի ծառայիցն աստուծոյ բազմամեղ հող և մոխրիս, որ ամաչեմ կոչիլ ի բարձրագոյն անուանէն աբեղայ, զի ի դատապարտութիւն է ինձ անունս այս, այլ լոկ անուամբ կոչիմ Սարգիս։ Եւ ես անպիտան և անարհեստ գծաւղս սկիզբն արարի այսմ լուսաւոր և կենսակիր աստուածաւանդ սուրբ կտակիս, ի ստոյգ և յընտիր աւրինակէ։ Եւ ըստ կարի իմում գծագրեցի զսա ի լուսաւորութիւն մանկանց եկեղեցւոյ, և առ ի յիշատակ հարկէւոր և համեստ, ճգնազգեաց և աղաւթարար մահղասի երիցկնկանն Անտոն իրիցու՝ Թուրւանտայ անուն ապաշխարողին, որ կայր ի քաղաքս Երուսաղէմ և աղաւթէր յամենայն սուրբ տնօրինականսն Քրիստոսի։ Ստացաւ զսա [ի] հալալ արդեանց իւրոց յիշատակ իւրն, և Անտոն իրիցոյն իւրոյ, և դստերն իւրոյ Վարդիսցւարի. և փեսային Դաւէշին, և մօր փեսային Խէրխաթունին, և այլ ամենայն արեան մերձաւորաց իւրոց և էրախտաւորացն, ամէն։ Դարձեալ, կրկին յիշեցէք ի Քրիստոս զվերոյգրեալս ի սուրբ Աւետարանս՝ զԱնտոն էրէցն. և զԹուրւանտայ ապաշխարողն՝ զկենակից նորին, և զզաւակսն նոցին՝ զՎարդիսցւարն, և զՇուէնխարն, և զԿատարինէ, և զՄելքիսէթն:

Յիշեցէք ի Քրիստոս և զծնօղսն Թուրւանտայ ապաշխարողին՝ զհայրըն Զօֆրօյիրն, և զմայրն զԹանսուխն, այլ և զսնուցօղսն իւր՝ զհոգեւոր հայրն զՅակոբ և զմայրն զԹաղդատ...

Յիշեցէք ի Քրիստոս զԲարսեղ աբեղայն, և զհայրն նորա զՅակոբ, և զմայրն իւր զՂըսմաթ, և զեղբարսն, և զայլ ամենայն արեան մերձաւորսն և զերախտաւորսն, որ կամակից եղէւ և աւգնական Աւետարանիս առնելոյ։

Գրեցաւ սուրբ Աւետարանս ի թըւականութեանս Հայոց ՊՁԸ. (1439), ձեռամբ [Սարգիս աբեղայի/// (4 և կես տող ջնջված), զսուրբ Աւետարանըս աւարտել ի խնդրոյ ինձ անարժան և մեղաւոր ծառայիս՝ Թուրւանտայ ապաշխարողիս՝ յիշատակ ինձ և ամենայն էրախտաւորաց իմոց։

Այլ և յիշեցէք ի Քրիստոս զԵղիսաբեդն, զՊլուզ հաւատուորն, և զհայրըն իւր Ամիրբէգ, և զմայրն զՄրջանն, որ զԱւետարանի կապողլէքն նա երէտ։

Ծաղկող՝ Գրիգոր Արծկեցի

Բ

Այլ և զանպիտան և զանարժան ծառայս զԳրիգոր ծաղկող և զկազմող սուրբ Աւետարանիս յիշման արժանի արարէք և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոս։

Ով որ զԱւետարանս ի սուրբ Թորոսու դրանէն հանէ, նա ինքն զըրկեալ եղիցի ի Քրիստոսէ։

Գ

27ա ԶԳրիգոր ծաղկող սուրբ Աւետարանիս զԱրծկեցիս յիշեցէք ի Քրիստոս։

Դ

481ա ԶԳրիգոր ծաղկօղս սուրբ Աւետարանիս, որ մականուամբ Էլմելիքնէյ կոչիմ՝ յիշեցէք ի Քրիստոս։ Եւ ծաղկեցաւ սուրբ Աւետարանս ի սուրբ քաղաքս Երուսաղէմ, ընդ հովանեաւ սուրբ հրեշտակապետացս։

է

294ա Ո՜վ մանկունք եկեղեցոյ, աղաչեմ զձեզ որք հանդիպիք սմա յիշե-
ցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զհոգեւոր եղբայրն իմ զՅովանէս հեզա-
հոգի բարի և հաւատարիմ միայնակեացն, որ խաղելոյն աւգնեաց, և
զհայրն իւր Գաբրիէլ, և զմայրն իւր զՄարիամ, և զհարազատ եղբայրն իւր
զՍիմէոն, և զսիրելի եղբաւրորդին իւր զՍատաղայ:
Դարձեալ աղաչեմ յիշել յաղաւթս ձեր զբարի և հաւատարիմ և կու-
սակրաւն մուղտասին Աբրահամ, որ զԹուղթս կոկեաց և զծնաւղքն իւր*,
և Աստուած զձեզ յիշեսցէ ի բարի մասին, ամէն։

## 528

### ՅԻՍՈՒՍ ՈՐԴԻ ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

Մ. Աղաւնունի, Միաբանք և այցելուք հայ Երուսաղէմի, էջ 421

Գրիչ՝ Աբրահամ

Արդ գրեցաւ սա ի թվականութեանս Հայոց ՊՁԸ. (1439), ձեռամբ
մեղապարտ գրչի Աբրահամ աբեղի, յիշատակ ինձ և ծնողաց իմոց...

## 529

### ԱՒԵՏԱՐԱՆ

Դուբլին, Չեստեր Բիտիի հավաքածու 565*·

Գրիչ՝ Խաչատուր
վայր՝ Բաստայ վանք

ա

Արդ գրեցաւ սուրբ Աւետարանս ընդ հովանեաւ սուրբ Աստուածած-
288ա նին, որ կոչի Բաստայ վանք, ձեռամբ յիմար և մեղսմակարդ մածեալ մե-
ղաւք Խաչատուր խաբեբայի, որ չեմ արժանի կոչել աբեղայ, զի վայ է
ինձ, զի անունս բարձր է քան զգծողս, զի բնաւ չունիմ գործ բարի, վայ
է ինձ։
Արդ յերեսս անկեալ աղաչեմ զձեզ հարք և եղբարք, որք հանդիպիք
տեսանելով կամ կարդալով, յիշեցէք և ողորմութիւն խնդրեցէք ի բարե-
րարէն աստուծոյ զստացողիս սուրբ Աւետարանիս հեզահոգի Թադէոս
երիցու, ծնաւղաց իւրոց Մարտիրոսին և Մրրաթին, և ամենայն արեան
մերձաւորաց իւրոց. զկենդանիսն ի փորձանաց փրկեսցէ և աստուած ննջե-
ցելոցն թողութիւն շնորհեսցէ, ամէն, եղիցի, եղիցի։ Կրկին աղաչեմ ան-
մեղայդիր լերուք սղալանաց եւ տգիտութեան իմոյ, զի յիմար եմ հոգւով
և անիմաստ մարմնովս, յիշեցէք և աստուած-ողորմի ասացէք գլծողի
սորա. ես առաւել բարոյաբարուք Թադէոսի, և հաւր և մաւր իւրոյ, և քե-
ւերցն՝ Մարմելիքի և Նշխունին և Շարմելիքին, և կողակցին իւրոյ Շամշին.
և աստուած յիշեցողացդ և յիշեցելոցս առհասարակ ողորմեսցի, ամէն,
ամէն, եղիցի, եղիցի...

---

* 187ա էջի հիշատակագրության մեջ հիշված են Աբրահամի ծնողների անունները. «զհայրն
իւր Սարգիս և զմայրն իւր Աննայ...»:

Բ

289ա *Աղաչեմ ձեզ խնդրեցէք յաստուծոյ զթողութիւն յանցան մեղաց* Մար-քաին, *և զորդի նորին* զԳրիգորն, *որ փոխեցաւ առ աստուած և եթող սուգ անմխիթար վասն սրբութեան նորայ և առ ուսումնայսիրութեան նորայ գրեցի, զի գրեալ է յորդէգրութիւն հօրն երկնաւորի. եւ զ*Թադէոս *երէց յիշեցէք ի յազօթս ձեր յերկնայգնաց, և զծնօղսն իւր, որ զստացաւ զսուրբ Աւետարանս ի վայելումն* Թադէոսի, *և ի յիշատակ ամենայն արեան մեր-ձաւորաց իւրեանց և փոխեցելոցն առ աստուած* զՇարմելիքն *և* զՄար-գարտիկն, *որ յայսմ ամի գնացին առ աստուած և են ի հոգուց կայանքն և կարգեցան ի կուսանաց դասն. Քրիստոս, որ առատն է ի տուրս պար-գեւաց, տացէ ամենայն հաւատացելոցս զարքայութիւն. և ստացողի սուրբ Աւետարանիս* Թադէոսի, *և կարդացողաց, և լըսօղո ամեն, եղիցի, եղիցի։ Արդ գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվականիս Հայոց ՊՁԸ. (1439), ձե-ռամբ ամենամեղ գրչի* Խաչատրոյ, *ի փառս ամենասուրբ երրորդութեան, որք աւրհնեալք յաւիտեանս, ամեն։*

Գ

7ա *Անարժան ծաղկողս* Մկրտիչ *աղաչեմ զքեզ հայր սուրբ... յիշեայ զիս զմեղաւորս։*

Դ

8ա Թադէոս *քահանայն աղաչէ յԱստուածածինն**։*

Ե

289բ *Յիշեցէք ի Քրիստոս* զՅովանէս *և զկենակիցն իւր* զՄամխաթուն, *որ ի տես Աւետարանիս երետ զխացհան. աստուած զիւր տեսն իւրանց տա-ցէ, իւր տղաոցն. ամէն***։

## 530

## ՄԱՇՏՈՑ

*Վիեննա 600, Հ. Ոսկեան, Ցուցակ, էջ 61—62*

*Գրիչ՝* Կարապետ
*վայր՝* Իշողի վանք

216ա *Փառք աստուծոյ ... որ զօրացոյց զիս զնուաստ և զանիմաստ ըզմե-ղուցեալ ծառայս անպիտան* զԿարապետ *աբեղայս, հասանել ի վերջին գիծ բազմաժողով տառիս և ծաղկաւէտ բուրաստանիս շարադրեալ յի-մաստնոց։ Արդ յայսմ ամի յորում թուականն էր Հայոց ՊՁԹ. (1440) ամի եղեւ գրաւ գրչութեան աստուածաշունչ տառիս, որ Մաշթոց կոչի, ի գա-ւառս* Եզընկոյ, *ի վանս որ* Իշողի վանք *կոչի, առ ոտս սուրբ Աստուածած-նիս, ի յառաջնորդութեան վանիցս* Մկրտիչ *կրօնաւորի, որ յայսմ ամի հարպետ եղաւ և ժողովեաց յոլով կրաւնաւորս և յոյժ կաշխատի. Քրիս-տոս որդին աստուածոյ գթայ յիւր հոգին և յիւր ծնօղացն, ամէն։ Այլ և*

* *Գրված է Թադեոս քահանայի պատկերի տակ։*

** *Հիշատակարանի ընդօրինակությունը շնորհակալությամբ ստացել ենք բանասեր Հ. Քյուրդ-յանից։*

*եղև ցանկացող այս սուրբ գրոյս աւրհնութեանց արժանաւորն և արժանին պարոն* Յոճանճէսճ, *և ետ գրել ի հալալ վաստակոց իւրոց յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց՝ հաւրն իւրոյ* Աբամելիքին *և մօրն* Շճոճօրի, *և այլ ամենայն արեան մերձաւորաց իւրոց, որք կան և որք ննջեցեալ են ի Քրիստոս, աստուած թողցէ զիւրեանց յանցանքն, ամէն։ Այլ և յիշեցէք* զՄխիթար *քահանայն, և* զԳրիգոր *քահանայն՝ զնորին որդի, և* զՍարգիս *քահանայն՝ զնորին թոռն, որ երեքեանս ի մի տուն են քահանայք, որ կամեցան և յորդորեցին և գիրքս սոցա ձեռօքն կենայ յիշատակ պարոն* Յովճանճիսին: *Ընդ նմին յիշեսջիք զիս՝ ղխոցեալ գծող սորին, և զծնողսն իմ։ Եւ որ լի և առատ սրտիւ յիշէ զստացող սորա և զգծող՝ Քրիստոս աստուած իւր սուրբ յարութեամբն գթասցի ի հոգիս նոցա, ամէն։*

## 531
## ԺՈՂՈՎԱԾՈՒ
*Երևան 10051*

*Գրիչ՝* Օքսէնդ

ա

107ա *Ընդ նմին յիշեսջիք և զստացաւղ գրոցս զհամշիրաք եղբայրն մեր* զՍսայի *կուսակրաւն աբեղայն, որ յոյժ սիրող է գրոց աստուածայնոց ու ընթերցող, և զիս՝ զանարհեստ գրիչս* զՕգսէնդ *ղուստանուն աբեղայս, և որ զմեզ յիշէ ի տէր՝ ինքն յիշեալ լիցի առաջի ահեղ ատենին Քրիստոսի, ամէն և եղիցի։*

*Թվիս Հայոց ՊՋԹ. (1440) ամի գրեցաւ։*

բ

228բ *Զմեղաւոր եղբայրս* զՕգսէնդ *աբեղայս, և զհամշիրակ եղբայրն իմ* զՍսայի *աբեղայն՝ զստացող գրոցս, ի տէր վարձատրեա միով տէր-ողորմայիւ, և աստուած զձեզ յիշէ յիւր միւսանգամ գալստեանն, ամէն և եղիցի։*

*Յամի մարդեղութեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ՌՆԽԶ. (1446) և Հայոց տումարիս ՊՂԵ. (1446) գրեցաւ։*

## 532
## ԱՒԵՏԱՐԱՆ
*Երուսաղէմ 1822*

*Գրիչ՝* ֆրա Դոմինիկոս
*վայր՝* ՇաճապօճՐ

501 *... Գրեցաւ յամի տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի Ռ.-երորդի չորսհարիւրերորդի քառասներորդի, և ի թուականիս Հայոց ութհարիւրերորդի Ջ. և իններորդի (1440), ի ձեռն անպիտան և սուտանուն գրչի* ֆր. Դոմինիկոսի. *ի գիւղս որ կոչի* Շւաճապօճս, *ընդ հովանեաւ սուրբ եկեղեցոյս, որ Աստուածածին կոչիւր։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան, ղպատուելի պատահողսդ սուրբ Աւետարանիս գրելով կամ կարդալով կամ տեսանելով, յիշեսջիք ի սուրբ և ի*

502 *մաքրափայլ յաղօթս ձեր զգրող սորայ, և զծնօղսն իմ, զհոգևոր և ,*
*զմարմնաւոր՝ զհանգուցեալսն ի Քրիստոս։ Եւ աղաչեմ, զի խոշորութեան*
*և անարհեստութեան գրոյս անմեղադիր լինել, զի այս չափ էր կար մեր...*
*Աւարտ սորա եղև յունիս ԺԳ. (13) օրն։*

## 533

## *ԱԻԵՏԱՐԱՆ*

*· Անթիլիաս 84*

*Վայր՝* Երուսաղէմ

*... Արդ, յանգ ելեալ աւարտեցաւ քառախոս և քառավտակ և քառա-*
*բուղխ սուրբ Աւետարանս ի սուրբ քաղաքիս* Երուսաղէմ, *ընդ հովանեաւ*
*հրեշտակապետացս Գաբրիէլի և Միքայէլի, և սրբուհւոյ ամենաւրհնեալ*
602 *Աստուածածնի, ձեռամբ յոգնամեղ և տարտամ ոգւոյ* Գրիգոր // *գրչի*
Արծկեցւոյ, *ի թվին Հայոց ՊՂ. (1441) ամին, ի կաթուղիկոսութեանն*
*Կիլիկեցւոց՝ տեառն* Գրիգորի, *և բռնակալութեանն եգիպտացւոց սուլ-*
*թան* Ջախմախին:

*Արդ, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով, քանզի*
*գրեցաւ սա յընտիր աւրինակէ, և ունի զհամաբարբառսն անսխալ, և տասն*
*խորանաց նշանագիրսն՝ կարմրագրով ի վերայ համարցն իւրաքանչիւր*
*աւետարանչացն, որ ցուցանէ զհամանգամայնս համաբարբառացն, թէ յո-*
*րում խորանի իցէ աւետարանչացն համաձայնութիւն, ի յայբէն մինչև*
*ի քէն։*

*Արդ, որք գաղափարէք ստուգապէս և ի վերայ ճշմարտութեան իրա-*
*ցըն հասանիցէք, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զմեղսամած*
*գրիչս* զԳրիգոր, *և զծնաւղսն իմ* զէլմէլիք, *և* զԳօհար, *եւ զվարդապետքն*
603 *իմ* զՅովանէս *վարդապետն, և* զՄանուէլ *աբեղայն, որ // վերըստին ծնան*
*զմեզ բանիւն աստուծոյ ի գործս յայս՝ ի յուսումն ընթերցողութեան և ի*
*յարուեստ գրչութեան. որոց տէր աստուած տացէ վարձս վաստակոց*
*նոցա և գրեսցէ զնոսա ի դպրութիւն կենացն, ամէն։*

*Եւ դարձեալ յիշեսջիք ի Քրիստոս աստուած զստացող սուրբ Աւե-*
*տարանիս* զՆերսէս *կուսակրաւն քահանայ, որ բազում աշխատութեամբ*
*ստացաւ զսա ի հալալ արդեանց ի յիշատակ իւր, և ծնողաց իւրոց՝ հաւրն*
Սարգսի *և մաւրն* Շնորհաւորին, *և հոգևոր եղբաւրն* Յովանէս *աբեղային՝*
*փոխեցելոցն ի Քրիստոս, և իւր ծնողաց, և եղբարցն իմոց* Թումային
Շահնշահին, *և քուերցն իմոց, և ամենայն ազգականացն մերոց՝ հոգևո-*
*րացն և մարմնաւորացն, և ուսուցչացն մերոց, և ամենայն երախտաւո-*
*րացն։ Նա և զերջանիկ վարդապետն* զԹումա Մեծոբցին, *և զայլ վարդա-*
604 *պետքն, որ յորդորեցին զմեզ և աւգնական եղեն և // ուղարկեցին* յԵրու-
սաղէմ: *Այլ և* զԿարապետ *վարդապետն՝ զխոստովանահայրն մեր, որ*
*բազում ժամանակ աւթեվան և հանգիստ եղև մեզ, աստուած պարգևէ*
*նոցա զվերինն Երուսաղէմ։ Այլ և զերջանիկ հոգևոր հայրն մեր զտէր*
Սարգիս *եպիսկոպոս* Կոիկոսու, *որ յոլով ժամանակ յաւտարութեանս*
*հանգիստ եղև մեզ։ Այլ և հոգևոր և զմիաբան հայր և զեղբարքս մեր*
զՂազար *վարդապետ, և* զՍարգիս *կրաւնաւոր քահանայ, և* զՅովաննէս, *և*

*զՍուքին դպիր, որ կրկին աշխատեցան ի յուղորդելն, և զմիաբան եղբարքս յիշեցէք ի Քրիստոս սրտի մտաւք։ Այլ և զխոնա Խաչէն, որ յորդորեց և աւգնական եղև զարդարելոյն, և զամենայն երախտաւորք յիշեցէք ի Քրիստոս և մեղաց թողութիւն խնդրեցէք, և աստուած զձեզ յիշէ և ձեզ պարգևեսցէ զերկնից արքայութիւն, ամէն**։

**534**

## ՃԱՇՈՑ

*Հատ 67, Տիսերան, Ցուցակ, էջ 115—116*

Գրիչ՝ Յովսէփ
վայր՝ Դեղձկի վանք

ա

523ա *Արդ, յանգ ելեալ աւարտեցաւ քրիստոսահիմն և առաքելախաւս, մարգարէաշէն և հոգիաբուխ այս տառ ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի սուտանուն Յովսէփ աբեղի։ Արդ, գրեցաւ սա ի թվիս Հայոց ՊՂ. (1441), ի դառնաբեր ժամանակիս, վասն ծովացեալ մեղաց մերոց...*

*...Արդ, գրեցի ես Յովսէփ աբեղայս զգիրքս զայս ընդ հովանեաւ սուրբ Թէոդորոսի զինաւորի, զոր այժմ* Դեղձկի *կոչի և այլ բազմահաւաք նշխարաց, յառաջնորդութեան սուրբ ուխտիս տէր* Ներսէսի *պատուելի եպիսկոպոսի, որոյ արարիչն զերկնից արքայութիւնն տայ ժառանգել, ամէն։*

*Յիշեցէք և զվանիցս միաբանքն* Սիմէոն *աբեղայն, և զսարկաւագներն՝* զՍարգիսն, զՎարդանն, Ղազարն, *տնտես* Յովաննէսն: *Դարձեալ կրկին աղաչեմ զամենեսեան զմանկունսդ սուրբ եկեղեցոյ յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զմեղուցեալ գրիչս* Յոսէփ, *և զուսուցիչն իմ* զԱրիստագէս *վարդապետն, և զծնաւղքն իմ՝* զՅակոբ *քահանայ աւտարամահ լինելով խարիպութիւն, վասն գնացել եղբաւրն իմ* Միքայէլին, *և զգովեալ եղբայրն իմ* զԱսման** *սարկաւագ՝ զհանգուցեալն առ Քրիստոս, սուրբ էր վարուք, և եղբաւրն իմ* Ասման *անուն և ցանկալի։*

*Զինչ զաղաւնի էր իւր հոգին*
*Ընդ ձագայխուռն երամովին։*
*Զեռըդ որ չառէ տուրք աղքատի*
*Կամ բարձրանայ ի յաղաւթի*
*Թող չորանայ նման գոսի,*
*Որ ի ծառէն անկեալ ջախի։*
*Ագահութիւն նմա[ն] հրի*
*Քանի ձգեն կու բորբոքի,*
*Թէ շատ տաս, թէ սակաւ*
*Յետոյ դառնա ամէն փոշի։*
*Արդ, որ գայք մեր զկնի*

---

* *Այս հիշատակարանից 3 տող տպագրել ենք սույն ժողովածուի Ա. մասում (էջ 529, հիշատակարան № 598), քաղելով Մ. Տեր-Մովսիսյանի Ցուցակից։*

** *Տպված է՝ «զՍաման»։*

Եւ հանդիպիք այսմ տառի,
Ձեզ աղաչեմ արտասուելի,
Յիշման արէք զմեզ արժանի,
Թէ տէր Յիսուս քաղցր է և բարի,
Թող զանցանս զՅովսէփ կրօնաւորին,
Եւ զմայրն իմ զՅալամ Խաթուն
Զանազան վշտաւք,
Լալագին դիմաւք,
Տառապեալ կենաւք
Որ զայսպիսի գեղեցիկ որդի ///

Բ

516բ Ելեալ կացի յայս կենցաղի,
Ի ժամանակիս որ ես հասի,
Ի թվականիս Հայոց մեծի
Ութհարիւր իննսունի (1441)[*]
Սրտիւ իմով ես բաղձացի,
Գրի զայս յոյս ինձ պիտանի,
Քանզի եղև ինձ յանկ բանի։
Ի գաւառիս այս Տիւրիկի։
Արդ աղաչեմ յամենայնի,
Ձեզ որդիք սուրբ Սիոնի,
Եւ որ սիրող էք մատենի,
Եւ ընթերցող այսմ տառի,
Յիշեսջիք սիրով սրտի
ԶՅովսէփ աբեղայ[ի],
Ննջեցելովք իւր համայնի,
Եւ ծնողաւք իւր և զարմի, ամէն։

## 535

### ԱՒԵՏԱՐԱՆ

«Բազմավէպ», 1950, էջ 271—274

ա

Գրիչ՝ Տէրունական
վայր՝ Սանահին

...Արդ ես՝ Տէրունական աբեղայս՝ յետինս ի կարգաւորաց յիշեցի զբան Մարգարէին, որ ասէ՝ Երանի որ ունիցի զաւակ ի Սիոն կամ ընդանի յԵրուսաղէմ. ընդ որս և ես մեծաւ յուսով և սուրբ սիրով գրեցի զԱւետարանս, զի թէպէտ չէի լաւագոյն հմուտ այսմ արհեստի, այլ սէր կատարեալ ի բաց մերժէ զերկիւղ։ Ապաւինեցայ յամենակարողն աստուած բանն հաւր և շնորհաւք սուրբ հոգւոյն կատարեցի, և ետու ծաղկել Յոհաննէս վարդապետի՝ տիրական պատկերաւք՝ բոլոր տնօրինականաւք, փառա-

[*] Գրված է՝ «ՊՂ» (890)։

*ւոր աւետարանչօք և գեղեցկատեսիլ խորանօք, և գիւրահայեաց ծաղկաւք և գոյն-երանկ դեղօք, և ծերացեալ ալեօք աշխատեալ և նեղացեալ յրլով և կատարեալ կարողութեամբն աստուծոյ։ Նոյն և ես* Տէրունակյան *ծերացեալ և նեխեալ անձամբ, յետինս աշակերտաց սորա, որով վստահացոյց զիս ի շուք պատկերաց, կատարեցաւ շնորհօք սուրբ հոգւոյն. դառն և դժնեա ժամանակիս, որով էառ ղՇամշուլտա Ջահանշահ ամիրղէն՝ գերեաց և կոտորեաց, ի թվ. ՊՂ. (1441), ի յերկնահանգէտ ի գեբահռչակ սուրբ ուխտս* Սանահին, *առ դրան մօր լուսոյ Աստուածածնիս, կամակցութեամբ եղբարցս* Ներսէս *փիլիսոփաի և այլ միաբանիցս։*

*Արդ, ես* Տէրունականս՝ *հողս և մոխիրս՝ ստացայ զսուրբ Աւետարանըս յիշատակ ինձ, հոգոյ իմոյ, և ծնաւղաց իմոց՝ հօր իմոյ* Եռիլին *և մօր իմոյ* Թամթա-խաթունին, *եղբարց իմոց և քերց, և ամենայն արեան մերձաւորաց, որք ի Քրիստոս են հանգուցեալ։*

*Վասն որոյ յերեսս անկեալ աղաչեմ զհամայրդումար դասքդ քահանայից, որք աւգտիք ի սմանէ և լուսաւորիք սովաւ. յիշեցէք ի Քրիստոս զիս՝ ըզբազմամեղս* զՏէրունակյան, *որ ստացայ զսա յիշատակ ինձ և ի վայելումն, զի մեծ յուսով ստացայ և սիրով Քրիստոսի գրեցաւ և ծաղկեցաւ յոյժ տաժանմամբ։*

*Այլ և բարերարն աստուած տացէ զիւր առատ ողորմութիւնն մեզ և ձեզ։ Դարձեալ յերեսս անկեալ աղաչեմ ղհանդիպողըդ աստուածախօս բուրաստանիս, զի սահման է զգալի աչացս նայել ի գեղեցիկ իր՝ լուսաւորի միտքն և իմաստանա, քաղցրանա կամքն և ուրախանայ։ Ապա ախորժի զգայարանքն և տայ ի լեզուն ըշահարար սերմն ի լսելիս բազմաց և բերէ զպտուղ անուշ և արդիւնարար, այսինքն՝ զբարի յիշումն և զաստուած-ողորմեայն ի խորոց սրտէ։*

*Արդ, որք նայիք ի ծաղկազարդ և հոգելից դրախտս յիշեսջիք առհասարակ զգրեալքս ի սմա ի սուրբ աղաւթս ձեր և ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յիշելոցս ողորմի Քրիստոս աստուած և նմա փառք յաւիտեանս, ամէն։*

Բ

*Ստացող՝* Պետրոս

*Ես տէր* Պետրոս *թողի զԱւետարանս ի հալալ արդեանց իմոց յիշատակ ինձ, և ծնողաց իմոց, և կողակցին իմոյ* Նիկարին, *և որդւոցն իմոց* Ղուկասին, Հայկազին, Գրիգորին, Անտոնին, *և դստերացն իմոց* Սառային, *և* Եղիսաբետին, *և հարսին իմոյ* Սիրայ-խաթունին, Մարիանին, *և թոռանց իմոց* Պետրոսին, Մելքոնին, Քասպարին, Անտոնին, *և միւս այլ* Պետրոսին, *և դստերաց նորին* Մարիանին, Խաթունհանին, Յարութին. Սալվինազին, *և այլ ամենայն արեան մերձաւորաց իմոց՝ կենդանեաց և հանգուցելոց, ամէն։ Այլ ոչ ով դաւի չինի, ոչ իմոց և ոչ աւտարաց, եթէ քահանայ լինի ազգի իմոյ պաշտելոյ զսուրբ Աւետարանս և եթէ ոչ՝ յիշատակ տանն իմոյ մնասցէ մինչև ի խորին ծերութիւն։*

*Աստուած ողորմի տէր* Տէրունականին, *որ գրեաց զսուրբ Աւետարա-*

նըս և ծախեաց մեզ, ամէն։ Եւ զիս անարժան Մկրտիչ մի բերան յիշեցէք՝ գրող յիշատակարանիս*։

## 536
## ԱՒԵՏԱՐԱՆ

Բ. Կիւլէսէրեան, Ցուցակ Անկիւրիոյ, 178, սյուն. 868—870

Գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Անկիւրիոյ սուրբ
Աստուածածնի վանք

ա

646բ— ...Ըստ աւրինակի բազում կարեաց մարդկան՝ բազում են և աւրինակ
649ա աստուածապաշտութեան, որովք ընտանենայ մարդ աստուծոյ և շահի ղփրկութիւն անձին։ Յորոց մի է և ստանալն զսուրբ եկեղեցիս և ղարդարել ամենայն սպասուք, նաև աստուածային սուրբ գրենօք՝ ի մխիթարութիւն հոգոյ և խրատ աստուածապաշտութեան։ Ըստ այսմ մասին աստուածարեալ քահանայս՝ ալ[ե]ւք ծաղկեալ ծերունիս սուրբ կրաւնաւորըս Յակոբ, ստացաւ սուրբ Աւետարանս զայս ի վայելումն քուերորդոցն Գաւիթ քահանային, և դեռաբոյս որդոցն Մովսէս սարկաւագին և Վարդանին, ի պայծառութիւն տաճարին սուրբ Սարգիս կոչեցեալ, և խաչին սուրբ Նշանին Անկուրոյ բերդին, յիշատակ իւր, և ծնաւղին իւրոյ փոխեցելոյն առ քրիստոս Յոհանէս քահանային, և մաւրն իւրոյ Մայրանէ, և ամենայն զարմից իւրեանց։

Բայց եղև գրաւ սորա ի թուիս Հայոց ՊԴ. (1441), ի հայրապետութեան տեառն Գրիգորի: Գրեցաւ ձեռամբ մեղսաթաւալ և անպիտան գրչի Ստեփաննոսի սուտանուն աբեղ[ա]յի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին ի վանքս Անկուրիոյ, ի յառաջնորդութեան տէր Յովսեփի, և այլ միայբան եղբարցս՝ Յովանէս կրաւնուորի, և Աբրահամ կրա[ւ]նաւորի, և քարտէս կոկողի, և այլ սպասաւորաց սուրբ ուխտիս։ Յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր, յիշողացդ և յիշելոցս ողորմեսցի Քրիստոս աստուած, ամէն։

բ

649ա Արդ, ես Նուասա ծառայս աստուծոյ Աւժիտ մղտեսիս, որ ցանկացող եղէ սուրբ Աւետարանիս, գրել ետու ղսայ հոգւոյ իմոյ յիշատակ ինձ, և հանգուցեալ եղբօր իմոյ Սարգսին, և ծնօղաց իմոց պարոն Եւստին, և իմ մօրն Ճուճարին, և իմ կողակցին Փաշային:

Արդ, որք ընթեռնոյք զսոսկալի սուրբ Աւետարան[ս] յիշեսջիք զպարոն Աւժիտն, զի եդ զսուրբ Աւետարանս յիշատակ ի յԱ[ն]կուրիոյ բերթն՝ ի սուրբ Խաչն և ի սուրբ Սարգիս եկեղեցին, սեփական յիշատակ հոգոյ իւրոյ և կարդացաւղացդ և լսաւղդ, որք լուսաւորիք ի սուրբ լուսաւոր և հրաշալի սուրբ Աւետարանէս՝ ողորմեսցի Քրիստոս ձեզ և մեզ, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

* Բացի «Բազմավեպ»-ում (1950, էջ 271—274) տպագրվածից, ձեռքի տակ ունեցել ենք նաև այս ձեռագրի հիշատակությունների Բաբկեն եպիսկոպոս Վարդապետյանի կողմից խնամքով կատարված ընդօրինակությունը, որի օգնությամբ սրբագրել ենք տպագրի վրիպակները։

Գ

*Դարձեալ աղաչեմ, յիշեսջիք ի տէր սրտի մտաւք զեղկելի գրիչս, և զծնաւղքն և զեղբարքն իմ՝ զկենդանիքն և զհանգուցեալքն և զուսուցիչքն։ Եւ որ յիշէ, յիշեալ լիցի ի Քրիստոսէ, ամէն։*

*Արդ, աղաչեմ որք հանդիպիք սմայ կարդալով կամ աւրինակելով, անմեղադիր լերուք սղխալանաց, քանզի աւտար էի ի տեղացս և չունի տեղ առանձին նստելոյ. խալխպա էր տեղն և եւ մուտ, և ջուլուհակն կու գործէր ու խաղ այլ կու աւէր, և ես տկարամիտ, այս չափ էր կարն իմ, և Քրիստոսի փառք յաւիտեանս ամէն։*

Դ

*Կազմող՝* Աբրահամ

*Ընդ նմին և զանպիտան կազմողս սուրբ Աւետարանիս՝ զ*Աբրահամ *ստտանուն աբեղայս, և զհայրն իմ, և զմայրն իմ, և զեղբայրսն իմ՝ զկենդանիս և զհանգուցեալս, աղաչեմ խնդրել մեղաց թողութիւն ի բարերար տեառնէ, որք պատահիք այսմ սուրբ տառիս, և աստուած ձեզ և մեզ առ հասարակ ողորմեսցի, ամէն։*

*Կազմեցաւ սուրբ Աւետարանս թվին ՊՂԱ. (1442)։*

## 537
## *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Երևան 3892**

*Ծաղկող՝* Մինաս
*վայր՝* Մեծոփա վանք

ա

11ա *Զեղկելիս զ*Մինաս *ծաղկող յիշեցէք ի բարին Քրիստոս և աստուած զյիշող յիշէ [յի]սրում գալըստեան ատւր, ամենայն բանք ապ[ա]ռին և գործք թագաւորէն և զձեզ և ինձ։*

Բ

*Ստացող՝* Մահդասի պառաւ

10բ *Յիշեցէք ի Քրիստոս զմահդասի պառաւդ՝ ստացող սուրբ աւետարանիս։*

## 538
## *ԽԱԶԳԻՐՔ*

*Վիեննա 1022, Հ. Ոսկեան, Ցուցակ, էջ 612*

218ա *Զստացող մատենիս և զվերստին նորոգողս աղաչեմ յիշել ի տէր ծնօղօվք իմովք, և աստուած յիշողացդ ողորմեսցի, ամէն։ Ի թուին ՊՂԱ. (1442), յունիսի ԺԱ. (11)։*

---

** Այս ձողովածուի Ա մասում (էջ 521), 1441-ի թվաշարքում, տեղագրված է ձեռագրիս (համարը վրիպակով տպված է՝ 3802) գլխավոր հիշատակարանը։ Նկարչի ու ստացողի լրացուցիչ հրատարակվող հիշատակագրությունները գրված են ցույց տրված էջերի վրա եղող նկարների տակ։*

## 539

### ՃԱՇՈՑ

*Բ. Կիւլէսէրեան, Ցուցակ Անկիւրիոյ, 159, սյուն. 791—792*

Գրիչ՝ Վարդան
վայր՝ Անկիւրիոյ սուրբ
Հոգի եկեղեցի

ա

408բ *Ցայս հրաշափառ մեծի տանիս*
*Քեզ երանի, որ հանդիպիս*
*Լուսափթիթ բուրաստանիս,*
*Հոգիաբուխ սրբոյ տառիս.*
*Երբ լի սրտաց ծունր կրկնես,*
*Սիրով հոգւոյդ յաստուած հայիս,*
*Ցայնժամ յիշեա դու զեղկելիս՝*
*Զ*Վարդան *գծող գրիս,*
*Զմեղաւք ծածկեալս ի մէջ տղմիս։*

*Գրեցաւ սուրբ գիրքս ձեռամբ* Վարդան *անարժան աբեղայիս, ի թուաբերութիւն ՊՂԲ. (1443), ընդ հովանեաւ սուրբ եկեղեցոյս, որ Սուրբ հոգի կոչի, յիշատակ բարիսէր քահանային* Նիկալի, *և կողակցին իւրոյ* Մարիանէի, *և ծնաւղացն իւրեանց։ Եւ տացէ տէր աստուած զյաւիտենից հանգիստն և զանսպառ ուրախութիւնն, ամէն։*

Բ

202բ *Զքարոզ պատուիրանիդ կարդայ ի բեմն՝ առաջի ժողովրդեան, բարձր ձայնիւ և հառաչմամբ սրտիւ, և զիս զ*Վարդան *գրիչս յիշեա։*

Գ

276բ *Զգրող աստուածաշունչ տառիս՝ զ*Վարդան *աբեղայս, և զծնաւղսն իմ, և զամենայն արեան մերձաւորս իմ յիշեսջիք ի Քրիստոս աստուած։*

Դ

353ա *Երրորդ կիրակէն աշխարհամատրան է. առաւօտուն կարդա և զ*Վարդանս *յիշեա։*

## 540

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Զմմառ (Անտոնեան հաւաքածոյ) 95*

Գրիչ՝ Գալուստ
վայր՝ Աղջոց վանք

*... Գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուականիս Հայոց ՊՂԲ. (1443), ի հայրապետութեան տեառն* Կիրակոսի, *և ի թագաւորութեան վրաց* Վաղթանկին, *և ի ղանութեան* Ջահանշահին՝ *որդոյ* Յուսուփին, *ի գաւառս* Արարատեան, *ի ձորս* Քեղոյ, *ի վանքս* Աղջոց, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Կաթուղիկէիս, և սուրբ Ստեփանոս նահատակիս,*
235ա *|| և սուրբ Աչոյս, և Թրի սուրբ Նշանիս, և սուրբ Խաչիս, և Թեատ սուրբ Գրիգորիս, և այլ բազմահաւաք սրբոցս, որ աստ կան հաւաքեալ, ձեռամբ*

յոգնամեղ և անիմաստ գրչի Գալստի՝ անուամբ միայն աբեղայի և ոչ գործով։ Այլ և աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք այս սուրբ Աւետարանիս տեսանելով կամ կարդալով կամ աւրինակելով, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զվերոգրեալս ի սմա և աստուած զձեզ յիշէ յիւր ողորմութիւնն ամէն, եղիցի, եղիցի։

Այլ մեք՝ Սամուէլ մահդասի և ամուսին իմ Փաշիկ, ստացաք զսուրբ Աւետարանս յիշատակ մեզ, և ծնաւղաց իմոց՝ հաւրն իմ Վարճամշին և մաւրն իմ Աւսախաթունին, և եղբաւրն իմ Մատուրին, և զաւակին իմոյ փոխեցելոյն ի Քրիստոս Մանուէլին, և այլ ամենայն մերձաւորաց։ Եւ տուաք զսուրբ Աւետարանս ի դուռն սուրբ ուխտին Վարդիկ հաւրն, յիշատակ մեզ և ծնողացն մերոց։ Եւ հաստատուն պահողք և խնամողք սորա պահէ Քրիստոս աստուած յամենայն փորձութենէ և իւր տեսլեանն առնէ արժանի։

235բ Եթէ որ հանել ջանա զսուրբ Աւետարանս ի դրանէ սուրբ ուխտին, կամ խլել, կամ ծախել, նայ հանէ զնա Քրիստոս աստուած յիւր տեսոյն և յիւր փառաց և յիւր ողորմութենէն, և յամենայն սրբոց նզովեալ լիցի։ Եւ սղալանաց և խոշորութեան գիս անմեղադիր լերուք, զի կարն մեր այս էր. աղաչեմ մի մեղադրեր։

## 541
## ԺԱՄԱԳԻՐՔ ԵՒ ԽՈՐՀՐԴԱՏԵՏՐ

Երևան 2470

ա

Գրիչ՝ Ներսէս
վայր՝ Մեծոփայ վանք

160ա Արդ գրեցաւ սուրբ խորհրդամատոյցս պատարագի ի յերկիրս Քաջբերունեաց, ի սուրբ ուխտս Մեծոփայ վանք կոչեցեալ, ընդ հովանեաւ տիրամօր Սուրբ Աստուածածնիս, և սուրբ Յակոբայ հայրապետիս, և սուրբ վարդապետաց գերեզմանացս, ի թվականիս Հայոց ՊՂԲ. (1443), ձեռամբ անարժան և անպիտան և անիմաստ գրչի Ներսէս վարդապետի, առ ոտս տիեզերալոյս և քաջ բաբունապետի Թովմայ վարդապետի, ի խնդրոյ սրբամիտ և կուսակրաւն քահանային Մէլքիսեդի:

բ

Խմբագրող՝ Թովմայ Մեծոփեցի

Արդ, ես մեղապարտս ի ծնունդն եկեղեցոյ Թումայ պիտականուն վարդապետ, ի Քաջբերունեաց գաւառէ, ի սուրբ ուխտէն Մեծոբայ, ի
160բ կարգէ աշակերտաց մեծ վարդապետացն Սարգսի և Վարդանայ // և Գրիգորի Տաթեւացոյն, սրբագրեցի զգիրս հրեշտակաց աղոթից ինն ժամու, որ կատարի ի դէմ երրորդութեանն, ի փառս Քրիստոսի աստուծոյ մերոյ*։

* Ձեռագիրն ու հիշատակարաններն ընդօրինակված են ԺԷ. դարում։

## 542

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4941

Գրիչ՝ Կարապետ

286ա Գրեցաւ սուրբ Աւետարանս թվականիս Հայոց ՊՂԲ. (1443)...

Արդ, ի վերջին աւուրս և երեկոյացեալ ժամանակիս, տեսեալ վսորա զմեծութիւնս երջանիկ ոմն և աստուածային ձրիւքն բարգաւաճեալ պատուական և նազելի հաւատարիմ և աստուածային աւրհնութեանց արժանաւոր խոջայ Մէլքոնն, և ցանկացաւ այսմ աստուածային և փարթամ գանձիս, և ստացաւ զսա յիշատակ բարի հոգոյ իւրոյ, և ծնողաց իւրոց՝ պարոն Ստեփանոսին, և մաւրն Բուղան-Խաթունին. և եղբաւրն իւր խոջայ Խուդայդատին, ողորմելի մահուամբ և երիտասարդ հասակաւ փոխեցաւ առ Քրիստոս և եղև սուգ անմխիթար ծնաւղին իւրոյ և այլ ամենայն ազգականացն։

Արդ, աղաչեմք զամենեսեան, որք հանդիպիք սմա տեսութեամբ կամ կարդալով և լսելով և կամ աւրինակ դնելով, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զվերջին ստացող սուրբ Աւետարանիս զխոջայ Մէլքոնն, և զծնաւղսն իւր զՍտեփանոս և զԲուղան, և զհանգուցեալ եղբարն զԽու-
286բ դա//դադն, և զմեծ պապն զՔրիստոսատուրն, և զՓաշամէլէք, և զայլ ամենայն ազգականսն՝ զկենդանիսն և զհանգուցեալսն ի Քրիստոս...

287ա Զձեզ աղաչեմ զամենեսեան
Որ հանդիպիք սմա տեսլամբ,
Զտէր սորա յիշել անուամբ
Յաղաւթս ձեր սուրբ մաքրական,
Զխոջայ Մէլքոնն՝ այր ցանկալի,
Եւ զծնօղքն իւր ընտրելի,
Որք են բարիք և գովելի,
Եւ ողորմածք յամենայնի,
Սոքա սիրեն զեկեղեցի,
Պատիւ առնեն քահանայի.
Վեհ մարգարէն մեծն Եսայի
Սոցա տացէ շատ երանի,
Թէ՝ Երանի որ ունիցի
Զաւակ ի Նոր եկեղեցի։
Ի գալստեան աւուր մեծի,
Յորժամ աշխարհս կատարի
Սոքա լսեն զերանելի
Զայն աւրհնութեան և զհրճուալի.
287բ Հանդերձ ծնօղաւքն իւ//րեանց բարի,
Ազգատոհմաւքն յամենայնի։
Յիշողքդ զնոսա մի[շտ] ի բարի.
Ասել Խուդայդատին տէր ողորմի,
Փոխարինացդ որ դուք ///

Միով բանիւ անձանձրալի.
Յանճար գանձուցն ձեղ բաշխի,
Յամենառատ պարգւատուի,
Նա և ինձ մեղապարտի
Գծագրող Կարապետի,
Որ սակաւ գիրս գրեցի,
Եւ ծնօղացն իմ ըստ մարմնի,
Ջնոսա յիշել ի յաղաւթի,
Ասել նոցա տէր ողորմի...

## 543
## ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Երուսաղէմ 3420

Գրիչ՝ Յոհանէս
վայր՝ Յովս գիւղ

440 ...Արդ, գրեցաւ եղանակաւոր տառս, որ կոչի Մանրուսումն ի գեղս, որ կոչի Յովս* ի դրան սուրբ երրորդութեանն և ի թվականութեան Հայկազան տոհմի ՊՂԲ. (1443), ձեռամբ անարհեստ և փծուն գրչի Յոհանէսի ///

## 544
## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7734

Հետ. գնող՝ Թադէոս

355բ Արդ, ես յետինս ի յամենայնի՝ ստացող սուրբ Աւետարանիս Թադէոս. որ ի բազում ժամանակաց սայ ի ձեռս այլոց <էր> անկեալ էր ու մեր հայրական յիշատակ էր։ Մեք այլ զմեր հոգոյ բաժին զամէն խարջեցաք, զմեր հայրական յիշատակն՝ Աւետարանս առաք բազում աշխատութեան յիշատակ կրկին մեզ, և ծնողաց մերոց՝ հաւր իմոյ Կարապետին և մաւր իմ Թաւվերէժ-Մելիքին, և հաւրեղբաւրն Վարդանա, որ մականուն Ճաւիկ կոչեցեալ, և եղբաւրն Պալիկին, և հաւրնքուրոչ իմ Սուրաթին. և քուվերաց իմ Աղ- Մելիքին և Սաւա-Մելիքին և Ազիզ-Մելիքին, և կենակցին իմ Իկդիշին, և զաւակին իմ Առաֆելին, և դստերն իմ Բեկխաթունին, և հարսին իմ Թաւվերէժ-Մելիքին, և զաւակաց սորայ՝ Հայրապետին և Բէկլարին և Սուրաթ-խաթունին, և ամենայն արեան մերձաւորաց մերոց։ Եւ յիշողացդ և յիշելոցն առհասարակ ողորմեսցի տէր աստուած, ամէն։

Ընդ նմին յիշեցէք և զհայրազատ եղբայրն իմ Անոչ, որ փոխեցեալն է առ Քրիստոս։ Թվիս Հայոց ՊՂԳ. (1444)։

Աստուած ողորմի Գուզումին, որ բազում աշխատանք քաշեց հետ սուրբ Աւետարանիս։

* Ջնջված է, վերծանությունը կասկածելի է։

## 545

## ԺԱՇՈՑ

Բ. Կիւլէսէրեան, Ցուցակ Անկիւրիոյ, 308, սյուն. 1296

Ստացող՝ Թովմա Մեծոփեցի
վայր՝ Մեծոփայ վանՐ

ա

479բ Արդ, յերեսս անկեալ պաղատիմ քրիստոսասէր քահանայիցդ և աստուածապատիւ պաշտաւնէիցդ, որք կարդայք կամ ընթեռնուք ի մեծի և ի հրաշափառ տաւնիս, յիշեսջիք ի սուրբ և ի մաքուր յաղօթս ձեր զստացաւղ աստուածային կտակիս՝ զմեզապարտս ի մանկունս եկեղեցւոյ՝ զառաջնորդս սուտ՝ աստուածաբնակ անապատիս Աստուածածնի, որ այժմ Մեծոփայ վանք վերաձայնի՝ զվարդապետս Թովմա*, և զորդեակս իմ զՅովհաննէս եպիսկոպոս, և զաստուածապաշտ ծնաւղքն մեր՝ զՍտեփաննոս և զՍիմէոն քահանայն, և զամենայն արեան մերձաւորսն մեր, և աստուած-ողորմի ասացէք մեզ, և Քրիստոս աստուած ձեզ ողորմեսցի և տացէ ձեզ թողութիւն մեղաց և քաւութիւն յանցանաց, ամէն։

բ

619բ Քրիստոս, որդի աստուծոյ, անարատ ծնողի քո բարեխաւսութեամբ և ամենայն ընտրելոցն քոց, զցաւղ շնորհեաց ողորմութեան քոյ ցաւղեա ի յոգի և մարմին ստացողի գրոցս՝ Յովհաննէս արհեպիսկոպոսին, և ծնողաց նորին՝ Սիմէոն քահանային և Մերեքին:

## 546

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿԵԱՑ ԹՂԹՈՑՆ ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

Երևան 6120

ա

Ոմն՝ Ովհաննէս

120ա Զաղքատս կրկին կենօք զՈհաննէս սպասաւոր բանի չաղօթս յիշել աղաչեմ։

բ

Վերջին ստացող՝ Թովմա Մեծոփեցի

120բ Ընդ առաջին աշխատողացն և զվերջին ստացողս զպիտականուն վարդապետս Թովմա աղաչեմ յիշել ի տէր հանդերձ ծնողաւք կրկնակի, և ամենայն արեան մերձաւորաւք, և Քրիստոս որդին աստուծոյ զձեզ յիշէ իւր միւս անգամ գալըստեանն, ամէն։

* Թովմա Մեծոփեցին վախճանվել է 1446 թվականին, ուստի նրա այս և հաջորդ հիշատակարանները գրված պետք է լինեն ամենաուշը այդ թվականին։

## 547

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 744

Գրիչ՝ Մկրտիչ վարդապետ
վայր՝ Մեծոփայ վանք

ա

Արդ՝ ես ունայնս ի բարեաց և լցեալս ի չարեաց Մկրտիչ սուտա-
256ա //նուն վարդապետս ցանկացեալ եղէ աստուածային գանձիս և անգին մարգարտիս, եւ մեծաւ տենչմամբ և եռափափակ սիրով խնդրեցի ի վեհագոյն պետէն իմմէ և ի րաբունապետէն Թումայի, որ փայլէ ի յաւուրս մեր իբրև արեգակն ի մէջաւրէի յազգս Հայոց, ի յերկիրս Քաջբերունի՝ ի հրաշափառ սուրբ ուխտս Մեծոփայ: Որ և սա նորոգեաց ղաղօթնիս, որ էր ծեքեալ և եղծեալ ի սղալագիր գրչաց և անմիտ արանց, զոր հոգ յանձին տարեալ ըստ ըրում իմաստութեամբ և տւեալ շնորհացն և յաւժընդակութեամբ հոգւոյն սրբոյն կատարեաց՝ զսղալն ուղղելով և զաւելորդն բառնալով և զպակասն լնլով. և եթող գանձ անկողոպտելի և յիշատակ բարի ի սուրբ եկեղեցի, յորոյ յիշատակն աւրհնութեամբ եղիցի։
257ա Զոր և ես ան//պիտանս բազում անգամ աղաչեցի, զի մատամբ իւրով գրեսցէ։ Եւ վասն բնածին բարուցն իւր, զոր պարգևեալ էր հոգին աստուած, ձեռն ի գործ արկեալ և վասն անկ յարմար նիւթոյն ոչ յաջողեցաւ՝ ետ գրել ձեռնասուն աշակերտին իւրոյ՝ հոմանուն Թումայի*:

Բ

27ա Քրիստոս աստուած... ողորմեա ստացողի սուրբ գրոցս՝ Յովհաննէս արհեպիսկոպոսի, և ծնաւղաց իւրոց՝ հանգուցելոցն ի Քրիստոս Սիմէոն քահանային և Մերեթին, և ամենայն արեան մերձաւորաց իւրոց, ամէն։

Այլ և երջանիկ հաւրս մերոյ՝ Թովմա վարգապետին, և եղբարց իւրոց պարոն Դօրգի-Մելիքին, և Յովհաննէս քահանային, Յովանիսին, Ռստակիսին, Ամիր-Մելիքին և Սօլթանշին, և աստուած ձեզ**:

## 548

### ՃԱՇՈՑ

Ղ. Ալիշան «Հայապատում», Բ, էջ 575*

Գրիչ՝ Մինաս
վայր՝ Արապկերոյ երկիր, Փրկչի վանք

Որք աստուծոյ և աստուածայնոցն են ցանկացողք և հետևողք, և յառ ի նմանէ աստուածաբաշխ իմաստիցն ճաշակեալք, յամենայն աշխար-

* Ձեռագիրը ժողովածու է, ընդօրինակված 1638 թվականին, Յովհաննէս քահանայի կողմից։ Նա, բարեբախտաբար, մեջ է բերել նաև նախագաղափար օրինակի այս հիշատակարանը, որն անթվական է, բայց գրված է Թովմա Մեծոփեցու կենդանության օրոք, ուստի 1446 թվականից առաջ։

** Կան ևս 3 փոքր հիշատակագրություններ։

հազբօս խաբէապատիր հոգոց բարեաւ մնալ ասացեալք. որպէս և ամենայն դասք սրբազանիցն ընտրեալք սուրբք, որք զաշխարհ և զամենայն ինչ որ յաշխարհիս առ ոչինչ համարեցան յաչս իւրեանց, այլ միշտ զվերինն խորհելով՝ ուր Քրիստոս նստի ընդ աջմէ հօր... Որոց և նմանող, ընթացող և հետևւող, տինա յաւէտ մի ի նոցանէ տեսանեմք այսաւր զպատուեալս յաստուածայինսն գերալրապէս և ի մարդկայինս արժանապէս՝ զխակապէս հետևողս աստուծոյ և աստուածայնոցն, զառաւելեալս յամենայն առաքինական և ի սրբազնական վարս, վեհագոյն գտեալ ամենայն համացեղից եղբարց՝ տէր Կարապետ կաթողիկոս ամենայն Հայոց։ Որ և փառաց արժանաւոր գտեալ և անուն բարի ստացեալ և գործս հրաշազանս կատարեալ, որով աստուած հայր փառաւորեալ, և զթագն արքայական սուրբ արփիաւորչին մերոյ ի գլուխ եդեալ և հրաշալի պատուով պսակեալ, և յաջորդ սուրբ Լուսաւորչին յաթոռ հաստատեալ, և վերստին կրկին նորոգեալ զաթոռ մայրաքաղաքիս Կիլիկոյ. և զհետ հետոց նախնեացն ընթացեալ, մաքրազարդ այցելուս և պատրիարք առաքելաշնորհ սուրբ աթոռոյս, հաստատեալ ի յաստուածաբնակ սուրբ ուխտս տէր Պաւղոսի, որ կայ ի հարաւակողմն քաղաքիս Սսոյ, ընդ հովանեաւ Վանկոյ սուրբ Նշանիս, և սուրբ աջոյն Գրիգորի մեր լուսաւորչին, և մաւրն տիրամաւր Աստուածածնին՝ Աննայի, յորոյ անուն կառուցեալ կայ եկեղեցի։ Զոր նախնեացն հետևող գտեալ մեծ պատրիարք տէր Կարապետ, հանճարեղ և կորովամիտ, քաջ հռետոր և վարդապետ աստուածաբան, անտարակոյս գիտող և խոհեմ, մեկնաւղ հին և նոր աստուածաշունչ կտակարանաց, մանաւանդ առնող և ուսուցանող, տեառն իւրում նմանելով և զարծաթն ի հոգևոր սեղանս արկանելով։ Սա աստուածարեալ այրս՝ տէր Կարապետ կաթողիկոս՝ ի վերայ իւր անբաւ բարեացն և անմոռանալի յիշատակացն, մանաւանդ տանն աստուծոյ և նորին սպասուցն զարդարմանց, ստացաւ զսուրբ մատեանս աստուածային, որ Տարեգիրք կոչի յիշատակ իւր, և ծնողաց իւրոց, և եղբօրն պարոն Առաքելին, և եղբաւրորդւոյն տէր Գրիգորին, և ամենայն արեան մերձաւորաց իւրոց։

Արդ, այս երջանիկ հայրապետս տէր Կարապետ կաթողիկոս՝ եկեալ ի Թօխաթոյ և վերստին հաստատեաց զսուրբ աթոռս Լուսաւորչին ի մայրաքաղաքս Կիլիկիոյ, զոր Ե (5) ամ խափանեալ մնաց վասն անյայտ լինելոյ սուրբ Աջին մերոյ լուսաւորչին. և յետոյ գտեալ նորոգեաց զսուրբ աթոռս. և ելեալ գնաց յԵրուսաղէմ, և երկրպագեաց սուրբ տեղեաց տնօրինականացն Քրիստոսի, և տեսեալ զամենայն պակասութիւն Հայոց վանացն սրբոյն Յակոբայ, զի յայնմ ժամանակի եկեղեցին Հայոց սուրբ Յակոբ ի ներքև պարտուց անկեալ կայր, և խաչ և աւետարան և շուրջառ ի ձեռս այլազգեաց յաւանդ կային։ Եւ անտի ելեալ տէր Կարապետ կաթողիկոսն գնացեալ էջ յԵգիպտոս՝ առ սուլտան Տահիրն, և մեծարեալ պատուեցաւ ի նմանէ. և առեալ խիլայս մեծագինս և պարգևս մեծամեծս, որպէս օրէն է թագաւորաց՝ տալ պարգևս մեծամեծաց ըստ արժանեացն։ Եւ եկեալ կրկին յԵրուսաղէմ, և ազատեաց զեկեղեցին ի պարտուց, և զսրբութիւնսն ի յանաւրինաց։ Եւ անտի եկեալ սեփականեաց զսուրբ աթոռս Կիլիկեցւոց. ի սուրբ ուխտս տէր Պաւղոսի, զոր տէր աստուած վայելել տացէ նմա զաթոռ և զաստուածաշունչ գիրքս, և անջինջ յիշատակ պահեսցէ նմա, և

ծնողաց իւրոց, և եղբարցն պարոն Առաֆելին, և եղբաւրորդոյն տէր Գրիգորին, ամէն։

Արդ, գրեցաւ սուրբ մատեանս աստուածային ձեռամբ գրչի Մինաս սարկաւագի, ի յերկիրն Արապկերոյ, ի մեծ հռչակաւոր ուխտն Փրկչին, զոր տէր ի կերպարանս երևեալ եղին եղջեներաւորի Ապլակիդոսի, և խաչ սառնանման ի յեղջիւրսն. և ելեալ ձայն ի խաչէն առ Ապլակիտոս և ասէ. Զի հալածես զիս։ Եւ նա ի տեսլէնէն զարհուրեալ դարձաւ ի տուն իւր, հաւատաց ի Քրիստոս, և մկրտեցաւ ամենայն տամբ իւրով, և անուանեցաւ Ստաթէոս, և շինեաց զտեղին վանս հռչակաւորս և անուանեաց զտեղին Փրկչին վանք։ Զոր յանգ ելեալ աւարտեցաւ սուրբ գիրքս ձեռամբ յոգնամեղ և տարտամ ոգւոյ Մինաս սարկաւագի ի թըւականութեան հայկազեան տումարի ՊՂԵ. (1446) ամի, ի հայրապետութեանն Կիլիկեցւոց տէր Կարապետի, և ի թագաւորութեանն Եգիպտոսի սոլթան Տաճիրի՝ ազգին մահմեդականի...

Այլ և յիշեսջիք ի Քրիստոս զՄինաս սարկաւագ գծող գրոցս, և զծնաւղըսն իւր զՍուլտան և զԽեր-Խաթուն. և զեղբարսն զՆուրադին. և զՅովանէս, զՅոհանէս, և զՇահիարն, և զքոյրն Թանկազիզ, և զամենայն արեան մերձաւորսն, ամէն։

Արդ, ես Գրիգոր եպիսկոպոս Հասընֆէֆոյ ետու գրել զգիրքս քըւերորդւոյն իմոյ Մինաս սարկաւագին, և ծաղկեցի և կապեցի ձեռամբ իմով. և ետու տէր Կարապետ կաթողիկոսին*։

## 549
## ՄԱՇՏՈՑ

Կոպենհագեն, Ֆ. Մակլեր, Ցուցակ, 87, էջ 178

Գրիչ՝ Առաֆել

187բ ...Արդ, գրեցաւ հայր Մաշթ[ոց]ս ձեռամբ յոգնամեղ և անար[հ]եստ գրչի Առաֆելի անուն իրիցու։ Ի թվ. ՊՂԵ. (1446), ի խնդրո Բանարգէս քահանային, որ և ստացաւ ի հալալ արդեանց իւրոց։

## 550
## ՃԱՇՈՑ

Բ. Կիւլէսէրեան, Ցուցակ Անկիւրիոյ, 164, սյուն. 821—822

Ա մասի գրիչ՝ Թորոս Երուսաղէմացի
վայր՝ Նիկիտայ

ա

296ա Ո՞վ պատուական քահանայք և քրիստոսասէր ժողովուրդք, որ յսող լինիք և ընթերցող աստուածաշունչ տառիս, յերեսս անկեալ աղաչեմ զձեզ

---

* Այս հիշատակարանը քաղված է Զմմառի վանքի մի ձեռագրից (Անտոնյան հավաքածու № 6), որն այժմ բացակայում է։ Վանքի արխիվում (Անտոնյան դիվան, տուփ 168) պահվում է ձեռագրի նկարագրությունը, որ կատարել է Հ. Բ. Զատոյանը։ Այդ նկարագրությունից ենք քաղում հիշատակարանի վերջին 3 տարրերությունները, ինչպես նաև սրբագրում ենք Ալիշանի հրատարակությունը։ Նույն այս հիշատակարանի հապճեպ կատարված համառոտությունը, քաղելով Մ. Տեր-Մովսիսյանի ձեռագիր Ցուցակից, տպագրել ենք սույն ժողովածուի Ա. մասում (էջ 603. հիշատակարան № 679)։

յիշել միով տէր-ողորմայիւ զմեղաւք մեռեալ ոգիս և զանարժանս Թորոս սուտանուն եպիսկոպոս Երուսաղէմացիս, և զծնողսն իմ՝ զհայրն իմ Արռաճամ, և զհաւրաքեռն իմ Խէրխաթուն, և զամենայն արեան մերձաւորս իմ։ Նա և զստացող գրոցս զՍտեփաննոս պատուելի սրբասնեալ քահանայն, և զծնողսն իւր, և զամենայն ազգատոհմն իւր, որ ետ զայսչափ տետրերս գրել մեզ աստուածապահ քաղաքս Նիկիտայ։ Եւ աստուած, որ առատն է և ողորմած ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յիշելոցս առհասարակ ողորմեսցի յիւր միւսանգամ գալստեանն, ամէն։

Ի թուիս ՊՂԶ. (1447), մայիս ժէ. (17)։

Բ

372բ Զայս հրաշափառ մեծ սպասեքիս
Եւ լուսաւոր մեծ հանգիսիս,
Թէ երանի, որ հանդիպիս
Այս գեղազարդ բուրաստանիս՝
Աստուածաշունչ սրբոյ տառիս,
Հոգւով յիշեա դու զնզկելիս,
Մըտաւք ասա զտէր-ողորմիս՝
ԶԹորոս գըծող այսըմ տառիս,
Եւ զծընաւղսն իմ, և զնախնիս,
Եւ ստացողի սուրբ մատենիս՝
Ստեփաննոսի քահանայիս,
Զի և դու յիշեալ լինիս
Ի յաւպագայսն և յապառնիս՝
Զերանաւէտ ձայնն լըսես
'Ի արքայութեան ժառանգ լինիս, ամէն։

Գ

462ա Զաշխատող այս մատենիս զԹորոս բազմամեղ եպիսկոպոս Երուսաղէմացիս և զծնողսն իմ, նա և զստացող զՍտեփաննոս քահանայն և զծնողսն իւր աղաչեմ յիշել*։

## 551

## ԳԱՆՁԱՐԱՆ

Բ. Կիւլէսէրեան, Ցուցակ Անկիւրիոյ 316, սյուն. 1332

539ա ...Ի յուլթ Ճ. և Ղ. և Զ. Թուականութեանս Հայոց (1447) գրեցաւ սա։ Աղաչեմ յիշել ի բարի զեղկելի գծողիկս, և աստուած յիշողացդ ողորմեսցի, ամէն։

Յիշատակ է սուրբ գանձս ի սուրբ Քառասու[ն]ք յեկեղեցոյս. յիշատակ է Համաւրէն ժողովրդեան։

* Նոր բան չավելացնող հիշատակագրություններ կան նաև ձեռագրի մի շարք այլ էջերում։

552

ՃԱՇՈՑ

Դիւան Անտոնեան վանուց, տուփ 168

Վաճառող՝ Ստեփանոս Սքցի
վայր՝ Անկուրիոյ

... Ընդ որում ցանկալի և պատուական, դիւրամիտ և հեզահոգի այրս այս պարոն Աստուածատուրն եռափափաք սիրով գնեաց զմատեանս աստուածային, որ Տարեգիրք կոչի ԻԸ. (28) ֆլի. (ֆլորի), եդ գանձ անկողոպտելի և յիշատակ անջնջելի ի սուրբ կաթուղիկէ և առաքելական եկեղեցի սուրբ Քառասունք, յիշատակ իւր և ծնողաց իւրոց։ Ո՛վ սուրբ հարք և եղբարք, յիշեսջիք ի մաքրափայլ աղաւթս ձեր զբարեմիտ զպարոն Աստուածատուրն, և զհանգուցեալ ծերունի հայրն իւր Սիմէովն զմականուն Սաքըլմիշն, և զմայրն իւր զՃիճան-Մէլիքն, զհաւրքուրն իւր զԿիրախա[թ]ունն, զքոյրն իւր զՍառա-խաթունն, զեղբայրն իւր զպարոն Գրիգորն և զԱւժիտն, և զքոյրն իւր Մեծխաթուն, յիշեսջիք և զկենակիցն իմ զխասերն, զդուստր իւր զՔամալ-խաթուն, զորդիքն իւր զԿեցունն և զԱսլանն, և զամենայն արեան մերձաւորքն իւր։ Քրիստոս որդին աստուծոյ, որ առատն է ի տուրս պարգևեացն փոխանակ սորա երկնից սուրբ արքայութեան անթառամ պսակին, անտրտում ուրախութեան, երանաւէտ ձայնին արժանի արասցէ զպարոն Աստուածատուրն, և զծնօղս իւր, և զամենայն արեան մերձաւորս իւր, լսել տա, որ ասէ Ծառայ բարի և հաւատարիմ, որով ի սակաւուտ հաւատարիմ եղեր՝ ի վերա բազմաց կացուցի զքեզ, և թէ Եկայք աւրհնեալք հաւր իմոյ, ժառանգեցէք պատրաստեալ ձեզ արքայութիւնն։

Այլ և սպասաւորք և ընթերցողք ամենայն աստուածաշունչ սուրբ գրոց, որ կայք ի սպասաւորութիւն սուրբ Քառասնիցդ՝ խնամս տանելով և հեզաքարձութեամբ, դաստառակով ձեռս արկանելով, ընթերցիք և զփոխարէնն խնամարկութեանն ընկալցիք յամենառատ պարգևողէն զերկնային սուրբ պսակն, զոր պատրաստեալ է սրբոց իւրոց։ Եւ թէ ոք յանդըգնեսցի աներկեղաբար ընդ վայր ձեռս արկցէ, կամ ի ձեռս անմիտ տղայոց տացէ, զնորին հակառակն ընկալցի։ Եւ մի ոք յեղբարց պարոն Աստուածատուրին, կամ ի քեռց, կամ յորդոց, կամ ի թոռանց, կամ յազգականաց մի իշխեսցէ տիրել՝ վաճառելով, կամ գրավկանելով, կամ ումեմն բաշխելով, և մի ոք յեպիսկոպոսաց, կամ ի քահանայից, և այնպէս ի միտ ածողքն, և խորհրդաւորքն ի սրբոց հայրապետացն՝ յառաքելոցն և ի մարգարէից պատիժս կրեսցէ, ընդ յանիծիւք և ի ներքոյ բանադրանաց եղիցի մինչև յետս դարձուցէ, ապա զարծակումն առցէ։

Ես Անկուրիացի Աստուածատուրս Սաքըլմիշի որդին, որ գնեցի զտարեգիրքս ի Պուրսա ի Ստեփանոս իրիցէ, ի Վարդան իրիցու փեսայէն, ԻԸ. (28) ֆլի. (ֆլորի), և տուի յԱնկուրիա՝ ի սուրբ Քառասունք, ի յիշատակ ինձ, և ծնողաց իմոց, և ամենայն արեան մերձաւորաց իմոց։

Գրեցաւ յիշատակարանս ի թվականութեանս Հայոց ՊՂՁ. (1447), ի յուլիս ԻԸ. (28), ի ժամանակս քաջ հովապետին մերոյ տէր Յովակիմայ, որ է այսաւր վերատեսուչ նահանգիս Պու[ր]սայու և Կոստանդինուպոլսի

և սահմանեալ վիճակիս իւրոյ, և է այր իմաստուն և հանճարեղ, քննող և պատմող հին և նոր կտակարանացն ամենայն աստուածաշունչ սուրբ գրոց, որ և տէր աստուած բարի հովիւ պահեսցէ զսա ի վերայ վիճակին իւրոյ, տեսուչ և խրատատու մինչև ի կէտ կոչման իւրոյ. և յետ աստեացըս ելանելոյ ընդ սրբոց հայրապետացն դասակից, մասնակից և պսա[կա]կից արասցէ։

Արդ, աղաչեմ զամենեսեան որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով, յիշեսջիք ի մաքրափայլ աղաւթս ձեր զվերոյգրեալսն զպարոն Աստուածատուրն, և զծնաւղսն իւր, և զամենայն արեան մերձաւորս իւր։ Յիշեսջիք և զիս՝ զանարժանս և զանպիտանս և զմեղաւք լցեալ գրիս զՍտեփանոս էրէց Սըսցիս, որ զգիրքս ծախեցի և զյիշատակարանս գրեցի, յիշեսջիք զհայրն իմ՝ զհանգուցեալն առ Քրիստոս զԹորոս քահանայն, և զմայրն իմ Աննա, և Քրիստոս յիշողացդ և յիշեցելոցդ ողորմեսցի յիւր միւսանգամ գալստեանն, ամէն։

Յիշել աղաչեմ զԿիրակոս պատուելի քահանայն՝ ղաւաքերէցն Անկուրիոյ՝ զհովող սուրբ Քառասնից եկեղեցոյս, և զհայրն իւր զԱստուածատուր քահանայն, և զեղբայրն զմղտեցի Մարկոսն, և զորդին իւր զՍարգիս սարկաւագն, և զամենայն արեան մերձաւորս իւր, և Քրիստոս աստուած զձեզ յիշէ յիւր սուրբ արքայութեանն, ամէն։

## 553

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

(Տէր Կիրակոսի խմբագրությամբ)

Երուսաղէմ 1822

Կազմող՝ Յոհանէս

Կազմեցաւ Այսմաւուրքս [լե]առնակողման վանացն և Յովհաննու Մկրտչին, ձեռամբ Յոհանէս սուտ անուամբ աբեղայի, ի թվ. ՊՂԷ. (1448)։

Արդ, աղաչեմ զամենեսեան որք հանդիպիք սմա յիշեցէք ի Քրիստոս զՅոհանէս աբ[եղայ] և զԿիրակոս միայնակեաց, և զտրապիզոնցի մայրն, որ աւգնական եղան, և աստուած զձեզ յիշէ յիւր արքայութիւնն, ամէն։

## 554

### ԼՈՒԾՄՈՒՆՔ ԱՐՏԱՔՆՈՅ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

Երուսաղէմ 1584

Գրիչ՝ Յոհաննէս

Վայր՝ Կաֆա

151բ Ի թուականութեանս Հայոց ութհարիւրերորդի յիսներորդի քառասներորդի եաւթներորդի (1448), ի հայրապետութեան տեառն Գրիգորի, զոր նոր եբեաւ արեգակն յԱրևելս, որ զխախտեալ աթոռն և պսակեալն մայր եկեղեցոյն սուրբ Էջմիածինն վերըստին հաստատեաց ի վերին խնամոցն, եւ յառաջին պատրիարգ նստաւ ի Վաղարշապատ՝ կաթողիկոս ամենայն Հայոց, և եպիսկոպոսութեանն տէր Մաղաքիայի, և ի աթոռակալութեանն տէր Թումա բաբունապետի, և ի նւիրակութեանն տէր Մարտիրոսի և Ստեփանոս կրօնաւորին...

Արդ, դրեցաւ սա ի յաշխարհս Հոնաց, ի մայրաքաղաքս ի Կաֆայս.
ընդ հովանեաւ սրբոյ երրորդութեանն, և ի առ ոտս սրբոյն Մինասայ
արագահասին, որ ետ կարողութիւն տկարիս և անմար գրչիս ի հասանել
152ա ի գրաւ Լուծմանցս արտաքին իմաստից, զոր բազում ջանիւ և աշխա-
տութեամբ բացատրեալ ի վարժումն մանկանց եկեղեցոյ մեծ րաբունա-
պետին և կրկին լուսաւորչին Հայոց Գրիգորի հռետորի, ձեռամբ Յոհան-
նէս կրաւնաւորի նորուսումն գրչի, զոր ետ ինձ գրել հեզահոգի և սրբասէր
Կիւրեղ գրոց աշակերտն, ի վայելումն իւր, և յիշատակ հոգոյ իւրում և
համշիրակ եղբաւրն իմոյ Գրիգոր գրոց աշակերտի, և ամենայն արեան
մերձաւորաց մերոց։
Նաև զվարժապետն իմ զԹումայ րաբունապետն, որ բազում ջանիւ
աշխատեցաւ ընդ մեզ և զաւրինակս շնորհեաց, աղաչեմ յիշել ի տէր
սրտի մտաւք։ Եւ զիս՝ ծովացեալս մեղօք և ղոչս արժանս յիշմամբ
Կիւրեղ կարաւտս բանի, որ հոգով բաղձանաւք սիրեցի և ետու գրել զի-
մաստքս վարժապետաց ի բսբաղումն ինձ և ի վայելս բանասիրաց ան-
ձանց* և ի պատճառս յիշման մեղուցելոյս միով տէր ողորմայիւ։ Նաև
մեր ծնողացն թողութիւն յանցանաց հայցել, և զերնխաւոր զեղբայրն իմ
զՅոհաննէս գրոց աշակերտն, եւ զիս զՅոհաննէս գծողս աղաչեմ յիշել ի
տէր։ Նա, որ առատն է ի տուրս ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յիշեցելոցս, առ-
հասարակ, ողորմեսցի, ամէն Ռ. ամէն**։

## 555
## ԱՒԵՏԱՐԱՆ

*Յ. Քոսեան, Ցուցակ Արձնեան վարժարանի, ՀԱ, 1961, սյուն. 115*

*Ստացող՝* Թուխան

90բ Զվերջին ստացող սուրբ Աւետարանիս զԹուխան և զիւր որդիքն՝
զԱնդրիաս էրէցն, զԳոռւզն, զՍլեման, զՏօնապետն, զԱռաֆելն, և զկե-
նակիցն իւր զՌումէն, և զայլ արեան մերձաւորք յիշեցէք ի Քրիստոս, որ
ստաց[ա] ի հալալ արդեանց իմոց, ի յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց։ Ի
թվին Հայոց ՊՂէ. (1448)։ Որ կարդայք յիշեցէք ի Քրիստոս և աստուած
զձեզ յիշէ, ամէն։

## 556
## ՄԱՇՏՈՑ ՁԵՌՆԱԴՐՈՒԹԵԱՆ

*Արմաշ 207, Յ. Թոփճեան, Ցուցակ, էջ 397*

*Գրիչ՝* Ստեփաննոս երէց Սրսցի
*վայր՝* Պուրսա

175բ Փառք ... գրեցաւ Գիրք ձեռնադրութեանս ի քաղաքիս Պուրսա կոչի-
ցեալ, ի թվ. Հայոց ՊՂԸ. (1449), ի մարտի ԺԹ. (19), ի խնդրոյ սրբա-

---

* Մի տող քերված է։

** Այս հիշատակարանից երեք տող, քաղելով Մ. Տեր-Մովսիսյանի Ցուցակից, հրատարա-
կել ենք սույն ժողովածուի Ա. մասում (էջ 621, հիշատակարան № 73)։

սընեալ և պատուական... համշիրակ եղբաւր մերոյ առաքելաշնորհ եպիսկոպոսին տէր Մելքիսէթի, ի վայելումն... անձին իւրոյ և ի յիշատակ իւր և ծնողաց իւրոց։ Ընդ նմին յիշեսջիք և զիս... զետինս ի գրչաց... զՍտեփաննոս երէց Սըսցիս, և զպատուական հայրն իմ զԹորոս քահանա... Աղալանաց և անարհեստութեան գրիս անմեղադիր կացիք, զի կար մեր այսչափ է և ոչ այլ աւելի։

## 557
## ԳԱՆՁԱՐԱՆ

Երուսաղէմ 2149

Գրիչ՝ Թադէոս
վայր՝ Երուսաղէմ

527 Փառք ամենասուրբ երրորդութեանն՝ Հաւր և որդւոյ և Հոգւոյն սրբոյ,
որ ետ կարողութիւն տկար անձին Թադէոսի հասանել յաւարտ սորին.
յամի ՊՂԸ. (1449) թվականիս միրում և փետրվար ԺԸ. (18)։ Եւ գրեցաւ
սայ ձեռամբ Թադէոս կրաւնաւորի, որ մեծաւ տաժանմամբ և եռատարափ
յաւժարութեամբ գծագրեցի զմարգարտաշար բանս իմաստուն... Եւ արդ
գրեցաւ սայ ի սուրբ աստուածակոխ քաղաքս յԵրուսաղէմ, ի վանս ընդ
հովանեաւ սուրբ Փրկչիս։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք
528 սմա տեսութեամբ կամ աւրինակե//լով, կամ այլ ինչ աւգտութեամբ
իւիք, յիշեցէք ի միտս բարիս զԹադէոս գրծողս, և զծնաւղսն, և զեղբարսըն, այլև զհոգևոր եղբայրն մեր զՅովհաննէս կրաւնաւոր և սրբամիտ
քահանայ, որ աշխատեցաւ և կազմեաց զգիրքս...

## 558
## ՃԱՇՈՑ

Երուսաղէմ 3230

ա

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ էջմիածին-Բիւրական

Արդ, գրեցաւ սա ի գաւառս Այրարատեան, սկսումն սորա՝ ի սուրբ
914 էջմիածինն, և կատարումն սորա ի Բիւ//րական, ընդ հովանեաւ սրբոյն
Յովհաննու Մկրտչի, ձեռամբ ամենամեղ և թարմատար գրչի Գրիգորի, ի
թվականութեանս Հայոց մեծին ՊՂԹ. (1450) ամի. վասն խնդրո վերոգրեալ գովելի և պարծանաց եղբօր մերո Դանիէլի, զի ստացաւ զսա ի յարդար արդեանց իւրոց, ի վայելումն անձին իւր, և յիշատակ ամենայն արիանառու մերձաւորաց իւրոց՝ հօրն Կարապետ քահանային, և մաւրն Համաւորին, և եղբարցն Առիստակի, Վրդանիսի, Յուսկանն, Գրիգորիսի, Ներսիսի, Սանակայ, Յակոբին, Աբրահամուն. Մելիտոնին, և քեռն մեր Սադաղին, և ծնօղաց նորին՝ հօրն Սամուէլին և մաւրն Մինախաթունին. և որդոց նորին Մելիտոնին և Սարխոշին, և հոգևոր որդոց մերո Տիրատուր աբեղայի և Ներսէս աբեղայի, և բազմերախտ վարպետին՝ Երեմիայի ճգնազգեաց կրաւնաւորի, և Յովանէս աբեղայի, և հաւրեղբարցն Ամիրա-

թին և Գուլիաթին, և որդւոց նոցին Հէրադեղին և Ամրիաթին, և այլ երախ-
[տ]աւորացն՝ Ամիրին, և ամենայն արեան մերձաւորացն՝ կենդանեաց և
հանգուցելոցն*։

Արդ, աղաչեմ զամենեսեան զհանդիպողքդ այսմ աստուածաշունչ
տառիս յիշել սրտի մտաւք զվերոգրեալսդ, և ուղիղ մտօք աստուած-
ողորմի ասել և աղօթիւք մեղաց թողութիւն խնդրել ի Քրիստոսէ աստու-
ծոյ մերոյ։ Ընդ նոսին և մեզ, ծնողաց մերոց և երախտաւորացն՝ կենդա-
նեաց և հանգուցելոցն ի Քրիստոս։ Սնուցողին իմո տէր Ստէփանոսի
աթոռակալի սուրբ առաքելոյն Բարդուղիմէոսի, հօրն իմ Զարէասի, և
մօրն իմ Վարդէտիկնա, և ուսուցչին իմո Յովանէս կուսակրօն աբեղայի՝
915 մականուն Զորիկ կոչեցեալ, և // ամենեցուն որք հոգաբարձութեամբ
խնամք տարան մեզ և խրատեցին ի բարիս, ողորմութիւնն պարգևեսցէ
Քրիստոս աստուած ի միւսանգամ գալստեանն իւրում աղօթիւք ամենայն
սրբոց և խնդրուածովք ձեր։ Նա և յիշեցէք զյիշման արժանի զեղբայրս
իմ ըստ հոգո զքաջ քարտուղարս զՅովանէս սրբասէր աբեղայս, ծնաւ-
ղաւք իւրով և ամենայն արեան մերձաւորօքն, և զհոգևոր մայրն մեր՝
զԳուլշար, որ սպասաւորէր մեզ ի պէտս մարմնականս, զոր տէր աս-
տուած յետ աստեացս ելանելո վանաց և անսպառ բարութիւնսն տացէ
յիշողացդ և յիշեցելոցս, առհասարակ, կարդացողացդ և լսողացդ, ամէն։

Արդ և ինձ՝ անարժան ծառայի փցուն և անարհեստ, սղալ և տարտամ
գրչի Գրիգորի տառապեալ ծերունո մասն ընդ ձեզ լիցի ի տէր, զի տկար
անձամբ և հեծեծանօք սրտի գրեցի զսա ի դառն և ի պատուհասալից ժա-
մանակիս, զի վասն բազում մեղաց իմոց երեք ամ տարաժամ մահ
եղև ի գաւառս Այրարատո, և ողբով և կոծով լի էր ամենայն երկիր և ամե-
նայն մարդ, և ոչ ոք էր, որ հոգայր զմարմնականն և մնայրին մահու։
Բազում տունք անմարդաբնակ եղեն, և բազումք ապուշ մնացեալ լալով
ան[ց]ուցանէին զաւուրս իւրեանց, և բազումք յուսահատեալք անգործ
մնային։ Եւ մեք յերկեղէ ի դողման կայեաք տարտամ և տխուր կենօք,
պանդուխտ և աւտար յայլ և յայլ տեղիս շրջէաք, վասն որո եկեալ դա-
դարեցաք ի Բիւրական, ընդ հովանեաւ սրբոյն Յովհաննու Մկրտչի, և
սպասաւորաց սորա սրբասնեալ քահանայից՝ Ստեփանոս աւագերիցուն, և
Մարտիրոս իրիցուն, և Մկրտիչ իրիցուն, զոր տէր աստուած ընդ սուրբ
քահանայիցն դասակից և պսակակից արասցէ իւրեանց ծնաւղօքն և
ամենայն արեան մերձաւորաւք, ամէն։

Նա և զպարոն Բաբաջանն աւրհնեսցէ Քրիստոս աստուած և զկենա-
կից նորա զԹամարն, և զքոյրն զնղխսաբէքն, զի բազում սէր ցուցին մեզ
ի յօտարութեանս, այլ և զայլ գեւղիս ղտանուտեարքն ընդ ժողովոյն Եփե-
սոսի, և զկանայսն՝ ընդ կանանցն իւղաբերից, զմանկունսն՝ ընդ ման-
կանցն Բեդղէհէմի, և զամենեսեան առհասարակ աւրհնեսցէ Քրիստոս
աստուած աստ և ի հանդերձեալն, ամէն, եղիցի։

* Մի քանի տող դատարկ է թողնված, որոնց վրա, այլ ձեռագրով, գրված է. «Ընդ նոսին յիշեսջիք և զտէր Յովանէս եպիսկոպոս Ախլցխոյ և զՅակոբ աբեղայն՝ զմիջնորդ սուրբ տառիս». ապա՝ մի այլ ձեռագրով. «Եւ յետ այսմ բանիս յիշեսջիք ի Քրիստոս զանարժան ծառայս ձեր՝ զյետնեալ Տաւնապետս»։

Գրեցաւ ձեռամբ մեղապարտի Գրիգորի, ի թվն. ՊՂԹ. (1450), ի կաթողիկոսութեան տեառն Գրիգորի. ի ղանութեան Ջիհանշահի՝ որդո Ուսուֆի:

Բ

Նուիրատու՝ Դանիէլ

916 Կամաւն աստուծոյ ես՝ պիտակս Դանիէլ վարդապետս, եւու իմ սրտի յաւժարութեամբ զայս անգին մարգարիտս, որ է Տարեգիրք ... Սեվանայ սուրբ առաքելոցն, որ է ի մէջ ծովուն, յերկիրն Գեղամայ, վասն զի շիրիմ ծնաւղացն իմոց անտ են, ընդ հովանեաւ սուրբ Առաքելոցն։ Արդ. ով ոք զայս գիրքս խնամաւք պահէ ի սուրբ եկեղեցիքն՝ աւրհնին յաստուծոյ և ի սրբոց առաքելոցն, իսկ ով ոք, որ ծախէ այլոց, կամ բաշխէ. կամ գրաւ դնէ, թէ յիմ յազգայկանաց իցէ, թէ կամ յաւտարաց, մեր մեղացն և մեր ծնաւղաց պարտական լիցի...

559

ԱՐԵՏԱՐԱՆ

Երուսաղէմ 3137

ա

Գրիչ՝ Միքայէլ

... Եւ ես յետինս բանասիրաց և տրուպս կարգաւորաց Միքայէլ
601 սուտանուն քահանայս // ... սկիզբն արարի սուրբ Աւետարանիս ի թվականութեանս մեր Պ. և ՂԹ. (1450) ամին, ի հայրապետութեան տեառն Գրիգորի ընդհանուր Հայոց կաթուղիկոսի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի տաճարի և սրբոյն Ստեփանոսի կաթուղիկէիս։ Դարձեալ կրկին անգամ յերես անկեալ աղաչեմ զձեզ յիշեցէք ի բարին Քրիստոս զվերոյասացեալ ըստացաւղ Աւետարանիս զԿարապետ քահանայն, և զհարեզբայրն իւր զՅոհաննէս, և զկողակիցն իւր, և զաւակաց նոցին, և դուք և մեք մասն բարեաց ընկալցուք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, ամէն։

Դարձեալ, աղաչեմ յիշել առ Քրիստոս զմեղուցեալ գրիչ, և զծնաւղսն իմ զՅոհաննէս քահանայն՝ զհանգուցեալն առ Քրիստոս, և զմայրն իմ զԱզիզ-Մելիքն, և զամենայն արեան մերձաւորս իմ...

Բ

Նուիրատու՝ Կարապետ
վայր՝ Պաշուածք գիւղ

603 Ես Կարապետ էրէցս փեսցի զսուրբ Աւետարանս յիշատակ ծնողաց մերոց և ամենայն աշխատաւորաց, եւու զսա ի գեաւղս, որ կոչի Պաշուածք, առ դրան սուրբ Քառասնից...

## 560

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երուսաղէմ 1622*

*Գրիչ՝* Յակոբ
*վայր՝* Արգելան-Կողբ-էջմիածին-Մակու

ա

106—107 *Վայ ինձ հազար բերան, զի գաղանք զաւր կենաց ծանեան, և ես զիս ոչ ծանեա և ոչ զաւր մահուն։*

բ

131 *Ջանարժան զԱկոբ վարդապետս յիշեա սուրբ հայր, և զծնողքն իմ, և աստուած զձեզ յիշէ, ամէն։*

գ

136—157 *Վա՜յ ինձ, Մովսէս իւրաւի խորտակեաց զտախտակսն քարեղէն, և ես անիրաւի խորտակեցի այսաւր զտախտակն փայտեղէն ի վերայ աշակերտին իմոյ՝ Կիրակոս նորընծա աբեղայիս։ Վա՜յ սոսկանուն Յակոբ վարդապետիս, զի մոլորքացուցի զարդարն։ Վա՜յ ինձ,—աղաղակեաց,—Մի հարկանէր զիս, զարիպ եմ և անմխիթար, է՞ր եղար ինձ, ո՜վ մխիթարող վարդապետ։*

դ

280 *Վա՜յ զիս հազար բերան, զի որդին Աթայբեկին մեռաւ, և մեզ մեծ կսկիծ եղաւ, վա՜յ ինձ, աղբերադեղ (՞). թվ. ՊՂԸ. (1449)։*

ե

294 *Տէր Յիսուս Քրիստոս, բարեխաւսութեամբ քո ծննդեանդ ազորմեայ* Մինախաթունին. *և պահեայ զորդիքն խօմա* Կարապետին, *և զՅոհանէսն՝ զեղբայրն իւր։ Եւ աստուած-ողորմի ասացէք* Հերապետին, *և աստուած ձեզ ողորմի, ամէն։ Ախ և վայ զիս հազար բերան, մահն ի գեղս անկաւ՝ զանմեղքն տարաւ, զմեղանչականս եթող. [Թ]վ. ՊՂԹ. (1450) այս եղաւ, վա՜յ զիս պիտուականս։*

զ

375—375 *Ջանարժան և զսոսկանուն զԱկոբ վարդապետս յիշեցէք ի Քրիստոս և զծնողսն իմ, որք յիշէք յիշեալ լիջիք յաստուծոյ։*

է

380—381 *Աստուած ողորմի* Խէրխաթունի *հոգոյն, որ մեզ տայն էրեր և չիր, որ կերանք և աւրհնեցինք զկերակրիչն աստուած։*

ը

426 *Վա՜յ ինձ, սուտանուն վարդապետիս, որ մեղանչեցի ես ի տետրիս և ապաւինեցա յաստուած-ողորմիս, մի մոռանայք դուք զգերիս։*

թ

520 *Աստուած ողորմի* Ստեփանոսի *ծնօղացն, և աւրհնէ աստուած զնա։*

ժ

572 Աստուած ողորմի Մխիթարին՝ որդոյն Թաքուլին:

ժա

680 Արդ, աւարտեցաւ Քարոզգիրքս ի ձեռ անարժան և անարհեստ գրչի՝
Յակոբ խնդրող բանին։ Աղաչեմ ըմանկունքդ եկեղեցոյ, զի որք հանդի-
պիք սմա կարդալով, կամ աւրինակելով, կամ ի ձեռն առնելով, յիշեցէք
զմեզ և զծնաւղքն մեր՝ զհոգևոր, զմարմնաւոր, և լի սրտիւ աստուած-
ողորմի ասացէք և թողութիւն մեղաց մերոց խնդրեցէք, և խոշորութեան
գրոյս անմեղ լերուք, և սխալութեան թողութիւն արարէք, զի կար մեր
այս էր։ Զի վասն ժամանակի դառնութեան և հալածանաց /// (խնամքով
քերված է մեկ տող), Զ. (6) տարին աւարտեցաւ և քարոզն, որ յետոյ
681 և յառաջ // գրեցաւ՝ հէնց հանդիպեցաւ։ Այլ և յիշեցէք զհայրն իմ զխօճ-
դիկ, և զեղբայրն զՇապաշ, և զէրտաշ, և զՈրդանանն, և զէլտար փոքր
եղբայրն իմ, և զքերցն մեր աստուած-ողորմի ասէք, և աստուած ձեզ
ողորմի, ամէն։

Գրեցաւ արարածոց քաղուածուն ի տէր Յուսկան յորդին, ի վանքն յԱրգիլանայ, յորում առաջնորդ էր Ներսէս վարդապետն, որ զեկեղեցին շինեաց զտէր Յուս[կ]ան որդոյ։ Որոյ յիշատակն նորա աւրհնութեամբ եղիցի, զի բազում չարչարանս կրեաց /// (քերված է կես տող)։ Վայ ինձ։ Եւ յետոյ աւարտեաց զաւրութեամբ աստուծոյ և յամաւթ արար զսատանայ։ Եւ բառերն գրեցաւ ի վանքն Կողբայ, որ այժմ ասի Լուսաւորչի վանք և Սուքիասանք, որոյ առաջնորդ նոցին Թաքար տանուտէրն և եղբայր նորին Փասիլ, աւրհնեալ եղիցին ընդ պարոն Թայթարին, ամէն, և սակաւ մի ի յԷջմիածինն՝ ի ժամանակս Կիրակոս կաթողիկոսին, և այլքն ի յԱրտազ գաւառիս, ի գիւղս որ կոչի Մակու, ի վանքս որ կոչի սուրբ Աստուածածին։ Եւ առաջնորդ մեր հոգևոր և մարմնաւոր անուն /// (քերված է 3 տող)*։

ժբ

680—681 Այլ և յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր զաշակերտքն իմ զԿիրակոս աբեղայն, և զՈվանէս աբեղայն, և զԽաչիկ սարկաւագն, և զՂուլի սարկաւագըն, և Քրիստոսի փառք։

ժգ

734 Որոյ ողորմի Քրիստոս աստուած ըստացողի գրոցս Յակոբ սոսկանում վարդապետի և անարժան և ծոյլ քարոզողիս։ Աղաչեմ զձեզ, ո՜վ մանկունք եկեղեցւոյ, ի մաքրափայլ յաղաւթս յիշման արժանի արարէք զանարժանս /// յիշման և ողորմի ասելով ծնօղաց իմոց՝ հաւրն Մկրտչին, և մաւրն /// և եղբարցն մեր, և քերձն, և ամենայն արեան մերձաւորացն աստուած-ողորմի ասացէք և դուք ողորմութիւն /// լսէք, ամէն։ Այլ և յիշեցէք զաշակերտքս իմ զԿիրակոս աբեղայն և [Յո]վան[էս] աբեղայն։ Թվ. ՋԴ. (1455)։

* Գլխավոր այս հիշատակարանի Մ. Տեր-Մովսիսյանի կողմից հապճեպ կատարված մի համառոտությունը տպագրել ենք սույն ժողովածուի Բ. մասում (էջ 54, հիշատակարան № 69)։

## 561

## ՃԱՇՈՑ

Բ. Կիւլէսէրեան, Ցուցակ Անկիւրիոյ, 164, սյուն. 822—824

Բ մասի գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Պոլոսա

ա

921բ—.923ա ...Զնոնարկեցի սմա ես՝ նուաստս յամենայնի, բազում և աղգի մեղաւք լրցեալ գերիս Ստեփանոս, որ զկարգ և զաստիճան առեալ զքահանայի և զգործ բնաւ ոչ կարեմ կատարել, հասի ի դրաւ գրչութեան սորա ոչ թէ ըստ արհեստիցս և զաւրութեան անձինս, այլ ի կատարումն ախտեալ հրամանի մարդասիրին, թէ Ամենայն որ խնդրէ՝ առնու։

Արդ, աղաչեմ զհանդիպողքդ այսմ տառի յիշման արժանի վարկչիք զանարժան գրիչս զՍտեփանոս անուամբ միայն երէցս, և զիմսն ամենայն՝ զհայրն իմ զԹորոս քահանայ, և զաներն իմ զՎարդան քահանայ, զմայրն իմ զԱննայ, զեղբայրն իմ զԱնդրէասն, զԳրիգորն և զՀեթումն, զփեսայն իմ զԳրիգոր քահանայ, քոյրն իմ Ակալ, զՇնոֆորն, զԾոմարն, զէաիլ-Մէլիքն, զՊուլան, զԽաթուն-Փաշան, զմանկունսն իմ զՎարդանն, զԽաչերեսն, և զամենայն արեան մերձակեայս իմ՝ զՄարունն, զՀռիփսիմէն, և զկենդանիսն, և զհանկուցեալս յիշման առնել արժանի առաջի անմահ զենլոյն Քրիստոսի...

Կատարեցաւ սա ի քաղաքիս Պոլոսա կոչեցեալ, ի վեհագոյն տիրական իշխանութեան և տէրութեան տեառն Գրիգորի ամենայն Հայոց կաթողիկոսի, նստեալ յաթոռ սուրբ էջմիածնի, և ի պետութեանն Մուրաքպէկ խուանդքարին, ի թվականութեանս Հայոց ՊՂԹ. (1450), ի յունվար ամսոյ ԻԶ. (26)։ Եւ որ ցաւակցաբար յիշեսցէ զ՛ի սմայ յիշատակեալքս՝ և ինքն յիշեալ լիցի ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։ Դարձեալ յերես անկեալ աղաչեմք զամենեսեան, առհասարակ, զի սղալանաց և անարհեստութեան և պակասութեան գրիս մի մեղադրէք, զի ի սբաղմանց և ի ցնորից և ի հոգոց և ի բազում մեղաց միտքս մոլորեալ է ի մէջ ծովացեալ մեղաց աշխարհիս, զի կար մեր այսչափ էր և ոչ այլ աւելի։ Ո՜հ, ո՜հ, ո՜հ։

Ընդ նմին և զիս զՍարգիս սուտանուն աբեղայս՝ զծաղկողս և զկազմող սորին յիշեսջիք ի մաքրափայլ աղաւթս ձեր, և աստուած յիշողացդ և յիշելոցս ողորմեսցի, ամէն և եղիցի։

Շապիքն շնորհաւղն առ տէր յիշեա։

բ

112ա Ո՜վ պատուելի եղբայր իմ, կարծեմ թէ տքուն ես և մախմուր։

Մտաց քննութեամբ զինքդ կարդա, և զմեղաւոր գրողս զՍտեփանոս յիշեա, և զհանկուցեալ հայրն իմ զԹորոս քահանայ, աղաչեմ, աղաչեմ, ո՜հ, ո՜հ։



27—274

## 562

### ԳԱՆՁԱՐԱՆ

Բ. Կիւլէսէրեան, Ցուցակ Անկիւրիոյ, 221, սյուն. 1008—1010

Գրիչ՝ Աբրահամ
վայր՝ Անկիւրիայ

310—312 ...Շնորհիւ Քրիստոսի աստուծոյն մերոյ սկսա և ողորմութեամբ նորին կատարեցի զԳանձարանս ի մեծ թվականին Հայոց ՊՂԹ. (1450) յուլիս ամսոյ Լ. (30), ի խնդրոյ պարոն Ասլանին, որ և ստացաւ զսա դանձ հոգոյ իւրո, և յիշատակ ծնողաց և եղբարց, և վասն երկարութեան կենաց որգոյ իւրոյ պարոն Փոլատին: Ի վայելումն և ի վարժումն Տէրուն քահանայի՝ աւաքիրիցու Անկիւրիոյ աստուածապահ քաղաքիս, և դեռաբոյս մանկանն իւրոյ Աբրահամի, զոր տէր աստուած վայելել տացէ սոցայ զսայ ընդ երկայն աւուրս, ի հայրապետութեան տեառն Գրիգորի սուրբ և ընտրեալ հայրապետի Արևելեան կաթողիկոսի Վաղարշապատ քաղաքի էջմիածնի աստուածահիմն աթոռոյ, և եպիսկոպոսութեան տէր Ներսիսի. ընդ հովանեաւ Աստուածածնի և սուրբ Գրիգորի Լուսաւորչին, ձեռամբ անարհեստ գրչի Աբրահամ անպիտան աբեղայի, ո՜հ, ո՜հ։

Արդ, որք հանդիպիք այսմ հոգեւոր խրախճանի, յիշեցէք զվերոգրեալքս ի սմա՝ զկենդանիքս և զհանկուցեալսն, և լի սրտիւ աստուած-ողորմի ասացէք...

## 563

### ԱՒԵՏԱՐԱՆ

Յ. Քոսեան, Ցուցակ Արծնեան վարժարանի, ՀԱ, 1961, սյուն. 126

Գնող՝ Մարտիրոս և Կիրակոս

278ա Փառք... որ արժանի արար զիս գծառայս աստուծոյ զՄարտիրոս և զԿիրակոս, որ սուրբ Աւետարանս գնեց[ի] ի հալալ արդեանց իմոց յիշատակ ինձ, և ծնողաց իմոց՝ Յովանիսին և Մելիքին, և եղբարցն իմոց՝ Ստեփանոսին և Աստուածատուրին, և քուրոջն և իմ պապին՝ Յովանիսին, և իմ մամին՝ Եղիսաբեթին, և ամենայն արեան [մերձաւորացն]... Նաև Պապանեան Մկրտչին ողորմի աստուած... որ ետ ինչս ի հալալ վաստակոց իւրոց և յիշատակեց գինքն ի սուրբ Աւետարանս, և մեք տըւաք ի գերու գին, որ գերին յանաւրինաց ազատի, և պատճառ լինողն ազատի ի ձեռաց սատանայի և ի դառն դժոխացն, ամէն։

Գրեցաւ ի թվականութեան Հայոց Պ. և իննսուն և ինն (1450), ի դառն և ի դիժար ժամանակի, որ Հայոց ազգս հալածական էր յամենայն ազգաց և գերի յանօրինաց, զոր տէր աստուած այց արասցէ ազաւթիւք ձերովք և դարձուսցէ առաջին փառսն, ամէն։

ննն

## 564

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

Ց. Անֆայզ և Յ. Մոյիտոր, Ցուցակ Գերմանիայի 6, էջ 15

Գրիչ՝ Ալէքսանոս
վայր՝ Հերմոնի վանք

ա

304ա ...Արդ գրեցաւ աստուածային գանձարանս քաղուածու սաղմոսաց Դաւթի. ի յանապատիս որ կոչի Հերմոնի վանք, ընդ հովանեաւ սուրբ Լուսաւորչիս, և աստուածընկալ սուրբ Նշանացս, ձեռամբ բազմամեղ և անարժան, տարտամ և անպիտան, փցուն և անյարմար գրչի Ալէքսանոս աբեղայի, որ անուամբ միայն և ոչ գործով, ի թվին Ջ. (1451), ի առաջնորդութեան սուրբ ուխտիս Սարգիս վարդապետի, զոր տէր Աստուած պահեսցէ զսա ընդ երկայն աւուրս ուղիղ վարդապետութեամբ, և սրբասնունդ աբեղայի Զաքար[ի]ա փակակալի, և այլ միաբանիցս՝ մեծի և փոքու, ի ժամանակս անաւրէն բռնակալին Ջհանշայի, զի ոչ դադարի ի կողոպտելոյ և դերելոյ զազգս, զոր յայսմ ամի էառ զանառիկ Եզնկան խաբէութեամբ, և շատ աւեր էած։ Արդ... յիշել... զԱլէքսանոս գրիչս, և զուսուցիչն իմ և զերախտաւոր հօրեղբայր զՅովանէս աբեղա՝ ղհանգուցեալս ի Քրիստոս, և զհարազատ եղբայրն իմ զԱնտոն կուսակրօն քահանայ, և զծնօղսն իմ՝ զՄկրտիչ մուղտասի, զմայրն իմ Խոնդիկ, և զեղբայրն մեր Պաւղոս և Պետրոս, և քերցն մեր, և զաւակաց նոցա, և ամենայն արեան մերձաւորք մեր։ Դարձեալ աղաչեմ զձեզ... խոշորութեան և սխալանաց սորա անմեղադիր լինել, զթիւրն ուղղել բարի կամօք և եղբայրական սիրով, զի յըշտապէի վասն բազում պատճառի... ամէն։

բ

158ա Ասաի առաջ գիրն օրինակիս փոխեցաւ։

գ

167ա Օրինակս դժար է, անմեղադիր լեր։

## 565

## ՈՍԿԵՓՈՐԻԿ—ՀԱՎԱՔԱԾՈՅ

Վիեննա 299, Հ. Ոսկեան, Ցուցակ, էջ 932

273ա Աստուածասէր եւ հաւատարիմ խաւջայ Ցարխատին ստացաւ զաստուածաշունչ կտակս ի հալալ արդեանց և գնեաց ի թուականութեան Հայոց ի Ջ. (1451) թվին, յիշատակ իւր, և ծնօղաց՝ հաւրն Էվաղշին և մաւրն Նարսա-Մելիքին, և կնոջն Գուլզարին, և որդոյն Խուդադատին, և ամենայն արեան մերձաւորաց, և եա Յովսէփ աբեղին, եւ ով ոք հանդիպիք կարդալով կամ աւրինակելով յիշեցէք ղվերոյգրեալս, և աստուած զձեզ յիշէ յիւր սուրբ արքայութեանն, ամէն։

## 566
## ՄԱՇՏՈՑ
Երևան 6950

Վայր՝ Նորավանք

124բ Գրեցաւ ի Թվականութեանս Հայոց Ջ. (1451), ի սուրբ և մեծահռչակ վանս՝ ի Նորավանս, ընդ հովանեաւ Աւագ սուրբ նշանիս և այլ միահամուռ սուրբ նշխարացս, որք աստ կան հաւաքեալ, եւ ի հայրապետութեան տեառն///*

## 567
## ՄԱՇՏՈՑ ԵՒ ԳԱՆՁԱՐԱՆ
Երևան 6878

Գրիչ՝ Յովանէս
Վայր՝ Խլաթ

ա

162ա ... Աստանաւր յանկ եղեալ կատարեցաւ Մաշթոցս և Գանձարանս ի դառն և ի նեղ ժամանակիս, որ յանօրինաց հալածիմք ի հարկաքահանջութենէ և ի բազում տրտմութիւն և դքրիստոնեայքն յերեսմանի կու պահեն և ի տարտարոս, և մեք յուսալով յողորմութիւնն աստուծոյ, զի նա փրկեսցէ զմեզ ի յանօրինաց և յամենայն փորձանաց, ամէն։

Արդ, գրեցաւ սուրբ Մաշթոցս և քաղցր Գանձարանս ի Խլաթ քաղաքի, ի Թըւականիս մերում Ջ. (1451), ընդ հովանեաւ ԺԱ. (11) խորա-
162բ նացս և սուրբ Գէորգ զաւրավարին և խնդրակատար Աստուածածնին // և սուրբ Վարդանին, ձեռամբ յոգնամեղ և մատնադեաւ գրչի Յովանէս սուտանուն քահանայի, որ գործովս եմ խիստ յոռի, անուամբ միայն քահանայի, որ մեծաւ աշխատութեամբ գրեցի զսա ի խնդրոյ պատուական և իմաստուն տանուտրոջն Վարդանեսին, որ եռ մեծաւ փափագանաւք գրել զսա յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց Յակոբին և Էստ-Մելիքին, և կողակցին իւրոյ Դիլշատ-Խաթունին, և եղբարց նորին Գրիգորին և Յոհանէսին որ յայսմ ամի փոխեցաւ ի Քրիստոս. աստուած իւրն ողորմեսցի։ Եւ ինձ՝ մեղապարտ գրչի Յովանեսի, որ բազում նեղութեամբ գրեցի, և եղբօրն իմ Աստուածատուր քահանայի, և ծնօղաց իմոց Կարապետ քա-
163ա հանայի և Թադա-Մելիքին, // և եղբաւրն իմ Խաչատուրին, որ երիտասարդական հասակաւ փոխեցաւ ի Քրիստոս, և ամենայն արեան մերձաւորաց իմոց...

Եւ դուք, ո՜վ քահանայք և ժողովուրդք, որ սիրով ընդունիք և լաւ պահէք և խնամէք՝ աւրհնեալ լիջիք յամենաւրհնեալ բերանոյն աստուծոյ, և լսել տայ ձեզ զերանաւէտ բարբառն, որ ասէ՝ Եկայք աւրհնեալք հաւր իմոյ, ժառանգեցէք զկեանսն յաւիտենից, և դասեսցէ զձեզ ընդ ամենայն սրբոցն իւր. եւ որ զաստուած ողորմին ասէ, աստուած իւրն ողորմեսցի, ամէն, եղիցի, եղիցի։

---

* Հաջորդ թերթն ընկած է։

Բ

250ա Ո՛վ եղբարք, աղաչեմք զձեզ վասն սիրոյն Քրիստոսի, որք կարդայք և ձեռնադրութիւն առնէք, յիշեցէք ի սուրբ պատարագդ զբարէմիտ Վարդանէսն և զծնօղսն իւր, և զանպիտան գրիչս զՅովանէս, և աստուած զձեզ յիշէ յիւր արքայութիւնն, ամէն։

## 568
## ՄԱՇՏՈՑ
Երևան 8550

Ի թվականի Հայոց Ջ. (1451), տանուտէր ջրհոսն, տարուն դիրն Շ. (500), Հոռոմն ծռայզատիկ արօ. ապրիլ ի Զ. (6), ու մեր Հայոց ազգս՝ ապրիլ /// տրաք յդմէ (՟) լոյս Լուսօրչին ազգին ելօ /// տուգնեցին // մեր ճշմարիտ ///*

## 569
## ԱՒԵՏԱՐԱՆ
Երևան 9841

ա

Գրիչ՝ Վարդան

290ա ...Ուստի և տեսեալ զսորայս անճառ փրկագործութեան խորհուրդ ումն ի լուսածնեալ զարմից սրբոյն Սիովնի Թումայ անուն, ցանկացաւ եղև կենսաբեր սուրբ Աւետարանիս և ետ գրել զսա եռափափաք սիրով, զի ի վաղուցհետէ ցանկայր այսմ լուսալրական և աստուածախօս մատէնիս՝ լինել յիշատակ հոգւոյ իւրոյ և ծնաւղացն։

290բ Եւ արդ ես՝ յետինս ի // մանկունս եկեղեցոյ Վարդան, անարժանս ի կարգաւորաց և ունայնս ի բարեգործոց, հրաման առեալ ի պատուիրանադիր առաքելական բանէն, որ ասէ՝ Կոչումն կոչեցար ի նմին կացջիր...

291ա Այլ և արդ գրեցաւ սուրբ Աւետարանս աստուածախաւս ձեռամբ անարժան և ախմար գրչի Վարդանի. և իմ անընդել գոլով յարուեստ գըրչութեան, և բազում մեղաց ցնորիւք պաշարեալ, այլ ըստ կարի մերում, զոր պարգևեաց մեզ մարդասէր հոգին, բազում աշխատասիրեալ իմ ի սմա, գրեցի անարժան ձեռաւք իմովք, յընտիր և ի ստոյգ աւրինակէ կենաւք տառապանաւք և բազում պանդխտութեամբ, և ազգի ազգի տրտմութեամբ։ Եւ ի մեծ թուականիս ՋԱ. (1452), ի կաթողիկոսութեան Հայոց Աղթամարցւոյ տեառն Զաքարիայի, ընդ հովանեաւ սուրբ տաճարիս Գէորգեա և սուրբ Նշանի։ Քանզի ստացաւ զսա պատուական և հաւատարիմ ծառայս աստուծոյ Թովմայ, և կողակիցն իւր Խաթուն-Մէլէք, ետուն գրել յիշատակ իւրեանց և կացցէ սա...**

291բ Արդ, որք ճաշակէք յաստուածային բու//րաստանէս և յամենալի սեղանոյս, յիշեսջիք ի Քրիստոս աստուած զստացաւղ սորա զԹումայ, և

* Գրված է մագաղաթյա պահպանակի վրա. գիրը խիստ աղոտ է, շատ բառեր դարձել են անվերծանելի։

** Անգրել թողնված է երկու տող։

զծնօղսն իւր ըստ մարմնոյ՝ զհայրն իւր զՅակոբ և զմայրն իւր զՋույար. և զեղբայրքն իւր զՍտէփանոս և զԾէրուն. և զեղբաւրորդին զԿիրակոս կրօնաւորն, և զքոյրն Նամամ, և զԱնտոն, և զայլ ամենայն արեան մերձաւորսն սորա, և Աստուած-ողորմի ասացէք լի բերանով և զուարթ սրտիւ։ Ընդ նոսին և զիս փցուն գրիչ զՎարդան յիշեցէք ի Քրիստոս աստուած, և զիմսն ամենայն՝ զհայրն իմ զՍամուէլ քահանայ, և զմայրն իմ զՄինայ, և զհոգևոր հայրն իմ և եղբայր զտէր Մկրտիչ եպիսկոպոս, որ բազում երախտեաց ինձ։

Բ

Ստացող՝ Թումա

Եւ արդ, ես Թումայ և կենակիցն իմ Խաթուն-Մէլէք միաբանեցաք սիրովն Քրիստոսի և ետուք գրել զսուրբ Աւետարանս ի յարդար վաստակոց
292ա մերոց, վասն սիրոյն // Քրիստոսի և յուսոյ արքայութեան, յիշատակ մեզ,
և ծնօղաց մերոց, և զաւակացն մերոց Հալիֆին, և Աւետիսին, Ջգարճունին, Խորշետին, և Խոնծին և [ետ]ուք ի դուռն...*

...Ընդ նոսին ողորմեայ Քրիստոս բարէհոգւոցն Լուսեղէնին, և Յոհանէսին, և Հութլուին, և Սաքախին, և Սուլտան-Մէլէքին, և Յակոբշին, և Տիրանցին, և որդւոյ իւրոյ Ստէփան[ո]ս աբեղային... Ընդ նոսին զքարի կրօնաւորն զՍիոն աբեղայն, և զՈհանէսա որդին զԹումայ ջուլահարկն։

Գ

1բ Զանարժան Մկրտիչ յիշեցէք ի Քրիստոս աստուած և աստուած զձեզ յիշէ, ամէն**։

## 570

## ՄԱՇՏՈՑ

Երուսաղէմ 2296

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ Վարագ

549 ... Ես Յովաննէս հէրպետս Սիոնենց տուի զՄաշթոցս վերին Վարագայ սուրբ Նշանիս՝ երկոյտասան սիւն լուսոյ սուրբ տեղացս, որք զսա
լաւ պահեն և խնամեն ւարհնին յաստուծոյ և վարձատրին, և որք հեռացուցանեն ի յայս տեղեացս գողութեամբ կամ անիրաւութեամբ, նա յաստուածային շնորհացն հեռանան և չնչին ի դպրութենէ կենաց, ամէն։
550 Ես Յովանէս վարդապետս՝ գրի գրողս՝ աղաչեմ զձեզ, որք հանդի[պի]ք սմա կարդալով կամ աւրինակելով, խոշորութեան գրոյս անմեղադիր լերուք, զի յառաջ ուսեալ ի և ոչ առնէի, և տարիս զամէն փախած կացաք ի գեղ և ի քաղաք ի յանօրինաց՝ ի քրդէ և ի թուրքէ, ով զմեզ ի

* Բաց թողնված երեք տողում հետագայում, այլ գրով, ավելացված է «Սուրբ Օվանէսայ, անչինչ յիշատակ, ով որ անդ ենի (հանի՞) պա[տ]ժի ամէն»։
** Գրված է նկարի տակ. հավանաբար ծաղկողն է։

բարին յիշէ և աստուած-ողորմի ասէ՝ ինքն յիշեալ լիցի ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ ի յայն ՚աւուր ահեղին, ամէն*։

## 571

### ԱՒԵՏԱՐԱՆ

Անթիլիաս 34

Գրիչ՝ Գրիգոր

ա

121ա Զանարժան հողս զԳրիգոր գծող և նկարողս, որ անուամբ քահանայ կոչիմ և զգործն ոչ ունիմ, աղաչեմ յիշել ի տէր միով տէր ողորմայիւ։ Գրեցաւ ի թվիս ՋԳ. (1454)։

բ

253բ ... Նաև բարի կինս Անճայս... ստացաւ զսուրբ Աւետարանս ի հալալ ընչից իւրոց յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց, մաւրն իւրոյ Թագուհէ և հաւրն իւրոյ Մէլիքշին, ի վայելումն Յոհաննէս սարկաւագին։ Արդ աղաչեմ զամենեսան որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով յիշեսջիք ի սուրբ աղաւթս ձեր զԱնճայն, որ ստացաւ զԱւետարանս, և զմայրն իւր զԹագուհին, և զաստուածապարգև զաւակն իւր զՄիրունն. և զկենակիցն իւր զԿուլ-խաթուն, և զեղբայրն իւր զՄէլիքշայն /// և զիս զանարժան զգծող դրոյս...

## 572

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երուսաղէմ 3235

Գրիչ՝ Աստուածատուր

... Եւ դուք հանդիպողք սմա և տեսողք և աւրինակողք յիշեցէք ի
505 մաքրափայլ յաղաւթս ձեր զճշմարիտ ծա//ռայքն աստուծոյ՝ զստացաւղ սուրբ Աւետարանիս զԱռաքելն, և զկենակիցն իւր զՄելէք, և զիւրեանց ծնաւղքն զՊօղոս և զԱղուբ. զԱսիլն և զՊարծանցն, զՍարգիս քահանայն, և զկենակիցն իւր զԱլամ, և զդեռաբոյս սարկաւագն զՅուսէփ, և զամենայն արեան մերձաւորսն յիշեցէք ի Քրիստոս և աստուած-ողորմի ասացէք և մեղաց թողութիւն խնդրէցէք յաստուծոյ, զի և ինքն ողորմածն <աստուած> և մարդասէրն աստուած ձեզ և մեզ ողորմեսցի, ամէն։

---

* Այս հիշատակարանի սկզբի մասը, քաղելով Մ. Տեր-Մովսիսյանի Ցուցակից, հրատարակել ենք սույն ժողովածուի Բ. մասում, 1453-ի թվաշարքում (էջ 35, հիշատակարան № 45)։ Այստեղ տպագրվող շարունակությունը նույնպես արժեքավոր է։

*Դարձեալ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուականիս Հայոց ԹՃ.
Երորդի և չորրորդի (1455), ի յանառիկ դղեակս, որ կոչի*, ընդ հովա-
նեաւ սուրբ Աստուածածնի և աստուածընկալ սուրբ Խաչիս, որ է յաղթող
և հզաւր զօրութեամբ ընդդէմ դիւաց, զոր բազում տեսաք աչօք մերովք
և լսեցաք. և զդիւահարսն կախէր յոտից, առանց ուրուք վերանայր ոտն
յատս և գլուխն բարձրանայր ի գետնոյն իբրև Բ. (2) թիզս, և յայլ բազ-
մահաւաք նշանացս, որ աստ կան հաւաքեալ, ի կաթուղիկոսութեանն
Հայոց տէր* Գրիգորի, *որ է.աթոռակալ սուրբ էջմիածնի և Վաղարշապա-
տու. Ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի* Աստուածատրոյ *սուտանուն
եպիսկոպոս* Ակլայ, *որ եմ մեղաւոր և անարժան ի գործս քահանայու-
թեան, զոր իմ տեսեալ զսէր և զփափաք* Առաքելին *և զ*Մելքին, *և զաս-*
507 *տուածասիրին* Մարիամին, *որ զթուղթն երետ սուրբ Աւետարանիս՝ // յի-
շատակ հոգոյ իւրոյ և բարեխաւս առ աստուած, ի քաւութիւն մեղաց իւ-
րոց։ Եւ արդ, ես՝ անկարգս ի կարգաւորաց և մեղաւորս յարդարոցդ,
անյիշելիս ի գրչաց՝ յանձն առի տկար անձամբ և աւգնութեամբն աստու-
ծոյ գրեցի ղսուրբ Աւետարանս մեղաւոր ձեռաւքս, այլ և ծաղկեցի և կա-
պեցի. աղաչեմ զձեզ անմեղադիր լինել խոշորութեան գրիս և սղալա-
նացս, զի կար մեր այս է և եմ Հ. (70) տարեկան։*

*Դարձեալ, աղաչեմ զաստուածարեալ դասս քահանայիցդ և զժողո-
վրրդոցդ յիշեցէք ի Քրիստոս զսուրբ վարդապետն իմ ղ*Յակոբ՝ *զքեռին
իմ, որ է աստուծոյ չափ երախտաւոր իմ, որ էառ զիս և ուսոյց ինձ
զՍաղմոս, զՇարական, զտեարն բովանդակ՝ զԹագաւորք և զԱլէլուք,
զԺամամտերն, զՓառերն, զԽոնարհեցուքն և զՈւղղեցիքն, զգրագրութիւն,
զծաղկել, զկազմել, և զամենայն բարեձևութիւն կարգաց, որ է ի սուրբ
եկեղեցի, ուսոյց ինձ զամենայն, զոր և ես անընդունակ եղէ հրամանաց
նորա։ Եւ ինքն սուրբ այրն աստուծոյ զամենայն ժամանակս կենաց իւ-
րոց անհանգիստ տքնութեամբ կատարէր զկարգ իւր, աղօթէր հանապազ՝
զցայգ և զցերեկ բազկատարած առանձնակի կատարէր զաղաւթս իւր,
զոր ոչ լեզու իմ կարէ ճառել զկողկողագին խնդրուածքն ի Քրիստոսէ, և
արժանի լինել սրբոցն մասին։ Զոր և հարեալ եղև ի սիրտն յանաւրէն
ազգէն մարաց և պսակեցաւ ի Քրիստոսէ մարտիրոսութեան ճանապար-
հաւ, որ և աղաւթիւք սորա ողորմեսցի Քրիստոս։*

*Այլ և յիշեցէք ի Քրիստոս զբարի ծնաւղքն իմ* զԱտոմ *և* զՇաֆար-
508 խաթունն, *և զամենայն արեան մերձաւորսն իմ // յիշել ի տէր սրտի
մտաւք, աստուած-ողորմի ասել, և մեղաց թողութիւն խնդրել ի յողոր-
մածէն աստուծոյ, ամէն։*

*Դարձեալ, յերեսս անկեալ աղաչեմ զձեզ զդասս լուսերամից յիշե-
ցէք յաղաւթս ձեր զստացաւղ սուրբ գրոցս* զՍարգիս *քահանայն, և զկե-
նակիցն իւր* զԱլամ, *և զորդին իւր* զՅուսէփ, *և զծնաւղքն՝* զԱռաքել *և*
զՄելէքՆ. *և* զՄարիամ *կինն բարեպաշտաւն, որ յուսով և հաւատով երետ
զթուղթ սուրբ Աւետարանիս, մասնակից և դասակից արասցէ Քրիստոս
աստուած ընդ եւղաբերից կանացն և սուրբ կուսանացն, ամէն։ Եւ աս-
տուած ձեզ ողորմեսցի, ամէն։ Յիշեսջիք ի Քրիստոս զբարեպաշտաւն և*

* Գրչության վայրի անունը քերված է։

զհաւատարիմ տանուտէրն զՅակոբ, և զծնօղսն իւր, և զկենակիցն իւր Հռիփսիմէ, և զորդին իւր զՀազարաշայ, և աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։

## 573
## ԱՒԵՏԱՐԱՆ

Երուսաղէմ 3431

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ Տփխիս

... Աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք այսմ աստուածաշունչ և
կենսունակ սուրբ Աւետարանիս կարդալով կամ աւրինակելով կամ տե-
սանելով յիշեսջիք առաջի Քրիստոսի զնախասացեալ ստացաւղ սորա
զՄարիամ և զայրն իմ Եւիբէկ, և զծնողսն իւր՝ զհայրն Մխիթար և զմայրն
293բ Ղումաթ. այլ և զծնողսն Եւիբէկին՝ // զՇրվան և զՀրատ, և զեղբայր Մա-
րիամին զՍողովմոն. և զպապն զԱբրահամ, այլ և զՅովանէս, և զՍտեփա-
նոս, և զամենայն արեան մերձաւորս նոցին՝ զկենդանիսն և զննջեցեալ-
սըն։ Եւ որք յիշէք բարի յիշմամբ և աներկբայ հաւատով, յիշեցեալ լիջիք
յանմոռաց յիշատակութիւնն Քրիստոսի աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ
յաւիտեանս, ամէն։

Ընդ նոսին, որք վերոյ գրեցան, յիշեսջիք և զիս՝ զմեղապարտ գրիչս
զՅովանէս անուամբ քահանայ և ոչ գործով, համդերձ ծնաւղաւք և ազգա-
կանաւք, այլ և զՄանուէլ հանճարեղ և ձեռնահմուտ քահանայ՝ զնկարող
սորա...

Գրեցաւ սա ի թվաբերութեան հայկազեան տոմարի ՋԴ. (1455), ի
294ա մայրաքաղաքս Տփխիս, ի դրան կամակատար սուրբ Աստուածածնիս //
և Գէորգեայ զաւրավարիս, ի լաւ և յընտիր Սրսցի աւրինակէ, ի հայրա-
պետութեան տեառն Գրիգորի Կաղարշապատու պատրիարքի, և ի թա-
գաւորութեան վրաց Գէորգէայ, և ի վերադիտողութեան մերոյ նահանգիս
տէր Ղուկասու, զոր պահեսցէ զսոսա տէր աստուած անփորձ հոգով և
մարմնով, ամէն։

## 574
## ԱՒԵՏԱՐԱՆ

Երուսաղէմ 3427, «Սիոն», 1950, էջ 230—233

ա

Գրիչ՝ Դաւիթ
վայր՝ Արճէշ

...Արդ տեսեալ և իմացեալ զսորա անճառելի աւետիքն և զահագին սպառնալիքն, և զամենեցուն փրկագործութեանն խորհուրդ, ամէնօրհնեալն և հոգիացեալն ի գործս ամենայն առաքինութեան, սրբասնեալ քահանայն տէր Խաչատուր, ճ բարեսունդ մաքրամիտ որդին իւր տէր Դաւիթ. որ նորընծայ էր ի յաստիճան քահանայութեան, ձեռնարկեալ գրեաց զսուրբ Աւետարանս, որ և ի սոյն ամի վերափոխեալ առ Քրիստոս և եթող

զանկողոպտելի գանձս յիշատակ բարի հոգւոյ իւրոյ, և բարեմիտ ծնողին իւրոյ՝ Խաչատուր քահանային և Շամամ տիկնոջ, այլ և եղբարց իւրոց՝ տարաժամ փոխեցելոցն առ Քրիստոս Ծերունի և Սիմէոնի...

Յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զվերոյասացեալ ստացող, նոյն և զգծող սուրբ Աւետարանիս զտէր Դաւիթ, և սրբասնեալ հայրն իւր զտէր Խաչատուր, և զեղբայր նորին զխօջայ Էվատշէն, և զծաղկեալ որդիքն իւր զխոջա Ֆախրատին և զՔարիմադին, և զմեւս եղբայր տէր Խաչատրուն զխօջայ Յովանէս, և զորդին իւր զԿարապետ՝ զփոխեցեալն առ Քրիստոս։

Եւ արդ ես յետինս ի կարգաւորաց և անպիտանս և անարժանս ի մանկունս եկեղեցւոյ, և անիմաստս ի գիրս գրչութեան Դաւիթ սուտանուն քահանա... շնորհիւ տեառն սկսայ, և ողորմութեամբ նորին կատարեցի զսուրբ տէրունեան Աւետարանս, ի թուականիս Հայոց մեծաց ՋԴ. (1455) ամին, ի քաղաքիս Արճէշ կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ տաճարի Գէորգեայ զաւրավարի, ի հայրապետութեան տեառն Գրիգորի՝ մեծ աթոռոյն էջմիածնի։

Արդ, որք ճաշակէք յամենալի սեղանոյս, յաստուածային բուրաստանէս, լիակատար մտիւ և ուղիղ հաւատով աստուած-ողորմի ասացէք ստացւողի այս մարգարտաշար կտակի՝ Խաչատուր քահանայի, և ծնաւղաց իւրոց՝ Յոճանիսին և Ոսկւոյն, այլ և հոգևոր մաւրն իւրոյ՝ Սառին. և մեծ պապերուն խաւջայ Մուսեճին և պարոն Ստեփանոսին, և վարդպետաց իւրոց Մարգարայ վարդապետին և Էլթանենց տէր Վարդանին. ամէն։ Եւ ինձ՝ անարժան գրչի Դաւիթ քահանայի, և ուսուցչին իմոյ Յովանէս քահանայի, և մարմնաւոր ծնողաց իմոց՝ հաւր իմոյ Խաչատուր քահանայի և մաւր իմոյ Շամամին, գնացելոյն առ Քրիստոս...

Բ

Նվիրատու՝ Խաչատուր Քահանա

Ես Խաչատուր քահանայ ետու զսուրբ Աւետարանս յիշատակ հոգւոյ իմոյ ի դուռն սուրբ Կիրակոսի ի Բաղեշ քաղաքի, ընդ իշխանութեամբ Մարդանենց Կիրակոս քահանայի, որ հոգոյ որդի է մեզ. մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսուրբ Աւետարանս ի դրանէ սուրբ եկեղեցւոյս, ոչ եպիսկոպոս, ոչ վարդապետ, ոչ քահանայ և ոչ իշխան, այլ կացցէ յաւիտենական յիշատակ ի դուռն սուրբ Կիրակոսին, առ ի յընթեռնուլ զսուրբ Աւետարանս հանապազ ի վերայ Դաւիթ նորընծայ քահանայի գերեզմանիս՝ գծողի սուրբ Աւետարանիս, ամէն*։

Գ

Նկարող՝ Մինաս

ԶՄինաս նկարողս յիշեցէք ի Քրիստոս**։

* Այս հիշատակարանի Ղ. Փիրղալեմյանի կատարած համառոտությունը տպագրված է սույն ժողովածուի Բ մասում (էջ 54—55, հիշատակարան № 71)։

** Գրված է նկարի տակ։

## 575

### ՇԱՐԱԿՆՈՑ

*Վիեննա 1000, Հ. Ոսկեան, Ցուցակ, էջ 589*

Գրիչ՝ Սամուէլ

98բ *Ով սուրբ եղանակաւորք, աղաչեմ զձեզ յիշել յաղօթս ձեր զեղկելի ախմար գրիչս զՍամուէլս, որ վասն դառնութեան ժամանակիս յամէն ամիս յերկրէ յերկիր եմ գնացեալ և գրեալ զՇարակնոցս. անմեղադիր լերուք պակասութեան սորայ, թվ. ՋԴ. (1455) գրեցաւ։*

## 576

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Փարիզ, Ազգային Մատենադարան 18*

Գրիչ՝ Խաչատուր
վայր՝ Կտուց

*...Եւ դարձեալ աղաչեմ յիշել յաղաւթս ձեր զտէր* Մինաս *քաջ նըկարաւղն, որ յար և նման է Բեռսէլիէլի Հոգիընկալ առաջին նկարողին տապանակին, և է յաշակերտաց սրբոց վարդապետացն* Թումային [և] Մկրտիչ Աւ[ւ]բէկէնց *վարդապետին, և է բանիբուն և Հոգիընկալ որպէս զվարդապետքն իւր ամենայն իմաստութեամբ և եաւթնարփեան չ[ա]հաւքն Իսրայէլի, որ և զմեզ արժանի արար իւրն ի ծառայութիւն, և Հոգևոր խրատական և եղբայրական սիրով սիրեաց զըմեզ, և յոլով ժամանակս կացաք ի միասին և վայելեցաք զնորա իմաստութիւն և զխրատն։ Տէր աստուած արարիչն ամենայն արարածոց, որ զարդարէ զամենայն արդարսն՝ նոյնպէս լուսապայծառ պատմուճանաւ և աստղալից պսակաւ զարգարեսցէ զտէր* Մինաս Նաղաշն, *և զհայրն իւր* Մախթումն, *և զմայրն* զՄըստմելիքն, *և զամենայն արեան մերձաւորս իւր՝ զկենդանի և զհանգուցեալսն ամէն, եղիցի, եղիցի**։

## 577

### ՄԱՇՏՈՑ ՁԵՌՆԱԴՐՈՒԹԵԱՆ

*Զմմառ 59, Մ. Քէչիշէան, Ցուցակ, էջ 33*

*Գրեցաւ ի թուաբերութեան Հայոց ՋԴ. (1456), ի յապրիլ ամսոյ։*
*Զ*Մարկոս *զմեղաւք գծողս յիշեցէք յարժանաւոր յաղաւթս ձեր։*
*Յորժամ զվեղար դնես՝ զմեղաւք լցեալ զ*Մարկոս *յիշեա***։

---

* *Հիշատակարանի այս մասը Սիրարփի Տեր-Ներսեսյանը բերում է Թարգմանաբար Մակլերի ֆրանսերեն բնագրից («Սիոն», 1951, էջ 142)։ Ձեռագիրն ընդօրինակված է 1456 թ.։*
** *Այս տողերը գրված են ձեռագրի 93բ, 58բ և 97ա—91բ էջերի լուսանցքներում։*

## 578
## ՄԱՇՏՈՑ

*Երևան 9694*

ա

Գրիչ՝ Մարգարէ
վայր՝ Բալու

12բ *Գրեցաւ սա ի թվին ՋԶ. (1457) ի դուռն սուրբ Գէորգա վանիցս ի Բալու: Աղաչեմք զձեզ ով ոք հանդիպիք սմա ձեռնադրել քահանայ, կամ կարդայք, կամ աւրինակէք՝ յիշեցէք յաղաւթս ձեր զմեղաւք լցեալ սուտանուն Մարգարէ աբեղայս, և զծնաւղքն իմ, և աստուած, որ առատն է՝ մեզ և ձեզ առհասարակ ողորմեսցի, և սղալանաց և խոշորութեան գրոյս մի մեղադրէք, զի կար մեր այնչափ էր։*

բ

Գրիչ՝ Գրիգոր

254բ *Ո՜վ մանկունք սուրբ Սիովնի,*
*Ձձեզ աղաչեմ արտասուալի,*
*Որք հանդիպիք յայսմ տառի,*
*Յիշման առէք դուք արժանի*
*Զտէր* Աւետիս *յոյժ գովելի՝*
*Անձն տկար և քաջ յոգի,*
*Որ ետ գրել բանս ի կարգի,*
*Ի յիջատակարան ջնջելի.*
*Եւ դուք յիշաւղքդ յիշեալ լիցիք,*
*Ի յարարչէն յամենայնի,*
*Այժմ և յաւուրն ապագայի,*
*Ամէն կրկին և եղիցի։*
*Զսակաւ գծողս մեղաւք լցեալ* Գրիգոր *յիշեա...*

գ

Գնող՝ Ճանիպէկ

63ա *...Գնեցի ի* Խարբերթ *ժԴ. (14) ֆլորին։ խոճայ* Ասլին *ձ[ե]ոք, խոճայ* Հինօվին *ձ[ե]ոք,* Սարու Տեփանոսին *ձ[ե]ոքն՝ մուրէն կայ.*
*Ի թվին ՋԶ. (1457)* Ճանիպէկն *առաւ։*

## 579
## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երուսաղէմ 1490**

Գրիչ՝ Սարգիս

139բ *Եւ արդ քանզի գրեցաւ աստուածային մատեանս ձեռամբ անիմաստ փանաքի և փծուն գրչի* Սարգսի *պիտակ բանասիրի լաւ. և յընդիր աւրի-*

---

** Ձեռագիրը տարբեր նյութերի ժողովածու է՝ ընդօրինակված ԺԷ դարում. Հիշատակարանն արտագրված է 139բ—141ա էջերում՝ որպես առանձին մի բնագիր։*

նակէ, ի դառն և յանբարի, վըշտաշատ և նեղ ժամանակի. ի թվականի
աբեղական տոհմի և հայկայկանս ղարմի ինն հարիւրեակ և վեցերորդ
թվի (1457)։ [Ե]ւ աստանաւր կամիմ սակաւ մի յապաղումն առնել վասն
նեղացեալ ժամանակիս։ Զի յամի Պ. և Ղ. և Թ.-երորդի (1450) ել ի
Դաւրիժու Ճիհանշայն՝ բռնացեալ որդի Ղարայ-Իսուփին, բազում և ան-
հուն զօրօք, և եկեալ պաշարեաց զԵզնկայ քաղաքն և զԲաբերդ, և էառ
զնոսայ, և բազում վիշտս հասոյց նոցա, այլ և յաւարի էառ զգաւառն
Դարանաղեաց, և գերեաց զբոլոր երկիրն, և այլ բազում նեղութիւնս հա-
սոյց շրջակայ գաւառացս, զոր ոչ կարեմք այժմ ընդ գրով արկանել զան-
թիւ չարիս ղաւրաց նորա։ Եւ առաքեաց զոմն զաւրավար Ըռըստամ անուն
140ա բազում զօրաւք ի Միջագետս, // և պաշարեաց զԱմիթ քաղաք, և զԱրղնի.
և զՄերտին, և զՈւռհայ, բայց ոչ էառ զամուրս նոցա, այլ աւերեաց և
գերեաց զերկիրս նոցա։ Եւ յետ տարոյ միոյ դարձաւ աստի նոյն Ճիհան-
շայն իւրովք զօրօք, և գնաց ի Խորասան, և էառ բազում քաղաքս մեծա-
մեծս և փոքունս, աւերեաց և զմեծ քաղաքն Ասպահան, և կոտորեաց ի
բնակչաց քաղաքին յաւուր միում Ճ. և Ի Ռ. (120.000) անձն և այլ աւելի,
նոյնպէս և յայլ տեղիս նոցա արար բազում չարիս զամս Զ. (6)։ Եւ յետ
այսքան ամաց դարձեալ առաքեաց զնոյն Ըռըստամն ի յԱմիթ՝ նոյն
առաջին զաւրօք ի վերայ Հասան պարոնին՝ թոռինն Աւթմանայ. և պար-
տեալ զօրաւք իւրովք սպանաւ ի նմանէ։ Եւ դարձեալ, ի սոյն օւրս եղև
ահագին շարժ յԵզնկան, և կործանեաց զքաղաքն, և զբոլոր պարիսպն
յատակէն տապալեաց, և մեռան ի նմին ժամու ի շարժին անձինք ԲԺ.-ին
հազար (12,000)՝ հաւատացեալ և անհաւատ, այր և կին, ծեր և տղայ, և
140բ սրբ//ասնեալ քահանայք, զոր ոչ կարեմք ղաղետս և զկսկիծ և զկոծ և
զհառաչ նոցա թվել, զի ականատես եղաք ահագին պատուհասին, զոր
արարիչն աստուած մի ցուցէ ծառայից իւրոց այնպիսի փորձութիւն և
վիշտ։ Եւ այս ամենայն եկն ի վերայ մեր վասն մեղաց մերոց ըստ մար-
գարէին։ Եւ յայսմ ամի էր թվական Ջ. և Զ. (1457), ապրիլ ամսոյ ի ԻԳ.
(23) յօւր շաբաթու կրկնայզատկին, ի չորրորդ ժամու ցերեկի։ Եւ ահա
այս Ը. (8) ամ է, զի յանհանգստութեան կամք և յառաջիկայն աստուծոյ
է գիտելի կամեցողին բարեաց ամենայն ստեղծուածոց իւրոց, ամէն։

Եւ արդ, քանզի տնկեաց արարիչն աստուած ի բնութիւնս մարդկան
միշտ զբարին սիրել և հետևիլ շահուց իւրեանց, և զի կրկին է բարին ոմն
պիտակ և անցական, ոմն ճշմարիտ և անանց։ Պիտակ բարի է յառող-
ջութիւնք և առատութիւնք ամենայն մարմնական իրաց, այսինքն գեղեց-
կութիւնք դիմաց, կատարելութիւն ամենայն զգայութեանց, վայելչութիւն
141ա կանանց, առողջութիւն որդոց և դստ//երաց, աճումն և ծննդականութիւն
անասնոց, առատութիւն ընչից՝ ոսկոյ և արծաթոյ և քարանց պատուա-
կանաց, պճնումն և զարդ երփն-երփն որակաց հանդերձից, լիութիւն
ցորենոյ և գինենոյ, և յայլ ամենայն քաղցրաճաշակ կերակրոց, և զա-
նազան պտղոց, և այլ ինչ իրաց, որ ի պէտս մարմնոյ է։ Եւ ճշմարիտ
բարի է և անանց հաւատ, յոյս և սէր, պահք, աղօթք և ողորմութիւնք հոգւ-
որ և մարմնօոր, խոհեմութիւն, արիութիւն, ողջախոհութիւն և արդարու-
թիւն, խոնարհութիւն, համբերութիւն, երկայնամտութիւն, աղքատսիրու-

թիւն, հիւրընկալութիւն, սիրել զաստուած և պահել զօրէնս նորա. և սիրել զրնկերն առաւել քան զանձն, և այլ բազում նմանք սոցայ բարեգործութիւնք գոն։ Դարձեալ, եւ աստուած իմաստութիւն մարդոյս ընտրել զչարն և զբարին, իմանալ զսուտն և զճշմարիտն։ Դարձեալ, հեռանալ ի չարէն և հետևիլ բարոյն. չար է որ տանի ի կորուստ յօիտենից և բարի է, որ տանի ի կեանս յաւիտենականս, այլ և փոփոխել զպիտակ բարիս և զկարծեցեալն ի ճշմարիտ և յանանց բարին, որպէս իմաստուն և աստուած։

## 580

### ԺՈՂՎԱԾՈՒ

Երևան 3295

Գրիչ՝ Մաթէոս

.320ա Արդ, սա է մասն ինչ յաշխատութենէ վարժապետին իմոյ Գրիգորի մեծի, և մասն ինչ ի քրտանց հարցն, և բոլորն իսկ յառատաձիրն տեառնէ, զոր և յոյժ աշխատութեամբ հաւաքեցի առ ի դիւրահասութիւն մանկանց նորածնելոցդ։ Զոր և հայցեմ, որք պատահիք այսմ, յիշեսջիք զՄաթէոս սպասաւոր բանի։

Արդ, ոչ թէ լիապէս գրեալ է աստ, այլ մասնաւոր բանից եղև լուծումն, իսկ գերակատարն ի մեծէն Գրիգորէ լուծեալ անդր գտջիր ճըշմարտապէս։ Դարձեալ, ծանի՛ք, զի մեծն Գրիգոր բազում աշխատանօք և ջերմ սիրով զՅոհաննու աւետարանս դաս առաց և քաղուածու շինեաց, մինչև յայն, որ ասէ. Յառաջագոյն քան զտօն զատկին, և փոխեցաւ ի Քրիստոս, և գիրքս թերատ մնաց։ Իսկ փանաքիս Մաթէոս ըքաղուածս յորժամ գրեցի Գ. (3) տետր ի Մատթէոս վարդապետի շինածէն լմնեցի։ Աղաչեմ անմեղադիր լինել, զի ոչ և փափագ բազում ունէի, վասն այն գրեցի։

Թուին ՋԷ. (1458)*։

## 581

### ՃԱՇՈՑ

Տ. Պալեան, Ցուցակ Կեսարիոյ, էջ 15—16

Գրիչ՝ Սարգիս
վայր՝ Պառուագրկու վանք

ա

.492ա ...Փափաքող եղեալ աստուածաշունչ գրոցս և ծաղկազարդ բուրաստանի՝ պարծանացս հոգւոյ և մարմնոյ վայելումն՝ ստացաւ զսուրբ գիրքըս ի հալալ ընչից իւրոց բռայիս Յովանէսն, և եղբայրն իւր պարոն Ավրանք, յիշատակ իւրեանց, և ծնաւղաց իւրոց՝ պարոն Սարգսին և մաւրն Մարթային, և ամենայն արեան մերձաւորացն, և զաւակաց նոցա՝ դեռաբոյս մանկացս տղայոցն՝ Ամիր-Սարգսին և Իմին-պակի, Մեծիկին և պա-

* Ձեռագիրն ընդօրինակված է ԺԸ դարում, գաղափար օրինակի հիշատակարանի հետ միասին։

*րոն* Վարդին. *և կենակցաց նոցա* Շնորհփորին, Խախաթունին. *և ինքն արարիչն աստուած վայելել տացէ և յերկար ամաւք պահեսցէ մինչ ի խորին ծերութիւն, և յետ ատենացս յելանելոյ երկնից արքայութեանն. աստուածային լուսոյն և տեսոյն արժանի արասցէ, մանաւանդ զըռայիս* Յովանէսն, *և պեղբայրն իւր* զԱվրանըն, *և զաւակսն և զծնաւղսն իւրեանց, և ամենայն մերձաւորքն, որում փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

*Գրեցաւ սուրբ գիրքս ձեռամբ* Սարգիս *աբեղային ի սուրբ ուխտս և ծգնաւորական տեղիքս՝ ի սուրբ անապատս, որ կոչի* Պառուագրեւու *վանքն, ընդ հովանեաւ սուրբ Կարապետիս, և սուրբ Լուսաւորչիս, և սուրբ Սարգսին, և սուրբ Նշանացս, որ աստ կան բազմեալ. ի յառաջնորդութիւն* Կարապետ *Հայրապետին, և ի կաթուղիկոսութիւն* Կիլիկեցւոց *տեառն տէր* Կարապետի. *և սուրբ էջմիածին վերադիտողին տեառն տէր* Գրիգորին, *ի թվին ՋԷ. (1458)։*

*Քրիստոս աստուած վայելել տացէ բռայիս* Յովանիսին *և* Ավրանէր *պէկին, ամէն։ Եղին զսուրբ գիրքս յիշատակ իւրեանց ի գեւղս* Կամիս, *ի ձեռս սուրբ քահանայիցն* Աստուածատուր *երիցու և* Սարգիս *երիցու, որ կամակից եղեալ սուրբ գրոցս գնելոյ. արարիչն աստուած սուրբ հայրապետացն և սուրբ քահանայապետացն արժանի արասցէ, ամէն, եղիցի-եղիցի։*

Բ

194ա *Ո՜վ եղբայր, թէ կամիս ուղիղ սաղմոս ուսանիլ, նա դու ի գրոցս ուսիր, քանզի ի ձեռաղրէ է աւրինակս Գառնեցոյ. և զանարժան գրիչ յիշեա ի տէր։*

Գ

235բ *Մեղաւոր եմ, մեղաւոր եմ,*
*Ես իմ անձամբս վկայեմ.*
*Համարիմ թէ այլ մարդ չասէ,*
*Ես կու գիտեմ զինչ գործեր եմ։*

Դ

273ա *Ով իմաստուն ճարտար դիտողք,*
*Եւ հանճարեղք կարդացողք,*
*Անարժանիս լերուք յիշողք,*
*Թէ տէր Յիսուս զիւր մեղքն թող,*
*Տէրն յիշէ քաջն յաղթող,*
*Անյիշաչար է և խնամող։*

Ե

295բ *Իմ մեղքն է խաւար կամար, կու բերէ կարկուտ հրեղէն,*
*Քանի կու յիշեմ զնա՝ կու դողան ոսկերքս իմ ամէն։*

Զ

306ա *Ընկալ տէր* Մենաս *վարպետ՝ յանջըրդի աղբիւրէս և ի մէգ խաւարէ ընտրեալ մրրկէս, և ի յանցաւղ անձրև յամպէս, և ի մշակ անվարժ գրչէս զսակաւ աշխատողս և զանարհեստս՝ զ*Սարգիս *սուտանուն քահանայս, և*

յիշեա յարժանաւոր յաղաւթս քո, և աստուած զքեզ յիշէ յիւր մաւասնգամ գալուստն, ամէն։

Է

357ա Ախա՜յ, ախա՜յ հազար բերան, վայն քիչ է ինձ յայսմ աւրիկս և յայսմ ժամանակիս որքան կենդանի եմ։

Ը

459ա Ի յերիսացս գրելն յանկարծակի ակն ոչ ունելով և ոչ կուման, նա ձայն մահու եկն առ իս, քանզի լծակիցն իմ տղայովն ի յաւագ-եղբաւրն ի յաւագ ուրբաթն եկաւ գնաց ողջ ու բարով, եւ ես ի հետ ըղաւորող և ի յԱռիւծ միգաց կամուրջն գնալով, և ընկերքն նորա, արին առեղէն(՜) ինձ և տղայոց իմոյ, տարեալ ի Մամլագրկու ջուրն՝ ջրտար արին և բաղում սուք թողին մեզ։

Ո՜վ եղբարք, քանի որ հեռի կարմունչ նայի կարմունչ գնացք, քանիի և ես ջրգէտ էի և ըստ կարի զաւրութեան իմոյ զեկած գիտերէտ պատէի (՜), և այլոց ձեռաւք ջրտար արի*՝ զկենակիցն իմ։ Աղաչեմ ձեզ, ո՜վ եղբարք, մեղաց թողութիւն խնդրեցէք յաստուծոյ, և աստուած ձեզ ողորմէ։

## 582

## ԱԻԵՏԱՐԱՆ

Վիեննա 850, Հ. Ոսկեան, Ցուցակ, էջ 432

Գրիչ՝ Յովհաննէս կրօնաւոր
վայր՝ Ասփստան գիւղ

255բ ...Ի թուիս Հայոց ՋԷ. (1458)։ Արդ ես Յոհանէս կրաւնաւո[ր] ստացա զսուրբ Աւետարանս ի հալալ արդեանց իմոց, յիշատակ ինձ, և ծնողաց իմոց, և ամենայն արեան մերձաւորաց իմոց, հօրն իմ պարոն Թումաին, և մօրն իմո Բաղդատին, և քեռն իմո Սուլտանին, և զաւակացն իւրոց Մեսրոպի և Ալամշի և Գուլխաթունին, և փեսաին իմո Յակոբշի, և մօրն իւրոյ Սատաթին, և հոգեւոր մօրն իմո Գուճաշի, և դստերն իւրո Մարթաի, և կենակցին իւրո Ջանգիշին, և Մաղթումին որ...** Յամս աստուածապատում վերադիտողի Աղբագո նախանգի երկոտասան զաւազանացս աթոռ Բարդաւղիմէոսի առաքելոյս՝ տեառն Հայրապետի արհեպիսկոպոսի, և ստացողի սորա Յոհանէս կրաւնաւորի. որո[ց] յիշատակ սոցա աւրհնութեամբ եղիցի։ Ո՜վ դասք լուսերամից, յորժամ հանդիպիք սուրբ Աւետարանիս յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր զվերոգրեալ անուանքս ի սմա և աստուած-ողորմի ասացէք բոլորով սրտիւ և լի հաւատով, և աստուած ձեզ ողորմեսցի ամէն. և որ աստուած-ողորմի ասէ հարիւրապատիկ*** առցէ յաստուծոյ։ Ես Յոհանէս աբեղայս ստացա զսուրբ Աւետարանիս յիշատակ ինձ և ծնօղաց իմոց, ի դուռն սուրբ Յարութեան, ի գեաւղն Ասփստան կոչեցեալ։ Մի ոք իշխեսցէ հեռացուցանել, և որ խնամ տարցէ՝ աւրհնի յաստուծոյ, ամէն։

---

* Տպագրված է՝ «ջրտարարի»։

** Երկու տող դատարկ է թողնված։

*** Գրված է՝ «Ճ պատիկ»։

## 583

## ՄԱՇՏՈՑ ԵՒ ԳԱՆՁԱՐԱՆ

*Հ. Քոսեան, Ցուցակ Արձնեան վարժարանի 41, ՀԱ, 1962, էջ 46*

*Ստացող՝* Նեֆբաղթ

*Փառք... ի թվականութեան ՋԸ. (1459)։ Արդ, ցանկացող եղև սուրբ գրոցս, որ է բուն Մաշտոց բոլոր և Գանձատետր... ետ գրել զգիրքս զայս յիշատակ հոգոյ իւրոյ* Նեֆբաղխթն *հաւետորին, և հաւրն իւրոյ բարեգործ* Գրիգորին, *և մօր իւրոյ աստուածասէր* Սառային, *և սրբասէր եղբաւրն տէր* Յոհաննէս *քահանային, և հոգևոր եղբաւրն իւրոյ՝ քրիստոսասէր և աղքատասէր և քաջ և գիտնական և մաղգասի, որ երեք անգամ սուրբ գերեզմանն Քրիստոսի աստուծոյ մերոյ ի* Երուսաղէմ *է գնացել և բազում արդիւնս է արարեալ՝ տէր* Յոհաննէսն, *և ողորմած տնանկաց և աղքատաց դքուրն իւր՝ զփոխեալն առ Քրիստոս* զԾղիսաքեթ, *զհամեստ և բարեգործ զհարսն իւր զիրիցակինն* զԽաթունշէն, *աստուածասէր դքուրն իւր* զՊատիանէ, *քրիստոսասէր և բարեհաւատ զհոգևոր քուրն իւր՝ աստուածապաշտ և աստուածասէր և քահանայասէր զփոխեալքն առ Քրիստոս* Յիադուպշէն, *և* Խըդրշէն, *և ամենայն արեան մերձաւորաց, ամէն։*

## 584

## ՃԱՇՈՑ

*Երևան 7404*

*Նուիրատու՝* Տայ[աք]-խաթուն

425ա ... *Բաշխաւղն առատ պարգևացն՝ սուրբ հոգին, միշտ և յանապաղ յորդորէ զստեղծուածս իւր՝ զոմն ի սէր սրտէ, զոմն ի խոնարհ հոգով՝ հեզութեան, զոմն ի գութ ողորմութեան առ աղքատսն, զոմն ի կամաւոր աղքատութիւնն, զոմն խաղաղարարութիւնն ընդ[դ]էմ խռովարարաց, զոմն ի համբերութիւն բազմադէմ վշտաց հալածանաց, զոմն յիշատակ առնելոյ, զոր և մտածեալ զրանն, որ ասէ՝ Երանի, որ ունիցի յիշատակ ի Սիովն և ընտանի յԵրուսաղէմ* Տայ[աք]-խաթունն. *և ետ գրել զսա ի հալալ արդեանց իւրոց, և եդ ի դրունս սուրբ Ահրոնին, ազատ, ալաստ, ոչ ոք չունի իշխանութիւն գրաւելոյ կամ ծախելոյ. եթէ ոք յանդգնի և ձեռ-[նա]մուխ լինի, նա զպատիժն Յուդայի առցէ և խաչահանուացն ես ԳՃ. և ԺԸ. հայրապետացն անէծքն առնու, ամէն։ Թվականին ՋԸ. (1459)։*

## 585

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 8883*

*Գրիչ՝* Յովհաննէս

7ա *Ո՜վ դասք լուսերամից... որք հանդիպիք [այսմ] աստուածաշունչ աւետարեր սուրբ Աւետ[արանիս] յիշեցէք ի մաքրափայլ և յերկնաթ[ռիչ ա]ղաւթս ձեր զվերջին ստացող սոր[ին՝ զբարե]պաշտ և հաւատարիմ*

տանուտէրս զ/// և զամուսին իւր զխասխաթուն. և զծնող[սն իւր և] զփոխ-եալն առ Քրիստոս զզաւակսն իւր /// Մարգարէ. և որ յիշէք և լի [սրտի ող]որմի ասէք, ինքն, որ առատն է ի տու[րս բարե]աց ձեզ, առհասարակ, և վերոյ գրելոցս [ամե]նեցուն ողորմեսցի աստուածն ամենայնի յիւր փա[ռաւ]որ և միւսանգամ գալստեանն. ամէն։

Թվականութեանս ՋԸ. (1459) գրեցաւ, ձեռամբ մեղապարտ Յովհանէսի և տվաւ ի /// անչինչ յիշատակ։ Աստուած վայելել տացէ, ամէն և եղիցի*։

586
ՄԱՇՏՈՑ

Երևան 3113

Գրիչ՝ Քրիստոսատուր
վայր՝ Եզընկա

142բ ... Արդ եղև աւարտումն աստուածային տառիս, որ կոչի Մաշտոց ձեռամբ բազմամեղ և անպիտան գրչի Քրիստոսատուր էրէցու, ի Թվ. ՋԹ. (1460)։ Գրեցօ ի գաւառս Եզընկայ, ի դրան սրբոյն Սարգսի զաւրավարի։ Աղաչեմ զձեզ եղբարք, ով ոք հանդի[պիք] սմա տեսանելով կամ աւրինակելով, յիշեսջիք զմեղուցեալ ծառայս։

587
ԼՈՒԾՄՈՒՆՔ ԴԺՈՒԱՐԻՄԱՑ ԲԱՆԻՑ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ

Երուսաղէմ 1210

Գրիչ՝ Նիկողայոս Աղբերմանցի

399 Զսակաւ աշխատողս՝ զՆիկողայոս միայն անուամբ եպիսկոպոս զԱղբերմանցիս, զմեղսամակարդ բաղմավէր հոգիս, և զսրբազան եպիսկոպոսն զտէր Մարտիրոսն, և զտէր Սահակ հեզահոգի կրօնաւորն՝ զգրոց վերծանողն, որ զաւրինակս խնդրեցին և մեզ ետուն գրել, նայ և զշնորհող օրինակիս զտէր Թորոս աթոռակալն յիշեսջիք ի սուրբ աղօթս ձեր, ո՜վ սուրբ ընթերցողք, և աստուած [զձեզ յիշէ]**։

588
ԳԱՆՁԱՐԱՆ
Երուսաղէմ 2011

Գրիչ՝ Կիրակոս

373բ Փառք ... որ ետ կարողութիւն տկար ոգոյ և դեղևեալ մատանց Կիրակոս սուտ քահանայիս հասանել յաւարտ Գանձարանիս յամի ՋԹ.

* Ձեռագրի սկզբի թերթերի աջակողմյան մասն այրվել է, և շատ բառեր զոհ են գնացել կրակին։

** Հիշատակարանի գրության տարեթիվը հայտնի չէ, սակայն նույն Նիկողայոս Աղբերմանցի գրիչը մի այլ ձեռագիր ընդօրինակել է 1460 թվականին (տե՛ս սույն ժողովածուի Բ. մասում, էջ 150—152)։

(1460) Թվականիս Հայոց, յուլիս ամսոյ Լ. (30), յաւուր երեքշաբթի, ի խնդրոյ բարեմիտ և հարկևոր տանուտրոջն Կարապետ կուրդինկարին։ Արդ, որ ոք կամեսցի խնդիր գիտի մարգարտի ընթանալ մարմնականի կամ հոգեկանի, յանձին բարձեալ կրեցին զամենայն տաժանմունս, զի թերևս հասանել կարիցին ի տենչանս փափագանացն, որում բաղձան։ Նոյնպէս և ի խնդիր ելեալ այսմ աստուածաշար մարգարտիս և եղանակաւոր տառիս ///

## 589

## ԱՒՍՏԱՐԱՆ

Վիեննա 787, Հ. Ոսկեան, Ցուցակ, էջ 349

Գրիչ՝ Գալուստ
վայր՝ Աղջոց վանք

ա

242ա— Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուականութեան Հայոց ՋԹ.
243բ (1460) ի հայրապետութեան Գրիգորոյ ի յաթոռն սուրբ Լուսաւորչին՝ ի սուրբ Էջմիածին, և ի խանութեան Ջահանշահի՝ որդւոյ Ուսուֆին։ Գրրեալ ձեռամբ յոգնամեղ և անարհեստ դրչի Գալուստ աբեղայի, ի դառն և ի նեղութեան ժամանակի, ի վանքս Աղջոց, ընդ հովանեաւ սուրբ Ստեփանոս Նախատակիս, և հրաշափառ սուրբ Կաթուղիկէիս, և սուրբ Աստուածածնիս, և ամենայն սրբոցս, որ աստ հաւաքեալ կան։ Ո՜վ ժիր մշակք Քրիստոսի և սպասաւորք Կաթուղիկէ եկեղեցւոյ եւ արժանացեալք սուրբ մարմնոյ և արեանն տեառն, որք ժառանգողք էք սուրբ Աւետարանիս՝ յիշեսջիք ըստ հոգւոյ հարազատ եղբայրն մեր զտէր Մանուէլն, որ ստացաւ զսա ի հալալ արդեանց յիշատակ իւրոց զսուրբ Աւետարանս, յիշատակ իւրեանց սուրբ աթոռոյն, և Վանստանայ սուրբ Աստուածածնին, նաեւ հօրն պարոն Միրզին, և մայրն Խոնթշին, և հարնեղբայրն Նուանշին. և Ամիր-Եզդինին, և ամենայն արեան մերձաւորաց առհասարակ ողորմեսցի Քրիստոս աստուած և լսելի արասցէ զերանաւէտ ձայնն, եթէ Եկայք օրհնեալք հօր իմոյ, ժառանգեցէք զարքայութիւնն, ամէն։ Նաեւ զմեղապարտ նկարաւղս զՍտեփանոս աբեղէս և զիմ փոքրս՝ զՅոհաննէս կաղմող սորա արժանի արասցէ մասին աւրհնութեան, ամէն։

## 590

## ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

Երևան 6333 (Յ. Քաջազնունի, Ցուցակ Վասպուրականի) 374

ա

ՋԹ. (1453) գրեցաւ յօրինակէ Վարագցի Յովանէս աբեղայէ և աշակերտէ։ Քրիստոս լուսաւորէ զիւր հոգին և զիւրն ամէն։

բ

Զմեղաւոր յՔ" ցր" ց" շվ" յիշեցէք ի Քրիստոս աստուած մեր և ձեզ լիցի մասն։

Գր[եցաւ] ՋԹ. (1460)։

Գ

*Գրեցաւ թվ. ՋԹ. (1460) մայիս ԺԶ. (16) և աւարտեցաւ ի ԺԱ. (11) տարի*։*

## 591

## ԱԻԵՏԱՐԱՆ

**Երևան 9999**

*Գրիչ՝* Յովհաննէս փակակալ
*վայր՝* Սանահին

176ա *...Արդ, ի յոքունց նազելի, գերամաքուր և սրբասէր այրն հոգելից.*
*որ և ի տիս համբակաց սնեալ և վարժեալ առ ոտս երջանիկ րաբունեաց.*
*մինչև ի հասակ ծերութեան կրթեալ ի մամուլս աստուածշունչ գրոց և*
*յերկիւղն աստուծոյ՝ վարդապետն* Ստեփաննոս *յ*Արարադեան *գաւառէ, ի*
*յականաւոր և յանմատոյց դղղէկէն* Անբերդայ, *բնակեալ յանապատի*
*նորին, որ կոչի* Աղաւնոյ այր՝ *առաքինասէր վարուք, և անտի ուշ եդեալ*
*ի սուրբ քաղաքն* Երուսաղէմ, *և նաւեալ ի* Պոնտոս *և հոշակաւորն ի* Կոս-
տանդնուպալիս, *ի* Մեծն *յ*Ասիայ *և յ*Ատտալիայ, *ի* Կիպրոս *և յ*Աղեքսան-
դրիայ, *ի յ*Եգիպտոս, *և ի վայրաքնակ անապատաւոր սուրբ հարսն, որ*
*ի նմա։ Եւ գիմեալ գայ յ*Երուսաղէմ *երկրպագութիւն աստուածընկալ սուրբ*
*դերեզմանին Քրիստոսի և ամենայն տնաւրինականացն որ ի նմա և որ*
*զնովաւ։ Եւ անտի հասեալ յառաքելական աթոռն Հայոց, ի մայրաքա-*
*ղաքն* Սիս, *ի յողջոյն սուրբ կաթողիկոսին Հայոց տեառն* Պաւղոսի. *և*
*յերկրպագութիւն շնորհաբաշխ աջոյն մեր սուրբ Լուսաւորչին Գրիգորի։*
*Ապա ի խոյզ և ի խնդիր եղեալ վասն յիշատակի ստացական աստուա-*
*ծաշունչ գրոց՝ հանդիպի սուրբ Աւետարանիս, և տեսանէ խախտեալ ի*
*կազմէ և պակասեալ ի կարգէ։ Ըստանա զսա ի հալալ ընչից իւրոց, և*
*բերէ յաշխարհս մեր, և հասանէ ի գերահռչակ ուխտս* Սանահին, *և նա*
*կրկին նորոգել ձեռամբ մեղապարտ* Յոհաննիսի, *զպակասն գրել և զթե-*
176բ *րին լնուլ է կազմել, յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնօղաց ի[ւ]րոց, և ամե-*
*նայն արեան մերձաւորաց. և ի վայելս անձին եղբաւրորդոյ իւր, և ձեռ-*
*նասուն աշակերտի* Սարգիս *աբեղայի։ Վասն որոյ աղաչեմք զամենեսե-*
*եան, որք աւգտիք ի սմանէ և լուսաւորիք սովաւ, յիշեցէք ի մաքրափայլ*
*յաղօթս ձեր զվերոյգրեալ ստացօղ տառիս զ*Ստեփանոս *վարդապետ իւ-*
*րայովքն ամենայնիւ, ասելով թէ Տէր աստուած ողորմեա նոցա։ Ընդ նո-*
*սին և զվերջին աշխատող ի սմա զ*Յոհաննէս *անարժան և մեղաւոր յիշե-*
*ցէք ի մեղաց թողութիւն։ Եւ ինքն, որ առատ է ի տուրս պարգևաց՝ ձեզ*
*յիշողացդ և յիշեցելոցս ողորմեսցի Քրիստոս աստուած, և նմա փառք*
*յափտեանս, ամէն։*

Բ

*Արդ, ես անարժանս ի կարգաւորաց* Յոհաննէս *փակակալ և սպասա-ւոր սուրբ Աստուածածնիս* Սանահնու, *որ ի յայն ժամանակէն մինչև ի*

* *Այս հիշատակագրությունները գրված են առանձին քարոզներից հետո։*

յայս ժամանակս, որ ծերացեալ եմ ու ի դուռն գերեզմանին հասեալ, վկա
եմ Աւետարանիս, որ հրամանաւ Ստեփանոս վարդապետին զպակասու-
թիւն Աւետարանիս դրել եմ ու կազմել։ Միրանշէն ի մեր վանիցս, որ էր
սան և յորդէգիր յաւազանէն վարդապետին ու Սարգիս աբեղային, թողին
զԱւետարանս մաւտ ի Միրանշէն և ի սանամայրն իւրեանց, և ինքեանք
177բ գնացին յայլ տեղիս վախճանեցան, որոյ յիշատակ նոցա // աւրհնութեամբ
եղիցի, և գրեալ ի դիրն կենաց անջինջ յիշատակաւ։

Արդ ես Միրանշէս՝ ծառայ սուրբ Աստուածածնիս, և իմ մայրս Ոս-կենատս, ընծայեցաք զսուրբ Աւետարանս սուրբ Աստուածածնիս և իւր միաբանիցս, զի և մեզ եղիցի մասն յիշատակի և փրկութիւն հոգւոց մե-րոց և ի թողութիւն մեղաց, և պապուն իմոյ Կիրակէտրի և հաւրն իմոյ Դաւթին: Վասն որոյ երես անկեալ առ [ո]տս սուրբ միաբանիցդ, զի արժանի առնէք յիշատակի միով տէր-ողորմայիւ, և որք յիշէք և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոս Յիսուս ի տէր մեր, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Մի ոք յիշխեսցէ հեռացուցանել զսուրբ Աւետարանս ի դրանէ սուրբ Աստուածածնիս, և եթէ ոք յանդգնի՝ զվարձս Յուդայի ու զԿայէնի առցէ, և կատարողքն աւրհնին յաստուծոյ։ Եւ էր թուականս Հայոց ՋԹ. (1460)*։

## 592
## ԱՒԵՏԱՐԱՆ

*Յ. Քոսեան, Ցուցակ Արծնեան վարժարանի 12, ՀԱ, 1961, սյուն. 128*

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Պալախոռու վանՙ

Արդ գրեցաւ սուրբ և տիեզերալոյս և տիեզերաց քարոզ սուրբ Աւե-տարանս ի թուականութեանս Հայոց ՋԺ. (1461), ի գաւառս Խաղտեաց. ի սուրբ անապատս որ սուրբ Գէորգ կոչի, որ Պալախոռու վանՙ ասի, և խնդրոյ սրբասէր և հեզահոգի և աստուածային աւրհնութեան արժանա-ւորի Պառոնին. և զհայր զՄու[րա՞տ], զմայրն զՍուրաթն, և դեղբայրն զՍեփանոսն, զքուրն զՇուՙրանն, և զկողակիցն զԱնանուն, զՇուՙրանին տաքրն զՅովնանէսն, զՄանանին որդին՝ զԱմիր–Պշխեր, Պառոնին կո-ղակիցն զԴշխոյն, զԱստուածատրի որդին զՍիմաւոնն և զայլ ամենայն արեան մերձաւորսն**։

---

* Մագաղաթյա այս Ավետարանը գրված է ԺԳ—ԺԴ դարերում։ Ստեփանոս վարդապետը այն գնել է Սսում 1374—1384 թվականներին՝ Տէր Պողոսի կաթողիկոսության տարիներին։ Առաջին հիշատակարանը Հովհաննեսի կողմից գրված է դրանից քիչ հետո՝ այսինքն ԺԴ դարի վերջերին, կամ ԺԵ-ի սկզբներին, Սանահնում, երբ այն լրացվել, կազմվել և նվիրվել է վանքին։ Բ հիշատակարանի ժամանակը հայտնի է՝ 1460 թ., երբ մահացած էր Ստեփանոս վարդապետը, իսկ Հովհաննեսը՝ «ծերացեալ և ի դուռն գերեզմանին հասեալ»։ Երկու հիշատակարաններն էլ դնում ենք վերջին (1460) թվականի տակ։

** Շարունակությունը կարդալ «ԺԵ դարի հիշատակարաններ» Բ մասի 166 էջում (№ 209)։ Հիշատակարանը քաղել էինք Գ. Փիրղալեմյանի «Նոտարք»-ից (էջ 206), որը թերի էր։

## 593

## ԱՒԵՏԱՐԱՆ

Աղեքսանդրիայի Պօղոս-Պետրոս եկեղեցի
«Սիոն», 1958 թ., էջ 268—270

Գրիչ՝ Հայրապետ
վայր՝ Երուսաղէմ

...Քանզի գրեցաւ սա ի աստուածակոխ սուրբ քաղաքս յԵրուսաղէմ, ընդ հովանեաւ ամենայն սուրբ տնաւրինականացս Քրիստոսի աստուծոյ մերոյ, ձեռամբ նուաստ ծառայի ծառայիցն աստուծոյ բազմամեղ և անպիտան գրչի, որ ամաչեմ կոչիլ ի բարձրագոյն անուանէն եպիսկոպոս, զի ի դատապարտութիւն է ինձ անունս այս, այլ լոկ անուամբ կոչիմ Հայրապետ: Եւ ես անպիտան և անարհեստ գծողս, սկիզբն արարի այսմ լուսափղձ և կենակիր աստուածաւանդ սուրբ կտակիս ի ստոյգ և յընտիր աւրինակէ ըստ կարի իմում գծագրեցի զսա ի լուսաւորութիւն մանկանց եկեղեցւոյ և առ ի յիշատակ հարևոր և համեստ և աղաւթարար մահդասի Իկտիշ ապաշխարողին, որ կայր ի քաղաքս Երուսաղէմ, ի վանս սրբոյն Յակոբայ և աղաւթէր յամենայն սուրբ տնաւրինականսն Քրիստոսի, ստացաւ զսա ի հալալ արդեանց իւրոց՝ յիշատակ իւր, ծնաւղացն իւրոց և ամենայն արեան մերձաւորացն, հաւրն իւրոյ Յոհանիսին, և մաւրն իւրոյ Մուղալ-խաթունին, մուղդսի Խաչերեսին, և հաւրն իւրոյ Ամիր-Ասլանին, և մաւրն իւրոյ Մեծխաթունին, Խութլուին, և եղբարցն իւրոց Էգկարին, Սինանին և Յոհանիսին, և այլ ամենայն արեան մերձաւորացն իւրոց և երախտաւորացն, ամէն։

Դարձեալ կրկին յիշեցէք ի Քրիստոս ի վերոյ գրեալս ի սուրբ Աւետարանս՝ զհոգևոր մայրերն իմ Իկդիշն և Մեծխաթունն, և զհոգևոր եղբայրն իմ զպարոն Խաչերեսն: Եւ դարձեալ կրկնակի ես անպիտան և մեղաւոր ծառայս Իկդիշ, երես անկեալ աղաչեմ զքահանայքդ... յիշեսջիք... զմեղաւոր ծառայքս զԻկդիշն, զՄեծխաթունն և զԽաչերեսն, որ ետու զսուրբ Աւետարանս գրել։

Յիշեցէք ի Քրիստոս զմուղդասի Խաչերեսն և զմայրն իւր զՄեծխաթունն, որ կամակից եղեն և աւգնական Աւետարանիս առնելոյ։ Գրեցաւ սուրբ Աւետարանս ի աստուածակոխ մայրաքաղաքս Երուսաղէմ, ի վանս որ կոչի Փրկիչ և ի մէջ հրեշտակակրաւն կրաւնաւորացս։ Ի թուականիս Հայոց ՋԺԱ. (1462), ի կաթողիկոսութեան տեառն Կարապետի Կիլիկեցւոյ և ամենայն Հայոց։ Արդ, աղաչեմ զամենեսեան որք հանդիպիք այսմ աստուածաւանդ սուրբ Աւետարանիս, յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր զԻկտիշ մղդսի, որ ստացաւ զսա ի հալալ վաստակոց իւրոց յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնաւղաց իւրոց, և ամենայն մերձաւորաց։

Ընդ նմին և զանպիտան ծառայս զՀայրապետ՝ զգրաւղ սուրբ Աւետարանիս և զծաղկող յիշման արժանի առնէք։ Այլ և զԹղթի կոկող և զկազմող սուրբ Աւետարանիս զԱռաքել զկուսակրաւն և զճգնաւոր սուրբ աբեղայն յիշման արժանի արարէք և դուք յիշեալ լիջիք...

Այլև ծանուցումն լինի մեր հոգևոր մաւրն Իկդիշ մղտսին և մղդսի Խաչերեսին և իւր մաւրն մղդսի Խասխաթունին, քանզի չասէք թէ վար-

դապետն շատ դրամ էառ ի մենէ, հեռի ի ձեր հարկէցդ, աստուծոյ հրամանքն գրած է ի սուրբ Աւետարանդ, թէ գանձեցէք. ձեզ գանձս յերկինս, ուր ոչ ցեց ուտէ և ոչ ուտիչ ապականէ, այս Աւետարանս այն գանձն է։ Դարձեալ. նման է արքայութիւն երկնից առն վաճառականի, որ գտանէ պատուական մարգարիտ մի, վաճառէ զամենայն ինչս, որ ունի և գնէ զմարգարիտն զայն. այս Աւետարանս այն մարգարիտն է։ Դարձեալ. նման է արքայութիւն երկնից գանձի ծածկելոյ յագարակի, զոր գտեալ մարդոյ թաքոյց, և ի խնդութենէ անտի երթայ վաճառէ զամենայն ինչ, զոր ունի և գնէ զագարակն զայն. ագարակն աշխարհս է, այն գանձն սուրբ Աւետարանս է, որ սուրբ սրտիւ և հաստատուն յուսով գնեցիք ձեր հալալ վաստակաւք, ձեր հոգոյ առաջնորդն և ձեր հոգւոյ փրկութիւն սուրբ Աւետարանս է, որ տանի զձեզ ի կեանս յափտենից։ Հոգևոր մայրն իմ Իկդիշ, որ խոստացար զպրանէ ասուիքն և յուղարկեցիր, խիստ մերկ էի և աղքատ՝ մեզիկ ծածկոյթ արարաք, արարիչն աստուած զքո հոգիդ զարդարէ լուսեղէն պատմուճանաւ ի հանդերձեալ կեանս, ամէն։

Մղդսի Քրիստոսատուրն որ շատ աշխատեցաւ և զԱւետարանդ բերի ձեզ, արարիչն աստուած իւրն վարձահատոյց լինի, զերանաւէտ ձայնն լսէ ինքն և իւր ննջեցեալքն, ամէն։

594

ԱՒԵՏԱՐԱՆ

Երուսաղէմ 1799

Գրիչ՝ Վարդան
վայր՝ Վան

603 ... Արդ, յանկ ելեալ կատարեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ յոգ-
նամեղ և անարհեստ գրչի Վարդան սուտանուն էրիցու, ի քաղաքս որ
կոչի Վան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ Վարդան զօրա-
վարին, ի թուականութեանս Հայոց ՋԺԱ. (1462), ի հայրապետութեան
604 տեառն Զաքարիայի Հայոց կաթողիկոսի, որ յայսմ // ամի բերաւ աչ
սուրբ Լուսաւորչին յԱղթամար, և մերոյ աթոռակալացս տէր Յովաննէս
եպիսկոպոսացս։
Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա յիշեցէք ի Քրիստոս
զվերոյյիշեցեալն զՍտեփանոս բարեպաշտ տանուտէրն, և զկենակիցն
իւր զԹամար. և զորդիքն իւր՝ զփոխեցեալքն ի Քրիստոս, աստուած-
ողորմի ասացէք Սանիլին. Մուրադին, Էվազին, Վարոցին. և Մուղամ-
Փաշին. և իւր տղայոցն Աւետիսին, և իւր կողակցին Խալիմ-Խաթունին,
և իւր զաւակացն Թումին. և իւր կենակցին Թանսուխին, և որդոյն Մա-
նուկլին. և այլ տղայոցն Մարտիրոսին, և իւր կնոջն Խալիմ-Խաթունին. և
տղայոցն Առումին, Աւագին, Յոճանիսին, և Յովանիսին, Մկրտչին և իւր
կենակցին Մախրումշին, և որդոցն Մուրադին, և Ջանփաշին, և այլոցն, և
քուերցն Մէրինին, և Խամաւորին, և Ստեփանոսի քուերն Մրուաթին. և որ-
դոյն Յովանէսին, և Սօրղանին, և հոգևոր հօրն սոցին Կիրակոսին. և Ստե-
605 փանոսի հոգևոր որդոյն խոջա Խօսրովին, որ կամակից // եղև այսմ բարի
գործոյս, և զայլ ամենայն արեան մերձաւորք սոցա յիշեցէք և միամիտ

*սրտիւ աստուած-ողորմի ասացէք։ Եւ ինքն, որ հանգուցիչն է արդարոց՝ հանգուսցէ զոսսա յիւր երկնից արքայութիւնն ի ծոցն Աբրահամու, և զձեզ՝ զլսողքդ և զկարդացողսդ, ամէն։*

*Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս* զՍտեփանոսն, *և զամենայն արեան մերձաւորք նորա, և զիս զմեղապարտ գծողս* զՎարդան *սուտանուն երէց, և զիմ ծնողքն* զՅովանէս *քահանայ և* զՋմրութ, *և զեղբարքն իմ զփոխեցեալքն ի Քրիստոս* զԿարապետ *քահանայն և* զըՄէլքիսէթն, *և զըզորդիքն իմ* զՆիկողայոս *քահանայն, և* զՅովանէսն *և* զԳրիգորն, *և զհոգևոր որդին իմ* զԿիրակոսն, *և զայլ ամենայն արեան մերձաւորս և զերախտաւորքն մեր, և միամիտ սրտիւ աստուած-ողորմի ասացէք, և աստուած ձեզ ողորմեսցի, և նմա փառք յաւիտեան, ամէն։*

## 595
## ԱԻԵՏԱՐԱՆ

*Երևան 4807*

*Յիշատակագիր՝* Կարապետ

194բ *Զպատուական կրօնաւորն* զԱստուածատուր *վանից հայրն, որ եստոյ վերըստին նորոգել զսուրբ* Աւետարանս *և* զՏարեգիրքն, զՄաշթոցն *և* ըզԳանձատետրն՝ *յիշատակս հոգոյ իւրոյ՝ աղաչեմք որք հանդիպիք սոցա աստուած-ողորմի ասացէք* Աստուածատուր *կրօնաւորին, և իւր ծնողացն, և* Վարդան *կազմողին, և սակաւ գծողին* Կարապետ *բազմամեղիս, և աստուած ձեզ և մեզ և առաջին ստացողացն ողորմեսցի, ամէն։*

*Թվ. ՋԺԱ. (1462) նորոգեցաւ*

## 596
## ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 5128*

154բ *Ի թվականին Հայոց ՋԺԲ. (1463), ի կաթողիկոսութեան* Սսայ *տեառն* Կարապետին *և* յԱղթամարայ *տեառն* Զաքարիայ, *որու ժողովեցաւ ի վերայ տեառն* Գրիգորի էջմիածնի *կաթողիկոսին, և գնաց առ* Ջհանշահն *ղանն՝ տէր* Թավրիզու, *և ընկեց զտէր* Գրիգորն *յաթոռոյ* էջմիածնին, *և փոխեաց զաթոռն* յԱղթամար*:

## 597
## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

*Գ. Սրուանձտեանց, «Թորոս աղբար», Բ, էջ 300—302*

*(Կամախ, Ս. Թադէոս առաքելոյ վանք)*

*Հետ. ստացող՝* Եզեկիէլ

*վայր՝* Աւագ վանք՝

*Շնորհաւք ամենակալին աստուծոյ... և աջողութեամբ սուրբ տիրամաւր Աստուածածնին, սուրբ Կարապետին և սուրբ Առաքելոցս, և աղաւ-*

* *Ձեռագիրն ընդօրինակված է 1635 թվականին։ Այս հիշատակարանը, անտարակույս, արտագրված է նախագաղափար օրինակից։*

*թիւք սուրբ երջանիկ րաբունապետին Յովանիսի, և նորին աշակերտի Ստեփանոսի, և Յոհան եպիսկոպոսի, և համայրէն սրբազան եղբարց մերոց, որ կան ի յայսմ լսարանիս, որոց անուանք սոցա գրեալ են և գրին ի դպրութեան կենաց՝ ի մեծամեծաց մինչեւ ղփոքունս, որ անդադար աղաւթիւք բաղխեն զդրունս ողորմածին և բարերարին աստուծոյ։*

*Ես... վերջինս ի գրոց աշակերտաց՝ Եզեկիէլս, և իմ հոգեւոր որդեակ Սիմէոն ցանդացող եղաք այս սուրբ Աստուածաշունչիս հին և նոր կտակարանաց, և բաղում փափաքանաւք և ջանիւ ստացաք զսա և եդաք ի սուրբ անապատս ի յԱւագ վանք...*

*Յիշեսջիք զծերունի, զմաքրամեղս, զհեզահոգի և զընտրեալ զԹադէոս քահանայն, և զպարկեշտ և զբարեմիտ ամուսինն իւր... զմեր հոգւոյ ծնողսն, որ և նոքա աշխատ եղեն ի գինս սուրբ գրոցս, և զիւրեանց հոգւոյ բաժինն յիշատակեցին ի սուրբ Աստուածաշնչիս...*

*Յիշեցէք զխաւճա Սուլթանշահն և զիւր որդին զխաւճա Պակին՝ զԱմասացին, որ կամեցան և շարաւթով վաճառեցին, աստուած յիշէ զնոքա ի բարին*։*

598

ՇԱՐԱԿՆՈՑ

Երևան 2418

Գրիչ՝ Միգայէլ
վայր՝ Հունձք գիւղ

311ա *Արդ, գրեցաւ եղանակաւոր տառս և լուսազարդ երգարանս ի թուականիս Հայոց** ամի, ի երկիրն Քաջբերունի, ի գիւղս Հունձք, ընդ հովանեաւ սուրբ Սարգսի զաւրավարին և Ըստեփանոսի Նախավկաի, ի հայրապետութեան Զաքարիայի, ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս Մեծոփայ Ըստեփաննոսի վարդապետի. յուսամք յաստուած, որ պահէ զնայ անփորձ կենաւք մինչև ի խորին ծերութիւն, ամէն, և ետ աստեացս նլանելոյն ընդ սուրբ վարդապետաց գասուն դասակից առնէ, ամէն։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան սիրովն Քրիստոսի զընդերձողսդ, յիշման արժանի առնել վերոյ յիշեցեալ ստացող տառիս։ Արդ, գրեցաւ ձեռամբ Միգայէլի անարժանի և անիմաստ գրչի, և իմ անընդունակ և անիմաստ գոլով յարուեստ գրչութեան և բաղում մեղաց ցնորիւք պաշարեալ գրեցի անարժան ձեռօք իմաւք ընտիր և ըստոյգ աւրինակէ խուլ կոչեցեալ։ Ով զմեզ յիշէ, յիշեալ լիցի առաջի անմահ գառին Յիսուսի Քրիստոսի։*

---

* *Հիշատակագրությունն անթվական է, բայց Ավագ վանքում սովորող Եզեկիելը՝ այս հիշատակարանի շարադրողը՝ հիշատակված է նաև 1464 թվականին, Ավագ վանքում, Ստեփանոս գրչի գրած չափածո հիշատակարանում (տե՛ս ԺԵ դարի հշտկ., Բ, էջ 208)։*

** *Թվականը ջնջված է և գրված ՊԾԵ. (1406), որ կեղծիք է։ Այստեղ հիշատակված Զաքարիա կաթողիկոսը՝ նշանավոր Զաքարիա Աղթամարցին է, որ աթոռակալել է 1434—1464 թթ., ուստի հիշատակարանի գրության վերջին հնարավոր տարեթիվը 1464-ն է։ Գրչի մյուս հիշատակարանը տե՛ս այս ժողովածուի Բ մասի 178—179 էջերում։*

## 599
## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 4211

Գրիչ՝ Իսրայէլ

529ր *Յիշատակ է գիրքս* Իսրայէլին, Միքայէլին, Առաքել *վարդապետին։ Ես* Իսրայէլս *տուաք զգիրքս* Սարգիս *վարդապետին, յիշատակ մեզ և ծնօղաց մերոյ...*

*Թվին ՋԺԴ. (1465)։*

## 600
## ՃԱՇՈՑ

Նիկոմեդիա 19. Ստ. Յովակիմեան, Ցուցակ (անտիպ), էջ 112

Գրիչ՝ Ջաւրվար
վայր՝ Տիւրիկ

ա

*Արդ ի յանգ ելեալ աւարտեցաւ քրիստոսահիմն և առաքելախօս, մարգարէաշէն և հոգիաբուխ այս տառս ձեռամբ յոգնամեղ և անարհեստ դրչի* Ջաւրավար *սուտանուն իրիցուն.*

*Արդ, գրեցաւ սա ի թվ. Հայոց ՋԺԴ. (1465) հոկտեմբեր ամսոյ ի ԺԱ. (11), ի քաղաքիս, որ կոչի* Տիւրիկ, *ի սպասաւորութիւն սուրբ Սարգսի զինաւորին։ Արդ աղաչեմք զձեզ, ով սուրբ ուղղափառ մանկունք, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով, յիշեսջիք զանարժան գծողըս, և զծնաւղս իմ* զՍտեփաննոս *քահանայն և* զՆարմէկլիքն: *Եւ բազում երախտաւորութիւն ի վերայ մեր զտէր* Գրիգոր* *որ աւգտեցաք ի նմանէ զգրոց բովանդակ զկատարիլն և զկազմելն։ Աստուած ըստ աշխատանացն զերկնից արքայութիւն պարգևեսցէ իւր, ամէն***։

բ

*Ես* Ջաւրվար *հոգով տկար*
*Եւ մարմնով յոյժ ապիկար,*
*Զձեզ աղաչեմ միշտ անդադար*
*Եւ պաղատիմ արտասուաբար,*
*Յորժամ զգիրս ընթեռնուս մտառաբար,*
*Զիս յաղօթից մի մոռանար,*
*Զտէր ողորմին լիակատար*
*Տուր ինձ բաժին սրտիդ յաւժար,*
*Եւ տէր առատ և բարերար*
*Ի ձեզ զթասցի իբր հայրաբար։*

* *Հաջորդ բառը չի կարդացվում։*

** *Այս հիշատակարանից համառոտ մի հատված, քաղելով Մ. Տեր-Մովսիսյանի ցուցակից, հրատարակել ենք ժողովածուիս Բ մասում (էջ 241)։*

## 601

### ԱՒԵՏԱՐԱՆ

Ց. Քոսեան, Ցուցակ Արցնեան վարժարանի 13, ՀԱ, 1961, սյուն. 130

Գրիչ՝ Հայրապետ
վայր՝ Նորագաւիթ

ա

261ա *Աստանաւր յանկ ելեալ աւարտեցաւ... Աւետարանս այս ի թուաբերութեան Հայկազեան տումարիս ՌԺԴ. (1465) ամին, յանառիկ եւ տիրախնամ քաղաքս /// Վա՞ն, ընդ հովանեաւ սուրբ խաչիս և սուրբ Սարգիս զօրավարիս, և ի հայրապետութեան տեառն* Ստեփաննոսի *կաթողիկոսի, ի դառն և ի վշտալից ժամանակիս, յորում ի խիստ և ի նեղութեան և ի չար ծառայութեան կամք ազգին նետողաց, զի յոյժ կեղեն և կեղեքեն զազգս քրիստոնէից։ Զոր տեսեալ զայս սուրբ աստուածախաւս և զլուսափայլ և զպատուական մարգարիտս և ցանկացաւ այս հոգեկեցոյց սուրբ Աւետարանիս աստուածասէր և պայծառացեալ հոգով և վառեալ ի սէրն աստուածային* Ուսիմաֆոս՝ *որդի* Սաճմադրին, *և ստացաւ սա յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնողաց իւրոց՝* խարն Սաճմադրին, *և ի տղայոցն* Փաշաբէկուն. *և* Տիրանց–Հաթունին, *և* Դունաբէկուն, *և հարազատ եղբաւրբն* Դուլփաշին, *և* Ղուշբուղին, *և ամենայն արեան մերձաւորաց՝ կենդանեաց և հանգուցելոցն ի Քրիստոս։*

*Արդ, աստուած աստուծոյ և տէր տերանց յորժամ եկեսցէ նստի յաթոռն փառաց իւրոց և կոչէ* Ուսիմաֆոս, *և զկողակիցն* Խաթունջան, *և զուր հայրն և զմայրն և զեղբարսն, առհասարակ, ամէն։ Դարձեալ երես անկեալ աղաչեմ զսրբութիւնս ձեր, որ լի բերանով և ուղիղ սրտով և լիակատար միտով և բոլորախաւս լեզուով աստուած-ողորմի ասացէք* Ուսիմաֆոսին, *և ծնողացն՝ հայր* Սաճմադնին, *և կողակցի* Ուրուջանին, ... *հարազատ եղբաւրն* Դուլփաշին. *և* Ղոշբէկին, *և ուրանց տղայոց տէր* Յովանէսին. *և* Դաւուտջանին. Խաւէլին, Զարգարին, *և կողակցին ուրա[ն]ց* Շանզադին, *և* Ղզլարճանին, *և* Նարգըզին, *և հոգորդին՝* էնկիբէկն, *և* Մելքիսաէն, *և հօրեղբաւրորդին* Մէլէքզատին, Ամիրըխջաւալ *զուր տղայ, և ամէն արեան մերձաւորս... Եւ դարձեալ յիշեցէք ըղնարայզաւթի քահանայք ըզտէր* Զաքարայն *և տէր* Աստուածատուրն, *որ կան ժրաջան ի դուռն սուրբ Գէորգայ, կարդան և* ճնամ *տանին ի վերայ սուրբ Աւետաբանիս, զի կացցէ սայ ի դուռն Գէորգ զաւրավարիս, ամէն։*

*Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս* Ուսումաֆոսի *քվերքն՝* Թեկղիանէն, *և* Դայանէ, *և զ*Մարտիանէն, *և* Շուքրան–Հաթուն, *և* Ուզխուլթան, *ամէն*.

բ

*Զ*Հայրապետ *մեղաւոր գծողս միով աստուած ողորմի ասա և աստուած քեզ ողորմեսցի, ամէն**։

---

* *Այս հիշատակարանից միայն երեք տող արտատպել ենք «ԺԵ դարի հիշատակարաններ» Բ. մասում (էջ 239)՝ քաղելով Ն. Ակինյանի «Գաւազանագրքից»։ Այժմ ներկայացնում ենք լրիվ։*

## 602

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*«Սիոն», 1866 թ., 1—2, էջ 99*

*Վայր՝* Դէմ յանդիման գեղջն
յԱրամու սբ. Գէորգ

*...Ի յաշխարհս Շամեայ ի յերկիրս* Սակունեանց *ի վանս սուրբ Աստուածածնի, ընդ հովանեաւ սրբոյն Գէորգայ՝ դէմ յանդիման գեղջն յԱ-*րամու, *թվին ՋԺԵ. (1466),* Թումա *եպիսկոպոս և* Սիմէոն *քահանայ Մանգեանց եկեղեցոյ։*

## 603

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 9858*

ա

*Գրիչ՝* Գրիգոր Աքարբեկենց
*վայր՝* Արգելան

*...Ուստի և տեսեալ զսորա անճառ փրկագործութեան խորհուրդ, և
զանճառելի աւետիքն, և զահագին սպառնալիքն՝ ամենաիմաստ և հան-*
364ա *ճարեղ գիտնականն //* Մինաս *ծաղկաւղն, որ յար և նման է Բեսսելիէլի
նկարողին տապանակին, որ և ստացաւ զսա ի հալալ և ի քըրտնաջան
վաստակոց իւրոց՝ յիշատակ իւր, և ծընաւղաց իւրոց՝ հայրն* Մախթումին
*և մայրն* Մըսր–Մէլիքին, *և քըւերն* Խութլու–Մէլեքին, *և զաւակին* Յակոբ
*կրաւնաւորին, և* Գովլաթշին, *և քեռուն իւրոյ ուսուցչին* Յակոբ *եպիսկո-
պոսին, և քւերն նորին* Գուլշարին, *և* Գրիգոր *կրաւնաւորին, եւ ամենայն
արեան մերձաւորաց իւրոց՝ կենդանեաց և հանգուցելոց։ Արդ, որք վա-
յելէք յամէնառատ սեղանոյս, լիակատար սրտիւ աստուած-ողորմի ասա-*
364բ *ցէք* Մինաս *ծաղկաւղին, և* Յակոբ *// կուսակրաւն աբեղային, և ամենայն
վերոգրելոցս, որ ի սմա գրեցաւ, ամէն։*

*Եւ արդ ես՝ յետինս ի կարգաւորաց և անարժանս ի մանկունս եկե-
ղեցւոյ և անիմաստս ի գիրս գրչաց* Գրիգոր Աքաբեկենց, *շնորհիւ տեառն
սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զսուրբ Աւետարանս ի թուա-
կանիս Հայոց ՋԺԵ. (1466), ի վանքս որ կոչի* Արգելան, *ընդ հովանեաւ
սուրբ Աստուածածնիս, և սուրբ Ստեփանոս վարդապետի Յուսկան որդ-
ւոյ, և այլ սրբոց, որ աստ կան հաւաքեալ։*

*Դարձեալ, յիշեցէք զ*Մկրտիչ *վարդապետն մեր զ*Ալբեկէնցն, *որ բա-
ղում երախտիք ունի ի վերա մեր, և զ*Թումայ *րաբունապետն, որ բաղում*
365ա *սէր ու//նէր ի վերա իմ, և զմիւս* Մկրտիչ *վարդապետն՝ զընկերակիցն իմ,
և զ*Խաչատուր *աբեղայն, որ շատ սիրով հոգւոյն ի միասին կացաք և ծա-
ռայէր մեզ միամտութեամբ, և զ*Ստեփանոս *կրաւնաւորն, որ առնէ մեզ
սէր և ընդունելութիւն, և զայլ ամենայն երախտաւորքն մեր յիշեցէք ի
Քրիստոս։*

*Արդ, որք ճաշակէք յաստուածային բուրաստանէս և զամէնալի սե-
ղանէս, լի սրտիւ աստուած-ողորմի ասացէք* Մինաս *ծաղկողին, և ծնաւ-*

ղացն Նորին Մախթումին և Մըսըր-Մլքէին, և Յակոբ կրաւնաւորին, և ամենայն արեան մերձաւորաց նոցին, ամէն։

Բ

Ծաղկող՝ Մինաս

Դարձեալ ես՝ Մինաս ծաղկողս՝ ստացող սուրբ Աւետարանիս Երես
365բ ի գետին գնելով աղաչեմ զմանկունսդ // սուրբ եկեղեցոյ, որք սպասաւորէք անգին մարգարտիս կարդալով կամ աւրինակելով, լավ սրտով և վասն սիրոյն Քրիստոսի պահեցէք զաստուածային գանձս, զի բազում չարչարանաւք և աշխատութեամբ լըմնեցաւ*. և զաստուած-ողորմին յոլով և անխափան ասացէք, զի և զձեզ ողորմեսցի Քրիստոս իւր միւս անգամ գալուստն։ Ամէն եղիցի, եղիցի։

Գ

Կազմող՝ Վարդան

Եւ դարձեալ յիշեցէք աղաւթս ձեր զՎարդան վարդապետն՝ զկազմաւղ սուրբ Աւետարանիս, որ յար և նման է կազմողի տապանակին, զի լաւ և գեղեցիկ կազմեց զսա տկար և ծեր անձամբն. և ուղիղ սրտիւ և ի բերանով աստուած-ողորմի ասացէք Վարդանին և ծնաւղացն նորին ամէն։ Եւ զխաչատուրս մեղաւորս սակաւ գրիս։

## 604
## ԱՒԵՏԱՐԱՆ

Յ. Քոսեան Ցուցակ Կարնոյ գիւղերու, 7, ՀԱ, 1963, էջ 34

Գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Խլաթ, Մատնեվանք

Որոյ ցանկացաւղ եղեալ բարեմիտ և ողջախոհ տանուտէրն Մկրտիչ, և եղբայրն Աստուածատուրն, և Յովհաննէս եղբայրն, որ փոխեցեալ է ի Քրիստոս, և Մկրտիչն, և Սաղդաթ-խաթունն՝ կողակիցն իւր, և ծընաւղաց նոցին՝ Ամիր-Սարգսին և Նունոյֆարին, և եղբաւրն Մելքեսեդին, և քուրոջն Դովլաթին, և հօրեղբաւրն Կիրակոսին, ...եւ Մկրտչի ծնօղացն, ...եւ Հռոփսիմին, և զաւակաց նոցին Մխիթարին, Խութլու-խաթունին և Հերապետին, որ քարով նախատակեցաւ, և Մկրտչին, և Յովաննէսին, և որդոյ նորա Ստեփանոսին, զոր տէր աստուած ընդ երկայն աւուրս անէ։ Եւ Աստուածատ[ր]ուն, և հօրն Ղազարին, և կողակցին Փաշա-Մելիքին, և զաւակաց նոցին՝ Իգնատիոսին, և Միքայէլին, և Յովաննէսին, և քուրոջն Մարգրտին:

Եւ արդ, աղաչեմք զամենեսեան, որք հանդիպիք սուրբ Աւետարանիս կարդալով կամ աւրինակելով, յիշեցէք յաղաւթս ձեր ստացող սուրբ Աւետարանիս զՄկրտիչն, և զկողակիցն իւր Սաղդաթ-խաթունին...

Եւ արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի Խլաթ քաղաքի, ընդ հովանեաւ Մատնեվանից սուրբ Աստուածածնին, սուրբ Սարգսին և սուրբ Գէորգուն,

---

* Ձեռագրից հանված և այլ նկարիչի կողմից նկարված ու տեղադրված են առաջին երեք ավետարանիչների նկարներն ու ավետարանների առաջին թերթերը։ Բացակայում են նաև սկզբնական տերունական նկարները։ Մինասից պահպանվել են Հովհաննես ավետարանիչի նկարը, լուսանցազարդեր ու լուսանցանկարներ։

ձեռամբ յոգնամեղ և անիմաստ գրչի Մկրտչի սուտանուն քահանայիս, յամի ՋԺԵ. (1466) թուականի, ի հայրապետութեան տեառն Ստեփաննոսին էջմիածնի կաթողիկոսի, որ այս ամ հաստատեցաւ շնորհաւք աստուծոյ։

Արդ աղաչեմք զամենեսեան, որք հանդիպիք սմա կարդալով, յիշեցէք յաղաւթս ձեր արարող սուրբ Աւետարանիս զՄկրտիչն. և Սաղդաք-Խաթունն, և զարեան մերձաւորք իւրեանց, և արհեպիսկոպոսիս մերոյ տէր Յովաննիսին, և ... տէր Կիրակոսին, տէր Վարդանին, տէր Սարգսին. տէր Յովաննեսին, տէր Յոհանին, և սարկաւագ Յովանէսին, այլ և զիմ արթինաւոր վարպետն զՅովանէս քահանան յիշեցէք ի Քրիստոս, որ բազում աշխատութեամբ ուսոյց զիս։ Ընդ նմին և զիս զմեղաւք լցեալ գրիչս զՄկրտիչ սուտանուն քահանայ, այլև զիմ ծնօղսն յիշեցէք ի Քրիստոս։ Ով որ կարդա ու զաստուած-ողորմին ասէ՝ Քրիստոս իրեն ողորմի ամէն։

Եւ արդ ես Մկրտիչ և կողակիցն իմ Սաղդաք-Խաթունն տուինք զԱւետարանս սուրբ Աստուածածնի ի դուռն, որ կենա ի ձեռն տէր Կիրակոս հերպետին, և տէր Վարդանին, և տէր Սարգսին, և տէր Յովանէսին, և տէր Յոհանին, և ով ծախէ կամ գրաւկանէ՝ զմասն զՅուդային առցէ և զխաչահանացն և զԿայենին, ամէն։

Եւ արդ աղաչեմ զձեզ, ո՛վ եղբայրք, անմեղադիր լերուք, զի կարս մեր այս է, Քրիստոսի մարդասէրին փառք յաւիտեանս ամէն։

## 605

## ՄԱՇՏՈՑ

Երուսաղէմ 1784

Գրիչ՝ Յակոբ

վայր՝ Գուլիստան, որ է Վարդուռ գիւղ

408 ... Շնորհիւ տեառն Յիսուսի Քրիստոսի սկսայ և նորին ողորմու-
թեամբն կատարեցի զքրիստոսահիմն և զառաքելաշէն հոգիաբուղխ
նուագս յանուն Մաշտոց վարդապետին, ի թվականիս Հայոց ՋԺԵ. (1466),
ի լաւ և յընտիր աւրինակէ, ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի Յա-
կոբի՝ ծոյլ և մեղսասիրի, ի գեւղս որ կոչի Գուլիստան, որ է Վարդուռ ի
հայրապետութեան տեառն Թումայի Աղուանից կաթուղիկոսի, ի խնդրոյ
Բարիոգ կրաւնաւորի՝ հեզահոգի, բարեմիտ և աղքատասիրի և ժիր մշա-
409 կի, յիշատակ իւր, և ծնողաց իւրոց, և ամենայն // ընդանեաց իւրոց՝ մեծի
և փոքու, կենդանեաց և ննջեցելոց իւրոց, և Քրիստոսի փառք յաւի-
տեանս, ամէն*։

---

* Սույն ժողովածուի Բ. մասի 306 համարի տակ (էջ 246) տպագրված է այս հիշատակարանի համառոտագրությունը։

## 606
## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երուսաղէմ 3133*

Նորոգող՝ Հայրապետ
վայր՝ Տատութայ գիւղ

511 Վերրստ[ին] նորոգեցաւ աշխարհալոյս և աստուածախաւս սուրբ
Աւետարանս ձեռամբ Հայրապետ եպիսկոպոսի, ի թվականութեանս Հա-
յոց ՋԺԶ. (1467), քանզի հնացեալ ի վաղուց ժամանակաց ի յանաւրինաց
ձեռն էր անկեալ, քակել էին և ցրուել եկեղեցւոյ մէջն՝ ի գեւղս, որ կոչի
Տատութայ և հրեշտակապետին անուն եկեղեցին։ Այլ տաճիկք քակել էին
և խցուցել զքարինսն, և մեք հանդիպեցաք և վերստին նորոգեցաք զե-
կ[եղ]եցին և զԱւետարանս և եդաք ի Սիոն, յաղագս փրկութեան հոգւոյ
իմոյ և յիշատակ ծնողաց իմոց։ Ո՜վ սուրբ մանկունք եկեղեցւոյ, որք
512 հանդիպիք այժմ կենսաբեր սուրբ Աւետարանիս տեսանելով կամ // տե-
սանելով* յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զմեղաւոր ծառայս, վասն
զի բազում աշխատանաւք կարացաք շինել, և բնակիչք գեղջիս, որ կե-
րակրեցին զմեզ ի բազում աւուրս. աստուած, որ մարդասէր է, առատ է ի
տուրս՝ վարձահատոյց լինի և պահեսցէ ընդ երկայն աւուրս, հանդերձ
զաւակօք իւրեանց։

## 607
## ՃԱՇՈՑ

*Նիկոմեդիա 19, Ստ. Յովակիմեան, Ցուցակ (անտիպ), էջ 106*

Ստացող՝ Ծովան
վայր՝ Սեբաստիա

Ի թվ. ՋԺԶ. (1467) բերաւ սա։ Յիշատակ է սուրբ գիրքս մղտեսի Ծովանին, ի քաղաքին Սեբաստիոյ, ի Շուկայի մահալայս, ի դուռն սուրբ Աստուածածնին եկեղեցոյ, անջինջ յիշատակ իւր և իւրոցն ամենայնի. դստերացն Պաղտատին և Մըսրէ, և եղբաւրն Մելիքշին, և եղբաւր որդոցն Ակներին և Միխայէլին և Ամիր-Սարգսին և Ամիր պեկին, և թոռին Հայոցին և Ռստումին, Իկտիշին և ամենայն հանգուցելոց առ աստուած։ Եւ խնամով պահողքն աւրհնին յաստուծոյ և ապականաւղքն սորայ ապակ[ան]ին ի կենաց դրոյն ամէն**...

## 608
## ԳԱՆՁԱՐԱՆ

*Հ. Ոսկեան, Տրապիզոնի վանքերը, ՀԱ, 1961, սյուն. 275*

Գրիչ՝ Աւետիք
վայր՝ Պոնտոս

Գրեալ ի թվին ՋԺէ. (1468), ի Պոնտոս, որ այժմ Տրապէզ, ընդ հովանեաւ Ամենափրկչի, Յովհաննու Մկրտչի և սուրբ Խաչի, ի պարոնու-

* Կրկնված է։

** Նույն ժողովածուի Բ. մասում տե՛ս այս հիշատակարանից երկու տող (էջ 265, հիշատակարան № 338)։

*թեան խնդրքարին, ի հայրապետութեան* Արըստագէսի Էջմիածնի. *յեպիսկոպոսութեան տեառն* Յովհաննիսի, *որ այսմ ամի փոխեցաւ։*

*Գրիչ* Աւետիք *աբեղայ, որդի* Առաքել *ոսկերչի և* Մարիանէի. *ստացող պարոն* Վարդան, *որդի* Նաչէի *և* Շահնուքարի:

## 609

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Տ. Պալեան, Ցուցակ Կեսարիոյ, էջ 73*

*Հիշատակագիր՝* Վարդան
*վայր՝* Սիս

ա

145ա *Զստացաւղ սուրբ Աւետարանիս* զԳրիգոր Տատըրկենց *և զծնաւղս իւր յիշեցէք ի Քրիստոս և աստուած զձեզ յիշէ, որ գնեաց այս սուրբ Աւետարանս ի յանաւրէնաց ձեռաց, ի թվին ՋԺԷ. (1468)։*

բ

235բ *Զվերջին ստացաւղ սուրբ Աւետարանիս* զԳրիգոր Տատրակենց, *և զծնաւղս իւր, և զորդին իւր* զՀեթումն *յիշեցէք ի Քրիստոս; և աստուած զձեզ յիշէ, որ գնեց զայս սուրբ* օ*ետարանս ի յանաւրինաց ձեռամբ, և դարձեալ կը դնէ ի սուրբ Ըռամանոս**։ *Աղաչեմ զհանդիպողք յիշել ի տէր զվերոյգրեալդ՝* զԳրիգոր Տատըրկենց, *և զիս՝* զՎարդան *դպիրս, որ զսակ ր գիրս գրեցի և աստուած զձեզ յիշէ, ամէն։*

## 610

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 10283*

ա

*Կազմող՝* Արրամ
*վայր՝* Պաւնդսս

225ա *Զվերջին կազմաւղ սուրբ Աւետար[ան]իս զաստուածասէր և զբարեպաշտ մանուկն* զՇամշատին *ոսկէգործն, որ եա վերստին նորոգել զցանկալի սուրբ Աւետարանս մեծաւ յուսով և եռափափաք սիրով, ի պահպանութիւն աստուածապահ կենաց իւր և զաւակաց, և բարեխաւս հոգոյ և մարմնոյ իւրոյ, եւ յիշատակ ծնաւղացն իւր՝ հաւրն* Ֆախրատինին *և մաւրըն* Համա-խաթունին** *և ամենայն արեան մերձաւորացն։*

*Արդ, որք հանդիպիք սուրբ Աւետար[ան]իս և գրիս յիշեցէք յաստուածահաճոյ աղաւթս ձեր զոսկէգործ* Շամշատին Բաբերդացին, *և ծնաւղսն իւր, և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։*

* *Ձեռագրի 145բ էջի հիշատակագրությունից (1601 թ.) պարզվում է, որ այդ եկեղեցին գտնվում էր Սիս քաղաքում։*

** *Ծնողների անվան տեղերը բաց էր թողնված, լրացրել ենք Բ. հիշատակարանից։*

Ընդ նմին յիշեսջիք և զԱլէքսանոս քահանայն, զորդի Նուրպէկ աղաին, որ յորդորելով մասնակից եղև կազմութեան և պայծառութեան սուրբ Աւետարանիս։

Կազմեցաւ ցանկալի սուրբ Աւետարանս ձեռամբ յոգնեղկելի և անարժան Աբրամ կրաւնաւորի և պիտակնուն վարդապետի, ի քաղաքիս Պաւնդոսի, ի դրան սուրբ Ամենափրկչի։ Յիշողքդ զմեզ ի բարի յիշեալ լիջիք առաջի Յիսուսի։ Թվին ՋԺԷ. (1468), և յամսեանն յունիսի և Հաւոց մեհեկի։

Բ

Ստացող՝ Շամշատին Բաբերդացի
վայր՝ Կողոնիայ

225բ Զվերջին ստացաւղ սուրբ Աւետարանիս զպարոն Շամշատինն աղաչեմ յիշել յաղաւթս ձեր, ո՜վ մանկունք սուրբ եկեղեցոյ, որ ստացաւ զԱւետարանս ի հալալ արդեանց և յարդար վաստակոց իւրոց, և բերեալ ի քաղաքս Կողոնիայ, որ արդ ասի Ղարասար, և ետ եկեղեցի սուրբ Աստուածածնին՝ յիշատակ իւր, և ծնաւղացն իւրոց՝ Ֆախրատինին և Հումախաթունին, և կենակցին իւրոյ Կուլֆանին, և ամենայն արեան մերձաւորաց իւրոց։ Եւ մի ոք իշխեսցէ հանել զսուրբ Աւետարանս ի դրանէ սուրբ Աստուածածնիս՝ յիմոց և կամ յաւտարաց՝ իմ է ասելով, ծախելով կամ գրաւելով, կամ այլոց բաշխելով։ Եւ ով ոք յանդգնի և ձեռնամուխ լինի ազահութեամբ ի սուրբ Աւետարանս՝ զպատիժն Յուդայի և զԿայենի առցէ։

Արդ խնամով պահողքն աւրհնեին յաստուծոյ ի սուրբ Աստուածածնէն և յամենայն սրբոց, ամէն։

611

ՄԱՇՏՈՑ

Անթիլիաս 83

Գրիչ՝ Յակոբ
վայր՝ Խարբերդ

199ա ... Կատարեցաւ Մաշտոցս ի՛ թվ. ՋԺԷ. (1468), ձեռամբ բազմամեղ և անարժան քահանայիս Յակոբայ, ընդ հովանեաւ սրբոյն Սարգսի զաւրավարին և որդւոյ նորա Մարտիրոսի, ի թաղս [որ] կոչի Սինամուտ, ի քաղաքիս Խարբերդ. ի կաթուղիկոսութեանն տեառն Արիստակիսի. և յեպիսկոպոսութիւնն տէր Սիմէոնի և տէր Առաքելի: Արդ, աղաչեմ զձեզ զամենեսեան, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զՅակոբ քահանայս, և զծնաւղսն իմ զԳրիգորն և զԹանգուխն, և զեղբարքն իմ զԿարապետ քահանայ և զՄուրատ, և զերկու Յովանէսն, և զերիցակինն զԹուրվանդայ. և զորդին մեր զԴշխոյի, զՄկրտիչ, զՍարգիս, զԳրիգոր, զՄարիմնէ, զՈւտիանէ, զՊօղոս, և զՄկրտիչ և աստուած-ողորմի ասացէք բոլորով սրտիւ։ Եւ Քրիստոս աստուած զձեզ յիշէ յիւր միւսանգամ գալուստն, ամէն։ Եւ յիշեցէք զվարդապետն իմ զտէր Աստուածատուր եպիսկոպոսն։

## 612

## ԱՂԵՐՍ ՄԱՂԹԱՆԱՑ Ի ՍՐԲԱՏԵՂԻՍՆ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ՎԱՐԴԱՆԱՅ ՄԱՐԱՌԱՑԻՈՅ

*Երուսաղէմ 1662*

*Գրիչ՝* Մանէլ
*վայր՝* Երուսաղէմ

ա

163բ ... *Արդ, գրեցաւ սա ի սուրբ և յաստուածակոխ քաղաքս* Երուսաղէմս, *ընդ հովանեաւ սուրբ հրեշտակապետացս Գաբրիէլի և Միքայէլի և ամենայն երկնաւոր զաւրացն, որ է տեղի չարչարանաց փրկչին, ուր զառաջինն ապտակեցօ, այլ և ասա էջ Քրիստոս երկնաւոր զաւրաւքն ի փոխումն տիրամաւր և վասն [այդ]ասի սուրբ Հրեշտակապետք։ Արդ, գրեցաւ սայ ի թվիս Հայոց ՋԺԵ. (1466), ձեռամբ մեղաթաւալ և անարժան և տխմար գծողիս անպիտան* Մանելի, *ի խնդրոյ* Աբրահամ *քահանայ[ի]՝ հաւր վանից սուրբ Յովաննու // Մրկրտչին* Կեռնակողմանն, *ի պատճառս աղաւթից և ի մխիթարութիւն հոգևոր։*

բ

217բ ... *Քանզի գրեցաւ սայ ի սուրբ և յաստուածակոխ քաղաքս* Երուսաղէմ, *առ դրան սուրբ Հրեշտակապետացս, ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի* Սարգիս *անպիտան ծառայի՝ սպասաւոր սուրբ Հրեշտակապետացս, ի յիշատակ և ի վայելումն սրբասէր կրաւնաւորին* Աբրահամ *աբեղին՝ սպասաւոր սրբոյն Յովանու Կեռնակողմանն, զոր և վայելել, տայէ նմա տէր աստուած երկարեալ ամաւք և առաքինասէր վարուք և մաքուր*
218ա *մտաւք // և սրբամիտ [խոր]հրդով և լուսափայլ աղաւթիւք՝ ի փառս Քրիստոսի աստուծոյ, ամէն։*

*Ո՜վ մանկունք սուրբ եկեղեցոյ, աղաչեմ զձեզ որք հանդիպիք սմա տեսանելով, ուսանելով և կամ աւրինակելով, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զ*Աբրահամ *աբեղան՝ հանդերձ ծնաւղաւք, և զիս՝ զանպիտան գրիչս՝ հանդերձ ծնաւղաւք, ամէն։*

*Ի թվականիս ՋԺԸ. (1469), մայիսի ԺԵ.(15)։*

## 613

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երուսաղէմ 3427*

*Գրիչ՝* Յովանէս Մանկասարենց
*վայր՝* Արճէշ

...*Եւ արդ տեսեալ զսորա անճառելի աւետիքն և զահագին սպառնալիքն և զամենեցուն փրկագործութեան խորհուրդ աստուածասէր և հաւատարիմ ծառայքն աստուծոյ* Ամիր-Սարգիսն *և* Հայ-Խաթունն, *և*

ստացաւ ղանարիկ մեծութիւնս և զփարթամ հարստութիւնս զմարգարտաշար սուրբ Աւետարանս՝ զլուսատուս հոգւոց և զքաւիչս մեղաւորաց, յիշատակ հոգոյ իւրոյ, և բարեպաշտ ծնաւղաց իւրեանց՝ հարցն Յովանիսին և Ստեփանոսին, և մաւրն նոցա Շամշա-Խաթունին, Ղադամ-Ղութլուին և ամենայն արեան մերձաւորացն։ Վասն որոյ, որք վայելէք և տեսանէք զտէրունեան սուրբ Աւետարանս, ուղիղ սրտիւ և լի բերանիւ աստուած-ողորմի ասացէք ստացողի սուրբ Աւետարանիս՝ իմաստուն և պատուական ծառային աստուծոյ Հայ-Խաթունին, և ի պարծանաց եղբարցն քաջ և արի րաբունոյն Ներսէս վարդապետին, և տէր Ոստակէս իմաստուն և բանիբուն կրօնաւորին, այլ և հանգուցեալ եղբարցն Արամին և Վրթանիսին, և իւր բարի ղաւակացն Խալիֆին և Բեկուն. և մօրն Եղիսաբէթին։

Եւ արդ ես՝ յետնեալս ի կարգաւորաց և անարժանս ի քահանայից և անիմաստս ի գրչաց Յովանէս աշխարհի երէց, ոչ ունելով իշխանութիւն հայիլ ի սուրբ Աւետարանս, այլ յուսալով ի ներողութիւնն աստուծոյ, ահիւ և երկիւղիւ սկսայ զսուրբ Աւետարանս, և բաղում ղգուշութեամբ աւարտեցի կամաւն աստուծոյ և աւգնականութեամբ հոգոյն սրբոյ, յսրում է մեծ թուականն Հայոց ՋԺԸ. (1469)։ Եւ է թաղաւոր աշխարհիս Ուզուն-Հասանն, որ [սպան] սուլթան Ջահանշահ փաթշահն և յայս աւուրքս փախոյց զՀասան-Ալին և կոտորեաց զջաղաթէն և սպան զսուլտան Բուսայիդն. և տիրեաց աշխարհիս՝ ի Շամա դռնէն մինչև ի Խորասան արար ընդ իւրում իշխանութեամբ։ Եւ է կաթողիկոս ի սուրբ Էջմիածինն տէր Ոստակէս քաջ և արի հովիւն Հայոց։

Յայսմ ամի աւարտեցաւ սուրբ Աւետարանս յիշատակ Ամիր-Սարգըսին, և կողակցին Հայ-Խաթունին, և եղբարցն Դանարէկին և Շաւարբէկին, և ամենայն արեան մերձաւորացն։

...Այլ ես անարժան գրիչս զիմ երեսս ի գետին դնելով աղաչեմ աստուած-ողորմի ասել ինձ, և ուսուցչին իմոյ աշխարհալոյս վարդապետին Թումայի, և ծնաւղաց իմոց Մանգասարին և Փաշամէլիքին, և կենակցին իմոյ՝ գնացելոյն առ աստուած Շուրանին, և ամենայն երախտաւորաց իմոց, և Քրիստոս աստուած, որ առատն է ի տուրս բարեաց, ձեզ տացէ զիւր առատ ողորմութիւնն, ամէն։

Գրեցաւ և աւարտեցաւ սուրբ տէրունական Աւետարանս յերկիրս Քաջբերունի, յԱրճէշ քաղաքի, ի դուռն սուրբ տաճարիս Գէորգայ զաւրաւորիս, ի փառս հաւր և որդւոյ և հոգւոյն սրբոյ։ Գրեցաւ սուրբ Աւետարանս յիշատակ բարի տանուտրոջն Ամիր-Սարգսին, և բարի ամուսնոյն Հայ-Խաթունին, և տուաւ ի ձեռն տէր Արիստակէս կրօնաւորին և աստուածաբան վարդապետին Ներսէսի, որոց տէր աստուած վայելել տացէ մինչև ի խորին ծերութիւն։

Բ

Ծաղկող՝ Մինաս

1ր ԶՄինաս նկարողս յիշեցէք ի Քրիստոս։

## 614

### ՄԱՇՏՈՑ

*Նիկոմեդիա 24, Ստ. Յովակիմեան, Ցուցակ (անտիպ), էջ 131—134*

*Գրիչ՝* Կիրակոս Տրապիզոնցի
*վայր՝* Նիսա գիւղ

Գրեցաւ այս ի Թուաքերութեան [Հայոց] ՋԺԸ. (1469), ձեռամբ ամեն/// անարհեստ դրչի Կիրա[կոսի] սուտան[ուն] եպիսկոպոսի Տրապիզոնեցոյ, ի գաւառիս Կեսարիոյ, ի գիւղս, որ կոչի Նիսիա, ընդ հովանեաւ սուրբ հայրապետիս Գրիգորի, եղբաւր Բարսղի և այլ բազմահաւաք սրբոցս, որ բնակեալ աստ կան ... ի խնդրոյ սրբասէր և հեզահոգի Խաչատուր քահանայի, որ ետ գրել զսուրբ մատեանս ... ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ հոգոյ իւրոյ, և մարմնաւոր ծնողաց իւրոց՝ հաւրն Մարտիրոսի և մաւրն Մարթայի, և հաւրեղբաւրն Ստեփաննոսի, և վասն արևաշատութեան ծաղկեալ եղբաւր իւր Բալատրին, Մկլիճշին, և քուերցն Զունարին, Խաթունին, Ջինանին, եւ եղբաւրորդոցն իւրո Սիմաւոն դպրի և դեռաբուսիկ միւս եղբաւրորդւոյ Հազարշին, զոր տէր աստուած պահեսցէ զամենեսեան երկարեալ ամաւք, մինչև ի խորին ծերութիւն, ամէն։

Արդ յորժամ անկեալ աղաչեմ զսուրբ հանդիպողսդ այսմ մատենի յիշել մտաւք և աստուած ողորմայիւ վերոյ ասացեալ Խաչատուր քահանայն հանդերձ ամենայն զարմաւք՝ կենդանեաւք և ննջեցելովքն։ Այլև աղաչեմ զմանկունդ նոր Սիովնի առնել յիշման արժանի զուսուցանողսն մեր ամենայնի, նաև վարպետն մեր զՅովանէս նախաշն Եզնգացի, որ եմք պանդու[խտ] յերկիրս այս, և սղալանաց և պակասութեան անմեղադիր լերուք, զի յոյժ ժամանակս ձմեռնային էր և զնիւթսն պաղեցնէր, և ձեզ յիշողացդ և մեզ յիշեցելոցս առհասարակ ողորմեսցի Քրիստոս աստուած ի միւս անգամ գալստեան իւրում*։

## 615

### ՇԱՐԱԿՆՈՑ

*Բ. Կիւլէսէրեան, Ցուցակ Ղալաթիոյ, 172, էջ 1042*

*Գրիչ՝* Արիստակէս
*վայր՝* Սանահին

ա

728 Գրեցաւ եղանակաւոր տառս որ կոչի Շարականոց, զի են ի շար ակունք, ձեռամբ Արիստակէս աբեղայի, ի դրանն սուրբ Աստուածածնի. որ Սանահին այժմ յորջորջի, ի թվականիս Հայոց ՋԺԸ. (1469)։ Ի կաթողիկոսութեանն տէր Արիստակիսի, և յառաջնորդութեան սուրբ ուխտիս տէր Բարսեղի, ի խնդրոյ սրբազան եպիսկոպոսին տէր Աստուածատրոյ, և եղբօրորդոյն իւրոյ տէր Յոհաննէս եպիսկոպոսին՝ տեսուչ և առաջնորդք սուրբ ուխտիս Հաղբատայ մեծի։

* Այս հիշատակարանի համառոտագրությունը, քաղված Մ. Տեր-Մովսիսյանի Ցուցակից, տե՛ս սույն ժողովածուի Բ մասում (էջ 295)։

*Արդ, ո՛վ դասք լուսերամից և մանկունք նորոյս Սիովնի, յորժամ վայելէք ի սմանէ իմանալի և զգալի աչաւք և կամ աւգուտ ինչ լինիցի ձեզ ուսմամբ կամ գաղափարելով, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զստացող///*

Բ

548 *Ո՛վ պատուական և սրբասէր եղբարք, զի անմեղադիր կացիք, զխիստ կու ցաւէր ատամս, զմեղաւք ի լի առտանունք հա (՞)։ Եւ զստացող սորին սարկաւաքն* Առաքել *անուն։*

## 616

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

**Երևան 5313**

*Գրիչ՝* Դանիել

ա

593 *...Որոյ աղաւթիւքն ողորմեսցի Քրիստոս աստուած* Աւետիս *քահանային, և* Մկրտիչ *քահանային, և* Պէկի-Խաթունին, *և ամենայն արեան մերձաւորացն։ Ընդ նոսին և* Դանիել *գծողին, և իւրոցն ամենայնի։*

*Եւ արդ ես* Դանիել *տեսի զփափաք աստուածասէր քահանայի* Աւետիսի, *որ ունէր առ նահատակիս սիրոն, զի յախմար գրչէ սղալեալ էր ճառս, ետ վերըստին սրբագրել ի պատիւ քաջ նահատակին, ի փառս Աստուծոյ։*

Բ

598բ *Արդ գրեցաւ ճառս ի թագաւորութեան* Հասան *պարնին, ի շրջագայութեան տոմարիս* ՋԻ. *(1471)։ Արդ* Հասան *պէկն այս* Գ. *(3) տարի է, որ թագաւորեաց ի* Պարս *և ի յ*Արևելս, *և ի* Միջագետս, *ի հարաւ և ի հիւսիս խաղաղութեամբ կամաւն Աստուծոյ*։*

## 617

### ԳԱՆՁԱՐԱՆ

**Երևան 3505**

*Գրիչ՝* Մելքիսէթ

133բ *Փառք... որ հասոյց զիս ի յաւարտ Գանձարանիս, զոր փափաքանաւր սրբագրել էրետ* Ղարանա Յոհաննէսն. *յիշատակ իւր և ծնաւղաց իւրոց, որք հանդիպիք և եղանակէք յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր զբցումն գրիչս* Մելքիսէթ, *և զստացող սորա զ*Ղարանա Յոհանէսն, *և զծնաւղս իւր, և աստուած զձեզ յիշէ իւր յարքայութիւն, ամէն։*

*Գրեցաւ Գանձարան[ս] ի թվիս Ջ[Ի՞.] (1471**)։*

---

* Տե՛ս սույն ժողովածուի Բ մասի № 493 հիշատակարանի ծանոթագրությունը (էջ 391)։

** Թվականի տասնավորը ջնջված է, երևում է միայն ուղղահայաց մի գծիկ, որ կարող է լինել և՛ «ի» և, «խ՛» տառերի աջակողմյան ելուստը։ Այսպիսով, հիշատակարանը կարող է գրված լինել նաև Ջխ, այսինքն 1491 թվականին։

## 618

## ԱԻԾՏԱՐԱՆ

*Այմոնտի վանք, ՀԱ, 1964, էջ 159—166*

*Գրիչ՝* Նիկողայոս
*վայր՝* Պոնտոս Խաղամ

ա

*...Արդ այսր լուսափողձ մարգարտի փափագաւղ եղեալ սրբազնեաւ և պատ[ու]ելի քահանայն* Պետրոս, *որ ստացաւ զսա յարդար վաստակոց իւր զաւակ ի Սիովն և ընտանի յԾրուսաղէմն, երկնաւոր ուրախութիւն և լոյս Հոգոյ և պսակ և փառք և յիշատակ զկնի մահու։ Ո՜վ քահանայք աստուածասէրք և պատուականք, յորժամ ընթեռնուք և լուսաւորիք յաւուրս տաւնից տարեկանաց, անմոռաց յիշմամբ յիշեցէք յարժանաւոր յաղաւթս ձեր զյառաջասացեալ շնորհազարդ* Պետրոս *երէցն, և զքոյրն իւր* Մինիկարն, *նաև զծնաւղսն իւր՝ զհայրն իւր զ*Ջանիպէկն *և զմայրն իւր* Մսրիմելիքն, *այլ և զպապն իւր զներկըրար* Աբրահամն *և զայլ ամենայն արեան մերձաւորսն իւր, որք ի կեանս և որք ի հողի... Աղաչեմ յիշել ի տէր զմաւրքւեր որդին իւր զ*Մեսրոպ *քահանայն, որ եղև պատճառ և յորդորիչ և միջնորդ սուրբ Աւետարանիս, նաև մեզ եղբայր և սիրելի և աւգնական յամենայնի։*

*Բայց գրեցաւ տառս աստուածախաւս ի մայրաքաղաքս* Պոնտոս *և ի հռչակավոր անապատս, որ կառուցեալ կա յանուն տեառն մերոյ և փրրկըչին, ի սուլթ[ա]նութեան բռնակալին մերոյ* Խոյանդքարի, *որ բազում աւերս արար աշխարհիս քրիստոնէից ընդ ծով, ընդ ցամաք և է արեան ծարաւի քրիստոնեա ազգիս, ընդ որս և մեզ եհաս թիւնք դառնութեան իւրոյ և բազում չարիս արար քաղաքիս մերոյ, զի գիշատեաց և բաժանեաց զգաւռնս ի ծնաւղացն և արար բաժին սատանայի։ Այլ և ի կաթողիկոսութեան տեառն մերոյ սուրբ հայրապետին տէր* Ռստակիսի, *և յառաջնորդութեան սուրբ ուխտիս մերոյ տէր* Մկրտչին, *որդի խոճա* Շամշադնին, *որ է մեզ մխիթարք և աւգնական յամէն գիմի; զոր տէր աստուած ընդ երկայն աւուրս արասցէ զսա, ամէն։ Նա և զմիաբանք սուրբ ուխտիս զծերունի տէր* Յակոբն, *զտէր* Ստեփաննոսն, *և զփոքրագոյն մալազն իմ զ*Մարտիրոսն, *որ աւգնական եղև կոկել նիւթիս և զայլ ամենայն միաբանքս՝ զմեծ և զփոքրն։*

*Եւ գրեցաւ ի թվականութեանս Հայոց ՋԻԱ. (1472) ձեռամբ մեղսամակարդ և մեղաւոր հողոյ* Նիկողայոսի՝ *բիւր քանքարոյ պարտպանի, որ գրեցի բազում ջանիւ և աշխատութեամբ ի դառն և ի նեղ ժամանակիս, որ ոչ կա հանգիստ և դադար ումեք. իւրաքանչիւր ոք տանջի կրկնակի կենաւք՝ մարմնական և հոգեկան վշտով. և առաւել մեք տանջիմք ըստ մեղաց մերոց և տարաշխարհիկ եմք եղեալ ի յանապատէն մերմէ, անկեալ կամք ի քաղաքամիջիս իբր ի փողոցի։ Աղաչիմ զսուրբ հանդիպողսդ, զի աղաւթիւք ձերովք խաղաղասցի մրրիկ դառնութեանս և ողորմութեանն աստուծոյ արժանի եղէց այնմ աւուր, ուր բանք սպառին և գործք թագաւորէն։ Դարձեալ աղաչեմ երես անկեալ ղդասդ լուսերամից*

անմոռաց յիշել զստացող սորին՝ զվերոյասացեալն, և զանարժան Նիկողայոս գծողս, հանդերձ ծնաւղովք մերովք։ Եւ սխալանաց և անարհեստութեան սորա անմեղադիր լինել զի կար մեր այսչափ էր և վիշտ և ահս փախստական բազում։ Աղաչեմ զձեզ զպակասութիւն սորա դուք լցէք և զաւելին ի բաց գնացէք և զմեզ թողէք առանց բանբասելոյ, զի և ձեր թողցի ամենեցունդ, ամէն։

Բ

280ա Այլ և ի թուաբերութեանս հայկազան սեռի ՋԻԲ. (1473) ամի սուրբ Աւետարանս գերեալ եղև իսմայէլացոց՝ ի գաւառէ Բայբերդոյ, ի ձեռանէ Պետրոս իրիցոյ և բերեալ եղև ...*անայ։ Այլ և հարազատ եղբայր երկուք որդիք Հայրապետ քահանայի՝ պր. Թաթուլն և պր. Յակոբն. ցանկացեալ եղեն յայսմ աստուածախաւս սուրբ Աւետարանիս, ետուն զգանձս կողոպտելիս և ստացան զանկողոպտելիս՝ զսուրբ Աւետարանս յիշատակ իւրեանց և ծնաւղացն. և է յիշատակ պրն. Թաթուլին, և ամուսն[ոյ] իւրոյ, և աստուածապարգև զաւակին իւրեանց Հա[յ]րապետ մանկանն, և այլոցն, և պր. Յակոբին, որ զգինն ետ և ետ ծաղկել և կազմել և արծաթապատ յաւրինել, և ետ յիշատակ ի դուռն սրբոյ Սարգսի զաւրավարին զսուրբ Աւետարանս և այլ մի Այսմաւուրք ազատեալ ի գերութենէ, և է այժմ յԸստըմպօլս՝ և յՍայաթաւասիայի մահալան՝ ի սուրբ Սարգսի տաճարն, և է յիշատակ... համեստ ամուսնոյն իւրոյ, և ծնաւղաց իւրեանց, և աստուածապարգև զաւակին իւրեանց Թուրվանտայ-Խաթունին. զոր տէր աստուած ընդ երկայն աւուրս արասցէ, ամէն։

Գ

11ա [Ո՛]վ դասք լուսերամ քահանայից հանդիպողք, որք տեսանէք զսուրբ Աւետարանս կարդալով կամ աւրինակելով, յիշեցէք ի սուրբ և յերկնաբացիկ յաղաւթս ձեր զմահդասի Յակոբն, որ զԱւետարանս ստացեալ էր և փափա[գա]նաւքն զԴ. (4) խորանսն գլխոցն ոսկւով զարգաբեաց. արարիչն աստուած՝ տէրն ամենեցուն զիւր ծնողաց հոգիսն լուսաւորէ, և զիւր հոգին պայծառ պահէ։

Այլ և յիշեսջիք զկենակիցն իւր զՍսկիհատն և զդուստրն զԹուրուանդայն, որ բազում աշխատեցան, մեզ սպասաւորեցին մինչ ոսկեն վճարեցաւ, զոր տէր աստուած խաղաղութեամբ պահեսցէ զսոսա և զիւրեանց ամենայն խնդիրսն կատարեսցէ զհոգոյ և զմարմնոյ, ամէն։

## 619
## ՇԱՐԱԿՆՈՑ

Երուսաղէմ 1684

ա

283 Զսակաւ նորոգեաւղս, գրիչս և խաղաւղս յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր, ո՛վ երգող քաղցր ձայնիւ, և ասացէք տէր աստուած ողորմի աշխատողի սոցա և ստացողիս, ամէն։

* Հրատարակիչը հայտնում է, որ 3—4 տառ ջնջված ու անընթեռնելի են դարձած։

Բ

505 Ջմեղուցեալ գծողս զԴաւիթ աբեղայս, հանդերձ ծընաւղաւք և ամե
նայն ազգականաւք, յիշեցէք ի Քրիստոս, և առատ սրտիւ աստուած
ողորմի ասացէք ի Քրիստոս... ո՛վ ընթերցող ուսումնական, վա՛յ ինձ
մեղաւորիս, ախ, վա՛յ։

Գ

505 զՄակաւ Շարակնոցի խազողս զԱստուածատուրս յիշեա ի սուրբ յա-
ղաւթս ձեր, թվ. ՋԻԲ. (1473) կատարեցաւ։

Դ

759 Աւրհնեալ է քո սուրբ յարութիւնդ աստուած, որ ղիս զերծուցիր ի
յայսմ դառն և դժար բանատեղէս։ Ոչ թէ իմ կամաւ զպակասորդն լըմ-
նեցի, այլ դժուարաւ ի յիս յանձնեցուցին։

## 620
## ԱԻԵՏԱՐԱՆ
Երուսաղէմ 3242

Գրիչ՝ Մելքիսէթ
վայր՝ Գուգարք, Ուխտիք դղեակ

... Արդ, այսմ անմահական ըմպելոյ և անգին մարգարտիս փափա-
քող եղեալ սրբասէր և աստուածահաճ* և ետ գաղափարել զսա ի ձեռն
569 Մելքիսեթի անարժան գրչի և փանաքի և անարհեստի։ Ի ժամանակս
վերջինս ի թուականութեանս Հայոց ՋԻԲ. (1473), ի գաւառիս Գուգարաց, ի
դղեակս Ուխտիք կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ
Կարապետիս և սուրբ Սիոնիս։
Արդ, աղաչեմք զամենեսեան որք ընթեռնուք զսուրբ Աւետարանս
զայս կամ գաղափարէք կամ հանդիպիք՝ յիշեսջիք ի սուրբ յաղաւթս ձեր
զգրիչս սորա՝ զսուտ իրիցուկս, և զծնաւղսն իմ՝ զփոխեցեալք առ Քրիս-
տոս՝ զՍիմէոն քահանայն, և զմայրն իմ զՂաեաքն, և այլ զամենայն
առաւրեան մերձաւորքն իմ, և աստուած զձեր մեղքն ոչ յիշէ, ամէն։
Այլ ի ծունկս անկեալ աղաչեմ զձեզ անմեղադիր լինիք խոշորու-
թեան և սղալանաց գրիս... զի գրեցաւ սա կենաւք տուայտանաւք և բա-
զում աշխատանաւք ի դառն և յանբարի ժամանակիս, յորում էր արդա-
570 րութեան կողմն հակեալ և անկարգութիւնն ամենայն // ուրեք զաւրա-
ցեալ...
Արդ, բարերարն և ողորմածն աստուած տացէ զիւր առատ ողորմու-
թիւնն և զերկնից արքայութիւն ստացողի սուրբ Աւետարանիս զՅովհան-
նէսն, և զՇիրիշէն, Ուստիանին, Ասլի-Խաթունին, և զամենայն սրեան
մերձաւորսն՝ զկենդանիքս և զհանգուցեալսն, զի ստացան զսա ի հալալ
արդեանց իւրեանց յիշատակ յաւիտենից...

* Մեկ տող դատարկ է թողնված՝ ստացողի անունը լրացնելու համար։

## 621

### ԺԱՄԱԳԻՐՔ ԵՒ ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑ

*Վիեննա 691, Հ. Ոսկեան, Ցուցակ, էջ 181*

*Գրիչ՝* Յովսէփ
*վայր՝* Տզաճց վաճՙ

158բ *Աղաչեմք, աղաչեմ և դարձեալ աղաչեմ, ո՛վ եղբարք իմ, յիշեսջիք զմեղապարտ գծաւղս ի ժամ սուրբ պատարագիս խնդրելով զթողութիւն յանցանացն։ Փառք փրկչին, յիշատակ գրչին, փրկիչն ողորմի ստացողի սորին, ամէն։ Գծագրեցաւ Աղօթամատոյց ձեռամբ անարժան և անարհեստ գրչի* Յովսէփ *աղի. (աբեղայի՞) լաւ և յնտիր աւրինակէ, ի թվին ՋԻԳ. (1474), ի գաւառս* Սպեռոյ*, ի յանապատս, որ կոչի* Տզաճց վաճՙ*, ի դրան սուրբ Հրեշտակապետիս. անմեղադիր լերուք ամենայն ինչ սղալանաց, որ ի սմա, զի կար մեր այս էր։*

156ա *Ո՜հ դառն ժամանակս, որ ցուրտ է պահս։*

## 622

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 10051*

*Վայր՝* Ամասիա քաղաք

222ա *Ի թվին ՋԻԴ. (1475) և յունուար ԺԳ. (13) ի* Ամասիայ *քաղաքս էաք՝ ի սուրբ Նիկալայոս եկեղեցին։*

Ասլուտին *տղայ մանուկ,*
*է՞ր չես բերել մեզի մխրուկ։*

## 623

### ՃԱՇՈՑ

*Երևան 2781*

*Ծաղկող՝* Աբրահամ

1ր *Ձտէր* խաչատուր *հոգով բարի,*
*Ցիշեա յաղօթս, ո՛վ երիցանի,*
*Եւ զ*Աբրահամ *մեղօք լիի*
*Ցիշեա ի տէր, ո՛վ սիրելի,*
*Զի զխորանս ծաղկեցի,*
*Մեղ մի գնէք, թուղթ էր* Թավրէժի*:

---

* *Ձեռագիրը գրված է ԺԳ դարում։ Նորոգման հիմնական հիշատակարանը տպագրված է սույն ժողովածուի Բ մասում՝ 1476-ի թվաշարքում (հիշատակարան № 502, էջ 400)։*

## 624

## ԱՒԵՏԱՐԱՆ

«Միաբանք և այցելուք Երուսաղէմի», էջ 475

... Ի թվիս Հայոց ՋԻԴ. (1475), յորում գրեցաւ սուրբ Աւետարանս. առին զԿաֆա տաճիկն, և արարին բազում գերութիւնս և աւերումն, և եղև յոյժ տրտմութիւն և սուգ քրիստոնէիցս. և այս ամենայն եկն ի վերայ մեր վասն մեղաց մերոց։

Եւ ի միւսում ամի ՋԻԵ. (1476) թվին առին վրացիքն զԳողգոտա ի Հայոց. և ի նոյն ամի հայերն գնացին ի սուլտանն, և առեալ հրաման եկին և շինեցին զնոր Գողգոտայի սանդուխտն և ուրախացան...*

## 625

## ՇԱՐԱԿՆՈՑ

Մ. Աթոռ, 222, «Էջմիածին», 1964, XII, էջ 57

Գրիչ՝ Սողոմոն
վայր՝ Երուսաղէմ

ա

368բ Փառք... որ ետ կարողութիւն տկար և մատնադեղ, փծուն և անարհեստ սուտանուն գրչի Սողոմոնի ելանել յաւարտ այսմ տառի, նմա փառք և գոհութիւն յեկեղեցի, և յամենայն յիւրական արարածոց, ամէն։

Արդ, գրեցաւ Շարակնոցս և որ կայ ի սմա ի սուրբ քաղաքս Երուսաղէմ, ի վանքս սուրբ մենաստան անապատիս, որ կոչի սուրբ Փրկիչ, ընդ հովանեաւ կափարիչ Բ վիմիս գերեզմանին Քրիստոսի և սուրբ Բանտիս, ի թվին Հայոց յՋԻԵ. (1476), ի կաթողիկոսութեանն Սրսոյ Հայոց տեառն Ստեփաննոսի, և էջմիածնին տեառն Սարգսի. և յեպիսկոպոսութեան սուրբ աթոռոյս առաքելական Երուսաղէմի Հայոց սրբազան և քաջ փիլիսոփայի տէր Մկրտչի Ղրիմեցոյ, ի փակակալութեան սուրբ ուխտիս տէր Տաւնական ալեաւք պատուեալ և սրբասնեալ կուսակրաւն սուրբ աբեղայի և տէր Յովանէս անարծաթ անստացուած եպիսկոպոսի, որ մականուն Տաւիլ կոչի, և ճգնազգեաց սուրբ ծերունոյ Թադէոսի աւագ սարկաւագի յոյժ իմաստուն գիտնականի հին և նորոյ սրբոց տառի, կուսակրաւն և անստացուած միշտ ի մարմնի և այլ համշիրակ եղ[բարց]///

բ

285ա Հաղորդս արա զիս վերստին, ըստ առակի անառակին, ուտել բղխայ կենարարին, ըմբել զբաժակ քո երկնային։ Ով զասք լուսերամից և սպասաւորք որդոյն աստուծոյ և բաշխաւղք կենարար հացին, յերես անկեալ աղաչեմ զձեզ յիշել ի Քրիստոս ի մաքրափայլ աղաւթս ձեր զՄարխաթուն և զփոխեցեալ զաւակքն իւր ի Քրիստոս զԿարապետ մանուկն, և զդստեր-

* Այս Ավետարանի հիշատակարանը, բացի վերջին պարբերությունից, տպագրված է սույն ժողովածուի Բ. մասում (էջ 390, հիշատակարան № 491)։ Լինելով Երուսաղեմում ստուգեցինք հիշատակարանը, և այստեղ, լրացման կարգով, տպագրում ենք 1476 թվականին վերաբերող հատվածը։

*քրն իւր զԿոլիկն և Շնոֆորն, որ ստացաւ զսայ ի հալալ ընչից իրոց ի վայելումն եղբաւրորդոյն իւրոյ տէր Յուսիկ կրաւնաւորին, և յիշատակ իւր, ամենայն արեան մերձաւորաց իւրոց, և աստուած զյիշողքդ և զյիշեցեալքն յիշէ ի միւսանգամ գալստեան իւրոյ և տայ լսել զձայնն երանաւէտ, ամէն, ամէն։*

**626**

*ԱՒԵՏԱՐԱՆ*

*Երևան 9792*

**ա**

*Գրիչ՝* Զաքարայ
*վայր՝* յանապատս, որ կոչի Ոմավանս

329ր *...Արդ ես նուաստ ամենայնի,*
*Անձամբ իմով մեղաւք լի,*
*Զաքարայ գրիչ անուն կոչի,*
*Մեղա ձեզ աստ և առաջի*
*Անմահ բանին տեառն Յիսուսի՝*
*Անզններլի և անքննելի,*
*Յաղագս իմոյ յիշատակի,*
*Գրեալ մտաւք մեղաւքս լի,*
*ԶԱւետարանս կենսաբերի*
*Բարեխաւս առ միածնի,*
*Միթէ թողցէ զբազում չարի։*
*Այլ դուք եղբարքս աւագանի,*
*Երբես անկեալ առ ոտս ձեր*
330ա *Զիս յիշեցէք սուրբ աղ // աւթի*
*Աստուած յիշէ զձեզ բարի,*
*Եւ դու յիշեալ զմեզ ընդ նմին,*
*Ամէնաւրհնեալ Աստուածածնի*
*Զձեզ աւրհնեսցէ ամէն տանի,*
*Արդ, ես գրիչ ողորմելի*
*Զձեզ կու աղաչեմ ամենայնի։*

*Ընդ նմին վարդապետն իմ ուսուցիչ զտէր Բարսեղ, ի հայրապետութեան տեառն Աղուանից կաթողիկոսի տէր Ներսէսի, որ այս ամի հաստատեցաւ կաթողիկոս, թվին ՋԻԵ. (1476), ի արհեպիսկոպոսութեան ձեռաւքն տէր Ալեքսիանոսի Ամարասա, ի երկրիս Վարընդոյ, ի անապատս որ կոչի Ոմավանս, զոր ինչ գտի զայն գրեցի։ Ո՜վ պատուական սուրբ ընթերցողք, յորժամ կարդայք զսուրբ կենսաբեր Աւետարանս՝ յիշեցէք և*
330բ *ծնողսն իմ։ Արդ ես նուաստ գծող սորա, կու աղաչ//եմ զձեզ, ո՜վ դասք քահանայիցդ, որ զմեր երախտաւոր հայրս տէր Ալէքսիանոս, և եմ անպիտան ծառայ՝ գծող սորա անուամբ աբեղայ և դատարկ ամենայն բարի գործոց, սևերես եմ աստուծոյ պատուիրանէն և յիմ կարգէ, վա՜յ ինձ*

Հարիւրապատիկ և Հազարապատիկ յաւուրն դատաստանի, կու աղաչեմ զձեզ յաղաւթս յիշեցէք և ծնողս իմ ի Քրիստոս, և աստուած զձեզ յիշէ իւր միւս անգամ գալստեան[ն], ամէն։

Բ

Ստացող՝ Տէր Ալեքսիանոս
Վայր՝ Քթիշոյ վանք

331ա Կամաւ ամենակալին աստուծոյ ես տէր Ալեքսիանոս գնեցի զսուրբ Աւետարանս ի հալալ ընչից և աշխատանաց իմոց՝ ի տէր Զաքարիայէ կուսակրաւն աբեղայէ և մուզդասոյ, յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց՝ հաւրն իմ Ճանազիզայ և մաւրն իմ Սալթանայ, և եղբաւրն իմ Կոստանդիանոսայ, և հաւրեղբաւրն իմ և վարպետին Մանուէլայ Ամարասա եպիսկոպոսին, և ամենայն արեանառու մերձաւորաց, և եղբաւրորդոյս իմոյ նորաբողբոջ քահանայի Գրիգորիսի, և այլոցն ամենեցուն ազգականաց յիշեսջիք ի Քրիստոս և աստուած զձեզ յիշէ։ Յայսմ ամի եղև կորուստ Վնաստան*, որ և գնաց Ուզուն-Հասան ի վերա և աւար և գերի արար 331բ առհասարակ, զմեծ մարդն՝ զէրեց, զսարկաւագունքն, զաշխար//հականքն կոտորեաց, զկին, զդուստր և զորդի գերի վարեաց և ցան և ցիր արար աշխարհի, զողբ և զկսկիծն լեզու ոչ կարէ պատմել։

Աղաչեմ յիշել ի տէր զիս՝ զտէր Ալեքսիանոս, և զսիրելի եղբայրս իմ զտէր Մաթէոս, որ միաբանեցաք և եկաք ի Քթիշոյ վանքըս, զի թուրք ազգս բազմացեալ է, և հայս նուազեալ, և չարիքն շատացեալ, և մեր յոյսն Քրիստոս է, զի պանդըխտինք ի միասին սակաւ աւուրցս։ Առ ոտս անկեալ աղաչեմք ըզտեսանողք սուրբ Աւետարանիս, կարդացողք և դաղափարողք, զի կարող է աստուած ի ձեռն այլում այլոց ողորմի, որ մէկ բերան լիայսրտութեամբ ասասջիք, թէ Աստուած թողու ձեր մեղքն և 332ա Քրիստոս որդին աստուծոյ զձերն ու յիշէ։ // Խնամաւղ պահաւղն ուրհնութին յաստուծոյ և յամենայն սրբոց, և ով ոք որ զյիշատակարանս կտրել ջանայ՝ ՅԺԸ. (318) հայրապետացն անիծաց եղիցի, մասն և բաժինն Յուդայի և խաչահանուացն, և ջնջեսցի ի դպրութենէ կենաց։

Թվին ՋԻԶ. (1477)։

## 627

## ՎԻՃԱԿԱՑՈՅՑ

Երևան 3884

Գրիչ՝ Ստեփանոս

76ա Գրեցաւ տետրիկս ՋԻէ. (1478) թվին, ձեռամբ անարհեստ և փծուն գրչի Ստեփանոս խաբեղի և ոչ աբեղի**։

---

* Իմա՛ «Վրաստան»։

** Այս ձեռագրի մի մասն ընդօրինակված է 1461 թվականին։ Այդ մասի հիշատակարանը տպագրված է սույն ժողովածուի Բ. մասում (էջ 166—167, հիշատակարան № 211)։

## 628

## ՇԱՐԱԿՆՈՑ

*Երուսաղէմ 2470*

Գրիչ՝ Մելքիսեթ
վայր՝ Առեստ գիւղ

749 ...*Արդ, կատարեցաւ հոգելից եղանակաւոր մատեանս ի թվականիս*
*Հայոց* ՋԻԸ. *(1479), ի յրնդիր աւրինակէ առաջին վարժապետին և քաջ*
*քարտուղարին* Գրիգորի *մականուն* Խուլ *կոչեցելոյ, ի յերկիրս* Տարբե-
րունեաց, *ի գեւղս* Առեստ, *որ կոչի* Բանդումահի, *ընդ հովանեաւ սուրբ*
*տաճարիս* Գէորգեայ *և* Անտոնի *և հրաշագործ* Գեղարդեյի *սուրբ նշանի.*
750 *և կէսն գրեալ եղեւ ի յընծանիս՝ // ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս*
*Տիրամօր լուսոյ և սուրբ Առաքելոյս* Թադէոսի, *քանզի փախեալ էաք ի*
*յանաւրինաց, զի* Հասան-բէգն *մեռաւ, և թագաւորեաց որդին* Սօլթան-
խալիլին. *եւ միւս որդին* Աղուբ-բէգն *յարեաւ բազում զաւրաւք ի վերայ*
*եղբօրն, և էսպան զնա, և ինքն թագաւորեաց ամենայն աշխարհի. և այժմ*
*գնացեալ է բազում զօրօք ի յարևելս՝ դէմ* ջաղաթին, *և զոր աստուած*
*կամի՝ այն լինի։*

*Արդ, ես յետինս ի մանկունս եկեղեցւոյ և անպիտանս յամենայնի, և թափուր յամենայն բարեաց* Մելքիսէդ *սուտանուն քահանայ, ըստ իմում կարի գրեցի զսա ի վայելումն մաքրամիտ և սրբասնունդ կրաւնաւորին, տէր* Մկրտչի, *և յիշատակ բարի իւրն, և ծնաւղաց իւրոց՝* Ներսիսին *և* Թար-թիփշին, *և եղբաւրն* Յովանէսին, *և հանգուցելոցն ի Քրիստոս* Բախախա-րին, Մկրտչին, Մխիթարին, Ստեփանոսին, *և քւերն* Հոռոմսիմին, *և* Մեն-րինզարին՝ *հանգուցելոյն ի Քրիստոս, և հաւրեղբօրն* Խօսրով *կրօնաւորին՝ գնացելոյն առ Քրիստոս, և միւս հաւրեղբօրն* Մանուկշային, *և կողակցին* Հադիային, *և տղայոցն* Յովանիսին, *և* Դարիպ-խաթունին, Ամնադինն, Կիրակոսին, *և եղբաւրորդւոց տէր Մկրտչին՝* Մխիթարին, Ստեփանոսին, Խօսրովին *և* Ջոհարին, *և հարսինն՝* Նադարին, *և հաւրքւերն* Էլխաթունին, *և մեծ պապուն* Ղազարին, *և* Մկրտչին, *և հանկացն՝* Ամէնտիկնին *և* Խուբլու-Մելիքին, *և հաւրքւեր դստերն* Սուրաթին, *և որդւոյն* Մուսեխին, *և մօրքուերն* Նսեֆ-Խաթունին, *և որդոցն* Կարապետին *և* Շուքրանին: *Որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով յիշեցէք ի պատուական յաղաւթս ձեր զտէր* Մկրտիչ *կրաւնաւորն, և զծնաւղսն իւր, և զամենայն արեան մերձաւորսն, և զվերոյգրեալքս ի սմա, և աստուած-ողորմի ասա-ցէք լի բերանով և ուղիղ մտաւք, և աստուած, [որ] ողորմած է և առատ յամենայնի՝ ձեզ յիշողացդ և յիշեցելոցս, առհասարակ, ողորմեսցի ի միւսանգամ ղալստեանն, ամէն։*

*Ընդ նոսին աղաչեմ յիշել ի տէր* զՄարտիրոսն, *և* զԿարապետն, *ըզ·* Շռուաշէն, զՅակոբն, *և* զՆուրադինն, *և աստուած-ողորմի ասացէք նմա, ամէն**։*

---

* *Հիշատակարանի սկզբի (պատմական) մասը, քաղելով Մ. Տեր-Մովսիսյանի Ցուցակից, տպագրված է սույն ժողովածուի Բ. մասում (էջ 436, հիշատակարան № 553)։ Նկատի ունենալով, որ այնտեղ կան սխալ վերծանումներ՝ նպատակահարմար գտանք, անտիպ շարունակության հետ մեկտեղ, վերահրատարակել նաև տպագրված մասը։*

## 629
## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 10169*

Վանատրի գիր

314ա *Ես տէր* Գրիգորս, *և իմ եղբայր* Ալադադս. *և մեր որդիքս ծախեցաք սուրբ Աւետարանս վերայ* Ճավի *որդացդ* Վարձիգուլիդ. *և ձեր ախքրացդ՝* Սիմէոնիդ, Ամիրզուլիդ, Ղարիպշիդ. *և ձեր որդացդ. առաջ ղըխն անպակաս, ոչ ով դավի չունի ոչ հակառակ; մեր սրտի առատութեամբ ծախեցաք: Այսոր վկայ է* Մաքէոս *եպիսկոպոս, տէր* Անտոն, *տէր* Զաքարէ, *տէր* Գրիգոր, *տէր* Յարսեղ, Մկնամն, Նապանն:

*Ես Ճավի որդիքս՝* Վարձիգուլս, Սիմէոն, Ամիրզուլս, Ղարիպշէս.
314բ Ողարսուէլս *գնեցաք սուրբ Աւետարանս յիշատակ // մեզ, և ծնողաց մերոց՝ հաւր մերոյ* Ճաւվին, *մեր մաւրն* Թա[ն]խարունին, *մեր որդոցն* Ովանէսին, Հէրապետին, Ջանում, Խոցադեղին, Քարիմադինին, Միտիշին, Գրիգորին, Լամիսգուլին, Դուլիսգուլին: *Ով որ կարդէք կամ աւրինակէք յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր և աստուած զձեզ յիշէ, ամէն։*

*Գրեցաւ ի թվաբերութեանս Հայոց ՋԻԹ. (1480), հոռի. ԻԵ. (25):*

## 630
## ԱՆԳԻՏԱՑ ԱՆՊԷՏ

*Բ. Կիւլէսէրեան, Ցուցակ Անկիւրիոյ, 99, սյուն. 508—509*

*Հեղինակ՝* Ամիրդովլաթ Ամասիացի

*Եւ անպիտան ծառան քիչ մը յիշեցնեմ վասն մատնէհար կաւուն։ Ի թվականութեան Հայոց... ՋԻԹ. (1480) ամին, ի թագաւորութեան սուլթան* Մուհամմատ *խանին, որ կայսր էր նստել ի* Կոստանդիանուպաւլիս. *և զրուց եղաւ վասն մատնէհար կաւին, որ գտնուին զինքն. և զրկեցին ի սարայկինոսաց ազգէն Ա. (1) բժիշկ մարդ մի ի այն կղզին, որ* Լիմնաւս *անուանի, որ երթար գտնուր զան տեղն, ուր մատնէհար կաւն է. և գնաց և ոչ գտաւ ի յայն կաւէն, և այլ զտաւ ի ան Ա. (մէկ) ալ ազգ կաւէն, որ գունն կու եւանէր. և եբեր թագաւորին, և տեսան բժշկնին և ոչ ընդունեցան։ Եւ այլվի հրամայեց թագաւորն մեր Գ (3) մարդու, որ երթան գտնուն զմատնէհար կաւն. և այն Գ. մարդուն Ա. (1) բժիշկ էր Հոռոմ և Ա. (1) այլ՝ ի այն տեղաց մարդկանցն էր, որ ունէր զարուեստ նկարայկերպութեան. և գնացին եւան ի յայն կղզին, և գտան ի հաւն՝ ծեր մարգիք, և հարցան և գտան գրեանք վասն պատմութեան մատնէհար կաւին. և զտեղն որ կու եւանէր՝ գտան, և փորեցին և հանին ի յայն կաւէն, որ էր մատնէհար կաւն, և բերին թագաւորին մերոյ, և առին պարգեւ ի թագաւորէն. և այն տեղն, որ այն կաւն կու լինէր, դուռ դրին, և պահապան դրին, և չեն ձգի տար ի յայն կաւէն մարդու։ Եւ ի յայս կաւէս թագաւորն մեր շինել երետ շատ փարչեր, որ ջուր կու խմին, և ղայլն ի խազնան եդիր և պահեց. հիմայ մերձ է մեզ, և հեշտութեամբ կու գտնունք զկաւն։ Եւ ի վերայ այսոր տարի մի անցաւ, և թագաւորն մեռաւ, և ի* Կոստանդիանուպօլիսն *շատ վնաս և թաղթան եղաւ, և յետոյ խաղաղութիւն. և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։*

## 631
## ՇԱՐԱԿՆՈՑ
*Երևան 1620*

*Գրիչ՝* Գրիգոր
*վայր՝* Ականց գեաւղաքաղաք

397ա *Արդ, գրեցաւ եղանակաւոր վարդափթիթ աստուածային սուրբ տառս
որ կոչի Շարակնոց, ի երկիրս Քաջբերունի, ի գեաւղաքաղաքս Ականց
կոչեցեալ, ընդ հովանեաւ գեղեցկաշէն տաճարիս Թադէոս առաքելին և
սուրբ Յակովբ հայրապետի, ի յառաջնորդութիւն երկիրս և մերս գաւառի
քաջ և արի բարունապետի և ուղղափառ քարոզողի Յովանէս վարդապե-
տի և տէր Յովանէս եպիսկոպոսի, զոր տէր աստուած հաստատուն պա-
հեսցէ բդնոսա, ամէն։*

*Դարձեալ գրեցաւ ի թուականութեանս մերում Ջ. և ԼԱ. (1482) ամի,
ի խնդրոյ հեզահոգի և սրբասէր, մաքրամիտ և իմաստուն կրաւնաւորի
Տիրատուր քահանայի, որ եւ գրել զսա եռափափագ սիրով՝ ի վայելումն
397բ անձին իւրոյ, և յիշատակ բարի հոգւոյ իւ//րոյ, և ծնաւղացն իւրոց՝ հաւրն
Յովանիսին և մօրն Խաթունշին, և եղբարն Ջանիբէկին, և քեռն Փաշա-
Խաթունին, և Սուլթան-Խաթունին, և Խաբիբին, եւ զհոգևոր հայրն իւր
զՄխիթարն, և զհոգևոր մայրն՝ զՔարամ-Խաթունն, և աստուած-ողորմի
ասացէք նոցա և ինքն՝ ողորմածն աստուած ողորմեսցի ամենեցուն,
ամէն։*

*Արդ, աղաչեմ զմանկունսդ սուրբ եկեղեցւոյ, որք վայելէք յաստուա-
ծային սեղանոյս ուսանելով, կամ աւրինակելով և կամ տեսանելով, յի-
շեսջիք ի սուրբ և մաքրափայլ յաղօթս ձեր զմեղուցեալ և զանարժան
գրիչս զԳրիգոր, որ զանունս միայն ունիմ և գործովք թափուր եմ, և
զհայրն իմ զՅովսէփ քահանայն, և զմայրն իմ զՆզիկմելիքն, և զամենայն
ազգականսն իմ, ով ոք միով տէր ողորմայիւ զմեզ յիշման արժանի առ-
398ա նէք, զնայ և որդին աստուծոյ յիշեսցէ ի միւ//սանգամ գալստեանն իւ-
րոյ, ամէն։ Այլ և ես, անարժանս յամենայնի, երեսս անկեալ աղաչեմ
զամենեսեան զմանկունսդ սուրբ եկեղեցւոյ, յիշեսջիք ի սուրբ և յաստուա-
ծահաճոյ յաղօթս ձեր զՏիրատուր աբեղայն, և զծնաւղսն իւր, և զամե-
նայն վերոգրեալսն ի սմա, և աստուած-ողորմի ասացէք և մեղաց թո-
ղութիւն խնդրեցէք...*

*Դարձեալ կրկին աղաչեմք յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զու-
սուցիչն իմ զՄխիթար քահանայն, և զկողակիցն իւր զՅոհար մուղդասին,
և լի բերանով աստուած-ողորմի ասացէք, ամէն։*

*Ես** առաւել աղաչեմ յիշել ի տէր զպատուական կրաւնաւորն զտէր
Տիրատուրն, և զծնաւղսն իւր, և զեղբաւր որդին զՅովաննէս դպիրն, և
398բ զդուստրն զԲէգիջան, և զքուեր որդիքն // զՄիրանշէն և զԱսպանանշէն,
զՍտեփանոսն և զՅովանէսն, և զքուեր դուստրն զԲեգին, նաև ամենայն
արեան մերձաւորացն՝ կենդանեաց և հանգուցելոցն, լի և առատ և բոլոր
սրտիւ աստուած-ողորմի ասացէք, և Քրիստոս աստուած, որ առատն է
ի տուրս բարեաց, ամենեցուն առհասարակ ողորմեսցի, ամէն։*

---

* *Այստեղից ձեռագիրը փոխվում է։*

## 632
## ՅԱՂԱԳՍ ՀՈԳՈՅՆ ԵՒ ԶՕՐՈՒԹԵԱՆՑ ՆՈՐԻՆ

*Երուսաղէմ 1259*

*Գրիչ՝* Աստուածատուր

213 *Կատարեցաւ գիրքս Յաղագս Հոգւոյն և զօրութեանց նորին և առաքինութեանց՝ ի թուականութեանս Հայոց ՋԼ. (1481), ձեռամբ* Աստուածատուր *սարկաւագի, ի խնդրո* Ամիրդովլաթ *բժշկին, յիշատակ հոգւոյ իւրո, ի վայելումն զաւակաց իւրոց։ Աղաչեմ զձեզ, եղբարք, որք հանդիպիք ի սմա կարդալով կամ աւրինակելով, յիշեսջիք ի մաքրափայլ աղօթս ձեր զվարպետ* Ամիրդովլաթ *բժիշկն, և լի բերանով ասէք աստուած-ողորմի. այլ և անմեղադիր լերուք խոշորութեան և սխալանաց*

214 *գրիս, զի դեռ առաջին գիրս է, և միով ողորմայիւ յիշեցէք յաղօթս ձեր* զԱստուածատուր *սարկաւագս. եւ որ յիշեն յիշեալ լիցի ի Քրիստոսէ, ամէն։*

## 633
## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երուսաղէմ 3287*

*Գրիչք՝* Վրդանէս և Արիստակէս
*վայր՝* Խուլաու վանք

482 *...Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի վանքս* Խուլաու, *ի դրան սուրբ Գէորգայ, ձեռամբ նուաստ և անարհեստ գրչի* Վրդանեսի *և* Արիստակիսի՝ *հարազատ եղբարք, ի գաւառէն* Այրարատայ, *ի թվին ՋԼԱ. (1482)։ Եւ զառաջնորդ ուխտիս մեր զքաջ րաբունապետս* զԳրիգոր *արդուն անուն, որ ըզտիւ և զգիշեր ի խորս աստուածային տառից դեգերելով վասն մեր՝ առնելով և ուսուցանելով։ Եւ դարձեալ, ո՛վ մանկունք եկեղեցւոյ, որք հանդիպիք սուրբ Աւետարանիս կարդալով կամ աւրինակելով, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր ըզվերոգրեալք ի սմայ։*

## 634
## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 5908*

*Կազմող՝* Աստուածատուր

ա

238բ *Ո՛վ հոգևոր եղբայր տէր* Կիրակոս, *յորժամ ընթեռնուք զսուրբ Աւետարանս և զԳործք առաքելոցն և զԳործք կաթուղիկէին, աղաչեմ յիշել ի սուրբ աղաւթս զմեղապարտ ոգիս* Աստուածատուր *էրէցս, միայն զանունս ունիմ և ոչ ըստ գործոց։ Ընդ նմին յիշողացս և յիշեցելոցս, առհասարակ, ողորմեսցի Քրիստոս աստուած, ամէն։*

բ

160ա *Զվերջին կազմող սուրբ Աւետարանիս* զԱստուածատուր *էրեցս յիշեցէք///* ի թվ. Հայ[ոց] ՋԼԱ. (1482), յուլիս ամսոյ ԺԳ. (13) ամեն։*

* *Տառերի վրայից թանաքը թափվել է և դարձել անընթեռնելի։*

## 635

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երուսաղէմ 1958

867 Ի թուականիս Հայոց ՋԼԳ. (1484), ի յուլիս ամսուն Իէ. (27) հանգաւ ի Քրիստոս Սարգիս քահանայն, Սէթ իրիցուն որդին։ Աստուածողորմի իւրեանց հոգիս, որ զամէն ասէ, աստուած իւր հոգոյն պատրաստէ հազար, ամէն*։

## 636

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 721

Գրիչ՝ Խաչերես

ա

2ա Յիշատակ է Աստուածատուր[ին]: Գրեցաւ գիրս աստուծով ՋԼԴ. (1484), աւգոստոսին Իե. (25), ձեռամբ Խաչերես[ի]:

բ

177բ Յիսուս Քրիստոսն պահէ զխոճա Նիկողոսն, զայս թուխտս Աստուածատուրին էրետ. աստուած ողորմի խոճա Նիկողոսին հաւրն հոգուն, աստուած ապրեցնէ զինքն։

## 637

### ՅԻՍՈՒՍ ՈՐԴԻ ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼԻՈՅ

Երևան 8477

Հետ. ստացող՝ Ովանէս Լաճկանց

151ա Դարձ[ե]ալ աղաչեմք զձեզ, ո՜վ սուրբ մանկունք եկեղեցոյ, յիշեցէք ի մաքրափա[յ]լ յաղաւթս ձեր զՈվանէս սուտանուն կրաւնաւ[ո]րին, որ մականուն Լաճկանց կոչի։

Ի յինն հարուր թվականին
Քառասուն երեք** յաւելուածին (1494),
Որ յիշատակս գրեցին
Մեր ծնաւղին ու ամենին,
Ով ոք կարդան ու միտ առնին
Բանք Նէրսէսին՝ զՅիսուս որդին,
Որ մականուն Կըլայեցին:

## 638

### ՏԱՂԱՐԱՆ

Երուսաղէմ 1647

Գրիչ՝ Մովսէս Արծկեցի
վայր՝ Ամիթ

398 Գրեցաւ գեղեցիկ Տաղարանս պատմութեան ձեռամբ Մովսէս երիցու Արծկեցոյ ի քաղաքս Ամիթ, ընդ հովանեաւ կաթուղիկէ սուրբ Թէոդորո-

---

* Դրանից հետո այլ ձեռագրով գրված է. «Ի թուականիս Հայոց ՊՂԳ. (1444) մայիս Զ. (5) հանգաւ ի Քրիստոս Սէր քահանայն», Անշուշտ, վերը հիշատակված Սարգիս քահանայի հայրն է։

** Գրված է՝ «ԽԳ» (43)։

սին, ի ՋԼԴ. (1485) ամին, ի վայելումն Համշիրաք եղբօր մերում տէր Յովանիսին. և զաւակացն Հապիպշին և Դաւթին. որ յայսմ ամի ծնաւ. զոր տէր աստուած ընդ երկայն աւուրս պահեսցէ, ամէն։ Եւ զի շնորհեցի զտետրակս եղբօրս իմ Յովանէս երիցու, առ ի յիշողութիւն անկեղծ սիրոյն մերոյ, զոր ունիմք առ իրարս։ Եւ որք օգտիք ի սմանէ///*

## 639
## ՇԱՐԱԿՆՈՑ

Երուսաղէմ 1657

Գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Տփխիս

ա

728 ... Գրեցաւ եղանակաւոր տառս որ կոչի Շարակնոց ձեռամբ յոգնամեղ և անարժան գրչի Մկրտիչ յերիցի, ի թուի Հայոց ՋԼԴ. (1485)-ի գրեցաւ սուրբ երգարանս ի քաղաքս Տըփխիս, ընդ հովանեաւ սուրբ Կաթուղիկէիս և բժիշկ ցաւոց Մաղնոյ սուրբ Գէորգիս։ Արդ, ցանկացօղ եղև այսմ աստուածաշունչ երգարանիս տէր Տիրատուր քահանայ, եւ ետ դծագրել մեծաւ ծախիւք ի վայելս վայելուչ անձին իւրոյ, և յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց՝ հաւր իւր Թաթէոսի և մօր իւր Աւտուռ-Մելիքի, և կենակցին իւր Ասանթենոյ, և նորաբողբոջ զաւակաց իւր՝ Աստուածատրին և Ջեկելին և Դանիէլին, և այլ որդի Միրիջանին և Ուսեփին, և հարազատ եղբարց իւրոց։

Արդ, եղև աւարտ գրչութիան այս մեծահանդէս ոսկիազարդ և հոգելից տառիս և շրջագայութեան հայկազեան տումարի ՋԼԴ. (1485), ի դառն և ի չար ժամանակի, որով նեղիմք ի բռնութենէ յանօրինաց, ի ղանութեան Հասան-բէկին, որ և գերեաց զՎրացտունն, և աւերեաց զքաղաքն

729 Փայտակարան: // Ի հայրապետութեան տեառն Սարգսի յառաքելական աթոռն ի սուրբ էջմիածինն, որ ի Վաղարշապատ, ի խնդրոյ և յարդեանցս երիցս. երանեալ Տիրատուր քահանայի, վասն որոյ յերեսս անկեալ աղաչեմք զամենեսեան, որք լուսաւորիք սովաւ ուսմամբ կամ գաղափար առնելով, յիշեցէք ի Քրիստոս զվերոյգրեալ ստացօղք տառիս Տիրատուր քահանայ, հանդերձ ծնօղաւք և ամենայն արեան մերձաւորօք... ասելով ի խորոց սրտէ, թէ տէր աստուած ողորմեա նոցա և ջնջեա զձեռագիր յանցանաց նոցա, ամէն։

Բ

Ծաղկող՝ Ստեփանոս Առընչեցի

Նկարեցաւ Շարակնոցս ձեռամբ Ստեփանոս եպիսկոպոսի յԱռընչեցոյ, ի խնդրոյ Տիրատուր աւաքիրիցոյ։ Աստուած վայելել տացէ իրն և որդոց իւրոյ, ամէն. թվ. ՋԼԶ. (1487) ծաղկեցաւ։

Գ

246 Զտէր Տիրատուր անկեալ առ ոտս գերեզմանին յիշեցէք ի Քրիստոս և աստուած զձեզ յիշէ, ամէն։

* Թերթ է ընկել։

Դ

336 Զանարժան նկարող զՍտեփանոս եպիսկոպոս յիշեցէք ի Քրիստոս և աստուած զձեզ յիշէ, ամէն։

Ծաղկեցաւ Շարակնոցս ի խնդրոյ Տիրատուր իրիցու, յիշեցէք ի Քրիստոս միով ողորմայիւ և աստուած զձեզ յիշէ, ամէն։

## 640

## ՃԱՇՈՑ

Երևան 7402

517բ Զվերջին նորոգաւղ սուրբ գրոցս զԱւետիք կուսակրաւն սարկաւագըն, որ ետ զսուրբ գիրքս նոր նորոգել՝ յիշատակ իւր և ծնողաց իւրոց և ամենայն զարմից, ամէն։

Թվին ՋԼԴ. (1485)։

## 641

## ԺԱՄԱԳԻՐՔ

Զմմառ (Անտոնեան հաւաքածոյ) 198

Գրիչ՝ Յոհանէս
վայր՝ Եղրդուտ վանք

Եւ Քրիստոսի աստուծոյ յուսոյն մերոյ գոհութիւն, և փառք, և աշխարհի խաղաղութիւն, և սուրբ եկեղեցոյ հաստատութիւն, և երեխտաւորաց մերոց բազմապատիկ հատուցումն, և մեզ քաւութիւն և թողութիւն և սէր յաստուծոյ և ի սուրբ եկեղեցոյ։

Արդ, գրեցաւ սա ի թվականիս ՋԼԵ. (1486), ընդ հովանեաւ սուրբ վանացս, որ Եղրդուտ կոչի։

||| : ||| ⁝ || ⁝ · | · ||| ∷ || : |||| : || · | ⁝ ·* բանու։

## 642

## ԳԱՆՁԱՐԱՆ

Երուսաղէմ 3758

Գրիչ՝ Աստուածատուր Կաֆայեցի
վայր՝ Քաւթայ Ճաղաք

ա

813 Փառք ... որ ետ կարողութիւն տկար և անիմաստ անձին, փցուն գրչի Աստուածատուր սուտանուն սարկաւագի հասանել յաւարտ գրոցս որ կոչի Գանձատետրս, որ է պայծառութիւն սուրբ եկեղեցոյ և զարդ մանկանց նորայ, զոր ցանկացող եղեալ տէր Զաքարեան ի հալալ ընչից իւրոց, յիշատակ իւր, և ծնողաց իւրոյ՝ հաւրն Աստուածատուր քահանային և մաւրն Արխաւնտիսային՝ փոխեցեալսն ի Քրիստոս, և ամենայն արեան

* Կետադծային ծածկագրով գրված է. «Յոհանիսի էւ»։

մերձաւորացն։ Արդ, աղաչեմ զաստուածասէր հանդիպողքդ, որ եղանակէք կամ կարդայք կամ աւրինակէք յիշեցէք ի սուրբ և յարժանաւոր աղաւթըս ձեր զստացաւ[ղ] սորին զտէր Զաֆարեա ընդիր և պատուելի քա-
814 հանայն, // և զծնաւղ սորին զԱստուածատուր քահանայն, և զմայրն իւր զԱրխաւնտիսայն... Եւ զիս զանարժան գրիչս զԱստուածատուր տգէտ և անարժան սարկաւագս Կաֆաեցի, զհայրն իմ զԿարապետն, և զմայրն իմ զԽմին-Մելիքն, և զմեծ պապն իմ զԱստուածատուր քահանայն, և զհաւրեղբայրն իմ զՅովանէս քահանայն՝ զփոխեցեալն ի Քրիստոս, և զեղբայրն իմ զՂազար քահանայն, և զփոքր եղբայրն իմ զԽաչատուրն. և զքուերն իմ զՏիրունին, և զԹամթայ-Խաթունն, և զամենայն արեան մերձաւորսն իմ աղաչեմ յիշեցէք և թողութիւն մեղաց հայցեցէք յաստուծոյ, զի թերևս ի ձեռն սրբամաքուր աղաւթից ձերոց դտից թեթևութիւն ծովա-
815 ցեալ և անչափ մեղաց իմոց, զի յոյժ ղաւրաւոր են աղաւթք ար//դարոցդ յաւգնականութիւն, և ինքն առատապարգևն և ողորմածն Քրիստոս ներեսցէ մեզ յիշելոցս և ձեզ յիշողացդ յիւր ահեղ ատենին, ամէն։

Դարձեալ կրկին աղաչեմ անմեղադիր լինել սղալանացն և խոշորութեան գրիս, զի անհմուտ եմ արուեստիս։

Եւ արդ, գրեցաւ սայ ի թուականիս Հայոց ՋԼԵ. (1486), նոյեմբերի ԺԵ. (15), յաստուածապահ քաղաքս ի Քաւթայ, ընդ հովանեաւ սուրբ տաճարացս սրբոյն Թէոդորոսի, և սուրբ Աստուածածնի, և սրբոյն Սարգըսի զաւրավարին, զորս անխախտելի պահեսցէ Քրիստոս հանդերձ աստ բնակեալ քրիստոնէիւքս, ամէն, եղիցի։

Բ

Ստացող՝ Ֆարման տիկին

816 Զայս Գանձատետրս Զաֆարեայ էրէցն գրել երետ, գիրն երբ գրուեցօ, որ դեռ կապած չէր, նայ ես Ֆարմանս լսեցի, որ նայ գրել տվել էր, խիստ փափաքէի գանձ լսելոյ, խնդիրք արի ի դարմէ, նայ զխարճն սաաց՝ ՃԼ. (130) սպ[իտակ], տվի ու առի, յետոյ ծաղկել ու կապել տվի, Ա. (1) աշրաֆի առի, ԽԷ. (47) սպ[իտակ] ու ծաղկել ու կապելէ տվի։ ՃՁԲ. (182) սպ[իտակ] եղաւ ջումլայ գիրքս այս։

Ես Ֆարմանս յիշատակ դրի զայս Գանձատետրս ի սուրբ Աստուածածինն յիշատակ ինձ, և ծնողաց իմոց՝ հաւրն Ուլուպակին և մաւրս Տով-
817 լաթին: Աղաչեմ զձեզ, որք եղանակէք քաղցր//աձայնիւ, յիշեսջիք յաղօթս ձեր զանարժան Ֆարմանս, և զծնաւղսն իմ զՈւլուպակն և զՏովլաթն՝, և զիմ կողակիցն զդերձակ Սարգիսն, նայ որ յիշէ և ողորմիս ասէ, նայ ինքն յիշեալ լիցի ի Քրիստոսէ Յիսուսէ, ամէն։

643

ԳԱՆՁԱՐԱՆ

Երուսաղէմ 3398

Գրիչ՝ Սարգիս

վայր՝ Արզրումի վանք

719 Փառք ... որ ետ կարողութիւն տըկար անձին իմոյ Սարգսիս հասանել յաւարտ սորին յամի ՋԼԶ. (1487) թըւականիս մերում, որ գրեցաւ ի

*վանքս* Արզրումիս, *ընդ հովանեաւ սուրբ Յարութեանս և սուրբ Աստուա-*
720 *ծածնիս, և || սուրբ Կարապետիս, և սուրբ Սարգսիս, և սուրբ Թագաւո-*
*րիս, և սուրբ Նշանիս և այլ ամենայն սրբոցս, որ աստ կան հաւաքեալ,*
*ի յառաջնորդութիւն վանիցն* Ներսէս *եպիսկոպոսին, ի հարպ[ետ]ութեանն*
Մկրտիչ *աբեղին, որ բազում աշխատութեամբ ջանայր ի գործս վանացս,*
*և եղբաւրորդոյն իւրոյ տէր* Սարգսին *կուսակրաւն կրաւնաւորին, տէր*
Կարապետին, *և այլ միւս տէր* Կարապետին, *և այլ միաբան եղբարցս՝*
*տէր* Սիմէոնին, *և տէր* Պետրոսին, *և տէր* Թորոսին, *և* Լեոն *սարկաւագին,*
*որ զթու[ղ]թս նշայէր և կոկէր և խաղէր |||**

## 644

## *ՄԱՇՏՈՑ*

*Երուսաղէմ 3440*

*Գրիչ՝* Գրիգոր

*վայր՝* Եկեղեաց և Դարանաղեաց գաւառ

332 *Փառք քեզ կիոնի քող արդեսագոյն կիսագնդի և դեմետրի արարիչ,*
*ամէն։ Արդ, գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց ՋԼԶ. (1487), ի մէջ*
*երկուց գաւառաց* Եկեղեաց *և* Դարանաղեաց, *յերկնահանգէտ, և յաս-*
*տուածաբնակ լեառս* Սեպուհ, *ընդ հովանեաւ դամբարանի սուրբ Լուսա-*
*ւորչիս մերոյ Գրիգորի, և սուրբ Փրկչիս, և սուրբ Աստուածածնիս, և սուրբ*
*Կարապետիս, և Մանեա կուսին սուրբ գերեզմանիս, և այլ բազմահաւաք*
333 *սրբութեանցս։ Այլ ո՛վ քրիստոսասէրք, որք հանդիպիք այսմ ձեռն ||*
*Մաշտոցիս, աղաչեմ յիշել ի մաքրափայլ յաղաւթս ձեր զամենայն առա-*
*քինութեամբ զարդարեալն զ*Աւետիք *րաբունապետն, որ բազում աշխա-*
*տութեամբ ուսուց զիս, և զառաջնորդ սուրբ ուխտիս զտէր* Աւետիք *եպիս-*
*կոպոսն, զոր տէր աստուած տացէ նոցա աշխատանացն վարձս՝ զիւր*
*երկնից արքայութիւն, ամէն։ Այլ և յերես անկեալ աղաչեմ զհանդիպողսդ*
*յիշել ի բարի զվերոյասացեալսդ, նայ և զմեղաւք մեռեալ և զպարտապան*
*բիւր քանքարոյ զլցեալս մեղաւք և զթափուրս յամենայն բարեաց զ*Գրի-
գոր *սուտանուն աբեղայ, որ զանուն ունիմ, զգործն ոչ։ Այլ և աղաչեմ*
*անմեղադիր լինել սղալանաց և խոշորութեան գրիս, զի կար մեր այս է։*

## 645

## *ՇԱՐԱԿՆՈՑ*

*Երուսաղէմ 1677*

*Գրիչ՝* Յովանէս

277ա *... Գրեցաւ եղանակաւոր տառս ի թու. Հայոց ՋԼԶ. (1487), ձեռամբ*
*բազմամեղի գրչի* Յովանիսի, *ի վայելումն անձին իմոյ, և յիշատակ հոգ-*
*ւոյ իմոյ և ծնաւղաց իմոց։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք*
*այսմ տառի և աւգտիք ի սմանէ, յիշեսջիք սրտի մտաւք ի սուրբ և ի մեղ-*
*սաքաւիչ աղաւթս ձեր զբազմամեղ գրիչս և զուսուցիչն իմ զ*Աւետիք *վար-*
*դապետ, և զ*Յովաննէս *մեծ րաբունապետն, և զհոգևոր հայրն իմ զտէր*
Ներսէսն: *Եւ աստուած յիշողացդ և յիշեցելոցս ողորմեսցի ի միասանգամ*

* *Թերթ է ընկել։*

գալստեան իւրում, և նմա փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Եւ վասն խոշորութեան և սղալանաց, որ են ի սմա, աղաչեմ, անմեղադիր լինել. զի կար մեր այս է։

## 646

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 3336

ա

73բ Դարձեալ յիշեցէք զՇոռոթեցի կին Ծամէրն, որ սուրբ Աւետարանիս թուխթն նայ ետուր, աստուած իւրն ողորմի, ամէն։

բ

204ա Յիշեցէք զՋուղայեցի միակից Մինաս, որ զթուխթս նա կոկեաց։

գ

248 Այս է առաջին թիվն ՋԼԵ. (1487)-ին*։

## 647

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7638

Գրիչ՝ Սարկաւագ

վայր՝ Սպերու երկիր, Կորնկան գիւղ

ա

314բ ... Արդ, այսմ անմահական ըմպելոյ փափաքող եղեալ բարեպաշտ և հոգեսէր և իմաստուն Գրիգոր երէց զորոյ և զսա ի բաղում ժամանակաց ցանկացող եղեալ այսմ անգիւտ մարգարտիս և ամենագով աւրինակիս... Զորոյ տեսեալ պայծառութիւն Աւետարանիս այս Գրիգոր երէցս և

315ա ետ գեղափարել զսա ի ձեռն քահանայի անարժան Սարկաւագի և փա//նաքի գրչի, և ժամանակս վերջին, որ էր թուականս Հայոց ՋԼԸ. (1489), ի վերադիտողութեան Հայոց տեառն Սարգսի և Յոհաննէսի, և վերակացութեանն Գրիգոր վարդապետի, եւ իշխանութեանն պարոն Դաւթի, որ տէր էր Համշէնի, զոր եղև պանդխտանալ նմա և բնակել ի երկիրս Սպերու, ի յազգէն չիթախին, զոր շատ քրիստոնեա իշխանք և թագաւորք պանդուխտ եղեն ի յաւտարութիւն ի ձեռաց նոցա, զորոց զսուրս նոցա աստուած խորտակեսցէ ամենազաւր աջովն իւրով, ամէն։

Զոր և ես մեղսամած և անիմաստ գրիչս գրեցի զսա ի պանդխտութեան մերում ի երկիրս Սպերու, ի գեաւղս Կորնկանց, ընդ հովանեաւ սրբոյն Դաւթի, իշխանութեանն տաճկաց Դատային, և սուլթանութեանն Եաղուպին, որ տիրէր տանս Արևելից։

Արդ, խնդրեմք ի ձեզնէ հեղինակէ և աւրենսապատում եկեղեցոյ մանկունք, որք յաստուածային պտղոցն խորհրդիւ գիտէք ճարակել, յորժամ ի ձեռն առեալ զփափաքելի սուրբ Աւետարանս ի ձերում անզբրաւե-

* Գլխավոր հիշատակարանը չի պահպանվել. Թվականով այս տողն օրինակել է կորած այդ հիշատակարանից հետագա ստացող Սարգիսը։

լի ուրախութիւնդ, յիշեսջիք զստացող զսորա* զԳրիգոր երէց, և զկողակիցն իւր զՇահանուշն. և զմայրն իւր զԳուլիշատն, և զհայրն իւր զտէր Առաքելն, և զդուստրն իմ զՄէլիքն, և զուստերքն իմ զՄերոնն, և զԿարապետն. և զԱռաքելն, և զԱլէքսն, և զամենայն արեան մերձաւորքն իմ, ամէն։

Դարձեալ, աղաչեմ յիշատակել զմեղապարտ գրիչս զքահանայ Սարկաւագս. և զծնաւղն իմ ըստ հոգոյ զտէր Յովսէփն, և զմարմնոյ զԽըստագէսն, և զմայրն իմ զՆղիսաբէթն, և ի յանաւրինաց կատարեալն սրով զհաւրեղբարն իմ զԽաչատուրն, և աստուած զձեզ յիշէ յիւրում գալստեանըն, ամէն։

Բ

Ստացող՝ Գրիգոր

Մի ոք իշխեսցէ յորդոց իմոց և ի մերձաւորաց ծախելով կամ գրաւ
315բ դնելով կամ ի բա///ժինք արկանելով, այլ ով որ յորդւոց իմոց և ի թոռանց
կարգաւոր լիցի՝ ի ձեռս նորա լինի, յիշատակ ինձ և կողակցին իմոյ Շահանուշին:

648

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5469

Հետ. ստացող՝ Ստեփանոս

251ա Արդ, աղաչեմք զձեզ, ո՜վ մանկունք եկեղեցոյ, յիշեսջիք սուրբ յաղաւթս ձեր զհեղահոգի քահանայն զտէր Ստեփանոս մաղտասին, որ ստացաւ զսուրբ Աւետարանս յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնողացն, և ազգականացն///**

Թվ. Ջխ. (1491)։

649

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 334

145ա Ի թվականին ՋԽԲ. (1493) յիշատակ նտ Աւետարանս Շահկան և Ջահալին. ի նոյա յազգէն Շահ-Մէլիք անուն ///***

650

ՄԱՇՏՈՑ

Ջմմառ (Անտոնեան հաւաքածոյ) 85****

ա

202ա ... Արդ, գրեցօ սուրբ գիրքս, զոր արարեալ է սուրբ հայրն Մաշտոց վարդապետի, զոր հաւաքեալ ումի յինքեան դեւթն խորհուրդ եկեղեցւոյ,

* Շարունակությունը՝ մինչև այս պարբերության վերջը, ինչպես և հիշատակարանի սկզբում ստացող Գրիգոր Երեցի անունը՝ գրված է այլ ձեռագրով։

** Ինր տող՝ ջնջված է։

*** Շարունակությունը ջնջված է։

**** Վերջին թերթերը (ձեռագրի մեկ-երրորդ մասը) կրկնագիր են։

ի թուականիս Հայոց ՋԽԴ. (1495) ամին։ Եւ գրեցաւ ի յանապատս, որ կոչի Կուսից անապատ, սուրբ Աստուածածնի տաճարիս և սրբոց առա-
202բ քելոց նշխարացս՝ Թաթ///էոսի առաքելոյն, ի Հայրապետութեան տեառն Սարգսի, և առաջնորդի սուրբ ուխտիս տէր Մաթէոսի, ի թագաւորութեան Ռոստամի, զոր ի սորա աւուրքս առաջացան չար ղազիք և բաղում վիշտք և նեղութիւնք հասուցին քրիստոնէիցս, և ամենայն քրիստոնեայս ի մեծ տարակուսի կանք և յաղօթնեալ եմք յաղէնիազն աստուած, որ ինքն լինի նոցա վրէժխնդիր։

Արդ, և յայս դառն ժամանակիս, ցանկացա այս պատուական գանձիս և լուսափայլ մարգարտիս։ Եւ արդ ես անպիտանս ի բարեաց և մեղաւորս յարդարոց, անկատարս ի կա[տարելոց]///

Բ

182ա Ո՛վ ընթերցողք սուրբ գրոց, յիշեսջիք ի սուրբ յաղօթս ձեր զԱկոբ վարդապետն և զԱստուածատուր տնտեսն և զվկայն, Հանդերձ ծնօղաւքն։

Գ

44ա Ո՛վ սուրբ ընթերցողք, յիշեսջիք ի յաղաւթս ձեր զխոնդշահ Հայրաքուր մեր, և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ։

## 651

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7344

Գրիչ՝ Յովաննէս
վայր՝ Տիւրիկ

299ա Եւ գրեց[աւ] ի թուականութեանն Հայոց ՋԽԵ. (1496), ի քաղաքիս Տիւրիկ, ձեռամբ անարժ[ան գր]չի Յովհաննէ[էս իրի]ցու, և ծնաւղայ իմոց Զորվար իրիցու, ընդ հովանեաւ սուրբ Նշանի, սուրբ Սարգսի տաճարիս։ Արդ, աղաչեմք բզձեզ, ո՛վ մանկու[նք սուրբ] Սիովնի, որք հա[նդի]պիք այս սուրբ և աւե[տ]աքարոզ Աւետարա[նիս], կարդայք և ավտիք և աւրինակէք ի սմանէ [յիշեցէք սր]տի մտաւք ի մ[աքրա]փայլ յաղաւթս ձեր։

Այլ և յիշեսջիք /// ոնի ի վերայ մեր զԿարապետ վարդապ[ետն]՝ դառաջնորդ ուխտիս։ Այլ և Տիւրիկցի Աստուածատուր...*

## 652

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 3557

Վայր՝ յերկիրս Եւդոկիայ, ի գիւղն Կոմանայ

ա

290բ ... Արդ, գրեցաւ [սուրբ Ա]ւետարանս [ի թ]վականիս Հայոց ՋԽԶ. (1497), որ ստացաւ սայ ի [Հ]ալալ ճնչից ի[ւրոց /// յիշատակ /// ծնաւ-

* Խոնավությունից քայքայվել և հիշատակարանը դժվարընթեռնելի է դարձել։

ղաց իւրոց՝ հաւրն իւրոյ Ումիտին, և մաւրն Ծովինար[ին, ե]ղբարցն ///
կուսանաց ապաշխարողացն Աննա-Խաթունին, և Ոսկիկին, Ճահաթունին.
Կուլումին, և հարսներուն՝ Մարգ[ար]տին, Վառիկ Սալթանին /// փեսայն
տէր Խաչատուրն. զաւակաց և ուղոցն Ստեփանոսին, Մաթիոսին /// ի յեր-
կիրս կողմանս Սւդոկիայ, ի գիւղն [Կո]մանայ, ի դուռն [Կ]ենսատու
սուրբ Նշանին և լուսաբո[րբ] սուրբ գերեզմանացն*։

Բ

131ա Ես Դեսպինայ քոյրն Յոհաննէս քահանային ետու ի գին սուրբ Աւե-
տարանիս Գ. (3) ոսկի, որ եդաք ի դուռն և ի գիւղն Կոմանայ սուրբ Խա-
չին, և սուրբգերեզմանացն Յոհան Ոսկիաբանին, և Գրիգոր Աստուածա-
բանին, և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։

## 653
## ՄԱՇՏՈՑ

Երուսաղէմ 3348

Գրիչ՝ Մխիթար

... Գրեցաւ աստուածախումբ տառս, որ կոչի Մաշդոց, զոր արարեալ
է մեծ բաբունապետին սրբոյն Մեսրովպայ Թարգմանչին, որ գաղափա-
րեալ ունի յինքն զխումբս առաքելական և մարգարէական և աւետարա-
471 նական և վարդապետական ... Որում փափաքաւղ եղաւ հոգևոր հայրս մեր
վարպետ Ամիրս՝ աստուածային աւրինացն և սուրբ գրոցս, և ընտացաւ
զսայ ի հալալ ընչից իւրեանց, ետուր զանցաւորն և էառ զանանցն։ Եւ ետ
գրել զսայ ի լաւ և յընտիր յաւրինակէ, որ այլ պակաս չկայ։ Բայց գրեցաւ
ի թվիս հայոց ՋԽԸ. (1499), ձեռամբ մեղապարտ անձին իմոյ Մխիթար
իրիցուս՝ ծառայս ծառայիցդ աստուծոյ։ Արդ, անկեալ աղաչեմ զձեզ իմ
472 բազում յանցանաց միանգամ թո//ղութիւն խնդրեցէք ձեր սուրբ բերա-
նովդ, աստուած զձեզ ի յիւր միւսանգամ գալուստն յիշէ, ամէն։ Մանա-
ւանդ աղաչեմ զձեզ, ո՜վ եղբարք, որք հանդիպիք սմայ կարդալով կամ
աւրինակելով, յիշեցէք յաղաւթս ձեր զընտացող գրոցս զԿովտնցի Ամիրն,
և զծնողս նորա, և զամենայն արեան մերձաւորս, և զկարդացողս, և
զլսողս, և զամէն ասացողս, ամէն։

Ցանկացաւ սուրբ գրոցս և ետ յիշատակ անջինջ իւր հոգոյն համար
ի գեղս ///

## 654
## ԱՒԵՏԱՐԱՆ

Երուսաղէմ 3380

Գրիչ՝ Գրիգոր

վայր՝ Եկեղեաց և Դարանաղեաց գաւառ

619 ... Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուաբերութեան ՋԽԸ. (1499),
ձեռամբ սուտանուն աբեղայի Գրիգորի, ի մէջ երկուց գաւառացս՝ Եկեղ-
եաց և Դարանաղեաց, առ զամբաբանի սրբոյն Գրիգորի Լուսաւորչիս, և

* Ձեռագիրը և հիշատակարանը խիստ քայքայված են։

սուրբ Փրկչիս, և սուրբ Աստուածածնիս, և սուրբ Կարապետիս, և Մանեայ կուսին սուրբ գերեզմանիս՝ ի լեառս Սեպուհոյ, ի յառաջնորդութեան
սուրբ ուխտիս տէր Յովհաննիսի, զոր տէր Յիսուս պահեսցէ զնա յերկար
ամաւք, ամէն։ Եւ արդ աղաչեմ զձեզ, ո՜վ մանկունք սուրբ եկեղեցոյ, որ
հանդիպիք այս սուրբ Աւետարանիս կարդալով կամ աւրինակելով, յիշե-
620 ցէք սրտի մտաւք յաղ//ւթս ձեր զԱւետիք վարդապետն՝ զուսուցիչն իմ.
և զիս զանարժան գրող զԳրիգոր աղաչեմ յիշել ի տէր, և դուք յիշեալ լի-
ցիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, և այլ աղաչեմ զձեզ խոշորութեան և
սղալանաց մի մեղադրէք, զի կար մեր այս է։

*Հայ հնագրության զարգացման արդի վիճակում հնարավոր չէ ձեռագիր տառաձևերի ուսումնասիրությամբ հաստատապես որոշել այս կամ այն հիշատակարանի գրանցման ստույգ տասնամյակը։ Շատ հնարավոր է ուստի, որ ԺԻ դարի անթվական հիշատակարանների հավելվածային այս բաժնում տեղ են գտել մի շարք հիշատակարաններ՝ ինչպես նախորդ՝ ԺԴ դարի վերջերից, այնպես էլ հաջորդ՝ ԺԶ դարի սկզբներից։*





### 655

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7700*

*Հիշատակագիր՝* Աբրահամ

141ա *Զվերջին ստացող սուրբ Աւետարանիս... տէր* Թորոս *քահանայի, և զկենակիցն* զՍառայն, *և զաստուածաբաշխ որդին* զՄեծատուր, *և զկողակիցն* զՆաղաշն, *և միւս որդին* Յովանէս *սարկաւագն, և զդուստրն* Զոհրիկ, *և* զՇնոֆորն, *և զդուստրն, որ փոխեցաւ առ աստուած* զՄեհրիկն, *և* զԽանիկն, *և զհարեղբաւրորդին* Աղուն *քահանայ, որդին* Մարտիրոս, *և եղբայրքն տէր* Թորոս *քահանային, որ աստի կենացս փոխեցան առ աստուած՝* զԱստուածատուրն, Մարտիրոս, *և* զԿիրակոսն, *և զհայր* Թորոս *քահանային* զՍտեփաննոսն, *և զկողակիցն* Մեհրիկն, *և այլ արեան մերձաւորքն՝ զկենդանիքն և զհանգուցեալքն ի Քրիստոս...*

*Գրեցաւ յիշատակարա[նս ի դառ]ն և դժար ժամանակիս մերոյ (*); *ի թվական /// յիշողացդ և յիշեցելոցս, ամէն։*

*Ես* Աբրահամ *մեղաւք տառապեալ ///*

### 656

### ՄԱՇՏՈՑ

*Յ. Քոսեան, Յուցակ Արծնեան վարժարանի, 37, ՀԱ, 1962, էջ 42—43*

*Ստացող՝* Ազատ

*Ողորմեայ ամենայն հաւատացեալ ննջեցելոց. եւս առաւել ա՛յո ննջեցելոցս, և ստացողի գրոցս* Ազատին, *և կողակցին* Նուբարին, *և իւր ծնաւղացն* Հարպետին, Մրուան, *ամէն։*

### 657

### ՄԱՇՏՈՑ

*Երևան 6394*

*Գրիչ՝* Ազարիայ

ա

178բ ԶԱզարիայ* *գրող սորին աղաչեմ յիշել ի տէր։*

---

* *Ամենայն հավանականությամբ Ազարիան միաժամանակ ձևագրի ծաղկողն է։ Ուշագրավ են 71բ (եկեղեցու կառուցում), 102բ (ձեռնադրություն) և 123ա (եպիսկոպոսի թաղում) էջերի ռեալիստական նկարները։*

Բ

8բ Ողորմի Քրիստոս աստուած ստացաւղի գրոցըս Ստեփաննոս վարդապետին, և ծնողաց նորին Ատոմին և Խութլու-Մելեքին. և եղբաւրն Դառնիշին, և ինձ մեղապարտ գրչիս։

Գ

44ա Եղբարք, անմեղադիր լերուք, քանզի օրինակս երկու է, հետ մէկ մէկի չերթայր։

Դ

101բ Ողորմի Քրիստոս... Ստեփանոս վարդապետին, և ծնողաց նորին՝ Ատոմին և Խութլու-Մելէքին, և եղբօրն Դառնիշին, և Յովանէս քահանային, և Նեկեղոսին, և քուերցն Խաքիրին, Խալին, և Նեֆղազին*, և ինձ մեղապարտ գծողիս, և իմ ծնողացն, և ձեզ լսողացդ, ամէն**։

## 658

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 9112

Նորոգող՝ Ազիզ-Մելիք

Աղաչեմք յիշել ի տէր սրտի մտաւք զվերստին նորոգօղ և զարդարող սորա՝ մարմնաւոր ընչիւք՝ զԱզիզ-Մելի//քն, որ ետ ի հալալ արդեանց դարծաթն վասն կօճակին, որ և զինքն զարդարեսցէ Քրիստոս և զննջեցեալքն իւր լուսեղէն սգեստին, ամէն...

## 659

### ԱՒԵՏԱՐԱՆ

Ե. Լալայեան, Ցուցակ Վասպուրականի, 220, սյուն. 535—536, Կտուց անապատ 232

Գրիչ՝ Ալէքսիանոս
վայր՝ Կարմիր վանք

Յիշատակ է սուրբ Աւետարանս Բասեցի Ալէքսիանոս աբեղիս, ի դուռըս սուրբ Կարապետիս, և սուրբ Աստուածածնին, և սուրբ Հրեշտակապետացն Գաբրիէլի և Միքայէլի, և այլ բազմահաւաք սրբոցս, որ աստ կան հաւաքեալ։

Ես՝ Ալէքսիանոս գրեցի զսուրբ Աւետարանս և եդի յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց՝ Մարտիրոսին և Եղիսաբեթին: Եւ ոչ ոք չունի իշխանութիւն ի վերայ Աւետարանիս, որ ծախէ կամ աւժտէ կամ գրաւական դնէ, և կամ այլ ինչ պատճառ որ լինի և թաղատայ (՞) հասանի Աւետարանիս։ Այն մարդն, որ խորէ ի կորստեան սորայ՝ թէ եպիսկոպոս է, թէ կաթո-

* 76բ էջի համանման բովանդակությամբ հիշատակագրության մեջ հիշվում են նաև ստացողի Մուղալ և Շամշիղամար անվամբ քույրերը։

** Վերջում, նույն ձեռագրով, ավելացված է՝ «Ոտղնին և զաւակաց նորին»։

դիկոս, թէ կրաւնաւոր, թէ երէց, թէ սարկաւագ, թէ աշխարհական լինի՝ բանադրած է, և զմասն Յուդայի առցէ և պատիժն Կայենին կրեսցէ և ընդ խաչհ[անո]ղացն դատեսցի և ընդ Արիոսի և ընդ Սաբէլի չարչարի ի ձեռն սատանայի։

Դարձեալ, եթէ ոք կտրէ զյիշատակարանս՝ կտրի իւր արքայութեան ճանապարհէն, աստուծոյ տեսոյն կարաւտ մնա։ Եթէ որ քերէ կամ սրբէ զյիշատակարանս՝ քերի և սրբի իւր ողորմութեան և վարձուց կտակն, ամէն։

Դարձեալ, աղաչեմ զձեզ, առաջնորդք և միաբան սուրբ ուխտիս Կարմիր վանիցս, որ խնամ ածէք սորա և լաւ բռնէք, կատարողք աղաչանաց մերոյ ալրհնեալ եղիցի[ն]։ Աղաչեմ զձեզ եղբարք, եթէ ի յարկածից չարին ելանէ Աւետարանս ի Կարմիր վանացս և երթայ ի յայլ տեղ, թէ ի մաւտու՝ դարձուցանէք ի վանքս։ Աստուածային աւրհնութեամբն աւրհնի բերաւղն ի վանքն։ Ջի Կարմիր վանէս ի վերայ ապառաժ քարի է. հողն կարմիր է. յարևելից կողմն Ագրակն է և Պաւղանն. յարևմըտից դեհն՝ սուրբ էճան. Հազարին և Աղկալն, հարաւային կողմն Զմր-կածագ քաղաքն, հիւսիսային կողմն Ակներն և Սեղրնկայ լեառն։ Ո՜վ դասք սրբազան քահանայից, յորժամ ընթ[ե]ռնուք զսուրբ Աւետարանս կամ ի վերայ հիւանդաց՝ յիշեսջիք առաջի աՀեղ և սոսկալի յատենին Քրիստոսի զԱռսէն քարտողն, որ մեղապարտ ձեռաւք հոլեցա ի սուրբ Աւետարանս։

## 660

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6803

Ստացող՝ Ամիր-Սարգիս

ա

...Արդ, ստացաւ զսուրբ Աւետարանս բարի և հաւատարիմ Ամիր-Սարգիս ի հա[լալ րնչ]ից իւրոց, յիշատա[կ իւր], և ծնաւղացն՝ հաւրն
256բ Աթանիսին և մ[աւրն /// իկին, և ամուսն /// որդոցն /// քահանային, աւագ որդոյն Թումին, Ըսպահանշին, Դաւթին, Աթանիսին, Վրթանիսին, Պետրոսին, և դստերացն Թռուանդին, Վառիկին, հարսներոյն՝ Ասիլին, Շահիսլումին, Մրվարին, թոռներոյն՝ Ըռստամին, Կավճարին, Ղանիասին, Խաթունճանին, Մելիքսեթին, Հակազին, Ղուկասին, Աղաբէկին, Սիմիկին, Կուլալամին, Խոնտիկին, Ինջուին և միւս ա/// նոյն Շահզատին, [և աս]ացէք լի բերանով զ[աստուած] ողորմին ով ոք հանդիպիք կարդալ կամ տեսանելով։

Ես Ամի[ր-Սարգ]իս լալագին աչօք և ողորմելի սրտիւ կու աղաչեմ զձեզ, որ եմ պարտական բազում մեղաց, յիշեցէք զվերոգրեալս և իմ մեղացն թողութիւն խնդրեցէք...

բ

1բ Զնկարող զՍահակ սուտանուն աբեղայ աղաչեմ յիշել ի սէր և աստուած զձեզ յիշէ, ամէն...

## 661

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4615

Ստացող՝ Ամիր-Սարգիս
վայր՝ Սիւնի՞ք

108բ Արդ, ես Ամիր-Սարգիս, որդի Միւրատին, թոռն Ամիրին՝ առի սուրբ Աւետարանս յիշատակ հոգոյ իմոյ, և ծնողաց իմոց՝ հաւրն իմ Մուրատին, և որդոյն իմ հանգուցեալ Յովանիսին, կողակցին Մարգարտին, դստերն իմ էքարին, որդին իւր Մարտիրոս, Հրնձրևվարդին, թոռն իմ Սեքն, եւ հանգուցեալ հաւրեղբայր իմ Ճանիկն, հանգուցեալ Ամիր-Եւատն, հանգուցեալ որդին իւր Ղարագուզն, և ծաղկեալ որդին Ղազարն, և դուստրն իմ Եղիսաբեթն, և կողակիցն Մատարն, եւ հօրեղբայրն իմ Ծատուրն, և կողակիցն պարոն Դինազանն, և դուստր Մահպույն, և որդին տէր Սարգիսն...

## 662

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6846

Գրիչ՝ Անանիա
վայր՝ Ագուլեաց վանք

ա

199ա Ձմեղսամած գրիչս Անանիա տառապեալ, հանդերձ ծնաւղաւք և ամենայն զարմաւք յիշեցէք ի բարի։

բ

257ա ...Արդ այսմ երանաւէտ ցնծութեամբ և անվաղճան և անզրաւական ուրախութեամբ ցանկացող եղեալ աստուածային պատուիրանիս քահանայ ումն կրաւնաւոր ճգնայտեսակ տէր Կոստանդ...

257բ ... Բայց գրեցաւ Աւետարանս աստուածային ի վանքս Ագուլեաց, ընդ հովանեաւ սուրբ Թումայի առաքելոյն։

## 663

### ՏՕՆԱԿԱՆ

Երևան 4853

Գրիչ՝ Անտոն

ա

276բ Քրիստոս աստուած, յորժամ նորոգես զարարածս քո յաւուր ութեօրորդին՝ նորոգեա զբազմամեղ անձն գծողի սուրբ մատենիս, և զնախնեաց մերոց՝ զհաւրն իմոյ Աստուածատրի, և մաւրն Շնոֆոր տիկնայ, և զզաւակաց մերոց՝ զՄաղաքիա լուսազարդ մանուկն և զՍահակ եղբայր նորին՝ զհրաշալի գրագիրքն և ծաղկաւղք սուրբ մատենից աստուծոյ, նաև զայլ եղբարս նոցին՝ զՅակովբ շնորհալին, և զՄելքիսեդեկ պատա-

նին, և ղմայր սոցին՝ զԹագուհին, և զշնորհաւղ աւրհնակիս զՅովաննէս աբեղայն, և ղեղբայր նորին ղՅովաննէս աբեղայն յիշեսջիք ի սուրբ աղաւթս ձեր...

Բ

318ա ... Յիշեա ղբազմամեղ անձն՝ զգրիչ սորա Անտոն և զծնաւղս և զզաւակք սորա յարքայութեան քում ... Նաև զխաչատուր յատարն, և զաւրինակիս շնորհաւղն ղՅովաննէս աբեղայն, և զեղբայր նորա, և թողութիւն շնորհեա, և քեզ փառք, ամէն։

Գ

397ա ... Ողորմեա գծողի մատենիս Անտովնի, և ղաւակաց շնորհազարդից Մաղաքիա սարկաւագի և Սահակ դպրի՝ փոխեցելոցն յաստեացս, և սպասկեա ընոսա տէր ընդ արդարս քո, և ղեղբարս սոցին, որ աստ կան իմաստնացո վնրին իմաստութեամբդ, և ղամենեսեան ղմեզ արժանացո քո արքայութեանդ, տէ՛ր։ Նաև զշնորհաւղ աւրինակիս ղՅովաննէս աբեղայ, և ղեղբայր նորին ղառաքինի ճգնաւոր ղՅովճաննէս, և զծնաւղս սոցին արժանացո տէր արքայութեանդ երկնից, և կարդացողաց և լսողաց ողորմեա տէր, և քեզ փառք յաւիտեան։

## 664
## ԱՒԵՏԱՐԱՆ
Երևան 331

Գրիչ՝ Աստուածատուր
վայր՝ Եղեգեաց գաւառ

ա

242ա ... Շնորհիւ ամենակալին աստուծոյ և ողորմութեամբ նորին և գործակցութեամբ հոգոյն յանդ ելեալ աւարտեցաւ սուրբ Աւետարանս ի յանապատիս Եղեգեաց, ձեռամբ Աստուածատուր անարժան ծառայ///

Արդ, ցանկ[ացող եղ]եալ այս սուրբ Ա[ւետարան]իս բարեմիտ և սրբասէր կին [ո՞մն] Գոհար՝ յիշա[տակ] իւր հոգոյն և ծ[նաւղաց]*:

242բ Եւ ստացեալ զսայ ի հալալ ընչից իւրոց զլուսաւոր և մաքրափայլ Աւետարանս բժիշկ հոգոյ իւրոյ՝ կցորդ, յոյս և ապաւէն առ Քրիստոս, և ճար ճանապարհին վերջին, և բանալի դրանն արքայութեան, և գանձ յերկինս անկողոպտելի, և առ [սա՞] միջնորդ և բարէխաւս իւրն, և իւր ծնաւղացն Իւանէի [և Փա]շայ-խաթունին, [որ փո]խեցան առ Քրիստոս ///, և որդոցն և դստերացն, նաև Գալըստին. և ամուսնոյն իւրոյ Շաճմուլքին: Այլ և Ղազիկ և ամուսինն իւր զԹաւրվանդէն, այլ և զԳրիգորն, նաւ և ղդստերքն իւր Ուստիանէն և Ուլուղանն:

Բ

72բ ՋՍահակ Նկարող սուրբ Աւետարանիս և զվարդպետն իմ զԱբրահամ վարդապետն Լաւշենց յիշեցէք ի Քրիստոս, ո՞վ սուրբ ընթերձողք աղա-

* Ստացողի և նրա ազգականների անվանց հիշատակությամբ տողերը գրված են այլ ձեռագրով (կամ գուցե նույն ձեռագրով, բայց այլ գրչով)։

չեմք զձեզ, և աստուած զձեզ յիշէ իւր միւսանգամ գալըստեան, ամէն. Թողութիւն արարէք, աղաչեմ լալով հանդիպողքդ։

## 665

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Վիեննա 213, Յ. Տաշեան, Ցուցակ, էջ 543—544

Գրիչ՝ Աստուածատուր

ա

48ա ... Յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զԱստուածատուր գրիչս և զհայրն իմ ղտէր Սարգիսն: Մանաւանդ զսրբազնամաքուրն զԱզարիայ վարդապետն, և զծնօղն իւր զՊօղոս, և զմայրն իւր զՈւղլանփաշայն. և զամենայն արեան մերձաւորսն։

բ

137բ Ողորմեա Քրիստոս աստուած ստացողի գրոցս Ազարիայ վարդապետին, և ծնօղաց նորին Պօղոսին, և մօրն Ուղլանփաշին, և եղբարցն Աղուպշին, Փաշին, Վալիջանին, Անանիային, և Աստուածատուր գրչին։

## 666

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6795

Հետ. ստացող՝ Աստուածատուր

133բ ... Դարձեալ յիշեցէք // ի Քրիստոս զվերջի ստացող սուրբ Աւետարանիս զպարոն Աստուածատուրն և աստուած-ողորմի ասացէք իւր հոգւոյն, և իւր ծնաւղացն, և իւր կենակցին և բարի և շինարար տիկնոջ՝ Ղփչախ-խաթունին, և իրեանց զաւակացն խաբիպշին, Դոլաթիարին. և շնորհալի սարկաւագն իւր հայր Յուսէփին, և Խումարին, և Ստեփանոս սարկաւագին՝ իւր փեսային, և այլ ամենայն արեան մերձաւորացն իւրոց։ Ողորմի Քրիստոս և որդոցն, որ տարաժամ մահուամբ փոխեցան յաշխարհէս և խառնեցան ի գունդ զւարթնոց և յերամս արդարոց, ամէն։

Եւ զթոռնիկն իւր՝ զՋաֆարայն աստուած յերկար ամօք պահէ, ամէն։ Բ. (2) Աւետարանս ի ձեռն Ստեփանոսին, մարգկան և Աստուծոյ վկայութեամբն, ոչ ոք չունի իշխանութիւն, զատ Ստեփ[անոսէ]///

## 667

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6498

Գրիչ՝ Աստուածատուր

35բ Ջտառապեալ գծողս զԱստուածատուր անիմաստ յիշեցէք ի տէր։

## 668

## ՃԱՌԸՆՏԻՐ

*Երևան 3782*

*Նորոգող*՝ Աստուածատուր Թէոթոյպալի

246բ *Ո՜վ մանկունք սուրբ եկեղեցո, յորժամ ընթեռնուք զՏաւնականս ի մաքրափայլ յաղաւթս ձեր յիշեցէք զտէր* Աստուածատուրս Թէոթոյպալի, *որ զգիրքս նորոգեցի, կարկատեցի և կազմեցի, ընդ նմին և զնախնիսն մեր զտէր* Գրիգ[որ /// Թա՞ն]կ-Խաթուն, *և զեղբար իմ զ*Քէմիլն ///

## 669

## ԱԻԵՏԱՐԱՆ

*Երևան 309*

*Գրիչ*՝ Աստուածատուր Պալախաւրցի
*վայր*՝ Արարատեան գաւառ

63բ Աստուածատուր Պալախաւրցիս
*Եւ անարժան բռնաւղ գրչիս,*
*Մեղաւք լիի ողորմելիս,*
*Եւ թողութիւն խնդրեմ անձինս,*
*Ո՜վ հանդիպաւղք Աւետարանիս.*
*Աղաչեցէք զտէր ծառայիս*
*Այս սուտանուն սարկաւագիս*
*Եկեալ գաւառն* Այրարատիս*:

## 670

## ԱԻԵՏԱՐԱՆ

*Երևան 5057*

*Գրիչ*՝ Ատոմ

292բ *... Որոյ յանկացող եղեալ սուրբ Աւետարանիս սրբասէր հայրն մեր մահգասի Մկրտիչ, և ջանաց ստանալ զանաոիկ մեծութիւնս և բզգանձս անկողոպտելի, յիշատակ բարի և բարէխաւս առ Քրիստոս վասն Մկրտիչ մահդասուն ///*

*Ես՝ անպիտանս յամենայնի մեղուցեալ գրիչս* Ատոմ *տեսի դեռափափագ սէր և զջան հոգևոր հօրս մերոյ Մըկըրտիչ մահդասուն ///***

---

* *Ձեռագիրը ԺԵ դարի վերջում, կամ, ավելի հավանական է, ԺԶ դարում, ինչ-ինչ պատճառներով խիստ տուժել է, շատ թերթեր ոչնչացել են ու վնասվել։ Վերջում պահպանված հիշատակագրությունից պարզվում է, որ ձեռագրի պակաս մասերը լրացրել, նորոգել և կազմել է ոմն Մկրտիչ աբեղա։ Նա գրում է «Արդ, ես՝ վերջին կապաւղ սուրբ Աւետարանիս Մըկըրտիչ սուտանուն աբեղաս. յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց՝ հաւրն իմոյ Մկրտիչ քահանային և մաւրն իմոյ* Ազիզ-Մնլիքին...» *(էջ 229բ)։*

** *Թերթեր են ընկած։*

## 671

### ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

*Երևան 2625*

*Գրիչ՝* Ատոմ

ա

159ա *Քրիստոս աստուած քո սուրբ ծնողի բարեխօսութեամբդ և ամենայն սրբոց ողորմեա ստացողի սուրբ գրոցս* Աբրահամ *վարդապետի և ծնողաց իւրոց, և ինձ մեղուցեալ սուտ գրչիս* Ատոմի *և իմ[ո՜ցն]։*

բ

292ա *Աւա՜ղ, կուռնս կու ցաւի։*

գ

351բ *Կատարեցաւ Գիրք դժոխոցն ձեռամբ մեղապարտ գրչի* Ատոմի, *յիշեցէք յաղօթս ձեր և զՄեսանէս, որ բազում աշխատեցաւ ի տուն տալն էս գրտովս։*

## 672

### ԳՐՈՒԹԻՒՆՔ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՅԳԵԿՑՒՈՅ

*Երևան 6800*

*Գրիչ՝* Արիստակէս

ա

222բ Յիշատակարան սուրբ գրոցս.

*Փառք ամենասուրբ երրորդութեանն՝ Հաւր և որդոյ և Հոգոյն սրբոյ յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

*Եւ արդ, սկսայ զՀոգէկեցոյց և զխրատական բանքս ես՝ յիմարքս և տարտամս՝ մեղաւոր գծողս, և ողորմութեամբ տեառն կատարեցի զբանս սուրբ վարդապետին* Վարդանայ, *որ է վասն Ը. (8) ազգ գլխօոր մեղացն*, և վասն պատկերակցութեան մարդոյս**, և վասն Զ. (6) մարդիկք առ աստուած***, և այլ խրատական առակս ԺԷ. (17)****, և դաւանումն ամենասուրբ երրորդութեան*****։ Եւ այլ խրատս վասն քրիստոնէից, զոր*

* *Խոսքը Վարդան Այգեկցու հետևյալ ութ ճառերի մասին է. 1. Վասն հպարտութեանն (սկ. էջ 84ա), 2. Վասն ոխակալութեան (էջ 90բ), 3. Վասն լեզուանութեանն (էջ 96բ), 4. Վասն որովայնամոլութեան (էջ 103բ), 5. Վասն զրկանաց (էջ 111ա), 6. Վասն շնութեան (էջ 124բ), 7. Վասն կախարդութեան (էջ 133ա), 8. Վասն անզղջութեան և շնորհի զղջմանն (141բ—154ա)։*

** *Ակնարկվող աշխատությունը ձեռագրում կրում է հետևյալ խորագիրը. «Հարցումն տեառն Միքայէլի Անտիոքա եպիսկոպոսին, թէ որպիսի աւրինակաւ է մարդս պատկեր աստուծոյ, եւ պատասխանի Վարդանայ վարդապետի Այգեկցոյն» (154բ—169ա)։*

*** *Խորագիրն է «Ճառ վասն Զ. (6) աստիճանաց որով ելանեն մարդիք առ աստուած ի ձեռն բարի գործոց» (169ա—183ա)։*

**** *17 առակները (տե՛ս* Н. Марр, Сборники притч Вардана. ч. III стр. 83—93) *մեծ կարևորություն ունեն Վարդան Այգեկցու իսկ կողմից հորինված առակները միջնադարյան առակագրքերից զատելու համար։*

***** *«Խոստովանութիւն սուրբ երրորդութեանն եւ միոյ աստուածութեանն» (209բ—215բ)։ Շարունակությամբ ընդօրինակված է նույն Վարդան Այգեկցու «Վասն անքուն որդանցն» աշխատությունը (215բ—222ա), որի մասին գրիչը լռում է։*

արարեալ է սուրբ և երանաշնորհ վարդապետն Յոհանէս Երզնկացին* ի կրոնական սահմանեաց առաքել[ոց ///

Բ

222բ Քրիստոս աստուած ողորմեայ յայն սուկալի յաւուրն ստացողի գրոցս Գաբրիէլ եպիսկոպոսին, և որդոյ նորա Անդրիասին, և հաւր Գրիգորին, և մաւրն Տիրուհէ, և հանգուցեալ եղբարցն Յովանիսին և Յակոբին, և մեղաւոր գծողիս Արիստակէս Երէցուս, և հաւրն իմոյ Թորոս քահանային, և մաւրն իմոյ Շնվորին**:

## 673

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 4630

Գրիչ՝ Ավետիս

ա

24ա ... Ողորմեայ զմեղաւք մեռեալ յԱւետիս սուտանուն գրչիս, Եւս առաւել ծնաւղսն իմ և յամենայն յարեամբ մերձաւորացն իմոց։ Եւս առաւել ստացողի գրոցս, կարդացողաց և լսողաց։

Բ

15ա ... Եւս առաւել զմեղապարտ գրիչս, և զծնաւղսն իմ, և զեղբայրսն իմ՝ կենդանացն և մեռելոցն, և մայրն իմոյ Մարգարտին, Եւս առաւել ստացողի գրոցս մասն բարեացն պարգևեսցէ, արքաութիւն աստուծոյ արժանի արասցէ իւր աստուածային տեսլեանն, և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։

## 674

## ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑ

Երևան 5440

Գրիչ՝ Աւետիս

ա

183 Զստացող սորին զՅովանէս կրօնաւորն յիշեցէք ի Քրիստոս և աստուած ողորմի ասացէք նմա, և ինձ՝ ամենամեղ չարագործ Աւտսի:

Բ

233բ Զստացօղ սուրբ տառիս զՅովանէս Հերպետն յիշեցէք ի Քրիստոս, որ մականուն Զաղար կոչի։

* Յովհ. Երզնկացու «Խրատ հասարակաց քրիստոնէից» աշխատությունն ընդօրինակված է ձեռագրի սկզբում։

** Համանման բովանդակությամբ հիշատակագրություններ կան ձեռագրի ջատ էջերում (124ա, 141բ, 183ա և այլն և այլն), որոնք բոլորն էլ ջնջված են (բայց ոչ անընթեռնելի) ձեռագրի հետագա ստացող Սարգիս քահանայի կողմից։

գ

105ա *Լսեր եմ՝ աչից երակն ի սրտի մէջն կու լինի. երբ սիրտն մաժղուլ լինի՝ աչք լոյ[սն] պակաս կու տեսնի։ Սրտի տարեկուսանացս, ա՜հ, զա-մէն ղալատ գրեցի։*

դ

*Աւա՜ղ, որ զթուխտն զամէն չի երկուտկեցի, որպէս զայս Բ. (2) թուխթս* որ լաւ լինէր։ Վա՜յ ինձ հազար բերան։*

## 675

## ՎԱՐՔ ՀԱՐԱՆՑ

**Երևան 787**

Գրիչ՝ Աւետի՞ս

ա

267ա *ՈՀ, աղաչեմ զմեղապարտ գրիչս յիշել ի տէր։*
*ԶԱւետիս յիշ[եա]***։*

բ

23բ *Աւաղ զգեղեցիկ վարս սոցա, ու ես ունայն ի բարեաց։*

գ

247բ *Աւաղ անիծած քունս, թէ քանի նեղ կու առնէ, որ կու մոլորինք ի գրելս։*

դ

282բ *||| աղաչեմ համառաւտիս անմեղադիր լերուք, թուղթս սակաւ էր և բա |||****

ե

348բ *Տէր աստուած, ողորմեա Գրիգոր փիլիսոփային՝ իմ վարդապետին...*

## 676

## ՌՍԿԵՓՈՐԻԿ

**Վենետիկ 254, Բ. Սարգիսեան, Ցուցակ, էջ 756**

Գրիչ՝ Աւետիս

159բ *Զապիկար և զանարժան գրիչս [Աւետիս միակեցս] յաղաւթս ձեր յիշեսջիք, ո՞վ դասք լուսերամից, և տխմարութեանս մի մեղադրէք, զի*

* Գրված է 116 (բ) և 117 (ա) թերթերի ներքին լուսանցքում։ Այդ թերթերը, իրոք, կազմըված են խնամքով միմյանց փակցված երկու սովորական թերթերից, ուստի և ավելի հաստ ու դիմացկուն են։ Գրիչը ցավ է հայտնում այն մասին, որ ոչ բոլոր թերթերն են դրանց նման։

** Այս տողը գրված է ստորին լուսանցքի վրա։ Թերևս այս Ավետիսը հենց ձեռագրի գրիչը լինի։

*** Գրված է ստորին լուսանցքի վրա, որը կազմելու ժամանակ կտրել են, կտրվել է նաև հիշատակագրության մի մասը։

փափագ ունէի և գրամ ոչ. և ես աղերսելով յեղբարցն զԹուխտն և զԹանաքն, զգրիչն և զայլն, որ այգչափ եղև։

## 677

## ԱՒԵՏԱՐԱՆ

Յ. Քոսեան, Ցուցակ Արձնեան վարժարանի 23,
ՀԱ, 1961, սյուն. 323—324

Գրիչ՝ Աւետիք

ա

106բ Զառաժեալ մեղաւք զԱւետիք գրիչս եւ զստացողս սորա յիշել ի տէր աղաչեմ։

բ

336բ Ո՜վ սուրբ ընթերցողք, յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր զմաքուր և սուրբ կրաւնաւորքն՝ զտէր Խաչատուրն և զտէր Յուսիկն, որ ի Թղթի կոկելն աշխատել են. արարիչն աստուած իւրեանց աւգնական լինի, ամէնւ

## 678

## ԱՒԵՏԱՐԱՆ

Մ. ԱԹոռ 21, «Էջմիածին», 1950, IX—X, էջ 84

Գրիչ՝ Բասիլ

ա

69բ Զսուտանուն գծողիկս յիշել աղաչեմ ի մեղաց Թողութիւն յաւուր սոսկալի յարութեան Փրկչին մերոյ, զի Թերևս գտայցեմ ///

բ

113բ ԶԹարմատար և զկարեվէր, փանաք և սուտանուն գծողիկս Բասիլ յիշել աղաչեմ ի մեղաց Թողութիւն առաջի ղենլոյն և միշտ կենդանոյն և յուսոյն իմոյ Քրիստոսի, ո՜վ սրբասէր մանկունք նաղելի մաւրն մերոյ Սիովնի, և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոս։

## 679

## ՃԱՌԸՆՏԻՐ

Երևան 4929

Գրիչ՝ Բարսեղ

ա

71բ Ողորմեա... ստացողաց սուրբ գրոցս բարեպաշտ և աստուածասէր տանուտրոջն Բէրամին, և որդւոցն Նեկիբէկին, և կողակցին Խոնդքար-խաթունին, և Կարապետին, և Միրիջանին, և Խոջաջանին, և քեւերց Նու-

պար-Փաշին, և զՍաքախ-Մէլիքն, և հարազատ քեռիքն զԽալիֆին. և որդւոցն Այտողմիշին, և Գաւզալղաւշին, և զհոգևոր մայրն իւրեանց զՇարմէլէքին, որ բազում աշխատեցաւ, և ինձ՝ մեղապարտ գրչիս Բարսեղ սարկաւագիս։

Բ

86բ ... Եւս առաւել զստացողաց սուրբ գրոցս Կարապետին, և կենակցին Մարգարիտ-Խաթունին, և որդոցն Եսկիբէկին, և Կարապետին, և Միրիջանին, և Խոջաջանին, և մայրն իւրեանց զԽալխաթուն. և հոգևոր մայր Շարմէլէքին, և Բարսեղ գրչիս*։

## 680

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ

Երևան 1562

Հիշ. ստացող՝ Բարիֆ

3ա Կամաւն ամենակալին Աստուծոյ և ողորմութեամբ նորին, ես՝ Բարուոֆ միայնեցս, ստացայ զգանձս աստուածային՝ զգիրքս ցանկալի, ի վայելումն անձին իմոյ, և յիշատակ հոգոյ իմոյ, և ծնողաց իմոց՝ Թումայի և Փոխր-Տիկնայ. և գնացելոյն ի Քրիստոս իմ հարազատացն՝ եղբօրն Սանիէլ աբեղային, և քուրոջ Խութլու-Խաթունին: Աղաչեմ զձեզ որք պատահէք սմա տեսութեամբ և կամ աւգտութեամբ ինչ իւիք, յիշեցէք զմեզ ի միտս բարիս և ի պատկանաւոր խնդրուածս, մանաւանդ զդեռաբոյս պատանին զՑոլվանէս, որ է աբեղանառու յետ ///** Բարիոֆին և ժառանգ գրոցս, որոյ տէր աստուած վայելել տացէ ընդ երկայն աւուրս, ամէն և եղիցի։

## 681

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Երևան 9388

Գրիչ՝ Գալուստ

2բ ... Ողորմի Քրիստոս աստուած ստացողի գրոցս խոճայ Աղուպին, և եղբարցն Ախիճանին և Առաֆելին, և հօրն Ուսուփին, և մօրն Թանին, և այլոցն, որ աւգնական եղեն ի գին գրոցս՝ տէր Մկրտչին, և Ցուանկշին. Բ. (2) Գրիգորին, և Մանկասարին, Այուատին, և Պետրոսին, և Ճանիպէկին, և մեղսամած գրչի Գալստի, [և ծնօղաց իմոց Ջօրվար քահանային և Թանսուխին]***:

* Նման և ավելի համառոտ հիշատակագրություններ կան նաև ձեռագրի այլ էջերում։
** Մի բառ անընթեռնելի է։
*** Գրչի ծնողների մասին հատվածը լրացնում ենք 12ա էջի հիշատակագրությունից։

## 682

### ԿԱՆՈՆՔ ԵՒ ԽՐԱՏՔ

Երևան 625

Գրիչ՝ Գրիգոր

ա

Ո՜վ մանկունք սուրբ եկեղեցոյ և դասք լուսերամից որք հանդիպիք
64բ այս ղուարթածաղիկ բանքրոյս, որք ակնարկէք և հոտոտիք՝ թողլութիւն
խնդրեցէք ի մարդասիրէն աստուծոյ մեղուցեալ, անարժան և կոխումն
ոտից ամենայնի Գրիգոր կրանաւորիս, ծնաւղաց իմոց՝ հօրն իմոյ Գրի-
գորիսին, և մաւրն իմոյ Կուլվարդին, և ամենայն արեան մերձաւորացս...

բ

120 Փրկեսցէ զմեզ Քրիստոս աստուած յայնպիսի անքօելի մեղացն, ևս
առօել զստացօղ գրոցս զՅակոբ եպիսկոպոսն, և զԳրիգոր կրանօորս, և
զծնօղացն մերոց, ամէն։

## 683

### ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

Երևան 4639

Գրիչ՝ Գրիգոր

536ա ... Որք ճաշակէք աստուածային բուրաստանէս ընթերցմամբ կամ
ածանցմամբ՝ յիշեցէք զստացօղ սուրբ գրոցս՝ զհեզահոգի և զառաքելա-
շնորհ զԴաւիթ վարդապետն Ջուղայեցի, որ բազում աշխատանօք և ջանիւ
ստացաւ զսա ի յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնօղացն՝ Նաւէ և Մէրիկին, և
եղբարցն Մարգարեանցն, և քեռն Եղիսաբեթին, և ամենայն արեանառու-
թն... Ընդ նոսին և զանյիշելի Գրիգոր գրիչս յիշեսջիք և դուք յիշեալ լիջիք
ի Քրիստոսէ։

## 684

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑՒՈՅ

Երևան 1186

Գրիչ՝ Գրիգոր

ա

34բ Զանպիտան և զամենամեղ գրիչս զԳրիգոր և զծնողսն իմ յիշեցէք...

բ

41ա Ստացաւղ սորա զԳրիգոր և զՎաճական և զծնաւղսն իւր յիշեցէք ի
Քրիստոս, և զպատանեակ զաշակերտն իմ զԳրիգոր բարիբարւոյ յիշեցէք
ի Քրիստոս...*

* Ձեռագրի 40բ, 91բ, 105բ, 116բ, և 180ա էջերի լուսանցքներում կան ուշագրավ գրչանկարներ։ 116բ էջի լուսանցանկարի վրա պատկերված է Քրիստոսը՝ կանգնած, և ձեռագրի ստա-

## 685

### ՏՕՆԱԿԱՆ

*Երևան, պատառիկ 829*

*Ստացող՝* Գրիգոր Քարագոմեբեցի

*Ես՝* Գրիգոր *երէցս* Քարագոմեբեցի *ըստացայ զՏաւնականս յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց՝ հաւրն իմ* Փառուխին *և մաւրն իմ* Բաղտատին. *և եղբաւրն իմ* Աստուածատուրին, *և կողակցին իմ* Կուլամին, *և որդոց իմ՝* Մէլքիսէդին, *և* Ազարիային, Անանիային, Մուսաին, Իսրայէլին, Տէրտէրին, *և դստերն իմ* Խոստրովայթղթին, *և ամենայն արեան մերձաւորայց իմոց...*

## 686

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4202*

*Գրիչ՝* Գրիգոր

216ա *Ձերիցս երանեալ և զարժանապատիւ զսրբասէր զՅովանէս սրբակրաւն աբեղայ՝ ստացաւղ սուրբ Աւետարանիս, հանդերձ ծնաւղաւքն և ամենայն արեան մերձաւորաւք, և զիմ անարժանութիւնս՝* Գրիգորի *գծողի սորա յիշեցէք ի Քրիստոս։*

## 687

### ԱՒԾՏԱՐԱՆ

*Երևան 6507*

*Գրիչ՝* Գրիգոր

97ա *Ո՜վ սուրբ աւետարանիչ և առաքեալ Քրիստոսի, աղաչեայ զառաքողն զքեզ յաշխարհ թողութիւն շնորհել բազմամեղ և անարժան ծառայիս* Գրիգորի *և ծնողաց իմոց և որ զամէնն ասեն, ամէն։*

## 688

### ՃԱՌԸՆՏԻՐ

*Երևան 4733*

*Գրիչ՝* Դաւիթ

Ա

67ա *Տէր Յիսուս, բարեխաւսութեամբ սրբոց առաքելոցն ողորմեա ստացողի սուրբ գրոցս հաւատարիմ կնոջն* Փաշայբէկուն, *և ծնաւղացն՝ հաւրն* Ասլանին *և մաւրն* Նիգարին, *որդոցն* Յակոբին, Յովանիսին. *և դստերն* Մարգարտին, *և այրոջն* Մարտիրոսին, *և Նախնեացն ամենայնի, և* Դաւիթ

---

*ցողը՝ ծնկի չոքած Քրիստոսի ոտքերի մոտ։ Քրիստոսի գլխից վերև գրված է «Վրացի է օրինակ պատկերիս Յիսուսիս»։ Այսինքն, գրիչն ընդօրինակել է այդ պատկերը վրացական մի ձեռագրից։*

բազմամեղ գծողիս, կարդացողացդ և լսողացդ և աստուած-ողորմի ասացողացդ, ամէն։

Բ

51ա … Որոց բարեխաւսութեամբ և աղաւթիւք ողորմութիւն և մեղաց թողութիւն շնորհեսցէ Քրիստոս աստուած ստացողի սուրբ գրոցս խաթուն Փաշաբէկուն, և ծնաւղաց նորին՝ պարոն Ասլանին և Նիգար-խաթունին, և եղբաւրն պարոն Ամիրին, և Ղուբաթին, [ որ տարաժամ մահուամբ փոխեցաւ առ Քրիստոս*], և դստերն Մարգարտին, և որդոցն Յակոբուն և Յովանիսին:

Գ

Քրիստոս աստուած, քո անճառ մարդասիրութեամբդ ողորմեա ամե-
75բ նայն հաւատացեալ քրիստոնէից, ևս առաւել ստացողի սուրբ գր//ոցս տէր Կարապետ սրբասէր քահանային, և ծնաւղաց նորին՝ հաւրն Կարապետին**, և մաւրն Աննային, և կողակցուն Գուլաղին, դստերն Խաթունաղին, և եղբաւրն Վարդանիսին, և հաւրեղբարցն Յովսէփին, որդոյն Ստեփանոսին, Գրիգորին, Գուռճիբէկին, տէր Յովանիսին, Բարսեղին, Սիրունին, և ազգա[ յ ]նոցն ամենայնի, կարդացողացն և լսողացն***։

## 689

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Երևան 4561

Գրիչ՝ Դաւիթ

78բ … Ողորմեա Քրիստոս աստուած ստացողի սուրբ գրոցս մահդասի սրբասէր տէր Ատոմ քահանային, և ծնաւղաց նորին՝ ուսթայ Փաղշանին և Շաքար-խաթունին, և եղբարցն նորին՝ Աւետիսին, Խըլղաթին, Մուրադին, Յովանէսին, Կարապետին, և կողակցուն Նազաճիփաշին, և քուերն Գուլունփաշին, և ինձ՝ Դաւիթ մեղսաթաւալ գծողիս և իմ ծնաւղացն՝ Մըկրտչին, Էթարփաշին, և գրոցս լաւ պահողաց, եկեղեցի շինողացն, և ժամատուն շէն պահողացն, և ամենայն հայկազան ազգիս՝ մեծի և փոքու, ամէն****։

---

* Ղուրաթի մահվան մասին ավյալը մեջ ենք բերում 271ա էջի հիշատակագրությունից։

** Այլ էջերի հիշատակագրություններում ստացողի հայր Կարապետը հիշատակված է որպես «պարոն Կարապետ» (տե՛ս էջ 34բ)։

*** Նման հիշատակագրություններ (կամ ստացող Կարապետի անունից, կամ մյուս ստացող Փաշաբեկի անունից) կան բոլոր ճառերից հետո, բայց ըստ բովանդակության մյուսներն ավելի աղքատ են կամ մեր բերածի սոսկ կրկնությունն են։

**** Նման և ավելի համառոտ հիշատակագրություններ կան ձեռագրի բազմաթիվ էջերում, գրեթե բոլոր վարքերից հետո։ Դրանցից մի մասի վրա ԺԸ. դարի ստացող Աքուլեցի Թումանը թուղթ է փակցրել ու գրել իր անունը։

## 690

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Երևան 4569

Գրիչ՝ Դաւիթ

14բ … Ողորմեա ստացողի գրոցս պարոն Աղբուղին, Ջեանշին. և Դուլամին, Շանշին, և Ամիր-Հէճուպին, և ամենայն արեանառու մերձաւորացն, և Դաւիթ գրչի, կարդացողացն և լսողաց, և քեզ փառք*։

## 691

### ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Վենետիկ 9 (1270), Բ. Սարգիսեան Ցուցակ. Ա. 100

Գրիչ՝ Եզեկիէլ

ա

105ա Զմեղապարտ գրիչ Եզեկիէլ սարկաւագ բարի մտօք յիշել ի տէր՝ յերեսս անկեալ աղաչեմ զընթերցողդ։

բ

190բ Մեծ դիտապետն սրբազան
Եւ քաւչապետն արհիական,
Որ զօրինակս ետ մեզ ի բան,
Քրիստոս պահէ զինքն անսասան,
Հանդերձ իւրովք միաբան,
Այժմ և յաւէտ և յապագայն։
Նա և գրիչս տրէք արժան
Բարի կամօք ի տէր յիշման։

## 692

### ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 4854

Գրիչ՝ Եղիա

ա

78ա Զցնծայքդ** ասա լաւ և զմեղօք մեռեալսն առ տէրն յիշեալ, զի թուղթս այսօր շատ եկօ ի մօտս։

բ

103բ Աւա՜ղ, ափսոս զմեր դատաւորն, որ մեռօ.կալի կարկտի կրկին բռահմաթն իւրն։

---

* Համանման բովանդակությամբ հիշատակագրություններ կան բոլոր վարքերից հետո։

** Խոսքը «Տաղ Յարութեան»-ի մասին է, որ ընդօրինակված է այս էջի վրա և ունի «Ցընծան այսաւր երկինք…» սկզբնավորությունը։

Գ

147ա Զմըղդըսի Սալբանշէն յիշեցէք ի Քրիստոս, որ դշիքիրոնս շալկով եբեր ի Մեծոփայ վանիցն այսօր։

Դ

287բ-- Սուրբ Յովաննէս և սուրբ Լուսաւորիչ, փառաց մերոց արէք կցորդ
288ա զՅովանէս Նոր մուղդսին, որ զմնացեալ թուղթն կոկեց, և զնդիա գրիչս ընդ սայ։

Ե

327բ Վա՜յ զեղկելիս։ Տէր Յովանէս, ոչ շամիչ կու յոգրկես՝ որ ուտեմ, և ոչ թուղթ՝ որ գրեմ։ Ողջ լեր ի տէր, պատ կու շարեմ*։

## 693

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ՄԱԹԷՈՍԻ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

Նխվկայ 90, ՍՏԱ

Վաճառող՝ Նդիա

ա

268ա Ո՞վ սրբազանդ բաբունի,
Որք հանդիպիք այսմ մարգարտի,
Զեզ աղաչեմ աղերսալի
Եւ պաղատիմ արտասուալի,
Զնդիայ մեղօք ելի
Յիշել յաղօթս ձեր բարի։

բ

268բ Ես նուաստս յամենայնի Նդիա վարդապետս վասն մեր եղբաւր աղաշանացս՝ Մաթէոս գրոց աշակերտիս, որ եկն առ մեզ փափաքմամբ վասն Աւետարանի քաղուածոյս, և մեք այլ զսորա խնդրուածքն կատարեցաք ու տվաք զգիրքս ի չորս հարիւր վաթսուն դկ. (դահեկան) ու զայլ բաղին։ Ով որ կարդա՝ մեղ այլ մասն և մեր ծնողացն։ Եւ որ կարդէք կամ աւրինակէք՝ զտէր Մաթէոսին և զմեր ծնողին յիշեցէք յաղաւթս ձեր վասն սիրոյն Քրիստոսի. և աստուած զձեր մեղքն թողու։

## 694

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4023

Հետ. ստացող՝ Ըսքանդար

631 ... Արդ, ես Ըսքանդարս՝ որդի խոճա Ղարիպշին, զբարին մտաւ ածի և յիշեցի զայն, որ սաէ թէ Երանի որ ունիցի զաւակ ի Սիովն և ընդունա՛կ

* Բոլոր հիշատակագրությունները գրված են նշված էջերի լուսանցքներում։

յԵրուսաղէմ, և ետու կապել զկենսունակ սուրբ Աւետարանս յիշատակ ինձ
632 և ծնողաց /// ի սուրբ Աստուածածնիս դուռն. Աստուած գրէ զինքեանք
ի դպրութիւն կենաց սուրբ Աւետարանս, որքէ ի մեղաց և կարգէ ի դասս
հրեշտակաց...

Արդ, որչափ Աստուածածին շէն կենա և եկեղեցին ի պատարագի՝ մի՛ ոք իշխեսցէ հանել ի վանացն, և մի՛ խորել, մի՛ գրաւկնել, և մի՛ ծախել, ո՛չ հայրպետ, ո՛չ աբեղայ, ո՛չ գործաւոր, ո՛չ յազգականաց և ո՛չ յաւտարաց, ո՛չ մեծ և [ո՛չ] փոքր։ Եւ թէ ոք յանդգնի զոր գրեցաքն /// հասարակեսցէ զաւուրս իւր, ով որ զյիշատակարանս կտրէ դա[տի] և նզովի յաստուծոյ։

Արդ, աղաչեմ ձեզ որք հանդիպիք կարդալով՝ յիշեցէք ի սուրբ աղաւթըս ձեր զառաջինն և զվերջին յիշատակողսն։ Դու[ք] յիշեալ լինիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ։ Խնամով պահողքն աւրհնին յաստուծոյ և յամնայն սրբոց նորա, ամէն, եղիցի*։

## 695

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 8308

Հետ. ստացող՝ Թաղէոս

335ա Փառք ... որոյ ցանկացեալ հեզահոգի և ճղնայզգեաց այրն աստուծոյ Ըռստայգէս քահանայ՝ ստացաւ սայ յիշատակ իւր անջնջելի, և ծնաւղաց իւրոց, և զաւակաց իւրոց... վասն յիշատակ անարժանիս Թաթէոս սուտանուն քահանայի, թէ արժանի համարիք զանարժանս յիշման...։
335բ Արդ, որք աւգտիք ի սմանէ ուս//մամբ կամ աւրինակելով յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զվերոյգրեալ ըզստացող կտակիս զԸռստադէս քահանայ, զնուաստըս՝ զԹաթէոս, և զմայրն իմ զՄարթայն, և զքուերքն իմ զԱւգիտաՆ և զՏիրամայրՆ և զՃաշՆ և զԽերխաթունՆՆ, զհանգուցեալսըն ի Քրիստոս զԱՆՆա խաթունն, և դեռաբուսն իմ զՏէրպապ, զաշխատաւղ սորա ի ծաղսն զՏաւայՆ և զՈսկիՃատՆ...
336ա ԶՄաղաքիաս սուտանուն կրաւնաւորս յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր՝ զծաղկաւղս և զկազմողս։

## 696

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5786

ա

Հետ. ստացող՝ Թաւրասան

341ա ... Ես Թաւրասան-Խաթունս, դուստր Ամիր-Թաղային ստացայ զսուրբ Աւետարանս ի հալալ արդեանց իմոց, և կարմիր ոսկով գնեցի զսա և ետու յաստուածաբնակ տաճարն ի սուրբ Խաչն Աղթամարայ...

---

* Ձեռագիրն ընդօրինակված է, հավանաբար, ԺԴ. դարում։ Գրիչը 490 էջի վրա թողել է մի հիշատակագրություն. «Յիշեցէք և զՎարդան կրաւնաւոր, յայսմ ատենի եկն առ մեզ և շնորհեաց մեզ գրչի հարթիչ»։

Բ

*Հետ. ստացող՝* Աստուածատուր

342ա *Ես* Աստուածատուր Յորդանանայ *որդիս, որ է երկրորդ անունն* Բաբէր. *ստացայ զսուրբ Աւետարանս զկէսն ի հալալ և ի յարդար վաստակոց իմ և գնեցի կարմիր ոսկով և տուի զսայ ընծայ ի սուրբ խաչն* Աղբամարայ...

## 697

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Ե. Լալայեան, Ցուցակ Վասպուրականի 131, էջ 282—284 (Վարագ)*

*Գրիչ՝* Թովմա
*վայր՝* Կառափնադար

*Փառք... ըստ նմին աւրինակի և ես՝ յոգնամեղս և ընկղմեալս ի խորս մեղաց ծովուս, որ զանունս միայն ունիմ և ոչ գործս բարիս, սուտանուն կրաւնաւոր և անարժանս՝* Թովմա *գրչակս, ոհ, ոհ, ոհ, տխամութիւն ոգոյս մինչև ցմահ և զվախճանն իմ վասն մեղաց իմոց, ստացայ զտիեզերաքարոզ, քառավտակ սուրբ Աւետարանս և ըստ բանաւոր բարուց բարւոյն, ախորժական կամաւք, մեծաւ տենչմամբ ստացա զսա ինձ անջնջելի արձան ի մխիթարութիւն անձին իմոյ և յոյս փրկութեան հոգւոյ իմոյ և առաջնորդ կենացն յաւիտենից, ամէն, յոյսն ամենեցուն։*

*Արդ, աղաչեմ ղամենեսեան սիրովն Աստուծոյ, յիշեսջիք ղքուր իմ, և զկենակիցս իւր,* զՇամար-խաթունն*, և զծաղկեալ զաւակս նոցա* զԿարապետ *և* զԱւագ-պարոնն*, որ մասամբ աւգնական եղեն ի քարտէսս սուրբ Աւետարանիս։ Տացէ նոցա տէր Յիսուս հանգիստ և ողորմութիւն ի միւսանգամ գալստեան իւրում. և ծնողաց իւրեանց հանգիստ և ողորմութիւն, ամէն։*

*Դարձեալ, աղաչեմ զձեզ սուրբ հարք և եղբարք, յիշեսջիք և զարեան մերձակայ զեղբայրն իմ* զԱկովբ *սրբասնունդ /// հայրական գթով գթայ ի վերայ իմ։ Գթասցի տէր Յիսուս ի հոգի իւր։ Աղաչեմ յիշեսջիք ի Քրիստոս և զծնողն իմ, և զեղբայրն իմ* զՍարգիս՝ *զփոխեցեալն ի Քրիստոս, և զամենայն արեան մերձակայսն իմ,* զԾեր[ուն] *քահանայ, և* զՊարոնլուս*,* զԴանիէլ*, և զքոյրն իմ* զՇնոհվոր-Տիկին: *Եւ Աստուած յիշողացդ և յիշեցելոցս պարգևեսցէ զկեանսն յաւիտենից, ամէն։*

*Արդ, գրեցաւ սա յանապատիս ծովահայեաց, որ* Կառափնադար *կոչի, ընդ հովանեաւ աստուածաբնակ խորանացս /// և սուրբ Սիովնի։ Տեղոյս առաջնորդի* Գրիգորի *րաբունոյ վարդապետի հեզ[ի] և խոնարհ[ի],* և Ստեփանոս ///*։

---

* Թերթ է ընկած։

## 698

### ԱՒԵՏԱՐԱՆ
*Երևան 3850*

*Գրիչ*՝ Թումայ
*վայր*՝ Մառնեվանք

255բ *Ես՝* Թումայ *մահդասի սուտանուն քահանայ, գրեցի զՂուկաս գլուխ Աւետարանս ի յայգիս* Մառնեվանից *Աստուածածնին՝ չարչարանաւք։ Եղբա՛յրք, սղալանաց և խոշորութեանն գրոյս անմեղադիր լերուք և լի բերանով աստուած-ողորմի ասցէք, զի խիստ մեղաւոր եմ։*

## 699

### ԱՒԵՏԱՐԱՆ
*Երևան 5526*

*Հետ. ստացող*՝ Թումա

291բ *Զվերջին ստացաւղս աստուածախաւս և տիեզերաքարոզ սուրբ Աւետարանիս զկուսակրաւն քահանայ զ*Թումա, *և զծնաւղսն իմ զ*Ս[տ]եփանն *քահանայ և զ*Թանկազիզ, *և զեղբարսն՝ զփոխեալն առ Քրիստոս զ*Թադէոս *և զ*Մաթէոս, *և զքեռսն իմ զ*Աննէն, *զ*Սառէն *և զ*Սառաւթէն *աղաչեմք յիշել սեռն սիրով ի միտս բարիս և ի պատկանաւոր խնդրուածս, և Քրիստոս աստուած յիշողացտ և յիշեցելոցս առհասարակ ողորմեսցի, ամէն...*

## 700

### ՇԱՐԱԿՆՈՑ
*Երևան 2456*

*Գրիչ*՝ Իգնատիոս

257ա *Զառ ի բարեաց գործոց տարտամ*
*Եւ ի չարեաց տեսակ փարթամ,*
*Մաղթեմ յիշել դասք սրբազան։*
*Խոշոր գրոյս և սխալման*
*Մի պարսաւէք զիս բամբասմամբ,*
*Զի կար մեր այս էր ի լման,*
*Հայցեմք ասել զտէր ողորմայն։*

## 701

### ԱՒԵՏԱՐԱՆ
*Յ. Քոսեան, Ցուցակ ձեռագրաց Արծնեան վարժարանի, 22, ՀԱ, 1961 թ., սյուն. 322—323*

*Գրիչ*՝ Խաչատուր
*վայր*՝ Քաչբերունիք. Վարդենիս
Մենաստան

*... Ի խնդրոյ սրբասէր և պատուական կրաւնաւոր քահանայի* Յոհաննու, *որ ստացաւ զսա յիշատակ իւր և ծնողաց իւրոց։ Արդ, աղաչեմ զամե-*

Նեսեան որք լուսաւորիք ի սմանէ կամ գաղափարէք յիշեսջիք զՅոհան կրաւնաւոր և զծնողսն և զեղբարս իւր ի տէր, ընդ նմին և զփցուն գրիչ Խաչատուր և գիւրսն ամենայն. և որք յիշէք՝ յիշեալ լիջիք յանյիշաչար տեառնէ մերմէ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Արդ, գրեցաւ սա ի գաւառիս Քաջբերունեաց, ի մենաստանիս որ կոչի Վարդենիս՝ մակսնուն Պապգոյ վանս, ընդ հովանեաւ Նորոգուց սուրբ Նշանիս և սուրբ մաւրն լուսոյ Աստուածածնիս և այլ սրբոց, որ են ի տեղւոջս յայսմիկ։ Յիշեսջիք և զառաջնորդ սուրբ ուխտիս զՀայրապետ պատուական քահանայ, որ եղև առիթ գործառնութեանս. յիշեսջիք և զԽաչատուր քահանայ սուրբ և ընտրեալ կրաւնաւոր, որ զաւրինակն շնորհեաց, և զՓոխանակ միայնակեաց, որ զաւրինակն էր ստացեալ։ Յիշեսջիք և զՍիմէովն քահանայ՝ ընտիր քերող, որ զգաղափարն էր քերել. զորս և յիշողացդ և յիշեցելոցս ողորմեսցի մարդասէրն աստուած, և նմա փառք յաւիտեանս, ամէն։ Ի թվիս ///*։

## 702

### ԳԻՐՔ ՅՈԲԱՅ ԵՒ ՏԵՍԻԼՔ ԵՐԿՈՏԱՍԱՆ ՄԱՐԳԱՐԷԻՑ

Երևան 5603

Գրիչ՝ Խաչատուր
վայր՝ Գամաղիէլի վանք

ա

72բ Գրեցաւ Յոբս և Դանիէլս ձեռամբ յոգնամեղ Խաչատրո, որ հոգևոր որդի էր Կիրակոս վարդապետին, ի վաելումն և ի վարժումն Յոհաննիսին, ի յիշխանութիւն Յոհաննէս վարդապետին, ի դուռն սուրբ Գամաղիէլի առաքելոյն։

Արդ, աղաչեմ յիշել ի մաքրափայլ յաղաւթս ձեր և աստուած զձեզ յիշէ յիւր արքայութիւնն, ամէն։

Բայց սխալանաց և խոշորութեան անմեղադիր լերուք, զի կար մեր այս էր։

բ

268բ Աւարտեցաւ երկոտասան մարգարեութիւնս ձեռամբ ախմար և տառապեալ ոգո Յոհաննիսի, ի վարժումն տկար անձին իմո և որոց պատահէ զկնի մեր։ Աղաչեմ չմեղադրել խոշորութեան և սխալանաց, զի առաջին դիրն իմ այս էր։ Ես չկամեցայ գրել, բայց վարդապետն հարկեաց, որք ընթեռնուք կամ աւրինակէք յիշեսջիք զիս և զծնաւղսն իմ ///։

---

* Հրատարակիչը հայտնում է, որ շարունակությունը քերված է։ Ձեռագիրը, հնագրական տվյալներով գրված է համարում ԺԴ—ԺԵ դարերում։

Գ

231բ Ո՜վ բարեմիտ ընթերցող յիշեա զաշխատողս սորա ի բարի և սխալանացս անմեղադիր լեր, զի յոյժ անարհեստ էի յարուեստ գրչութեան։

Դ

126բ Քունն տարաւ, նա գրիչն սողաց, անմեղադիր լեր սխալանաց*։

## 703

### ՃԱՌԸՆՏԻՐ

Երևան 5406

Գրիչ՝ Խաչատուր

28բ Քրիստոս աստուած, քո սուրբ ծնընգեանդ բարեխօսութեամբ ողորմեա ստացողի գրոցս բարէմիտ քահանայի Ներսեսի, և ծնօղաց նորին Ատոմին և Թանկ-Մելեքին, և զաւակացն Խաչատրուն և Մարտիրոսին, և ամենայն արեան մերձաւորաց իւրոց. և ինձ՝ մեղապարտ գրչի Խաչատրոյ, և ծնօղաց իմոց, և կարդացողաց և լսողաց, և որ զամէն ասէ։

## 704

### ՄԱՇՏՈՑ

Երևան 4784

Գրիչ՝ Կարապետ

վայր՝ Եղեգիս, ի ձորն Խնձորուտ

Փառք... որ ետ կարողութիւն տկար և մեղսամած անարժանիս հասանել յաւարտ տառիս զԿարապետ մեղօք իլի, որ զանունս ունիմ և ըղ-
227ա գործս ոչ, եւ զգըծող սուրբ տառիս որ Մաշթոց ասի՝ զտէր //Յակոբ քաջ և արի ճգնաւոր կրաւնաւորն, որ ըստացաւ զսա ի հալալ յընչից իւրոց յիշատակ բարի հոգոյ իւրոյ, և ծնաւղացն՝ հօրն Արևին և մօրն Մասխումին, և եղբօրն Սմբատին, և քւերն Ազիզին ...** և ամենայն արեան մերձաւորաց նոցին, կենդանեացն՝ կեանք և առողջութիւն և ննջեցելոց՝ մեղաց թողութիւն պարգևէ, ամէն։

228ա ... Այլ ասացէք դուք զողորմիս մեղսամածեալ Կարապետիս: Ջերեսս ի գետնի դնեմ և ղոտս ձեր համբուրեմ, զի ասէք զաստուած-ողորմին ինձ, և ծնօղաց իմոց Յոհանէս քահանային և Վարդին, և իմ կենակցին Հաթունին, և զեղբաւրն իմ Գրիգորիսին, և պապուն իմ Ստեփանոս քահանային, և մամուն իմ Շամամին, և հօրեղբարցն իմոց տէր Գրիգորին, և Յովանէսին, և Յովասափին, և կանաց նոցին Եղիսին և Խանադին և Բաղջին, և որ ասէ աստուած-ողորմին...

* Էջի վերջին տողից դեպի լուսանցք է իջնում մի թեք գիծ։ Գրիչն այդ առթիվ է ներողություն խնդրում։

** Թվարկվում են ստացողի բազմաթիվ ազգականները։

228բ ... Դարձեալ, կրկին անգամ աստուած-ողորմի ասացէք տէր Յակոբ Հեզահոգի կրանաւորին, որ եսուր զսուրբ Մաշթոցս նըւէր ի դուռն սուրբ Գէորգ զաւրավարին, ի ձորն որ ասի Խնձորուտ, ի յերկիրն որ կոչի Եղեգիս, ի վայելուչ վանքն։ Ի դրանէ սուրբ Գէորգ զաւրավարէն մի ոք իշխեսցէ զսա հեռացուցանել, կամ գրաւ դնել, կամ գողանալ, կամ նենգութեամբ տեսանել, եթէ ոք յանդգնի և լրբանայ՝ նա զանէծքն զԿայենին և զՅուդային և դայլ խաչհանողացն ժառանգեսցէ, և ի վերջին աւուրն ընդ սատանայի և ընդ կամարարաց նորա տանջի։

Այլ անչինչ յիշատակ կացցէ և մնասցէ ի դուռն սուրբ Գէորգա զօրավարին, լաւ պահողքն և խնամ տանաւղն յաստուծոյ աւրհնի, ամէն։

## 705

## ՄԱՇՏՈՑ

Երևան 4267

Գրիչ՝ Կարապետ եպիսկոպոս

ա

202ա Քրիստոս աստուած... լուսաւորեա զհոգի և զմարմին զուսթայ Այլադաղին, և զհէր ծնաւղացն, և զորդոյն՝ զՍալթան-Խաչին, զէզդանին, և զամէն ասողին, ամէն, և ինձ մեղապարտ գրչիս Կարապետ եպիսկոպոս, ամէն։

բ

140բ Քրիստոս աստուած... լուսա ի յաղտոյ մեղաց զհոգի Այլադաղին, զՍալթան-Խաչին, զեզդանին, և ամենայն նախնեաց սոցին, ամէն։ Նայ և ինձ մեղապարտիս՝ Կարապետ եպիսկոպոսիս, և մեր ծնաւղացն, ամէն։

## 706

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑՒՈՅ

Երևան 3513

Գրիչ՝ Կարապետ

ա

124ա Զհոգիազարդ ///ն բստ հոգւոյ, զանփորձն ի կորստական սխալմանէ զմոլորն (՞) և զբարեպաշտ այրն զԿախաբերն՝ դյիշման արժանինն, զՄարգարէ վարդապետ յիշեցէք ի բարի մասին առաջի Քրիստոսի, խնդրելով ի նմանէ զթողութիւն և զմեծ զողորմութիւն, և ինձ ամենամեղ ծրողիս Կարապետի, և ծնաւղաց իմոց։

բ

136ա ԶՄարգարէ վարդապետ ստացող և զԿարապետ գծողս յիշեցէք ի Քրիստոս։

Գ

189բ. Զփծուն գրիչ և զհոգևոր մայր իմ զԱրղուն-Մելէք յիշեցէք ի Քրիստոս։

Դ

103ա Ո՛վ եղբայր, թէ սխալ բան հանդիպի ինձ անմեղադիր լեր, զինչ աւրինակն էր ես նոյնպէս եմ գրել։

Ե

109բ Վա՜յ գլխոյս ցաւէս*։

707

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7351

Գրիչ՝ Կարապետ

189բ Զվերջին ստացաւղ սուրբ Աւետարանիս զՅովանէս կուսակրաւն աբեղայ, որ ստացաւ զսուրբ Աւետարանս ի հալալ արդեանց իւրոց՝ յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց՝ հաւրն Գրիգորի և մաւրն Թագուհոյ, և քվերն Հռիփսիմէ, և եղբաւրն Մարշին, և դեռաբոյս որդոյ իւրոյ Ներսիսի: Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմայ տեսութեամբ կամ աւրինակելով յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր զՅովանէս աբեղայս և զծնաւղսն իւր, և զհաւրեղբայրքն իւր զՆերսէս քահանայն, զՆորշայն, և զԿիրակոսն, զՎարդան, զԳրիգորն, զԲանէրգէսն, և զդուստրն իւր զՍուլթան-Խաթունն, և զքվեր որդիքն իւր զՆարին-Դաւիթ և զՆարին-Խռնէն, և զամենայն արեան մերձաւորք սորա՝ զկենդանիս և զհանգուցեալս յիշեցէք ի Քրիստոս...

Զաակաւ ծրող սորա զԿարապետ անարժան աբեղայ յիշեցէք ի Քրիստոս, և աստուած զձեզ յիշէ։

708

ՇԱՐԱԿՆՈՑ

Երևան 5113

Գրիչ՝ Կարապետ

ա

320ա Եւ զիս՝ զբազմամվէր հիւանդս աղաչեմ յիշել ի տէր՝ զանպիտանս ի կարգաւորաց սուտանուն Կարապետ:

Բ

99ա Ո՛վ եղբայր, անմեղադիր լեր, զի միտքս սխալեցաւ, վատ մի ասէ, և զաղէկն դու գիտես, բաւ է։

* Գլխի ցավից Կարապետը գանգատվում է նաև ձեռագրի այլ էջերում. այսպես, օրինակ, 117բ էջի լուսանցքում գրել է. «Ո՜հ, ո՜հ ի գլխոյս ցաւէս» և այլն։

Գ

22բ ԶԱզիզ և զծնաւղն իւր զՍարգիս յիշեցէք ի տէր, ո՞վ բարի ընթերցողք, և ասացէք թէ աստուած ողորմի նոցա, ամէն, ամէն։

## 709

### ՃԱՇՈՑ

Երևան 5403

Գրիչ՝ Կարապետ

285ա Ո՞վ լուսերամ դասք քահանայից, որ ընթեռնուք զսուրբ գիրքս յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զԹումայ քահանայ՝ զստացող գրոցս, և զծնօղսն իւր, և զամենայն ազգայինսն, և զիս՝ մեղսամած և զթազծեալ գրիչս Կարապետ. և ձեզ և մեզ ողորմեսցի ողորմածն աստուած, ամէն*։

## 710

### ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ

Երևան 1854

Գրիչ՝ Կարապետ

ա

27բ Յիշեա Քրիստոս աստուած զԳրիգոր և զՍահակ, և զՄածուր՝ հաւրեղբայր նոցա, և զծնաւղսն, և զմեղուցեալ գրիչ, և զմերսն։

բ

Քրիստոս աստուած բարեխաւսութեամբ սրբոյն Գրիգորի Նարեկայ վանականի յիշեա յարքայութեան քում զստացող սորա զԳրիգոր կրաւ-
37բ նաւոր, և զծնաւղսն զՎարդան // և զԱստար-Տիկին, և զքոյրն զՏիրանց, և զանյիշելի Կարապետ գրիչս և զմերսն, և քեզ փառք։

Գ

437ա ...Յիշեցէք յաղաւթս ձեր զստացող սորա զԳրիգոր կրաւնաւոր, և զծնաւղսն, և զՅովաննէս գարուակն, և զանյիշելի գրիչս, և զերախտաւորքըն մեր...

## 711

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Երևան 8919

Գրիչ՝ Կարապետ

61ա Փրկեսցէ Քրիստոս աստուած... զստացող գրոցս զմահտեսի Յակոբ եպիսկոպոսն, և զծնօղսն՝ զՂուլինանն և զՄարգարիտն, և զեղբարսն՝

* Ձեռագրում կան ուշագրավ առասպելական լուսանցազարդեր (օրինակ 131բ էջի վրա)։

զՍարգիսն, զՊէկինեանն, զԽոռանն, և զՎարդանն. և զՄելիքն, և զքրսերսն՝ զԽալիպն, զԾուրվանտէն, և զմեղապարտ գրիչս զԿար[ապետ]*։

### 712

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 10128

Նկարող՝ Կարապետ

5բ Ո՜վ դասք լոյսերամից, աղաչեմ յիշման արժանի առնել զԿարապետ նկարող սորին, ով զմեզ յիշէ յիշեալ լիցի առաջի անմահ գա[ռին] Յիսուսի Քրիստոսի**։

### 713

### ՈՍԿԵՓՈՐԻԿ

Վենետիկ 255 (104), Բ. Սարգիսեան Ցուցակ Բ, էջ 760

Գրիչ՝ Կարապետ Հիզանցի

103բ ...Ողորմեա Քրիստոս աստուած ամենայն հաւատացեալ քրիստոնէից և մեղուցեալ և եղկելի գրչիս՝ սուտանուն Կարապետ Հիզանցոյ, որ զանունս ունիմ աբեղայի և գործաւքս չար մեղաւք իլի...

### 714

### ԿԱՆՈՆԳԻՐՔ

Երևան 5610

Գրիչ՝ Կարապետ Պուլղարկացի

ա

51ա Զմեղաւք վարանեալ հոգիս՝ զցծող տառիս՝ զԿարապետ Պուղարկացիս, զձեզ աղաչեմ զողորմելիս, որ զմեզ անփոյթ չառնէք յայս Նիշ տեղիս. յառաջն Յոճանէս քահանաիս և ապայ ինձ՝ Կարապետիս, որ արժան չեմ այս սուրբ կարգիս։

Բ

134բ Երանի աչաց մարդկան,
Որ ի մարմնի զքեզ տեսան
Տէր Յոհան Մանդակունեցի***,
Նստեալ յաթոռս սուրբ Լուսաւորչի,

* Ձեռագրում գրված է այսպես՝ «զԿր.»։

** Ձեռագրից պահպանվել է միայն 4 ավետարանիչների և մեկ տերունական նկար։ Հիշատակարանը գրված է Ղուկաս ավետարանչի նկարի տակ։

*** Հիշատակագրությունն արված է «Նորին Յոհան Մանդակունւո Հայոց կաթուղիկոսի թարգմանչի, աշակերտելո մեծին սրբոյն Սահակա Հայոց հայրապետին՝ բան կանոնականս հոգվածի վերջում։

Ես Կարապետս եմ անպիտան.
Ձարեաւք լցեալ եմ ապայքան,
Ձիս մի թողուր ի չար գրնդան,
Իմ յոյսն դու ես՝ տէր Յոհան
Եւ միւս Յոհան Ոսկիբերան։

## 715

## ՔԱՂՈՒԱԾՈՅ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ՄԱՏԹԷՈՍԻ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

Երևան 9470

Գրիչ՝ Կարապետ

79բ Եւ զիս եղկելի գրիչս յիշեցէք ի Քրիստոս զԿարապետ սուտանուն վարդապետս, որ զանուն ունիմ և գործս ոչ, նման եմ անկենդան պատկերի, ի մէջ ալեաց եմ ընկղմեալ, մտօքս մրրկիմ, անձամբս կոծիմ, ծուլութեամբ ծանրանամ և զնաւահանգստին չգտանեմ։

Երկիր կամ օտար,
Մարմնովս կամ շիւար,
Մտօքս եմ յիմար։
Այլ զձեզ աղաչեմ,
Յաղօթս ձեր յանձնեմ,
Զի ողորմութիւն գտցեմ։
Տառիս սակաւ գրողի զայս բան,
Զձեզ աղաչեմ սփերական,
Ստանալ զգանձս աղերսական
Եւ յիշատակ անջնջական։

## 716

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5517

Ստացող՝ Կիրակոս

112ա Ես Կիրակոս* ետու գրել զսուրբ Աւետարանս յիշատակ հոգւոյ իմոյ, և ծնողաց իմոց, և ամենայն արեան մերձաւորաց իմոց, ամէն։ Եւ ետու զսուրբ Աւետարանս Բերդաձորոյ սուրբ Աստուածածնիս անջինջ յիշատակ հոգւոյ իմոյ. և ոչ ինձ ազգ և ոչ աւտար չունի իշխանութիւն ծախելոյ, կամ գրաւ դնելոյ, կամ տանելոյ. և ով յանդգնի՝ զայս Աւետարանս ի յայս սուրբ Աստուածածնի դռնէս հեռացուցանի՝ նա զմասն Յուդային առնու և զայլ խաչահանացն, ամէն, և ինքն նզովեալ եղիցի, ամէն։

---

* Մի բառի տեղ դատարկ է թողնված, հավանաբար, Կիրակոսի հոգևոր աստիճանը որոշող բառի համար։ Այդ հանգամանքը, ինչպես նաև գիրը վկայում են այն մասին, որ հիշատակագրությունը Կիրակոսի անունից գրել է ձեռագրի գրիչը։

## 717

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 2538*

*Հետ. ստացող՝* Կոստանդ

176ա *Կամաւն աստուծոյ* Կոստանդ *մահդասիս առայ սուրբ Աւետարանս ի հալալ ընչից իմոց իմ կամաւորութեամբ, և տվի իմ հոգոյ որդոյն՝ տէր* Isտակիսին, *ո՛չ ազգոյ, ո՛չ աւտարականի, այլ մարդոյ բան չկայ, ետև առաջ ինչ մարդոյ տաւոյ անէ ՅԺԸ. (318) հայրապետաց նզոված է, և մասն ընդ Յուդայի առցէ աստուծոյ դատաստանին։*

*Ես* Կոստանդ *մահդասիս լուսարար Եղիշէի սուրբ առաքելոյն, և տրվեալ եմ Աւետարանիս գինն առաջի աստուծոյ տէր* Մարկոսին *ԺԲ. (12) մաոչիլ, Ա. (1) փեթակ**, *յետոյ տաւոյ արաւ, տվի Ե. (5) խոն բրինձ, Ա. (1) չուխայ, էլ մին փեթակ՝ Սուրբ երեք մանկունքն։ Վկայ է* Իգնատիոս *եպիսկոպոս, վկայ է տէր* Ակոբն, *վկայ է* Ոսկան *եպիսկոպոս, <վկայ է>։ Ինչ մարդ որ այլ և այլ խաւսէ դատի աստուծոյ։*

## 718

### ՇԱՐԱԿՆՈՑ

*Երևան 8538*

*Ստացող՝* Հայրապետ

174ա *Ես՝* Հայրապետ *եպիսկոպոս, ստացա զՇարակնոցս զայս ի հալալ արդեանց իմոց՝ յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց՝* Ստեփաննոսին *և* Ջալալին, *զի որք տեսանէք և կամ գաղափարէք և կամ աւգտութիւն ինչ իւիք և լինիցի, յիշեցէք ի յերկնաթուիչ յաղաւթս ձեր զվերոյգրեալքս ի սմա, և մեղաց թողութիւն խնդրեցէք ի պարգևաց բաշխաւղէն Քրիստոսի աստուծոյ մերոյ, և նմա փառք յաւիտեանս, ամէն։*

*Ջկազմող սորա* զՄկրտիչ *խաբեղայս յիշեցէք...*

## 719

### ՄԱՇՏՈՑ

*Երևան 3600*

*Գրիչ՝* Հայրապետ

**ա**

119ա *Ջստացաւղ սուրբ ձեռնադրութեանս* զՅովհաննէս *արքեպիսկոպոսն* Սեբուեաց *եւ ընդ նմին զբազմամեղ գծողս* Հայրապետ *յիշեցէք ի տէր։*

**բ**

153բ *Ջմեռեալս ոգով յիշեա, ո՛վ ընթերցող, եւ ժառանգող արքեպիսկոպոս տէր* Յովաննէս Սեբուեաց *Նահանկի***։

---

* *«Փեթակ» բառի առաջին՝ «փ» տառը գրված է այնպես, որ կարող է կարդացվել նաև «ֆ»։*

** *Այս հիշատակագրությունները կարող են գրված լինել նաև ԺԴ դարում։*

## 720

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4845*

*Գրիչ*՝ Հերապետ

ա

85բ *Քրիստոս աստուած քո սուրբ աւետարանչիս բարեխաւսութեամբ ողորմեայ ստացողի սուրբ Աւետարանիս տէր* Մարտիրոս *աբեղային մականուն* Գումաճէնց *կոչեցեալ, եւ իւր ծնա[ւղա]ցն տէր* Մխիթար *քահանային, և իւր կողակցին* Նշխուն–Խաթունին, *և զաւակացն՝ փոխեցելոցն առ աստուած...*

բ

133ա *Զստացաւղ սուրբ Աւետարանիս* զՄարտիրոս *մահդասի կրաւնաւորն, և զծնաւղսն իւր՝ զտէր* Մխիթար *քահանայն և* զՆշխուն *յիշեցէք ի Քրիստոս...*

*Մանաւանդ* զՀերապետ *գծաւղս ի հետ,*
*Որ լոկ անուամբ եմ վարդապետ։*
*Եւ զիմ ծնաւղքն յիշէք ի հետ՝*
*Զպապն* Վարդան, զԽոնդքարն *ի հետ։*

ԶՄկրտիչն *և զտէր* Կարապետն, զՄուսիկ *և զտէր* Մովսէսն, *զտէր* Մխիթարն, *և* զՆշխունն, *և զամենայն զաւակսն սոց[ա], ամէն։*

գ

135ա *... Յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր* զՄարտիրոս *մահդասի աբեղայն, որ բոլոր սրտիւ և մեծ հաւատով ետ գրել զսուրբ Աւետարանս յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնաւղացն՝ տէր* Մխիթար *քահանին և* Նշխուն *մամուն և զաւակացն, և ամենայն արեան մերձաւորացն, ամէն։*

դ

212ա *Այլ և զգծաւղըս անպիտան*
*Ողորմի ասել առնէք արժան՝*
ԶՀերապետս՝ *թափուր ու ունայն,*
*Արքայութեան լինել արժան։*
*Ես յոյս ունիմ յանմահ արքայն՝*
*Իւր տեսութեան առնէ արժան.*
*Սուրբ Յոհաննէսն պատուական՝*
*Իւրոյ փառացն մասնական։*

ե

*Ծաղկող*՝ Վարդան Բաղիշեցի

1բ [ԶՎարդան Բա]ղիշեցի,
*Որ ցընորեալ եմ յաշխարհի,*

Մատամբ իմով մեղսամածի
Աւետ[արանս ծաղկեցի*]
. . . . . . . . . . բարի
Ինձ ասացէք տէր-ողորմի,
Եւ տէր աստուածն ամենայնի
Ձեզ և մեզ /// ողորմեսցի, ամէն։

2ա Եւ զտէր Սարգիս /// յիշեցէք ի Քրիստոս և աստուած ողորմի ասացէք նմա, որ զդեղ /// ես եղկելի Վարդանի /// զի ինձ ծաղկի և գրի ուսուցիչ նայ էր ///*։

Գ

7բ Տէր աստուած, քո սուրբ յարութեամբդ յարոյց ի յաւուրն դատաստանին զՍարգիս վարդապետ Խիզնեցին, եւ զՎարդան Բաղիշեցին** նկարող աւետարանիս յիշեցէք ի Քրիստոս աստուած***։

Է

Ստացող Մարտիրոս

88ա Զանարժան սուտանուն Մարտիրոս սարկաւագս և զհայրն իմ պատուական, որ /// խորանս հանի յիշեցէք ի Քրիստոս, և աստուած զձեզ յիշէ****։

## 721

## ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 4967

Գրիչ՝ Ղազար
վայր՝ Գամաղիէլի վանք

260ա Փառք... որ տրամադրեաց զմեղսամած մատուես տասանց անարժան և տկար ոգոյ Ղազարի՝ նուաստ և անարժան կրաւնաւորի՝ գրել և կարգել զճառս երախտեաց աստուածագործ սքանչելեացն...

Արդ, կատարեցաւ աստուածախաւս և տիեզերաքարոզ Աւետարանս ի խնդրոյ աստուածասէր և հաւատարիմ [Սարգսին, յիշատակ իւրն, և զաւակացն Անձրևին և Գազին, և ծնաւղացն Կարապետին և մաւրն, եղ-

* Շարունակությունը՝ 5 տող, բոլորովին անընթեռնելի է։ Կարդացվում են միայն առանձին բառեր «ի յայսմ ամի», «ի թվականիս» և այլն, բայց թե ո՞ր թվին է արձանագրվել հիշատակարանը, հնարավոր չէ որոշել։

** Ձեռագրի ծաղկող Վարդանը նկարել է իրեն պատկերը Քրիստոսի պայծառակերպության պատկերի ձախ կողմում՝ «մեղապարտ ծաղկող Վարդան խաբեբայ...» մակագրությամբ։ Նույն պատկերի աջ մասում նկարված է «Մարտիրոս կրօնաւորն՝ Աւետարանի տէրն»։

*** Հիշատակագրությունը գրված է Քրիստոսի Հարության նկարի 1,5 սմ լայնություն ունեցող եզրի վրա՝ երկաթագիր տառերով։

**** Ձեռագրի գրության վայրն անհայտ է, սակայն այն գրված կամ պահված պետք է լինի մի վայրում, ուր կա սուրբ Քառասնից անունով վանք։ Ձեռագրում կան մի շարք նվիրաբերական արձանագրություններ այդ վանքի անունով։

բաւրն Յովանիսին, և հաւրեղբաւրն Յոհանիսին, Թաւաֆային, և Աղբրացին ]*...

Եւ արդ, ես՝ ունայնս ի բարեաց գործոց սուտանուն գրչակս, որ անուամբս եմ և եթ և ոչ արդեամբք, և երկեակ, որ և հոգով կորացեալ և մտաւք մոլորեալ ըստ իմում տկարութեանս, գրեցի զսա՝ զսուրբ Աւետարանս ի վանքս, որ կոչի Գամաղիէլ. ընդ հովանեաւ առաքելոյս Գամաղիէլի և ամենայն սրբոցս, որ աստ՝ շուրջ զմիաւք բանակեալ կան, ի յառաջնորդութիւն վանացս րաբունոյս միրո Յոհանէս վարդապետի և Դաւ[ թի ///**.

## 722

### ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

Երևան 854

Գրիչ՝ Ղազար

ա

6ա Աւգնեա ինձ հոգի աստուած և ղսկսեալս իմ դու կատարեա։

բ

248բ Եւ զիս՝ զեղկելի գծողակս զՂազար յիշեայ, եղբա՛յր, ի բարի մասին։

## 723

### ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

Երևան 855

Գրիչ՝ Ղազար

225ա Անմեղադիր լերուք ծրողիս, զի գիրքս կազմած էր, և զՂազարս յիշեցէք։

## 724

### ՄԱՇՏՈՑ

Երևան 4195

Հետ. ստացող՝ Ղոշի՞ն

313բ Յանուն աստուծոյ ես Ղոշին Մկուչայ որդ[ի] գնեցի զսուրբ Մաշտոցս իմ հալալ արդեամբ ի յիշատակ ինձ, և ծնողաց իմոց՝ հօրն իմոյ Մկրտչին, և մօրն իմոյ Խերիկին, և ամենայն մերձաւորաց իմոց, և իմ սրտի յօժարութեամբ տվի ///***

* Փակագծերի մեջ առած՝ ստացողներին վերաբերող պարբերությունը գրված է նախօրոք դատարկ թողնված տողերի վրա՝ հետագայում, թերևս նույն Ղազար գրչի կողմից, բայց այլ գրչով ու թանաքով։

** Ձեռագրից թերթ է ընկել։

*** Հիշատակարանը մաշված ու դժվարընթեռնելի է. «Ղոշին Մկուչայ որդի» անունները կարդացվում են երկրայնությամբ, իսկ վերջից մի բառ բոլորովին չի վերծանվում։

## 725

## ԺՈՂՈՎԱԾՈՒ ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿԱՆ ԳՐՈՑ

Երևան 4132

Գրիչ՝ Մարգարէ վարդապետ

ա

194բ Զպատահողքդ այսմ տաղի* աղաչեմ յիշել զՄարգարէ վարդապետ և անպարսաւ զմեզ առնել, զի եղանակս ձմեռն էր և ես անյարկ և անցորեան, այլ օքն և յերեք տեղ փոխեցա և ապա գրեցի զԲնութեանց լուծմունս, զորս ողորմութիւն առցեն յաստուծոյ ողորմածքն և կերակրողքն մեր՝ աստ հարիւրապատիկ, և հազարապատիկ՝ յարքայութիւնն տրդարոց, որում փառք յ[ա]ւ[իտեանս]։

բ

226բ Եւ ես Մարգարէ վարդապետս՝ տրուպս ի սպասաւորաց բանին սկսայ զընայլուծումս յԱրևելից գաւառն, և եղև դարձ ի բնիկ գաւառս մեր՝ մնալով անկատար, զոր վերստին սկսայ յետ է. (7) ամաց, և տկարացելոյ տեսութեանս, զոր մարմնաւոր հոգ և յերկար խռովութիւնք խափանեցին, զոր աղաչեմ անմեղադրելի առնել և մեղաց [թողութիւն հայցե՞լ]։

գ

352բ Փառք... որ ետ կարողութիւն հասանել յաւարտ Քրիստոս ծնեալ լուծմանցս գրոցս, ձեռամբ տկար և ամէնամեղ անձինս Մարգարէ վարդապետի։ Արդ, աղաչեմ, որք հանդիպիք և աւգտիք ի սմանէ մեղաց թողութիւն խնդրեցէք յաստուծոյ և անմեղադիր լերուք, զի ծեր եմ և կար մեր այս է։

դ

30ա Ա՜խ, ա՜խ Թումայ, քո խորամանկութիւնդ շատ վնասեաց զմեզ, զոր լցաւ սիրտ մեր աբե[ամբ]։

## 726

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

Երևան 1194

Գրիչ՝ Մարկոս

54ա Զմեղաւոր գծող սորին զՄարկոս աղաչեմ յիշել, ո՜վ սուրբ ուսումնասէրք, և աստուած զձեզ յիշէ։ Ո՜վ եղբայր իմ թողութիւն շնորհեա և մի մեղադիր լինել խոշորութեան գրոյս, զի տունս խիստ ցուրտ էր, և ես անչափ տրտում վասն հոգոյս իմում, զի մեղաւոր եմ և մանաւանդ վասն մարմնոյս, զի ոչ ունիմք առաջնորդ բ[արի՞]։

* Իմա՝ ատառիս։

## 727

### ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 8956

Գրիչ՝ Մարտիրոս

ա

467ա /// ելով և ուսմամբ՝ յիշեցէք զեղկելիս՝ զՄարտիրոս դպիրս, եւ զհայրն իմ զՍաճակ քահանայ, եւ զմայրն իմ զՄինայ, եւ զեղբայրն իմ զԹաւիթ կուսակրօն աբեղայն, եւ զհայր հաւրն իմոյ՝ զՍարգիս քահանայ, եւ զհայր մաւրն իմոյ զԹորոս քահանայ, եւ զմայր մաւրն իմոյ՝ զՀուճար-խաթունն: Ո՛վ սուրբ հարք և եղբարք, յիշեցէք ի մաքրափայլ աղօթս ձեր զհոգեւոր հայրն իմ զտէր Յովանէս աւագերէցն, և զկենակիցն իւր զԽաթուն-Մելիքն, եւ զայլ ամենայն արեան մերձաւորքն՝ զմերն և զսոցայն...

Ո՛վ եղբարք և հարք, մի մեղադրէք ապկի ազգի պակասութեանս։

Ո՛վ սուրբ հարք և եղբարք, յիշեցէք ի սուրբ աղօթս ձեր զծաղկաւղն՝ զԳրիգոր աբեղայն, եւ զկազմողն զԹադէոս աբեղայն, ամմէն և հազար ամէն։

467բ Ո՛վ սուրբ հարք, յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր զհեզահոգին՝ զՊաւղոս քահանայն, որ զաւրինակն շնորհեաց, և զայլ արեան մերձաւորքն իւր...

Ո՛վ սուրբ հարք և եղբարք յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր ///* դպիրն և աստուած զձեզ յիշէ յիւր արքայութիւնն, ամմէն և յամենայն ժամ։

/// ո. ո. ո. ո. ո. ս. ո. ո. ճ. ճ. ճ. ճ. ճ. ո. ծ. ժ. ո. վ,

/// ո. ո. յ. յ 2 2. ո. ծառայ Քրիստոսի**։

բ

145բ Ո՛վ սուրբ հարք և վարդապետք, մի մեղադրէք ինձ, քանզի ի միւս աւրինակըն զայս զանձս էր գրած։

գ

149բ Ո՛վ ընթերցողք, զայս տունս ի յայս տեղս էր գրած ի յաւրինակն։

## 728

### ՇԱՐԱԿՆՈՑ

Երևան 7146

Գրիչ Մարտիրոս

100ա Զգծողս՝ զՄարտիրոս անունս յիշեցէք ի Քրիստոս, և զծնօղսն իմ՝ զՄկրտիչն և զՃրճանն, և զեղբարն իմ զՄխիթարն, և զքուերքս իմ զԱննայն և զՈտիտայն, և զորդիքն իմ զՃրճանն և զՎարդիկ, զդեռաբոյս

---

* Անունը քերված է։ Ըստ նախորդ տողերի լինելու է Մարտիրոս։

** Ծաղկագիրը բոնում է երկու տող։ Տողերի ձախ եզրերը մաշվել են և մի քանի տառանիշեր չեն կարդացվում։ Ծաղկագիրն այս վիճակում չի վերծանվում։

մանուկն զՄխիթարն, և զմայրն իւրեանց զՄանուշակն. և լի բերանով աստուած-ողորմի ասացէք, ո՛վ ընթերձողք, յորժամ երգէք զայս երգ ալրհնութեան. և աստուած ողորմի մեզ՝ գըծողիս և ձեզ՝ ողորմացողացդ. ամէն։

### 729

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 8237

Հեա. ստացող՝ Մեծատուր

196ր Ես Մեծատուրս, որ գնեցի զԱւետարանս ի հալալ վաստակոյ իմոյ, յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց, և ամենայն արեան մերձաւորաց, և զաւակին իմոյ Ստեփանոս իրիցու, ի վայելումն անձին իւրոյ։ Աղաչեմ զձեզ քահանայք, որք կարդայք և տեսանէք յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր և աստուած զձեզ յիշէ յիւր միւսանգամ գալուստն, ամէն։

Յիշեցէք և զԱմիր-Սարգիս ոսկերիչն, որ զխաչն շինեց* և շինել է փեսո և զօետա[րա]նս զարդարեց. աստուած ողորմի իւր հոգոյն, ամէն։

### 730

### ԼՈՒՍՄՈՒՆՔ ՍՈՒՐԲ ԳՐՈՑ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑԻՈՅ

Երևան 750

Հեա. ստացող՝ Մըծդին

170ա Զստացող գրոցս զՄըծդին ոսկերիչն և զիւր կողակիցն յիշեցէք ի Քրիստոս և աստուած-ողորմի ասացէք, և աստուած ձեզ և մեզ ողորմեսցի, ամէն։ Այլ և զայնոսիկ, որք ունին երախտիք ի սուրբ գիրքս, ամէն**։

### 731

### ԱՒԵՏԱՐԱՆ

Մ. Բարխուդարեանց «Արցախ», էջ 139

Նկարող՝ Մինաս

ԶՄինաս Նկարող յիշեցէք ի բարին Քրիստոս և աստուած զձեզ յիշէ***։

---

* Ամիր-Սարգիս ոսկերչի շինած խաչը չի պահպանվել։

** Այս հիշատակարանը ըստ հնագրական տվյալների գրված է ԺԵ—ԺԶ դարերում։

*** Գրված է 9բ էջի նկարի տակ. ձեռագիրը, որ գտնվում էր Շուշի քաղաքում (տե՛ս «Արցախ», էջ 139—140), այժմ Նյու-Յորքի Pierpond Morgan թանգարանին է պատկանում և պահվում է 749 համարի տակ։ Հիշատակարանը տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», մասն Բ, էջ 164։

## 732

### ԳԱՆՁԱՐԱՆ

*Երևան, պատառիկ 943*

*Հետ. ստացող՝* Ըռէս Միրզայ
*վայր՝* ի գեօղն Աւերակի

... *Արդ ես՝ ըռէս* Միրզէս. *տեսի զսուրբ տառս, որ կոչի Գանձարան, զի անկեալ էր գերի ի ձեռս այլազգաց և բստացա զսա ի հալալ ընչից իմոց. ետու վերստին կազմել և սակաւ ինչ զպակասն լնուլ. և եդի յիշատակ ի գեօղն մեր* Աւերակի, *ի դուռն սուրբ Ստեփաննոս Նախավկային, անջինջ յիշատակ հոգւոյ իմոյ և ամենայն ննջեցելոց իմոց...*

## 733

### ԳԱՆՁԱՐԱՆ

*Երևան 4335*

*Գրիչ՝* Մխիթար եպիսկոպոս

68ր *Ո՜վ հանդիպող եղբայր, աղաչեմ յիշել ի սուրբ աղաւթս ձեր առ յոյսն ամենեցուն ի Քրիստոս աստուած մեր՝ զմեղապարտ անձն* Մխիթար *եպիսկոպոսի, որ միայն եմ անուամբս կոչեցեալ և ոչ գործով։ Այլ յաբարիչն իմ ապաւինելով կամ տարակուսեալ, և աստուած յիշողացդ ողորմի, ամէն։*

## 734

### ՃԱՇՈՑ

*Յ. Քոսեան, Ցուցակ Կարնոյ գիւղերու Ձ (Երկնիստ գիւղ) ՀԱ, 1963, էջ 215—216*

*Գրիչք՝* Մխիթար, Դալուստ

... *Զոր տեսեալ զայսպիսի գանձս... և մեծ փափաքմամբ ստացաք զսայ յիշատակ հոգոց մերոց, ինձ՝* Զաւճարիս, *և կենակցի իւրում (իմոյ)* Դինարին, *և հայրն իմոյ* Սարգսին, *և մայրն իմոյ* Տիկնայ, *և եղբարցն* Սարգսին *և* Պալիկին, *և քուերն իմոյ* Թէլունին *և* Նազխաթունին, *և եղբաւրորդոյն իմոյ* Ազիզբէկին, *և քուեր որդոյն իմոյ* Մելիքսէթ *սարկաւագին, և* Ազիզբէկի *կենակցին* Խաներենոյ...

/// *Աստուածածն[ի /// եւ սուրբ... նահատակիս, և սուրբ Աչոյն, և Թրի սուրբ Նշանիս, և Արամունից սուրբ խաչիս, և Թեւաւոր սուրբ Գրիգորիս, և այլ բազմահաւաք սրբոցս, որ աստ կան հաւաքեալ։*

*Գրեցաւ ձեռնտուութեամբ և բազում աշխատութեամբ* Մխիթարի *եւ* Դալստի *արեղայից, անուամբ միայն և ոչ գործով, և հարազատ եղբարց փծուն և անարուեստ և մեղապարտ և անարժան գծողի։*

*Եւ աղաչեմ զձեզ, ո՜վ սուրբ հարք և եղբարք, խոշորութենէ և սխալանաց գրիս անմեղադիր լերուք, զի ի դառնութենէ ժամանակիս և ի*

ցանկութեանց աշխարհիս... շտապեցայ, զի կարն այս էր... Հաստատուն պահողք և խնամողք աւրհնիք յաստուծոյ... Եւ սպիտակ լաթով բանէ, և փառաւոր պահէք, և աստուած ըզձեզ ամբողջ պահէ հոգով և մարմնով. զի ամէն գրի մէկ աչք է սպիտակացուցած և ապա գրած։ Կատարողք աղաչանացս աւրհնենք աստուծոյ. ամէն։

785

ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 7451

Ա

Հետ. ստացող՝ Մխիթա՛ր

344բ ... Զվերջին ստացաւղ սուրբ Աւետարանիս զՏէրուն քահանայն, որ ստացաւ զԱւետարանս ի հալալ արդեանց իւրոց՝ յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց, և ամենայն արեան մերձաւորաց իւրոց, ի վաելումն զաւակաց իւրոց Առաքելին և Դասապետին և Յակոբին և Դոշին, որք փոխեցան ի Քրիստոս, զորո[ց] տէր աստուած ընդ առաքելոցն դասեսցէ զնոսա։

Արդ, Աւետարանս ի Տէրուն իրիցուն անգաւ ի յորդին իւր՝ ի Դասապետն. ի Դասապետէն անգաւ յաղբաւրորդին՝ ի Մխիթար էրէցս, ի Մխիթար իրիցուն ինգաւ յորդիքն իւր՝ նորաբողբոջ ծաղկանցն Յոհանէսին և Յակոբին և Յովանիսին, զոր տէր աստուած վաելել տացէ նոցա ընդ երկայն աւուրս։

345ա Յիշեցէք ի Քրիստոս զՍիրմէն զՄխիթար իրիցու տղաոց մէր*, որ է բարեպաշտ և հաւատարիմ և աստուածասէր ծառայ աստուծոյ, զոր տէր Աստուած ընդ իւղաբերից կանանցն և ընդ սրբոց Հռիփսիմեանց դասէ զնա, յարքայութիւն երկնից և իւր սուրբ տեսլեանն արժանի առնէ, ամէն։

Բ

Գերութիւնից ազատող՝ Թաղրիվէրան

345ա Դարձեալ յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր զԹաղրիվէրան, և զծնօղս իւր զՍանասարն և զՓաշէն, և զկողակիցն իւր զԽաբիբն, և զորդին իւր զՄիրաշէն, որ սուրբ Աւետարանս ազատեցաք ի Սաւֆու գերութենէն, որոյ տէր Աստուած զերկնից արքայութիւնն իւր տացէ, և իւր ծնողաց. ամէն։

786

ՄԱՇՏՈՑ

Երևան 3490

Գրիչ՝ Մխիթար

45բ ԶՄխիթար եպիսկոպոս գծող տառիս յիշեա։

---

* Իմա՝ մայրն։

## 737

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 1722*

ա

Գրիչ՝ Մկրտիչ

4ա *Քրիստոս աստուած, սրբոյն Վարդանայ փիլիսոփաի բարեխօսու-թեամբն ողորմեա ուսթայ* Ներսէսին, *և իւր ծնօղաց՝ հաւրն* Յովանիսին *և մօրն* Լոյս-Տիկնէն. *և եղբօրն* Մկրտչին, *և կենակցին* Խաթուն-Մելէքին, *և որդոցն* Մելքէսէթին *և* Բուսկէն, *ամէն։*

բ

36ա Ջ3ովանննէս *քահանայն յիշեցէք ի Քրիստոս, զի այսօր ԺԵ.* (15) *[ա՞ւր] է որ մեռաւ, աղաչեմ զձեզ՝ բոլորով սրտիւ աստուած-ողորմի [ասացէք]։*

գ

39ա Ջ3ովաննէս *քահանայ յիշեցէք ի Քրիստոս, և* զխաչատուրն, *և զիս զեղկելի գրիչս* զՄկրտիչ *յիշեցէք ի Քրիստոս։*

դ

50ա *Բարեխօսութեամբ և աղօթիւք սրբոյն* Նիկողաոսի *ողորմեա Քրիս-տոս աստուած* Յովաննէս *քահանային, և* Արուս-Խաթունին. *և ինձ* Մկրտչի *մեղապարտ գրչի սուտանուն քահանայի, և իմ ծնօղացն, և ամենայն արեան մերձաւորաց։*

ե

140բ *Զատացող պատմութեանս զուսթա* Ներսէսն, *և զհայրն իւր* զՅովան-նէս, *և զմայրն* զԼոյս-Տիկին, *և զեղբայրն* Մկրտիչ, *և զկենակիցն* զԽա-թուն-Մելէքն, *և զորդիսն* զՄելքէսեթն, *և* զԲուսիկ *յիշեցէք ի Քրիստոս, և* զՄկրտիչ *գծողս։*

զ

167բ *Քրիստոս աստուած, քո սուրբ առաքելոց բարէխօսութեամբդ ողոր-մեայ* Ներսէսին, *և ծնողաց նորա՝ հաւրն* Յովանիսին *և մօրն* Լոյս-Տիկնէն, *և եղբօրն* Մկրտչին, *և կենակցին* Խաթուն-Մելէքին, *և ամենայն արեան մերձաւորացն։ Եւ ինձ՝ մեղաւոր գրչի սուտանուն* Մկրտչի *և անարժան քահանայի, հօրն իմ* Անդրէաս *քահանայի, և մօրն* Սիսմէլէքի, *և ամե-նայն արեան մերձաւորացն իմ, աստուած զիշողսն յիշէ, ուխ*։*

---

* *Այսինքն՝ «ամէն» (փոխարինագիր ծածկագրով)։*



33—271

## 738

## ԾԱՌԸՆՏԻՐ

Երևան 933

Գրիչ՝ Մկրտիչ

ա

14ա Յորոց և զմեզ փրկեսցէ Քրիստոս աստուած ի հնարից սատանայի։ Մանաւանդ զստացող գրոցս՝ զՍերուն քահանայն, զՓաշա-Խարունն, և զՍուլտան-Մելիքն, և զԿարապետ քահանայն*։

բ

16բ Ողորմի ստացողի գրոցս ... և Մկրտիչ գծողիս, և իմ ծնողացն, և կարդացողաց, և լսաւղացն, ամէն։

## 739

## ԴԱՆՁԱՐԱՆ

Երևան 3866

Գրիչ՝ Մըկըրտիչ

257բ Փառք...՝ որ ետ կարողութիւն մեղսամերկ և տըկար անձին Մըկըր-
տիչ լոկանուն աբեղայի՝ անարհեստ գրչի հասանել յաւարտ սորին։
Գրեցաւ եղանակաւոր տառս մեծաւ ջանիւ և փափաքանաւք... ի լաւ
և յընդիր աւրինակէ ի Տերենց մատամբ գըրչէ։
Այլ և յիշեսջիք զհեզահոգի և զպատուական ծերունին զՅակոբ աբե-
ղայն, որ լուեալ ի սուրբ և յաստուածաբան գրոց զերանական բանն, որ
ասէ՝ Երանի որ ունիցի զաւակ ի Սիոն և ընդանեակ յԵրուսաղէմ, վասն
որոյ ետ գրել զսայ ի հալալ արդեանց իւրոյ և ետ ի դուռն սուրբ Կիրա-
258ա կոսաւ տիաւք նահատ//ակին և այլ սրբոց, որ աստ կան հաւաքեալ, յի-
շատակ իւր, և հաւրն Կարապետին, և մաւրն իւրոյ Դայիանեա, և եղբաւ-
րըն իւրոյ Գալըստին, և ամենայն արեան մերձաւորացն՝ կենդանեաց և
հանգուցելոց, զոր տէր աստուած ողորմեսցի ամենեցուն, ամէն։
Այլ և յիշեսջիք զծաղիկն անթառամ՝ զաւրհնեալն յազգէ՝ զտէրու-
թիւնն ի Քրիստոսէ՝ զտեսուչ [փառ]աւոր հաւտին Քրիստոսի՝ զարհեպիս-
կոպոսըն մեր զտէր Յովանէս, և զհայրն իւր զպարոն Պէկբամուր, և զեղ-
բայրն իւր զպարոն Խոճաճանն, որ երախտաւոր** են և կամակից այսմ
բանիս...
258բ Այլ և յիշեսջիք զառաջնորդ վան//ացս սուրբ Կիրակոսու զտէր Մար-
տիրոս եպիսկոպոս, և զԳալուստ երէցն, և զսիրայնունգ եղբարքս մեր
զԹորոս աբեղայն, և զտէր Ալէքսանոս, և զտէր Կիրակոսն, և զտէր Յո-
վանէս, և զտէր Ներսէս, և զայլ ամենայն գործաւորք վանացս, զոր տէր
ողորմեսցի ամենեցուն, ամէն։

* Նման հիշատակագրություններ կան բոլոր հատվածների վերջում։ Դրանցից շատերում սույն Կարապետը նշված է որպես «գծող», այսպես. «...զՍերուն քահանայն, և զկենակիցն իւր զՍուլտան-Մելիքն, և զորդին իւր զԿարապետ գծողն, ամէն» (էջ 247բ)։

** Գրչի կողմից գրված է «երաղտաւոր», մեկ ուրիշը՝ կարմիր թանաքով «ղ»-ն դարձրել է «խ»։

*Դարձեալ, մի ոք իշխեսցէ վաճառել կամ գրաւ դնել կամ գողանալ և կամ հանել ի գրանէն սուրբ Կիրակոսու, և թէ ոք յանդգնի և հանէ՝ կամ առաջնորդ կամ աբեղայ և կամ այլ ինչ՝ զմասն խաչահանուացն առցէ և զՅուդայի։ Դարձեալ աղաչեմ զձեզ եկեղեցապան և աբեղայք՝ խնամ տարէք և լաւ պահեցէք, որ ուրհնիք յաստուծոյ և յամենայն սրբոց նորա, ամէն։*

## 740

## ՃԱՌԸՆՏԻՐ

**Երևան 4950**

Գրիչ՝ Յակոբ

ա

18ա *Զանպիտանս յամենայնի*
*ԶԱկոբ գրծող՝ անձն եղկելի,*
*Յիշման տրէք ձիս արժանի,*
*Որ զայս բանս գրեցի*
*Վասն ակտութեան ամենայնի։*

բ

67բ ... *Որոց աղաւթիւքն ողորմի ստացողի գրոցս պալոն* Սահակին, *և ծնաւղաց նորին* Յոհանիսին *և* Աղութին, *և կենակցին իւրոյ* Սուրաթին, *և զաւակացն* Յովանիսին, Մկրտչին, *և* Կարապետին, *և* Կաֆաին:

գ

106բ ... *Մանաւանդ զստացող գրոցս* զՍահակն *և* զԱստուածատուրն, *և սուրբ Կարապետին բարեխաւսութեամբ ողորմի Քրիստոս զաւակաց* Սահակուն՝ Կարապետին, Մկրտչին *և* Յովանիսին *և* Կաֆաին *և* Թումայ *քահանային, և անպիտան գրչիս* Յակոբ *սարկաւագիս և ծնաւղացն իմոց։*

դ

253բ *Յիսուս Քրիստոս՝ տէրդ ամենի*
*Եւ արարիչդ հանուրց ազգի,*
*Սուրբ աղաւթիւքն Գրիգորի՝*
*Լուսաւորչին Հայոց ազգի,*
*Ողորմեա գրոցս ստացողի՝*
Սահակ *անուն տանուտէրի,*
*Եւ ամուսնոյն իւր* Սուրաթի։
*Մանաւանդ սորին գրչի*
Յակոբ *անուն սարկաւագի,*
*Որ եմ գործովս յոյժ աղտեղի,*
*Եւ տաղտկացեալ յոյժ մեղօք լի,*
*Եւ տառապեալ ի մէջ ախտի,*
*Աղաչանօք սուրբ Գրիգորի*
*Տէր և աստուածն յիս գթասցի,*

*Եւ լըսողացդ ամենայնի,*
*Եւ Յովանէս քահանայի*,*
*Որ մարմնաւոր հայր ինձ կոչի,*
*Որ ուսուցեալ է ինձ զարուեստ գրչի։*

## 741

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Վիեննա 295, Յ. Տաշեան, Ցուցակ, էջ 723—724*

Գրիչ՝ Յակոբ

338բ— *Փառք... որ տրամադրեաց զմատունս վերջացեալ տկար հոգւոյ Յա-*
340բ կոբ [*ան*]*արժանի գրել և կարգել զճառս երախտեաց աստուածագործ սքանչելեացն...*

*Արդ, այսմ աստուածեղէն և երկնապարգև գանձիս և լուսափայլ մարգարտիս ցանկացօղ եղեալ սրբասէր և աստուածասէր խօջայ Բաղ*տասարն ... *ստացաւ զսա ի վայելումն անձին, և յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնաւղացն իւրոց, և ամենայն արեան մերձաւորացն, ամէն։*

*Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զպարոն* Բաղդասարն, *և եղբայրն պարոն* Յովանէսն, *և սոցա ծնօղքն պարոն* Յակոբն *և* Խաթունն, *որ հանգուցեալ են ի Քրիստոս, աստուած-ողորմի ասացէք, ամէն։*

*Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զպարոն* Բաղտասարն, *և կողակիցն իւր* զՄարիտատն, *և որդիքն դեռաբուսիկ* Սարգիսն, Յակոբջանն, Սահ-ւատն, *և հանգուցեալ որդիքն* Գրիգորն *և* Մարտիրոսն, *և դստերքն* Մինախաթունն, Խանումաղէն, *հանգուցեալ դստերքն՝* Հռոմսիմէն, Խանումաղէն, զՍիմէն...

*Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զպարոն* Բաղտասարն, *և եղբայրն պարոն* Յովանէսն, *և զսորա կողիկիցն* Եղիսաբեթն, *և որդիքն* Մանուկն, Յեավրին, *և զհանգուցեալ որդին* Մկրտիչն, *և զդստերքն* Վարթխաթունն, Բէկումն, Խաթունն, Սիսիլէն:

*Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զպարոն* Բաղտասարն, *և զպարոն* Յովանէսն, *և զսորա պապն զպարոն* Բայրամն, *և* Հանիկն, Խանումաղէն *և սոցա որդիքն* Յակոբն, Աւետիսն, Դաւուտն, *պարոն* Բաբէն, զՄելքոնն, Գասպարն, *որ հանգուցեալ են...*

*Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զպարոն* Բաղտասարն, *և զպարոն* Յովանէսն, *և սոցա եղբայրն* Յեավրին...

*Դարձեալ յիշեցէք... սոցա հօրեղբորորդիքն՝* զՂազարն *և* զՍաֆարն, *և միւս հօրեղբօրորդին* զԹասալուն, *և զմիւս հօրեղբօրորդին* Բայրամն, Ջիլաւն:

---

** Ձեռագրի մի փոքր մասն ընդօրինակել է Յակոբ գրչի հայրը՝ այս Յովհաննես քահանան։ Նա թողել է նաև մի երկու հիշատակագրություն ստացողների և իր անվան հիշատակությամբ. «Յիշեցէք ի Քրիստոս և զՅովանէս գծաւղ» (էջ 284բ) և այլն։ Յակոբ գրիչը բացի բերածներից ունի բազմաթիվ այլ հիշատակագրություններ, որոնցում նույն ձևով ու բառերով թվարկում է ձեռագրի ստացողների անունները։ 151բ էջի հիշատակագրության մեջ նա հայտնում է նաև իր մոր անունը, այսպես. «և զծնօղսն իմ զՅովանէս քահանայն և զՄարթայ-Խաթունն»:*

Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զպարոն Բաղտասարն. և զպարոն Յովաննէսն, և ամենայն կենդանի և հանգուցեալ սոցա. և որ յիշէ՝ յիշեալ լիցի առաջի սոցա, ամէն։

## 742

### ԳԱՆՁԱՐԱՆ

*Երուսաղէմ 278, Ն. Պողարյան, Ցուցակ, Գ, էջ 96*

Գրիչ՝ Յակոբ
վայր՝ Արճոյ Բաղաէ

557ա Յիշեցէք յաղաւթըս ձեր յերկնային
Զթըմրեալըս մեղաւք ի յաղտըս կրկին,
Քաղաքէն Արճոյ՝ զՆերսէսի որդին,
ԶՅակոբ մեղուցեալ գրիչըս վերջին։

## 743

### ՀԱՄԱՌԱԻՏ ԺՈՂՈՎՈՒՄՆ ՄԵԿՆՈՒԹԵԱՆ ՍՈՒՐԲ ՄԱՐԳԱՐԷԻՆ ԵՍԱՅԵԱՅ... ՀՐԱՄԱՆԱՒ ՏԵԱՌՆ ՀԱՅՈՑ ՀԵԹՄՈՅ Ի ԳԷՈՐԳԵԱՅ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ*

*Երևան 4949*

Գրիչ՝ Յակոբի եղբայր

ա

. . . . . . . . .**

370ա Շատ աղաչեալ զտէր մատեան,
Մինչև ի գուլժ շարժեալ ինքեան,
Որպէս Գրիգորէսն խալիֆայն,
Զկայսրն սեռիցըն յունական,
Առեալ և գայր յոյժ ցնծական
Եւ հասանէր յիւր մենարանն։
Եւ ես լուայ վլուր գալստեանն,
Ելեալ գնացի յոյժ բերկըրմամբ։
Ձայնէր, ձայնէր ընդելական,
Գիրկս արկանէր համբուրական.
Առ զքո զխնդիրըն ըղձական,
Որում բաղձիր դու մեծ տարփմամբ։
Զանձս եմ եդեալ ես գրաւական
Եւ քեզ բերեալ ակն պատուական,
Նիստ և գրեա անձանձրական,
Քան զյիշատակ մնացական,

* Մեկնությունը քաղված է, կազմված Եփրեմ Ասորու, Հովհ. Ոսկեբերանի, Կյուրեղ Աղեքսանդրացու և Սարգիս վարդապետի մեկնությունների շարահարությամբ։
** Պակաս է, հավանաբար, մի ամբողջական թերթ։

Զի վերաբերիչ է մտաց մարդկան
Վերծանողացըն սորին բան։
Ինքն փութապէս առեալ վախճան
Եւ ինձ եթող սուգ անթվական,
Զի տարաժամ էր մահ սորայն,
Վասն իմ չարեացն անեզրական.
Ոչ նմանեալ Աբրահամեան,
Անհամեմատ Իսահակայն,
Զի ծերացեալ ին երկոքեան
Եւ մերձեցեալ ի գերեզման,
Վասն այն կսկիծ էած այնքան,
Զի չէ ումեք բաղդատական,
Հատոյց զպարտսն նախնական,
Դառնալ ի հող յորմէ ստեղծան,
Խոնարհեցաւ ի հող մահուան
Եմուտ յարգանդն տարրական,
Եղ ի հովտէս նա տրտմական,
Ի կենցաղոյս պատրողական
Յուխտեալ տեղին տէրունական
Ի խոստացեալն որդոց մարդկան,
Խառնեալ է ի ջոկս անմարմնական
Եւ միշտ ցնծայ անպրաւական.
Սպասեալ մնայ տեառն խոստման
Ի նորոգեալ զազգս մարդկան։
Եւ ես այրիմ հրոյ նման
Եւ տաչորիմ առանց կիզման,
Ողբս յորինեմ յարմարական
Որպէս Դաւիթն Յովնաթանեան,
Կամ տեսանողն ղևտական
Ի դէմս որդոց ժողովրդեանն։
Աղաւտացաւ լոյս գիշերին,
Եւ արուսեակն առաւօտին,
Խաւարեցաւ ի մէջօրեայն
Արեգակն ամարանեայն,
Գօսացաւ տունկն անթառամ
Ցամաքեցաւ գետն յորդահամ,
370բ Խըցաւ աղբիւրն ցրտական
Պասքեալ ոգոյս որ դիմեալ կամ,
Եղուկ և վայ հազար անգամ,
Որ զրկեցայ դէմ յանդիման.
Զէ յերկարելն յարմարական,
Զի մի լսօղքն ձանձրանան։
Այլ ճար չունիմ քան գոհանամ
Իմ արարչին փառք յաւիտեան։
Բայց ես նստեալ գծագրեցի

Տըկար անձանբ արտասուալի,
Տրտմեալ հոգով և վշտալի,
Թշուառականս յամենայնի,
Զի յիշատակ սայ եղիցի
Մեզ և մերոցն ամենայնի,
Նաև ծնաւղաց մերոց բարի,
Որք ի ժողովն են այնմ երկնի,
Այլ և եղբօրս իմ Յակոբի,
Դեռաբուսիկ կրօնաւորի,
Զի մահ սորա անօրհասի
էր պատուհաս վասն իմ չարի.
Արդ պատահողք այս մատենի
Եւ ընթերցողքըս սուրբ տառի՝
ԶՅակոբ եղբայրն իմ նազելի,
Զընդրեալ արին յամենայնի
Ձեզ ի յանձին լիցի յազդի
Յիշել առ տէր զսորայ զհոգի,
Եւ յիշողացս և յիշելոցս ամենայնի
Առհասարակ ողորմեսցի,
Յորժամ բազմի ի մեծ բեմի
Յիսուս փրկիչն ամենայնի՝
Ձեզ հատուսցէ մասն բարի
Ի յօթեվանսն երանելի,
Եւ որով չափով չափէք՝ ձեզ չափեսցի
Յարդարամէտն կշըռի,
Եւ ինքն աւրհնեալ և եղիցի
Այժմ, յաւիտեանս յաւիտենի։

Բ

114բ Աւա՜ղ, ընաղելի զեղբայրն իմ զՅակոբ, որ փոխեցաւ առ Քրիստոս եւ ինձ անտանելի սուգ էած և կսկիծ։

Գ

121ա Զյոգնամեղ գրողս աղաչեմ յիշել ի տէր, եւս առաւել զՅակոբ կրաւնաւորն՝ զյանգուցեալն առ Քրիստոս, ամէն։

Դ

205բ Մասնակից և փառակից աջագահ դասուն և երանելի հանգստեանն արժանի արա Քրիստոս զկերդակից եղբայրն իմ զՅակոբ կրաւնաւորն. Եւ զիս՝ զտառապեալ և զթախծեալ գրիչս մխիթարեա հոգովդ քո սրբով, որ սփոփիչն և մխիթարիչն է ամենայն տրտմելոց, և քեզ փառք յարաբածոցս*։

---

* Ձեռագրի վերջին (371ա) էջի վրա՝ հին նոտրգրով, որ հնագրական տվյալներով ժե. դարի վերջից կարող է լինել, հետագա ստացողներից մեկի կողմից գրված է մի չափածո հիշա-

## 744

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 6795*

*Հետ. ստացող՝* Յոհան

159ա *Յիշեցէք ի Քրիստոս և աստուած-ողորմի ասացէք զվերջին ստացող սուրբ Աւետարանիս՝ աթմաքչի մղտեսի* Յոհանին, *և կողակցուն իւրոյ՝* Սուլդանին, *և կողակցու մօրն՝* Մելիքզատին, *և այլ ամենայն զարմից նո-*
*րին, որ ստացաւ զսուրբ Աւետարանս ի հալալ վաստակոյ իւրոյ ի թվա-*
159բ *կա//նութեանս Հայոց /// (ջնջված) ննջեցելոցն հոգոյն շուրջ ածեն, հի-*
*վանդաց առողջութիւն տացէ, և ինքն զվարձն ի Քրիստոսէ առցէ, ամէն։*
*Հայր մեր որ յերկինս**։

## 745

## ՀԱՐՑՄԱՆՑ ԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

*Երևան 4005*

*Գրիչ՝* Յոհանէս

354ա *Եւ անարժան գծող սորին* զՅոհանէս *յանցաւոր յերես անկեալ աղա-*
*չեմ յիշել միով տէր ողորմաիւ և յիշօղքն յիշեալ լիցին ի Քրիստոս,*
*ամէն***։

## 746

## ԿԱՆՈՆԳԻՐՔ ՀԱՅՈՑ

*Երևան 10137*

*Գրիչ՝* Յոհաննէս

ա

108ա *Ո՛վ եղբայր,* Յոհանէս *ղսակաւագիծս վասն սիրոյն Քրիստոսի մի մոռանայք։*

---

*տակարան։ Ստորև բերում ենք այդ հիշատակարանի պատմական արժեք ներկայացնող մասը.*

*«...Ով հանդիպի այսմ ծրի,*
*Յաւժար կամօք զսայ ընթերցցի*
*Յիշման առնէ զիս արժանի*
*Զտրարողս դուզնաքեայ բանի՝*
*Զ*Սիմէօվնըս *փանաքի*
*Այլ և զընկերքս իմ նազելի՝*
*Աշակերտեալք տեառն բանի*
*Առ* Յօվաննէս *քաջ րաբունի,*
*Որ է յերկրէն* Ըռշտունի.
*Զտէր* Թաւսեղն *հեզահոգի,*
*Զտէր* Ստեփաննոսն *պանծալի*
*Զտէր* Յօվանէսն *առաքինի...»*

* *Հնագրական տվյալներով հիշատակարանը գրված է ԺԵ—ԺԶ դարերում։*

** *Նման հիշատակագրություններ կան նաև այլ էջերում։*

Բ

112բ Ո՜վ հեղահոգի եղբայր, ընկալ զսակաւ լոմայս և յաղոթից մի մոռանայր, զի վասն յիշատակի [գրեցի]։

Գ

280ա Անմեղագիր լերուք, նեղացանք, աւրերս ամբ է և ցուրտ և սրտերս մալուլ*։

## 747

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

**Երևան 6608**

Գրիչ՝ Յոհաննէս ոսկերչի որդի

ա

314բ ... Շնորհաւք ամենակալին աստուծոյ սկսայ և ողորմութեամբ և աւգնականութեամբ նորին յանգ ելեալ կատարեցաւ յոյժ պիտանի և աւտակար հոգոյ և մարմնոյ գիրքս այս Վարդան վարդապետի ասացեալ**, որ է բուրաստան ծաղկաւէտ և դրախտ ամենալի պտղովք, ի յիշատակ Յոհաննէս գրծագրիս, և ծնողաց իմոց ոսկերիչ Ամիրպէկի և մաւրն իմոյ Խասխաթունի***, և ամենայն արեան մերձաւորի, և ի պատուէր անլռելի, արծան անջնջելի և ծառ կենաց պտ[ղ]ով իլի, կամուրջ իմանալի, մահ |ի.

Բ

153բ Ընդ որս և ինձ՝ թարմատարի
Եւ սուտանուն տըխմար գրչի,
Յոհաննէսի մեղապարտի,
Ինձ թողութիւն ի ձէնջ լիցի.
Իւ այսմ մեղաւքս կամ տառապելի
Եւ ի զազիր և չար գործոցս եմ աղխտալի։
Յաւղ պարգևաց իւր կողածնի՝
Յոգիս նսեմ անձրևասցի,
Բրխել զբոյսն ուրախալի՝
Տալ զպտուղն ցնծալի,
Զի ըստ ցաւղոյն, որ յիս շնորհի՝
Հովիտ մտացս կանանչ ասի։
154ա Որդիք |ի լուսոյ նոր Սիովնի
ԶՅոհաննէս սուտ քահանա յիշեցէք յայսմ տեղի,
Զի հոգիք ձեր արժանասցի
Ի յառագաստ երկնաւորի։

* Գրված է ստորին լուսանցքում, մի այլ գրչի կողմից։
** Ձեռագրի նյութերի մեջ զգալի տեղ են բռնում Վարդան Այգեկցու քարոզները։
*** 164բ էջի հիշատակագրության մեջ հայտնում է, որ մայրը՝ Խասխաթունը՝ «հանգուցեալ է առ Քրիստոս»։

Գ

Ընդ նոսին և ինձ մեղապարտիս
159ա Եւ սուտանվուն քահանայիս,
Որ մականուն կոչի Ոսկերչի որդիս
Եւ յոյժ տրխմար կամ ի չարիս,
Որ ոչ հնազանդիմ սպատուիրանիս,
Եւ զիս յիշեցէք յայսմ տեղիս...

### 748

### ՄԱՇՏՈՑ

Երևան 999

Գրիչ՝ Յոհանէս
վայր՝ Շատիկի վա՞նք

ա

235բ Ո՜վ սրբազան քահանայք և կարդացողք, յիշեցէք Յոհանէս սուտանուն աբեղա՝ զանպիտան գծողս, որ ոչ աստուծոյ եմ պիտոյ և ոչ մարդոյ, նայ և զծնաւղն իմ՝ զհայրն իմ էլբէկ, և զմայրն իմ Մարգարիտն. և զեղբարսն իմ, և զամենայն արեան մերձաւորսն, ամէն։

Եւ աւարտումն գրոյս՝ ի վաղն վարդավառ է։

Բ

236ա ///* զՄէլիքսէթ աբեղէն, և զԴէտայ տնտեսն, և առհասարակ միաբանքսն։ Տէր աստուած անսասան և հաստատուն պահեսցէ միաբանս վանիցս մինչև իւրեանց մահուանն, և նմայ փառք յաւիտեանս, ամէն։

Դարձեալ յիշեցէք զԳրիգոր եպիսկոպոսն, որ է Շատիկի վանքի առաջնորդ, բազում հարկիս արար, որ գիրս գրի. ի մի բերան աստուածողորմի ասացէք, ամէն։

Գ

51բ Յիշեցէք Մանուէլ աբեղէն, որ էր մալազ. եբեր շատ նուշ ու խնձոր։

Դ

122ա Յիշեցէք զԳրիգոր եպիսկոպոսն, որ հայրական գթով և մայրական խնամով հարկիս արար։

Ե

216բ Յիշեցէք զԴադոսն, որ երեկ՝ մեզ բալ եբեր՝ կերանք։

---

* Գլխավոր հիշատակարանի վերջին մասն է։ Սկիզբը (հավանաբար մեկ ամբողջ թերթ) չի պահպանվել։

## 749

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան, պատառիկ 946

Նուիրատու՝ Յովանէս
վայր՝ Սալնապատ

Ես՝ ոսկերիչ Յովանէսս և կենակիցս իմ Թուվանդայ՝ ետուք զսուրբ Աւետարանս ի դուռն սուրբ Կարապետին և սուրբ Աստուածածնին, ի վանքն որ կոչի Սալնապատ, յիշատակ մեզ և մեր ննջեցելոցն. և մի ոք իշխէ հեռացուցանել զսուրբ Աւետարանս ի դրանէ սուրբ եկեղեցեացս ոչ ի մերոց յազգականացն և ոչ ի յօտարաց, ոչ ի քահանայից և ոչ ի յաշխարհականաց, և ով ոք որ յանդըգնի և մոռանայ զերկիւղն աստուծոյ, հեռացուցանել ջանայ զսա ի սուրբ եկեղեցեացս՝ հեռասցի ինքն յողորմութենէն աստուծոյ և զմասն զՅուդային առցէ և զանէծքն զխաչահանողացս և զԿայենին ժառանգեսցէ, ամէն։ Իսկ խնամողքն և կարդացողքն ւարհնին յաստուծոյ և յամենայն սրբոց, ամէն։

## 750

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Երևան, պատառիկ 933

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ Վայոց-ձոր

Փառք... որոյ շնորհաւք և ողորմութեամբ յարմարեաց զմատունս մեղուցեալ գծագրիս Յովանէս սուտանուն քահանայի, որ անւամբ յորջորջիմ և գործովք և ոչ իմիք, և հարազատ որդւոյս իմոյ Յակոբ դպրի հասանել յաւարտ այսմ հոգենորոգ և աստուածայարմար տառիս, որ ասի Յայսմաւուր...

Արդ, զայսպիսի հոգէնորոգ և զանուշահոտ բուրաստանս տեսեալ սրբասնեալ և հոգիընկալ կրաւնաւորս տէր Սարգիս ճգնաւորս, ի գաւաոէն Վայոց-ձորոյ, ի սուրբ ուխտէն Հերմոնի վանաց, և ցանկացաւ այսմ երանաւետ մեծութեանս և փարթամ ///։

## 751

### ՏՕՆԱՊԱՏՃԱՌ

Երևան 5443

Գրիչ՝ Յովանէս վարդապետ

64r Զստացող սուրբ գրոցս զՍահակ եպիսկոպոսն, և զծնողսն իւր՝ զհայրըն զԿիրակոսն և զմայրն զՄարիամն, և զեղբայրքն զԱբրահամն և զՊաւղոսն, և զայլքն յիշեցի ի տէր և լի բերանով և ուղիղ մտաւք աստուածողորմի ասացէք նոցա։ Ընդ յիշման սոցին մաղ[թ]եմ մոխրամած երեսաւք յիշել և զիս զբազմամեղս զՅովանէս, որ ունիմ զանուանս վարդապետաց և գործով նմանեալ յետոյ ռամկաց, որ եմ ազգակից և եղբայր-

*որդի սոյն* Սաճակ *եպիսկոպոսիս ըստացողի գրոցս, որ աշակերտեցաւ քաջ և արի վարդապետին* Ներսէսի, *որ էր յաշակերտաց քաջ րաբունոյն* Գրիգորի՝ *մականուն* Ջորթան *կոչեցելոյ. և եմք Հայրենի ազգաւ* Մամիկոնիկ. *և բնիկ գաւառաւ ի ///**։

**752**

*ԾԱՇՈՑ*

*Երևան 4791*

*Գրիչ՝* Յովանէս

ա

391բ *Քրիստոս աստուած... զցօղ շնորհեաց ողորմութեան քո ցօղեա ի հոգի և ի մարմին ստացողի գրոցս* Յակոբ *քահանային, և ծնաւղաց նորին* Դաւթին**, *և* Ոսկինատին, *և եղբօրն* Յովսէփին, *և ինձ մեղապարտ գրչիս* Յովանիսի, *և ծնօղաց իմոց* Մկրտիչ *քահանային և* Շամամին, *և որդոցն՝* Մկրտիչ *քահանային։*

Բ

175ա *Վայ ինձ՝ եղկելոյս և մեղաւոր ծաղկողիս* Վարդանի, *որ զանունս ունիմ և զ[գործս ոչ]****։

**753**

*ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ*

*Վիեննա 228, Յ. Տաշեան, Ցուցակ, էջ 591*

*Գրիչ՝* Յովանէս

ա

4բ *Տէր Աստուած... ողորմեա ստացողի սորա, և մեղապարտ գրչիս սարկաւագ* Յովաննիսի, *և ծնողաց իմոց* Մելեքին *և* Մկրտչին, *և* Սարգիս *քահանային, և կարդացողացն։*

Բ

181բ *...Ողորմեա ստացողի սորա* Սարգիս *քահանին, և ծնողաց իւրոց, և ինձ զանարժան գրչի* Յովհանիսի, *և ծնողաց իմոց, և ամենայն հաւատացելոց, ամէն։*

---

* *Մեկ բառ ջնջված է։*

** *Ստացողների նկարները՝ «Տէր Դաւիթ և իւր որդին տէր Յակոբ» մակագրությամբ, գտնվում են ձեռագրի 162բ էջում, Քրիստոսի պայծառակերպության նկարի միջին մասում։*

*** *Վարդան ծաղկողի մեծաքանակ լուսանցազարդերը և մի քանի խոշորադիր նկարները ինչ-նատիպ են և ուշագրավ իրենց բովանդակությամբ և կատարողական հատկանիշներով։*

## 754
## ԱԻԵՏԱՐԱՆ
Երևան 4647.

Գրիչ՝ Յովանէս

253բ ԶՅովանէս սուտանուն աբեղայ և զմեղուցեալ գրչակս ի Քրիստոս աստուած յիշեայ, և աստուած զձեզ յիշայ յիւր երկնից արքայութիւն, ամէն։

## 755
## ՀԱՐՑՄԱՆՑ ԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ
Երևան 820

Գրիչ՝ Յովանէս

ա

127ա Զմեղուցեալ գծողս և զստացողս զՅովանէս սպասաւոր բանի յիշեցէք ի տէր, հանդերձ ծնօղօք իմովք և ամենայն մերձաւորօք...

Բ

325բ Զամենամեղ և զեղկելի գրիչս զՅովանէս գծող հանդերձ ծնողօքն իմովք յիշեցէք ի տէր։
Գնա ձեռս հողացեալ
Եւ մնա գիրս սևացեալ։

## 756
## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ
Երևան 7410

Գրիչ՝ Յովանէս

ա

105բ ... Ողորմեսցի Քրիստոս աստուած ստացողի գրոցս մահտեսի Աբրահամին և ծնողին իւրոյ Ոսկէծամին, և մաւրն իւրոյ Մարեմ-Տիկնա, և եղբաւրն իւրոյ Յովանէսին, և նուէրն իւրոյ Նուր-Խաթունին, և կողակցին իւրոյ Մամուշ-Խաթունին, և ամենայն արեան մերձաւորացն, և մեղապարտ գրչի Յովանէս սարկաւագի, կարդացողաց և լսողաց։

Բ

Եւ զստացող գրոցս յիշեա զմահտեսի Աբրահամն, և զծնողն իւր զՈսկեծամն, և զմայրն Մարեմ-Տիկինն, և զեղբայրն զՅովանէսն, և
230բ զքոյրն զՆուր-Խաթունն, և զկողակիցն // զՄամուշ-Խաթունն, և զամենայն արեան մերձաւորսն՝ զփոխեցեալսն առ Քրիստոս։

Եւ սպասաւորաց սուրբ տաճարիս տէր Թորոս ուագիրիցու և իւր որդոյն՝ տէր Ներսէս իրիցու, և այլ պաղի քահանայից և ժողովրդոց, առհասարակ, ողորմեսցի Քրիստոս, և ինձ անարհեստ գրչի Յովանէսի։

Գ

Միւս Գրիչ

98բ ... Ողորմի Քրիստոս աստուած Ամիրխանին, և քրոջն Սելազին և փեսին Ճերմակին, ծնողացն մահտեսի Աստուածատրին և մահտեսի Կուլպանարին, կնոջն խանիին, եղբարցն Յուսէփին, և Մոզային, Գրիգորն և Միասարին, և ամենայն արեան մերձաւորաց*։

## 757

## ՄԱՇՏՈՑ

Երևան 4961

Գրիչ՝ Յովհաննէս

ա

62ա Եւ զմեղաւոր գրիչս Յովհաննէս յիշեցէք ի Քրիստոս։

Բ

220ա Աւուրս շնորհիւ ողորմեա տէր աստուած ստացողի սուրբ գրոցս՝ աստուածասէր տանուտրոջն Թումասին, և իւր ծնօղացն, և անարժան գրչիս Յովհաննէսին, և ծնօղաց իմոց։

## 758

## ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 5511

Գրիչ՝ Յովհաննէս

132ա Քրիստոս աստուած, քո սուրբ աւետարանչացս բարեխաւսութեամբ ողորմեա ստացող սուրբ Աւետարանիս Մարգարայ միակեցին, և հօրն Քէմըլին, և մօրն Մինայի, և ամենայն արեան մերձաւորացն։

Նախ և ինձ մեղապարտ գրչի Յովհաննեսի,
Եւ հօրն իմոյ յոյժ սիրալի,
Որ Մարտիրոս անուն կոչի,
Եւ հարեղբաւրն, որ ըստ կարգի,
Որ Յովհաննէս անուն կոչի,
Վիհ և ընտիր յոյժ ի բարի,
Յերկրորդն եմուտ ի յայս ամի,
Որ փոխեցան իւրեանք ի բարի
Սուգ մեզ թողին անանցելի։
Կարճեալ աւուրք են և ոչ լի,
Որք հանդիպիք այսմ շնորհի,

---

* Այս գրիչը, որ ունի նաև այլ հիշատակարաններ, ձեռագրի սկզբի մասի (1—98 թերթերի) ընդօրինակողն է։

Մի մոռանայք զմեզ ի բարի.
Զերեսս դնեմ ձեզ ի մոխրի
Եւ աղաչեմ սրտովս լի
Զմեզ յիշեցէք դուք ի բարի*։

## 759

### ՃԱՌԸՆՏԻՐ

Երևան 4676

Գրիչ՝ Յովաննէս

ա

20ա Անքաժանելի սուրբ երրորդութիւն պարգևեա զողորմութիւն և զթողութիւն մեղաց ասացողաց և լսողաց, և ստացողի սորայ Յովաննէս կրաւնաւորի, և ծնաւղացն, և ազգացն, և եղբարցն Եզեկիելի և Սիոնի, և փոխեցելոյն ի Քրիստոս Յակոբի, և մեղապարտ գրչի Յովանէս կրաւնաւորի, և մեր ծնաւղացն, և քեզ փառք յաւիտեանս, ամէն։

բ

23ա ԶՅովաննէս ըղկոխող թղթիս յիշեցէք և աստուած զձեզ յիշէ։

գ

37ա ...Թողութիւն շնորհեայ ստացողի սուրբ գրոցս Յովհաննէս կրաւնաւորի, և ծնաւղացն, և ազգացն ամենեցուն, և եղբարց Եզեկիելի և Սիոնի, և փոխեցելոյն ի Քրիստոս Յակոբ կրաւնաւորի, և ինձ մեղսայմած Յովաննէս գրչիս, և մեր ծնաւղացն և ազգացն, և թղթի կոկողիս Յովանիսի, որ մականուն Բաւրտ կոչի, և քեզ փառք յաւիտեան, ամէն։

## 760

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 10271

ա

Գրիչ՝ Յոհաննէս

Քրիստոս աստուած ողորմեա ստացողի սուրբ Աւետարանիս Հռիփսիմին, և ծնողացն իւրոց՝ հաւրն Սադռնին և մօրն Թանխաթունին, և ինձ

* Ձեռագիրը Վանի դպրոցի առաջնակարգ ու փառահեղ արտադրանքներից մեկն է՝ իր բազմաթիվ տերունական նկարներով (էջ, էջ 1բ, 2ա, 2բ, 3ա, 3բ, 4ա, 4բ, 5ա, 5բ, 6ա, 6բ, 7ա, 7բ, 8ա, 8բ, 9ա), խորաններով (9բ, 10ա, 10բ, 11ա, 11բ, 12ա, 12բ, 13ա), աւետարանիչների նկարներով (15բ, 96բ, 154բ, 252բ), կիսախորաններով (16ա, 97ա, 155ա, 253ա) և բազմաթիվ լուսանցազարդերով։

Կենցաղային ուշագրավ գծերով հատկապես արժանի է ուշադրության 9ա էջի նկարը, ուր հավանորեն պատկերված են ձեռագրի գրչության հետ առնչվող հոգևոր անձինք՝ եկեղեցական արարողության պահին։

Իր վեհությամբ աչքի է զարնում «Աւետումը» (էջ 1բ) «Մկրտությունը» (էջ 3ա), և մի շարք այլ նկարներ։

*մեղապարտ գծողիս, և ծնողացն իմոց՝ հաւրն* Վարդանին *և մօրն* Դիլշատին, *և ամենայն արեան մերձաւորացն։*

Բ

*Քրիստոս-աստուած քո սուրբ աւետարանչացս բարեխաւսութեամբ ողորմեա ստացողի սուրբ Աւետարանիս* Հռիփսիմին, *և ծնաւղաց իւրոց ամէն, և ինձ մեղապարտ գծողիս* Յոհանիսի. *և ծնաւղաց իմոց ամէն*՝։

**761**

*ՀԱՐՑՄԱՆՑ ԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ*

*Երևան 819*

*Գրիչ՝* Ներսէս

*157բ* *Զմեղաւք մեռեալ ոգիս զ*Ներսէս *սպասաւոր բանի յիշեցէք ի յոյսն կենդանի, ո՞վ սուրբ ընթերցաւղք և գաղափարաւղք։*

**762**

*ԺՈՂՈՎԱԾՈՒ*

ИВАН. С—36

*Գրիչ՝* Նեկեղոս

... *Ողորմեա մեղուցեալ* Նեկեղոս *գծողիս, և ծնողացն իմ* Աղովմ *քահանային, և* Գուլբահրին, *և կնոջ իմ* Նուբարի, *և որդոցն իմ զտէր* Յովհաննեսին, *որ թուղթս լոկեց, և զկինն իւր զ*Գուլաղին, *և զորդիքն իւր* ... *և պապուն իմ* Ազատին, *և* [*քեռն իմ*] Գուլբաղշին, *կարդացողաց և լսողաց։*

**763**

*ՄԱՇՏՈՑ*

*Երևան 3509*

*Գրիչ՝* Նիկողոս

*199բ* /// *գրեցաւ... ձեռամբ սու*[*տանուն գրչ*]*ի* Նիկողոս *իրեց*[*ու* /// *ի գիւղն, որ կոչ*]*ի* /// *ի* Սառուղայ *ան*[*ո՞ւն, ընդ հովան*]*եաւ սուրբ եկեղեցոյս* /// *և սուրբ Լուսաւորչ*[*իս* /// *անկեալ աղաչեմ* [*ո՞վ դասք*]. *լուսերամից, որ հանդիպիք սուրբ գրենս, յիշեսջիք ի սուրբ և ի մաքրափայլ յաղաւթս ձեր* [*ինձ*], *և զծնաւղքս իմ՝ զհայրն իմ զտէր* Ղուկասն, *և զմայրն իմ* զԽաթուն, *և զուսուցիչն իմ* ///։

---

* *Վարդանի և Դիլշատի որդի Յոհաննէս գրչից հայտնի է Մատենադարանի № 8933 ավետարանը՝ գրված 1437 թ.՝ Խիզանի ս. Գամաղիէլի վանքում, և մի Ճաշոց՝ ընդօրինակած նույն վանքում 1442 թ. (տե՛ս ԺԵ դարի հիշատակարաններ, մաս Ա, էջ 479 և 538)։*

764

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7650

Ստացող՝ Շահինշայ

3 ա Զվերջին ստացօղ սուրբ Աւետարանիս զպարոն Շահինշան, և զծնօղսըն իւր, և զեղբայրն իւր զպարոն Թագվորշան՝ զփոխեցեալքն ի Քրիստոս յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր, սուրբ սրտիւ ողորմութիւն խնդրելով ի Քրիստոսէ։ Արդ, դարձեալ յիշեսջիք զվերոգրեալ պարոն Շահինշայիս որդիքն պարոն Ոլուպէկին, և զպարոն Տուկալպէկն, և զպարոն Նիկօլայոսն, և զմայրն սոցայ զՋումլայ-խաթուն զփոխեցեալն առ Քրիստոս, և զքոյրն զՍովինչ-Մելիքն, և զամենայն արեան մերձաւորսն։

Արդ, ստացաւ զսուրբ Աւետարանս պարոն Շահինշան ի հալալ արդեանց իւրոց, և ետ զսայ սուրբ Աստուածածնին յիշատակ անջնջելի և աղատապէս. և ոչ ոք իշխեսցէ սմայ՝ յորդոց կամ ազգականաց պարոն Շահինշային ծախել, կամ գրաւել, կամ հանել ի սուրբ եկեղեցւոյս, այլ պահել զսուրբ Աւետարանս յիշատակ և պարծանք կենդանեաց և հանգուցելոցն ի Քրիստոս, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն*։

765

ՎԱՐՔ ՀԱՐԱՆՑ

Վիեննա 128, Յ. Տաշեան, Ցուցակ, էջ 415—416

Գրիչ՝ Պետրոս

ա

4ր Տէր Յիսուս... ողորմեայ Կարապետ քահանայի, և մեղապարտ գրչի, և [ս]տաց[ող]ի ոգեշահ գրոցս Պետրոսի, և տէր Աւագի, և Յոհաննիսի. և միւս այլ Յոհաննիսի քահանայի, և ծնաւղաց իմոց, և եղբարց, և քուերց, և երից կանաց, որ տարաժամ մահուամբ փոխեցան ի Քրիստոս**։

բ

5ր Եւ ես՝ բազմամեղ գրիչս Պետրոս անարժան ծառայ ձեր յերես անկեալ աղաչեմ զաստուածասէր կարդացողսդ յիշել սրտի մտաւք զիս, և զկենակիցն իմ, և զծնաւղսն իմ, և զեղբայրս, ևս առաւել զվարպետն իմ զՆերսէս կրաւնաւոր...

---

* Հիշատակարանն ամենայն հավանականությամբ գրված պետք է լինի ԺՍ. դարի կեսերին, որովհետև ստացող պարոն Շահինշահի թոռ Սատար-խաթունը՝ ՋԾԲ. (1503) թվականին Ավետարանը «վերստին ետ նորոգել» «ձեռամբ Թադէոս վարպետին Եզնկացոյն»:

Թերևս հնարավոր է հավանական ենթադրություն անել հիշատակարանի գրության վայրի մասին։ Ձեռագիրը ընդօրինակվել է 1329 թ. Գրիգոր երեցի ձեռքով և ծաղկվել է նշանավոր Ավագ նկարչի կողմից։ Ստացողն է ոմն Ասլան, որ նվիրում է «ի ձեռն Սարգիս Քորիսկոպոսի... Օրտուբազարի մեծի եկեղեցւոյս սրբոյ Սարգ[ս]ի զօրավարին» (էջ 353բ)։ Օրդուբազար էր կոչվում իլղանների մայրաքաղաք Սուլթանիան, ուստի կարելի է ենթադրել, որ պարոն Շահինշահը նույնպես Սուլթանիայի կամ թերևս Թավրիզի բնակիչ է եղել։

** Այս և մյուս բոլոր հիշատակագրությունների վերջում հետագա ստացող Բաղդասարի անունից կցված է տեղեկություն. «և վերջին ստացողիս Բաղդասարիս և ծնողաց իւրոյ»։



34—271

Գ

81ա *Տէր աստուած... ողորմեա ստացողի սորա* Պետրոսի, *և տէր* Աւագի. *և* Յոհանիսի, *և միւս այլ* Յոհանիսի Աստուածշինոյ, *որ է մեր եղբայր*. *և* Կարապետ *քահանայի, և* Մելքիսեդեկի, *և* Անդրիասի, *և այլ համաւրէն նախնեացն մերոց...*

Դ

46ա *Տէր Աստուած... ողորմեա գծողի և ստացողի սուրբ գրոցս* Պետրոսի. *և* Կարապետի *քահանայի, և վարպետին մերոյ* Ներսիսի. *և ծնողաց իւրոց, և եղբարց, և* Դշխուին. *և* Մելքիսեդեկին, *և ծնօղաց իւրոց...*

## 766

## ԱԻԵՏԱՐԱՆ

*Երևան 2815*

*Ստացող*՝ Ջանբուղաւ

245բ *///*...զոր և տեսեալ զսորայսն անճառ փրկագործութեան խորհուրդ բարեմիտ և երկիւղած աստուծոյ* Ջան[բ՟]ուղէն *և* Մոմեղենս, *ստացաւ ըզ ///** և զաւակ[աց իմ]ոց* Մումեղինին, [Աւե]տիսին, Շաբուդաղին. *պարոն* Սարգըսին, Տէրտէրին, Միրիշանին, Անդրոնիկին, Անէշէլին *և* Ջուհարին, Կարապետին, Դուլբա[ղին///

## 767

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 3140*

*Գրիչ*՝ Սաղաթել

214ա ԶՈհաննես *կաթողիկոս՝ և որդի պարոն* Մահրապին *և թոռն մեծին պարոն* Ջալալին *յիշեցէք ի Քրիստոս։ Ընդ նմին և ղանարժան գծողս ըզմեղապարտ արեղա* Սաղաթիելս *յիշեսջիք ի տէր ...*

## 768

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱԻԵՏԱՐԱՆԻՆ ՄԱՏԹԷՈՍԻ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

*Երևան 1304*

*Գրիչ*՝ Սարգիս

*Զբազմամեղ անձն* զՍարգի[ս] *պիտականուն յիշել մաղթեմ սիրողացդ բանի, ամէն։*

---

* *Հիշատակարանի պատմական բաժնի տողերի մեծ մասը խունացել, ջնջվել ու դարձել են անընթեռնելի։*

** *13 տող անընթեռնելի է։*

174բ *Արդ, գրեցաւ չորրորդ հատորի գրոցս Քաղուածոյս Աւետարանի ընդ հովանեաւ մաւրս լուսոյ Սիոնի և սուրբ Նշանիս տնրունականի, դի բժիշկ են օձահարի, ով որ զմեզ յիշման առնէ արժանի՝ սոքա լինին նոցա պահապան յաժմուս և յապագայի…*

## 769

### ԱԻԵՏԱՐԱՆ

*Երևան 4420*

Գրիչ՝ Սարգիս

ա

85ա *Զմեղապարտ գծողս զՍարգիս աղաչեմ յիշել ի տէր և դուք յիշեալ լի-ջիք, ամէն։ Երկնաւոր արքայ և տէր յաւիտենից… ողորմեա Թումա քահանային, և հաւրն իւրոյ Մարտիրոսին, և իւր մերձաւորացն, և գրէ զանուն նոցա ի գիրն կենաց։*

Բ

143ա *Զտառապեալ անձն գերոյս,*
*Որ դէմ ելայ արաբացոյս,*
*ԶՍարգիս՝ տկար ի մէջ մարմնոյս,*
*Եւ շարաւով լցեալ հոգոյս,*
*Եւ ի ատեացս ելանելոյս՝*
*Ինձ զերծանել ի մեծ պատժոյս։*

## 770

### ԳԱՆՁԱՐԱՆ

*Երևան 6366*

Գրիչ՝ Սարգիս

ա

6ր *ԶՍարգիս աղաչեմ յիշել ի տէր և աստուած ղձեղ յիշէ, ամէն.*

Բ

61ա *Թողութիւն արէք, ես եմ ղալատ, ուրինակ չունէի. զինչ որ ճարեցի այս չափս էր՝ ծրեցի, բայց դու ի տեղն հրամէ։*

Գ

62բ *Գրիտ պակասութիւնդ շատ է, բայց դուք թողութիւն արէք, ծեր եմ և ձեռս ի դողման ու աչօք բնաւ չեմ տեսնուլ, այնոր համար գիրդ ձաղուձու է, մերն այդ չափդ է, աստուած լաւ գիտէ։*

771

ՃԱՌԸՆՏԻՐ

Յ. Քոսեան, Յուցակ Արձնեան վարժարանի, 43,
ՀԱ, 1962, էջ 180—181

Գրիչ՝ Սարգիս

200ա Յայսմ մեծի տաւնիս զստացող մատենիս զտէր Մխիթար՝ զառաջնորդ մեծ մենաստանիս, յիշեսջիք առհասարակ, զի տէր տաւնիս ողորմեսցի յիւրում գալստեանն։

Տէր Յիսուս, որ համբարձար առ հայր, յիշեա զստացող գրոցս զտէր Մխիթար, և զանարժան Սարգիս սուտ գրիչ։

Ճառիս աւրինակս յոյժ անպէտ է և սխալ։

772

ՍԱՂՄՈՍԱՐԱՆ, ԱՂՕԹԱԳԻՐՔ, ՏԱՂԵՐ

Copenhagen Bibliotheque Cod. arm. add. 2.

Գրիչ և ծաղկող՝ Սարգիս

Ո՜վ սուրբ ընթերցողք յիշեսջիք զաղքատն ի բարեաց և զփարթամս ի չարեաց զՍարգիս գծաւղս և ծաղկօղս, և զաշակերտն իմ Էսային, և զմայրըն իւր զապաշխարօղն, որ զԹուխտս կոչեց, և յիշեցեալք լիցիք ի Քրիստոսէ, ամէն, եղիցի։

773

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՊԱՐԱՊՄԱՆՑ ԳՐՈՑ ԿԻՒՐՂԻ ԵՒ ԱՅԼ
ԳՐՈՒԹԻՒՆՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

Երևան 1410

Ստացող՝ Սիմէոն

119բ Զստացող սորա զՍիմէոն վարդապետ և զեղբայրն իւր զԴեղիկ սուրբ միայնակեաց, ծնողօք իւրեանց հանդերձ յիշեցէք ի տէր, ո՛վ ընթերցողք...

774

ՔԱՐՈԶԳԻՐՔ

Երևան 2153

Գրիչ՝ Սիմէոն

ա

132ա Ո՜վ ուսումնասէր մանկունք, յորժամ ուսանիք կամ աւրինակէք՝ զսակաւ գրող սորա՝ զՍիմէոն անուանեալ վարդապետս յիշեցէք ի տէր...

